ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐ
ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# Ե Ր Կ Ե Ր

ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

Բ

## ՊԱՏՄԱ-ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 2006

ՀՏԴ 941(479.25)
ԳՄԴ 63.3(2Հ)
Ա 205

**Ադոնց Ն. Գ.**

Ա 205 Երկեր. հատ. Բ., Պատմա-բանասիրական ուսումնասիրություններ / Հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հովհաննիսյանը. - Եր.: Երևանի համալս. հրատ., 2006. - 680 էջ + 1 ներդիր:

Նիկողայոս Ադոնցի երկերի երկրորդ հատորն ընդգրկում է գիտական տարալեզու հանդեսներում և ժողովածուներում տպագրված հայ հին և նոր գրականության պատմության հարցերին, ինչպես նաև գրական առանձին հուշարձաններին, դեմքերին ու գրականության խնդիրներին նվիրված հետազոտությունները:

Հասցեագրվում է հայագետներին և ընթերցող հանրությանը:

Ա $\frac{0503020913}{704(02)06}$ 2006 ԳՄԴ 63.3(2Հ)

ISBN 5-8084-0779-6





50 anos 1956 2006

FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

*Խմբագրական հանձնաժողով*

**Հովհաննիսյան Պ. Հ., Մաղոյան Ա. Գ., Սահակյան Պ. Գ.**

Հատորը հրատարակության պատրաստեց

Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ՊԱՏՄԱ-ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿԱԶՄՈՂԻ ԿՈՂՄԻՑ

Ն. Ադոնցի Երկերի երկրորդ հատորում զետեղված են բանասիրության խնդիրներին նվիրված նրա հիմնական աշխատությունները: Ադոնցը գիտության ասպարեզ իջավ իբրև բանասեր: Նրա առաջին հետաքրքրությունները վերաբերում էին հայ հին մատենագրության նշանավոր, միևնույն ժամանակ առեղծվածային դեմքերին՝ Փավստոս Բուզանդ, Անանուն, Կորյուն, Եզնիկ Կողբացի, Մովսես Խորենացի, Մովսես Կաղանկատվացի և ուրիշներ: Իրեն հատուկ եղակի աշխատասիրությամբ, տաղանդի ուժով ու լայն հմտությամբ կարողացավ լուծել բազմաթիվ առեղծվածներ, նորովի մեկնաբանել հայ հին մատենագիրներից շատերի անձն ու գործերը և իր թանկագին ու մնայուն նպաստը բերել հայ պատմա-բանասիրական մտքին:

Բանասիրական բնույթի աշխատությունների առանձին՝ հատուկ հատորով, հրատարակելու անհրաժեշտությունը մեզ հուշել է ոչ միայն գրական ժանրը, այլև հանգուցյալ հայագետի կամքը: Դեռևս 1930-ական թվականների վերջերին «Մելգոնյան ֆոնդի» Գործադիր հանձնաժողովի (Փարիզ) կողմից Ադոնցը առաջարկություն էր ստացել հատորներով վերահրատարակելու «Հայրենիք» և այլ ամսագրերում լույս տեսած աշխատությունները: Բազմազբաղ պատմաբանը ձեռնամուխ է լինում ապագա հատորների նյութերը դասակարգելու և դրանք խմբագրելու աշխատանքներին: 1940 թ. ապրիլի 15-ին Գարեգին Հովսեփյանցին ուղղված նամակում Ադոնցը խոստովանում է. «Թեև առանձին տրամադրություն ու ժամանակ չունեի վերստին նայել, ուղղել սխալաշատ գրություններ, բայց ստիպվեցա անել»: Ցավոք, աշխատանքներն ընդհատվեցին: Ծանր հիվանդությունը հնարավորություն չտվեց ավարտին հասցնելու ծրագրվածը: Իսկ ծրագրել էր ամբողջ առկա նյութն ամփոփել երեք հատորներում՝

1. Պատմականք. Հայոց պատմության վերաբերյալ հոդվածներ,
2. Բանասիրականք, մատենագրականք,
3. Հայ-բյուզանդական դեմքեր[1]:

[1] Մեծի Տանն Կիլիկիո կաթողիկոսարանի դիվան, Գարեգին Հովսեփյանցի ֆոնդ, հավաքածու № 7, ց. 1, գ. 336, թ. 31:

*Ադոնցի Թղոնում առկա է երկրորդ՝ «Բանասիրականք»-ին վերաբերող նյութերի մի անավարտ թղթապանակ: Այն ամփոփում է հետևյալ իննը գրությունները.*

*ա) Հայ մշակույթի սկզբնավորությունը,*

*բ) Նշանագիր կարգաց բանից Եզնկան Երիցու,*

*գ) Հայր Ն. Ակինյանի պատասխանին պատասխան,*

*դ) Ղևոնդ և Խորենացի,*

*ե) Փոքր Սոկրատի հեղինակը,*

*զ) Մլքեի Ավետարանի գրության տարին,*

*է) Փղոսկրյա Ավետարանի արվեստը,*

*ը) Քննական տեղեկագիր պրոֆ. Ն. Ադոնցի: Գարեգին արքեպ. Հովսեփյան, Հոգևոր կեդրոններ և Գլաձորի բարձր դպրոցը,*

*թ) Նոր Հայերենի քերականություն[1]:*

*Բացառությամբ վերջինիս, մյուսները մաս են կազմում սույն հատորի, ինչպես նաև համարնույթ 24 այլ աշխատություններ, որոնք վստահ ենք, որ հիմնականում, եթե հանգամանքները չխանգարեին, տեղ պիտի գտնեին այդ թղթապանակում: Նշելի է, որ Երկերի սույն հատորում զետեղված 32 ուսումնասիրություններից 22-ը Մայր Հայրենիքում լույս է տեսնում առաջին անգամ:*

*Բանասիրության խնդիրներին նվիրված Ն. Ադոնցի աշխատությունները կարևոր ներդրում են հայագիտության ասպարեզում:*

**Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**

*[1] Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, գզրոց Բ, թղթածրար 4:*



# ՄԱՇԹՈՑ ԵՎ ՆՐԱ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ ԸՍՏ ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ

Հայ գրի և գրականության հիմնադիրների կյանքը ծանոթ չէ այն չափով, որքան արժանի էին նրանք հիշողության իրենց մեծ գործով: Լրիվ չեն տեղեկությունները մանավանդ այն նշանավոր մարդու մասին, որ առաջինն է զգացել սեփական գիր ունենալու պահանջը և հիմք ձգել ազգային դպրության:

Զարմանալին այն չէ, որ հետինները՝ ժամանակի խրամատով անջատված, չգիտեին սքանչելի գյուտի և նրա մեծ վաստակավորի պատմությունը: Նույնիսկ ժամանակակից Կորյունը չի կարող պարծենալ առանձին գիտությամբ: Թեև Մաշտոցի ձեռնասուն աշակերտը և նրա կենսագիրը. նա գրերի մասին շատ բան չգիտե, գոնե շատ բան չի պատմում: Նրան հետաքրքրում է կարծես ոչ այնքան գյուտը, որքան Մաշտոցի քարոզչությունը և այն էլ Հայաստանի ծայրագավառներում և Աղվանից, Վրաց աշխարհներում: Այս հանգամանքն ընդունակ է իրավամբ կասկածներ հարուցանելու: Սակայն մեր նպատակը չէ Կորյունի գործը քննել:

Հույն և լատին հին հիշատակարաններում կան քանի մի ակնարկներ և տեղեկություններ, որոնք, որքան և դիպվածական և հատուկտոր, բայց և այնպես անսպասելի լույս են ցողում Մաշտոցի և յուրայինների կյանքի մի կարևոր շերտի վրա: Գուցե և նրանք թույլ տան բարձրացնելու այն քողը, որ թվում է թե ձգված է Կորյունի երկի մեջ ոչ միայն Մաշտոցի այլ և իր՝ Կորյունի որոշ գործունեության վերա:

Հույն եկեղեցու պարծանք Փոտ պատրիարքը, հայտնի է, քաղաքակիրթ աշխարհի առաջ մեծ երախտիք ունի շնորհիվ իր հռչակավոր «Գրադարանի»: Նրա փառքին մասնակից ենք, ի դեպ է ասել, հայերս, քանի որ Փոտի երակների մեջ վազում էր առատորեն հայի արյուն, որովհետև Արշավիր պատրիկի քեռորդին էր: Ընթերցասեր պատրիարքը կազմել էր հին հեղինակների՝ ճոխ ժողովածու, որի շնորհիվ նորա տունը կիրթ հասարակության կենտրոն էր: Նա սովորություն ուներ կարդացած գրքերի մասին հաշիվ գրել, նշանակելով նրանց բովանդակությունը երբեմն համառոտ, հաճախ մանրամասն: Այս կերպով կազմվել է նրա «Գրադարան» աշխատությունը (1), որն ամփոփում է մոտ 300 հեղինակություն: Կան գործեր, որ

կորել են, գոնե մինչև այժմ չեն հայտնվել. նրանց թիվը քիչ չէ և շատերի մասին գաղափար ունենք միմիայն լուսամիտ պատրիարքի աշխատության շնորհիվ:

Ահա այդ Գրադարանում է, որ Փոտը հիշում է Թեոդորոս Մոպ-սուեստացու կամ Մամուեստացու, ինչպես մերոնք էին ասում, մի գործը հետևյալ խոսքերով, որ բերում ենք ամբողջապես, բնագրի հետ տալով և բառացի թարգմանությունը:

Bib. Photii (**Migne**, Patrologia Graeca, t. *103*, col. 281)

Θεοδώρου πρεσβυτέρου

**Թէոդորոս Երէցի**

περὶ τῆς ἐν Περσίδι μαγικῆς ἐν λόγοις γ'.

**Յաղագս որ ի Պարսս մոգութեան, ի ճառս երիս.**

Ἀνεγνώσθη βιβλιδάριον Θεοδώρου περὶ τῆς ἐν Περσίδι μαγικῆς καὶ τίς ἡ τῆς εὐσεβείας διαφορὰ ἐν λόγοις τρισί.

Կարդացել եմ Թեոդորոսի գիրքը «**Յաղագս որ ի Պարսս մոգութեան եւ զինչ է բարեպաշտ հաւատոյ զանազանութիւն յերիս ճառս**»:

Προσφωνεῖ δὲ αὐτοὺς πρὸς Μαστούβιον ἐξ Ἀρμενίας ὁρμώμενον, χωρεπίσκοπον δὲ τυγχάνοντα.

Ուղղված են նրանք առ Մաստուբիոս ծագումով Հայաստանից և իրեն քոր-եպիսկոպոս:

Καὶ ἐν μὲν τῷ πρώτῳ λόγῳ προστίθεται τὸ μιαρὸν Περσῶν δόγμα ὃ Ζαράδης εἰσηγήσατο, ἤτοι περὶ τοῦ Ζουρουάμ, ὃν ἀρχηγὸν πάντων εἰσάγει, ὃν καὶ Τύχην καλεῖ καὶ ὅτι σπένδων, ἵνα τέκῃ Ὁρμίσδαν, ἔτεκεν ἐκεῖνον καὶ τὸν Σατανᾶν. Καὶ περὶ αὐτῶν αἱμαμιξίας.

Առաջին ճառում խոսում է պարսից պիղծ կրոնի մասին, որ ավանդել է Զարադը, այն է Զրվանի մասին, որին ամեն բանի սկզբնապատճառ է դնում և որին անվանում է նաև բախտ: Եվ թե ինչպես զոհում էր, որ ծնի Որմզդին, բայց ծնում է նրան և սատանային: Նաև նրանց արենապղծության մասին:

Καὶ ἁπλῶς τὸ δυσσεβὲς καὶ ὑπέραισχρον δόγμα κατὰ λέξιν ἐκθεὶς ἀνασκευάζει ἐν τῷ πρώτῳ λόγῳ.

Մի խոսքով ամբարիշտ և գարշելի կրոնը մեջ բերելով բառառբառ հերքում է առաջին ճառում:

Ἐν δέ τοῖς λοιποῖς δυσὶ λόγοις τὰ περὶ τῆς εὐσεβοῦς διέρχεται πίστεως, ἀπὸ τῆς κοσμογονίας ἀρξάμενος, καὶ περὶ αὐτῆς τῆς χάριτος ὁμοίως καὶ ἐπιτροχάδην διελθών.

Իսկ մնացյալ երկու ճառերում մեկնում է բարեպաշտ հավատի էու-թյունը, սկսելով աշխարհի արարչու-թյունից, խոսելով նույն կերպ, թեև անցողակի նաև շնորհի մասին:



Οὗτος ὁ Θεόδωρος ὁ Μοψουεστίας εἶναι δοκεῖ τὴν δὲ γὰρ Νεστορίου αἵρεσιν καὶ μάλιστα ἐν τῷ τρίτῳ λόγῳ κρατύνων προαναφωνεῖ ἀλλὰ καὶ τὴν τῶν ἁμαρτωλῶν ἀποκατάστασιν τερατεύεται.

Այս Թեոդորոսը թվում է որ Մոպսուես-տացին է, որովհետև Նեստորի աղանդի մասին մանավանդ երրորդ ճառում հաստատապես նախաքարոզ է լինում, այլև մեղավորների վերականգնման մասին է բանդագուշում:

Այս տողերը խիստ թանկարժեք են հայ գրականության համար: Կարևոր է Թեոդորոսի երկի ոչ միայն բովանդակությունն ինքն ըստ ինքյան, այլ և նորա հասցեն: Բովանդակությանը կդառնանք ուրիշ առթիվ մի այլ հոդվածում[1]: Այժմ կանգ առնենք երկրորդ կետի գրության հասցեի վրա:

Արդ նույն պատրիարքը վկայում է, որ Թեոդորոսի գիրքը գրված է եղել մի հայ քորեպիսկոպոսի համար և բարեբախտաբար չի մոռացել նշանակել նրա անունը: Արդյոք ո՞վ է այդ հայ եկեղեցականը, որի անունը հնչում է **Mastoubios**: Հիշենք, որ Թեոդորոս Մամուեստացին մեռել է 428 թվին և եպիս-կոպոս էր սկսված 392 թ. մերձավորապես: Հայ դպրության ծանոթ անձը բնավ չի վարանիր **Mastoubios**-ին նույնացնելու Մաշթոցի, Թեոդորոսի ժա-մանակակից հայ իրականության ամենացայտուն դեմքի հետ: Հետևապես *Μαστούβιος* ուղղելու է *Μαστούζιος* կամ *Μαστούτζιος*: Անանուն հույնի *καθολικοὶ τῆς Μεγάλης Ἀρμενίας* հոդվածում Մաշթոցի անունը հնչում է *Μαστίζτη* և *Μαστή(ν)τζη* (**Migne**, Patrologia Graeca, t. 132):

Հուշի ունենալով հայ գրականության հոր կրկնակի անունը, թերևս ոմանք գայթակղվին կարդալու *Μαστούβιος*, այսինքն՝ Մեսրոբ: Սակայն, որքան հավաստի է Մաշթոց անունը, նույնքան երկրայելի է Մեսրոբ, ավելի ճիշտ Մեսրոպ: Հին մատենագիրները, Կորյուն և Ղազար, գիտեն միայն Մաշթոց անունը, մինչդեռ Խորենացին է առաջինը, որ Մաշթոցի տեղ գործ է ածում Մեսրոպ: Ի՞նչ հիմ ուներ մեր Պատմահայրը, անհայտ է. մինչև խնդրի պարզելը գերադասելի է անպայման Մաշթոցը:

Նկատենք, որ թուղթ Պրոկղեայ եպիսկոպոսի ունի Մաժդոց ընթերցումը, որը կարծես ավելի հին և ստույգ ձևն է և կարող է թելադրել բառի ստուգաբանական ծագումը: Եթե ընդունենք, որ Մաժդոցի նախնական հնչյունը Մազդ-ոց է, ինչ որ անհավանական չէ, իրավամբ կարող ենք նույնացնել իրանական **mazd-ak** անվան հետ, հայերեն -ոց հայտնի մասնիկի հավելումով[2]:

---

[1] «Քննական նշմարներ Եզնիկի մասին», Լ. Մարիեսի աշխատության առթիվ (պատրաստ է տպագրության) (2):

[2] Մաժդոցը հետագայում փոխվում է Մաշթոցի, ինչպես Պրոկղի պատասխանում, «Գիրք թղթոց», էջ 9. Աբրահամ կաթողիկոսի «Թուղթ առ Կիւրիոն», անդ *180*. Օձնեցու «Սակս

Մաստուբիոսի քորեպիսկոպոս կոչումը չպետք է շփոթեցնե մեզ: Թե Մաշքոցն իրոք ինչ աստիճան ուներ, հայտնի չէ, գուցե իսկապես քորեպիսկոպոս էր: Այսպես էին կոչվում այն եպիսկոպոսները, որ օրինական աթոռ չունեին և աթոռակալ եպիսկոպոսի օգնական կամ փոխանորդ էին: Բառի կազմը, ինչպես և հասկանալ ἐπίσκοπος τῆς χώρας, թե ὁ ἐν χώρᾳ ἐπίσκοπος ὤν, իմաստը մնում է գրեթե նույնը և պատշաճավոր Մաշքոցի շրջիկ գործունեությանն[1]: Կորյունը չէ հիշում իր ուսուցչի աստիճանը. իսկ ակումիտ տիտղոսը, ստացած Կ. Պոլսում, ἀκοίμητος, միայն նոր կասկածների առիթ կարող է տալ:

Եթե ճիշտ է մեր նույնացումը, առաջին անգամն է, որ երևան է գալիս հայ լուսավորության հոր անունը ընդհանուր գրականության մեջ (3):

Հնչական հարակցությունը չէ միայն, որ մեզ պատրում է: Կան և լուրջ պատմական հիմքեր, որ գալիս են հաստատելու մեր ենթադրությունը:

Թեոդորոսի և Մաշքոցի ժամանակակից ամենախոշոր երևույթը ընդհանուր եկեղեցական կյանքում Եփեսոսի ժողովն է: Մամուեստի եպիսկոպոսը թեև թողել էր այս աշխարհը ժողովից երեք տարի առաջ, բայց իր անվան կշիռով և մտավոր ժառանգությամբ կենդանի մասնակից էր զալոց վեճերին երկար ժամանակ:

Եփեսոսի ժողովի շուրջը ծագած հուզումներն արձագանք գտան և Հայաստանում: Պայքարող կողմերն առանձին արժեք էին տալիս հայերի քռնելիք դիրքին և աշխատում էին գրավել նրանց համակրությունը: Ընդհանուր իրարանցումի ժամանակ կար վայրկյան, երբ հայերը կարծես թե հանրական ուշադրության կենտրոնն էին: Ազգային հիշողությունը պահել է միայն խուլ շշունջն եղելությանց, որոնց մասին որոշակի ճառում են օտար աղբյուրները:

Եփեսոսի ժողովը փակեց իր նիստերը 431 թվի հունիսի 26-ին Նեստորի դատապարտումով և աքսորով: Չի կարելի ասել, սակայն, որ սուրբ հայրերի հավաքական որոշումը սանձահարեց կրքերը և նրանք վերադարձան իրենց տեղերը խաղաղության ձիթենիով: Տարիներ էին պետք, մինչև որ բորբոքված ոգեղները հովանային ընդհանուր խաղաղության տենչով: Կռվող

ժողովոց», անդ, 220. Գագիկի «Թուղթ առ Ռոմանոս կայսր», անդ, 296:

Սույն անունը կրում է և Ներսես կաթողիկոսի ժամանակակից հայ եպիսկոպոսներից մինը՝ «Մաշղոց Խորխոռունեաց եպիսկոպոս», անդ, 70, 73 և այլն:

Մաշղոց, դառնում է Մաշքոց, ղ > ք, շ-ի ազդեցությամբ: Ոց մասնիկը ծանոթ է և այլուստ, ինչպես Տիր-ոց, Բար-ոց: Մաշքոցի խնամությունը Mazdak-ի հետ ավելի քան հավանական է Մաշղ-ոց և Մաժդ-ոց և Մազդ-ոց ձևերի հաջորդական ձայնափոխությամբ:

[1] Հայտնի է Ղազար Փարպեցու գանգատը, որ նրան «այլ եւ քորեպիսկոպոս ոք չաբար» թող թե «ձկտեցուցանել յեպիսկոպոսութիւն». տե՛ս «Պատմութիւն և Թուղթ Ղազարայ», Վենետիկ, 1873, էջ 587:



ողղությանց պարագլուխները՝ Կյուրեղ Աղեքսանդրացին և Հովհաննես Անտիոքացին մեծ ճիգերից հետո համոզվեցին հաշտության գալ փոխադարձ զիջումների գնով: Հաշտությունը կայացավ 433 թվին մարտ ամսին: Այս կարևոր դեպքն իսկ չզսպեց հուզումները: Անհաշտ տարրերը շարունակեցին հակառակությունները, կազմելով երկու կողմերի ծայրահեղ թևերը: Նրանց ոգին էր կյուրեղյանների բանակում Մելիտինի եպիսկոպոս Ակակիոսը և Եդեսիայի եպիսկոպոս Ռաբուլասը: Անտիոքյանների խմբում համառողներն էին Կիլիկիայի եպիսկոպոսները, որոնք ժողով գումարեցին Անավարզայում և բողոքեցին կայացած միության դեմ[1]: Ակակիոսն և Ռաբուլասը ևս, իբր հավատարիմ կյուրեղականներ, վրդովված էին, որ իրենց պետը զիջանելով մատնել է ճշմարտության դատը[2]:

Նեստորի անկումով հալածելի են հայտարարվում ոչ միայն նրա անձը, այլև գրվածները: Հակառակորդները սկսում են տարածել Դիոդորոս Տարսոնացու և Թեոդորոս Մամուեստացու գրությունները: Սրանք էին բանադրված վարդապետության բուն հեղինակները: Նեստորի հետևորդների համար սա միևնույն ժամանակ մի կողմնակի միջոց էր ցույց տալու, որ անարդարություն է գործված իրենց ուսուցչի դեմ, քանի որ նա այլ բան չէ քարոզել, քան ինչ որ դավանել են հիշյալ հայրերը:

Երևում է, որ Թեոդորոսը առանձին հռչակ էր վայելում հայերի մոտ, այս առթիվ է, որ թշնամանող կողմերը հարկավոր են համարում դիմել հայերին: Ակակիոս և Ռաբուլաս զգուշացնում են, որ Թեոդորոսի գրվածները խորշելի են և աղանդավոր, իսկ Կիլիկիայի եպիսկոպոսները հայտարարում են, որ Ռաբուլաս անձնական ոխ ունի Թեոդորոսի դեմ:

Այդ հակասական քայլերը դժվար կացություն են ստեղծում հայերի համար: Հայ եպիսկոպոսները ժողով են գումարում և ճշմարտությունը պարզելու նպատակով որոշում են դիմել Կ. Պոլսի պատրիարքին: Երկու երեց, Ղևոնդեոս և Աբերիոս հանձնարարական նամակով մեկնում են Պրոկղ [պատրիարքի] մոտ: Նրանք տանում են իրենց հետ նաև Թեոդորոսի գրվածներից քաղվածո կտորներ: Հայերն ուզում են իմանալ պատրիարքի կարծիքը, թե ով է արդար, Ակակիոսն ու Ռաբուլասը, թե կիլիկեցիք:

Պրոկղ ընդունելով հայ դեսպանությունը, քննում է ուշադրությամբ նրանց թղթերը և պատրաստում պատասխան: Միևնույն ժամանակ հարկավոր է նկատում դիմել Աղեքսանդրիայի և Անտիոքի պատրիարքներին և խնդրում, որ նրանք ևս ստորագրեն հայերին ղրկելիք պատասխանը: Պրոկղի դիմումը հատուկ նամակով տանում է Անտիոք Թեոդորոս անունով մի սարկավագ:

[1] **Mansi**, Sacrorum Conciliorum nova et amplissima collectio, t. V, 891.

[2] Անդ, t. V, 860 և 998, Ակակիոսի նամակը Կյուրեղին՝ կրկնակի լատին թարգմանությամբ:

Հովհաննես պատրիարքն իր եպիսկոպոսների հավանությամբ ստորագրում է թուղթը:

Մի այլ սարկավագ Վասիլ անունով նույն հանձնարարականով ուղարկվում է Աղեքսանդրիա և բերում է Կյուրեղի պատասխանը:

Մինչ այն պատրիարքն արդեն ղրկած է լինում իր դավանաբանական թուղթը հայերին: Ինչպես երևում է, Պրոկղը բավականանալով Անտիոքի վերաբերումով անապարում է հասցնել թուղթը հայերին, առանց սպասելու Կյուրեղի կարծիքին: Բայց, անտարակույս, զգուշության համար ձեռնպահ է մնում որևէ ակնարկ անել Թեոդորոսի հասցեին:

Այս անցուդարձին վերաբերյալ վավերագրերը, դժբախտաբար, կորած են մեծ մասով: Մնացել են միմիայն Պրոկղի թուղթը հայերին՝ հույն, հայ և ասորի լեզուներով. մնացել են նաև Ակակիոսի թղթերը հայոց և նրանց պատասխանները միմիայն հայերեն:

Լատին մատենագիր Լիբերատուսը, ինչպես երևում է, ունեցել է իր տրամադրության տակ կորած վավերագրերից շատերը և չի զլացել հակիրճ, բայց բովանդակալից հաշիվ տալ իր երկի մեջ: Շնորհապարտ պիտի լինենք հեռավոր Կարթագենի եկեղեցականին, որ անտես չի արել և հայոց հարցը: Սարկավագ Լիբերատուսը հիշյալ եկեղեցու կողմից մասնակցել է իր ժամանակվա շատ ժողովների և ներկա է եղել նաև 553 թ. տիեզերական Ե ժողովին: Թեոդորոս Մամուեստացու, ինչպես և Թեոդորետոսի և Իբասի խնդիրը նույն ժողովի քննության և ապա դատապարտության առարկա եղավ: Երեք անձերը, կամ ինչպես ասվում է «Եկեղեցական պատմության» մեջ, երեք գլուխները, դատվում էին առ Նեստոր ունեցած հարաբերության տեսակետից: Բնականորեն ժողովը աչքի պիտի անցներ նրանց վերաբերյալ գրությունները ու թղթերը Եփեսոսյան վեճերի ժամանակից: Հետագայում նրանցից շատերը կորստյան են մատնվել և մանավանդ այն թղթերը, որ նայում էին հայերին: Լիբերատուսը օգտվել է նրանցից և տեղ տվել իր երկի մեջ, որ ամփոփում է եկեղեցական անցքերի պատմությունը 428-553 թթ.: Վերև հիշեցինք, ինչ որ նա պատմում է հայոց մասին: Պիտանի ենք համարում մեջ բերել և նրա բուն խոսքերը բնագրով և թարգմանությամբ:

Liberati diaconi Breviarium, Migne, Patrologia Latina, t. 68, col. 963

Nestorii sectatores... aiebant non sapuisse nova Nestorium, sed antiquorum patrum prosecutum fuisse docrtinam et in eo tantum studii gesserunt, ut ipsa eorum volumina malitiose in Syrorum linguam et in Armenorum atque Persarum transferrent.

«Նեստորի աղանդակիցները... ասում էին, որ Նեստոր նոր բան չէ քարոզել, այլ հին հայրերի վարդապետությանն է հետևել: Եվ այնքան եռանդ թափեցին, որ մինչև անգամ նրանց իսկ գրվածները չարամտորեն թարգմանեցին ասորի, հայ և պարսիկ լեզուներով:



Sed haec ubi agnoverunt Acacius Melitenensits et Rabula Edessae civitatis episcopus... scripserunt Armeniae episcopis, ne Theodori Mopsuesteni libros susciperent tanquam haeretici et auctoris dogmatis Nestoriani, insimulantibus episcopis Ciliciae Rabulam, et Acacium, quod hoc non ex charitate, sed ex emulatione atque contentione fecissent.

Բայց երբ այս իմացան Ակակիոս Մելիտինացին և Եդեսիայի [քաղաքի] եպիսկոպոս Ռաբուլասը... գրեցին հայոց եպիսկոպոսներին, որ չընդունեն Թեոդորոս Մամուեստացու գրքերը, իբր հերձվածողի և նեստորյան վարդապետության հեղինակի: Մինչդեռ Կիլիկիայի եպիսկոպոսները ամբաստանում էին Ռաբուլասին և Ակակիոսին, որ նրանք այդպես են վարվել ոչ սիրուց, այլ նախանձից և չարությունից դրդված:

Congregati sunt ergo in unam venerabiles Armeniae episcopi et miserunt duos presbyteros Leontium et Aberium ad Proclum Constantinopolitarum episcopum, secundum morem, cum libellis suis, et uno volumine Theodori Mopsuesteni, scire volentes utrum doctrina Theodori an Rabulae et Acacii vera esse probaretur.

Արդ՝ ժողով են գումարում հայոց պատվարժան եպիսկոպոսները և երկու երեց են ուղարկում Ղևոնդեոս և Աբերիոս, Կոստանդնուպոլսի եպիսկոպոսի՝ Պրոկղի մոտ, ըստ սովորության, իրենց թղթով և Թեոդորոս Մամուեստացու գրվածով, կամենալով վերահասու լինել, արդյոք ո՞րն է ընդունելի, իբր ճշմարիտ, Թեոդորոսի, թե Ռաբուլասի և Ակակիոսի ուսմունքը:

Itaque Proclus accipiens Armeniae episcoporum libellos et illud Theodori volumen, diligentius utraque examinans, tomum Armeniis scripsit et destinavit, in quo posuit, ad interimendas Nestorianorum versutias, qui duas in Christo inducunt personas, «unum de trinitate incarnatum», quem et direxit Joanni Antiocheno per Theodorum diaconum suum, continentem subter capitula ab haereticis prolata; expetens ab eo, pro communi fide servanda, ut cum suo concilio eum susciperet et subscriberet.

Այսպես Պրոկղը ստանալով հայ եպիսկոպոսների թուղթը և Թեոդորոսի գրվածը, ուշի ուշով քննեց երկուսն էլ, և հետո նամակ գրեց հայերին, որի մեջ ի ջնջումն նեստորականների նենգությունների, որոնք «զերկուս ի Քրիստոս մուծանին անձինս», դրոշմում է՝ «միոնն յերրորդութենէ մարմնացեալ»: Պրոկղը նամակն ուղարկում է Հովհաննես Անտիոքացուն իր Թեոդորոս[1] սարկավագի ձեռքով, որը պարունակում էր նաև քաղվածներ հերետիկոսներից, և խնդրում էր նորանից, որ հանուն ընդհանուր հավատի պահպանության նա իր եկեղեցու հետ պաշտպան կանգնի և ստորագրի:

---

[1] Հովհաննես Անտիոքացին Պրոկղին գրած նամակում անվանում է սարկավագին Թեոդոսիոս (diacono Theodosio), P. G., 65, col. 877:

Joannes autem et qui cum eo erant congregati episcopi, legentes tomum et ejus laudantes compositionem, subscipserunt in eo et Proclo transmiserunt...

Sed Basilius quidam diaconus sumens tomum Procli quem Armeniis scripserat, Alexandriam venit et Armenorum libellos suis libellis annectens, obtulit Cyrillo ejusdem urbi antistiti...

Itaque Basilius diaconus Constantinopolim veniens libellos composuit et archiepiscopo Proclo porrexit, associans cuncta quae ante hac Cyrillo archiepiscopo obtulerat.

Proclus vero iam destinaverat tomum suum Armeniis, in quo tomo nullam facit de Theodoro reprehensionis mentionem.

Quod cognoscens Basilius scripsit libellum in quo docuit libros Theodori vitandos, sicut Arii et Eunomii blasphemias...

Post haec autem occasione accepta surrexerunt quidam monachi ab Armenia Apollinaris sectatores duo vel tres (sicut refert Joannes Antiochenus in epistola sua) portantes excerpta capitula, ut dicebant, de libris Theodori Mopsuesteni, vel aliorum sanctorum patrum, qui in illo tempore, sicut diximus, contra Apollinarem scripserant: et intrantes regiam civitaten et multorum sordidantes auditum calliditate sua omnia perturbabant.

Deinde circumeuntes totius Orientis civitates et universa monasteria, damnanda esse cum auctoribus clamabant accusantes ea Nestoriam sensu fuisse conscripta: «quia si Nestorius juste damnatus est, damnentur et ista, dicebant, cum suis auctoribus».

Հովհաննես իր ժողովական եպիսկոպոսների հետ միասին կարդալով Պրոկղի նամակը հավանեցին նրա շարադրվածը, ստորագրեցին և դարձրին Պրոկղին:

Բայց ոմն Վասիլ (Բարսեղ) սարկավագ, վերցնելով Պրոկղի նամակը, որ գրված էր հայոց, մեկնեց Աղեքսանդրիա և հայոց թուղթն իր գրության հետ ներկայացրեց Կյուրեղին, նույն քաղաքի առաջնորդին:

Վասիլ սարկավագը վերադառնալով Կոստանդնուպոլիս, կազմեց մի թուղթ և հանձնեց Պրոկղ արքեպիսկոպոսին, կցելով նրան այն ամենը, ինչ որ դրանից առաջ ստացել էր Կյուրեղից:

Սակայն Պրոկղն արդեն ղրկել էր իր թուղթը հայերին, որի մեջ Թեոդորոսի վերաբերյալ ոչ մի հանդիմանական հիշատակություն չէր արած:

Այս բանը իմանալով Վասիլը մի թուղթ գրեց, որով հորդորում էր խորշել Թեոդորոսի գրերից այնպես, որպես Արիոսի և Եվնոմիոսի ամբարշտություններից...

Այնուհետև առիթից օգտվելով ելան Հայաստանից քանի մի վանականներ, Ապողինարի հետևորդ, երկու թե երեք հոգի (ինչպես հաղորդում է Հովհաննես Անտիոքացին իր նամակում) և առնելով իրենց հետ քաղվածներ, ինչպես իրենք էին հավաստացնում, Թեոդորոս Մամուեստացուց և կամ այլ սրբազան հայրերից, որոնք այս ժամանակ, որպես հիշեցինք, գրել էին Ապողինարի դեմ և մտնելով թագավորանիստ քաղաքը և շատերի ունկնդրությունը ապականելով իրենց նենգությամբ խռովեցին ամեն ինչ:

Ապա շրջելով ամբողջ Արևելքի քաղաքները և բոլոր մենաստանները պահանջում էին, որ դատապարտվեին այն քաղվածները իրենց հեղինակների հետ միասին, հանդիմանելով, որ նրանք գրված են նեստորական ոգով «թե Նեստորը արդարացի է դատապարտված, թող դատապարտվին և սրանք պնդում էին նրանք, իրենց հեղինակներով»:



Հիմք չկա բնավ կասկածելու լատին սարկավագի ճշմարտախոսությանը ոչ մի կետում, ոչ մի տողում: Ազգային աղբյուրները, որքան և պակասավոր, հաստատուն կռվան են տալիս ստուգելու և լուսաբանելու օտարի տեղեկությունները:

Մելիտինեի եպիսկոպոս Ակակիոսն իր թղթում գրում է՝ «Զաhի hարեալ թէ գուցէ և ի ձեր եկեղեցիսդ արատ գտեալ ճարակեսցի, լաւ համարեցաք ազդել առ ձեզ զհաստարակաց աւգուտն խորհելով». խոսքը նեստորականության մասին է: Թղթի վերջում պարզում է Ակակիոսն իր քայլի իսկական շարժառիթը:

«Բայց մեզ երկիւղ է, թէ գուցէ ի Թէոդորեա Մամուեստեայ ոխմանէն աշակերտեալ ոք գտցի եւ ի չար ժանգէն Նեստորի ի միամիտ անձինս ազդիցէ: Զի զնորա մնացեալ գրեանն իբրեւ խնդիրս այս յայտնեցաւ, եւ մանաւանդ որ վասն մարմնախառնին գրեալ էր, վճիռ հրամանի եռուն սուրբ աշխարհաժողով եպիսկոպոսացն, որ յԵփեսացւոց քաղաքին եղեւ. ի մի վայր ժողովել զբնաւ գրեանն եւ այրել: Արդ փոյթ լիցի ձեզ առանց պղտորութեան զհաւատսն պահել, զի կատարեալ զարդարութիւնն անապական ընկալջիք»[1]:

Պրոկղ պատրիարքի հայոց համար գրած թղթի հայերեն օրինակը խրատական է: Նա ցույց է տալիս, թե ինչպես էին այլայլվում պատմական վավերագրերը, դավանաբանական վեճերի տաքացած մթնոլորտում:

Պրոկղի նամակի հունարեն բնագիրը, որ տպված է **Mansi**, 9-րդ հատորում և արտատպված **Migne**, P. G., 65, 856, հաշվում է Ա-ԺԵ գլուխ: Հայերեն թարգմանությունը, որ զետեղված է «Գիրք թղթոց» հիշատակարանում, տասնևհինգ գլուխներից պահել է միայն Թ-ԺԵ: Ասորի թարգմանությունը պահվել է Զաքարիա Հռետորի «Եկեղեցական պատմության» մեջ[2]: Սա ևս մեզ հետաքրքրող կետերում զանազանվում է հունարենից, բայց չի մոտենում էապես հային: Մեր նյութը պահանջում է կանգ առնել մի վայրկյան այս կարևոր թղթերի քննության վրա:

Հույն բնագիրը վերջին ԺԵ գլխում ասում է. *ταῦτα δὲ πρὸς τὴν ὑμετέραν ἐπεστείλαμεν ἀγάπην ἐκ τῶν ὑμετέρων προτραπέντες λιβέλλων, ὧν πρὸς ἡμᾶς διεπέμψασθε, φήσαντες λυμεῶνάς τινας καὶ τερατολόγους ἀνϑρώπους ἑαυτοὺς ἐπειφρῆσαι τῇ ὑμετέρᾳ χώρᾳ βουλομένους διὰ πονηρῶν γραμμάτων καὶ τῶν ἀντισϑέσεων τῆς ψευδωνύμου γνώσεως διαστρέφειν τὸ ἁπλοῦν καὶ ἀμαγγάνευτον τῆς ὀρϑοδόξου πίστεως κάλλος.*

[1] «Գիրք թղթոց», էջ 14-15:

[2] «Die sogenannte Kirchengeschichte des Zacharias Rhetor», ed. Ahrens u. G. Krüger, 1899, Teubner-ի շարքում: Անգլերեն թարգմ.՝ «The Syriac Chronicle of Zacharia of Mytilene», ed. Hamilton and Brooks, 1899.

Հայը թարգմանում է «Եւ զայս ամենայն զի գրեցաք. առ ձեր սէր այդր, զի լու եղեւ մեզ եթէ արք ոմանք ժանդախաւսք, ցնորախաւսք անկան |ի| յաշխարհ այդր եւ կամին ժանդաժուտ[1] իմն գրովք, հակառակութեամբ ստարան |խ|խտախորհուրդ գիտութեան[2] խոտորել զպարզամտութիւն, զանպաճոյճ զանմեղենայ, զուղղափառ զեղն հաւատոյն»[3]:

Բնագրի ընդգծված տողերը, որ նշանակում են. «գրում ենք դրդված ձեր թղթից, որ դրկել էիք մեզ», թողնված են հայ թարգմանության մեջ: Հունարենից երևում է, որ պատրիարքի գրությունը մի պատասխան է այն դիմումին, որ արել են հայերը: Մինչդեռ հայն այնպես է ձևացնում, իբր պատրիարքից է ծագում նախաձեռնությունը, որը լսելով՝ «լու եղեւ մեզ», հավատին սպառնացող վտանգը, հարկ է տեսնել զգուշացնել թղթով հայերին:

Ասորի թարգմանությունը ևս ձգած է հիշյալ տողերը, բայց չի փոխարինել ուրիշ բանով: Ասորին նայում է թղթի վերա իբրև մի կարևոր դավանաբանական գրության և հանել է այն տողերը, որպեսզի թղթին ընդհանուր բնավորություն տա և ոչ լոկ հայկական: Երևի, նույն նպատակով է, որ մի կողմ է նետել և սկզբի ներածական խոսքերը.

1. *Οὐ μετρίως ἀδελφοί, συνέχειν ἡμῶν τὴν ψυχὴν καὶ τὸν λογισμὸν τυράννῳ λύπῃ καὶ ἔτρωσεν ἡ ψήμη τῶν νεαρῶν τῆς ἀπάτης ζιζανίων, ἅπερ ἔναγχος τῇ ὑμετέρᾳ πανούργως ἐπέσπειρε χώρᾳ ὁ κοινὸς τῆς φύσεως ἐχθρός.*

Հայերենի մեջ ևս պակասում են այս խոսքերը, ինչպես և հետևյալ ութ գլուխները և նրանց փոխարեն գտնում ենք հայ ինքնասիրությունը շոյող առաջաբան: Թվում է, որ և այս կետում օտար ձեռք է սահել Պրոկղի թղթի վերայից:

Բարեբախտաբար **«Կնիք հաւատոյ»** կարևոր գործը, որ վերջերս լույս տեսավ Էջմիածին, լրացնում է թերի գլուխներից Գ-Թ և պարզում է առաջաբանի ծագումը: Սակայն պիտի խոստովանենք, մեր կասկածները դեռ չեն փարատվում ողջովին:

Նոր ստանալով շնորհակալությամբ Մեսրոպ արքեպիսկոպոսից **«Կնիք հաւատոյ»** [գիրքը] (4) և ծանոթանալով հ. Ա. Վարդանյանի հոդվածին («Հանդես ամսօրյա», 1921 թ.) շնորհիվ հայր Համազասպ Ոսկյանին, չենք կարող անպայման հարել այն կարծիքին, որ պաշտպանում է Կարապետ եպիսկոպոսն իր ներածության մեջ և որին համամիտ է հ. Վարդանյանը (5):

[1] Ցոփն. ժանդաժող =πονηρός, զոր հ[այր] Ա. Վարդանյան ուղղել է ժանդաժուտ, «Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes», 1913, էջ 422 և «Հանդես ամսօրյա», 1920:

[2] Ցոփն. գիտութեամբ, ուղղելի է գիտութեան = γνώσεως:

[3] Ուղղափառ ὀρθόδοξον, թե պետք է կարդալ հաւատոյն դեղն:



Վերջինս ընդունում է, որ Եզնիկի **«Առ Սուրբ Սահակ Հայոց հայրապետ** եւ առ Սուրբ Մաժդոց մեղայականը» թղթերի անկումով կամ ետևառաջությամբ խառնվել են Պրոկղի թղթին և կազմել մեկ ամբողջություն ու Եզնիկ անունն էլ տեղի է տված Պրոկղի: Միանգամայն հնարավոր է:

Սակայն խնդիրն այն է, որ Եզնիկի թուղթը գրված է **միմիայն** Մաշթոցին, ինչպես վկայում է **«Կնիքը»** («զոր գրեաց ի Կ. Պոլիս առ երանելին Մաշդոց», էջ 130) և հաստատում է թղթի ոճը, ուր խոսում է եզակի դեմքով («աղաւթից **քոց** [իմա աղաւթիւք քոյ] տեառն սրբութեան» ընթերցումը գերադասելի է քան «աղաւթիւք **ձեր**», տե՛ս «Կնիք», էջ 130): Հետևապես, քանի որ Պրոկղի խառնակված թուղթը սկսվում է Եզնիկի Առաջաբանով, պետք էր սպասել, որ վերնագիրը ևս լիներ Եզնիկ առ Մաշդոց:

Մյուս կողմից Եզնիկի թուղթը հասարակ մեղայական չի եղել: **«Կնիքի»** մեջ նորա անունով մի դավանաբանական հատված կա (էջ 51), որ հավանորեն առնված է նույն առ Մաշթոց թղթից: Երևում է, որ նրա թուղթը անդրանիկ հաշիվ է այն խնդիրների, որոնց համար հայերը սպասում էին Պրոկղի գրության: Գուցե և Եզնիկն է վերջինիս բերողը և թարգմանիչը (ուրիշ տեղ նկատել ենք թղթի «աչք բժարեր» նախադասության նմանությունը **«Ընդդեմ աղանդոցի»** սկզբի «զաղտն եւ զբիժն» և այլն):

Եզնիկի և Պրոկղի թղթերը սերտորեն կապված են միմյանց և բնավ արհամարհելի ենթադրություն չէ, որ մեկի առաջաբանը կամավ կցվեր մյուսին մի ամբողջություն կազմելու և Պրոկղի բերանը դնելով Եզնիկի խոսքերը Սահակի և Մաշթոցի հեղինակությունը բարձրացնելու համար: Ավելորդ կասկածամտություն չէ, քանի որ օտար միջամտության հետքերը Պրոկղի թղթում անուրանալի են: Ուշագրավ է այս տեսակետից և նրա վերջաբանության մի կտորը, որ չկա հունարենում, և ուր հիշվում են **Նեստորիոսն** և **Թեոդորոսը** («եւ մի ի նզովք ի դժոխս կործանեսցի»): Այս խորթ հավելումը արդյոք նույն եզնկյան թղթից չէ՞ առնված: Ինչ և լինի նրա ծագումը, անպայման, միտումնավոր հավելված է[1], որ նպատակ ունի ընդառաջ գնալ Սահակի և Մաշթոցի պատասխան-թղթի մի կարևոր կետին:

Սրանք իրենց պատասխանում նախ հավատացնում են, որ միջոցներ են ձեռք առնված մոլորության դեմ. «թղթոյդ տրտամակից եղեալ... յամենայն տեղիս որ շուրջ զմեւք բնակեալ էին յղեցաք, մեծ եւ պատուհասալից պատուիրանաւ մի՛ լսել բնաւ ամենեւին զայդպիսի բարբարոսս (երևի

[1] **Ն. Ջնդոյան**, որ ըստ հ[այր] Վարդանյանի (ՀԱ, 1921), հրատարակել է Պրոկղի թուղթը 1890 թվին **«Պատկեր»** թերթում, կարծում է, որ հավելվածը պատկանում է Լիբերատուսի մոտ հիշված Բարսեղ սարկավագին: Բարսեղը հայ շրջաններին մոտ մարդ է. նորա ազդեցությամբ կարող էր Եզնիկ հիշել այն անունները, որից այնպես խուսափում էր զգուշավոր Պրոկղը, եթե ընդունենք, որ հավելվածը Եզնիկից է առնված: Այս մտքով իրավացի է Ջնդոյանի կարծիքը:

քարքարիտս), մի ընդունել ամենևին զվնասաբեր կորստական մոլորական հերեսիութեանն վարդապետութիւնն»[1]:

Իսկ թղթի վերջում հայտարարում են. «Եւ որ Թէոդորեայ Մամուեստացւոյ աշակերտեալք իցեն առ ժամանակս ի շնորհացն Աստուծոյ այնպիսի ինչ ասստ չեւ է յայտնեալ, ապա թէ իցէ ծածկեալ ի ժանգոյ աղտեղութեան, ի հարկէ ջան լիցի մեզ խլել զխոչն, եւ զգայթակղութիւնն զայն ի միջոյ ի բաց կորուսանել»[2]:

Օտարոտի են Թեոդորոսի հասցեին ուղղված խոսքերը: Երևում է, որ որոշ հարցի պատասխան է: Սակայն Պրոկղի թղթում այդպիսի հարց չկա, և Թեոդորոսի անունը չի հիշվում: Ակամայից կասկած է ծագում պատասխանի հարազատության դեմ: Ավելի ճիշտ ասած, թվում է թե ուրիշ թղթի պատասխան է, հարմարեցրած Պրոկղի թղթին:

Եվ իիրավի: Մելիտինեի եպիսկոպոս Ակակիոսի «Թուղթ առ սուրբ Սահակ հայոց հայրապետ» գրության մեջ, կարդում ենք.

«Բայց մեզ երկիւղ է, թէ գուցէ ի Թէոդորեա<յ> Մամուեստեայ ուսմանէն (յօրին. ախմանէն) աշակերտեալ ոք գտցի եւ ի չար ժանգէն Նեստորի ի միամի՛տ անձինս ազդիցէ. զի զնորա մնացեալ գրեանն, իբրեւ խնդիրս այս յայտնեցաւ, եւ մանաւանդ որ վասն մարմնախառինն գրեալ էր, վճիռ հրամանի ետուն սուրբ աշխարհաժողով եպիսկոպոսացն, որ յԵփեսացւոց քաղաքին եղեւ ի մի վայր ժողովել զբնաւ գրեանն եւ այրել»[3]:

Անտարակույս, Ակակիոսի այս երկյուղն է այն խնդրելի կետը, որ պարտավորեցրել է հիշյալ վիճելի պատասխանը: Ուրեմն Պրոկղի թղթի պատասխանը նկատի ունի Ակակիոսի և ոչ Պրոկղի թուղթը:

Մեզ հասած է, սակայն, և Ակակիոսի թղթի պատասխանը: Խնդիրն այն է, որ այդ պատասխանը ոչնչով չի զանազանվում այն թղթից, որ կրում է «Պատասխան թղթոյն Պրոկղի» վերնագիրը: Միևնույն գրության կրկնակի պատճեններ են ըստ էության: Տարբերությունն այն է, որ Պրոկղի պատասխանի մեջ մուծված է մի հատված, քաղկացած գլխավորապես հավատո հանգանակից: Բացի դրանից Թեոդորոսին վերաբերյալ կետը Ակակիոսի պատասխանում համառոտ է և առանց անվան հիշատակության, այսպես. «Այլ յաղանդոյն որ գրեցէր զարշե՛լ, առ ժամանակս ի շնորհս Աստուծոյ, այսպիսի ինչ չեւ է հասեալ. ապա եթէ իցէ ինչ ծածկեալ ի ժանգոյ անտի, ի հարկէ ջան լիցի խլել զխոչն ի միջոյ»[4]:

Կարելի էր կարծել, որ միևնույն թղթի օրինակներն, որքան և անպատեհ,

[1] «Գիրք թղթոց», էջ 10:

[2] Անդ, էջ 13:

[3] Անդ, էջ 15:

[4] Անդ, էջ 18:



ղրկված են և՛ Պրոկղին, և՛ Ակակիոսին: Բայց քանի որ վերև պարզեցինք, որ Պրոկղի թուղթն հետևանք էր հայոց դիմումի և իբր դավանաբանական ճառ հավատո մասին, *περὶ πίστεως*, թերևս պատասխանի պետք չուներ, մնում է ենթադրել, որ թուղթը սկզբնապես միայն Ակակիոսի համար է եղել պատրաստված: Հետագայում նույն օտար ձեռքը, որ Պրոկղի թղթին այն ձևն է տալիս, իբր թե նա է առաջին գրողը և հայերը՝ նրան պատասխանողը, նույն ձեռքը հարկադրվում է կազմել կեղծ պատասխան առ Ակակիոս թղթի հետևությամբ:

Այս տեղի է ունեցել Կոմիտաս [կաթողիկոսից] առաջ, քանի որ «Կնիք հաւատոյ» - ն արդեն ծանոթ է Սահակի և Մաշթոցի պատասխան թղթին[1]: Արդյոք այս միջոցի՞ն է մուծված և վերոհիշյալ հավելվածը Պրոկղի թղթի վերջաբանության մեջ, որպեսզի արդարացվին Սահակի և Մաշթոցի պատասխանի ակնարկները Թեոդորոսի հասցեին: Եզնիկի և Պրոկղի թղթերի խառնումը պատահական, թե դիտավոր Կոմիտասից հետո է: Եթե ընդունենք, որ դիտավորյալ է, հավելվածը պիտի վերագրել այն ձեռքին, որ խառնել է հիշյալ թղթերը, վերցնելով այն Եզնիկից[2]:

Թեոդորոսի անվան հանդեպ որոշ նրբանկատությունը հասկանալի պիտի լինի, մանավանդ եթե չմոռանանք նրա մերձավոր ծանոթությունը Մաշթոցի հետ:

Մեզ հետաքրքրող թղթերի վերա նկատելի է VI դարի դավանաբանական վեճերի հեռավոր ստվերը: Հայտնի է, որ Եփեսոսի ժողովի գործերը ևս զերծ չեն Ե տիեզերական ժողովի շնչից: Վեցերորդ դարի առաջին կիսում, երբ Հայ եկեղեցին մարտնչում էր նեստորականության դեմ, բնավ ցանկալի չէր ցույց տալ, որ Նեստորի ուսմունքը հայտնի էր հայերին՝ տակավին հայ դպրության արշալույսին: Միանգամայն խոտելի պիտի թվեր Մաշթոցի և կամ Սահակի ծանոթությունը Նեստորի ուսուցիչ Թեոդորոսի հետ:

Ակակիոսի և Պրոկղի պատասխան թղթերում մեղմացրած են այն տեղերը, ուր խոսքը Թեոդորի և Նեստորի մասին է: Ինչպես վերև բերած կտորներից կարելի է տեսնել, միանգամ խոստովանում են նեստորականների գործունեությունը, ասելով, որ ամեն կողմ մարդ է ուղարկված «մեծ եւ պատուհասալից պատուիրանաւ մի լսել բնաւ ամենեւին զայդպիսի բարբարոսս»: Իսկ մյուս անգամ կարծես ժխտում է. «ի շնորհացն Աստուծոյ

[1] «Կնիք հաւատոյ», Ս. Էջմիածին, 1914, էջ 129:

[2] Հ[այր] Ա. Վարդանյան իր ընտիր սրբագրության մեջ հանում է բնագրից միանգամայն «Թեանց եւ Մարեթոնեաց» կամ «Մաթեայ եւ Մարաթովգայ» առեղծվածային անունները: Թվում է թե վաղաժամ է: Երկու անգամ կրկնվող անունները կարող են, եթե պարզվեն, թերևս ժամանակագրական նշանակություն ունենալ: Մարաթոնը Նիկոմեդացի եպիսկոպոս էր և Մակեդոնի հետևորդը, ուստի և երբեմն նորա անունով է կոչվում Մակեդոնի աղանդը, ինչպես վկայում է Սոկրատես, «Եկեղեցական պատմություն», II, 45: Διὰ καὶ Μαραδωνιανοὺς καλοῦσιν αὐτούς. Հիշում է նաև Հովհան Ոսկեբերան. Ἄριος, Εὐνόμιος, Μαραδώνιος, **Migne**, P. G., t. 59, col. 569.

այնպիսի ինչ ասա չեւ է յայտնեալ», ավելացնելով զգուշությամբ «ապա թէ իցէ ծածկեալ ի ժանգոյ աղտեղութեան»:

Ակակիոսի երկրորդ թուղթն, ուղղված հայ նախարարներին, վկայում է, որ արդարև նեստորական քարոզը մուտ էր գործել Հայաստան: «Աղաչեմք, որ արդարև նեստորական քարոզը մուտ էր գործել Հայաստան: «Աղաչեմք, ո՛ր պատուակամի ոք զձեզ խաբեսցէ, - գրում է Մելիտինի եպիսկոպոսը, - մի՛ պատուականութիւն երեսաց, մի՛ բազմութիւն, մի՛ թողացուսցուք զճշմարիտ հարցն նութիւն երեսաց, մի՛ բազմութիւն, մի՛ թողացուսցուք զճշմարիտ հարցն կրաւնս եւ զհաւատ որով հաւատացայքն, որով ապրեցայքն, զայս հարկեցայ գրել առ սէր ձեր. զի ի գալ առ մեզ սիրելեաց մերոց երիցանց Հոնայ, Քոքայ, Անձնայ, պատմել մեզ զբարի գործսն զոր գործիցէք, զի զգրեալսն Դիոդորի կապեցէք, կնքեցէք: Արդ մի ոք հաւանեցուսցէ զձեզ տալ անդրէն զայնոսիկ, որք փութով եւ ախորժալով սատանան զայն ի կործանումն առաջաւղաց նոցա եւ լսաւղաց. զի եթէ Նեստորիոս վերացաւ յամենայն եկեղեցեաց, զիա՞րդ Դիոդոր<ի>ն գիրքն եւ տառսն (յօրին. խառն) ընդունելի իցէ, որք զնոյն միտս եւ վնասակարութիւն ունին»[1]:

Դիոդորոս Թեոդորոսի ուսուցիչն է. վերջերը նրան ևս հայտարարեցին եկեղեցական հայրերը մեղապարտ նեստորականության համար: Սակայն Ակակիոսի ժամանակ կասկածի տակ էր բռնված Թեոդորոսը: Սորա մասին էին գրել հայերին, թե՛ Ակակիոսը և թե՛ Եդեսիայի եպիսկոպոս Ռաբուլասը: Այս երևում է ոչ միայն Ակակիոսի քանիցս եղած թղթից, այլ և Լիբերատուսի վկայությունից, որ բերեցինք վերև: Թեոդորոսի տեղ Դիոդորոսի հիշատակությունը արժանի է ուշադրության:

Դառնանք այժմ Կորյունին, Մաշթոցի կենսագրին: Կորյունին քաջ հայտնի է Թեոդորոս Մամուեստացու անվան շուրջը հարուցած աղմուկը: «Յայն<մ> ժամանակի, - պատմում է Կորյունը, - բերեալ երևեցան Հայաստան աշխարհին գիրք սուտապատումք, ընդունայնախաւս աւանդութիւնք առն ուրումն Հռոմի, որում Թէոդ<որ>իոս անուն: Վասն որոյ սինհոդոսական հայրապետաց եկեղեցեացն սրբոց նշանակեալ ազգ առնէին ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ եւ Մաշթոցի: Եւ նոցա ճշմարտասէր փութով զայն ի միջոյ բարձեալ աշխարհահալած արտաքոյ իւրեանց մերժեցին, զի մի՛ ի լուսաւոր վարդապետութիւնն ծուխ ինչ սատանայական յարիցէ»[2]:

«Այր ոմն Հռոմ Թէոդիոս անուն», որ իրավամբ ուղղելի է Թեոդորոս (թերևս ձեռագրի Թէոդրոս սխալ ընթերցմամբ Թէոդիոս) ոչ այլ ոք է եթե ոչ Մամուեստա հայտնի եպիսկոպոսը:

Այս մասին կասկած լինել չի կարող: Օտար աղբյուրներից հայտնի

1 «Գիրք թղթոց», էջ 21:

2 Կորյուն, Պատմութիւն վարուց և մահուան Սրբոյ Մեսրոպայ վարդապետի մերոյ թարգմանչի, Վենետիկ, 1894, էջ 40-41:



փաստերը, որոնց վերա ծանրացանք վերև, հաստատում են Կորյունի խոսքերը, այլ և նոր լույս են սփռում հայ հեղինակի կցկտուր տեղեկության վերա: Մյուս կողմից Մաշթոցի աշակերտի և կենսագրի կարծես ակամա խոստովանությունը Թեոդորոսի մասին նշանակալից է և վկայում է հօգուտ *Μαστούβιος* -ի առաջարկածս սրբագրության:

Կորյունի երկը քննության պետք ունի, որ թողնելու է ուրիշ անգամվա, որպեսզի չշեղվենք մեր անմիջական խնդրից: Նկատենք, սակայն, որ Մաշթոցի կենսագիրը շատ հեռու է բավարարելու այն պահանջներին, որոնք կարելի է առաջադրել մի աշակերտի, որ գրում է իր ուսուցչի կյանքը: Կորյունը, որքան ճոռոմաբան, նույնքան սակավագետ է: Գուցե և ավելի գիտե, քան հայտնում է մեզ: Խոստմնալից Առաջաբանը, ուր ուզում է նավել «զհամատարած ալեօքն վարդապետական ծովուն», նման է շքեղ մուտքի, որ տանում է մի խեղճ տնակ: Ուստի և վերջաբանությունը, ուր հայտարարում է, որ «ոչ եթէ ի հին համբաւուց տեղեկացեալ» մատենագրում է, այլ «որոց մեր իսկ ականատես եղեալ», թողնում է բոլորովին հակառակ տպավորություն:

Ականատեսից շատ ավելի կարելի էր սպասել, մանավանդ, այնպիսի խնդրում, ինչպես է հայ գրի և դպրության ծագումը: Մաշթոցն ավելի քան արժանի էր, որ երախտապարտ սերունդը գիտենար նրա կյանքը և նշանավոր եղացման մանրամասնությունները:

Դժբախտաբար, Կորյունի պատմությունից հետո էլ գրերի գյուտը մնում է գաղտնի: Մաշթոցին տանում է Կորյունը ասորական քաղաքները, Ամիդ և այնտեղից Եդեսիա, և ուրիշ բան չէ ասում նրա ճանապարհորդության և կամ նրա ելքի մասին, քան այն, որ Եդեսիայում երկար տքնությունից հետո նրան «պարգեւէր վիճակ յամենաշնորհողէն Աստուծոյ հայրական չափուն ծնեալ ծնունդս նորոգ եւ սքանչելի սուրբ աջովն իւրով նշանագիրս հայերեն լեզուին»:

Եդեսիայից գնում է Մաշթոց Սամոսատ, որպեսզի Հռոփանոս ոմն հմուտ գրիչի օգնությամբ «զամենայն ընտրութիւնս նշանագրոցն... յօրինեալ, եւ յանկուցեալ» ի թարգմանություն դառնա:

Սամոսատից գալիս է նորեն Եդեսիա և տեղվույն եպիսկոպոսի թղթով իր նորագյուտ տառերով վերադառնում Հայաստան «ի վեցերորդ ամի Վռամշապհոյ արքային Հայոց»: Ղազար Փարպեցու գիտելով, Վռամշապուհ գահ էր բարձրացել պարսից Շապուհ [III] թագավորի օրով (383-388). Կորյուն, աներկբա, այլ կարծիք ունի հիշյալ թագավորի ժամանակի մասին, քանի որ պարզ հայտնում է. «դպրութիւն հայոց յութերորդ ամէ Յազկերտի առեալ սկիզբն»: Հազկերտն թագավորել է 399 թվին (պարսկական տարին սկսում էր օգոստոսի 14-ին). ուրեմն, ութերորդ տարին գալիս է 406 թ. օգոստոսի - 407 թ. օգոստոսի:

Սակայն և այս թվի արժեքը նսեմանում է և գրեթե ոչնչանում, երբ Կորյունը հավաստացնում է, որ Մաշթոցը «երթեալ հասանէր ի կողմանս Արամի ի քաղաքս երկուց ասորոց, որոց առաջինն Եդեսիա կոչի եւ երկրորդն Ամիդ անուն, ընդդէմ լինէր սուրբ եպիսկոպոսացն, որոց առաջնոյն Բաբիլաս անուն եւ երկրորդին Ակակիոս»:

Արդարև, արտաքին աղբյուրներից քաջահայտ է, որ Ակակիոսը Ամիդի եպիսկոպոսն էր մոտավորապես սկսած 419/ 420 թվականից: 420 թվին իբրև եպիսկոպոսն էր ներկա էր Սահրալահի ժողովին[1]: Թեոդոսիոս նույն քաղաքի եպիսկոպոս ներկա էր Սահրալահի ժողովին... կայսեր և Վռամ թագավորի զինական բախումների ժամանակ Ակակիոսը հանդիսանում է նաև իբրև քաղաքական գործիչ և 422 թվին կայսեր կողմից Վռամի մոտ ղրկվում և թերևս որոշ դեր ունենում խաղաղության դաշինք կնքելու նույն թվին (Սոկրատ, Եկեղեցական պատմություն, Է, 21):

Ինչ վերաբերում է Բաբիլասին, սա ոչ այլ ոք է եթե ոչ Եդեսիայի հռչակավոր Ռաբուլ(աս) եպիսկոպոսը. և ուրեմն՝ Բաբիլաս ուղղելի է Ռաբիլաս:

Սա եպիսկոպոսական աթոռի վերա էր 412-435[2]: Եփեսոսի ժողովի մասնակից էր. սկզբում Հովհաննես պատրիարքի, այսինքն՝ նեստորա-կանների բանակում, բայց հետո՝ 431-432 թվին անցավ Կյուրեղ Աղեքսանդ-րացու կողմը, ինչպես պատմեցինք վերև:

Եթե Մաշթոց Ամիդում ներկայացել է Ակակիոսին և Եդեսիայում Ռաբուլասին, այդ կարող էր լինել 420 թվից ոչ առաջ և ոչ ուշ, քան 435 թիվը: Եվ եթե իրավ այդ ճանապարհորդության հետ է կապված տառերի գյուտը, ակներև է, որ նա չէր կարող տեղի ունենալ Հազկերտի ութերորդ տարին - ժամանակական անհեթեթություն:

Դարձյալ Կորյունը պատմում է, որ Մաշթոցը ցանկանալով նոր գյուտի բարիքը տարածել և Հայաստանի հունական բաժնում, ստիպված է լինել գնալ կայսեր մոտ թույլտվություն խնդրելու: Եվ զարմանալի է, որ հետը առնում տանում է «զբազմութիւն աշակերտացն ի քաղաքն Մելիտինացւոց եւ յանձն առնէր սրբոյ եպիսկոպոսի քաղաքին, որ Ակակիոսն կոչէին. եւ գլխաւոր աշակերտացն թողոյր զայն, որում Ղեւոնդէոսն կոչէին»: Իսկ ինքը Դերջանա Գինթ եպիսկոպոսի հետ ուղևորվում է մայրաքաղաք և «մտեալ առաջի պատուական աթոռոյն յանդիման լինէր աստուածակարգ թագա-ւորացն եւ հայրապետին սրբոյ կաթուղիկոսին աշխարհամուտ դրանն, որում Ատտիկոս կոչէին»:

[1] **Chabot**, Synodicon Orientale, p. 276. հմմտ. **Labourt**, Le Christianisme dans l'empire perse, p. 101.

[2] Ըստ «Ժամանակագրութեան Եդեսիոյ», Ռաբուլաս աթոռ է նստել 723 թվին Սելևկյան = 412 և մեկնել է 746 թ. 8 օգոստոս - 435 թ. 8 օգոստոս, «Chronique d'Edesse», Texte und Untersuchungen. Harnack, IX, 1.



Մելիտինի եպիսկոպոս Ակակիոսը նույն անձն է, որի մասին խոսեցինք վերև, ջերմ կյուրեղական և անվեհեր պայքարող Եփեսոսյան վեճերի ժամանակ Անտիոքյան կուսակցության դեմ: Հիշեցինք նրա թղթերը հայերին: Այն գիտնականները, որոնք ամեն կերպ աշխատում են Կյուրեղին քարշել դեպի քաղկեդոնականություն, չեն վարանում Ակակիոսին իր անհողդողդ հետևողականության համար անվանել միաբնակ:

Հները ամենայն դեպքում այլ կարծիք ունեին նրա շիտակ գործու-նեության մասին. և նրա ուղղամտության փայլուն վկայականն այն է, որ թե՛ հույն և թե՛ լատին եկեղեցին տոնում են նրա հիշատակը սրբերի շարքում, առաջինը՝ ապրիլի 17-ին *Τοῦ ἐν ἁγίοις πατρὸς ἡμῶν Ἀκακίου, ἀρχιεπισκόπου Μελιτηνῆς, τοῦ θαυματουργοῦ*, իսկ երկրորդը՝ մարտ ամսի 31-ին, նաև սեպտեմբերի 15-ին:

Կ. Պոլսի պատրիարք Ատտիկոսը մեռած է 10 հոկտեմբերի 425 թ.: Ասել է թե Մաշթոցը այնտեղ պետք է եղած լինի 425 թվից առաջ, և ուրեմն առաջին այցը Ամիդ և Եդեսիա ընկնում է ոչ միայն 435 թվից, այլ և 425 թվից առաջ: Ի միջոցի 420-425 տարիների Մաշթոց դառնում է Հայաստան և «հասեալ ի նոր քաղաքն յանդիման լինէր սրբոյ եպիսկոպոսին Սահակայ եւ թագաւորին Հայոց, որում անուն Արտաշէս կոչէին»:

Այնուհետև «երկու երանելիները», Մաշթոց և Սահակ սկսում են պարապել թարգմանությամբ «ըստ յառաջագոյն սովորութեան»՝ «որոց դարձեալ դէպ լինէր, - պատմում է Կորյուն, - եղբարս երկուս յաշակերտացն յուղարկել ի կողմանս ասորոց ի քաղաքն Եդեսացւոց, զՅովսէփ եւ երկրորդն Եզնիկ յԱյրարատեան գաւառէն ի Կողբ գեղջէ, զի յասորական բարբառոյն զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս հայերէն գրեալս դարձուցեն: Իսկ թարգմանչացն հասեալ ուր առաքեցան և կատարեալ զհրամանսն եւ **առ պատուական հարսն** առաքեալ զնային ի կողմանս յունաց, ուր եւ ուսեալք եւ տեղեկացեալք թարգմանիչս կարգէին ըստ հելլենական լեզուին:

Ապա **յետ ժամանակի** ինչ ընդ մէջ անցելոյ դէպ լինէր ոմանց եղբարց ի Հայաստան աշխարհէս դիմել իջանել ի կողմանս յունաց որ եւ **Ղեւոնդէս** առաջնոյն անուն էր եւ երկրորդին **Կորիւն** եւ մատուցեալ յարէին յԵզնիկն իբրև առ ընտանեգոյն սննդակից ի Կոստանդինական քաղաքին եւ անդ միաբանութեամբ հոգեւոր պիտոյիցն զխնդիրն վճարէին: Որոց յետ այնորիկ հաստատուն արինակաւք աստուածատուր գրոցն եւ բազում շնորհագիր հարց յետ այնր աւանդութեամբք եւ Նիկիական եւ Եփեսոսական կանոնաւք գային երեւելով յաշխարհին Հայոց եւ առաջին դնէին հարցն զբերեալ կտակարանսն եկեղեցւոյ սրբոյ»[1]:

[1] **Կորյուն**, էջ 33:

«Ցետ այնորիկ» և «յետ ժամանակի» անորոշ դարձումները ցույց են տալիս, որ կամ պատմիչն անգետ է և կամ չի ուզում ճշգրիտ լինել որևէ դիտավորությամբ:

Ղևոնդի և Կորյունի երթը Կ. Պոլիս կայացած պիտի լինի Եփեսոսի ժողովից հետո. և ոչ շատ ուշ, քանի որ նորա որոշումները տակավին չէին հասել հայերին և Ղևոնդն ու Կորյունն էին, որ բերեցին: Տեսանք, որ Պրոկղ Լիբերատուսը հիշատակում է երկու հայի առաքումն ի Կ. Պոլիս պատրիարքի մոտ, որոնց անուններն են Ղևոնդեոս ու Aberium. վերջին Հայր Մ. Չամչյանն ուղղում է «Աբրաանունն, անշուշտ, աղավաղված է: Այսպիսի հայտնի համ» առանց որևէ հիմքի[1]: Մեզ թվում է, որ Լիբերատուսի հայտնի դեսպանությունը նույնն է, ինչ որ հիշում է Կորյունը և որին մասնակցել է ինքը: Ոչ միայն ժամանակը, այլ մանավանդ Ղևոնդի անունը երաշխավորում են մեր վարկածի հավանականությունը:

Ղևոնդը Վարդանանց պատերազմի հռչակավոր երեցն և նահատակն է: Ղևոնդը Վարդանանց պատերազմի հռչակավոր երեցն և նահատակն է: Նա Պատգամավորության երկրորդ անձը, որ ըստ Կորյունի, ինքն է, հետևաբար, նույնանում է Լիբերատուսի Aberium-ի հետ: Ինչպես մեկնել **Կորյուն** և Aberium անվանց հարաբերությունը, դժվար է գուշակել: Լիբերատուսի աղբյուրը Եփեսոսի ժողովի արձանագրություններն են և Կյուրեղի նամակները՝ հիշատակարաններ, որոնք գրված են եղել հունարեն: Արդ Կորյուն գրված *καυριον* նախընթաց *και* շաղկապի ազդեցությամբ *λεοντιον και κ|αυριον* կարող էր դիպվածով կորցնել սկզբի հնչյունը, dittographie թվելով գրչին: Հնագրության տեսակետից անհնար չէ նաև սկզբի ko կամ kau-ի իրր *αυε* թյուր ընթերցումը: Լատինն ուրեմն, կարդացել է abe փոխանակ ave<kau:

Թերևս առարկվի, որ Կորյունի ասելով նրա և Ղևոնդի հանձնարարական էր հոգալ հոգևոր պիտոյից խնդիրն և «աստուածատուր գրոց հաստատուն օրինակ»-ը, մինչդեռ Լիբերատուսի հիշատակած դեսպանությունը դավանաբանական լուրջ հարցի համար էր. Կորյուն, եթե մասնակից էր, չէր կարող անգիտանալ և ուրեմն ավելի ստույգ տեղեկություն պիտի սպասեինք նրանից:

Արդյամբ իրավունք ունինք կասկածելու Կորյունի ճշմարտախոսությունը, ավելի ճիշտ ծածկամտությունը: Եզնիկ և Հովսեփ Ողեսիայից անցել էին Կ. Պոլիս և դեռ այնտեղ էին, երբ եկան Ղևոնդ և Կորյուն: Ի՞նչ պետք կար նոր մարդ ղրկելու հեռավոր մայրաքաղաքը Սուրբ Գրքի ստույգ օրինակը բերելու համար: Բավական էր պատվեր ուղարկել Հովսեփին և Եզնիկին, մանավանդ որ ուրիշ նպատակ էլ չունեին սրանք, եթե ոչ

[1] Միքայել Չամչյան, Պատմութիւն Հայոց, հատ. Ա, Վենետիկ, 1784, էջ 527:



թարգմանական գործունեություն: Ակնհայտնի է, որ նոր դեսպանությունը մի այլ առաքելություն պիտի ունեցած լինի: Եզնիկին հարելը և «միաբանութեամբ հոգևոր պիտոյից զխնդիրն վճարել»-ը ցույց խուլ ակնարկ է և ընդհանուր բնորոշում այն հանձնարարության, որի մասին խոսել ի լուր աշխարհի անպատեհ է համարում մեր պատմիչը:

Կորյունը հասարակ կենսագիր չէ, նա և եկեղեցական գործիչ է և իբր այդպիսին պետք է իր գրիչը համակերպեր հետեփեսոսյան տրամադրության: Հայոց կապերը Ասորիքի հետ այժմ պիտի խորշելի թվեր: Մենք տեսանք, որ Եփեսոսի ընդդիմադիր ուժերը կենտրոնացան Անտիոքի աթոռի շրջանում, գլուխ ունենալով պատրիարքին: Հայերը որոշակի բռնել էին Կյուրեղի կողմը: Մելիտինի եպիսկոպոս Ակակիոսը, որ երևում է և ծագումով մոտ էր հայերին, վճռական դեր ունեցավ և այս խնդրում՝ հավատ ներշնչելով իր հայրենակիցներին, նա նպաստեց մեծապես Կյուրեղյան հոսանքի հաղթանակին: Հայ եկեղեցու Եփեսոսյան դավանանքի հիմը դրվեցավ, որ այնուհետև մնաց անսասան դարերի ընթացքում: Ոչ միայն Կյուրեղին նրա անմիջական մասնակցության, այլ և Մելիտինի նշանավոր եկեղեցականին և նրա ջանքերին է պարտական Հայ եկեղեցին իր դավանաբանական խարիսխը:

Թերևամտություն կլիներ կարծել Լիբերատուսի հետ միասին, թե անգիտություն էր պատճառը, որ հայերը դիմեցին Պրոկղին: Տարաձայնությունները անխուսափելի էին նաև հայոց մոտ նույն Եփեսոսյան վեճերի շուրջը: Հայաստանի հարավային մասերը, շնորհիվ խառն ազգաբնակության, ունեին նաև ասորի եպիսկոպոսներ, այսինքն՝ հպատակվում էին Տիզբոնի եկեղեցուն: Աղձնեից, Մոկաց աշխարհների կողմից հիշվում են ներկայացուցիչներ Ասորի եկեղեցու սկզբնական ժողովներին. այսպես 420 և 424 թվականների գումարումներին ներկա էին Դանիել եպիսկոպոս Աղձնյաց աշխարհից, Ատտիկոսը՝ Մոկաց և նույնիսկ Հայաստանից՝ ոմն Արտաշահր եպիսկոպոս (**Chabot**, Synodicon Orient.): Այս աթոռները վարչապես կապված էին այն եկեղեցու հետ, որ հետո նեստորականության միակ ապաստարանը դարձավ: Սրանց ազդեցությունը բավական էր, որ ուներ որոշ տրամադրություն ընդդեմ Եփեսոսի: Թվում է, որ կար և ուրիշ հանգամանք՝ նույն տրամադրությունը զորացնելու համար:

Ռաբուլաս և Ակակիոս, Լիբերատուսի ասելով, զգուշացնում էին հայ եպիսկոպոսներին, որ չընդունեն Թեոդորոսի գրվածները: Ի՞նչ գրվածների մասին է խոսքը: Կորյունը հաստատում է, որ իրավ Թեոդորոսի «գիրք սուտապատում բերեալ երեւեցան Հայաստան աշխարհի»:

Երբ Նեստորիոսի գրքերը արգելվեցան կայսերական հրամանով imperiali lege prohibitum, ըստ նույն լատին պատմիչի, նրա հետևորդները սկսեցին

տարածել Թեոդորոսի և Դիոդորոսի գրվածները, թարգմանելով ասորի, հայ և պարսիկ լեզուներով: Կայսերական օրենքը հրատարակվեցավ ի հյուպա- տոսության Թեոդորոսի XV և Վալենտիանոսի IV data III non. august. ըստ cod. Theod. և III calend. august. ըստ cod. Just., որ է 435 թ., 30 հուլիս. Պրոկղի թուղթը հայերին կրում է նույն տարեթիվը՝ 435 թ. (consul. Theod. XV et Val. IV): Ենթադրենք, որ պատրիարքական թուղթը նույն տարվա վերջին ամսին է ղրկված: Օգոստոսից-դեկտեմբեր, քանի մի ամսվա ընթացքում անհնար էր թարգմանել Թեոդորոսի գրքերը, ղրկել հայերին, որպեսզի այդ հետևանքով Ռաբուլաս և Ակակիոս գրով զգուշացնեին աղանդամիտ գրքերից, և հետո հայերը ժողով գումարեին և դիմեին Պրոկղին և պատասխան ստանային:

Պարզ է, որ խնդիրը նեստորականների նորաթարգման գրքերի մասին չէ: Պետք է ենթադրել, որ Թեոդորոսի գրվածները հայտնի էին հայերին մինչև Եփեսոսի վեճերը, և հայտնի էին այնպիսի պայմաններում, որ նպաստավոր էին նրա հեղինակության և անհանգստացուցիչ Եփեսոսյան հավատի պաշտպանների համար, որպիսիք էին Ռաբուլաս և Ակակիոս:

Արդ ով, եթե ոչ Ռաբուլաս և Ակակիոս, պետք է գիտենային, որ Թեոդո- րոս գրագրություն է ունեցել հայ լուսավորության հոր հռչակավոր Մաշթոցի հետ: Թեոդորոսը մեռած է 428 թվին և եպիսկոպոս էր 392 թվից, նա ժամա- նակակից է բառի բուն մտքով Մաշթոցին: Ազգային գիր և գրականություն ստեղծելու մեծ մտքով հափշտակված հայ վարդապետը, որ իր երազների համար շրջել էր Մելիտինե, Ամիդ, Եդեսիա, Սամոսատ, այցելել ծանոթացել էր և Ակակիոսին, Ռաբուլասին, մյուս Ակակիոսին, Մելիտինեի եպիս- կոպոսի, այլ և Սամոսատի եպիսկոպոսին, մի խոսքով Հայաստանի սահ- մանակից նշանավոր հոգևոր գործիչներին, նա չէր կարող զանց առնել նույն շրջանի ամենից հեղինակավոր և գիտական եկեղեցական հոր Թեոդորոս Մամուեստացուն: Իր նոխ գիտության համար նա արժանացել էր Polyhistor = Բազմավեպ հնչման: Անակնունելի չէ թնավ, որ Թեոդորոսի ծա- նոթ հայազն եպիսկոպոս Մաստուբիոսը լինի Մաշթոցը:

Մի բան, սակայն, վրիպելու չէ ուշադրությունից: Թեոդորոսը գրել է Մաստուբիոսին իր քահանայության ժամանակ. *Θεοδώρου πρεσβυτέρου* է ասված խորագրում: Բարեբախտաբար Թեոդորոսի կյանքը բավականին ծանոթ է: Թեոդորետոսի ասելով («Եկեղեցական պատմություն», Ե, 39), Թեոդորոս մեռել է 78 տարեկան հասակում, և եպիսկոպոս էր 36 տարի, այն է սկսած 392 թվից: Իսկ քահանա է ձեռնադրված 383 թվին. 392 թվին Դիո- դորոսի աջակցությամբ ստանում է Կիլիկիայի Մամուեստա քաղաքի եպիս- կոպոսական աթոռը: Այսպիսով նրա երեցությունը ընկնում է 383-392 տա- րեշրջանը: Հետևապես այս տասնամյա միջոցին պետք է գրած լինի Մաշթոցին:



Թեոդորոսի աշակերտն էր Ռուփին(ոս) անունով քահանա, որ 399 թվին Հռոմ մեկնեց և այստեղ ծանոթանալով Պելագիոս քահանային, նորա միջոցով պելագիական կոչված վարդապետության իսկական հիմնադիրն եղավ: Պելագիականները շեշտում էին իրենց հոգևոր կապը Թեոդորոսի հետ:

Մեզ թվում է, որ այս Ռուփինոսը ուրիշ անձն չէ, եթե ոչ այն գրիչ Հռու- փանոսը, որը հիշվում է գրերի գյուտի պատմության մեջ: Եթե Թեոդորոսի աշակերտը իբրև սոսկ գրիչ մասնակցում է գյուտին, հարկավ, նրա ուսուցիչն ավելի շոշափելի նպաստ պիտի բերած լիներ նույն խնդրին:

Թեոդորոսի քահանայությունն անցել է Անտիոքում, իր ծննդավայրում: Նրա դասընկերն էր և մտերիմը հռչակավոր Հովհան Ոսկեբերանը, որ քա- հանա էր միևնույն Անտիոքում: Խորենացու հիշած գանգատը հույների կողմից, թե ինչու հայերը Ոսկեբերանին չեն դիմել, ցույց և ողղանջ է այն իրողության, որ Թեոդորոսի և Ոսկեբերանի շրջանումն է, որ Մաշթոց հա- ջողել է հայ գրերի գյուտը և հետագայում, ոմանք Թեոդորոսին էին վե- րագրում, ուրիշները՝ Ոսկեբերանին այդ մեծ շնորհը:

Սրանով ընդգծվում է գրերի գյուտի համար որոշ և դրական տարեթիվ՝ 383-392 տարիների տասնամյա միջոցը: Տեղը չէ կանգ առնել մեր այս ենթադրության վերա և նրա հավանականության հիմերը մեջ բերել: Հայ գրերի ծագումը մութ է և ոչ ոք հանկարծակի չպիտի գա մեր ենթադրության հանդեպ *(6)*:

Մեր անմիջական նպատակի համար բավական է նկատել, որ Թեո- դորոսի սկզբնական ծանոթությունը Մաշթոցի հետ կարող էր տեղի ունեցած լինել վերջինիս աքսուն որոնումների ճանապարհի վերա:

Թեոդորոսը հայտնի էր իր բեղմնավոր գրչով: Մի շարք գրվածներ, ուղղված են եղել հերձվածների դեմ. Որոգինես, Արիոս, Եվնոմիոս, Մակեդոն, Ապողինար, հրեա և հեթանոս ուսմունքները բոլորն էլ առիթ են տվել նրան բանակռվի ասպարեզ իջնելու:

Այս տեսակ գրութեանց կարգին է պատկանում և այն, որ ուղղված է եղել Մաստուբիոս հայ քորեպիսկոպոսին: Երկու ճառը նվիրված է եղել հավատո խնդիրներին *τὰ περὶ τῆς εὐσεβοῦς πίστεως*: Նեստորական ոգի է շնչելիս եղել մանավանդ վերջին ճառը, ինչպես շեշտում է Փոտը:

Նույն Փոտը ծանոթ է մի ուրիշ գրության, ուր Թեոդորոսը *τὸ Νεστορίου δόγμα εἰ καὶ πρὸ Νεστορίου ὑπῆρχεν ὑπερευγόμενος*, այսինքն՝ «Նեստորիոսի դավանանքն էր ործկում, թեև նրանից առաջ էր ապրել»[1]:

Եկեղեցու հայրերը իրավունք ունեին կասկածելու, որ հայերը կարող էին վարակված լինել Թեոդոր[յան]-Նեստորյան խմորով:

Թեոդորոսը լավ ծանոթ էր Ռաբուլասին: Սկզբում նիզակակից էին:

[1] **Photii Bib.**, 38. Θεοδώρου Ἀντιοχέως «ἑρμηνεία τῆς κτίσεως» P. G., t. 102, col. 70.

Մամունատայի եպիսկոպոսը թեև մեռած, մասնակից էր Եփեսոսի վեճերին: Ռաբուլասը լքեց թեոդորականների դասը 431 թվի ձմեռը և անցավ Կյուրեղի կողմը: Ռաբուլասը լքեց թեոդորականների դասը 431 թվի ձմեռը և անցավ հակառակ բանակը: Նա էր, որ մերկացրեց Թեոդորոսի այսպես ասած նեստորականությունը:

Բնական էր սպասել, որ Ռաբուլասը պետք է հորդորեր և հայերին խորշել Թեոդորոսից և նրա գրքերից: Անտարակույս գիտեր, որ անգոսնելի այրը, որ Թեոդորոսից և նրա գրքերից: Անտարակույս գիտեր, որ անգոսնելի այրը, որ տակավին երեկ խոշոր դեմք էր, որոշ հռչակ և հեղինակություն ունի հայերի մոտ, Մաշթոցի հետ ունեցած գրության հետևանքով և նրա դեռ թարմ հիշողությամբ:

Հաջորդ անցքերը ցույց տվին, որ իրոք դյուրին չէր վարկաբեկ անել Թեոդորոսին: Հայ եպիսկոպոսները փոխանակ խոնարհելու տիեզերական ժողովի որոշման առաջ, հարկավոր են համարում հավաքական խորհրդա-ծությամբ մարդ ուղարկել Կ. Պոլիս և տեղը իրազեկ լինել ճշմարտության:

Պրոկղ իր պատասխանում քաշվում է տալ Թեոդորոսի անունը. Նրա փափկանկատ լռությունը, որ շեշտում է հարցի ցավոտ կողմը, հարկավ փախ-կոքերը մեղմացնելու համար էր: Հայ տարաձայնությանց և վեճերի վախ-կրքերը մեղմացնելու համար էր: Հայ տարաձայնությանց և վեճերի ճանը մոտեն հայտնի չէ: Գիտենք միայն, շնորհիվ նույն Լիբերատուսի, որ 2 թե 3 հայ վարդապետ կատաղի քարոզ սկսեցին ընդդեմ Թեոդորոսի: Նրանք շրջում էին ամենուրեք Թեոդորոսի գրքերից քաղվածներ ձեռքերին և պահանջում էին դատապարտություն: Լիբերատուսը նրանց անվանում է Ապողինարի հետևորդներ, սակայն, լատին եկեղեցականի բերանում և Ե դարում այդ համազոր է ջերմ կյուրեղականի: Մոլեռանդ հակաթեո-ծողովից հետո, այդ համազոր է ջերմ կյուրեղականի: Մոլեռանդ հակաթեո-դորական վարդապետները, բացահայտ է, որ այն հոսանքի ներկա-յացուցիչներն են, որ հաղթող է հանդիսացել Հայաստանում:

Ոչ միայն Պրոկղի, այլ և Վասիլ սարկավագի թուղթն ընդդեմ Թեոդորոսի, ուղղված հայերին, աննշանակ չեն անցել հայ վեճերի հետևանքի համար:

Եփեսոսյան դավանանքը հաղթանակեց: Այս առթիվ հայերը վերստին պատգամավորություն են ուղարկում մայրաքաղաք առանձին հանձնարա-րականով Պրոկղ պատրիարքին, ինչպես և գրում են Աղեքսանդրիո Կյուրեղ եպիսկոպոսին: Լիբերատուսի թերի հաղորդագրությունն այս անցքերի մասին լրացնում է մի կարևոր հիշատակարան, որ դիպվածով պահվել է Ե տիեզերական ժողովի արձանագրությունների մեջ:

Այս ժողովի հինգերորդ նիստում կարդում են Կյուրեղի և Թեոդորոսի քաղվածներին կից և մի հատված՝ «**Ex libellis porrectis a presbyteris et diaconis qui transmissi sunt ab episcopis et clericis et monachis et caeteris Magnae Armeniae et Persidis et aliis gentibus**»[1]:

[1] **Mansi**, IX, col. 240.



Հանձնարարական նամակի հետ պատգամավորությունն ունեին impia capitula Թեոդորոսի, որ ներկայացրին Պրոկղին, ինչպես պատմվում է նույն հիշատակարանում՝ «porrecta sunt autem et impia capitula ex Theodori codicibus sanctae memoriae Proclo ab Armeniis»: Խոսքն այն քաղվածի մասին է, որը հիշում է և Լիբերատուսը excerpta capitula կոչելով:

Migne արտատպելով հիշյալ վավերագրերը Mansi-ի IX հատորից զետեղել է Պրոկղի «Առ Հայս» թղթից առաջ[1] ինչպես երևում է շփոթելով երկրորդ դեսպանության թուղթը առաջին դեսպանության թղթի հետ: Տեսանք, որ Ղևոնդի և Աբերիում-Կորյունի դեսպանությունը ևս ունեին libellum պատրիարք Պրոկղին ներկայացնելու: Այդ թուղթը մեզ չի հասել: Ե տիե-զերական ժողովի արձանագրությունների մեջ պահված հիշատակարանը պատկանում է երկրորդ դեսպանության: Արդարև Լիբերատուսի մի կոչումը, որ գտնում ենք այս հիշատակարանում, հաստատում է մեր կարծիքը, որ կարևոր է անցքերի հաջորդականությունը ըմբռնելու համար:

Լիբերատուս վկայում է, որ 2-3 հայ վարդապետները շրջելով ամբողջ Արևելքը պահանջում էին, որ նեստորամիտ հայրերը, նման Թեոդորոսի և մյուսների, նզովվին, և բերում է նրանց խոսքը:

«Quia si Nestorius iuste damnatus est, damnentur et ista, dicebant, cum suis auctoribus». Այս կոչումը նայում է ex libellis porrectis հատվածի հետևյալ տողերին՝

«Et sicut domino placuit condemnari manifeste et nominatim in Epheso ab universali Synodo sacrilegium Nestorium, **si per vos etiam antea condemnatum sine nomine**, sacrilegiorem in varia impietate Theodorum nominatim condemnari et eos qui secundum impiisimam eius expositionem hactenus in Syria et Cilicia sapiant et docent».

Լիբերատուսը, կրկնում ենք, ի նկատի ունի այս տողերը: Ստորագծած բառերը, որ մի պարզ ակնարկ է Պրոկղի հայոց գրած դավարանական թղթին, ուր հերքվում է Թեոդորոսյան տեսությունները առանց անունը տա-լու, ինքն ըստ ինքյան բավական են հաստատելու, որ հիշյալ թուղթը ծագում է երկրորդ դեսպանությունից: Կյուրեղ-Թեոդորոսյան վեճերը վերջացնելուց հետո հայերը լայն քարոզչություն են սկսում Եփեսոսյան դավանանքի օգտին, և Լիբերատուսը չի չափազանցնում, երբ ասում է, որ հայ վար-դապետները աղմկում են ամբողջ Արևելքը: Նախքան Կ. Պոլիս գնալը հայերը դիմել էին անձամբ, թե գրով Աղեքսանդրիո Կյուրեղ եպիսկոպոսին, ինչպես վկայում են իրենք՝

«Sicut in nostris contra Theodorum et scripta eius libellis ad Alexandrinum episcopum Cyrillum diximus et in his quae ad vestram dicimus beatitudinem».

[1] **Migne**, P. G., 65, col. 855.

Հայերը, ինչպես և Եփեսոսի ժողովի մյուս կողմնակիցները, իրենց հակաթեոդորյան քարոզով այնքան հեռու էին գնացել, որ նույնիսկ նրանց պարագլուխը, Կյուրեղ եպիսկոպոսը ստիպված եղավ սաստել նրանց և ծայրահեղության առաջն առնել: Անտիոքի Հովհաննես պատրիարքին ուղղած նամակում բացարձակ ընդդիմանում է, որ Թեոդորոսը և կամ որևէ ուրիշը, որ մեռած է, անեծքի և կամ բանադրանքի առարկա դառնա («neque autem de Theodoro, neque de alio quoquam qui iam defuncti sunt, scripsi tibi aut ut anathematizetur aut ut abdicetur»)[1]:

Հետեփեսոսյան իրադարձություններից հայերի այնքան սերտ գործակցությունն ապացուցանում է, որ իրենց հայրենի շրջանում խնդիրն անցել է կուսակցական պայքարի բովից: Պետք է կարծել, որ ընդդիմադիր ուժերն աննշան չեն եղել և հաղթանակ դյուրությամբ չէ տված: Այլապես դժվար թե կարիք զգացվեր դիմել օտար եկեղեցիներին և միահամուռ գործունեությամբ տապալել ընդմիշտ ոսոխին և ամրապնդել հաղթանակը:

Լիբերատուսի ցուցումը, որ քարոզիչ վարդապետները «երկու թե երեք» (duo vel tres) հոգի էին՝ թելադրում է մի միտք, արդյոք և այս անգամ դեսպանությունը բաղկացած չէր նույն «երկու թե երեք» անձերից, որի մասին խոսում է Կորյունը: Տեսանք Կ. Պոլիս ուղարկվեցան Ղևոնդ և ինքը՝ Կորյունը և սրանց այնտեղ հարեց նաև Եզնիկը, որ Եդեսիայից մեկնել էր Կ. Պոլիս Հովսեփի ընկերակցությամբ: Ուշագրավ է, որ Ղևոնդն ու Կորյունը «մատուցեալ յարէին յԵզնիկն», պատմիչը չէ հիշում այստեղ Հովսեփին:

Թվում է, որ երկուսը պատվեր ունեին գործել Եզնիկի հետ: Չի կարելի չհամեմատել այս երկու- երեք հոգուն Լիբերատուսի 2 կամ 3 անձերի հետ, որ այնքան ճշտորեն է որոշում դեսպանության կազմը:

Եփեսոսյան անցուդարձի վրա կանգ առանք ոչ միայն այն պատճառով, որ մի նոր և բանկագին էջ է բացվում Հայ եկեղեցու պատմության մեջ նրա դավանաբանական ավանդի ծագման տեսակետից, այլ և որ այդ անցուդարձը նոր լույս է ցողում Մաշթոցի և նրա կյանքի վրա: 420-435 թվերին Մաշթոցի այցը Ամիդ, Սամոսատ և Մելիտինե որևէ աղերս չունեին և չեն կարող ունենալ գրերի գյուտի հետ: Մանկությունից հելլեն դպրության վարժ, նա պետք չուներ նաև կրթության: Եվ ոչ թարգմանչական գործը գնեն նրա համար առանձին ճանապարհորդության շարժառիթ կարող է նկատվել: Եթե գրերի առթիվ նա այցելել է հիշյալ քաղաքները և մանավանդ Եդեսիա, ժամանակակից լուսավորության կենտրոնը, հայտնի իր աստվածաբանական բարձր դպրոցով, համենայն դեպս այցը եղել է 420 թվականից շատ առաջ, 406 թ. գրերը աղեն պատրաստ էին և նրանց հոգսը

[1] Migne, P. G., 65, col. 879.



վերջացած: Հավանական է, որ գրի որոնումների շրջանին նա ծանոթացել է ոչ միայն Ռաբուլասի, այլ և ավելի հռչակավոր Թեոդորոս Մամուեստացու հետ: Անձնական ծանոթության հետևանքով է գրված և Թեոդորոսի մեզ հետաքրքրող գործը, Մաշթոցի, *Μαστούβιος*-ի հասցեին: Գրությունը տեղի ունեցած պիտի լինի մինչև 406 թիվը, հավանորեն, Թեոդորոսի քահանայության առենով, ինչպես հիշեցինք:

Հավանական է, որ Մաշթոցի այցը ասորի եպիսկոպոսներին, որի մասին պատմում է Կորյուն, կապ ունի հավատո խնդրի հետ և մոտ է 430 թվականներին: Աչքի է ընկնում մի հանգամանք: Եդեսիայից Մաշթոց իջնում է Սամոսատ, «յորում մեծապատիւ իսկ յեպիսկոպոսէն եւ յեկեղեցւոյն մեծարեալ լինէր»: Զարմանալի է, որ եպիսկոպոսի անունը չի տալիս, մինչդեռ հիշում է Ամիդի, Եդեսիայի և Մելիտինեի եպիսկոպոսներին հանվանե:

Սամոսատի գրչի անունը, որ է Հռոփանոս, նմանապես արձանագրել է Կորյուն: Սամոսատի եպիսկոպոսական աթոռի վրա նստած էր այն ժամանակ Անդրեաս: Սա խառն էր Եփեսոսյան աղմուկներին և գտնվում էր Հովհաննես Անտիոքացու բանակում: Աննշան ոմն չէր նեստորականների շարքերում: Համարվում էր թշնամի Ռաբուլասին, վերջինիս դասալքումից հետո. և պատմում են, որ հանդիմանական նամակ է գրել Ռաբուլասին նրա՝ Թեոդորետոսի, կանոնավոր Նեստորականի և Կյուրեղի քաջանուն ախոյանի դեմ ելնելու համար:

Արդյոք դավանաբանական նկատումները չե՞ն, որ ծածկել են Սամոսատի եպիսկոպոսի անունը: Ռաբուլաս և Ակակիոս Կյուրեղյան հավատի սյուներ էին, և որքան ցանկալի է սրանց ծանոթությունը, նույնքան խորշելի պիտի համարվեր Անդրեաս Սամոսացին, իբր նեստորամիտ հերձվածող: Հնարավոր է, ուրեմն, որ Անդրեասի անունը կամավ է թողած:

Կորյունը գրել է Մաշթոցի վարքը նրա մահից հետո, որ դիպավ Հազկերտ [II-ի] ըստ Ղազար Փարպեցու՝ երկրորդ տարին, մեհեկանի 13, որ է 439 թ. մարտի 17 կամ 440 թ. մարտի 18: Գրել է Հովսեփի պատվերով, որ նահատակվեց նույն Հազկերտի 16-րդ տարին, հրոտից 25, այն է 454 թ., հուլիս 25: Եվ որովհետև Կորյունը չի հիշվում V դարի շարժումներին, հավանական է, որ մեռած է մինչև Արտաշատի ժողովը, Հազկերտի երկոտասաներորդ տարին՝ 439-440 թթ.: Սորանից հիմնում է, որ Մաշթոցի կյանքը գրած պիտի լինի 440-450 տասնամյակի ընթացքում:

Սակայն չի կարելի անուշադիր թողնել, որ Կորյուն Սյունյաց Վասակի իշխանին գովելով, մեծարում է նրան այնպիսի մակդիրով, որ կասկածանքի դուռ է բաց անում: Միակն Վասակը ոչ միայն «խորհրդական եւ հանճարեղ» այլ և «յառաջիմաց շնորհատուր իմաստութեամբն Աստուծոյ»: Արդյոք ակնարկ չէ հետագա եղելությունների և Վասակի վարմունքի վրա:

Պետք չէ՞ ենթադրել, որ Կորյուն համախոհ է եղել վատաբախտ մարզպանին և նրա կուսակցության և ուստի անհաղորդ է մնացել շարժման: Վասակին հառաջիմացության շնորհ վերագրելով հասկացնել է տալիս, որ ապստամբության ծանր հետևանքները հեռատեսորեն կշռելով, հակառակ է հանդիսացել շարժման: Այս դեպքում Կորյունի նկատողությունը կհնչի իբր խուլ ղողանջ արդարության ձայնի, այն ձայնին, որ այնպես խեղդել են Մամիկոնյան պատմիչները՝ Եղիշե և Ղազար:

Կորյունը գիտե Վահան Ամատունուն հազարապետի պաշտոնում, գիտե և նրա մահը. «յանկարծահաս կենաց ամենեցուն լինէր»: Եղիշեն պատմում է, ի թիվս այն անցքերի, որ տեղի ունեցան Հազկերտի 12-րդ տարին նաև հազարապետի պաշտոնանկ լինելը. «հանեալ ի գործոյն փոխանակ նորա պարսիկ ած յաշխարհն»: Եթե խոսքը նույն Վահանի մասին է, նշանակում է, նրա մահը պատահել է 439-440 թթ. հետո: Հետևաբար և Կորյունի գործը ընկնում է նույն թվից հետո: Այլև Կորյունը հիշում է հայրապետական աթոռի տեղապահներ, Սահակի և Մաշթոցի վախճանից հետո, Հովսեփին «եւ այլ աշակերտ Յովնան անուն, այր իսկ սուրբ վարդապետաստէր եւ ճշմարտապատում»: Սա շատ չարչարանքների է ենթարկվում Տիզբոն քաղաքում հավատի համար և արժանանում է խոստովանող կոչման, և հետո «ի նոյն վերակացութիւն դառնայր յերկիրն Հայոց»:

Ո՞վ է այս Հովհանը, որ անծանոթ է Եղիշեին և Ղազարին: Հայտնի է Աբրահամ Խոստովանողը, որ տասներկու տարվա գերությունից հետո, ազատ արձակվեցավ աքսորից: Չենք ուզում թեական մեկնությունների մեջ մտնել[1]: Ով որ էլ լինի անծանոթ Հովնանը, նրա դարձը չի կարելի առաջ դնել քան Աբրահամի և նախարարների արձակումը Պերոզի հինգերորդ տարին, այսինքն՝ 462 թ.: Կան նշաններ, ուրեմն, որ Կորյունը թևակոխել է V դարի երկրորդ կեսը:

Բարսումասի մահից հետո Եդեսիայում զորանում է նեստորականների ազդեցությունը, նրա հաջորդ Իբասի օրով: Սորա մահը 457 թվին առաջ է բերում զորեղ ընդդիմություն և բոլոր նեստորական վարդապետները հալածվում են Եդեսիայից՝ Պարսից հողը: Վերջնական հարվածը դրվում է նրանց Եդեսիայի հռչակավոր, պարսկական կոչված դպրոցի, նեստորականության այդ դղյակի փակմամբ 489 թվին: Որքան թուլանում են հունական հողերում Նեստորիոսի կողմնակիցները, այնքան զորանում են նրանք պարսից իշխանության տակ, վայելելով մանավանդ Պերոզ թագավորի հովանավորությունը (457-484):

[1]Այս հարցի քննության համար հիշելու է, որ «Նախադրութիւն ներբողէնի խաչին» անվավեր գրության համաձայն, Վարդանա պատերազմից հետո հայրապետությունը բաժանվում է երկուսի. «Յոհան Մանդակունի ի պարսից կողման կաթողիկոս և Գիւտ ի կողմանս յունաց»:



Եռանդուն Բարծուման կարողանում է ներշնչել Պերոզին այն միտքը, որ քրիստոնյաները երբեք սրտով չեն կպչի պարսից իշխանության և աչք չեն դարձնի կայսրերից, մինչև որ դավանանքի խրամատը չանջրպետե նրանց: Պետք է, ուրեմն առաջ տանել, խրախուսել նեստորականությունը այլադավան քրիստոնյաներին բռնի ուժով պարտավորել հարել նեստորական, իբր պետական եկեղեցու:

Պերոզի հաջորդը Վաղարշ (484-488), ինչպես Կավատ սկզբներում (488-496) բարեկամ լինելով կայսրերին դադարեցրին հալածանքը ոչ նեստորական քրիստոնյաների: Սրանց համար նպաստավոր պայմաններ ստեղծվեցան մանավանդ Զենոն և Անաստասիոս հակաքաղկեդոնական կայսրերի օրով:

Դժբախտաբար, V դարի երկրորդ կեսի դավանաբանական ելևէջների համապատասխան արձագանքը հայ եկեղեցական կյանքում թվում է թե անհետ կորած է: Պետական իշխանության ճնշման տակ թերևս նեստորականությունն ևս աջող օրեր ունեցած լինի: Բաբկեն կաթողիկոսին ապավինող ասորի եկեղեցականները հավատացնում էին, որ նեստորականները լուրեր են տարածում, թե հայերը նրանց հավատակից են. «Եւ այդպէս ասեն, թէ հոռոմք, եւ հայք եւ վիրք և աղուանք զնոյն կանոն եւ զհաւատ ունին զոր մեքս ունիմք»[1]:

Այս խոսքերին, որ քարոզչական նպատակով չափազանցրած են, հարկավ հավատ չի կարելի ընծայել: Բայց և չի կարելի ժխտել, որ ճշմարտության նշույլ կա այն մտքով, որ մասնակի կզգիներ են եղել: Հիրավի, ոչ միայն 424 թվի, այլ և 486 թվի նեստորական ժողովներին ներկա եկեղեցականների թվում պատահում են ներկայացուցիչներ և Հայաստանից. առաջնում՝ ոմն Արտաշահր եպիսկոպոս, երկրորդում՝ Մովսես եպիսկոպոս (Synodicon orientale): Նեստորականների ներկայությունը, քարոզը, մրցումն ու նվաճումներն առավել ևս պիտի լարեին տեղական ուժերը նոցա ընդդիմությանը և ամրակռեին այն տրամադրությունը, որ անցել էր Եփեսոսյան մաքառումների հնոցով:

Կորյունը հավատարիմ է այդ տրամադրության: Նրա գործը հակասորական կնիք, նեստորական խորշանք ունի: Ասորական նպաստը գրերի գյուտում դիտմամբ սքողված է նրա գրչի տակ: Սուրբ Գրքի թարգմանությունը համարում է հունական բնագրից թե՛ նախնականը և թե՛ սրբագրածը Եզնիկի բերած հույն վավեր օրինակի վերա:

Ինչպես և մեկնելու լինենք Կորյունի դիրքը և հարակից խնդիրները, մի բան է հաստատում, որ Հայ եկեղեցու դավանաբանության կյուրեղյան

[1] «Գիրք թղթոց», էջ 46:

խարիսխը ավանդ է Եփեսոսի ժողովից: Մաշտոց և նրա աշակերտները Ղևոնդ և թեարար Կորյուն երևան գալով ընդհանուր եկեղեցական ասպարիզում անմիջական մասնակցություն են ունեցել ճշմարտության որոնումներին և հիմնարկել են հայ դավանաբանական շենքը: Սերունդների միշտ արթուն զգացումը, միանգամ ստացած ժառանգությունը պահելու անդրդվելի կորովը բացատրելու է և՛ նորանով, որ նա սրբագործված է եղել հայ լուսավորության ամոլների սրբազան աջով:



## ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Մշակույթն իր բարձր իմաստով սկսվում է իրապես գրի և գրականության շրջանից: Հայ գրի ծագումը հայտնի է և հայտնի թերևս, ավելի լայն չափով, քան հարևան ազգերի գրի պատմությունը, բայց և այնպես խոստովանելու է, որ շատ բան տակավին մութ է և շփոթ:

Անորոշ է նախ և առաջ տառերի գյուտի իսկական տարին: Կարիք չկա տնտղելու հարցի պատմականը և թվելու միառմի բանասերների կարծիքները ու մեկնությունները: Ավելի շահական է քննել այն հիմնական աղբյուրը, որից բխում են եղած ենթադրությունները:

Հիմնական և միակ աղբյուրն են այն ժամանակագրական տեղեկությունները, որոնք գտնում ենք Կորյունի երկի վերջում: Ավելորդ չի լինի բերել ամբողջական այդ հատվածը.

«Եւ արդ լինի համար հաւատոց երանելւոյն (այսինքն՝ Մաշտոցի) ամք քառասուն եւ հինգ, եւ ի դպրութենէն Հայոց մինչեւ ցվախճան Սրբոյն ամք երեսուն եւ հինգ, որք համարին այսպէս. թագաւորեալ Կրմանայ Պարսից արքայի ամս վեց, եւ Յազկերտի ամս քսան եւ մի, եւ յառաջնումն ամի երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ վախճանեցաւ երանելին:

Եւ արդ առնու համար սրբոց հաւատոց ի չորրորդում ամէն Կրման արքայի մինչեւ յառաջին ամէն երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ, եւ դպրութեանն Հայոց յութերորդ ամէ Յազկերտի առեալ սկիզբն»[1]:

Հաշիվը պարզ է: Մաշտոցի կրոնավորության տարուց մինչև իր մահը հաշվում է 45 տարի և տառերի գյուտից մինչև դարձյալ նրա մահը՝ 35 տարի: Այլ և 45 տարին ձգվում է Կրմանի չորրորդ տարուց մինչև Հազկերտ II-ի առաջին տարին, իսկ 35 տարին բռնում է Հազկերտ I-ի ութերորդ տարուց մինչև Հազկերտ II-ի առաջին տարին:

Դժբախտաբար, պարսից թագավորների գահակալության տարիները հայտնի չեն ցանկալի ստուգությամբ, այլ միայն մերձավոր: Հազկերտ II-ի առաջին տարին համարվում է 438-439 թթ., հավանորեն սկսած պարսկական նոր տարուց մինչև նոր տարի ըստ շարժական տոմարի: Մաշտոց մեռել է մեհեկանի 13-ին, որ ընկնում է 439 թվի մարտ ամսին: Երբ Մաշտոց կրոնավորել է 45 տարի առաջ իր մահվանից, ասել է, թե կրոնավորել է

[1] Կորյուն, Վենետիկ,1894, էջ 48:

(438/439-45) = 393/394 թթ.: Տառերի գյուտը 35 տարի առաջ՝ կգա (438/439-35) = 403/404 թ.: Կարելի է հավանական համարել 393 և 403 թվերը, քանի որ հետևյալ 394 և 404 տարիներ հաշվում են մինչև մարտ:

Կորյունի մյուս վկայությամբ 393 թիվը համապատասխանում է Վռամ արքայի չորրորդ տարուն: Ասել է, թե Կրմանի առաջին տարին 389 թիվն է: Կորյուն, հետևապես, մի տարի ուշ է դնում նրա գահակալությունը:

Կրոնավորության 45 տարիները ընդգրկում են Դիսմոնի վեց տարին և Հազկերտի 21, այլ և Վռամի 18, որ պակասում է բնագրում: Նախ Դիսմոնայ անունը ուղղելու է Կրմանայ, որ սխալ ընթերցման արդյունք է: Բանասերներից շատերը սխալ են ըմբռնում Կորյունի բնագիրը, կարծելով, որ նա Կրմանին տալիս է 6 տարի թագավորություն: Մինչդեռ վեց տարին միայն այն տարիներն են, որ մտնում են կրոնավորության շրջանը: Իսկ որովհետև վերջինս սկսվում է նրա թագավորության չորրորդ տարուց, ասել է, թե Կորյուն համարում է (4-6) 10 տարի թագավորություն. իրականին Վռամ թագավորել է 11 տարի: Այս սխալն է պատճառը, որ Կորյուն Վռամի չորրորդ տարին հաշվում է 393 թ., այն ինչ ուղիղն է 392 թ.:

Բացի Կրման-Դիսմոնի 6 տարուց, կրոնավորության շրջանն ընդգրկում է Հազկերտի 21 տարին և Վռամի 18, որովհետև ստացվում է (6+21+18=) 45 տարի: Կրկնում ենք, Կորյունի բնագրում բաց է թողած Վռամի անունը և տարիները: Վռամ գահակալել է Հազկերտ I-ից հետո՝ 420-438 թթ. և թողել է գահը Հազկերտ II-ին:

Կորյուն, այսպիսով, մի տարի պակաս է հաշվվում: Եթե ստույգ է, որ Մաշթոց կրոնավորել է Կրմանի չորրորդ տարին, ապա կրոնավորության տևողությունը պետք է համարել 46 տարի և ոչ 45՝ 392-438 թթ.:

Իսկ եթե ավելի արժանահավատ է 45 թիվը, ապա կրոնավորության սկիզբը դնելու է Կրմանի հինգերորդ տարին և ոչ չորրորդ:

Ինչ վերաբերում է տառերի գյուտի տարեթվին, երկու տեղեկությունները միմյանց չեն բռնում: Եթե իրավ է, որ գյուտը տեղի է ունեցել 35 տարի նախքան Մաշթոցի մահը, այսինքն՝ 403 թվին, ապա սխալ է մյուս վկայությունը, թե՛ գյուտը դիպավ Հազկերտի ութերորդ տարուն: Հազկերտի գահակալության առաջին տարին և 400 թվականը, որով ութերորդ տարին կգա 407 թվականին և ոչ սպասելի 403 թվին: Հակասությունը հարթելու համար մի քանի բանասերներ այն միտքն են հայտնել, թե Կորյուն Հազկերտի թագավորությունը սկսված է համարում 396 թվից և որպես թե նույն մատենագիր Ագաթիաս համերաշխ է այս կետում Կորյունի հետ[1]: Կամայական ենթադրություն է, և Ագաթիասի կոչումը անհիմն է: Ուրիշ մի բանասեր

[1] **Է. Դյուլորիե և Ստ. Մալխասյանց,** տե՛ս Ասողիկի ժամանակագրությունը (Ասողիկ, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 339, ծան. 65):



վերջերս աշխատել է կնճիռը քավել, կարծելով, որ Կորյուն Կրմանին տալիս է 6 տարի թագավորություն մինչև 396 թիվը, և մնացած տարիները հաշվում է որպես թե Հազկերտի վրա[1]: Այս կարծիքը հիմնված է բնագրի թյուր հասկացողության վրա: Տեսանք, որ Կորյուն Կրմանին հատկացնում է ոչ թե վեց տարի, ինչպես անփորձ ընթերցողը կարող է կարծել, այլ 4-6 տարի: Դժվար է հաշտեցնել անհաշտելին, այլապես քան ժխտելով երկու վկայություններից մեկն ու մեկը: Հավանորեն «ութերորդ» տարին սխալ ընթերցումն է:

2

Այսպես Մաշթոցի քահանայությունը վերաբերում է 392 թ., իսկ տառերի գյուտը 403 թ., համաձայն այն ժամանակագրական հատվածի շիտակ հասկացողության, որ զետեղված է Կորյունի երկի վերջը:

Արդյոք կարելի՞ է հավատ ընծայել այս թվերին. ահա մի կարևոր հարց, որ ներկա հոդվածի բուն նյութն է:

Արդեն առիթ եմ ունեցել քննելու այն թանկագին տեղեկությունը, որ պահել է մեզ Փոտ հռչակավոր պատրիարքը: Իր «Գրադարանում» [նա] հիշում է հակիրճ բովանդակությունն այն թղթի, որ ուղղված է եղել Թեոդորոս Մոպսուեստացու կողմից մի հայ քորեպիսկոպոսի, որի անունը կարդացվում է Մաստուբիոս: Այս խորթ անունը սրբագրել ենք Մաստոց, ընդունելով, որ խոսքը մեր Մաշթոցի մասին է: Ինչպես կարելի է տեսնել թղթի վերնագրից, Թեոդորոս Մոպսուեստացին գրել է այն ժամանակ, երբ ինքը տակավին երեց էր, և Մաշթոցը՝ քորեպիսկոպոս[2]:

Այդ Թեոդորոսի քահանայությունն ընկնում է 383-392 տարիները: Այս միջոցին է գրված թուղթը, ուր Մաշթոցն քորեպիսկոպոս է կոչվում: Հետևապես Կորյունի հատվածի վկայությունը, թե Մաշթոց կրոնավորեց 392 թ.՝ չի արդարանում:

Թեոդորոսի թուղթը մի հայտնություն է, որ նոր լույս է սփռում Մաշթոցի կյանքի վերա, խախտելով թերևս մեր հավատը դեպի այն, ինչ որ ասում է ազգային ավանդությունը Կորյունի բերանով:

Մեզ թվում է, որ մեզ զբաղեցնող ժամանակագրական կտորը Կորյունի երկի հարազատ մասը չի կազմում, այլ հետո է ավելացրած (1): Հազկերտը կոչվում է այդ հատվածում Երկրորդ, որ մի ամբաստանություն է հատվածի դեմ: Կորյուն չէր կարող գործ ածել նման արտահայտություն, որովհետև V դարում բնավ ընդունված չէր որակել նույնանուն թագավորներին դասական

[1] **Կորյուն,** Վարք Մաշթոցի ուղղեալ և լուսաբանեալ ի Գառնիկ Ֆնտգլեանէ, Երուսաղեմ, 1930՝ Գ. Ֆնտգլյանի մեկնությունները, էջ 75 և հտ.:

[2] Մանրամասնությունը տե՛ս **Ն. Ադոնց,** Մաշթոց և իր աշակերտները ըստ օտար աղբյուրների, Վիեննա, 1925:

թվականներով, անվանելով՝ առաջին, երկրորդ և այլն: Այս սովորությունը VII դարուց կանուխ չէ: Որ արդարև Կորյունին խորթ է այս ասույթը, երևում է նրանից, որ իր բուն երկի մեջ հիշատակում է նույն Հազկերտին Ս. Սահակի մահվան առթիվ, սակայն առանց անվանելու նրան Երկրորդ Հազկերտ. **«յառաջնումն ամի Յազկերտի** որդւոյ Վռամայ»[1]: Կորյուն գրերի գյուտի ժամանակը նշանակում է Վռամշապուհի տարիներով: Դանիելյան գրերը երևան եկան Վռամշապուհի հինգերորդ տարին, և Մաշթոց վերադարձավ Ասորիքից Հռոփանոսի կերտած տառերով նույն թագավորի վեցերորդ տարին: Ոչ մի տեղ չի հիշում պարսից թագավորներին: Խնդրական է դարձյալ, ինչո՞ւ Կորյուն այնքան կարևոր ժամանակագրական տեղեկությունը պետք է վերապահեր զետեղելու իր երկի վերջը, և այն էլ իր իսկական վերջաբանությունից հետո: Այս հակառակ է գրքի կառուցվածքին և տված տեղեկությունը համերաշխ չէ այն ժամանակագրական վկայության, որ գտնում ենք նրա երկի մեջ: Վռամշապուհի հինգերորդ թե վեցերորդ տարին, երբ գիրը գտնվեց բնավ չի համապատասխանում ո՛չ Հազկերտի (399-420) ութերորդ տարուն, և ո՛չ էլ 403 թվին, ինչպես ասված է վիճելի հատվածի մեջ: Այլուստ գիտենք, որ Վռամշապուհ գահ է բարձրացել Շապուհ [III] պարսից արքայի օրով[2], որ թագավորել է (383-388):

Կորյուն հավատացնում է, որ Դանիելյան գրերը հայտնվեցին Վռամշապուհի հինգերորդ տարին: Երկու տարվա փորձը վեր հանեց նրանց թերությունը: Այնուհետև Մաշթոց ուղի ընկավ Ասորիք, այցելեց Եդեսիայի եպիսկոպոսին՝ Բաբիլասին, Ամիդի եպիսկոպոսին՝ Ակակիոսին, անցավ Սամոսատ և Հռոփանոսի օգնությամբ ճևակերպելով տառերը, վերադարձավ Նոր քաղաք՝ Վռամշապուհի վեցերորդ տարին: Դեռևս Մ. Չամչյանը նկատել է, որ անհետևողականություն կա տարեթվերի մեջ և առաջարկել է ուղղել վեցերորդ տարին տասնվեցերորդ: Սակայն խնդիրն այդ չէ:

---

[1] **Կորյուն**, էջ 41: Ղազար Փարպեցին, որ հիշում է Կորյունին, ունի համապատասխան տեղում՝ «ի սկզբան **ամին երկրորդի Յազկերտի**, որդւոյ Վռամայ» (նույնը կրկնում է և Մովսես Խորենացին՝ Գիրք Գ, գլ. 67՝ «Մինչև ցսկիզբն **ամին երկրորդի Յազկերտի»**): Փարպեցին կարծես թե հասկանում է «ամին երկրորդի» և ոչ թե «երկրորդի Յազկերտի»: Ամեն պարագային երևում է, որ Փարպեցին ծանոթ է վիճելի հատվածին. զարմանալի է, որ անտեսել է Կորյունի **«յառաջնումն ամի Յազկերտի»** հարազատ թվականը: Այս կլիներ մի զորեղ փաստ մեր կարծիքի դեմ, այսինքն՝ որ վիճելի կտորը հետամուտ չէ, այլ պատկանում է բուն երկին և այսպես է եղել Փարպեցու օրինակում: Կորյունի դրությունը սրանով ավելի վատթարանում է և ոչ թե բարվոքում, որովհետև վերջին կտորը անհարազատ համարելով ուզում էինք փրկել մեր հեղինակին հակասությունից: Սակայն պետք է հիշել, որ Փարպեցու առաջին դրվագը վիրավոր տեղեր շատ ունի և կարոտ է առանձնակի քննության:

[2] **Ղազար Փարպեցի,** Պատմութիւն Հայոց եւ Թուղթ առ Վահան Մամիկոնեան, Տփղիս, 1904, էջ 13:



Բաբիլասը Եդեսիայի հայտնի եպիսկոպոս Ռաբուլաս կամ Ռաբիլասն է: Սա վարել է իր աթոռը 412-435 թթ., Ամիդի եպիսկոպոս Ակակիոսը աթոռի վրա էր 420 թ.[1]: Եթե Մաշթոց իրոք այցելել է այս հայրերին, ապա նրա ճանապարհորդությունը և հետևաբար նշանագրերի գյուտը չէր կարող տեղի ունենալ առաջ, քան 412-420 թվականները, մինչդեռ տեսանք, որ նույն Կորյունը այն հատվածում, որի հարազատությունը ժխտելի ենք համարում, գրերի գյուտը դնում է 403 թվին:

Արդ՝ ի՞նչ են նշանակում այս անհարթությունները: Գրերի գյուտի պատմությունը եղծված է դիտավորյալ կերպով, թերևս նույն Կորյունի ձեռքով: Երբեք չենք կարողացել ըմբռնել այն կցկտուր խոսքերը, որոնք Կորյունը ուղղում է Դանիելյան կոչված գրերի հասցեին: Հայ գիր է եղել, հետո մոռացության տրվել և պատահաբար պահվել ոմն ասորի եպիսկոպոսի մոտ: Ավելի քան տարօրինակ երևույթ է և անհավատալի: Ինչպե՞ս է պատահել, որ գործածության մեջ եղած գրից և ոչ մի ձեռագիր չէր մնացել ընդարձակ Հայաստանում և մի ասորի եպիսկոպոսի էր վիճակվել կորուստից փրկել այդ թանկագին գանձը:

## 3

Թվում է, որ իսկական որոնումները գրերի շուրջը սկսվում են Դանիելյան գրերից: Իրական գյուտն այդ է և շատ կանուխ, քան Կորյունն է փորձում ներկայացնել: Մաշթոց այդ գյուտն արել է Թեոդորոս Մոպսուեստացու քահանայության տարիները՝ 383-392 թթ. ժամանակ, երբ Հայաստանը տակավին բաժանված չէր երկու պետությունների մեջ: Մաշթոցի գլխավոր աշխատակիցները ծագում են Եկեղեաց, Պաղին, Խորձեան և Տարոն գավառներից, այն հողերից, որոնք Բյուզանդիային անցան բաժանումից հետո:

Թեոդորոսի փայլուն անունը ապագայում նսեմանում է շնորհիվ Եփեսոսյան դավանաբանական վեճերի: Եկեղեցու հայրերը գտնում են, որ Թեոդորոսի ուսմունքը Նեստորական երանգ ունի: Այս գաղտնիքը մերկացնողը ոչ այլ ոք է, եթե ոչ նույն Ռաբուլասը, Եդեսիայի եպիսկոպոսը: Նա է, որ առաջին անգամ ձայն է բարձրացնում Թեոդորոսի դեմ և հայտարարում, որ Նեստորի բուն ուսուցիչը նա է՝ Թեոդորոսը:

Մոպսուեստացի եպիսկոպոսը այլևս հրապույր չուներ հայերի համար: Մինչև իսկ խորշելի էր որպես կասկածելի վարդապետ, որպես հերձվածող: Պետք էր մոռանալ, սքողել այն նպաստը, որ նա բերել էր գրերի գյուտին և նրա բարեկամությունն ու թղթակցությունը Մաշթոցի հետ: Եվ ահա ոչ միայն

---

[1] Տե՛ս վերև հիշված աշխատությունս:

հետ է մղվում նրա անունը, այլև գործը վերագրվում է Ռաբուլաս և Ակակիոս ուղղադավան հայրերին և ոչ նեստորամիտ Թեոդորոսին:

Այսպես հասարակաց կարծիքի ազդեցության տակ հեղեղվում է պատմությունը: Տուժում է բնականորեն ստույգ ժամանակագրությունը՝ տեղի տալով հակասությունների:

Թաղված ճշմարտության հետքերը մնացել են Կորյունի երկի մեջ. «Յայնմ ժամանակի բերեալ երեւեցան Հայաստան աշխարհին գիրք սուտապատումք, ընդունայնախօս աւանդութիւնք առն ուրեմն Հռոմի որում Թէոդիոս անուն (կարդա՛ Թէոդորոս): Վասն որոյ սիւնհոդոսական հայրապետացն եկեղեցեացն սրբոց նշանակեալ ազգ առնէին ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ և Մաշթոցի: Եւ նոցա ճշմարտասէր փութով զայն ի միջոյ դարձեալ աշխարհահալած արտաքոյ իւրեանց մերժեցին, զի մի ի լուսաւոր վարդապետութիւնն ծուխ ինչ սատանայական յարիցէ»[1]:

Օրվա ցավը Նեստորիոսն էր և «սատանայական ծուխը» նրանից էր ծավալվում: Բայց և այնպես նրա մասին խոսք չկա, այլ Թեոդորոսի: Ակներև է, որ Թեոդորոսի մոտ ծանոթ է եղել հայ շրջանակներում և վայելել հատուկ հեղինակություն և նրա «սուտապատում» գրքերն էլ տարածված են եղել: Ինչո՞վ է բացատրելու այս գերակշիռ մեծարանքը: Անշուշտ նրանով, որ Մաշթոցին նպաստել է իր գրական ջանքերի մեջ: Թեոդորոսի անունը ջնջել գրերի պատմությունից, նշանակում է չորացնել կենդանի ծառը: Արդարև, գրի պատմությունը այնպես, ինչպես ավանդում է Կորյուն, խիստ անբավարար է: Երկը վերաբերում է առավել Մաշթոցի քարոզչության պատմության, քան սքանչելի գյուտին: Ճարտասանական մանվածապատ մի նախադասություն կա միայն, որ նայում է իսկական նյութին, բայց այն էլ դժբախտաբար թաղում է իր խրթնության մեջ գյուտի էությունը:

Եդեսիայում, ուրեմն, Ռաբուլասի քաղաքում, Մաշթոց անձնատուր է լինում «աղօթքի, տքնութեան և արտասուալից պաղատանքի»: Հետևանքը՝ նշանագրերի հայտնությունը. «Որում պարգեւէր իսկ վիճակ յամենաշնորհողէն Աստուծոյ. հայրական չափուն ծնեալ ծնունդս նորոգ և սքանչելի՝ սուրբ աջովն իւրով, նշանագիրս հայերէն լեզուին: Եւ անդ վաղվաղակի նշանակեալ անուանեալ և կարգեալ, յօրինէր սիղոբայիւք և կապօք»[2]:

Այնուհետև իջնում է Սամոսատ և Հռոփանոս ոմն դպիր «զամենայն ընտրութիւնս նշանագրոյն՝ զնրբագոյնսն զկարճն և զերկայնն, զառանձինն և զրկնաւորն, միանգամայն յօրինեալ և յանկուցեալ, ի թարգմանութիւն դառնային...»[3]:

[1] Կորյուն, էջ 40-41:
[2] Անդ, էջ 19-20:
[3] Անդ, էջ 20:



Ահա այս երկու նախադասությունն է, որ կլանում է իր մեջ գյուտի գաղտնիքը, մթին նախադասություն ոչ միայն մեզ համար, այլ հավանորեն և իրեն՝ հեղինակի:

Փարպեցին բնավ չի հիշատակում Մաշթոցի ճանապարհորդությունը և որոնումները: Նա բավականանում է միմիայն դանիելյան գրերով: Նա Մաշթոցին հատուկ ուշադրություն չի ընծայում և գրերի գյուտը նրան չի վերագրում: Ս. Գրքի թարգմանությունն էլ համարում է գործ Ս. Սահակի և ոչ Մաշթոցի, որի ակարությունը հունարենում չի թաքցնում[1]:

Ի՞նչ էին ներկայացնում դանիելյան գրերը:

Մինչև վերջին ժամանակներս ընդունված էր գիտության մեջ, որ այն այբուբենը, որով հասած է մեզ Իրանի սրբազան գիրքը՝ Ավեստան, մշակված է Քրիստոսի VI դարում: Ներկայումս մասնագետները եկել են այն եզրակացության, որ Ավեստայի գրերն ավելի հին են, և հորինված Շապուհ Երկայնակյացի [309-379] օրով՝ IV դարու կեսերին:

Ավեստայի այբուբենը շատ ճոխ է հնչյուններով և համապատասխան գրերով: Նա ամփոփում է գրեթե բոլոր մեր տառերը, բացի երեք գրից, որ են՝ **ծ, ճ, ց**: Հետևապես նոր գյուտի պետք չկար, եթե հարևան ազգերը ցանկանային ազգային գիր ունենալ: Բավական էր ընդօրինակել Ավեստայի գրերը: Արդարև, հայ գրերը կրում են Ավեստայի այբուբենի զգալի ազդեցությունը:

Ավեստայի այբուբենը մշակված է պահլավիկ գրերից: Այս գրերը թվով քիչ էին և միևնույն տառը քանի մի հնչյուն ուներ: Գրության ձևն էլ շատ բարդ էր, խառն ասորականի: Դանիելի մոտ գտնված գրերը կարող էին լինել կամ պահլավիկ գրերը և կամ նորամշակ ավեստական տառերը: Մաշթոցի ջանքը ուրիշ բան չէր, քան հայացնել օտար տառերը, ազգային տարազ տալ: Հռոփանոսը, որպես քաջ դպիր, հանձն է առել այդ գործը և ձևակերպել է հայ տառերը ըստ կաղապարի Ավեստայի այբուբենի: Դանիել Ասորի եպիսկոպոսը կարող էր իր մոտ ունենալ, ծանոթ լինել Ավեստայի այբուբենին: Նույնը կարելի է ասել և Թեոդորոս Մոպսուեստացու նկատմամբ:

Այն թուղթը, որ Թեոդորոսը գրել է Մաշթոցին պարունակում է իմիջիայլոց Զրադաշտի ուսմունքը, կամ նրա հերքումը: Հավանական է, որ այդ թուղթը օգտագործած լինի Եզնիկ իր «Եղծ աղանդոց» երկի համապատասխան բաժնում: Ամեն պարագային կասկածել չի կարելի, որ Մոպսուեստացի եպիսկոպոսը տեղյակ էր իրանական գործերին, և անշուշտ, ծանոթ նաև Ավեստայի նոր հրատարակության: Նրա թուղթը 383-392 ժամանա-

[1] Այդ իսկ պատճառով Փարպեցու կոչումը Կորյունին կասկած է հարուցում: Արդյո՞ք իր գրչին է պատկանում, թե հետամուտ միջարկություն է:

կամիջոցից է, ինչպես վերև հիշեցինք: Հավանական է հայ գրերի մշակումը ևս ընել այդ շրջանում:

Հայ գրերի ծագումը մեր լուսաբանությամբ այնքան դժվարին չէր, որպեսզի Վերին աջի միջամտությունը տեսնվեր: Այն ինչ որ կազմում է Ս. Մաշթոցի և Ս. Սահակի փառքը, Սուրբ Գրքի թարգմանությունն է, որով հիմք դրվեց՝ և հաստատուն և փայլուն հիմ, հայ լուսավորության, հայ գրականության: Գիրը կարող էր ավելի առաջ գոյություն ունենալ: Թարգմանիչների մերձավոր սերունդը շատ լավ է հասկացել Ս. Գրքի թարգմանության արժեքը և նրա հետ է կապել նաև տառերի գյուտը:

Հետազոտությունս բնավ նպատակ չունի լուծել այսքան կնճռոտ խնդիրներ, նպատակն ավելի համեստ է՝ վեր հանել դժվարությունները, և գծել ուսումնասիրության շավիղը:



# ՀԱՅԱՑԱԾ ԱՍՏՎԱԾԱՇՈՒՆՉԸ ԵՎ ԱՆՈՐ ՊԱՏՄԱԿԱՆ ՏԱՐՈՂՈՒԹՅՈՒՆԸ

Հայացած Աստվածաշունչը, որուն հազար հինգհարյուրամյակը կտոնենք (1), տարեկից է լատին թարգմանության, որ ծանոթ է **Վուլկաթա** անունով: Արդարև՝ 392 թվին է, որ Ս. Հերոնիմոս որոշեց լատիներենի թարգմանել Հին Կտակարանի եբրայեցերեն բնագիրը և իր այդ աշխատությունն ավարտեց 405 թվին: Ճիշտ նույն միջոցին է, որ Ս. Սահակ և Ս. Մաշթոց կատարեցին իրենց անմահ գործը: Մաշթոցի հետազոտությունները՝ հայ այբուբենն ստեղծելու համար, 392 թվին սկսված, ավարտեցան 405 թվին. այս թվականին, ոչ միայն տառերը պատրաստ էին, այլև Սուրբ Գիրքը, գեթ մասամբ, թարգմանված էր արդեն:

Անոնք, որ Աստվածաշունչը հայացնելու ազնիվ աշխատանքն ստանձնած էին, չէին կրնար երևակայել, որ իրենց գործին տարեդարձը օր մը պիտի տոնվեր պանդխտության մեջ, լատին մշակույթի հեռավոր հողին վրա, ուր առաջին հայ մը եկած է այն դարուն, իսկ երբ լատին թարգմանությունը կկատարվեր, **Arbandus** (Երվանդ) անունով մեկը, որ իբր նահանգապետ Գալլիան կառավարեց 464-են-469 թիվը: Զմահան դիպվածը՝ այսպես մեզ կդնե տարեդարձներու եռյակի մը առջև՝ տարեդարձը հայ Աստվածաշունչին, լատին Աստվածաշունչին և հայոցս այս երկրին մեջ բնակիլ սկսելուն:

Վուլկաթան լատին երկիրներուն համար չունեցավ այն կարևորությունը, զոր հայ Աստվածաշունչն ունեցավ հայ ժողովուրդին համար: Լատին գրականությունը շատոնց ի վեր գոյություն ուներ, երբ Վուլկաթան երևցավ, մինչդեռ հայ Աստվածաշունչը սկզբնավորությունը եղավ հայ գրականության, սկզբնավորությունը նոր թվականի մը, ուր հայ ժողովուրդը, առաջին անգամ ըլլալով՝ գրիչ ի ձեռին իր տեղը կուգա գրավել լուսավորյալ մարդկության մեջ:

Հայ Աստվածաշունչը ազատեց հայությունը իրանական աշխարհին մեջ ձուլվելու վտանգեն: Ամրացուց քրիստոնեությունը Հայաստանի մեջ, և խաչին ճառագայթները հակադրեց հարձակողական մազդեզականության կրակին: Հայաստան վերջնականապես փոխվեցավ էականորեն քրիստոնյա դաշտի մը և այլևս այդպես մնաց դարերու ընթացքին:

Երկրին բարոյական ու մտավորական վերականգնումը բնականաբար

արթնցուց ճշմարիտ ազգային գիտակցությունը: Պետք չէ մոռնալ, թե հայ Աստվածաշունչը երևցավ Բյուզանդիոնի և Պարսկաստանի միջև Հայաստանի բաժանումեն անմիջապես հետո, որուն հետևեցավ քիչ հետո Հայաստանի թագավորության անդարմանելի կործանումը: Այնուհետև գոյություն ունեցան երկու Հայաստաններ, մին՝ բյուզանդական, մյուսը՝ պարսկական, ազգային մարմնի մը երկու հատվածները, որոնց յուրաքանչյուրը դեպ ի տարբեր ճակատագիր մը կդիմեր:

Հայոց պատմական կյանքը պարզվեցավ երկու տարամետ ուղղություններով, զոր կարելի է կերպով մը նկատել իբր աստվածաշնչական ոգվույն երկու այլազան արտահայտություններ:

Կ'ուզեի քանի մը խոսքով անդրադառնալ այս կրկնակ հոսանքին վրա, հանելե առաջ ատկից հետևություն մը, որ կրնա մեզի օգտակար ըլլալ: Պարսկական Հայաստանը եղավ վառարանը ազգային մշակույթին: Նորածին գրականության հիմնադիրները սքանչելի կերպով անոր ծառայեցին: Թարգմանությանը, այն գրական ու պատմական հրաշակերտին, որ է Սուրբ Գիրքը, հետևեցավ կամ ընկերացավ հայացումը դարուն նշանավոր արտադրություններեն ամբողջ շարքի մը, ինչպես Հովհան Ոսկեբերանի, Բարսեղ Կեսարացիի, Եփրեմի, Աֆրաատի (Զգոն) գործերու, Եվսեբիոսի «Քրոնիկոնին» և «Եկեղեցական պատմության»:

Եվ ահա՛ նախախայրիքը ինքնուրույն ստեղծագործության մը՝ Ս. Գրիգոր Լուսավորչի վարքը, Հայաստանի քրիստոնյա թագավորներու պատմությունը, հայ դպրության հոր՝ Մաշթոցի վարքը, կամքի ազատության մասին հնարամիտ տեսություն մը, որուն կ'ընկերանա հերքումը քրիստոնեական վարդապետության հակառակ այլասեռ աղանդներու: Այս այնքան հուզիչ մտավորական զարթումը պիտի ընդմիշտ պահե, ինչպես երջանիկ մանկություն մը, իր հրապույրն ու թարմությունը գրական առաջին ներշնչման, և հաջորդ սերունդին կողմե պիտի համարվի իբր ոսկեդարը հայ դպրությանց:

Հոգեկան այսպիսի ծաղկափթթումի մը հանդեպ, պարսիկ իշխանությունները պետք էր ընտրություն մը ընեին երկու քաղաքականության միջև, զոր կը թելադրեին բանիմաց խորհրդականներ՝ կա՛մ բռնաբարել քրիստոնեությունը և կա՛մ զայն բյուզանդական քաղաքականությունեն հեռու պահել, ինչ որ փորձվեցավ:

Հայերը ատկից օգտվեցան՝ ընդմիշտ ապահովելու համար Հայ Եկեղեցվո բացարձակ անկախությունը և անոր ազգային նկարագիրը վարչական և վարդապետական (**dogmatique**) տեսակետով:

Եկեղեցին այդ թվականին ոչ միայն պահապանն էր կրոնական գիտակցության, այլև կընդգրկեր մարդկային մտքի բոլոր արտահայ-



տությունները: Ազգային եկեղեցի մը ունենալ կնշանակեր ունենալ սեփական մշակույթ, ինքնահատուկ լեզու, գրականություն, արվեստ, մեկ խոսքով՝ ամեն ինչ, որ կընորոշե ազգի մը հոգեկան կյանքը:

Հայաստանյայց Եկեղեցիին ազգային գիծը՝ իր ավատական կառուցվածքին մեջ կկայանա: Երբեմնի Հայաստանը կներկայացներ երկիր մը՝ մեծ ու պզտիկ քանի մը տասնյակ տանուտերությանց ցանցով մը ծածկված:

Եկեղեցին կազմակերպվեցավ քաղաքական քարտեսին հարմարվելով, հոգեկան իշխանությունը կտոր-կտոր եղավ ու գլխավոր նախարարությանց միջև բաժնվեցավ: Ամեն մեկ իշխան կհավակներ ունենալ եպիսկոպոս մը, հոգևոր պետ մը՝ իր կալվածին համար. բոլոր եպիսկոպոսները բացահայտորեն ստորադասված էին Եկեղեցվո գերագույն պետին, ինչպես և իշխաններն իրենք իսկ կճանաչեին գերազահությունը հայ, պարսիկ կամ արաբ թագավորներուն: Հայաստանին անծանոթ մնացած է նվիրապետական համրիչը մետրոպոլիտներու, ինքնավար կամ ինքնագլուխ արքեպիսկոպոսներու:

Եկեղեցին, ավատական ռեժիմին հետ նույնացած, անոր առավելությունները ու պակասությունները կյուրացներ: Այսուհանդերձ՝ աշխարհական և հոգևոր իշխանությանց միջև ընդհարումները հաճախադեպ չէին, ոչ ալ ծանր: Համերաշխությունը կհայտնվեր մանավանդ արտաքին վտանգի պահուն: Նախարարները եկեղեցական ժողովներուն կմասնակցեին նույնքան իրավունքով, որքան եպիսկոպոսները, և այս վերջինները նախարարներուն կողքին կկենային քաղաքական խռովությանց միջոցին:

Առոնք երկու սատարներ են, որ կանգուն պահած են պատիվն այդ երկրին, հմայքն այդ ժողովուրդին, որ, նույնիսկ այն շրջաններուն ուր կեղեքված էր, երբեք չէ կորսնցուցած իր արժանապատվության գիտակցությունը և պատրաստ էր՝ իր քաջարի պետերու առաջին կոչին՝ կռվի երթալու: Պետք է կարդալ հայ պատմագիրները, գաղափար կազմելու համար այն վստահության վրա, զոր կներշնչվեին իր իշխանները, այն հիացման վրա, զոր առաջ կբերեր անոնց քաջությունը:

Արքայական գահուն անկումեն հետո, Հայաստան կունենա շրջաններ խռովությանց և հեղափոխությանց, որ հաջորդաբար կպայթին, քանի մը տասնյակ տարիներով իրարմե զատված, մինչև այն վայրկյանն ուր օտար լուծը թոթափվեցավ:

IX դարու վերջերեն իսկ սկսյալ, կտեսնվին շարք մը իշխանապետություններ, որ մեկը մյուսին եռևեն ոտքի կկանգնին, և որոնց ոմանք թագավորություն անունը կկրեն: X դարուն, ատոնց թիվը տասներկուքի չափ էր, և ատոնք ինքզինքնին այնքան անկախ կզգային, որ առանձին հա-

քաքերություններ կհաստատեին Բյուզանդիոնի հետ: Կոստանդին Ծիրանածին, հայազգի Վասիլի թոռը, ատոնց անունները ու տիտղոսները մեզի պահած է՝ ըստ «Կայսերական արքունիքի դիվանագրքին»:

Հայ եկեղեցին ալ ունեցավ իր նեղության օրերը: Հույն ուղղափառությունը՝ կայսրության ուժերուն վրա կրթնած, որևէ առիթ չէր փախցներ վերսկսելու համար իր հարձակումները Հայ եկեղեցիի անկախության դեմ:

Այս վերջինը ուժգնորեն պաշտպանեց ինքզինքը և պահպանեց իր ավանդությունները, վարդապետությունները (dogme), ծեսերը և ամեն ինչ որ ազգային անհատականությունը կկազմե: Մեկե ավելի անգամներ, իր հմուտ վարդապետներն ու համբավավոր աստվածաբանները մայրաքաղաք կանչվեցան, ու հոն կայսերական ժողովին առջև հայկական դատը պաշտպանեցին: Ո՛չ հրապուրիչ առաջարկներ, ո՛չ սպառնալիքներ կարող եղան անոնց համոզումը խախտել կամ անոնց քաջությունը թուլցնել:

Հայ եկեղեցիին պարծանքն է՝ ամեն տեսակ հալածանք կրած ըլլալը պաշտպանելու համար ինչ որ կնկատեր իր հայրերեն իրեն թողված նվիրական և անքռնաքարելի ժառանգություն մը:

Այդպիսի դիմացկունության մը և անոր պարտադրած զոհաբերությանց արդյունքը եղավ ծաղկումը, եկեղեցիին ծոցին մեջ, գրականության մը և արվեստի մը, որ հայոց կվերապահեն պատվավոր տեղ մը քաղաքակիրթ Արևելքին մեջ. ճոխ ու այլազան գրականությունը, պատմական, աստվածաբանական, վարդապետական, իմաստասիրական, և արվեստը, մանավանդ ճարտարապետությունը, կազմության մեջ ինքնատիպ և գործադրության մեջ ազնիվ:

Մեկ խոսքով, Հայաստան իր ճիգերը պսակեց քաղաքականությամբ մը որ ծաղկեցավ վերոհիշյալ տասներկու իշխանապետությանց մեջ և որ կրնա Բագրատունյաց կոչվիլ՝ կարևորագույն թագավորության անունով: Անի քաղաքը, վառարան այդ քաղաքակրթության, իր վեհափառ ավերակներով այդ շիջած քաղաքակրթության շքեղությունը կվայելե:

Այսպես եղավ բնաշրջությունը արևելյան կամ պարսկա-արաբական Հայաստանին: Բայց Բյուզանդական Հայաստանը ի՞նչ կներկայացներ նույն ժամանակաշրջանին:

Աստվածաշունչի թարգմանության միջոցին, Բյուզանդական Հայաստանը մասնակցեցավ այդ գրական շարժման. Մաշթոցի գլխավոր աշխատակիցները Բյուզանդական Հայաստանեն էին, այսինքն՝ Եկեղեաց գավառեն, Դերջանեն, Խորձեանեն, Պաղնականեն և Տարոնեն. Մաշթոց ինքն իսկ Տարոնեն էր: Հունարենը հայտնապես ավելի ընտանի էր այդ շրջաններուն մեջ, Հայաստանի բաժանումեն իսկ առաջ, բյուզանդական



երկիրներու դրացնության պատճառով: Այդ տեղվանքի թարգմանիչներն ուրեմն ավելի լավ պատրաստված պիտի գտնվեին:

Առեն մը ետքը, Բյուզանդական Հայաստանը կթվի այլևս չհետաքրքրվիլ սահմանին մյուս կողմն անցած-դարձածով: Անիկա հոգածու չերևար ազգային հարցերուն հանդեպ, ինչ ալ ըլլան անոնք: Ան ոչ մեկ հեղինակ տվավ հայ գրականության, ոչ ալ որևէ կրոնավոր՝ կաթողիկոսական աթոռը գրավելու արժանի:

Բյուզանդիոն, Հուստինիանոս [I-ի] օրերեն իսկ, կձգտեր Հայաստանի այդ մասն իրեն կապելու և հայերը կայսրության կյանքին ու շահերուն շրջանակին մեջ միախառնելու: Ավատական կազմակերպությունը կամաց-կամաց կործանեցավ և երկրին իշխաններուն հրավեր եղավ իրենց կալվածները փոխանակելու արքունիքին և պետության մեջ պատվակալ պաշտոններու հետ: Գաղթականական հոսանք մը ատկից ծայր տվավ դեպի Բյուզանդիոն, մեկ դարեն մյուսը ավելի ներուժ դառնալով: Ինչ ալ ըլլային այն պատճառները որ հայերը դեպի Բյուզանդիոն կմղեին, պետք է հաշվի դնել հրապույրը զոր կընծայեր Բյուզանդիոնն այդ թվականին, իբր կայսրություն մը տիեզերական նկարագիր զգեցած և աշխարհաքաղաքագիտական իդեալով մը ոգևորված:

Նոր Հռոմի մեծ հիմնադրին երազը լավ թարգմանված է իր բարեկամին՝ Կեսարիո հմուտ եպիսկոպոսին, ձեռքով (2): Հեթանոս աշխարհը, ըստ իրեն, ենթարկված էր զանազան իշխանությանց. ատկից առաջ կուգային թշնամությունը, ստրկությունը, ամեն կերպ ցավեր: Պատմաբանները ջանացած են ատոր պատճառները գտնել: Ստույգ է՝ վերջապես, թե այս բոլորը արդյունքն է բազմաստվածության մոլոր ոգիին: Անմիջապես որ Քրիստոսի հավատքը հաղթանակե, այդ բոլոր ախտերը, դիվային արտաշնչումները, պետք է անհետանան, ու միևնույն ատեն կառավարության բաժանումը զանազան վեհապետներուն միջև վերջ պիտի գտնե:

«Հիմա, որ միակ Աստված մը հռչակված է,- ըսավ ան,- միակ կայսրություն մը պետք է աշխարհը կառավարե՝ Հռոմեացվոց կառավարությունը: Քրիստոնեական հավատքը և Հռոմեական կայսրությունը կկազմեն երկու ընձյուղ միևնույն ատեն բուսած՝ կարծես երկնային հրաշքով մը՝ մարդկությունը հովանավորելու համար: Գոյություն ունեցող բոլոր տերությունները՝ Սուրիո, Ասիո, Մակեդոնիո, Եգիպտոսի, Արաբիո, Պաղեստինի մեջ, այսուհետև միակ միություն մը պիտի կազմեն: Բովանդակ աշխարհը միակ ազգ մը պիտի դառնա, մարդկությունը պիտի համախմբվի իբր միակ ընտանիք մը՝ միակ մականի մը տակ, հելլեններու և բարբարոսներու միջև առանց որևէ խտրության»:

Անիկա բորբոքյալ հոգիով վանականի մը երազը չէր: Նոր կայսրությունը

այդպիսի առաքելության մը կհավակներ արդարև ու կխորհեր զայն իրականացնել՝ քրիստոնեության հիմունքին վրա աշխարհաքաղաքացիական տերություն մը ստեղծելով: Բյուզանդիոնը ո՛չ Հռոմեական կայսրություն մը պիտի ըլլա, ո՛չ Հունական կայսրություն մը: Ան պիտի ձևացնե լայն կազմակերպություն մը համաշխարհային բնույթով, զանազան ցեղերու և լեզուներու պատկանող ժողովուրդներու համագործակցության վրա հիմնված, առանց ազգային նախապաշարման:

Բյուզանդական Հայաստանը մին եղավ այն երկիրներեն, որոնք ինքզինքնին ի սպաս դրին այդ քրիստոնյա կայսրության: Փոքր Ասիո ժողովուրդներու մեջ, որոնցմե կայսրությունը պիտի քաղեր իր կենդանի ուժերը, ոչ մեկը ավելի կամ նվազ որոշապես սահմանված ազգային մարմին մը կներկայացներ, կամ ինչ-ինչ ավանդություններով ոգևորված կերևար, Կապպադովկիա, Լյուդիա, Փռյուգիա, Գաղատիա, Պափլագոնիա, Պիսիդիա, Իսավրիա և ուրիշ շրջաններ շատոնց կորսնցուցած էին իրենց ազգային դիմագծությունը:

Այդ անվերապահ և կրավորական զանգվածին վրա կկանգներ գործուն ու ձեռներեց մտքով հույն տարրը: Հպարտ՝ անցյալով մը, որ մեկհատիկ է մարդկային պատմության մեջ, զինված լեզվով մը և մշակույթով մը, որ համաշխարհային դարձած էին հելլենիստական ժամանակաշրջանեն միասին ի վեր, հույներն ունեին բոլոր առավելությունները կայսրության մեջ առաջին կարգն անցնելու համար:

Բայց բան մը կպակսեր իրենց՝ որպեսզի բոլորովին տեր դառնային Բյուզանդիոնին: Շատոնց ի վեր քաղաքաբնակ դարձած, ճարտարվեստական կյանքին վարժված, հույները կերևա, թե կորսնցուցած էին զենքի սերը: Ամեն պարագայի մեջ, իրենց զինվորական կարողությունները չէին հավասարիր այն համբավին զոր ունեին գործունեության մյուս ճյուղերուն մեջ:

Արդեն իսկ, Հուստինիանոսի օրով, հռոմի զինվորները պարսավելու համար, զանոնք «հույն» կկոչեին, որպես թե ոչ մեկ քաջ բան. ինչպես կըսե ժամանակին պատմիչը (3), կարենար ելլել այդ ցեղեն:

Հայերը պիտի լրացնեին ինչ որ կպակսեր հույներուն՝ տոկուն լեռնականներ, զորեղ ու հուժկու, օժտված տպավորիչ ֆիզիկականով մը, զենքերու գործածության մեջ քաջավարժ, անոնք ունեին հարկ եղած հատկությունները բանակը վարելու և զայն հաղթանակի առաջնորդելու համար: Իրոք ալ, Բյուզանդիոնի զինվորական հանճարը ծնունդով ու ծագմամբ հայ զորավարներով է ներկայացված:

Զինվորական կարողությունն է դարձյալ, որ գահուն բախտը կվճռեր, երբ ան խախտած էր: Ուստի և կտեսնենք, որ հայ ռազմիկները կփառասիրեն



կայսերական թագին տիրանալ ու կհասնին առոր և մեկե ավելի անգամ տևական հարստություններ (dynastie) կհիմնեն:

Հիմա գիտենք, թե Հերակլիոս [610-641], Բյուզանդիոնի ամենեն նշանավոր կայսրերեն մին, հայ էր, ծնած Թեոդոսուպոլիս, որ մեր օրով Էրզրում կկոչվի: Հարստությունը զոր ան հիմնեց, պետք է ուրեմն առաջին հայ հարստությունը նկատվի:

Մեծանուն արևելագետ Ա. Սեն-Մարթենը կկարծեր, թե Իսավրյան հարստության հիմնադիրը, Լևոն [III]-ը, նույնպես հայ էր ծագմամբ: Թեոփանես ժամանակագիրը շփոթած ըլլալու էր Գերմանիկեն, այժմ Մարաշ, որ Լևոնի ծննդավայրն է, Գերմանիկոպոլսո հետ, այժմ Էրմենեք, Իսավրիո մեջ, և սխալմամբ անոր տված ըլլալու էր Իսավրացի մականունը: Լևոն սկսավ պատկերամարտ քաղաքականությունը, իր փեսան էր Արտավազդ Հայը, և իր զարմիկը կկրեր Սիսինաքիոս անունը, որ ո՛չ հունական է, ո՛չ սուրիական. ասոնք իրողություններ են, որ ուժ կուտան Սեն-Մարթենի հայտնած կարծիքին:

Իսավրացիներեն հետո, հայերն են միշտ, որ գերագույն իշխանությունը իրենց ձեռքը կպահեն: Միքայել [II] Թլվատ, աննշան ծագումով մարդ մը, սպանեց Լևոն [V] Հայազգին, բայց հայերը իր կողմը քաշելու համար՝ խնամություն հաստատեց հզոր ընտանիքին հետ Մարինոսի, որ Մամիկոնյանց տոհմեն պատրիկ մըն էր: Մարինոսի դուստրը, գեղեցիկ Թեոդորան, գահուն վրա է, անոր շուրջ՝ իր հորեղբայրը Մանուել, ժամանակին առաջին զորավարը, իր երկու եղբայրները՝ Բարդաս (Վարդ) Կեսար և Պետրոնաս, իր փեսան՝ Կեսար Ալեքսիոս-Մուսելես (Մուշեղ), իր երկու քույրերուն ամուսինները, Արսաբեր (Արշավիր) և Կոստանդին Բաբուցիկ, բոլորն ալ կկազմեն այն փայլուն դեմքերը, որ կայսրության ճակատագիրը կվարեն:

Վերջապես կերևա Վասիլ, հիմնադիրը ամենեն փառավոր հարստության, որ Մակեդոնական կ'անվանվի և իրապես հայկական է, և որու տևողության միջոցին կայսրությունն իր զինվորական ու մշակութային մեծության գագաթնակետը բարձրացավ:

[Ֆրանսիացի պատմաբան Ալֆրեդ] Ռամբո, անվիճելի հեղինակություն, Վասիլի հարստության նվիրած իր մենագրության մեջ հաստատեց, թե հայերը X դարուն տեր դարձած էին կայսրության, թե ամեն տեղ հայեր միայն կտեսնվեին: Վասիլի հետ իրենց երևումն ըրին այն հզոր հայ ընտանիքները, ինչպես Լեկապենոս, Գուրգուաս (Գուրգեն) կամ Չմշկիկ, Փոկաս, Սկլիռոս, որոնք իրենց հերոսական ժեսթերով ստեղծեցին մեծ դյուցազներգությունը, հավիտենական փառքը Բյուզանդիոնի:

Հոս տեղը չէ պարզելու երկար ու շարունակական շղթան հայ դեմքերուն,

որ իրենց փայլով կլեցնեն կայսրության պատմությունը VI դարեն XII դարը, ոչ ալ զնահատելու այն անսահման ծառայությունները, զոր հայերը մատուցած են պետության՝ հանրային կյանքի բոլոր մարզերուն մեջ: Հիշեցնենք միայն, որ նույնիսկ IX դարու հելլենական գիտությանց և հելլեն մշակույթի վերածնունդը հայոց գործն է: Վարդաս Կեսար Հայն է, որ հիմնեց առաջին համալսարանը Կոստանդնուպոլսի մեջ և զայն դրավ ղեկավարության տակ Լևոն Իմաստասերի, որ ինք ալ հայ մըն էր, հռչակավոր, թե՛ իբր մաթեմատիկոս և թե՛ իբր հելլենագետ:

Լևոն եղբորորդին էր Հովհաննես Քերական պատկերամարտ պատրիարքին, ուսումնական անձ մը, որդի աստղաբաշխ Բագրատի, ուրեմն հայու մը:

Պատրիարքը ուներ եղբայր մը, որ կկոչվեր Արսաբեր (Արշավիր), որուն քաղաքամերձ պալատը ժամադրավայր եղավ գրական աշխարհին: Անշուշտ, այդ սալոնին մեջ է, որ կազմված է, ի միջի այլոց, համբավավոր Փոտը՝ Կ. Պոլսո պատրիարք և պարծանք օրթոդոքս եկեղեցվո: Ան հայ էր իր մորը կողմե, որ էր Իրինե, քույրը Արսաբեր հայազգի բարձր պաշտոնատարին, Թեոդորա կայսրուհվոյն քեռայրին:

Վերջապես VI դարեն XI դար, մինչև հայ հարստության վախճանը, հայերը փառավորապես ծառայած են կայսրության և զայն դարձուցած են քրիստոնեական քաղաքակրթության ախոյանն ընդդեմ մահմեդականության:

«Առանց հայազգի Վասիլին,- կըսե հայտնի բյուզանդագետ մը (4),- իսլամությունը Եվրոպայի վրայեն պիտի անցներ, քառուքանդ ընելով ամեն ինչ որ զայն այսօր Եվրոպայի և Հռոմի դուստրը կկացուցանե»:

«Առանց հայ զորավարներու, Բյուզանդիոն պիտի կործանվեր բարբարոսներու հարվածներուն տակ: Ծանր րոպեներուն, հանկարծ երևան կուզար Հերակլ մը, Վասիլ մը, Չմշկիկ մը, Փոկաս մը, որ այդ հոգնած քաղաքակրթության նոր թարմություն մը կուտար, և այն ատեն կայսրությունը, այդ ծեր կինը,- ըստ բյուզանդացի պատմագրի մը բացատրության,- կերևար ինչպես մանկամարդ աղջիկ մը ոսկիով ու թանկագին քարերով զարդարված» (5):

XI դարուն մեջտեղը, մեծ փոփոխություն մը առաջ եկավ: Հայկական հարստությունը կշիջանի և բուռն հակազդեցություն մը կշղթայազերծվի հայերու դեմ: Առիկա արդյունքն էր հույն ազգայնամոլության, զեշ նշանի մը տակ արթնցած և, որ պիտի խաթարեր դարավոր բարի ավանդությունները և պիտի դղրդեր կայսրության շենքը: Այդ այնքան հրաշալիորեն պտղաբեր գործակցության անխուսափելի խզումը չուշացավ իր անդրադարձումն ունենալու կայսրության ճակատագրին վրա: Կայսերը, որ իրարու



հաջորդեցին այն ատեն, անկարող և անարժան՝ Վասիլի ժառանգության, փոխանակ ջանալու դարմանումը գտնել հույներու և հայերու միջև ծագած աղետաբեր պառակտումին, բազմավնաս այդ ուղղությունն ընդգրկեցին, առանց գիտակցությունն ունենալու իրենց քաղաքականության ծանրակշիռ հետևանքներուն: Բյուզանդական իշխանությունները սկսան բուռն հարձակումներ գործել Հայ եկեղեցվո դեմ և անխղճորեն աշխատեցան կործանել հայ իշխանությունները՝ այն միջոցին, երբ սելճուկյան հրոսակները Հայկական բարձրավանդակն կմագլցեին:

Առիկա ստիպեց հայերը Բյուզանդիոնին կռնակ դարձնելու, իրենք իրենց մեջ ամփոփվելու: Իրենց ճիգերը համախմբեցին՝ սեփական քաղաքական վառարան մը ստեղծելու համար:

Քաջ Փիլարտոսը, կյուրապաղատ, բարձր պաշտոնատար արքունիքին և նախկին սպասավոր սքոլներու, այսինքն՝ ընդհանուր հրամանատար բյուզանդական բանակի, քիչ ժամանակի մեջ աջողեցավ իրեն համար կազմել ընդարձակ պետություն մը, որ Մելիտինեեն կտարածվեր մինչև Անտիոք:

Ուրիշ հայ մը, որ նույնպես կայսրության ծառայողներեն էր, Ռուբեն զորավարը, միևնույն ատեն քաշվեցավ Կիլիկիա, և Տավրոսի լեռներուն մեջ հիմնեց ավելի ամուր իշխանապետություն մը և հայկական մշակույթի նոր վառարան մը:

Հայերու խուժումը դեպի մայրաքաղաքը դադրեցավ: Բյուզանդիոն այլևս չտեսավ ժայթքիլն այդ աղբյուրին, որմե իր մեջ հոսած էին այնքա՜ն կենսական ուժեր և զոր ինքն իսկ ցամքեցուցած էր: Կայսրության ծոցին մեջ հայ-հույն համերաշխության խզումը, կնշանակե այն թվականը, ուր Բյուզանդիոն սկսավ սահիլ դեպի անկում:

Կ. Պոլսո մեջ՝ Թոռնիկ հայազգի ընտանիքին վերջին անդամներեն մին, Թեոդորոս Թոռնիկ, արդեն 1261 թվին կնախատեսեր, որ թուրքերը օր մը պիտի տիրանային Կ. Պոլսին և ամբողջ կայսրության:

Այս հակիրճ ընդհանուր տեսությունը կրնա ամփոփվիլ սապես. հայկական անցյալին որոշ մեկ ժամանակաշրջանին, ժամանակաշրջան, որ մեկե ավելի տեսակետներով նշանավոր է, կրկին հոսանք մը կարեց անցավ հայկական պատմությունը, մին ազգային հողի վրա, մյուսը աշխարհաքաղաքացի ոստանին մեջ, մարդկության ծառայելու որոշ եղանակներով՝ ազգային շրջանակի մեջ կամ անկից դուրս: Հետո կտեսնվի, որ այդ հոսանքներեն մին, աշխարհաքաղաքացիությունը, ձախողվածի մը կենթարկվի կամ հույն ազգայնամոլության ձևով կայլասերի: Հայերը, երկար ատեն ու լայնորեն շռայլելե հետո իրենց լավագույն ուժերն ի սպաս աշխարհաքաղաքացի պետության, զիրենք ստիպված զգացին ազգային երդիքը դառնալու:

Արդ, այս հանդիսավոր օրվան մեջ հավաքված ենք, նախ՝ կատարելու համար պարտականություն մը, այն է մեծարանքի հարկ մատուցանել հիշատակին անոնց, որ 1500 տարի առաջ քարոյական հիմը դրին մեր գործ-պատմական գոյության: Հետո ինծի կթվի, թե այս հանդեսը կրնա գործնական որոշ օգտակարություն մըն ալ ունենալ, պայմանով որ պատրաստ ըլլանք անցյալին փորձառությունը գնահատելու: Մենք ի հայտ բերինք գոյակցությունը երկու հոսանքներու, որոնք իբր հիմ ունին երկու հակընդդեմ սկզբունքներ: Այժմ ալ, այդ երկու սկզբունքները իրարու դեմ կռվի մեջ են, մեկ կամ մյուս կերպով, երբեմն՝ ծայրահեղության մղված ձևերով, քաղաքակիրթ աշխարհին մեջ:

Անցյալի փորձառությունը, որուն կակնարկենք, պետք է մեզի օգնե, պետք է օգնե մանավանդ մեր երիտասարդության, որ մասամբ որբ է, իր բախտին ձգված և բոլոր վտանգներուն ենթարկված. այդ այնքա՜ն հրահանգիչ փորձառությունը պետք է, որ անոր, թույլ տա հաստատակամ ու գիտակից ընտրություն մը ընելու երկու ուղղություններու միջև, որպեսզի ազգային շրջանակին ներս և հաստատ պահպանե ինչ որ կխորհրդանշե մեր ազգությունը՝ լեզու, կրոնք, ծես, ավանդություններ:

Թող այսօրվան հանդեսը և Սահակի ու Մաշտոցի հիշատակը մեզ քաջալերեն նոր եռանդով մը՝ հավատարիմ մնալու համար այն ժառանգության, զոր անոնք մեզի թողած են: Այդ ժառանգությունը նկատենք իբր տապան մը այս ալեկոծ օտար ծովերուն վրա, այն դժնդակ պայմաններուն մեջ, ուր կօգորի մեր ազգային կյանքը, և **հուսանք (6), որ օր մը այդ տապանը, հարություն առած, արդարության շունչեն մղվելով, պիտի իջնե Արարատ լերան վրա և մեզի թույլ պիտի տա վերականգնել ավերակները մեր հայրենիքին, որ լքված է այսօր, բայց ոչ մոռացված**[1]:

[1] Այս ճառին արտասանուած օրը, վերջին պարբերությունը ունկնդիրներեն ոմանց այնպես կարծել տվեր էր, թե բովանդակ հայ ժողովուրդի այժմյան ազգային կյանքն է, որ հոն «դժնդակ» ածականով կորակվեր և, թե «լքված, բայց ոչ մոռցված հայրենիքի ավերակներու ապագա վերականգնման» մասին հայտնված հույսը կվերաբերեր Խորհրդային Հայաստանին: Այդ մեկնությունը աննիշդ է, ինչպես հեղինակն ալ՝ երբ իրեն հաղորդեցինք այդ կարծիքը՝ ըսավ մեզի: Հայրենիքեն հեռու օտար երկիրներու ցրված Հայոց կյանքն է, որ ան կգտնե դժնդակ, և երբ կճշդե, թե «վերակենդանացած արդարության տապանը օր մը Արարատին,- այժմ թուրքերու ձեռք անցած Արարատին,- վրա է, որ պիտի իջնե», հայտնի է, որ չի կրնար ակնարկել մեր այժմյան Հայաստանի Հանրապետության, որ լքված ըլլալե հեռու, մեկ միլիոն կենդանի, աշխատող, արտադրող հայերու բույնն է, այլ հայերե ու հայ կյանքե բոլորովին պարպված, բայց վտարանդի հայերե երբեք չմոռցված այն հայկական նահանգներուն, որ մնացին կամ տասնհինգ տարի առաջ նորեն անցան թուրք լուծի տակ:



# ԿՈՐՅՈՒՆԻ ՄԱՍԻՆ

## (Պարոն Գ. Ֆնտգլյանի նկատողությունների առթիվ)

### Ա

Անկարող տանալ ներկայումս և կանոնավորապես հետևել «Հանդես ամսօրյա»-ին, նորերս միայն հնարավորություն ունեցա թերթելու տարվա թվերը և իմիջիայլոց ծանոթացա պ. Ֆնտգլյանի գրության («Հանդես ամսօրյա», 1926, թ. 5-6) (1):

Ավելորդ չեմ համարում նախ քանի մի խոսք ասել հարգելի պարոնի այն հայտարարության առթիվ, թե Մաշթոց անվան ստուգաբանությունը առաջարկել է ինքը տարիներ առաջ դեռ 1905 թվին և ուրեմն առաջնության պատիվն իրեն է պատկանում (2):

Ցավում եմ, որ պարոնի ակնարկած ուսումնասիրության ցայժմ անգետ մնալով, ակամայից տհաճություն եմ պատճառել ոչ միայն նրան, այլև ինձ, որովհետև անգիտությունն այսպիսի դեպքերում անախորժ է ամենից առաջ անտեղյակ բանասերին, բայց ավելի ևս ցավում եմ, որ պատվական պարոնը իր առաջնությունը պաշտպանելով չէ կարողացել մնալ վայելչության սահմանների մեջ:

Պ[արոն] Ֆնտգլյան իրեն ներելի է համարում՝ կրկտել հիշողությունս և այնտեղից վեր հանել իր գյուտի «վերհիշումը» այն հիմամբ, որ նվաստս ստանում էր «Անահիտ» հանդեսը, ինչպես ներողություն է քաշել ստուգելու և հետևապես հետևում իր գիտական աշխատանքներին, և ապշեցնող կետ է համարում, որ ես բերում եմ նույն երկու օրինակները Տիրոց և Բաքոց «նույնությամբ ոչ ավել և ոչ պակաս»:

Ասել է, թե 1905 թվին բախտ եմ ունեցել կարդալու պ. Ֆնտգլյանի ուսումնասիրությունը, պահել եմ հիշողությանս ծալքերում նրա գյուտը, որպեսզի 1926 թվին հռչակեմ և որ վշտալին է՝ կորզեմ պարոնի փառքը: Ապշեցնող է համարում պարոնը օրինակների զուգադիպումը: Կարծեմ, հայ բանասերին, անգամ ամենախոռնարհին հայտնի պիտի լինի, որ հայոց մատենագրության մեջ ուրիշ անուն չկա, **-ոց** վերջավորությամբ, բացի երկուսից **Տիրոց** և **Բաքոց**: Չհիշել այս, նշանակում է անքարեմիտ լինել և անտեղյակ ընթերցողին մոլորեցնել: Երկու իշխանական անուններն էլ ծանոթ են ամեն մի դպրոցականի Վարդանանց և Վահանանց

պատմությունից և հազիվ թե պետք կա ուսանելու պ. Ֆնտգլյանից: Այս միևնույն է, եթե մի քերական հավակներ, որ մյուսներն իրենից են քաղել, ասենք, **փլուզանեմ և կորուսանեմ** և կամ նման օրինակները:

**Բ**

Այս ակամա տողերից հետո դառնանք խնդրի էության, որ ավելի կարևոր է, և կտեսնենք, որ զուգադիպումն իսկ լոկ ձևական է:

Պ[արոն] Ֆնտգլյան իր ասելով համեմատել է Մաշթոց Մազդակի հետ, որովհետև *mazd* փոխվում է *mašt*-ի ինչպես *yazd*-ը՝ *yašt*-ի: Եթե այս է նրա հիմը, համեմատությունը սխալ է:

Պարսկերեն *yazd*-ը երբեք չի կարող փոխվել *yašt*-ի: Առաջինը ծագում է *yazata* ձևից, որ է ապառնի դերբայ կրավորականի, իսկ *yašt* է անցյալ դերբայ կրավորականի *yaz*-բայից: Երկուսն էլ արմատակից են, բայց ինչական փոխանցման կապ չկա մեջտեղ:

Ուրիշ է ծագումով և կազմով *mazd*-ը < *mand-dha*, առաջինը՝ *ma*$^{n}$*d*- նույն է հուն. *μαθ-εῖν*, սլավոն. *муд-р*, երկրորդը՝ *dha*-«դնել» արմատը: *d* փոխվում է *z* հաջորդ *dh*-ից առաջ և այս փոփոխությունն այլ կարգի է, քան **յազդ** և **յաշտ** և *mazd*- անցնել *mašt*-ի չէ կարող:

Ինչ վերաբերում է մեր համեմատության, ելակետս և մերձավոր առիթը **Մածդ**-ոց ընթերցումն է, որ հիշեցնում է անմիջապես **Մազդ**- բառը առանց որևէ ճիգի: «Գիրք թղթոց» պահել է և **Մածդ**-ոց ձևը: Մյուս հիշատակարաններում ընդունված ընթերցումն է **Մաշտ**-ոց և **Մաշթ**-ոց: Ստուգաբանական փորձերից առաջ պետք է բանասիրական ճշտումն տարբեր գրության փոխադարձ հարաբերության: Նայելով թե, որ ձևը կհամարվի հնագույն ըստ այնմ և ուղղելու է ստուգաբանական որոնումները:

Սկզբնական ձևը թվում է, թե **Մածդոց** է, որ գտնում ենք Պրոկղի թղթի մեջ, որ մատենագրության անդրանիկ վավերագիրներիցն է: Պրոկղի թղթի պատասխանի մեջ կարդացվում է **Մաշդոց**: Նույն ընթերցումը պահում է և «Կնիք հավատոյ» հին և կարևոր հիշատակարանը, ինչպես և մյուսները, որ օգտվել են Պրոկղի և Սահակի թղթերից (Աբրահամ կաթողիկոս, Գագիկ թագավոր և այլ): Համեմատաբար ուշ ժամանակ են երևան գալիս **Մաշտոց** և **Մաշթոց** գրությունները:

Եթե առաջնությունը տալու լինենք **Մածդ**-ոցին, իսկույն աչքի է ընկնում նրա ինչական մերձավորությունը **Մազդ**-ի: Սակայն իրանական գետնի վերա **Մազդ** չէ կարող տալ **Մածդ**, որովհետև պակասում են հարկավոր պայմանները, օրինակ *i* կամ *r* հնչյունը նախընթաց վանկում, որպիսի գրությամբ *z* փոխվում է *ž*:



Մնում է մեկնել հայերեն, թերևս, -**ոց** մասնիկի -*ց* հնչյունի ազդեցությամբ: Մի ենթադրություն, որ կմնա այդպիսին, մինչև որ ուրիշ օրինակով չհաստատվի այս հնչական անցումը:

Բայց կարող է պատահել, որ **Մաշտոց** և **Մաշթոց** սովորական գրությունը լինի և՛ հին և՛ հարազատ ձևը, և սրանից առաջացած **Մաշդոց** և **Մածդոց** արևմտյան արտասանության ազդեցության տակ: Մեր լեզվի արևմտյան բարբառի առանձնահատկությունը շատ ավելի հին է, քան ենթադրվում է:

Այս դեպքում պետք է հրաժարել հիշած ստուգաբանությունիցս և համեմատել **Մաշտոցը** մի ուրիշ անվան հետ, որ դարձյալ իրանական է և հին:

Հերոդոտոսը (VII, 79) հիշում է *Μάσιστος* անունը, որ կրում էր Քսերքսեսի զորականներից մեկը, նա որ առաջնորդում էր Սապիր (հայ Սպեր) ցեղի բանակը: Ասել է, թե Հայաստանի սահմանների մեջ հայտնի է եղել այդ անունը: *Masistus* գերադրական աստիճան է *mas*-, հունարեն *μακ-ρός* «երկար» բառի, ուրեմն *masišta*- «ամենից երկարագույն»: Կարող է լինել գերադրական և *maz*- «մեծ» բառի, *mazišta* «ամենամեծ»: Երկու դեպքում էլ հայերենում սպասելի է Մաշտ- համաձայն իրանականի:

Իբրև ստուգաբանություն նույնչափ հավանական է, որքան առաջինը: Խնդիրն այն է, թե ո՞ր ընթերցումն է հնագույնը **Մածդոց/Մաշդոց**, թե **Մաշտոց/ Մաշթոց**:

Հավանականությունը առաջնի կողմն է, դատելով ըստ հիշատակարանի: Նրա վրա հիմնած ստուգաբանությունն այն առավելությունն ունի, որ անվան տալիս է Theophore՝ «աստվածակիր» ծագում, որ այնքան բնորոշ է իրանական անվանակոչության:

Ինչ վերաբերում է -**ոց** վերջավորության, ծագումը մութ է, ինչպես և նրա կապը -**ոց** մասնիկի հետ: Հատուկ անունների մեջ բացի Մաշթոցից նույն մասնիկը ունին **Տիրոց** և **Բարոց**: Առաջին Բագրատունի իշխանի անուն էր, որ Վասակ [Սյունեցու] համախոհներիցն էր, իսկ երկրորդը՝ Վահանի ընկերներից և Պապի որդի: Պապ և Բար նույն անուններն են, մեկը պարթև ձևն է, մյուսը՝ սասանական: Հայրը հին անունն է կրում, որդին՝ նոր: Ինձ հայտնի է և մի երրորդ անուն **Ափոց**, որ սակայն դեռ ստուգելի է ընթերցումը, թեև հավանական է, որ Չափիկ Մոկաց եպիսկոպոս անվան ուրիշ ձևն է: Պ[արոն] Ֆնտգլյանի նկատողությունը իմ բերած օրինակների վերաբերյալ անպատեհ է, քանի որ խոսք չի կարող լինել «ավել պակաս»-ի մասին: Իրեն և ընթերցողներին եմ թողնում դատել «զուգադիպումի» արժեքը լեզվագիտական և բանասիրական տեսակետներից:

## Գ

Հարցերի պարոնը բարի ցանկություն է ունեցել՝ ցրելու իմ «շվարումս» Մեսրոպ անվան հանդեպ: Ինչո՞ւ հայ լուսավորության հայրը կրկնակի անուն է կրում և ինչո՞ւ նրա ձեռնասուն աշակերտը Կորյունը չի հիշում **Մեսրոպ** անունը, ինչպես և Փարպեցին: Արդյոք մեկը աշխարհական անունն է, մյուսը՝ հոգևոր թե մի ուրիշ գաղտնիք կա, այս հարցերը սպասում են դեռ լուսաբանության, եթե երբևիցե լուսաբանելու հույս կա (3): Պ[արոն] Ֆնտգլյան կարծում է, որ այս կնճիռը արդեն լուծել է և լուծել շատ հեշտությամբ: **Մեսրոպ** անունը շինծու և արհեստական է համարում և Խորենացու հնարածը: Լավ է ասած, մարդու աչքը դուրս գա, անունը դուրս չգա: Որպես թե Խորենացին կամենալով Մաշթոցին համեմատել Սերովբի հետ, ստեղծել է Մար-Սերովբ, որից Մեսրովբ: Մեղք է Պատմահորը վերագրել այսպիսի անհեթեթություն: Մաշթոցին «Սրովբէատես» կոչողը գիտենալու էր արդեն Մեսրոպ անունը: Բառախաղը **Մեսրոպ**-ից է ծագել և ոչ հակառակը:

Իր ենթադրությունը արդարացնելու հույսով պ. Ֆնտգլյան հիշում է, որ Խորենացին ճարտար է անուններ հերյուրելու մեջ, որի մի ապացույցն է Անուշավան, որ աղավաղումն է Անուշռվանի: Այս առթիվ քար նետել Պատմահոր երեսին անտեղի է: Խորենացին, որի մոտ կարդալու է Անուշռուան փոխանակ Անուշավանի (որ գրչագիրների սխալն է Արտավան և մյուս-ւան, -ուան հանգող անունների ազդեցությամբ) առել է այդ խորհրդավոր անունը Արայի զրույցներից որ Աղոնիսյան տիպի հայ աստվածության պատկեր է մեռնելու և հառնելու հատկությամբ, ինչպես ցույց ենք տվել ուրիշ տեղ (4):

Խորենացուն գողանալ տալով Խոսրով Նուշիրվանի մականունը պարոնը տեսնում է նոր ապացույց, որ Խորենացու Պատմությունը խմբագրված է VI դարում: Ներկայումս արդեն փաստ է, որ Խորենացու Պատմությունը գրված է 680 թվականից հետո և VI դարի մասին խոսք անգամ չի կարող լինել: Դառնալով Մեսրոպ անվան, պետք է ձեռնպահ մնալ նոր մեղքեր բարդել Պատմահոր առանց այն էլ ծանրաբեռնված ուսերին: Խորենացին հեղինակ չէ «Պատմութիւն վասն Սրբոյն Սահակայ եւ Մեսրովբայ» գրության և ոչ հեղինակ ողորմելի բառախաղին:

Մաշթոցի երկրորդ անվան իսկական հնչումը նմանապես անորոշ է, ինչպես և առաջին անվան: Խորենացու Պատմության մեջ Մեսրոպ է և մենք գոնե տրամադիր էինք առաջնությունը տալու այս գրության: Սակայն, «Կնիք հաւատոյ» ունի Մեսրոբ՝ Պրոկղի թղթի պատասխանում այնտեղ, ուր «Գիրք թղթոց» ունի Մաշղոց: Ի նկատի առնելով «Կնիք հաւատոյ» կարևոր



ժողովածուի պատկառելի հնությունը հավանական է թերևս, Մեսրոբ համարել ավելի հին, քան Մեսրոպ:

Այս պայմանով հնարավոր եմ գտնում առաջարկել հետևյալ ստուգաբանական փորձը:

Մեսրոբ *Mesrob* հաղորդ է իրանական մեծ աստվածության անվան, որ է Միտր: Նա բաղկացած է երկու տարրից **Meh-srob*, ուր առաջին մասը՝ **Meh* ձևափոխումն է Միտրի անվան: Հայտնի է, որ հին *Mitra* տալիս է *Midra, Mihr, Meh, Mer, Mel-*, որտեղից և հայերենում **Միհր, Մեհ** (մեհյան), **Մեր** (Մերշապուհ), **Մհեր, Մլեհ** (<պրս. *Milād* հին *Mihrdat*-ից), *Μελίας* (բյուզանդական հայ գործիչ):

Երկրորդ տարրը **-սրոբ** նույնն է ինչ որ տեսնում ենք Խոսրով անվան մեջ, պարսկերեն *χosrōb*,< **hu srāva; srava-* պահված է հայերեն փոխառյալ **դ-սրով** բառի մեջ, համապատասխանում է հունարեն *κλέος*, սլավ. *слово* և նշանակում է իսկապես «խոսք, գովք» (հմմտ. ռուս. *слово* «խոսք» և *слава* «փառք»): Հայերեն ***խո***-սրով, ***դ***-սրով ավելի հին է քան իրանական *χo-srōb*, բայց վերջինս պատահում է նաև Ավեստայում, *dura-srōb* «վատախոս» բառի մեջ, որ հակազրադաշտական և հերձվածող կարապ կամ կարապան դևի մակդիրն է:

Այս վերլուծումով **Մեսրոբ** < *Me*$^{h}$*-srōb* նշանակում է «Միհր գովող, փառաբանող» կամ «գովեալ ի Միհրէն»: Հունական և սլավոն հատուկ անունների մեջ ևս ընդունված է այս բառը, ինչպես *Θεμιστο-κλής*, *Vladi-slav*, ուր *κλής* < *κλέης*, **k̑leues*, և *-slav* հավասար են *-srob*, -սրոբին:

Եվ վերջապես *Me*$^{h}$*-srōb* -ի *Mesrōb* փոխանցման, այսինքն՝ *-h* հնչյունի կորուստի օրինակ կարող է ծառայել պարսկերեն *Mihrāb* անունը, որ հայերեն հնչվում է Մեհրաբ և Մերաբ: *Mehrāb* ևս կազմված է նույն *Mihr* և *āb* բառերից, *āb*, սանսկր. *ābha* նշանակում է «փայլ», որով *Mehrab* «Միհրափայլ» իմաստի կողմից մոտենում է Մեսրոբին «Միհրափառ»:

Առաջարկիս ստուգաբանության թերիքն այն է, որ համապատասխան անունը չենք գտնում իրանական լեզուներում: Բայց այս թերիքը առանձին կարևորություն չունի: Հայերենում կան շատ բառեր, որ իրենց կազմով իրանական են անկասկած, թեև չեն մնացել կամ միայն նրանց հազիվ նշմարելի հետքերն են մնացել Իրանում:

Ամեն պարագային Մեսրոբ իրանական տեսք ունի և մեր փորձը ապացույց է, որ հնարավոր է պատշաճ ստուգաբանություն գտնել: Հատուկ անունների մեկնությունն ինքնին դժվար է, մանավանդ, երբ եզակի օրինակներ են ինչպես Մաշթոց և Մեսրոպ: Նրանց կապը Արամազդ և Միհր մեծ աստվածների հետ հավանական է, բայց փաստ դառնալու համար պետք է որ վստահ լինենք, որ Մաժդոց և Մեսրոբ հնագույն ձևերն են:

## Դ

Չէինք ուզենալ անուշադիր թողնել և պ. Ֆնտգլյանի բանասիրական նկատողությունները մեր աշխատության առթիվ, ուր գովական ջանք է անում մոլորյալիս սխալներն ուղղելու: Մաշթոցի գործունեության մասին խոսելիս ինչ-ինչ դիտողություններ էի արել Կորյունի երկի նկատմամբ, կասկած էի հայտնել, որ երկը գրված է թերևս Վահան [Ամատունու] մահից հետո:

Հարգելի բանասերը փորձում է այլ կերպ թարգմանել և մեկնել Վահանին նայող հատվածը:

Օգնության է կանչում Փոքր Կորյունին և Ագաթանգեղոսին և կրկնակի հանցանք է գործում իրեն մեղսակից անելով անմեղ հեղինակներին:

«Իսկ բարեցապարտին Վահանայ յանկարծահաս կենաց ամենեցուն լինէր, **որ** աշխարհածնիւն հայրենեացն սեպհական **որդի** գտեալ, շնորհաւքն Քրիստոսի Աստուծոյ մերոյ մերձաւոր կենակից վայելէր եւ զի ըստ օրինակի գրելոցս առ ի մէնջ հարքն ի կատարումն դարձան»...[1]:

Ահա ինչպես է հասկանում այս հատվածը պ. Ֆնտգլյան. «Եթե լավ միտ դրվի, այս հատվածը ոչ թե Վահանի մահը կնշանակե, այլ ապրիլն և բարվոք ապրիլը իբր օգնական, պաշտպան, ընտանի անեն անոնց **որոնք** Մաշթոցի և Սահակա ավետարանական ընթացքով Ս. Գիրքը խոսեցնել տալով ... վերստին ծնան ամբողջ Հայաստան աշխարհը, Սահակ ու Մաշթոց հայրերուն սեպհական որդի գտնվեցան և հանձին Վահան Ամատունիի **հանկարծ** ուրեմն կվայելեին բարերար, պաշտպան, ընտանի, **«մերձավոր» «կենակից» հոգևոր նոր ծնունդին բերմամբ»**:

Ասել է, թե պ. Ֆնտգլյանը կամայականորեն, հակառակ քերականական կանոնների, ընդգծված, **որ որդի** «լինէր» հատկացնում է «ամենեցուն» և ոչ Վահանին: Թողնում է «բարեացապարտին» սեռական հոլովը առանց բացատրության: Թարգմանության փոխարեն առաջարկվում է մի մեկնություն բռնազբոսիկ և անհարիր, ինչպես կտեսնենք:

Վահանի պաշտպանության և հովանավորության պետքն էլ ավելի զգալի էր, շարունակում է պ. Ֆնտգլյան, զի հայրերը վախճանվել էին: Այսպես է ուզում կապել վերջին նախադասությունը նախընթացի հետ: Պարոնը հավատացնում է, որ իրեն պես են հասկացել հիշյալ հատվածը նաև Փոքր Կորյունը և Ագաթանգեղոս, այն է «հանկարծահաս»-ով մահ չեն հասկանալ այլ հասնիլ, պաշտպանել:

Թող բողոքե ինքը՝ Փոքր Կորյունը այս ամբաստանության դեմ.

«Իսկ բարեացապարտն Վահան յանկարծահաս կենաց **ասպնջական** ցանկալի ամենայն **սրբոց** լինէր որ աշխարհածնունդ հայրենեացն սեպհական որդի գտեալ՝ շնորհաւքն Քրիստոսի մերձաւոր կենացն **յաւիտենից** **լինէր**»:

[1] Կորյուն, էջ 47:



Իմաստը աներկբայելի է և հակառակ պ. Ֆնտգլյանին, որ անտես է արել **սրբոց** և **յաւիտենից** բառերը: Ասպնջական ծագում է ասպինջ-ից, որ թվում է թե նշանակում է «կայարան, ծիահանգիստ»: Ինչպես հնում, այնպես այժմ կայարանները կամ կարվանսարայները միաժամանակ և հյուրանոց են, իջևան: Այստեղից ասպնջական նշանակում է «հյուր, անցորդ» և «հյուրընկալ, հյուրանոց»: «Ասպնջական լինել». կարող է ունենալ երկու իմաստ՝ «ընդունարան լինել, հովանավորել» և «անցորդ կամ հյուր լինել»: Փոքր Կորյունը գործ է ածում երկրորդ մտքով թեև թվում է, որ քաղված է Մեծ Կորյունից, որ նույն դարձվածքը կիր է առած առաջին իմաստով իբր հյուրընկալող (Խուրս իշխանի համար ասված է «ասպնջական եղեալ» Մեսրոպա[1], ինչպես և Պողոս Առաքյալի բարեկամների նկատմամբ՝ «զքրիստոսամեծար ասպնջականիցն իւրոց»[2]: Հատվածի իմաստն այն է, որ Վահանը՝ մահը հասած, ցանկալի հյուր է լինում բոլոր սրբերին և Քրիստոսի շնորհով մերձավոր դառնում հավիտենական կյանքին: Ուրիշ խոսքով Վահանը մեռնում է և արժանանում սրբերի հավասար հավիտենական կյանքի:

Հետաքրքրական է, որ Մեծ Կորյունի մոտ հայրերի մահը ամփոփող վերջին նախադասությունը Փոքր Կորյունը կապում է հաջորդ պարբերության հետ և այսպիսով զրկում է պ. Ֆնտգլյանին այն հեցուկից, որ որոնում է նա սույն նախադասության մեջ ի նպաստ իր ըմբռնումին: «**Եւ այդ ըստ աւրինակի գրելոցս առ ի մէնջ** զերանելեաց սուրբ **հարցն** զվարս եւ զվախճան փոքր ինչ պատմելով **ի կատարումն** զրանս **ածից**, ոչ եթէ ի հին համբաւուց զրուցաց տեղեկացեալ...» և այլն: Այստեղ «ի կատարումն», թեև առնված է իր բնագրից, բայց ուրիշ կիրառություն ունի, քան այնտեղ, նման «ասպնջական եղեալ» դարձվածքին, որին տված է ուրիշ նշանակություն, քան Մեծ Կորյունի մոտ է: Իմաստն այն է, թե որովհետև հայրերը մեռել էին, որպես ինքն արդեն գրել է, ուստի թող ոչ ոք չկարծե, որ ուրիշի բերանից է քաղված կամ զրույցներից: Ոչ, ինքն ականատես է եղել հայրերի և՛ կերպարանքին, և՛ գործերին: Այս ուրիշ բան է, քան ենթադրում է պ. Ֆնտգլյան, որի կարծիքով, Վահանը բարի ժամին է հասնում, որովհետև սուրբ հայրերը վախճանել էին և տեղը բաց էր մնացել:

Ագաթանգեղոս ևս հուսալի բարեխոս չէ պատվական հակառակորդիս համար: Բավական է ասել, որ վիճելի բառը՝ «յանկարծահաս» Ագաթանգեղոս փոխել է «յանկարծակամ»-ի, հետևապես վերացրել է միջից վեճի առիթը: Ագաթանգեղոս քննելի հատվածը շրջում է Տրդատի վերա և արտագրում է հավանորեն Փոքր Կորյունից առանց ջանալու հասկանալ էությունը, բավականանալով հիշյալ բառի թեթև, բայց կարևոր փո-

[1] Կորյուն, Վարք Մաշթոցի, Գ. Ֆնտգլյանի հրատ., էջ 45:

[2] Անդ, էջ 10:

փոխությամբ: Հակառակ Փոքր Կորյունին, Ագաթանգեղոսին և նոր բանասերների պ. Ֆնտգլյան ուզում է այլ կերպ հասկանալ Վահանի հատվածը և կարծեմ, մոլորվում է ուրիշների «մոլորությունը» ուղղելու առաջինի ջանքի մեջ:

Հարգելի պարոնի առաջարկած իմաստն անընդունելի է: Վահանի մասին Կորյունը պատմում է, որ հազարապետ էր, որ սուրբ հայրերի աշակերտն Հմայակ Մամիկոնյանի հետ, և որ Մեսրոպի մահից հետո նա է, որ հոգածու է եղել հանդիսավոր թաղելու և խորան կանգնելու: Այս բոլորից հետո Կորյունին վերագրել այն, որ նա կարող էր ասել, թե Վահանը **հանկարծ** հրապարակ եկավ իբր հովանավոր վերածնյալ երկրին և փոխարինեց մեռած սուրբ հայրերին, անհաջող և անհիմն ենթադրություն է: Կորյունն այնքան մեծ համարում ունի Ս. Սահակի և Մեսրոպի մասին, որ երբեք չէր ներել իրեն կարծելու, որ Վահանը մի սոսկ իշխան՝ կարող էր նրանց տեղը բռնել: Կարիք չկար այսպիսի արտասովոր շողոքորթության: Վահանից ավելի արժանի մարդիկ կային: Եվ սուրբ հայրերի փոխարեն արդեն «ի նոյն վերակացութիւն դառնայր Յովնան»-ը, որ կապանքների մեջ արժանացել էր սրբության և՛ «խոստովանողական անուն ժառանգեաց»: Եվ միթե միայն Հովհանն էր: Իսկ Հովսեփը, որ տեղակալ էր և որի հրամանով գրում է Կորյունը, ո՞ւր էր, և ո՞ւր էին այն սրբազան եպիսկոպոսները, այն փայլուն կաճառը սուրբ հայրերի, որ Մեսրոպի մահից քանի մի տարի հետո պիտի ժողովվեին Արտաշատում ճակատ դնելու պարսից բռնության ի պաշտպանություն եկեղեցու: Պակաս չէին և քրիստոսասեր իշխանազունք, Վարդան և Վասակ իրենց համախոհներով այն ժամանակ տակավին սև և սպիտակ ոչխարների չէին բաժանված և կազմում էին մի հավատարիմ հոտ: Քանի մի տասնյակ լուսավոր անունների շարքին Վահանն այնպիսի մի բացառիկ դեմք չէր, որ Կորյունը նրան պարգևեր քրիստոնեից հովանավորի, Սահակի և Մեսրոպի փոխանորդի նախանձելի պատիվը: Ո՛չ, Վահանը երևան է գալիս Կորյունի մոտ, համեստ դերում, եթե միայն չաղավաղենք նորա խոսքերը:

«Իսկ բարեացապարտին Վահանայ յանկարծահաս կենաց ամենեցուն լինէր...» նշանակում է «բարեացապարտին Վահանայ հաս կենաց յանկարծ լինէր ամենեցուն», այսինքն՝ Վահանի կյանքի վերջը անսպասելի էր բոլորի համար: Կորյունը սիրում է ճարտասանական ոլորուն դարձվածներ: Հանկարծահաս՝ ածական չէ, այլ գոյականի իմաստ ունի և կախված է «բարեացապարտին Վահանայ» սեռական հոլովից: «Ամենեցուն»՝ չի վերաբերում «կենաց»-ի, այլ ենթարկու է «հանկարծ»-ի, որ միացել է «հաս»-ի հետ: Նույնպիսի եղանակով Կորյունը գրում է՝ «հայրենակատար մեծարեալ պայմանաւ», այսինքն՝ մեծարյալ կատարմամբ պայմանի հայրենյաց (կամ



հարց): «Հաս կենաց» նույնն է ինչ որ օր-հաս մոտավորապես, և նույնանիշ է մահվան:

Հետևյալ նախադասությունը վերաբերում է Վահանին և ոչ ամենեցուն՝ «որ աշխարհածնիւն հայրենեացն սեպհական որդի գտեալ, շնորհաւքն Քրիստոսի մերձաւոր կենակից վայելէր»: Սրա իմաստը պարզելու համար պետք է ուշադիր լինել «բարեացապարտ» բառին: Ի՞նչ է նշանակում «բարեացապարտ» և ինչո՞ւ է Վահանը այդպես կոչվում:

Բարյացապարտը նա է, որ ուրիշից բարիք է տեսել և ուրեմն պարտք մնացել, անհատույց եղել: Վահանի ստացած բարիքը մեկնվում է հետևյալ նախադասության մեջ, որ է գրական ծննդյամբ որդի է ճանաչվել հայրերի կողմեն, ուրիշ խոսքով աշակերտել է Ս. Սահակին և Մեսրոպին: Արդարև վերև Կորյուն արդեն հիշում է, որ «գլխավոր աշակերտների» թվում գտնվում էր Վահան Ամատունին և Հմայակ Մամիկոնյան: Ասել է, թե Վահանը երախտապարտ է, որ սուրբ հայրերը վարդապետել են նրան և որդեգրել որպես մտավոր, գրագետ զավակ: Դարձյալ երախտապարտ է Վահանը, որ Քրիստոսի շնորհով արժանացել է «մերձավոր, կենակից» լինելու պատվին: «Մերձավոր և կենակից» հոմանիշ են և նշանակում են մոտիկություն: Եթե հաջորդ նախադասությունը՝ «եւ զի ըստ օրինակի գրելոցս առ ի մէնջ հարքն ի կատարումն դարձան» շարունակություն համարենք Վահանի նայող հատվածին, ինչպես տպագրության մեջ է, որին համամիտ է և պ. Ֆնտգլյան, այն ատեն Վահանի վայելած մերձավորությունը պիտի տեղափոխենք անանց աշխարհը: «Շնորհաւքն Քրիստոսի» դարձվածն ավելի հավանական է դարձնում այս ըմբռնումը նույնիսկ անկախ վերջին նախադասության կցումից: Վահանը կենդանությանը որդի էր սեպհական հայրերի, իսկ մեռնելուց հետո Քրիստոսի շնորհով դառնում է կենակից հայրերին և այն աշխարհում, քանի որ հայրերը ևս արդեն վախճանած էին: Փոքր Կորյունը ճիշտ այսպես է հասկացել, ասելով «մերձաւոր կենացն յաւիտենից լինէր»:

Սակայն ավելի հավանական է, որ հայրերի մահվան վերաբերող նախադասությունը կապված է հաջորդ տողերին՝ «ոչ եթէ ի հին համբաւուց տեղեկացեալ եւ մատենագրեալ զայս կարդացուք...» կապն այնպես է հասկանալու, որ հայրերը քանի որ մեռած էին, կարող էր կասկած ծագել, որ համբավներից է քաղած հեղինակն իր պատմությունը: Այս կասկածը վանել է ուզում հավատացնելով, որ ինքը գրում է որպես «ականատես եղեալ կերպարանացն եւ լսող շնորհապատում վարդապետութեանն»: Կտեսնենք, որ հեղինակի երկյուղը խորհրդավոր է:

## Ե

Պ[արոն] Ֆնտգլյանի նորալուր մեկնությունը, կարծեք, չի արդարանում բնագրի ստույգ վերլուծումով: Խոսքը իսկապես Վահանի մահվան մասին է:

Հատվածի իմաստը արգո պարոնը փորձում է գտնել անգամ Եղիշեի մոտ: Իբրև թե նրա խոսքերը՝ «որ հազարապետ աշխարհին էր իբրեւ զհայ վերակացու համարեալ էր աշխարհականաց քրիստոնէից» շոշափում են Կորյունի հատվածը Վահանի մասին, համաձայն իր մեկնության: Հազիվ թե: Հազարապետությունը մի պաշտոնավարություն էր, որ շատ մոտ էր կանգնած շինականության, ինչպես պարզել ենք ուրիշ տեղ: Արշակ թագավորի ժամանակ հազարապետությունը գտնվում էր Գնունյանց ձեռքին և Փավստոսը անվանում է նրանց «շինականաշէն», նրանց պաշտոնը՝ «աշխարհատես խնամակալութիւն, աշխարհաշէն աշխարհատած դեհկանութիւն»: Այն «աշխարհը», որ տեսնում, խնամում, շինում, ածում են շինականություն է, աշխարհիկ ժողովուրդը, որ Եղիշեն կոչում է «աշխարհականք քրիստոնեայք»: Փավստոսի նման Եղիշեն ևս կարծում է, որ հազարապետը հայր է, խնամակալ ժողովրդյան: Եղիշեի խոսքերը հազարապետի անձի մասին չէ, այլ հազարապետության որպես պաշտոնեության կամ, ինչպես Փավստոսն է ասում, գործակալության: Արդեն հազարապետի անունն անգամ չի հիշում և զանգատվում է, որ Ատրորմիզդը հեռացնում է հայ հազարապետին, խլում է հայերի ձեռքից այդ կարևոր պաշտոնը և հանձնում ոմն պարսիկի: Ուրիշ առթիվ Եղիշեն հիշում է հականե Վահան Ամատունուն, բայց առանց գովեստի, առանց ակնարկի, որ նա որևէ առավելություն ունի մյուս իշխանների հանդեպ, նա, որին Սուրբ Սահակի և Մաշթոցի տեղը բռնելու մեծ արժանավորությունն է ուզում արտոնել պ. Ֆնտգլյան: Որքան և՛ կարող և՛ արժանավոր անձն լիներ Վահան, նա սուրբ հայրերի վերաբերմամբ միայն բարյացապարտ է, որովհետև գիր է սովորել, որդի ճանաչվել և նրանց կենակցությունը վայելելու արժանացել այս, թե այն աշխարհում: Այլ կերպ մտածել էլ չէր կարող Կորյունը, այնքան մեծ և բարձր էին նրա աչքում սուրբ հայրերը:

Արդ Վահանի մահվան հիշատակությունը, ինչպես և մի քանի ուրիշ դիտողություններ կասկածելի էին դարձրել մեզ համար Կորյունի գրության, ավանդաբար ընդունված, ժամանակը: Վահանը գերված նախարարների թվումն էր, ուրեմն Կորյունի գործը չէր կարող առաջ երևալ, քան գերիների դարձը:

Այս մոլորությունը վանելու բարի նպատակով է, որ պ̂. Ֆնտգլյանը փորձում է նորապես լուսաբանել վտանգավոր հատվածը: Կարծելով, որ կասկածս իր սաղմի մեջ արդեն խեղդել է իր մեկնությամբ, հայտարարում է մի շարք պատգամներ, որոնց վերա կանգ առնել հարկադրված ենք:

Արգո պարոնը կարելի չէ գտնում, որ Կորյուն ապրած լինի մինչև 450 թվի աղետավոր անցքերը, և ոչ «տրամաբանական, որ Վահան Ամատունի 442 թվին հանդիսավորապես Մաշթոցի գիրը կազմելե հետո... ութ տարիներ ևս



անցուցած ըլլա առանց ավարտելու մատենիկը»: Տարաբախտաբար տրամաբան պարոնը զլանում է ծանուցանել, թե որտեղից գիտե, որ Մաշթոցի գիրը կազմվել է 442 թվին: Թվում է, թե վեճի նյութը հենց այս է, որ ենթակա է քննության:

Դարձյալ՝ Շահապիվանի ժողովի 444-445 թթ. կանոնների մեջ պ. Ֆընտգըլյան գտել է ինչ-ինչ կետեր, որ առնված կթվին Կորյունի գրքեն, ուրեմն Մաշթոցի Վարքը առաջ է այդ ժողովից: Սակայն որքան և քննելի լինի Կորյունի գործը, համենայն դեպս նա շատ ավելի վավերական է, քան Շահապիվանի ժողովի կանոնները, որոնք միայն պ. Ֆնտգլյանի համար հորինված կկարծվին 444-445 թվին:

Այնուհետև վկա է կոչվում Ագաթանգեղոսը, որ գիտե և կօգտվե Կորյունեն և որ «Ե դարի կիսեն ետք չի կրնար գրված ըլլալ, քանի որ Փարպեցին իբր առաջին գիրք պատմության կհիշե զայն»:

Երջանիկ է այսպես մտածողը, որ հեշտությամբ վճռել է պարզել այն կնճռոտ խնդիրները, որոնց առաջ կանգնած է անզոր հայ բանասիրությունը: Փարպեցու Առաջաբանը խառնակ է և կասկածի տակ: Վրայից կարծես օտար ձեռք է անցել: Հիմք կա անվստահելու, որ Ագաթանգեղոսն առաջին գիրք համարվեր Փարպեցու օրով: Նրանից քիչ հետո ապրած հույն հեղինակից գիտենք, որ VI դարի առաջին կիսում Փավստոսի գործը այլ վիճակի մեջ էր, քան այժմ և ամփոփում էր նաև Հայոց սկզբնական պատմությունը, որ է Անանուն, Կեղծ-Մարաբաս և կամ Կեղծ-Ագաթանգեղոս: Հարցը քննված է մեր կողմե դեռ 1901 թվին և հույն վկայության ճշմարիտ իմաստը լուսաբանված: Շատ տարիներ անցած ուրիշներն էլ են նույն հարցով զբաղվել և եկել նույն հետևության, առանց պատշաճ հարկը տալու հետազոտությանս: Դափնեպսակս վտանգված չեմ համարել, այլ կարծել և կարծում եմ, որ ինձնից անկախ են հանգել նույն եզրակացության: Գոհ եմ մնացել տեսնելով, որ ուրիշներն ևս նույնն են մտածում, ուրեմն, հայացքս ճշմարիտ է և հաստատուն (5):

Արդ, եթե VI դ. առաջին կիսում Անանունի պատմությունը դեռ անջատված չէր Փավստոսից, որ թափառե անտեր անտիրական և վերջը Ագաթանգեղոսի անունով ծպտյալ հյուրընկալվի Սեբեոսի կողմից, ապա ուրեմն Փարպեցին առաջին պատմագրի պատիվը պետք է տար Փավստոսին և ոչ Ագաթանգեղոսին: Փարպեցու Առաջաբանի շփոթը ծագել է թերևս նրանից, որ փորձել են սրբագրել և հարմարել Առաջաբանը նոր գրության, որ ստեղծվել էր Անանունի անջատումով և առաջնությունը անցել Ագաթանգեղոսին: Եվ զարմանալու չէ, քանի որ գիտենք, որ անգամ նորերս 1793 թվի հրատարակիչը հնարավոր էր համարել աղավաղել Փարպեցու գործը, ներս առնելով Խորենացուց մի հատված Մաշթոցի վերաբերյալ (6):

Թողնենք սակայն այս հարցը և ընդունենք, որ Առաջաբանը հասել է մեզ հարազատորեն, իր սկզբնական վիճակի մեջ: Ո՞վ կարող է հավաստել և կամ ի՞նչ գրավական, որ Ղազար Փարպեցու առաջ դրված Ագաթանգեղոսը ճիշտ այն Ագաթանգեղոսն էր, որ այսօր տրամադրելի է, խճողած Կորյունից քաղած փոխառություններով:

Հայաքնին բանասիրությունն այլ կարծիք ունի, քան պ. Ֆնտգլյան Ագաթանգեղոսի մասին: Պրոֆ. Ն. Մառը, որ հրատարակել է արաբական Ագաթանգեղոսի մասին: Պրոֆ. Ն. Մառը, որ հրատարակել է արաբական Ագաթանգեղոսի թարգմանությունն և ուսումնասիրել, եկել է այն արդյունքին, թե այժմյան Ագաթանգեղոսի խմբագրությունը իջեցնելու է մինչև ութերորդ դարը (7):

Մի ուրիշ և վերջին առարկությամբ պ. Ֆնտգլյան «իր տկարամտության անհավատալի» է համարում, որ Կորյունի պես ջերմ կրոնավորը գովեր Վասակին 450 թվից հետո, երբ Վասակ հանեց իր դիմակը և հայտնվեց որպես «եկեղեցականներու դեմ ոգորող, մոգպետի աջակից, կրակատուն կանգնելու օգնական»: Իսկ ինչ է նշանակում Կորյունի զարմանալի և բարձր գովեստը, որ Սյունյաց իշխան Վասակը «քաջ էր, պարզեւեալ յԱստուծոյ, այր խորհրդական եւ հանճարեղ եւ յառաջիմաց շնորհատուր իմաստութեամբն Աստուծոյ»: Այստեղ արդեն «իր տկարամտութեան», ընդհատուկ, հավատալի է համարում, որ Կորյունի խոսքերը նախազուշակումն են, որ Վասակը պիտի խորագիտությամբ քնացներ պարսից կասկածները, վստահություն գրավեր երկրում, մարզպան դառնար, որպեսզի հետո կրակապաշտության ախոյան հանդիսանա և ազգային կրոնը ոտնակոխ անե իր քաղաքական հայացքների նպատին:

Ասել է թե Վասակը, այդ «պարզեւեալն յԱստուծոյ», ավելի քիչ հասկացողություն ուներ քրիստոնեության արժեքի մասին, ինչպես և կրակապաշտության թերիքի, քան պ. Ֆնտգլյանը: Դժվար է հաշտվել այս չարատանջ մտքի հետ: Կորյունն ինքը համաձայն չէ և այլ տեղեկություն ունի Վասակի աստվածապաշտության վրա: Նա վկայում է, որ Սյունյաց իշխանը «բազում ինչ նպաստութիւն ցուցանէր աւետարանագործ վարդապետութեան, իբրեւ որդւոյ առ հայր՝ հպատակութիւն ցուցեալ եւ ծառայեալ ըստ Աւետարանին վայելչութեան, **մինչ ի վախճան** զհրամայեալսն ի գործ բերէր»[1]:

Սրա պատասխանն էլ պատրաստ է պ. Ֆնտգլյանի կողմեն: «Քաջահայտ է,- ասում է հարգելի պարոնը,- թե Վասակ չպահեց այդ իսկ հպատակությունը 449 թվեն ետքը, ուրեմն Կորյունի գիտցած **մինչ ի վախճան** հպատակությունը կծգրափակի 449 թվականին, իբրև ծայրագույն եզր: Ուրեմն Կորյունը գրած է իր մատենիկը այդ թվականեն հառաջ»:

[1] **Կորյուն**, էջ 25:



Այս հասկացողությամբ ոչ միայն Վասակը, այլև պատվական Կորյունը տկարամիտ են դուրս գալիս: Արդարև, որ խելքը գլխին մարդը կարող է տակավին կենդանի, գործունյա և անգամ «երիտասարդ», ինչպես որոշում է տարիքը պ. Ֆնտգլյան, անձի մասին ասել, թե նա **մինչև վերջը** հավատարիմ մնաց: Եթե հնարավոր լիներ **մինչև ի վախճան** դարձվածքին ժամանակագրական իմաստ տալ, լավագույն ապացույցը կունենայինք, որ Կորյունին հայտնի է Վասակի վախճանը: Սակայն անհարթության պատճառ ինքը Ֆնտգլյանն է, որ կամ բավականին հմուտ չէ գրաբարին և կամ հապճեպ մտածող: «Մինչ ի վախճան զհրամայեալսն ի գործ բերէր» նշանակում է հրամանները կատարում էր, գլուխ էր բերում **ամբողջովին, սկզբեն մինչև վերջ, անթերի**: Որքան է տևել և երբևիցե ընդհատվել է, չգիտենք և վիճելի է: Պ[արոն] Ֆնտգլյանի պատմագիտությունը, որ Եղիշեի վարդապետությունից այն կողմը չի անցնում, չի կարող ամեն պարագային լույսի ցնցուղ համարվել: Կարելի չէ մտածել, որ Վասակ 410 թվից մինչև 450 թիվը, ինչպես ինքն է որոշում, ուրեմն 40 ձիգ տարիներ, գործադրած լիներ միայն այն նպատակին, որ խաբեր, նենգեր պարսիկներին և իր հայրենակիցներին, որպեսզի մի օր զորավիգ լինի մոգերին: Կարելի չէ, որ նա, որ ձգտում էր հայոց թագին, հայոց անկախության, ինչպես իր հակառակորդներն են խոստովանում, պետք ունենար ուսանելու պ. Ֆնտգլյանից, թե ի՞նչ էր «հայ ժողովրդի ինքնության պահպանման խորունկ բնազդը»: Դժվար է հավատալ, որ Մաշթոցի աջակցի սրտում քառասուն տարի ծխեր պարսից մոխրոցի մուխը, փոխանակ հայրենի սրբության սրբազան կնդրուկը: Այդքան տարվա լուսավոր աչքը չէր կարող մի ակնթարթում խավարել կրակարանների բոցից (8): Ժամանակն է մաքրել մեր անցյալը և ներկան եսատես կրքերի անառողջ ողողումներից: Այսօր իսկ մեր հասարակական պատասխանատու ուժերը այլևս չեն որակում միմյանց, քան դավաճան, ազգուրաց, օտարամոլ, շահասեր և ստրուկ օտար շահերի: Ուռած կրքերը չարաշունչ հողմեր են, որ սպառնում են հանգցնել այն ճրագները, որ լուսավորում են մեր խավար ուղին: Պատմագիտությունը պիտի կարողանա անաչառ լինել տալով **cuique suum**:

## Չ

Պ[արոն] Ֆնտգլյան չի կարող տրտնջալ, որ ուշադրության պակասություն ցույց տվինք իր հանդեպ: Բոլոր փաստարկությունները քննեցինք և ցավում ենք, որ ոչ մի դրական ցուցում չգտանք, որ փարատեր կասկածներս Կորյունի մասին:

Հայտնի է, որ Կորյունի լեզուն ևս եզակի է իր հատկություններով անդրանիկ մատենագիրների շարքին: Արհեստական և շինծու ոճ է, ճապաղ և

ծանր, որպես ճռնչող սայլ և չունի մյուս ժամանակակիցների ոճի ճեմական թեթև և սահուն նազանքը:

Տարակուսելի է Մաշթոցի ակումիտ տիտղոսը: Թեոդոսիոս կայսրը լսելով հայ գրագետի հռչակը իբրև թե հրամայում է կոչել «վայելուչ մեծարանօք զսուրբն ակումիտ»: Ակումիտ, հունարեն *ἀκοίμητος*, նշանակում է «անքուն»: Այսպես էին կոչվում այն վանականները, որ պարտավոր էին հերթով աղոթք անել նաև գիշերներն առանց ննջելու: Ճշմարիտ է, որ անքունների վանական կարգը երևան եկավ Թեոդոսիոսի օրով և հիմնադիրն էր ոմն Ալեքսանդր, որ հետո Ասորիքից տեղափոխվեց Կ. Պոլիս և այնտեղ հիմնեց նոր վանք: Բայց անքունները հռչակ ստացան միայն [V] դարու երկրորդ կեսից, երբ Ստուդիոս կրոնավորը հիմնարկեց Ստուդիոն կոչված նշանավոր մենաստանը 463 թվին: Այս թվից հետո միայն ակումիտ անունը կարող էր «վայելուչ մեծարանք» նկատվել: Վահանի մահը նմանապես 462 թվից հետո է: «Ճշմարտապատում եւ վարդապետասէր» Հովնանը, որ Տիզբոնում չարչարանք կրելուց հետո դարձավ «ի վերակացութիւն յերկիրն Հայոց», եթե վերակացություն բառով կաթուղիկոսություն հասկանանք և ոչ եպիսկոպոսություն կամ սովորական հովվություն, կարող է լինել Հովհան Մանդակունին:

Ահա կետեր, որ կասկած են հարուցանում և Կորյունի վերջաբանությունը մանավանդ ընդունակ է զորացնելու կասկածամտություն:

Կորյունը հարկավոր է գտնում հավատացնել, որ ինքը համբավներից և զրույցներից չէ քաղում իր պատմությունը՝ Մաշթոցի վարքը, այլ անձամբ ականատես է եղել հայրերի գործերին և անգամ գործակից: Նա «ականատես է կերպարանացն եւ առընթերակաց հոգեւորական գործոց եւ լսող շնորհապատում վարդապետութեանն եւ նոցին արբանեակ»: Սկզբում արդեն հեղինակն իրեն հանձնարարում է որպես աշակերտ Մաշթոցի՝ «մասնաւոր աշակերտութեամբ վիճակ առեալ» և գրում է մյուս աշակերտի՝ Հովսեփի հրամանով: Ի՞նչ կարիք նորեն շեշտելու, որ ինքը «**տեսել է** հայրերին, **ներկա է** եղել հոգևոր գործունեության, **լսել է** շնորհապատում վարդապետությունը և վերջապես նրանց **աշխատակիցն է**»: Ո՛րտեղից է հեղինակի այս զգուշավոր ջանքը առաջուց փարատելու հնարավոր կասկածները, որ գրողը ժամանակակից չէ հայրերին:

Հեղինակի կանխատեսությունն ավելի հեռուն է գնում և ավելի կասկածելի դառնում: Զգում է, որ ժամանակակից գրողից ավելի բան կարելի էր պահանջել, աշակերտը պետք է որ քիչ ավել նոխ տեղեկություն ունենար իր ուսուցչի և հոր կյանքի վերաբերյալ: Ուստի փորձում է արդարանալ, որ շատ բան գիտե, բայց թողնում է՝ («զաճախագոյնն թողեւ») չի ուզում բոլորը գրի առնել («չէաք իսկ հանդուրժօղք զամենայն արարեալսն կտակաւ



գիրաքանչիւրսն «նշանակել»»), այլ միայն այն ինչ որ արժանի պատմելու («առ ի մանրակրկիտ առնելոյ զկարեւորագոյնս պատմելոյ»): Եվ հանկարծ խոստովանում է, որ «ի նշանա<ւոր> գիտակացն (տպ. դիմակացն) քաղելով (տպ. քակելով) **զհամառաւտսն** (տպ. զհամատուրսն) կարգեցաք, որ(ք) ոչ միայն մեզ, այլ եւ որ զ(մ)ատեանսն ընթեռնուն, յայտնի է»[1]:

Մի ակամա *lapsus*, որ մոտ է ճշմարտության: Հեղինակը ուրեմն օգտվել է նշանավոր գիտակներից, և որովհետև մատյան կարդացողները գիտեն այդ, ասել է, թե գիտակները՝ գրավոր աղբյուրներ են: Հարկավ խոսքը Սուրբ Գրքի և Առաքելոց թղթերի մասին չէ, որոնց վկայություններից օգտվում է գրքի սկզբում: Մեր կասկածները զորանում են և ստանում որոշ ձևակերպում: Արդյոք վերջաբանությունը չի պատկանում այն ձեռքին, որ հարկ է տեսել վերստին խմբագրելու Կորյունի գործը: Մաշթոցի Վարքը, անշուշտ, գրել է նրա ձեռնասուն աշակերտը Կորյունը և գրել է պարզ անպաճույճ ոճով, ինչպես կարելի է ենթադրել Ղազար Փարպեցու քաղվածներից: Հետագայում մի ուրիշը Կորյունի գործը վեր է ածել ավելի բարձր ոճի, ինչ-ինչ հավելումներով և հապավումներով:

Գիտենք, որ մեզ հասած Կորյունը ենթարկվել է նորեն կրճատումի, որ հայտնի է Փոքր Կորյուն անունով: Սա հասարակ կրճատում չէ, այլ գրեթե նոր խմբագրություն: Շատ բան զեղչած է, ինչպես ձիգ Առաջաբանը: Կան նաև հավելումներ, որոնց մեջ և Խորենացուց առած հատվածը: Ճիշտ նման ձևով և Մեծ Կորյունը կարող էր լինել վերամշակում Կորյունի հարազատ գործի: Միայն տարբեր նպատակով: Մի դեպքում պետք է զգացված բարձրացնել ոճը և հասցնել ներբողի ճարտասանական թռիչքի, մյուս դեպքում, ընդհակառակը, պարզել և մատչելի անել ընթերցումը:

Այս ենթադրությամբ Կորյունի Վերջաբանը իր անսպասելի մերկացումով հասկանալի կդառնա: Նորա իսկական հեղինակը Կորյունը չէ, այլ նրա խմբագրողը: Եվ նա իրոք ճշմարտախոս է, նշանավոր գիտակը, որից օգտվել է, Կորյունի սկզբնագիրն է: Վերջաբանի երկյուղը և հավաստիացումը, որ պատմությունը ականատեսի գործ է, նորա խոստովանությունը, որ շատը կրճատել է ի նպաստ կարևորի համաձայն կանոնի *non multa sed multum*, այս բոլոր ասված է *bona fide:* Հետևապես, այն կետերը, որոնք կասկածելի են և կամ այդպես են թվում, կարելի է համարել վերամշակողի, այսինքն՝ երկրորդ ձեռքի ակամա ստվեր:

Հազիվ թե կարիք կա հիշելու, որ արծարծածս մտքերը տակավին թեական կառուցումներ են որոշ դիտողության հիման վերա, որոշ դժվարություններ հարթելու համար: Դրական վճիռներ չեն: Կորյունը երևում

[1] Կորյուն, էջ 47:

է, որ Փավստոսի, Ագաթանգեղոսի, Ղազար Փարպեցու նման կրել է օտար ճորոգիչ ձեռքի ազդեցությունը և նրանց հետ միասին պիտի գտնեն լուծում:

## է

Պարոն Ֆնտգլյանը, անշուշտ, կների ինձ, որ պատեհ առթից օգտվելով քանի մի խոսք էլ ասեմ նրա լեզվագիտական խուզումների նկատմամբ:

Հայերեն **խաչ** բառը պարոնը փորձում է հանել ասորական **խաղչ**-ից: Կարծեմ, կարելի է լռությամբ անցնել այսպիսի համեմատության մոտեն և բնավ չհիշել, մոռանալ: Կան մտքեր, որ անհավատարիմ թռչունի նման դուրս են գալիս հանկարծ մտքի վանդակից, որպեսզի այլևս չվերադառնան:

Անցնենք «Պահլավերեն փոխառյալ բառեր» հոդվածին[1]: Երեք բառ, երեք գյուտ՝ զուար[ափակ], [վատ] շուէր և նուէր: Ագաթանգեղոսի զուար[ափակ քաղաքորմի] բառը համեմատում է *zbar* բառի հետ: Որպես թե *zbar* նշանակում է «ափ, եզր», ուրեմն զուարափակ ասել է «եզրափակ»:

Մխիթարյան հայրերը կարծել են, որ զուարափակի մեջ զուար-ակ բառն է, ուրեմն քաղաքորմը զուարակներ փակելու համար էր: Ցայժմ էլ ժողովուրդը օտար բառով դալա (արմատակից քաղաք-ին) է կոչում բնական, թե արհեստական շրջափակ կայանները, որոնք հատկացրած են կենդանիների հանգստյան և բացօթյա գիշերելուն: Հնում սա կոչվում էր քաղաքորմ:

Պարոն Ֆնտգլյանը չէ հավանում այս մեկնությունը, գուցե և իրավամբ: Կարող է պատահել, որ **զուար** կապ չունենա զուարակի հետ: Ուզում է տեսնել այստեղ իրանական *zbar*: Տարաբախտաբար ինքը՝ *zbar* պետք ունի լուսաբանության պվելի, քան զուարը: Ջակսոն Վենդիդադի 19, 4 հիշած *zbar* թարգմանում է «եզր» ենթադրությամբ, որովհետև խոսքը գետի մասին է: Բառի նշանակությունը և ստուգաբանությունը անհայտ է: Լեզվական խնդիրներում ավելի մեծ հեղինակություն, քան ամերիկացի պատկառելի գիտնականը, գերման[ացի] Բարթոլոմե կարծում է, որ *zbarah* նշանակում է **բլուր**, **բարձրավանդակ**: Վենդիդադի պահլավ թարգմանությունը ոչ մի նպաստ չի բերում բառի լուծման, *zbarah-* թողնելով անփոփոխ *zbar*. սանսկրիտ թարգմանությունը *zbarah*-ի դեմ ունի *padah-* «տոն», երևի, ստորոտի մտքով:

Ջակսոնի և Բարթոլոմեի պայմանական, և տարբեր ըմբռնումները «ափ» և «բլուր» կարելի էր հաշտեցնել, ինչպես կարծում եմ անձամբ, հիշելով գերման *Berg* «լեռն», որ անցել է սլավ լեզուներով, որպես *brēg* «ափ», սկզբնապես «ստորոտ» հետո «ափ»: Մեկնությունս հնարավոր է, եթե *zbarah*-ի ստուգաբանական իմաստը որևէ ենցուկ տար հիշյալ ենթադրական

[1] «Հանդէս ամսօրյա», 1926, № 9-10:



թարգմանություններին: Նույն Բարթոլոմե համեմատում է *zbar-* սանսկրիտ *hvarah-* «կորություն» բառի հետ: Ավեստայում *zbar-* նշանակում է «ծուռումուռ գնալ» և գործ է ածվում դևերի քայլվածքը բնորոշելու համար, մինչ բարի ոգիներին է վերապահում սովորական *tak-* «գնալ, վազել» բայը: Եթե հնարավոր է «կորության, ծռության» գաղափարից հանել «լեռ, բլուր» նշանակությունը, կարելի է ընդունելի համարել տված ստուգաբանությունը:

Համենայն դեպս *zbar* մնում է բավականին մութ: Հայերեն **զուար** ևս մութ է, գոնե պ. Ֆնտգլյանի համար: Պարզ է, որ երկու կույրեր չեն կարող առաջնորդել դեպի լույս: Մանավանդ որ ավեստ. *zbarah*, որ պահլավերենում մնում է *zbar* հայերենում ի դեպ փոխառության պիտի հնչեր ևս ***զբար**:

Նպատակիցս դուրս է որևէ ստուգաբանություն առաջարկել: Կուզեի միայն ակնարկել, որ զուարափակը մեկնություն է քաղաքորմ-ի, և ուրեմն վերջինս սովորական **դալա** չէր ցած պատնեշով, այլ խոտամբար՝ բարձրապատ: Ներելի է զուար-ի մեջ տեսնել պարթև *vār*. ավեստ. *vāra* և պարսկ. *bār* բառը, որ նշանակում է «պատ»: Հայերեն՝ պատվար ունի իր վերջին մասում նույն *vār* < **pati-vāra* (*pʻati*). սկզբի զ- թվում է նախդիրի մնացորդ է, հավանորեն, *uz-*, որ նկատվում է զգույշ բառում <ավեստ. *uz-gaušo*, «ականջները ցից», այլև ավեստ. *uz-vaeða-*: Զուար < **uz-vāra*, ուրեմն նշանակելու է «պատ,, վեր բարձրացող», զուարափակ՝ որմափակ: Կրկնում եմ, ենթադրություն է այս լոկ:

Անհաջող է և պ. Ֆնտգլյանի երկրորդ համեմատությունը: Հայերեն **-շուէր** չի կարող համաձայնել օտար՝ ոչ իրանական *svat* (*)-ին: **Վատշուէր** ամբողջովին փոխառություն է և ենթադրում է պարթև **vatišver:* Անտեղի է **գէշ** օրինակը, որպես թե **գա(ր)շ**-ից: Պրոֆ. Մառը շատոնց արած է այս համեմատությունը, հանելով **գէշ**-ը, ***գայշ**-ի միջնորդ ձև **գէշ**-ի և **գարշ**-ի: Բնավ չեմ կարծում այստեղ «վերհուշումի» հետքեր որոնել, այլ հասարակ զուգադիպում, որ հնարավոր է, չնայելով որ անձամբ **գէշ - գարշի** նույնացումը համոզիչ չեմ գտնում:

Երրորդ գյուտը ավելի հանդիսավոր է: Պարոն Ֆնտգլյան պետք է տեսել հայտնել այդ մասին ամերիկացի իրանագետի, պրոֆ. Ջակսոնին, «որին շատ գոհունակություն է պատճառեր»: Արդ չնայելով Ջակսոնի հավանության «պահլավիկ *nvar* չէ կարող նույնանալ **նուէր**-ին հետ: Բարեբախտաբար նվեր այն փոխառություններից է, որի ստուգաբանությունը վաղուց և ճշգրտորեն հայտնի է: **Նուէր** ծագում է պարթև *niveda*, պարսկ. *nuvēd* نوید, ավեստ. *ni-vaēða-* (*ni-vaedayemi* բայի մեջ): *nvar* տեղ չունի այս շարքի մեջ:

Կասկածելի ենք համարում անգամ *nvar* գոյությունը. Դենկարտի՝

*aspānυar-i Visašpu-* մեջ *aspānυar* վերլուծել՝ *aspā-nυar* անհեթեթություն է, *aspā*-ի երկար *ā* կմնա առեղծվածային: Հասկանալի է, ինչո՞ւ Վեստը կարդում է *aspān-pur*, կամ *aspāχur*, որպեսզի *aspā*-ի *ā* անուշադիր չթողնե:

Պահլավ գրերը ազատություն են տալիս այլևայլ կերպ կարդալու: Երբ մեկը ուզում է *-n* տառը տեսնել և կարդալ *aspānυar*, ինչպես պ. Ֆնտգլյանը, այն ժամանակ պիտի բառը լուծել *aspān* և *υar* և ոչ երբեք *aspā* և *nυar* (*aspān* սեռական հոլովն է հոգնակի, իսկ *aspā* կլինի անհասկանալի ձև): *Aspāxur* քերականորեն ճիշտ ընթերցում է *aspā* + *āxur* = *aspāxuri*, նույնպես քերականորեն ճիշտ *aspān -pur* «ձիոց քաղաք», բայց *aspā-nυar* անհեթեթ է քերականորեն:

Պարոն Ֆնտգլյանին գայթակղել է իմաստը: «Ասպանուէր» կարդալով, կարելի է «ձիազոհ» հասկանալ և ուրեմն պարզել մութ պարբերությունը այն մտքով, որ Զրադաշտին հանդիպելիս Վշտասպ ձիու զոհ էր մատուցանում: Արգո պարոնը այս միտքը շշնջացել է գիտնական Ջակսոնին և սա «հայտնել է իր գոհունակությունը այս լուծումին»: Այսպես է, որ չար մտքերը պատրում են երբեմն առաքինի մարդկանց:

«Դենկարտ» պահլավ գիրքը հորինված է Ք. հ. IX դարում և այլ նպատակ չունի, քան մեկնել բացատրել Ավեստայի սրբազան գիրքը: Ավեստայում և ոչ մի նշան ձիազոհի, ինքը՝ ձին գրեթե պաշտելի է, մանավանդ սպիտակ ձին, որը ինչպես լույս արտահայտություն կապակից է աստվածներին: Հավանական չէ, որ «Դենկարտը» հանկարծ մտաբերեր դարերով մոռացված, վերացված ձիազոհը, և հիշեր հակառակ Ավեստայի և այն էլ մի անգամ որպես *ἅπαξ λεγόμενα.*



# ԴԱՐՁՅԱԼ ԿՈՐՅՈՒՆԻ ՇՈՒՐՋԸ

«Հանդես Ամսօրյա»-ի մեջ (1927, թիվ 9), պ. Ֆնտգլյան հաճել է պատասխան գրել մեր դիտողությունների առթիվ, տպված նույն հանդեսում (1):

Պ[արոն] Ֆնտգլյան մի գյուտ է արել, Կորյունի մի հատվածի մի նոր մեկնություն: Որպես ապացույց, որ ինքը ճիշտ է հասկանում հիշյալ հատվածը, կոչ էր արել Փոքր-Կորյունի և Ագաթանգեղոսին, որ սրանք ևս իրեն իբրև թե համամիտ են: Ահա՛ իր հայտարարությունը. «Փոքր-Կորյուն և Ագաթանգեղոս հանկարծահասով մահ չեն հասկանար»:

Արդ, մենք ցույց տվինք, որ այս կոչումը հանիրավի է, ո՛չ Փոքր-Կորյուն և ո՛չ Ագաթանգեղոս պ. Ֆնտգլյանի գործին վկաներ չեն: Կարծեմ, պարզ է խնդիրը:

Բայց տեսեք, ինչպես է թյուրում հարցը պ. Ֆնտգլյան ասելով, որ մենք զբաղվում ենք Կեղծ-Կորյունով, փոխանակ հարազատի, «իբր ուղիղը գերադասելով», այլև ուզում ենք որպես թե «Կեղծ-Կորյունով ուղղել հարազատը»: Մտքի այս խոտորումը ներելի չէ բնավին մինչև անգամ պ. Ֆնտգլյանի նման բանասերին: Հակառակորդին հասկանալը և իր ասածը հիշելը առաջին և տարրական պահանջն է ամեն մի վեճի, առանց որի վեճն իսկ դառնում է ժամավաճառություն: Սրանով պ. Ֆնտգլյան կրկնակի մեղանչում է, զրպարտելով նախ Կեղծ-Կորյունին և հետո մեզ: Խնդիրը բնավ այն չէ, թե ինչպես է վերաբերում Փոքր-Կորյունը հարազատին: Ավելին կասենք, նրա վերաբերումը մեզ համար բոլորովին պարտադիր չէ: Հարցն այն մասին է, թե Կեղծ-Կորյունը իրավ կողմնակի՞ց է պ. Ֆընտգլյանի ըմբռնումին, ինչպես վերջինս հավատացնում է, թե սա սխալվում է իր կոչումով: Ցույց տվինք, որ սխալվում է: Ուրիշ ոչինչ: Նկատել էինք, որ Փոքր-Կորյունի մեջ կան խոսքեր, որ գուցե սպրդել են պ. Ֆնտգլյանի ուշադրությունից, խոսքեր, որ վկայում են, որ «յանկարծահաս»-ով Վահանի մահն է հասկանում: Պ[արոն] Ֆնտգլյան առարկում է, որ այս խոսքերը Փոքր-Կորյունի «ընդմիջարկություն» են, մոռանալով, որ կարևորն հենց այդ է, որ պարզում է մեզ Փոքր-Կորյունի ըմբռնումը: Այդ ըմբռնումը ընդդեմ է պ. Ֆնտգլյանին և ուրեմն, անարդար գործ է կատարում պ. Ֆնտգլյան, երբ հայտարարում է, որ Կեղծ-Կորյունը նման է մտածում: Մենք չենք, որ դիմում ենք Փոքր-Կորյունին մեր ասածը հաստատելու համար, այլ ինքը՝ պ. Ֆնտգլյան և մենք Փոքր-Կորյունը քննելով, չենք ուզում հարազատ

Կորյունը ուղղել, այլ ուղղել պ. Ֆնտգլյանի սխալ կոչումը: Առանձին նրբություն չէ հարկավոր, որ հասկացվի այս պարզ ճշմարտությունը:

Սակայն պ. Ֆնտգլյան թյուրելով հարցը, զարմանում է, որ մենք Վահանին սուրբ ենք համարում: Դարձյալ, նախ մենք չենք սուրբ համարողը, այլ Փոքր-Կորյուն: Եվ երկրորդ՝ ինչո՞ւ է պ. Ֆնտգլյան զարմանում, որովհետև Վահան «աշխարհիկ հոգերով և կրքերով զգածյալ մարդ էր»: Հարազատ Կորյունը համարում է Վահանին «այր պատուական եւ երկիւղած» և ուրեմն հնարավոր էր, որ մահից հետո սրբանար, քանի որ այդ ուղին բաց է ամեն մի բարեպաշտ քրիստոնեի համար: Կեղծ-Կորյունը, որքան և տգետ և խեղճ պ. Ֆնտգլյանի աչքին, կարող է իր կողմեն հարցնել պ. Ֆնտգլյանին, ինչպե՞ս է որ մեղսալից Վահանը, «որմե սրբության բույր այնքան քիչ կրուրեր» հանդիսանում է քրիստոնյա աշխարհի հովանավոր, Սահակ և Մաշթոց Սուրբ հայրերին փոխարինող: Փոքր-Կորյուն իրավամբ կարող է նախատել պ. Ֆնտգլյանին, որ իր աչքի գերանը ուզում է ուրիշի աչքը խոթել:

Նման սխալ էր գործել նույն բանասերը և Ագաթանգեղոսի նկատմամբ, սրան ևս սուտ վկայության կոչելով: Ագաթանգեղոս հարմարեցրել է Վահանի հատվածը Տրդատին, **յանկարծահաս** բառը փոխարինելով **յանկարծակամ**-ով: Գիտակցական փոփոխություն է, համաձայն իմաստին:

Պարոն Ֆնտգլյան հայտարարում է, որ այդպիսի բառ չկա և որ գրչագրական սխալ է փոխան **հանկարծահաս**-ի: Անհիմն ենթադրություն: Նախ այդպիսի բառ կա: Ագաթանգեղոսն իսկ ուրիշ տեղ գործ է ածում նույն բառը՝ «ուրախութիւն եղեւ եւ լինի ընդ **անկարծակամ** դարձ կենացն»[1]: Երկրորդ՝ Ագաթանգեղոսի բազմաթիվ ձեռագիրներից և ոչ մինը հիմք չեն տալիս այդպիսի սրբագրության: Էջմիածնի գիտական հրատարակությունը պահել է **հանկարծակամ** ընթերցվածը և իրավամբ: Խուսափելու է ինքնակոչ ուղղումներից: Սրբագրությունն ևս իր հիմքերն ունի և բավական չէ մատը ճակատին դնել և կամայականության դաշտ բաց անել: Անցնենք այժմ հարազատ Կորյունին:

* * *

Ասել էինք, որ պ. Ֆնտգլյանի մեկնությունը Վահանի հատվածի անտես է անում ինչ-ինչ քերականական անհարթություններ: Պ[արոն] Ֆնտգլյան մեզ պատասխանում է, որ մեր նկատողություններն այլ բան չեն եթե ոչ «թյուր հայերենագիտության փունջ»: Եվ այս քաջ հայագետը փորձում է ցրել մեր սխալները, կարելի է ասել, թերավարժ տղուկի կայտառությամբ:

Նախ՝ նկատել էինք, որ պ. Ֆնտգլյանի մեկնությամբ «քարեհացպարտին Վահանայ» սեռական հոլովը դառնում է անուն բայի, որ քերականական անհեթեթություն է:

Տեսեք, ինչ է պատասխանում պ. Ֆնտգլյան. «մեր միտքը չէ եղած բնավ ավելորդ դասախոսություն ընել՝ գիտնականներու ընթերցման ենթարկված հոդվածի մեջ մատնանիշ անել օրինակներ նույն ինքն Կորյունե և ցույց տալ, թե սովոր է **«այլ, իսկ» շաղկապներն անմիջապես հետը սեռական հոլովով դնել անունը»**:

Բայց տեսնելով, որ անգետի հետ գործ ունի, «հարկադրված է մեջ բերել իբր ապացույց սա օրինակները. «իսկ Պաւղոս[ի] (իր ուղղումն է) ի մտի եղեալ էր» և «այլ սրբոյն Պաւղոսի չորեքտասանեքումբք թղթովք պատմէ»:

Որքան և մեղմ լինել կամենանք, բայց ստիպված ենք ասել, որ քերականական խակություն է կարծել, որ որևէ շաղկապ կարող է անուն բային փոխել սեռական հոլովի: Կարելի էր լռությամբ անցնել այս պարագան, որպես մի անզգույշ սայթաքում, մի տեսակ **lapsus amatoris**:

Բայց ստիպված ենք հիշեցնել, որ նրա մատնանշած սեռական հոլովները բնավ կապ չունեն նախընթաց շաղկապի հետ, այլ կախված են անցյալ դերբայից համաձայն որոշ քերականական երևույթի, որ հայտնի պիտի լինի նաև պ. Ֆնտգլյանին: Երբ ստորոգյալը արտահայտվում է անցյալ դերբայով կամ աներևույթ եղանակով՝ ենթական կարող է գրվել սեռական հոլովով, կամ պահել ուղղականը: Կորյուն հավատարիմ է այս կանոնին: Այսպես Կորյուն գրում է. «վասն որոյ **երանելոյն հայեցեալ**..., դառնայ»: «Զայս ածան **ընկալեալ** ի տեառնէ երանելի **առաքելոցն** ... իսկ **Հարքին** զայն **լուեալ**, փութանակի հասանէր»: «Իսկ աշակերտասէր **վարդապետին** զտարեալս ընդ իւր յերկուս **բաժանեալ** ... կարգէր» և այլն, գրեթե ամեն մի էջում պատահում են նման դարձվածներ: Միևնույն ժամանակ պահում է երբեմն ուղղական ձևը՝ «իսկ ցանկալի տեառն եղբայրն **Յակոբոս** զհամաւրէն իսկ զզունդն սրբոց հանդերձ սրբասէր տերամբն յաւրինակ **առեալ** ի թղթի իւրում ասէ», և այլն:

Պ[արոն] Ֆնտգլյան բերում է երկու օրինակ, մեկը նախապես սրբագրելով առանց որևէ անհրաժեշտության: Տպագիրն ունի՝ «իսկ Պաւղոս ի մտի **եղեալ** էր», Ֆնտգլյան ուղղում է «Պաւղոսի»: Մեկը թե մյուսը «իսկ»-ի հետ կապ չունին և կախված են «եղեալ էր» բայից:

Երկրորդ օրինակն է՝ «Այլ սրբոյն Պաւղոսի չորեքտասանեքումբք թղթովք **պատմէ** զիւր առաքելակիցս եւ նիզակակիցս եւ ուրախակիցս իւր առնէ»: Պ[արոն] Ֆնտգլյան, որ սրբագրության առանձին տենդ ունի, հուլանում է նկատել, որ այս նախադասության մեջ երկու դիմորոշ բայերից մեկը պետք է անցյալ դերբայ լինի, համաձայն լեզվի կանոնավորության և Կորյունի սովորության: Այսինքն՝ **պատմէ** սխալ ընթերցված է փոխանակ **պատմեալ**

[1] **Ագաթանգեղոս**, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1909, էջ 243:

(երևի պատմել գրությունից սխալ արտագրված): «Այլ Պաւղոսի **պատմեալ** ... առնէ», կանոնավոր ձև է, որ պատահում է Կորյունի գրեթե յուրաքանչյուր էջում: Ուրեմն, ի՞նչ մնաց պ. Ֆնտգլյանի «դասախոսությունից», որ առաջին անգամ զլացել էր անել և միայն հետո հարկադրված անում է:

«Բարեացապարտ» բառն ևս մի առիթ է պ. Ֆնտգլյանի համար փայլելու յուրովի հատկությամբ:

Դուրս է գալիս, որ այս բառը «անտրամաբանական» կերտված է, որ ունի իր «գաղտնիքը» և արգո բանասերը փորձում է լուծել առեղծվածը, կուժ ու կուլան կոտրելով այս անգամ ևս Կորյունի գլխին:

Պարոն Ֆնտգլյան գիտե, որ Մակաբայեցվոց գրքի թարգմանիչը Կորյունն է, գիտե, որ այս գիրքը թարգմանելիս Կորյուն կազմել է **չարյացապարտ** «վայելուչ» բառը, «զամենայն **չարեացապարտ** զՄենեղաւոս արժակել ի պարտեաց»: Հետո, երբ սկսել է Մաշթոցի կյանքը գրել, Կորյուն թխել է **բարյացապարտ** «անհաջող և անտրամաբանական» բառը, **չարյացապարտ**-ի կաղապարին վրա ձևելով: Ասել է, թե Կորյուն, որին քաջ հայկաբան է անվանում պ. Ֆնտգլյան, վսեմ ոճով, ավելի տկար էր հայերենի մեջ, քան պ. Ֆնտգլյան:

Չէ, այս բոլորը սին ենթադրություններ են, անհիմն և անտեղի: Պ[արոն] Ֆնտգլյան, որ չի հապաղում սրբագրելու Պաւղոս՝ Պաւղոսի, անտեղի և սխալ, հուլանում է նկատել, որ **չարյացապարտ** բառն ինքն թյուր ընթերցվածի արդյունք է: «Զամենայն **չարեացապարտ** զՄենեղաւոս» ուղղելու է «զամենայն **չարեաց պարտ** զՄենեղաւոս», «զամենայն **չարեացապարտ**» լեզվական անհեթեթություն է, որ չի արտահայտում այն, ինչ որ ուզում է ասել: Անշուշտ, մի թյուրիմացություն չկա: Հույն բնագիրն ունի՝ *τῆς ὅλης κακίας αἴτιον*, այսինքն՝ «ամենայն չարյաց պարտ»: Ակներև է, որ **չարեացապարտ** թյուր ընթերցված է, փոխան **չարեաց պարտ** ձևի: Որ մեր ենթադրությունը ճշմարիտ է, հաստատում է նույն Մակաբայեցվոց գիրքը, ուր հանդիպում ենք մի ուրիշ և ստույգ արտահայտության՝ «եւ կամ **զպարտ այլոց չարեաց** ընկենուլ»[1]: Մյուս կողմից Եզնիկն ասում է՝ «որ թագաւորեցոյց զչարն է **պարտ չարեաց**»: Այս դասական վկայությունը միանգամայն վավերացնում է մեր ուղղումը:

Սրբագրական մեթոդի պահանջները, կարծում ենք, լիովին հարգված են և իրավունք ունենք ասելու, որ Ս. Գրքում **չարյացապարտ** բառը գոյություն չունի: Հետևապես պ. Ֆնտգլյանի խորիմաստ պտույտները պարապ զբոսանք են: Կորյուն էլ անպարտ է այն «անտրամաբանական» կերտվածների համար, որ մնում է միայն պ. Ֆնտգլյանի սեփականություն:

[1] **Մակաբ.**, գլ. 13, 6:



Կորյուն ինքն է կազմել **բարեացապարտ** բառը առանց ուրիշի ազդեցության, մի բարդություն, որ հատուկ է Կորյունյան լեզվական ճաշակին. ի՞նչ է նշանակում:

Պետք չկա ծանրանալու մահապարտ, մեղապարտ, վրիժապարտ և նման բառերի վերա և կամ ցույց տալու, որ սրանց նախագաղափարը իրանական *tanu-pərəta*, պահլ. *tanapuhr*, այլև *pərə to-tanu*, կամ *pešo-tanu*, պարսկ. *pašotan*, որ նշանակում է անձնապարտ, ինքնապարտ, պետք չկա պրպտելու այս բարդության սկզբնական իմաստը: Մեր նպատակի համար բավական է հիշել **բարյացակամ, բարյացապաշտ** բառերը, որոնց դասական ձևն է **բարեկամ, բարեպաշտ**: Վիճելի **բարյացապարտի** ավելի ստույգ ձևն է, ուրեմն բարեպարտ: Սրա իմաստը հասկանալու համար, մտաբերելու է՝ երախտապարտ, շնորհապարտ կազմությունները: Երախտապարտը նա է, որ պարտ է երախտիք, շնորհապարտը նա, որ պարտ է շնորհ: Հետևապես և բարյացապարտը կամ բարեպարտը նա է, որ պարտ է բարիք: Երախտիք ասածդ այլ բան չէ, քան բարիք. Ս. Գրքում երախտիք համապատասխանում է հույն *ἀγαθά* «բարիք» բառի, որով բարյացապարտ համազոր է երախտապարտի կամ երախտագետի:

Կորյուն այսպես է անվանում Վահան Ամատունի իշխանին: Արդյոք անպատեհություն կա՞: Ամենևին ոչ: Վահանը Սահակի և Մաշթոցի մոտ ուսել էր գիր և դպրություն, աշակերտել սուրբ հայրերին: Մաշթոցի մահից հետո Վահանը հոգ է տանում վայելուչ հուղարկավորությամբ թաղելու նրա մարմինը Օշականում, երեք տարուց հետո կանգնում է խորան նրա նշխարների վերա. այս արտահայտություն է երախտագիտական զգացումի հանդեպ իր և համայն աշխարհի գրական ծնողի: Վահանը երախտագետ անձն էր, և Կորյուն իրավունք ուներ այդպես անվանելու:

Պ[արոն] Ֆնտգլյան մեծ եռանդով ընդդիմանում է մեր մեկնության, ուղեցույց ունենալով, երևի, «Հայկազնյան բառագիրքը»: Բառագիրքը ասում է, որ **բարյացապարտ**-ը նա է, «որ ի ձեռն բարերարութեանց պարտական առնէ զբարերարեալն»: Անհիմն բացատրություն:

Պ[արոն] Ֆնտգլյան զգալով այս բացատրության տկարությունը, աշխատել է այլ կերպ հիմնավորել նույն իմաստը, պատմելով այն հեքիաթը, որ ձգտում էր, **չարյացապարտ**-ի թյուրիմաց զավակը համարել բարյացապարտը:

Պ[արոն] Ֆնտգլյան գտնում է, որ մեր մեկնությունը չի պատշաճում այն գործածության, որ նկատվում է հեղինակների մոտ: Այսպես Ագաթանգեղոս անվանում է Տրդատին **բարյացապարտ**: Պարոն Ֆնտգլյան հարցնում է, արդյոք Տրդա՞տն ևս երախտապարտ էր: Անպայման երախտապարտ էր և ավելի, քան Վահանը: Տրդատը խոզ էր և մարդ դարձավ, երբ «հանկար-

ծակամ» քրիստոնեություն ընդգրկեց և այս բանի համար նա հավետ **բարյացապարտ** էր:

«Հայկազնեան բառագրքից» քաղում է պ. Ֆնտգլյան և Խորենացու, Հովհաննես Կաթողիկոսի և Թովմա Արծրունու անունները, որ նույն բառը գործ են ածել իբրև թե ուրիշ իմաստով, քան մեր մեկնությունը: Այս նկատողությունը ևս ստույգ չէ:

Կորյունից հետո **բարյացապարտ** բառը կիրառում է Ղևոնդ Երեց և հետո Խորենացի: Թովմա Արծրունին արտագրում է Ղևոնդից և Հովհաննես Կաթողիկոսը, հավանորեն, Խորենացուց, եթե ոչ Կորյունից: Հաշվի առնելու է միայն երկու առաջին հեղինակները:

Խորենացին նույն բառը գործ է ածում Թեոդոսիոս կայսրի նկատմամբ: Նախ պետք է նկատել, որ Խորենացու ձեռագիրները տալիս են երեք ընթերցված՝ **բարյացապաշտ, չարյաց անպարտ, բարեպաշտ**: Այս ընթերցվածները հաշտեցնել կարելի է միայն, ենթադրելով որ սկզբնական ընթերցվածն եղել է **բարյացապաշտ**: Թեոդոսիոսի սովորական մակդիրն է **բարեպաշտ**: Սակայն, ընդունենք, որ ստույգ ընթերցվածն է **բարյացապարտ**: Ի՞նչ անպատեհություն: Թեոդոսիոս, որպես քրիստոնյա թագավոր պարտավոր է բարիք գործել: **Բարյացապարտ**-ը նա է, որ պարտական է բարիք անել, լինի ի տրիտուր ստացած բարիքի, լինի ի հետևանս իր կոչումի, լինի ստիպված որևէ հանգամանքից: Հովհան[նես Դրասխանակերտցի] Կաթողիկոս նույն միտքը արտահայտելու համար, հարկ է տեսել ավելացնել «ի բարիս բարեացապարտ», խոսելով բյուզանդական Կոստանդին [VII Ծիրանածին] կայսրի մասին[1]:

Ղևոնդ Երեցը պատմում է, որ Օմար խալիֆը ստանալով Լևոն [III] կայսեր հաջող պատասխանը ամաչեց և «առաւել եւս յաւելոյր զբարեխառնութիւն եւ զբարեմտութիւն առ ազգ քրիստոնէից եւ **ամենայն ատանք բարեացապարտ զինքն ցուցանէր**»[2]: Ասել է, թե Օմար աշխատում էր ամեն կերպ ցույց տալ, որ ինքը պարտավոր է բարիք գործել: Այստեղից առնում է և Թովմա Արծրունին:

Կարծում ենք, որ մեր տված մեկնությունն իր տեղին է բոլոր դեպքերում և կարիք չկա հակատրամաբանական ենթադրությունների:

Ի պետս զարգացելոց քերականության մեջ պ. Ֆնտգլյան կարդացել է, որ «որ» հարաբերական դերանունը «երբեմն բազմաբար վարի»: Այստեղից հետևեցրել է, որ կուզե **որ** գործ կածե, կուզե **որք**:

Ո՛չ, պ. Ֆնտգլյան: Լեզվի մեջ տարականոն երևույթներն ևս իրենց հիմքն ունին և բանասիրության գործն է մեկնել երևույթները և ոչ թե զարտուղին

[1] Հովհաննես Կաթողիկոս, էջ 148:

[2] Ղևոնդ, էջ 99:



ընդհանրացնել քմհաճ ծավալումով: Բարի է, որ [Արսեն] Բագրատունին զրի է առել **որի** բազմաբար կիրառությունը (2): Գուցե ավելորդ չէ, որ պ. Ֆնտգլյան սերտել է նրա գրածը: Բայց որպեսզի պ. Ֆնտգլյան իրավունք ունենա դատախոսություն կարդալ այս մասին, պետք է որ մի բան ավելի գիտենա, քան ինչ որ գրված է երեք քառորդ դար առաջ: Այսպես Ֆնտգլյանի սերտած քերականները բերում են որպես օրինակ **որի** հոգնաբար գործածության Ս. Գրքի այս տունը՝ «յամենայն ծառոց **որ է** ի դրախտիդ»: Ակներև անհեթեթություն, որ ուղղելու է «յամենայն ծառոյ որ է ի դրախտիդ»: Արդարև, բավական է համեմատել հույն բնագրի՝ *ἀπὸ παντὸς ξύλου τοῦ ἐν τῷ παραδείσῳ*, որպեսզի համոզվենք, որ սրբագրությունը ուղիղ է: Սակայն հեռուները չգնանք, մնանք Կորյունի գրքույկի սահմաններում, ուր տեսնում ենք **որի** բազմաբար գործածության դեպքեր: Մոտիկ քննությունը ցույց է տալիս, որ այս դեպքերի մի մասը կարոտ է սրբագրության: Օրինակ, Կորյուն ունի՝ «աւրինակ առէք չարչարանաց եւ (յ)երկայնամտութեան զմարգարէսն, որ խաւսեցան յանուն տեառն»: Սխալ գրչություն է: Հակ[որոսի թուղթ կաթուղիկեայ] Դ [գլխում] կարդացվում է՝ «աւրինակ առէք, եղբարք, չարչարանաց եւ երկայնմտութեան զմարգարէսն, **որք** խաւսեցան յանուն տեառն»:

Ուրիշ դեպք: Կորյուն ասում է՝ «մի՛ անփոյթ առներ շնորհացդ **որ** ի քեզ են... եւ զանձն ապրեցուցես եւ զայնոսիկ **որ** քեզ լսիցեն»: Այստեղ երկու բնորոշ գործածություն կա. հույնն ունի՝ *μὴ ἀμελεῖ τοῦ ἐν σοὶ χαρίσματος ὁ ἐδόθη σοι.* «շնորհք» նշանակող հույն բառը եզակի թիվ ունի, ուստի և հարաբերականն է եզակի: Մինչդեռ հայը նյութական թարգմանությամբ *χάρισμα*- ի դեմ գրած է «շնորհք», և հույն *ὁ* թարգմանել է ճշտիվ **որ**, մոռանալով, որ «շնորհք» հոգնակի է:

Միևնույն օրինակում տեսնում ենք՝ «զայնոսիկ **որ** քեզն լսիցեն», Ս. Գրքի թարգմանիչներն անգամ սիրում են հույն անցյալ և ներկա դերբայները արտահայտել հարաբերական նախադասությամբ հայ լեզվի ոգու համաձայն: Այս դեպքերում գրեթե ընդունված կանոն է **որ** գործածել եզակի և թե հոգնակի մտքով: Այսպես հույն *τοὺς ἀκούοντας* = «զլսողս», հայը թարգմանում է «որ լսիցեն» (հայի օրինակում եղել է, անշուշտ, *τοὺς ἀκούσαντας*): Ուրիշ խոսքով հայ դարձվածները՝ «**որ** լսեն, **որ** լսիցեն, **որ** լուեալ են» համապատասխանում են հույն դերբայներին: Ավետարանն ունի՝ երանի **որ** քաղցյալ և ծարավի իցեն = *οἱ πεινῶντες καὶ διψῶντες* և այլն: Նույն ոգով գերադաս է ասել «որ իմաստունք են» փոխան հույն «իմաստունք»: Հաշվի է առնելու նաև **pluralia tantum** բառերի եզաբար համաձայնությունը, որ հայտնի է ուրիշ լեզուներում:

Այսպիսով **որի** բազմաբար վարումը կամայականության խաղ չէ և ոչ քերականական բթության ծնունդ: Եթե թողնենք սխալ գրչությունները, մեծ

մասամբ աշխարհիկ լեզվի ազդեցության տակ, մյուս դեպքերն իրենց բանավոր հիմն ու բացատրությունն ունին:

Արդ պ. Ֆնտգլյան պնդում է, որ Վահանի հատվածում՝ «Վահանայ ... կենաց **ամենեցուն** լինէր, **որ** աշխարհածնիւն ... վայելէր», գծածս իրար կապակից են: Չենք կարծում, որովհետև կարելի է ասել «ամենեցուն, որ», բայց անհեթեթություն էր «ամենեցուն լինէր, որ ... վայելէր», սպասելու էր՝ վայելին: Պ[արոն] Ֆնտգլյան նկատում է ներողամտաբար, որ մենք **որի** բազմաբար վարումին անգետ որպես թե բնագրի՝ «զհամառատն **որ** ոչ միայն մեզ յայտնի է» սրբագրել ենք **որք**, և չի ուզում ծանրանալ այս ճախող ձեռնարկի վերա:

Ափսոս, որ արգո բանասերը չի ծանրացել, այլապես պիտի տեսներ, որ բնագրի **որքը** ուղղում ենք **որի** և ոչ թե, ինչպես պ. Ֆնտգլյանն է կարծում, **որը՝ որքի**:

**Հանկարծահաս** բառի առթիվ պ. Ֆնտգլյան մի բան է միայն ապացուցանում հաջողությամբ, որ «հասանել» նշանակում է «հասնել», և «յանկարծահաս» նշանակում է «հանկարծահաս»: Բայց բառիս դիրքը նախադասության մեջ մնում է մութ մինչդեռ այս է վեճի նյութը: Չի կարելի ասել «Վահանայ ... յանկարծահաս լինէր», չի կարելի ասել «ամենեցուն, որ վայելէր»: Սրանով տապալվում է և պարոնի մեկնությունը հատվածի, որպես հակաքերականական ոտնձգություն:

Մեր տված բացատրությունը ևս անընդունելի է համարում, զուցե և իրավամբ: Մեր կողմից մի փորձ էր հիմնավորել քերականորեն նախադասության հինավուրց իմաստը, ենթադրելով, որ բնագիրը անաղարտ է: Փոքր-Կորյունից սկսած մինչև նորագույն բանասերները մահվան իմաստով են ըմբռնել քննելի հատվածը: Վահանը «հայրենյաց որդի է», այն հայրենյաց, որ մեռած են, և միևնույն ժամանակ Վահան նրանց «կենակից»: Ակներև է, որ կենակցություն չի կարող այս աշխարհում լինել մեռած մարդկանց հետ:

Թերևս, մեր միտքը ավելի ճշգրտած կլինեինք, եթե ավելացնեինք, որ «հանկարծահաս»-ի ենթադրյալ գոյականի իմաստը բխում է նրանից, որ զեղչած է «կատարումն» կամ «կէտ» բառը, որպես մի տեսակ **ellipsis**, փոխանակ լրիվ «յանկարծահաս (կէտ) կենաց» ձևի: «Օրհաս» բառի մեջ ևս օր հասկացվում է որպես օր մահվան: Բնավ հավակնություն չունինք պնդելու մեր մեկնության վերա, այն պարզ պատճառով, որ ուր թարգմանությունը ստիպված է տեղի տալ մեկնաբանության, հետևանքը միշտ կլինի թեական: Ստույգն այն է, որ նախադասությունն իր ներկա վիճակում քերականորեն անհարիր է: Հավանական է, որ աղավաղված է: Ագաթանգեղոս և Փոքր-Կորյուն ունին «ասպնջական ցանկալի» բառերը, որ



պակասում են Կորյունի հատվածում: Կասկածելի է, մանավանդ, երբ ի նկատի առնենք, որ Կորյունի վերջաբանությունը բարվոք վիճակի մեջ չէ:

Դարձյալ նույն երկու հեղինակներն ունեն՝ «քարյացապարտն Վահան», «քարյացապարտն Տրդատ», փոխանակ Կորյունի սեռական հոլովի, որ ուշադրության արժանի է: Վիճելի հատվածը հավանորեն կարոտ է սրբագրության:

* * *

Ասած էինք, որ Կորյունի Վերջաբանը կասկածի տեղիք է տալիս: Մաշթոցի աշակերտը, որ գրում է իր ուսուցչի կյանքը, կարիք չպիտի ունենար հավատացնելու, որ ինքը գրում է «ոչ ի հին համբաւուց», այլ որպես «ականատես»: Հակառակ իր հայտարարության նույն հեղինակը ստորև խոստովանում է, որ քաղել է «ի նշանաւոր գիտակաց» սակավը: Մի հանգամանք, որ մթություն է շաղում Կորյունի երկի շուրջը:

Պ[արոն] Ֆնտգլյան գտնում է, որ պետք է հավատալ, քանի որ Կորյուն «քարդ ի քարդ կթվե հավատարիմ վկայի իր հանգամանքը»: Իսկ գիտակներից բանաքաղությո՞ւնը: Սրա պատասխանն էլ ունի պ. Ֆնտգլյան: **Գիտակ** ասածդ, որպես թե գիտուն չէ նշանակում, ինչպես հայտնի է ամեն մի տղայի, այլ **գիտցված**, և օրինակ է բերում երևակ բառը, որ իբրև նման բնույթ ունի և նշանակում է երևույթ:

Ո՛չ, պ. Ֆնտգլյան, գիտակ նշանակում է գիտցող, և երևակ՝ երևցող: Ուրիշ ոչինչ: Խնայելու է լեզուն և միտքը բռնազբոսիկ և ապարդյուն ճիգերից:

Կորյուն ասում է, որ չուզեց «զամենայն արարեալս **կտակաւ** գիւրաքանչիւրսն [նշանակել]» (հավելումը մերն է - Ն. Ա.): Պ[արոն] Ֆնտգլյան շտապում է **կտակաւ** ուղղել **գտակաւ** և զարմանում է, որ մենք չգիտենք այս գյուտը: Այլև, նայելով «Հայկազյան բառարան»-ը ավետում է, որ բառի ամբողջական ձևն է «ճշդիւ գտակաւ»:

Այստեղ ևս պ. Ֆնտգլյանի անխոհեմությունը գալիս է բախելու մեր զգուշության: Արդյոք բավարար հիմ կա՞ առաջարկված սրբագրության: Կորյունի ձեռագիրները կարդում են **կտակաւ**: Ագաթանգեղոսի մոտ համապատասխան հատվածում երկու հին ձեռագիրներից մեկը և հնագույնը՝ գրված 1261 թվին ունի **կտակաւ**, մյուսը՝ գրված է 1293 թվին՝ **գտակաւ**: Թվում է, թե սրբագրությունը գոնե վաղաժամ է: Այլև պ. Ֆնտգլյան ինքը պիտի ձեռնպահ մնար իր սրբագրությունից, իմաստի տեսակետից: **Ճշդիւ գտակաւ** նշանակում է ճշտիվ, խուզիվ **գտակ** ծագելով գտանել բառից: Ականատես գրողը պետք ունի՞ այս եղանակով վարվելու: Հարկավ, չէ: Կամ գրողը ականատես չէ, կամ **գտակաւ** բառը իր տեղը չէ:

Կորյուն ասում է «ի նշանաւոր գիտակացն քաղելով զհամառատսն կարգեցաք, որ(ք) (մենք ենք զեղչում - Ն. Ա.) ոչ միայն մեզ, այլեւ որ **զմատեանսն ընթեռնուն, յայտնի է»**: Ագաթանգեղոսի մոտ վերջին նախա-

դասությունն է՝ «որք ոչ միայն մեզ, ով թագաւոր, այլ յորժամ քո առաջի զմատեանդ ընթեռնուցուն, յայտնի է»: Պ[արոն] Ֆնտգլյան կամենում է Կորյունը սրբագրել ըստ Ագաթանգեղոսի: Մենք ձեռնպահ ենք մնացել և մնում ենք և այժմ այսօրինակ ուղղումներից, ոչ անգիտությամբ, այլ այն պարզ պատճառով, որ ուր բնագիրը տարբեր իմաստ է տալիս, չի կարելի մեկը մյուսով ուղղել: Կորյուն ասում է իր գրածը հայտնի է ոչ միայն իրեն այլև որոնք մատյաններ են կարդում, այսինքն՝ գրագետներին: Ագաթանգեղոսի միտքը ուրիշ է, որ իր գրածը հայտնի է ոչ միայն իրեն, այլև հայտնի կլինի թագավորին, երբ նրա գրածը կարդան նրա առաջ: Կորյուն և Ագաթանգեղոս մի ուրիշ խրատական օրինակ են տալիս նույն ուղղությամբ: Կորյուն ունի՝ «Եւ զի ըստ աւրինակի գրելոցս առ ի մէնջ հարքն ի կատարումն դարձան»: Ագաթանգեղոս նույն բառերից հյուսում է միտք. «քանզի ըստ աւրինակի գրելոցս առ ի մէնջ ի կատարումն դարձուցաք»: Արդյոք թույլատրելի՞ է մեկը մյուսով ուղղել: Ոչ երբեք. որովհետև տարբեր իմաստ են արտահայտում, և չի կարելի ասել, տարբերությունը աղավաղմա՞ն հետևանք է, թե ոչ բնագիր է:

Կորյունի Վերջաբանի մեջ մի կարևոր կետ անհասկանալի է մնացել պ. Ֆնտգլյանին, մի կետ, որ միանգամայն նոր լույս է սփռում ամբողջ Առաջաբանի կերտվածի վերա: Բերենք նախ այդ մասը ուղիղ ընթերցումով:

«Քանզի չէաք իսկ հանդուրժողք՝ զամենայն արարեալսն կտակաւ զիւրաքանչիւրսն՝ [նշանակել][1], այլ ի դիւրագոյն եւ ի հեշտագոյն(ս) յառաքելական անդր զանձինս պատսպարեցաք, որոյ անցեալ զբազմախուռն արգասեւք սրբոցն առ ի մանրակրկիտ առնելոյ զկարեւորագոյնսն պատմեաց (փոխ. տպագրի պատմելոյ). [ուստի եւ մեր առեալ] հանգոյնս (և ո՛չ զհամանդամս որպես տպ. ունի) ասացաք, ոչ ի պատիւ սրբոցն Աստուծոյ որք ամենապարծ եւ կենդանատուր խաչիւն ծանուցեալք յարգեցան, այլ յաւրինակ քաջալերիչ հոգեւոր ծննդոց իւրեանց, եւ որք նոքաւք աշակերտելոց իցեն յազգս ազգաց»[2]:

Տեսեք ինչպես է հասկանում Կորյունի այս տողերը պ. Ֆնտգլյանը. «Քանզի անքավական էր ամեն ըրածները ճշդիվ գտակավ ամեն մեկը նշանակել, դյուրագույնին անոր առաքելական գործունեության պատմությամբ զբաղեցավ, գաղափար մը տվավ կարևորագույնին վրա»:

Կորյուն շատ խելոք մարդ չէ դուրս գալիս պ. Ֆնտգլյանի բացատրությամբ: Նա, որ ձեռնարկել է գրելու գրի պատմությունը, այժմ խոստովանում է, որ «դյուրագույնին անոր առաքելական գործունեության

[1] [ ] Մեր հավելումներն են, իսկ ( )՝ հապավումները (Ն. Ա.):

[2] Կորյուն, էջ 47-48:



պատմությամբ զբաղեցավ» և այն էլ «կարևորագույնին վրա գաղափար տալու համար»: Ավելի անմիտ բան չէր կարելի վերագրել մի մատենագրի:

Ո՛չ, պ. Ֆնտգլյան, «առաքելական» չի նշանակում առաքելական գործունեություն: Կորյուն ինքը զինքը արդարացնելու նպատակով, որ շատ բան չէ պատմել իր ուսուցչի և տառերի գյուտի առթիվ, կոչ է անում առաքելական օրինակին, որ է Ղուկաս Ավետարանիչը:

Ինչպես որ Ղուկասը զանց է անում պատմելու մանրակրկտորեն Առաքյալների բազմախուռն գործունեությունը, և արձանագրում է միայն կարևորագույնը, այնպես վարվում է և հայ հեղինակը: Առաքյալին հետևելով, թողնում է շատը և բավականանում է քչով և կարևորով:

Ղուկասի հիշատակությունը խորհրդավոր է: Նրան հետևել է հայ մատենագիրը ոչ միայն այս կետում: Ավետարանչի նախաբանը օրինակ է ծառայել և մեզ զբաղեցնող Վերջաբանին: Ղուկասը գրում է. «Քանզի **բազումք** յաւժարեցին **վերստին կարգել զպատմութիւն** վասն իրաց հաստատելոց ի մեզ, որպէս աւանդեցին մեզ որ ի սկզբանէ **ականատեսք**] եւ **սպասաւորք** եղեն բանին: Կամ եղեւ [եւ] ինձ որ ի սկզբանէ **զհետ երթեալ էի** ամենայնի ճշմարտութեամբ **կարգաւ գրել քեզ, քաջդ Թէոփիլէ, զի ծանիցես** զբանիցն, որոց աշակերտեցար, զճշմարտութիւն»[1]:

Դժվար չէ նկատել, որ կանգնած ենք այն ծառի մոտ, որտեղից քաղված են Վերջաբանի պտուղները: Գրական կերտվածը և բառացի մթերքը մատնում են նախաբանի խնամությունը Կորյունի Վերջաբանի հետ: Նախաբանի լույսի տակ այլ կերպ է ներկայանում ցայժմ ընդունված կարծիքը, որ Վերջաբանը Կորյունից է անցել Ագաթանգեղոսին: Առաջնությունը գոնե այս կետում թվում է թե զիջանելու է Ագաթանգեղոսին: Սա ավելի մոտ է իր կառուցումով Ղուկասի նախաբանին: Ագաթանգեղոսի՝ «ով թագաւոր» կոչականը համապատասխանում է Ղուկասի՝ «ով Թէոփիլէ» դիմումին: Նրա խոսքը՝ «յորժամ քո առաջի զմատեանդ ընթեռնուցուն, յայտնի է (sc. լիցի)», համաձայնում է նախաբանի՝ «զի ծանիցես զբանիցն, որոց աշակերտեցար, զճշմարտութիւն»:

Կորյուն չունի «ով թագաւոր» կամ փոխարինող կոչական, ընդդեմ Ղուկասի՝ «ով Թէոփիլէ»-ի: Հետևապես Կորյուն չէր կարող կաղապար ծառայել Ագաթանգեղոսի: Կորյուն զեղչելով կոչականը, ստիպված փոխում է նախադասության կազմը ի վնաս իմաստին: Ղուկաս գրում է, որ գիտենա Թեոփիլը, Ագաթանգեղոսը կրկնում է նույնը, որ իր գրածը, «երբ կարդան թագավորի առաջ, հայտնի լինի նրան», իսկ Կորյուն ի՞նչ է ասում. որ իր գրածը հայտնի է ով որ մատյաններ է կարդում և կամ եթե ուղղենք ըստ Ագաթանգեղոսի, ով որ իր մատյանն է կարդում: Առաջին երկու հեղի-

[1] «Ավետարան ըստ Ղուկասու», գլ. Ա, 1-5:

նակների ասածը հասկանալի է, որպես դիմում որոշ անձանց, իսկ Կորյունի բերանում նույն խոսքը կորցնում է իր **raison d'être**-ը, քանի որ առիթավոր անձը չկա մեջ տեղը:

Ղուկասը հիշում է, որ իրենից առաջ շատերն են գրել ականատեսների ավանդության հիման վրա, ինչ որ ինքն էլ ուզում է գրել որպես ոմն, որ «զհետ երթեալ է ամենայնի», ասել է թե էլ ականատես է: Վերջաբանի հեղինակին ծանոթ են գիտակներ, որոնցից քաղում է, թեև ինքն ականատես է: Արդ Ագաթանգեղոս խմբագրական գործ է, և այս խոսքերը նրա նկատմամբ ճշմարտություն է: Իսկ Կորյունի համար ո՞վ են այս գիտակները, արդյոք Ս. Գրքի հեղինակները, որոնցից առաջբերումներ ունի և որոնց թվում է, թե առանձին կարևորություն է տալիս, որպես իր գիտնականության վկաներ. իսկ եթե չէ, հարկադրված ենք ընդունելու, որ Վերջաբանը պատկանում է Ագաթանգեղոսին և հարմարեցրած հետո կամ միաժամանակ Մաշթոցի կյանքին: Պետք է խոստովանել, որ շատերն այն հատվածներից, որ անցած են համարվում Կորյունից Ագաթանգեղոսի «դարձ փրկութեան» մասը, ավելի իր տեղն են Ագաթանգեղոսի մոտ, քան Կորյունի:

Ամեն պարագային երկու երկերը, եթե անգամ ելած են միևնույն գրչից, տակավին կնճռոտ են իրենց փոխադարձ հարաբերության մեջ: Վաղաժամ է պնդել Մաշթոցի Վարքի առաջնության վերա ամեն կետում:

Գուցե ավելորդ չէ նկատել, որ Ղուկասի «**կարգաւ** գրել» կարող է թելադրել, որ Վերջաբանի երկու ընթերցվածները **կտակաւ** թե **գտակաւ**, թերևս, ծագում են սկզբնական **կարգաւ**-ից: Ուրիշ անգամ չեն պատահում այս բառերը Ագաթանգեղոս-Կորյունի մոտ, որ սիրում են կրկնություններ, մինչդեռ **կարգաւ** պատահում է (օր. «զայս ամենայն **կարգաւ** պատմեցից»)[1]:

Վերջաբանի ակնարկը Ղուկասին կրկնվում է Ագաթանգեղոսի մոտ, Վարդապետության ԾԹ գլխի մեջ: Այստեղ էլ հեղինակը ծրագրում է իր անելիքը Ղուկասին հետևելով: Սա պատմում է Քրիստոսի կյանքը հարությունից հետո շատ համառոտակի, ուստի նորեն դառնում է նույն խնդրին Գործքի մեջ: «**Ակն արկեալ մեզ այսուհետեւ ի վախճան ասացելոցս.** ճառս ի մէջ առնուլ ... Մանաւանդ զի առըներ եւս ունիցիմք զդիւրահասոյց քաջալերիչն զերանելի Ղուկաս, որ իրազէտ եւ միջամուխ քրիստոսագործ իրացն կատարելոց ճանաչի ...: Եւ քանզի **համառաւտ բանիւք** առ ի կատարած Աւետարանին իւրոյ զերկնաշու ճանապարհն Քրիստոսի նշանակեաց, առնու դարձեալ յառաքելանշան յերկրորդ մատենին զորպիսութիւն իրաց կարգալ ...»[2]: Մեջ է բերում Ղուկասի նախաբանը, որով հաստատվում է մեր համեմատությունը Վերջաբանի հետ:

[1] **Ագաթանգեղոս**, Էջմիածնի հրատ., էջ 130:

[2] Անդ, էջ 246-247:



Սկզբի ընդգծած նախադասությունը նույն միտքն է արտահայտում, ինչ որ վերջաբանի «եւ քանզի ըստ աւրինակի գրելոցս առ ի մէնջ ի կատարումն դարձուցաք»: Կորյունի մոտ սույն նախադասությունը կարդացվում է՝ «եւ զի ըստ աւրինակի գրելոցս առ ի մէնջ հարքն ի կատարումն դարձան»: Հնարավո՞ր է արդյոք սրբագրել Կորյունը Ագաթանգեղոսի կրկնակի արտահայտած իմաստի հիման վերա: Որքան և հավանական, բայց և այնպես ձեռնպահ մնալու է, քանի որ ձեռագրական կռվան չկա:

* * *

Գալով Կորյունի գրության ժամանակին, մնում ենք նույն կարծիքին: Պ[արոն] Ֆնտգլյանի ուղղությունները չեն որ պիտի փարատեն մեր կասկածները: Նրանք ոչինչ նորություն չեն պարունակում: Ինչ որ նոր է, շատ հին է, օր. որ Ագաթանգեղոս գրված է 452-456 թվերին: Հայ բանասիրությունը երջանիկ կլիներ, եթե կարողանար այսպիսի ճշգրտությամբ որոշել որևէ մատենագրի, անգամ Ս. Գրքի թարգմանության տարեթիվը: Հայ գրի անդրանիկ երկերի հաջորդական կապը որոշելու փորձերն իսկ բախում են դժվարությանց:

Կորյունի մերձավորությունը Ագաթանգեղոսի, Եվթաղի և Մակաբայեցվոց գրքին, հայտնի է: Սակայն սրանց փոխադարձ հարաբերությունը մնում է խորհրդավոր: Ավելի քան կասկածելի է, որ միևնույն գրչից ելած լինին:

Ուրիշ անգամ այն միտքն ենք հայտնել, որ Լուսավորչի կյանքը գրի առնելու նախաձեռնությունը պատկանում է, թերևս, իրեն Մաշթոցին: Կորյուն շարունակել է իր ուսուցչի գործը, լրացրել և իր անձնական կնիքը դրել նրա վերա: Ագաթանգեղոս խմբագրական ձեռնարկ է և խմբագրողի ձեռքի հետքերը նշմարելի են: Դժվար չէ նաև զատել հինը նոր հավելումներից:

Ինչ վերաբերում է Եվթաղին և Մակաբայեցվոց գրքին, բավարար հիմք չկա սրանց թարգմանությունը Կորյունին վերագրելու: Թվում է, թե լեզվական և ոճային խնամությունը բացատրելու է նրանով, որ Կորյունն է կրում նրանց ազդեցությունը: Առնենք նախ Եվթաղի նախադրությունները: Կան նմանություններ, որոնք վկայում են ավելի այն մասին, որ Կորյուն բանաքաղ է, քան թարգմանիչ:

Կորյուն. «թէպէտ եւ էի **կրտսերագոյն եւ առաւել քան զկար մեր զրաւեալ** անաչառ **հրամանին** հասելոյ»...

Համեմատել. «Գործք. Առաք.», Յառաջ. «զի անտի զմեզ հայրենի **հրամանն** յանդգնել **աւելի քան զկար** մեր **զրաւեաց**»...[1]

[1] «Աստուածաշունչ մատեան Հին և Նոր Կտակարանաց»: Յաշխատասիրութենէ տեառն Հ. Յոհաննու Զոհրապեան վարդապետի, Վենետիկ, 1805, էջ 723:

Կորյուն. «զի կամարագոյնս **նաւիցեմք զհամառատարած** ալեաւքն վարդապետական ծովուն»...

Համեմ. Կրղ. Ցառաջ, «զոր աւրինակ եթէ փոքր նաւակաւ ոք կարծից է **զհամառատարած** զծովն հատանել անցանել»...[1]

Կորյուն. «տրտմական հոգւովք պաշարեալ եւ **բակարդապատեալ կայ»**...

Համեմ. «Գործք. Առաք.», Ցառաջ., «զանուանակիր աստուածեղէն պատգամացն զմիջամուխ իմաստութեան ... որ շուրջ զքեւ **բակարդապատեալ**»...[2]

Կորյուն. «ոչ ի մէնջ **արուեստախառնեալ** մերոյն կարծեաւք վիճաբանելով»...

Համեմ. Պաւղ. թղթ., «զդիւրացոյցն զգիտս իսկ **արուեստախառնեալ**»...[3]

Կորյուն. «ամի ամի գումարելովք ի նոյն ամսեանն զնոյն **յիշատակն տաւնախմբեն**»...

Համեմ. Պաւղ. թղթ., **«ամի ամի զաւր յիշատակի** նորա **տաւնախմբեն»**[4].

Նմանությունն այնքան ակնհայտնի է, որ երկու ենթադրություն կարող է լինել, կամ Կորյուն է փոխառու, կամ ինքն է թարգմանել Եղիշեի գործը և այնուհետև նույն դարձվածները կիրարկել Մաշտոցի կյանքին մեջ: Կորյունի ոճը, որքան որ կարելի է դատել ըստ Մաշտոցի կյանքի իրավունք չէ տալիս երկրորդ ենթադրության: Կորյուն չէ Եղիշեի թարգմանը: Նմանությունը արդյունք է բանաքաղության: Կորյուն ծանոթ է երևում ոչ միայն Եղիշեի, այլև ընդհանրապես Ս. Գրքի նախադրության: Մի շարք բնորոշ բառեր մատնում են նրա ծանոթությունը «անուանակիր, միջամուխ, աստուածամերձ, արդիւնական, թերել (ի հրէից անտի, էջ 809), հրապարակախոս»:

Նույնը կարելի է ասել և Մակաբայեցվոց գրքի մասին, որ դժվար թե Կորյունի գործ լինի: Ո՛չ Եղիշեն, և ո՛չ Մակաբ[այեցվոց] գիրքը հասակակից չեն Ս. Գրքի մյուս մասերի թարգմանության: Նրանք պատկանում են V դարի երկրորդ կեսին:

Ծ. Կոնիբերը կարծիք էր հայտնել, որ Եղիշեն թարգմանված է 448 թվին (3), նրա հիմք շարժական տոմարի հաշիվներն են: Հ[այր Ա.] Վարդանյան, որ ներկայումս զբաղված է Եղիշեի քննական հրատարակությամբ (4), թվում է, թե համամիտ է հանգուցյալ հայագետին: Պողոս Առաքյալի մահուն ամսաթիվը ինչ ինչ անհարթություններ է ներկայացնում և ասորամակեդոնական տոմարի համապատասխան թիվը տակավին պետք ունի քննության: Հայ ամսաթիվը մերձավոր կապ ունի ասորամակեդոնականի, ուստի և ստույգ ընթերցումը դեռ խնդրական է, և տոմարական հաշիվները վաղաժամ և կարոտ վերաքննության:

Նույն շարժական տոմարը, սակայն, ավելի հաստատ կռվան է տալիս որոշելու Մակաբայեցվոց գրքի թարգմանության ժամանակը: Մակաբ. Երկրորդ [գրքում] երիցս հիշում է ահեկան ամիսը, «մինչեւ յերեսուն ահեկանի ամսեան» (ԺԲ, 30)[1] և «յամսեանն ահեկանի, որ աւր հնգետասան էր»: (ԺԱ, 33)[2] հույն բնագիրն ունի՝ *μέχρι τριακάδος ξανθικοῦ* և *ξανθικοῦ πέμπτῃ καὶ δεκάτῃ*, այսինքն՝ 30 քսանթիկ ամսի և 15 քսանթիկ ամսի: Քսանթիկ ասորամակեդոնական տոմարով տարվա յոթերորդ ամիսն է: Ասորամակեդոնական տարին սկսվում է հոկտեմբերի մեկից, ուրեմն քսանթիկի 15-ը գալիս է ապրիլի 15-ին և քսանթիկի 30-ը ապրիլի 30-ին (ավելի ստույգ հաշվով ապրիլի 13-ին և 28-ին): Ասորամակեդոնական տարին հաշվում է 12 ամիս, ամիսը 30 օր և հինգ ավելեաց, տարվա սկզբից մինչև յոթերորդ ամսվա 15-րդ օրը անում է 195 օր, հաշվելով հոկտեմբերի մեկից, 195-երորդ օրը կգա ապրիլի 13-ին, և սույն հաշվով 30 քսանթիկի հավասար է ապրիլի 28-ին: Արդ եթե հայ ահեկանի 15-ը համապատասխանում է քսանթիկի 15-ին և ապրիլի 13-ին, և ահեկանի երեսունը քսանթիկի 30-ին և ապրիլի 28-ին, նավասարդը, նշանակում է սկսվում էր օգոստոսի 1-ին: Իսկ նավասարդը ընկնում է շարժական տոմարով օգոստոսի մեկին՝ 468 թվին: Հաշվելով, որ քսանթիկի 15-ը հավասար է ապրիլի 15-ին (և ոչ 13-ին), ուրեմն և ահեկանի 15-ը հավասար նույն ապրիլի 15-ին, կստանանք, որ նավասարդը ընկնում է օգոստոսի 3-ին, որ տեղի ունենալ կարող էր 460 թվին: Ասել է, թե Մակաբայեցվոց գիրքը թարգմանված է 460-468 թվին: Եթե ընդունենք Կոնիբերի դիտողությունը Պողոս Առաքյալի մահվան օրաթիվի վերաբերյալ, կգանք նույն թվին: Եղիշեի Առաջաբանում ասված է, որ Պողոս նահատակվեց «յառաջ քան զերիս կաղանդացն յուլեայ», որ է հունիսի 29: Հայ բնագիրը տարբեր ընթերցվածներ է տալիս և, ինչպես ասացի, հավանական են համարում «որ է մարգաց» ընթերցվածը: Եթե ահեկանի 15-ը հավասար է ապրիլի 15-ին, հունիսի 29 կգա ուղիղ մարգաց 30-ին: Ասել է թե Եղիշեի թարգմանությունը ևս տեղի է ունեցել 460-464 քառամյակին:

[1] «Աստուածաշունչ մատեան Հին և Նոր Կտակարանաց», էջ 750:
[2] Անդ, էջ 723:
[3] Անդ, էջ 765:
[4] Անդ, էջ 764:

[1] Մակաբ., ԺԲ, 30:
[2] Անդ, ԺԱ, 33:

Ինչպես և բացատրելու լինենք Կորյունի, Եվքաղի, Մակարայեցվոց
գրքի, նաև Ագաթանգեղոսի փոխադարձ հարաբերությունը, գաղտնիքը որո-
նելու է 460 թվից հետո: Տրամադիր չենք չափազանցելու ստմարական վկա-
յության արժեքը, բայց ուրանալը ևս անկարելի է, մանավանդ երբ գալիս են
հաստատելու բանասիրական-պատմական քննության կասկածները:



## ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԸ ՈՐՊԵՍ ՊԱՏՄԻՉ[1]

Փավստոս Բուզանդը՝ հայ պատմագրության հնագույն հուշարձանը, շարադրում է IV դարի իրադարձությունները՝ առավելապես կանգ առնելով Հայաստանի մեծ լուսավորիչներ Գրիգորի և Տրդատի գործունեության վրա: Նրա աշխատանքը սկզբնական տեսքով մեզ չի հասել, ինչպես որ այն դեռևս VI դարում եղել է Հուստինիանոսի նշանավոր պատմագիր Պրոկոպիոս Կեսարացու ձեռքին[2]: Բայց և ներկա խմբագրությունն էլ բացառիկ հետաքրքրություն է ներկայացնում և ունի այնպիսի յուրահատկություններ, որոնք այն առանձնացնում են մյուս պատմական հուշարձաններից:

Փավստոսը ազատ է մյուս հայ պատմիչներին առավել կամ պակաս հատուկ իմաստակությունից: Նա վավերագրերից չի օգտվել[3], և դեպքերի իր իրազեկության համար պարտական է գլխավորապես կենդանի հիշողություններին ու ավանդություններին: Փավստոսի գլխավոր առավելությունը մյուս պատմիչների համեմատությամբ՝ երկրի իրական կյանքը մոտիկից ճանաչելու մեջ է:

Փավստոսի՝ իրեն ժամանակակից նախարարական Հայաստանի միջավայրից վերցրած արժեքավոր իրողություններով հարուստ աշխատանքի նշանակությունը մասնագետների կողմից այժմ բավարար չափով ընդունված ու գնահատված է: Բայց համեմատաբար քիչ ուշադրություն է նվիրվել նույն նրա մոտ եղած Հայաստանի արտաքին պատմությանը: Հայաստանի նկատմամբ բյուզանդա-պարսկական հարաբերություններին վերաբերող քաղաքական իրադարձությունների մասին վկայություններն

---

[1] Ներկա ակնարկը գրված է վաղուց, և այժմ տպագրվող մասը դեռևս 1906 թ. զեկուցվել է «Հնագիտական ընկերության արևելյան բաժանմունք»-ի նիստում՝ **«Հռոմեա-պարսկական հարաբերությունները IV դարի առաջին կեսում և հայկական ավանդությունները նրանց մասին»** (տե՛ս "Записки Восточного отделения императорского русского археологического общества", СПб., 1906, т. 17, стр. XLII-XLIII): Այս հոդվածը մի մասն է այն ժամանակ ծրագրված մեծ աշխատանքի, որի հեղինակը նպատակ ուներ հավաքել հին դասական հեղինակների մոտ ցրված (բնագրերով և ռուսերեն թարգմանությամբ) ամենակարևոր նյութերը հայերի պատմության վերաբերյալ:

[2] Տե՛ս «Հայոց նախնական պատմությունը» աշխատությունը՝ "Византийский Временник", 1901, том VIII, 1-2:

[3] Գրավոր աղբյուրների ազդեցությունը երևում է այն մասերում, որոնք վերաբերում են Ներսես կաթողիկոսի կյանքին: Բայց շատ կասկածելի է, որ այդ մասերը եղած լինեին Փավստոսի աշխատանքի սկզբնական խմբագրության մեջ:

առասպելական բնույթ են կրում և այդ պատճառով էլ դյուրին չէ ճշգրիտ գնահատել իրենց պատմական վավերականությունն ու հավաստիությունը: Մենք կցանկանայինք Փավստոսին մոտենալ առայժմ հենց այդ կողմից և պարզել, թե որքանով են պատմական նրա առասպելական պատմությունները, և նրանց մեջ կա՞ն արդյոք պատմության համար պիտանի հավաստի տվյալներ:

## Ա

Բյուզանդիայի (1) ու Պարսկաստանի միջև Հայաստանի համար անվերջանալի պայքարի շրջապտույտներում նշում են երկու կարևոր պահեր՝ 298 և 363 թթ.: Այդ պահերի հանգամանքները բավականաչափ հայտնի են արևմտյան աղբյուրներից և պարզորոշ գաղափար են տալիս վճռի առարկայի՝ Հայաստանի նկատմամբ երկու հակառակորդների գրաված դիրքի մասին: Իսկ ինչ վերաբերում է 298 և 363 թթ. միջև տեղի ունեցած իրադարձություններին, ապա արևմտյան պատմագիրների մոտ նրանց մասին տեղեկությունները չափազանց աղքատիկ են: Հայ Փավստոսը ունի ինչ-որ ավանդազրույցներ, որոնք վերաբերում են հիշյալ ժամանակաշրջանին, և որոնց պատմական հիմքը բացահայտվում է արևմտյան հեղինակների ներկայացրած հանգամանքներին մոտիկից ծանոթանալու դեպքում:

III դարի վերջին Հայաստանը ճանաչում էր հռոմեացիների գերագույն հովանավորությունը: 294 թ. պարսից գահ բարձրացավ Ներսեհ թագավորը: Իր հոր՝ Շապուհ [I-ի] օրինակով և նրան նմանակելու ակներև ցանկությունից դրդված, ինչպես ասում է Լակտանտիոսը[1], նա պատերազմի մեծ նախապատրաստություն տեսավ և հաջորդ՝ 295 թ., ներխուժեց Հայաստան և գրավեց այն: «Narseus primus, - վկայում է Ամմիանոսը.-Armeniam Romano juri obnoxiam occuparat»[2]:

Պարսիկների դեմ Հայաստանի պաշտպանության գործը վստահվեց Դիոկղետիանոսի փեսա և թագակից Գալերիոս Մաքսիմիանոսին: Դիոկղետիանոսը Աքիլեվսի ապստամբությունը ճնշելու համար Եգիպտոս շարժվելով՝ Գալերիոս Կեսարին, որ այն ժամանակ կառավարում էր Իլլիրիան, հրամայեց անհապաղ մեկնել պարսից թագավորի դեմ: Անփորձ և վառվռուն Կեսարը խիզախեց Միջագետքում, Կալլինիկումի և Խառանի

[1] Lactantius, De mortibus persecutorum, p. 9.

[2] Ammian. Marc., XXIII, 5. հմմտ. Eutrop., XXII. Narseus Orienti bellum inferret, ինչպես նաև՝ Aur. Vict., XXXIX: Eodem tempore Orientem Persae ... quatiebant.



միջև կռվի բռնվել թշնամու գերազանց ուժերի դեմ և սարսափելի պարտություն կրեց: Պարտված զորավարին Դիոկղետիանոսի ցույց տված արհամարհական ընդունելությունը նրա մեջ վճռականություն առաջացրեց մի անգամ ևս բախտը փորձել պատերազմում: Գալերիոսը պատերազմական գործողությունները Միջագետքի հարթավայրերից փոխադրեց Հայաստանի բարձունքները, որը համարվում էր «ferme sola seu facilior vincendi via»: Հայաստանի լեռներում նոր մարտը հռոմեացիների համար պսակվեց փայլուն հաջողությամբ, և անարգված Կեսարի անունը պսակվեց բարձրագույն փառքով:

Գալերիոսի պատերազմները նկարագրված են IV դարի ժամանակակից պատմագիրների՝ Ավրելիոս Վիկտորի, Եվտրոպիոսի և Ռուփոս Փեստոսի կողմից: Ինձ թվում է, որ Գալերիոսի և Ներսեհի վերջին ճակատամարտի մասին հիշողություն է պահպանվել նաև հայկական Փավստոսի մոտ: Նախքան Փավստոսի, իմ կարծիքով այս դեպքին առնչվող զրույցը մեջբերելը, ծանոթանանք պատերազմի հանգամանքներին ըստ հիշյալ պատմագիրների տվյալների:

Ավրելիոս Վիկտորը 360 թ. գրած իր աշխատանքի մեջ ասում է. «Այն ժամանակ, երբ Հովիոսը (Դիոկղետիանոսը) ուղևորվեց Ալեքսանդրիա (ինքնակոչ Աքիլեվսի դեմ)՝ նա Մաքսիմիանոս Կեսարին հրաման տվեց թողնել իր սահմանները (այսինքն՝ Իլլիրիան) և շարժվել Միջագետք պարսիկների գրոհը ետ մղելու համար: Սկզբում նա ծանր պարտություն կրեց, բայց վետերաններից ու նորակոչիկներից շտապով նոր բանակ կազմելով՝ նա հարձակվեց թշնամու վրա Հայաստանի վրայով, որը համարվում է վստահելի հենակետ և հաղթանակի հասնելու հեշտ ճանապարհ: Վերջապես հենց այնտեղ էլ Գալերիոսը ջարդ տվեց Ներսեհին, գերի վերցրեց նրա երեխաներին, կանանց ու ամբողջ թագավորական արքունիքը: Հաղթանակը այնքան փայլուն էր, որ եթե Վալերիոսը (Դիոկղետիանոսը), որի հրամանով հենց կատարվեց այս ամենը, չդիմադրեր, (հայտնի չէ՝ ինչ պատճառով), ապա հռոմեական իշխանությունը կտարածվեր նոր պրովինցիայի վրա: Այնուամենայնիվ, մեզ համար շատ կարևոր հողեր ձեռք բերվեցին, և քանի որ կորցրածը պարսիկները համառորեն ետ էին պահանջում, ուստի նորից բռնկվեց ծանր ու անչափ կործանարար պատերազմ. Interim, Jovio Alexandriam profecto, provincia credita Maximiano Caesari, uti relictis finibus in Mesopotamiam progrederetur, ad arcedos Persarum impetus. A quis primo graviter vexatus, contracto confestim exercitu e veteranis ac tironibus, per Armeniam in hostes contendit - quae ferme sola seu facilior vincendi via est. Denique ibidem Narseum regem in ditionem subegit, simul liberos coniugesque et aulam regiam. Adeo victor, ut ni Valerius, cujus nutu omnia gere-

bantur, incertum qua causa abnuisset. Romani fasces in provinciam novam ferrentur. Verum pars tamen nobis utilior quaesita, quae quum acrius reposcuntur, bellum recens susceptum est, grave admodum perniciosumque[1].

Եվտրոպիոսի հաղորդումն ավելի հանգամանալից է. «Գալերիոս Մաքսիմիանոսը, Ներսեհի հետ հանդիպելով Կալլինիկումի ու Խառանի միջև, սկզբում շատ անհաջող ճակատամարտ ունեցավ, քանի որ նա կռվում էր ավելի շուտ անկշռադատորեն, քան փոքրոգությամբ: Իր փոքրաթիվ ջոկատով նա մարտի բռնվեց բազմաքանակ թշնամու հետ: Փախուստի դիմելով՝ Գալերիոսը ուղևորվեց Դիոկղետիանոսի մոտ և հասնելով նրան դեպի Եգիպտոս տանող ճանապարհին՝ ընդունվեց նրա կողմից այնպիսի ամբարտավանությամբ, որ, ինչպես պատմում են, ծիրանին հագած՝ մի քանի հազար քայլ վազեց նրա մարտակառքի ետևից:

Սակայն շուտով Իլլիրիայում՝ Միզիայում, զորք հավաքելով՝ Գալերիոսը Մեծ Հայքում Որմիզդի ու Շապուհի պապ Ներսեհի դեմ երկրորդ անգամ ճակատամարտ տվեց և շնորհիվ նախամտածված ծրագրի, ինչպես և խիզախության շատ մեծ հաջողություն ունեցավ: Ընդ որում նա իր վրա վերցրեց նույնիսկ հետախույզի պարտականությունը՝ երկու կամ երեք ձիավորների հետ: Ներսեհին ետ շպրտելով՝ Գալերիոսը գրավեց ու ավերեց նրա ճամբարը, գերի վերցրեց նրա կանանց, քույրերին, երեխաներին և դրանցից բացի՝ պարսկական ազնվականության բազմաթիվ անձանց, ինչպես նաև ձեռք ձգեց պարսկական հարուստ գանձարանը: Ինքը (Ներսեհը) փախավ իր պետության հեռավոր անապատները: Այդ պատճառով էլ, երբ Գալերիոսը հաղթանակով ներկայացավ Դիոկղետիանոսին, որն այն ժամանակ իր զորքերով գտնվում էր Միջագետքում, ընդունվեց արտակարգ պատվով».

Galerius Maximianus primo adversus Narseum minime secundum proelium habuit inter Callinicum Carrasque congressus, cum inconsulte magis, quam ignave dimicasset. Admodum enim parva manu cum copiosissimo hoste commisit. Pulsus igitur et ad Diocletianum profectus cum ei in itinere occurrisset, tanta insolentia a Diocletiano fertur exceptus, ut per aliquot passuum milia purpuratus tradatur ad vehiculum cucurrisse.

Mox tamen per Illyricum Moesiamque contractis copiis rursus cum Narseo, Hormisdae et Saporis avo, in Armenia Majori pugnavit successu ingenti, nec minore consilio simulque fortitudine, quippe qui etiam speculatoris munus cum

[1]Aurelii Victoris Liber de Caesaribus, XXXIX.



altero ac tertio equite susceperit. Pulso Narseo castra ejus diripuit. Uxores, sorores, liberos cepit, infinitam extrinsecus Persarum nobilitatem, gazam Persicam copiosissimam. Ipsum in ultimas regni solitudines egit. Quare ad Diocletianum in Mesopotamia cum praesidiis tum morantem ovans regressus ingenti honore susceptus est[1].

Երրորդ պատմագիրը՝ Ռուփոս Փեստոսը, այդ նույն իրադարձությունների մասին պատմում է հետևյալը. «Դիոկղետիանոս կայսեր օրոք պարսիկների նկատմամբ ձեռք բերվեց փայլուն հաղթանակ: Մաքսիմիանոս Կեսարը անհամար հրոսակների դեմ աննշան ուժերով ճակատամարտելիս առաջին ճակատամարտում պարտված նահանջեց: Նա Դիոկղետիանոսի կողմից ընդունվեց այնպիսի սրտմտությամբ, որ նա մարտակառքի առջևից ծիրանին հագած վազեց մի քանի հազար քայլ, իսկ երբ նա դժվարությամբ թույլտվություն ստացավ Դակիայի սահմաններից զորք հավաքել և նորից բախտը փորձել պատերազմում, այն ժամանակ Մեծ Հայքում ինքը՝ Կեսարը, անձամբ երկու ձիավորի հետ իր վրա վերցրեց հետախուզությունը և 25 հազարանոց զորքի գլուխն անցած՝ հասավ թշնամու ճամբարը, հանկարծակի հարձակվեց պարսիկների անհամար ջոկատների վրա և սրի քաշեց նրանց: Պարսից թագավոր Ներսեհը փախավ. նրա կինն ու աղջիկները գերի ընկան, բայց հոգատարությամբ պահպանվեց նրանց ամոթխածությունը: Այդ վերաբերմունքից հիացած՝ պարսիկները խոստովանեցին, որ հռոմեացիները ոչ միայն զենքով, այլև բարքով իրենցից բարձր են: Միջագետքը անդրտիգրիսյան 5 գավառների հետ նրանք ետ վերադարձրին: Կնքվեց խաղաղություն, և այն շարունակվում է մինչև այժմ ի բարօրություն կայսրության».

Sud Diocletiano principe, pompa victoriae nota de Persis est. Maximianus Caesar prima congressione, quum contra innumeram multitudinem cum paucis acriter dimicasset, pulsus recessit: ac tanta indignatione a Diocletiano susceptus est, ut ante carpentum ejus per aliquot millia passuum cucurrerit purpuratus: et quum vix impetrasset, ut reparato de limitaneis Daciae exercitu eventum Martis repeteret, in Armenia Majore ipse Imperator cum duobus equitibus exploravit hostes: et cum viginti quinque millibus militum superveniens castris hostilibus, subito innumera Persarum agmina adgressus, ad internecionem cecidit. Rex Parsarum Narseus effugit; uxor ejus et filiae captae sunt, et cum maxima pudicitiae custodia resevatae. Pro qua admiratione Persae non modo armis, sed etiam moribus, superiores esse Romanos confessi sunt; ac Mesopotamiam cum

[1] Eutropii Breviarium historiae Romanae, I, IX, p. 24-25.

Transtigritanis quinque regionibus reddiderunt. Pax facta, usque ad nostram memoriam Reipublicae utilis perduravit[1].

Ինչպես կարելի է տեսնել, երեք պատմիչների շարադրանքները շատ մոտ են միմյանց, և նույնիսկ առանձին արտահայտությունների համընկնումներ են պարունակում: Հնարավոր է, որ նրանք օգտվել են մեզ չհասած մի ընդհանուր աղբյուրից[2]: Համենայն դեպս, նրանց հաղորդումների արժանահավատությունը ոչ մի կասկածի ենթակա չէ:

Նկարագրված իրադարձությունների արձագանքը, ինչպես ինձ թվում է, լսվում է և հայ հին գրականության մեջ՝ հատկապես Փավստոսի երկում: Հզոր արքայից արքայի ընտանիքի գերի ընկնելն այնպիսի արտակարգ երևույթ էր, որ չէր կարող ջնջվել այդ ամոթանքի վայր հանդիսացող երկրի հիշողությունից և որևէ հետք չթողնել:

Փավստոսը պատմում է մի հետաքրքրական դեպքի մասին, որը նա հարմարեցնում է Տիրան թագավորի ժամանակներին, բայց իրականում նրա մեջ գտնում ենք մեզ հետաքրքրող իրադարձությունների արտացոլումը:

Հայոց Տիրան թագավորն ուներ մի արտակարգ ազնվացեղ ձի՝ «ամբողջովին պուտերով պատած, որոնք լույսի տակ փայլում էին տարբեր երանգներով, չափազանց կայտառ, ազնվատոհմ, գեղեցիկ կազմվածքով, անսովոր հասակի ու երկարության», մի խոսքով, նա իր հմայիչ գեղեցկությամբ ընդհանուր հիացմունքի ու զմայլանքի առարկա էր դարձել: Այդ ձիու պատճառով Տիրան թագավորի ու պարսից Ատրպատականի կառավարիչ Վարազ-Շապուհի միջև հարաբերությունները սրվել էին: Վերջինս պահանջել էր հռչակավոր ձին, բայց նրա տերը՝ Տիրանը, ափսոսում էր նրանից բաժանվել: Եվ Տիրանը նրա փոխարեն, Վարազի պահանջով, ուղարկեց գույնով ու արտաքինով նման մի ուրիշ ձի: Խաբված Վարազը կատաղեց: Նա զայրույթից ավելի բռնկվեց, երբ նրան սկսեցին փսփսալ, թե այդ մարդը, որ ափսոսում է զիջել ինչ-որ կաշի (խոսքը ձիու մասին է), հույսը դնելով կայսրի ու նրա ուժի վրա, մտքին դրել է Սասանյան տոհմից խլել պարսկական թագավորությունը, ասելով՝ «Դա առաջ պատկանել է մեզ և մեր նախնիներին»:

Վարազը հավատաց ամբաստանությանը և զեկուցեց պարսից թագավոր Ներսեհին, որը հրաման արձակեց վերացնել անբարեհույս Տիրան թագավորին: Այդ նպատակով Ատրպատականի կառավարիչը ներկայացավ (Տիրանին) Հայաստանում, իբր թե թյուրիմացությունը հարթելու

1 Rufi Festi Breviarum, XXV, հմմտ. նաև 20-րդ գլուխը, որտեղ այդ նույնը բերվում է ավելի սեղմ:

2 **Martin Schanz**, Geschichte der röm. Literatur, München, 1904, p. 67, 76.



համար: Դյուրահավատ թագավորը նրան ընդունեց բարեհաճությամբ, ամեն տեսակ պատիվների արժանացրեց, ի միջի այլոց նաև հրավիրեց որսի: Խարդախ հյուրը, հարմար պահ ընտրելով, բռնեց Տիրանին և շիկացած երկաթով աչքերը կուրացրեց և շղթայակապ ուղարկեց պարսից թագավորին: Ուխտադրուժ կառավարիչի հաշվեհարդարը Տիրանի հետ երկրում պարսիկների դեմ առաջ բերեց հզոր շարժում: Երկրի ազդեցիկ նախարարները հավաքվեցին խորհրդակցության և որոշեցին դիմել հունական կայսրին և օգնություն խնդրել՝ վրեժխնդիր լինելու հարազատ թագավորի դժբախտության համար: Դեսպաններ ընտրվեցին Սյունյաց իշխան Անդովկը և Արշարունյաց իշխան Արշավիր Կամսարականը: Նրանք ժամանեցին մայրաքաղաք և նվերների հետ կայսրին ներկայացրին նաև խնդրագիրը: Այդ ժամանակ էր, որ պարսից թագավոր Ներսեհը մեծ ուժերի գլուխ անցած՝ արշավեց Հայաստան և սկսեց ամայացնել երկիրը: Լուր առնելով այդ մասին՝ կայսրը զորքով շարժվեց պարսիկների դեմ: Նա ճամբար խփեց Սատաղ քաղաքից ոչ հեռու: Կայսրը հայերից ընտրելով երկու՝ Արշավիր ու Անդովկ ազնվատոհմ մարդկանց, հենց այն նույն ազնվականներին, որոնք նրա մոտ դեսպանության էին եկել, և ինքն էլ նրանց հետ հագնելով գյուղացու հագուստ, իբրև կաղամբի վաճառականներ, մտնում է թշնամու ճամբարը: Պարսիկները բանակել էին Բասեն գավառի Ոսխա գյուղում: Հետախույզները հայտնվեցին նրանց մոտ, զննեցին ամեն ինչ, պարզեցին ուժերի քանակն ու դասավորությունը և ետ դարձան իրենց ճամբարը: Դրանից հետո հունական զորքը տարբեր կողմերից նետվեց պարսիկների վրա և գլխովին ջախջախեց նրանց: Ջարդը սարսափելի էր, թագավորին հազիվ հաջողվեց միայն մի հեծյալի ուղեկցությամբ փախչել և ազատվել: Հույները գրավեցին պարսկական ճամբարը: Շատերի հետ նրանք գերի վերցրին թագավորի կանանոցը՝ ինչպես և Տիկնաց Տիկնոջը՝ իր նաժիշտներով: Հաղթանակած կայսրը Անդովկ և Արշավիր իշխաններին նշանակեց Հայաստանի կառավարիչներ և նրանց և մյուս իշխաններին առատ նվերներ տալով՝ վերադարձավ իր մայրաքաղաքը:

Պարսից թագավոր Ներսեհը հավաքեց իր մերձավորներին՝ պարզելու իրեն հասած դժբախտության պատճառները: Այստեղ բացահայտվում է Ատրպատականի կառավարիչ Վարազ-Շապուհ ամբաստանության բուն պատճառը, որը մի ձիու համար իր տիրակալին պատերազմի մեջ քաշեց կայսեր հետ և դարձավ չլսված պարտության պատճառը: Սաստիկ զայրացած թագավորը հրամայում է անհապաղ մահապատժի ենթարկել Վարազին: Այնուհետև կարգադրում է դեսպաններ ուղարկել կայսեր մոտ խաղաղության առաջարկությամբ և խնդրանքով՝ գերությունից ազատել գոնե իր կանանոցը:

Ի պատասխան դրան, Վալենտիանոս կայսրը հատուկ հրովարտակով պահանջեց, որպեսզի նախ և առաջ պարսիկներն ազատեն Հայաստանից տարած գերիներին՝ ամենից առաջ Հայոց Տիրան թագավորին՝ խոստանալով դրանից հետո կատարել պարսից թագավորի խնդրանքը: Վերջինս համաձայնեց և անմիջապես Տիրանին ազատեց կալանքից: Եվ քանի որ նա զրկված էր տեսողությունից, ապա նրա խնդրանքով ժառանգորդ նշանակվեց իր Արշակ որդին: Դրանից հետո գերությունից ազատվեցին և Պարսկաստան վերադարձվեցին թագավորի ընտանիքն ու մյուս գերիները[1]:

Փավստոսի պատմությունը կրում է փոքր-ինչ հեքիաթային բնույթ: Նրա մեջ հյուսված են տարբեր ժամանակների իրադարձությունները՝ 293-302 թթ. կառավարող պարսից Նարսեհ թագավորը ներկայացվում է Հայաստանում IV դարի 40-ական թթ. կառավարած՝ Տիրանի ժամանակակից, և նրանք երկուսն էլ գործ են ունենում Վալենտոս կայսեր հետ, որը գահը զբաղեցրել է 364-378 թթ.: Այնուամենայնիվ, այստեղ չի կարելի ժխտել պատմական ճշմարիտ իրադարձությունների, հատկապես 298 թ. պատերազմի արձագանքը, որը դժբախտ ելք ունեցավ՝ պարսից թագավորի ընտանիքի գերեվարությունը: Կայսրի հետախուզության հանգամանքների մասին Փավստոսի հաղորդումը բավական է, որպեսզի նրա պատմությունը վերագրենք Գալերիոսին: Վերը մենք տեսանք, որ արևմտյան պատմագիրներին էլ հայտնի է երկու ձիավորների ուղեկցությամբ կայսեր՝ թշնամու ճամբար հետախուզության գնալը: Սինեսիոսի ճառից իմանում ենք, որ Գալերիոսը իրեն ներկայացրել է որպես կայսեր կողմից պարսիկների մոտ բանակցությունների համար նշանակված դեսպան.

*Ἕτερον δὲ τούτου νεώτερον ἀκούεις, οἶμαι καὶ γάρ οὐδὲ εἰκὸς ἀνήκοόν τινα εἶναι βασιλέως ἑαυτὸν ἐπιδόντος εἴσω τῆς πολεμίας γενέσθαι ἐν χρείᾳ κατασκούσης μιμησαμένου σχῆμα πρεσβείας*[2].

Ըստ Փավստոսի երկում պահպանված հայ ավանդության, կայսրը նույն նպատակով պարսկական ճամբար է մուտք գործել կաղամբ վաճառող գյուղացու հագուստով: Նրան ուղեկցող ձիավորները, ըստ Փավստոսի, եղել են հայ իշխաններ Անդովկն ու Արշավիրը, այն նույն անձնավորությունները, որոնք կարևոր առաքելությամբ ուղարկվել էին կայսեր մոտ: Մեր պատմիչի մոտ նշվում է նաև այն վայրը Հայաստանում, որտեղ տեղի է ունեցել ճակատամարտը՝ այն է Բասեն գավառի Ոսխա գյուղում:

[1] **Փավստոս Բուզանդ**, Գիրք Գ, գլ. 21:

[2] **Syn.**, X.



Ինչպես նշեցինք, Փավստոսի պատմությունը տառապում է ժամանակավրեպությամբ: Այդ հանգամանքը նկատել է դեռևս Մովսես Խորենացին: Վերջինիս վկայությամբ Տիրան թագավորի օրոք Պարսկաստանում կառավարել է ոչ թե Նարսեհը, այլ Շապուհ [II Երկարակյացը]: Որպեսզի հարթի Փավստոսի տվյալների ժամանակավրեպությունները, Խորենացին պատրաստ է Փավստոսի Նարսեհին պարսից թագավորից դարձնելու նրա եղբայրը և հայկական թագի հավակնորդ. «Պարսից Շապուհ թագավորը,- ասում է Խորենացին,- լսելով Խոսրովի մահվան մասին և այն մասին, որ նրա որդի Տիրանը ուղևորվել է կայսեր մոտ, մեծ զորք է հավաքում իր եղբայր Նարսեհի իշխանության տակ, իբր թե մտածելով նրան նստեցնել հայկական գահին և ուղարկում է մեր երկիրը՝ կարծելով թե անտեր է: Բայց նրա դեմ դուրս է գալիս փառապանծ Արշավիր Կամսարականը հայոց զորքի գլուխն անցած և Մռուղի դաշտում ճակատամարտ է տալիս: Թեև կռվի մեջ շատ հայ իշխան-նախարարներ ընկան, բայց և այնպես հայերը հաղթեցին, պարսկական զորքերին հալածեցին և պաշտպանեցին երկիրը մինչև Տիրանի վերադառնալը »[1]:

Արշավիր Կամսարականի անունը, այսինքն՝ այն անձնավորության, որը համաձայն Փավստոսի ու Խորենացու ուղարկվել էր կայսեր մոտ, ճշմարիտ գրավական է այն բանի, որ խոսքը գնում է այն իրադարձությունների մասին, որոնց մասին մանրամասն պատմում է Փավստոսը: Խորենացուն հայտնի է նաև Տիրանի հրաշալի ձիու մասին, բայց Փավստոսի ժամանակավրեպությունը հարթելու համար այդ դրվագը նա վերագրում է ավելի հին ժամանակների՝ ենթադրելով, թե եղել է մի ուրիշ Տիրան՝ Արտաշես [I-ի] որդիներից ու հաջորդներից մեկը: Այդ Տիրանը, ըստ Խորենացու, ունեցել է «երկու ձի՝ անչափ թեթև արագավազ, քան Պեգասը, թվում է, թե նրանք ոտք չեն դրել գետնի վրա, այլ սավառնել են օդում: Մի անգամ ոմն իշխան Բզնունի՝ Դատաբե, թույլտվություն է խնդրում հեծնել նրանց և պարծենում է, թե ինքը թագավորից ավելի մեծաշուք է»[2]:

Առաջին Տիրանը՝ ձիերի տերը՝ Փավստոսի Տիրանի գրական-արհեստական զարմից է: Դա երևում է նաև նրանից, որ Դատաբեն, որն ըստ Խորենացու[3], իբր թե ապրել է առաջին Տիրանի օրոք, իրականում ոչ այլ ոք է, եթե ոչ հայտնի իշխան Բզնունին՝ Տիրանի հոր՝ Խոսրովի, զորավարը: Ըստ

[1] **Մովսես Խորենացի**, Գ, 10:

[2] Անդ, Բ, 62:

[3] **Փավստոս Բուզանդ**, Գ, 8:

Փավստոսի պատմության, Դատարկեն Խոսրովին դավաճանելու համար մահվան է դատապարտվել[1]:

Ինչո՞վ բացատրել Փավստոսի ժամանակավրեպությունը, ինչո՞ւ են 298 թ. իրադարձությունները վերագրված Տիրանի ժամանակներին: Առաջադրված հարցին պատասխանելու և դրանով, ինչպես կտեսնենք, քննարկվող հարցերի վերաբերյալ մեր դատողությունների իրավացիությունը ապացուցելու համար, մենք պետք է կանգ առնենք 298 թ. պայմանագրի վրա և հետևենք հետագա իրադարձություններին մինչև Արշակ [II-ի] թագավորությունը:

Գալերիոսի ու Ներսեհի միջև տեղի ունեցած պատերազմի արդյունքների մասին Փավստոսը լրիվ իրազեկ չէ: Այդ մասին արժեքավոր տեղեկություններ կան VI դարի [բյուզանդական] պատմագիր և դիվանագետ Պետրոս Պատրիկիոսի մոտ: Նրա կորած պատմական աշխատության բեկորների մեջ պահպանվել է 298 թ. պայմանագրին վերաբերող մի հատված:

Պարտությունից հետո պարսից թագավորը խաղաղություն կնքելու համար դիվանագիտական հարաբերությունների մեջ մտավ կայսեր հետ: Կազմվեց դեսպանություն, որի գլուխ էր կանգնած Աֆֆարբանեսը՝ թագավորի սիրելին: Պատրիկիոսը մեջ է բերում այն ճառը, որ պարսից դեսպանը արտասանել է Գալերիոսի առջև. «Ամբողջ մարդկությանը պարզ է, որ հռոմեական ու պարսկական պետությունները նման են երկու լուսատուների, և նրանցից յուրաքանչյուրը աչքերի նման պետք է գեղեցկությամբ փայլի մյուսի փայլով և ոչ ամեն կերպ մոլեգնի փոխադարձ բնաջնջման համար: Դա փառք չի կոչվում, այլ ավելի շուտ թեթևամտություն և թուլություն: Քանի որ, կարծելով թե սերունդները չեն կարող միմյանց օգնել, նրանք շտապում են հաշիվները մաքրել իրենց թշնամիների հետ: Եվ սակայն միաժամանակ կարիք չկա մտածել, թե Ներսեհը թույլ է բոլոր մյուս թագավորներից, իսկ Գալերիոսը մյուս թագավորներին այնքան է գերազանցում, որ միայն նրա կողմից է Ներսեհը արժանիորեն պարտության մատնվել, թեև նա էլ իր առաքինությամբ բոլորովին չի զիջում իր նախնիներին:

Դրանից հետո Աֆֆարբանեսն ասաց, որ թագավորից հանձնարարություն ունի հայտնելու, որ նա արդար է համարում իր թագավորության բախտը վստահելու հռոմեացիների մարդասիրությանը և այդ պատճառով էլ նա չի վիճարկում այն պայմանները, որոնց հիման վրա պետք է կայանա հաշտությունը, և ամեն ինչ թողնում է կայսեր հայեցողությանը: Նա միայն մի խնդրանք ունի՝ վերադարձնել կանանց ու երեխաներին, և հավաստիացնում է, որ նրանց վերադարձնելու դեպքում ինքը դա կհաշվի շատ ավելի մեծ բարիք, քան եթե նա հաղթանակ տաներ զենքով: Եվ այժմ նա չի կարող ըստ արժանվույն երախտահատույց լինել այն բանի համար, որ, նրանք գերության մեջ լինելով, որևէ վիրավորանքի չեն ենթարկվել, և նրանց հետ վարվել են այնպես, որպես այն մարդկանց հետ, որոնք պետք է վերադառնային իրենց (արքայական) վիճակին: Նա ավելորդ չհամարեց հիշեցնել նաև մարդկային ճակատագրի փոփոխականության մասին:

Այդ խոսքերը լսելով կայսրը հավանաբար զայրացավ և ամբողջ մարմնով դողալով՝ ասաց, որ պարսիկներին վայել չէ ուրիշներին հիշեցնել ճակատագրի փոփոխականության մասին, քանի դեռ իրենք, օգտվելով բարեպատեհ առիթից, չդադարեն դժբախտության մեջ գտնվող մարդկանց անարգելուց. «Վալենտիանոսի օրոք հաղթության մեջ դուք լա՞վ պահպանեցիք չափավորությունը. դո՞ւք, որ նենգորեն խաբելով՝ նրան գերեցիք և չազատեցիք մինչև խոր ծերությունը և անփառունակ մահը: Նույնիսկ մահից հետո էլ ինչ-որ ձևով ամոթալիորեն պահպանել եք նրա մաշկը և մահկանացուի մարմինը ենթարկել ձեզ համար անմահ նողկալիության»:

Այդպես առարկեց կայսրը: Նա ասաց, որ ինքը զիջում է, բայց ոչ այն պատճառով, որ պարսիկներն իրենց դեսպանության միջոցով հիշեցնում են, որ պետք է հաշվի նստել մարդկային ճակատագրի փոփոխականության հետ (այդ դեպքում պետք էր ավելի սրտմտել, երբ որ հաշվի առնեն պարսիկների բոլոր արածները), այլ հետևելով սեփական նախնիներին, որոնց մոտ սկզբունք է եղել՝ խնայել պարտվողներին և պայքարել անհնազանդների դեմ, և հրամայեց դեսպանին հայտնել թագավորին հռոմեացիների մեծահոգության մասին, որոնց արիությունը իրենք փորձեցին, և հուսադրել, որ շուտով կայսեր հրամանով նրան կհանձնվեն նաև գերիները[1]:

[1] Փավստոսի Տիրանը, ըստ Խորենացու, գահ է բարձրացել Կոստանդիանոսի 17-րդ տարում (Գ, 11): Բ գլխի նախաբանում Սեբեոսի մոտ (էջ 16) ասվում է. Տիրանի 12 տարում, պարսից թագավոր Ներսեհի 7 տարում և բարեպաշտ Կոստանդիանոսի որդիներ Կոստանդի ու Կոստաս առաջին տարում՝ «եկն ի վերայ նորա ի Բասեան գաւառի ի գեաւղն Ոսխա»: Գնաց(?) նրա վրա Բասենի Ոսխա գյուղը, մինչև որ նա մյուս բոլոր գերիների հետ Տիրան թագավորին չի վերադարձրել և նրա որդուն՝ Արշակին թագավոր չի կարգել և թույլ չի տվել վերադառնալ Հայաստան: Թեև այդ արտահայտությունից չի երևում, ով է ում վրա գնացել, բայց դժվար չի գուշակել, որ Ոսխայի ճակատամարտի տակ հասկացվում են 297 թ. իրադարձությունները: Սեբեոսի մոտ, ըստ Փավստոսի, Տիրանը մի կողմից համարվում է Ներսեհի ժամանակակիցը, իսկ մյուս դեպքում, ըստ Խորենացու, նա ժամանակով մոտ է Կոստանդին և ոչ Վալենտոսին, ինչպես Փավստոսի մոտ է:

[1] Excerpta Petri Patricii Ad Romanos, c. XII.

Խաղաղության պայմանների մասին նույն պատմագիրը հայտնում է հետևյալը.

«Երբ Գալերիոսն ու Դիոկղետիանոսը Մծբինում հանդիպեցին, ապա միասին խորհրդակցելով՝ որպես դեսպան Պարսկաստան ուղարկեցին մեմորիայի մագիստրոս Սիկորիոս Պրոբոսին:

Նարսեհը նրան սիրալիր ընդունելություն ցույց տվեց, հույս ունենալով, որ նրանք կկատարեն իրենց խոստումը, բայց ընդունելությունը հետաձգում էր: Թերևս ցանկանալով հոգնեցնել Սիկորիոսին սպասողականությամբ և դրանով նրան ավելի շուտ համոզվող դարձնել, Նարսեհը Սիկորիոսին իր հետ տարավ (վերջինս գուշակեց, թե բանն ինչ է) մինչև մարական Ասպրուդիս գետը, մինչև որ կհավաքվեին ռազմերթի տարբեր տեղեր ցրված զինվորները: Եվ վերջապես պալատի ներքին սենյակներում, հեռացնելով մյուսներին և բավարարվելով Աֆֆարբանեսի, Արխանեսեսի և Վարսավորսի ներկայությամբ, որոնցից մեկը praefectus praetorio էր, իսկ մյուսը՝ Սումիայի իշխանություն ուներ, հրամայեց Պրոբոսին զեկուցել իր առաքելության մասին:

Դեսպանության գլխավոր դրույթները հետևյալն են.

1) Արևելքում հռոմեացիները ստանան Անգելենեն (Անգեղ տուն) Սոֆենեի (Ծոփք) հետ և Արզանենեն (Աղձնիք) Կորդուենեի (Կորդուք) և Զաբդիկենեի (Ծավդեք) հետ:

2) Տիգրիս գետը լինի սահմանագիծ երկու պետությունների միջև:

3) Մարաստանի սահմանի վրա ընկած Զինթա ամրոցը լինի Հայաստանի սահման:

4) Իբերիայի թագավորը իր տիրակալական իշխանության տարբերանշանները ստանա հռոմեացիներից:

5) Առևտրական հարաբերությունների համար կետ ծառայի Տիգրիսի ափին գտնվող Մծբին քաղաքը՝

*Ἦν δὲ τὰ κεφάλαια τῆς πρεσβείας ταῦτα, ὥστε κατὰ τὸ ἀνατολικὸν κλίμα τὴν Ἀγγηληνὴν μετὰ Σοφηνῆς καὶ Ἀρζανηνὴν μετὰ Καρδουηνῶν καὶ Ζαβδικηνῆς Ῥωμαίους ἔχειν καὶ τὸν Τίγριν ποταμὸν ἑκατέρας πολιτείας ὁροθέσιον εἶναι, Ἀρμενίαν δὲ Ζίνθα τὸ κάστρον ἐν μεθορίῳ τῆς Μηδικῆς κείμενον ὁρίζειν, τὸν δὲ Ἰβηρίας βασιλέα τῆς οἰκείας βασιλείας τὰ σύμβολα Ῥωμαίοις ὀφείλειν, εἶναι δὲ τόπον τῶν συναλλαγμάτων Νίσιβιν τήν πόλιν παρακειμένην τῷ Τίγριδι.*

Նարսեհն այդ բոլորը լսելով՝ հակառակ իր կամքի պետք է ամեն ինչին համաձայներ: Բայց որպեսզի արտաքուստ ցույց չտար,- շարունակում է



պատմագիրը,- որ ենթարկվում է ստիպված, նա առարկեց այն բանի դեմ, որպեսզի առևտրական կետ համարվի Մծբինը:

Սիկորիոսը պատասխանեց, որ պետք է այդ բանում էլ զիջել, քանի որ դեսպանությունը լիազորված չէ գործել ըստ իր ցանկության, իսկ կայսեր կողմից այդ հարցի վերաբերյալ ոչ մի հրահանգ չկա: Այսպիսով առաջարկությունները ընդունվեցին: Նարսեհին ետ վերադարձվեցին կանայք ու երեխաները[1]:

Բյուզանդական պատմագրի շարադրածը հատկանշական է որպես այն ժամանակվա դիվանագիտական բանակցությունների նմուշ՝ իր ոգով շատ համապատասխան Փավստոսի շարադրանքի ոճին: Մեզ համար նրա մեջ կարևոր են հատկապես խաղաղության պայմանները: Պարսկաստանի ուղղությամբ արևելքում Հայաստանի սահման է առաջարկվում Զինթա ամրոցը: Նրա տեղադրությունը դժբախտաբար հայտնի չէ, բայց այն պետք է որոնել Ուրմիա լճից հարավ, քանի որ Փավստոսի վկայությամբ գրեթե ամբողջ Ատրպատականը՝ Գանձակ մայրաքաղաքով հանդերձ գտնվել է հայ Արշակունիների իշխանության ներքո: Գանձակը համապատասխանում է ներկայիս Թախտ - ի- Սուլեյմանին՝ Մարաղայի և Զինջանի միջև. հետևաբար հայկական տիրույթների սահմանը անցնում էր այդ վայրից հարավ, որտեղ էլ հարկավոր է որոնել Զինթան (2): Բացի դրանից, պայմանագրի համաձայն պարսիկներից անջատվեցին հետևյալ գավառները՝ Անգելենեն Սոֆենեի հետ, Արզանենեն Կորդուենեի հետ և (Ռեհիմենեն) Զաբդիկենեի հետ՝ գավառներ, որոնք ընկած են Հայաստանի սահմաններում Տիգրիսի երկու վտակների վրա: Այդ գավառների, որոնք պարսիկների հետ հետագա պայքարում վերջնականապես հաստատվեցին կայսրության կազմում, ազդեցիկ իշխանները կայսրերից ստացան ինվեստիտուրա, ինչպես 298 թ. պայմանագրով հաստատված էր Իբերիայի թագավորի նկատմամբ: Այդ գավառների տարածքները մտցվեցին հայ Արշակունիների տիրույթների կազմը՝ Արշակունիներ, որոնք ճանաչում էին կայսրերի գերագույն իշխանությունը՝ ինչպես և իբերական թագավորները:

Հայ Արշակունիները տիրում էին նաև Ատրպատականին և այնտեղ Գանձակ քաղաքում պահում էին կայազոր, ինչպես այդ երևում է Փավստոսի բազմաթիվ վկայություններից:

298 թ. հաստատված դրությունը ուժի մեջ մնաց մինչև 363 թ.: Այն ամենը, ինչը Փավստոսի հաղորդումներում չի համապատասխանում կամ ակնհայ-

[1] Excerpta Petri Patricii Ad gentes, p. III.

տորեն հակասում է 298 թ. պայմանագրային դրույթներին, պետք է համարել պատմական ճշտությունից զուրկ:

Տիրանի մասին վերը բերված զրույցի մեջ Ատրպատականի տիրակալ է դուրս բերված պարսից թագավորը՝ հանձին Վարազ-Շապուհի, որ Տիրանի դժբախտության պատճառն էր եղել: Հիմք չկա ընդունելու, թե պարսիկները հասցրել էին հայերից խլել Ատրպատականը, քանի որ նրա գրավումը, որպես պայմանագրի բացահայտ խախտում, կայսրերի կողմից հակահարված կարժանանար: Ընդ որում, երկու պետությունների հարաբերությունները խաղաղ էին, ինչպես կտեսնենք, համենայն դեպս մինչև Կոստանդիանոս Մեծի մահը: Ճիշտ է, Փավստոսի խոսքերից իմանում ենք, որ Տրդատի որդի և հաջորդ հայոց թագավոր Խոսրովի օրոք պարսիկները փորձեցին Ատրպատականում վերականգնել իրենց իրավունքները, բայց նրանց փորձը հաջողությամբ չպսակվեց: Լեռնական ցեղերի արշավանքը Հայաստան, որ տեղի ունեցավ Խոսրովի թագավորության ժամանակ, հավանաբար պարսիկների կողմից նկատի առնվեց որպես բարեհաջող պահ, և Շապուհը զորքերի գլուխ անցած՝ ներխուժեց Հեր և Զարեվանդ սահմանամերձ գավառները: Նրա դեմ ուղարկված զորքը իշխան Դատաբեն Բզնունու հրամանատարությամբ անցավ թշնամու կողմը: Պարսիկները հաղթականորեն մտան երկրի խորքը, բայց Բզնունյաց ծովի մոտ, այսինքն՝ Վանա լճի ափին պարտություն կրեցին և հեռացան Հայաստանի սահմաններից[1]:

Շուտով, հավանաբար նույն Շապուհի դավերով, հետևեց ծայրամասային Աղձնիք (Արզանենե) գավառի իշխանի ապստամբությունը, բայց նա էլ ճնշվեց և չարդարացրեց հրահրողի ու ոգեշնչողի հույսերը[2]:

Խաղաղ հարաբերություններին սպառնացող այդ դեպքերը սակայն ապարդյուն անցան: Նույնիսկ Փավստոսը դրանց լուրջ նշանակություն չի տալիս և պնդում է, որ Տրդատի ժամանակներից, մինչև Խոսրովի հաջորդ Տիրանը երկիրը հանգիստ վիճակում էր գտնվում[3]:

Փավստոսի հայտարարությունը համընկնում է այն բանին, ինչ մենք գիտենք արևմտյան աղբյուրներից: Նրանց ընդհանուր խոստովանությամբ խաղաղությունը խախտվեց Կոստանդիանոս Մեծի մահից առաջ: Միայն Եվսեբիոսը նրանցից հեռանում է՝ պատերազմը սկսելու Շապուհի առաջին փորձը վերագրելով 333 թվին, երբ պարսկական դեսպանությունը ներկայացավ Կոստանդիանոսին[4]: Շատ հնարավոր է, որ դեսպանության առիթ են

[1] Փավստոս Բուզանդ, Գ, 8:

[2] Անդ, Գ, 9:

[3] Անդ, Գ, 15:

[4] Vita Const., IV, 8.



ծառայել Փավստոսի հաղորդած հայ-պարսկական բախումները: Հնարավոր է, որ այդ պահին է վերաբերում Եվսեբիոսի մյուս տեղեկությունը, ըստ որի պարսիկները, ստանալով կայսեր մերժումը Տիգրիսից այն կողմ ընկած հինգ գավառները վերադարձնելու վերաբերյալ, երկրորդ անգամ դեսպաններ ուղարկեցին խաղաղությունը չխախտելու խնդրանքով[1]:

Երբ 298 թ. պայմանագրային դրույթները շարունակվեցին մինչև Կոստանդիանոսի մահը, ապա Փավստոսի հաղորդումը, թե Տիրանի օրոք Ատրպատականում նստում էր պարսից թագավորի կուսակալ Վարազ-Շապուհը, որի պատճառով պատերազմ ծագեց Տիրանի և Շապուհի, իսկ հետո էլ նրա ու կայսեր միջև, պետք է համարել ոչ ճիշտ: Հնարավոր է, որ Ատրպատականում պարսկական տիրակալ Վարազ-Շապուհի առկայությունը պետք է վերագրել Փավստոսի ժամանակավրեպ այն պատմություններին, որոնք վերաբերում են Գալերիանոսի և ո՛չ Տիրանի ժամանակներին:

Ըստ Պետրոս Պատրիկիոսի, 298 թ. պարսկական դեսպանությունը բաղկացած էր՝ *Ἀφφάρβα καὶ ἀρχαπέτου καὶ Βαρσαβώρσου ὧν ὁ μὲν ὕπαρχος ἦν πραιτωρίων, ὁ δὲ ἕτερος τὴν τοῦ Συμίου εἶχεν ἀρχὴν.*

Առաջին անունը՝ *Αφφάρβα* ընդունվում է պարսկական **Adur farwa** իմաստով **Atarō frōbag**-ից[2], իսկ նրա *άρχοπέτης* կոչումը համապատասխանում է **argapet**-ին[3]: Դեսպանության երկրորդ անդամի անունը՝ *Βαρσαβώρσ-ης* կարող է համեմատվել Վարազ-Շապուհ *βαρ<ασ>-σα-βαρ(σ)ης* -ի հետ: *Σιμίου*-ի տակ գիտնականները տեսնում են հայկական Սյունիք գավառը[4], բայց հավանական է, որ այդ *Συρένου* բառի աղավաղված ձևն է: Այդ դեպքում նա ծագել է Սուրենյանների հայտնի տոհմից: Անունների առաջարկված համեմատությունը, այն ընդունվելու դեպքում, նոր փաստարկ կարող է ծառայել Տիրանի մասին Փավստոսի պատմությունը վերագրելու Գալերիանոսի ժամանակներին:

Առհասարակ այն բոլորը, ինչ որ մեր պատմիչը հաղորդում է Տիրանի մասին, կարոտ է ստուգման և արևմտյան աղբյուրների լույսի ներքո նշանակալից չափով կարող է վիճարկվել պատմական քննադատության կողմից:

[1] Vita Const., IV, 57.

[2] **Hoffman**, Auszüge, p. 36, not. 306.

[3] **Justi**, Geschichte Irans, Grundriss d. Iran. phil. II, 437-438.

[4] **Rawlinson**, The Seventh Orient monarchy, p. 127, not. 3.

Կոստանդիոսին ուղղված Հուլիանոս կայսեր ճառերի մեջ կան մի քանի արժեքավոր նյութեր, որոնք վերաբերում են այդ ժամանակներին և մինչև այժմ չեն օգտագործվել:

Հռոմեա-պարսկական հարաբերությունների համառոտ տեսությունից հետո հիշատակելով 298 թ. կնքված խաղաղության պայմանագիրը՝ Հուլիանոսն ասում է. «Չգիտեմ, թե ինչպես է եղել, որ պարսիկները խախտեցին խաղաղությունը դեռևս քո հոր օրոք և խուսափեցին վրիժառությունից նրա՝ մարտական պատրաստությունները տեսնելիս: Իսկ ավելի ուշ դու պատժեցիր նրանց հանդգնության համար: Քանի որ ես ստիպված կլինեմ հաճախ խոսել պատերազմների մասին, որոնք դրդել ես նրանց դեմ, ապա առայժմ անհրաժեշտ եմ համարում ունկնդիրների ուշադրությունը հրավիրել այն բանի վրա, որ դու կայսրության երրորդ մասի տիրակալ դարձար այն ժամանակ, երբ թվում էր, թե դու ամենևին պատրաստված չէիր պատերազմին ո՛չ զենքի, ո՛չ մարդկանց և ո՛չ էլ առհասարակ այն միջոցների իմաստով, որոնք անհրաժեշտ է ունենալ առատորեն այդպիսի լուրջ պատերազմի համար: Բացի դրանից ինչ-որ անհասկանալի պատճառներով քո եղբայրներից և ոչ ոք քեզ զորավիգ չեղավ այդ պատերազմում: Սակայն չի գտնվի այն աստիճանի անամոթ ու նախանձոտ բանսարկու մարդ, որը չխոստովաներ, որ դու ես նրանց մեջ գոյություն ունեցող միասնության գլխավոր պատճառը: Կարծում եմ, սկսվում է ինքնըստինքյան ծանր պատերազմ, հեղաշրջման պատճառով զորքերը ապստամբել են և ողբացել քո հոր՝ նախկին տիրակալի մահը՝ բացահայտելով քեզ և եղբայրներիդ ղեկավարելու ցանկությունը, հազար ուրիշ անբարենպաստ ու ծանր հանգամանքներ ամեն կողմից երևան են գալիս և պատերազմի նկատմամբ հույսերը ավելի ու ավելի մռայլ են ներկայացնում:

Հայերը՝ մեր վաղեմի դաշնակիցները, երկպառակտությունից տառապած և նշանակալից չափով պարսիկների կողմն անցած, ավերում են սեփական սահմանները: Այն, ինչ ներկա պայմաններում հանդիսանում է միակ փրկությունը, այսինքն՝ որ դու քո ձեռքը վերցնես իշխանության ղեկը և գործես տիրաբար, չէր կարող տեղի ունենալ եղբայրներիդ հետ Պայոնիայում բանակցելու պատճառով, որ դու քո ներկայությամբ վարում էիր, այնպես, որ առիթ չէիր տալիս կշտամբանքների՝

*Ἀρμένιοι παλαιοὶ σύμμαχοι στασιάζοντες καὶ μοῖρα σφῶν οὐ φαύλη Πέρσαις προσθέμενοι, τὴν ὅμορον σφίσι λῃσταῖς κατατρέχοντες καὶ ὅπερ ἐν τοῖς παροῦσιν ἐφαίνετο μόνον σωτήριον, τὸ σὲ τῶν πραγμάτων ἔχεσθαι καὶ βουλεύεσθαι, τέως οὐχ ὑπῆρχε διὰ τὰς πρὸς τοὺς ἀδελφοὺς ἐν Παιονίᾳ συνθήκας, ἃς*



*αὐτὸς παρὼν οὕτω διῴκησας, ὡς μηδεμίαν ἀφορμὴν ἐκείνοις παρασχεῖν μέμψεως*[1].

Այնուհետև նկարագրելով տագնապալից դրությունը, որի մեջ գտավ կայսրությունը Կոստանդիոսը հոր մահից հետո՝ բռնկված պատերազմ, շարունակական ներխուժումներ, դաշնակիցների պառակտում, բանակի բարոյալքում և պետական գործերում ընդհանուր անկարգություն,- այդ նույն հեղինակը շարունակում է.

«Այն բանից հետո, երբ դու ավարտեցիր բանակցությունները եղբայրներիդ հետ, հասավ ցանկալի ժամանակը տրվելու վտանգի մեջ գտնվող պետության գործերին՝ դրանք կարգի բերելու համար: Արագ ընթացքով Պայոնիայից երևացիր Ասորիքում այնպիսի արագությամբ, որ նույնիսկ դժվար է բառերով արտահայտել: Բայց նրանց համար, ով գիտե, բավական է և փորձելը: Ով ի վիճակի է պատմել, թե քո հայտնվելու դեպքում ինչպես բոլորը արագ փոխվեց, բոլորը լավացավ, և դու ոչ միայն մեզ ազատեցիր ճնշող սարսափից, այլև սերմանեցիր լավագույն հույսեր ողջ գալիքի նկատմամբ: Միմիայն քո մոտենալով՝ զորքերն ապաքինվեցին բարոյազրկությունից, և վերականգնվում էր կարգը»:

«Հայերից նրանք, ովքեր անցել էին թշնամու կողմը, վերադարձան անմիջապես, երբ որ դու հալածեցիր այդ երկրի տիրակալ (թագավորի)՝ մեզ մոտ փախչելու պատճառ եղած մեղավորներին և փախածներին ապահովեցիր անվտանգ վերադարձ դեպի իրենց տները: Այդպես մարդասիրաբար վարվեցիր դու նրանց հետ, որոնք մոտ ժամանակներս եկան մեզ մոտ և սիրալիր կերպով հաղորդակցվեցիր նրանց հետ, որոնք փախուստից վերադարձել էին իրենց հետ, որ ոմանք զղջում էին այն բանի համար, որ առաջ նրանք անջատվել են մեզանից, իսկ մյուսները իրենց ներկա բախտը գերադասում էին նախկին ղեկավարությունից: Նախկինում փախածները խոստովանում էին, որ գործնապես սովորեցին բարեմտություն, մյուսներն էլ, որ հավատարմության համար ստացան իրենց արժանի վարձատրությունը: Դու աչքի ընկար վերադարձածների նկատմամբ այնպիսի առատաձեռն նվերներով ու պատիվներով, որ նրանք առիթ չունեն վրդովվելու կամ նախանձելու իրենց հակառակորդներին, որոնք բախտավոր ու բարեկեցիկ են և արժանացել են անհրաժեշտ պատիվների:

*Ἀρμενίων δὲ οἱ προσθέμενοι τοῖς πολεμίοις εὐθὺς μετέστησαν, σοῦ τοὺς μὲν αἰτίους τῆς φυγῆς τῷ τῆς χώρας ἐκείνης ἄρχοντι παρ' ἡμᾶς ἐξαγαγόντος, τοῖς φεύγουσι δὲ τῆν ἐς τήν οἰκείαν κάθοδον ἀδεᾶ παρασκευάσαντος, οὕτω δὲ φιλανθρώπως τοῖς τε*

---

[1] Jul. Imp. Oratio, I, ed. Teub., p. 21-22.

*παρ'ἡμᾶς ἀφικομένοις ἄρτι χρησαμένου καὶ τοῖς ἐκ τῆς φυγῆς μετά τοῦ σφῶν ἄρχοντος κατεληλυθόσι πράως ὁμιλοῦντος, οἱ μέν, ὅτι καὶ πρότερον ἀπέστησαν αὐτοὺς ἀπωλοφύραντο οἱ δὲ τὴν παροῦσαν τύχην τῆς πρόσθεν ἠγάπων μᾶλλον δυναστείας. καὶ οἱ μὲν φεύγοντες ἔμπροσθεν ἔργῳ σωφρονεῖν ἔφασαν ἐκμαθεῖν οἱ δὲ τοῦ μὴ μεταστῆναι τῆς ἀμοιβῆς ἀξίας τυγχάνειν. τοσαύτῃ δὲ ἐχρήσω περὶ τοὺς κατελθόντας ὑπερβολῇ δωρεῶν καὶ τιμῆς, ὥστε μηδὲ τοῖς ἐχθίστοις σφῶν εὖ πράττουσι καὶ τὰ εἰκότα τιμωμένοις ἄχθεσθαι μηδέ βασκαίνειν*[1].

Հայաստանում ինչ-որ իրադարձությունների մասին Հուլիանոսի ակնարկները լրիվ պարզ չեն: Դրանցից կարելի է եզրակացնել, որ հայերի մոտ կային և՛ պարսկամետ, և՛ հռոմեամետ կուսակցություններ: Պարսկական կուսակցությունը հաղթելով հալածեց հակառակորդներին. վերջիններս թագավորի հետ միասին ապաստան գտան հռոմեական տարածքում: Կոստանդիոս կայսրը հաշտեցրեց կուսակցությունները և խաղաղություն վերականգնեց ի հաճույս երկու կողմերի: Բայց ով էր այդ հայկական թագավորը: Փավստոսին անծանոթ է կայսեր մոտ թագավորի փախչելու դեպքը: Նա պատմում է պարսիկների կողմից Տիրան թագավորին գերելու մասին: Այդ թագավորի օրոք նախարարական տոհմերի միջև տեղի ունեցան խռովություններ ու բախումներ և ըստ ամենայնի այդ ժամանակներին են վերաբերում Հուլիանոսի հիշատակած իրադարձությունները: Հուլիանոսի խոսքերով Հայաստանում խռովությունները ճնշվել են Կոստանդիոսի կողմից, այն բանից հետո, երբ նա «արագ ընթացքով Պայոնիայից [դուրս գալով] երևաց Ասորիքում»: Իսկ Պայոնիայում Կոստանդիոսը եղբայրների հետ գտնվում էր հայրական ժառանգորդությունը բաշխելու գործով:

Կոստանդիանոս Ա Մեծը, ինչպես հայտնի է, կայսրությունը բաժանել էր երեք որդիների և երկու եղբորորդիների միջև, ըստ որում արևելյան տիրույթները բաժին ընկան Կոստանդիոս որդուն և երկու եղբորորդիներին: Կոստանդիանոսի մահից հետո կայսերական գերդաստանի երկրորդ գիծը ջարդի ենթարկվեց, որի ժամանակ զոհվեցին նաև նրա եղբորորդիները՝ Դալմատիոսը և Աննիբալիանոսը[2]: Ահա այդ ժամանակ Կոստանդիանոսի որդիները հավաքվեցին Պայոնիայում՝ կայսրությունը կրկին բաժանելու համար: Ամբողջ արևելքը մնաց Կոստանդիոսին: Կոստանդիանոսի մահից

[1] Jul. Imp. Oratio, I, p. 24-25.

[2] **Zosime,** p. 98.



հետո այդ կապակցությամբ եղբայրների միջև սկսված բանակցությունները 338 թ. ավարտվեցին: Գոյություն ունի Կոստանդիանոս II-ի և Կոստասի անունով հրովարտակ՝ հրապարակված Սիրմիայում՝ Պայոնիա քաղաքում 338 թ. հուլիս ամսի վերջին (D. VI k. Aug. Sirmi Urso et Polemio conss (338) Impp. Constantinus et Constans AA. ad Catulinum)[1].

Հրովարտակը ստորագրել են երկու եղբայրները: Կոստանդիոսի ստորագրության բացակայությունը կարելի է բացատրել նրանով, որ նա մեկնել էր Արևելք: Իրոք, այդ նույն 338 թ. հոկտեմբերի 11-ին նա գտնվում էր Անտիոքում, ինչպես այդ երևում է նրա՝ նույն ամսաթվով արձակած հրովարտակից: Հուլիանոսը ընդգծում է այն արագությունը, որով Կոստանդիոսը, գործերը եղբայրների հետ ավարտին հասցնելուց հետո, ռազմերթով կտրեց-անցավ Պայոնիայից մինչև Ասորիք տանող ճանապարհը: Հնարավոր է, որ նա Ասորիք դուրս եկավ 338 թ. հուլիսից մի փոքր առաջ, երբ եղբայրները դեռ չէին հասցրել հավաքվել:

Կոստանդիոսը Արևելքում մնում էր նաև հաջորդ տարիները, ինչպես այդ վկայում են Լավոդիկեում 339 թ. և Անտիոքում 341 թ. հրապարակած նրա հրամանագրերը[2]: Կոստանդիոսի՝ Արևելքում հայտնվելու պատճառը պարսիկների կողմից հայտարարված պատերազմն էր: Պարսիկների կողմից թշնամական գործողությունները սկսվել էին դեռևս Կոստանդիանոս Մեծի կենդանության ժամանակ: Եվտրոպիոսի խոսքերով և ըստ Զատկական ժամանակագրության նա ընդունեց թշնամու մարտահրավերը և արշավի դուրս գալով՝ վախճանվեց Նիկոմիդիայի ճանապարհին 337 թ. մայիսի 22-ին Պենտեկոստի օրը[3]:

.Օգտվելով բարենպաստ պահից, երբ Կոնստանդիանոսի ժառանգորդ-

[1] Cod Just., VIII, 1. **Krüger,** p. 338. Այդ նույն հրատարակության անվանացանկում մեզ հետաքրքրող օրենքը կրում է Constantius անունը (փխ. Constantinus և Constans, p. 449): Հրատարակիչները նկատում են, որ ձեռագրերում հաճախ շփոթվում են երեք եղբայրների անունները, և նրանց կողմից հրատարակված օրենքները վերագրվում են եղբայրներից մեկ մեկին, մեկ մյուսին: Տվյալ դեպքում Constantinus ընթերցումը Constantius-ի փոխարեն նախապատվելի է: Գոյություն ունի Կոստանդիանոսի հրովարտակը նույն թվականությամբ նույն Կատուլինոսի անունով X, XLVIII, 7 = p. 420:

[2] Cod. Just., VI. X, 9 և XI. LXVI, 1.

[3] **Eutrop.**, X, 8, bellum adversus Parthos moliens qui iam Mesopotamiam fatigabant XXXI anno imperii aetatis sexto et sexagesimo Nicomediae in villa publica obiit. **Chr. Pasch.**, p. 532, Πέρσαι πόλεμον ἐδήλωσαν πρὸς Ῥωμαίους καὶ ἐπιβὰς Κωνσταντῖνος λβ' ἐνιαυτῷ τῆς αὐτοῦ βασιλείας ὁρμήσας ἐπὶ τὴν ἀνατολὴν κατὰ ἐλθὼν ἕως Νικομηδείας ἐνδόξως καὶ εὐσεβῶς μεταλλάττει τὸν βίον ἐν προαστείῳ τῆς αὐτῆς πόλεως. Այստեղից է վերցնում և Թեոփանեսը (էջ 50)՝ 5828 տարվա տակ:

ները գրավված էին Սիրմիայում, պարսից Շապուհ թագավորն անցավ Տիգրիսը և պաշարեց Մծբինը՝ Միջագետքի սիրտը: Պաշարումը հաջողություն չունեցավ, և պարսիկները ստիպված եղան վերացնել պաշարումը և հեռանալ:

*Σαπώρις ὁ Περσῶν βασιλεὺς ἐπῆλθεν τῇ Μεσοποταμίᾳ πορθήσων τὴν Νίσιβιν, καὶ περικαθίσας αὐτὴν ἡμέρας ξγ′ καὶ μὴ κατισχύσας αὐτῆς ἀνεχώρησεν*[1].

Դա Մծբինի առաջին պաշարումն էր և վերագրվում է հավանաբար 338 թվականին: Պարսիկների հաղթանակների հետ կապված են նաև Հայաստանում տեղի ունեցած այն իրադարձությունները, որոնց մասին խոսում է Հուլիանոսը: Երկու հարևան պետությունների բախումների մեջ Հայաստանը կարևոր դեր է խաղացել. շատ դեպքերում նա էլ կռվախնձոր է հանդիսացել:

Բնական է, որ սկսելով ռազմական գործողությունները կողմերից յուրաքանչյուրն աշխատում էր նախապես ձեռք բերել Հայաստանի համակրանքը և օգտագործել նրա զինվորական ուժերը: Հնարավոր է, որ հենց այդ ժամանակներին է վերաբերվում Բակուրի ապստամբությունը, որի մասին վկայում է հայ պատմիչը: Պետք է ենթադրել, որ Հայաստանում պարսկամետ կուսակցությունը Շապուհի զորքերի հայտնվելուն պես գերակայեց և հալածեց իր քաղաքական հակառակորդներին՝ կայսրական իշխանության համախոհներին, որոնք իրենց թագավորի հետ անցան հռոմեական տարածքը: Հուլիանոսի խոսքերը կասկածի տեղ չեն թողնում, որ Հայաստանում կուսակցական երկպառակությունները հարթվել են հենց Կոստանդիոսի կողմից այն բանից հետո, երբ նա 338 թ. Սիրմիայից Արևելք եկավ: Արագ կերպով կարգ ու կանոն վերականգնելը և թագավորին երկիր վերադարձնելը, որ Հուլիանոսը վերագրում է միայն Կոստանդիոսի շնորհքին, մասամբ բացատրվում է Մծբինի անհաջող պաշարումից հետո պարսկական զորքերի հեռանալով:

Հուլիանոսը չի նշում հայոց թագավորի անունը, բայց ըստ ժամանակի պայմանների, որքան դրանց մասին կարելի է դատել հայկական տվյալներով, [այդ անձնավորության] մեջ չի կարելի չճանաչել Տիրան թագավորին: Շատ տարօրինակ է, որ Փավստոսը ոչինչ չգիտի Տիրանի ու նրա կուսակիցների հռոմեական տարածք փախչելու մասին: Կարող է պատահել, փախուստի հետ կապված է Տիրանի՝ Ծոփք գավառի հարավային ծայրամասում՝ Բնաբեղ[2] ամրոցում գտնվելը (այժմ փոքրիկ գյուղ Մարդինից ոչ հեռու):

Կոստանդիոսը նրան վերականգնեց գահի վրա: Շուտով պարսիկները

[1] Chr. Pasch., p. 533. Այստեղից էլ՝ 5829 տարվա տակ վերցնում է Թեոփանեսը, էջ 52:

[2] **Փավստոս Բուզանդ**, Գ, 12:



նորից ներխուժեցին երկիր և գերեցին նրան որպես կայսերական իշխանության կողմնակցի: Այսպիսով, գահի վրա նրա վերականգնումը վերաբերում է 338 թ., երբ կայսրը ժամանեց Սիրմիա: Իսկ գերեվարության տարին պարզվում է Սինգարայի կամ Ներսեհական ճակատամարտի հաշվետվությունից:

Այդ ճակատամարտի հանգամանքները մեզ հայտնի են նույն Կոստանդիոսի մասին նույն այդ Հուլիանոսյան ճառից. «Ես հիանալի գիտեմ,- ասում է մեր ներբողագիրը,- որ բոլորը հակված են Սինգարայի մոտ տեղի ունեցած ճակատամարտը համարել որպես բարբարոսների (պարսիկների) հաղթանակ, իսկ ես կարծում եմ, որ այդ ճակատամարտը երկու բանակների համար էլ դժբախտություն եղավ, բայց քո քաջությունը, ինչպես և պետք էր սպասել, առավելություն ունեցավ նրանց բախտի նկատմամբ»:

*Οὐκοῦν εὖ οἶδα, ὅτι πάντες ἂν μέγιστον φήσειαν πλεονέκτημα τῶν βαρβάρων τὸν πρὸ τῶν Σιγγάρων πόλεμον. ἐγὼ δὲ ἐκείνην τὴν μάχην ἴσα μὲν ἐνεγκεῖν τοῖς στρατοπέδοις τὰ δυστυχήματα, δεῖξαι δὲ τὴν σὴν ἀρετὴν περιγενομένην τῆς ἐκείνων τύχης φαίην ἂν εἰκότως*[1].

Հռոմեացիները չէին ցանկանում նախահարձակ լինել «որպեսզի առիթ չտան իրենց մեղադրելու խաղաղությունը խախտելու մեջ» (*οὐχὶ δὲ αὐτοὶ πολέμου μετὰ τὴν εἰρήνην ἄρχοντες*):

Վերջապես պարսից թագավորը հարձակման ազդանշան տվեց, բայց հռոմեացիների մարտական կարգը տեսնելով, վախեցավ և «մտածեց շտապ փախչել, հասկանալով, որ իրեն կարող է փրկել միայն այն, եթե հաջողվի կանխապես անցնել գետը, որ վաղնջական ժամանակներից սահման էր դարձել մեր և նրանց հողերի միջև: Այդպես դատելով՝ թագավորը սկզբում ազդանշան տվեց ետ քաշվել, իսկ հետո աստիճանաբար արագությունն ավելացնելով՝ վերջում իսկական փախուստի դիմեց՝ իր հետ ունենալով մի քանի հեծյալների, իսկ ամբողջ զորքի հրամանատարությունը հանձնելով որդուն ու բարեկամներից ամենահավատարիմին. *φεύγειν ᾤετο χρῆναι διὰ τάχους καὶ τοῦτο μόνον οἱ πρὸς σωτηρίαν ἀρκέσειν εἰ φθήσεται τὸν ποταμὸν διαβῆναι, ὅσπερ ἐστὶ τῆς χώρας ἐκείνης πρὸς τὴν ἡμετέραν ὅρος ἀρχαῖος, ταῦτα διανοηθεὶς ἐκετνος πρῶτον ἐπὶ πόδα σημαίνει τὴν ἀναχώρηιν, καὶ κατ᾽ ὀλίγον προστιθεὶς τῷ τάχει τέλος ἤδη καρτερῶς ἔφευγεν, ἔχων ὀλίγους ἱππέας ἀμφ᾽ αὐτόν, τὴν δύναμιν ἅπασαν τῷ παιδὶ καὶ τῷ πιστοτάτῳ τῶν φίλων ἐπιτρέψας ἄγειν*»[2].

[1] **Julianus**, Orat., I, p. 27.

[2] Նույն, էջ 28:

Նկատելով պարսիկների նահանջը՝ հռոմեական զորքերը նետվեցին նրանց վրա: «Ճակատամարտն այն հետևանքն ունեցավ, որ մեր կողմից ընկան երեքը կամ չորսը, իսկ պարթևներից (այսինքն՝ պարսիկներից), զոհվեց զերի վերցված թագաժառանգը՝ իր շքախմբից շատերի հետ: Բոլոր այդ իրադարձություններին պարսից թագավորն անգամ երազում չմասնակցեց և փախուստը չդադարեցրեց մինչև որ գետն իր ետևը չթողեց, իսկ դու, ընդհակառակը՝ կիսեցիր բոլոր դժվարություններն ու ծանրությունները [զորքիդ հետ]».

*τοῦτο τέλος τῆς μάχης ἐκείνης γέγονε, τρεῖ ς μὲν ἢ τέτταρας ἀφελομένης τῶν παρ' ἡμῖ ν, Παρθυαίων δὲ τὸν ἐπί τῇ βασιλείᾳ τρεφόμενον ἁλόντα πρότερον καὶ τῶν ἀμφ' αὐτὸν παμπληθεῖ ς ξυνδιαφθειράσης. τούτοις δε ἅπασι δρωμένοις ὁ μὲν βαρβάρων ἡγεμὼν οὐδὲ ὄναρ παρῆν. οὐδὲ γὰρ ἐπέσχε τὴν φυγὴν πρὶν ἢ κατὰ νώτου τὸν ποταμόν ἐποιήσατο*[1].

Սինգարայի ճակատամարտի մասին հիշատակում է նաև Եվտրոպիոսը: Նրա խոսքերով, պարսիկների դեմ Կոստանդիոսի ռազմական գործունեությունն առհասարակ անհաջող է եղել, բացի Սինգարայի ճակատամարտից՝ nullumque ei contra Saporem prosperum proelium fuit, nisi qnod apud Singaram *haud dubiam victoriam ferocia militum amisit*[2]:

Նրա մասին զիտի նաև Ամմիանոսը: Հայտնի վաճառական Անտոնինոսը, փախչելով Շապուհի մոտ և ցանկանալով նրան զրգռել հռոմեացիների դեմ, ի միջի այլոց հիշեցրեց նաև քառասնական թվականների մասին, երբ ամբողջ շարք պարտություններից հետո, Հիլեայի և Սինգարայի մոտ տրվեց կատաղի ճակատամարտ՝

quadragesimi anni memoriam replicabat, post bellorum adsiduos casus et maxime apud Hileiam et Singaram, ubi accerima illa nocturna concertatione pugnatum est[3].

Արժեքավոր տվյալներ ենք գտնում Ռուփոս Փեստոսի մոտ: Հիլեյան դաշտում՝ Սինգարայի մոտակայքում, տեղի ունեցած ճակատամարտը նրա մոտ կոչվում է Նարսեհյան՝ կռվում զոհված պարսիկների հրամանատար Նարսեհի անունով՝

Narsensi autem bello, ubi Narseus occidit, superiores discssimus. Nocturna vero in agro Eleiensi prope Singaram pugna, ubi praesens Constantius adfuit[4].

[1] Julianus, Orat., I, p. 29-30.
[2] Eutrop., X, p. 10.
[3] Ammian. Marc., XVIII, 5.
[4] Rufi Fest., XXVII.



Փեստոսի Նարսեհը հենց պարսից գահաժառանգն է՝ Շապուհի որդին, այն նույնը, որին հայրը հանձնեց հրամանատարությունը մեզ հետաքրքրող ճակատամարտի ժամանակ: Ճակատամարտի ելքը հռոմեացիներն իրենց համար համարում էին համեմատաբար բարեհաջող՝ նկատի ունենալով Նարսեհի զերեվարությունն ու մահը[1]:

Նշված հանգամանքը, ինչպես մեզ է թվում, լուծում է առեղծվածը՝ ինչո՞ւ Փավստոսի վերը բերված պատմության մեջ 298 թ. իրադարձությունները իջեցված են Տիրանի թագավորության ժամանակները: Գալերիանոսի օրոք 298 թ. հռոմեացիների դեմ պատերազմ է մղել պարսից Նարսեհ թագավորը, որի որդին կնոջ և թագավորական տան մյուս անդամների հետ գերի ընկան կայսեր ձեռքը: Իսկ Սինգարայի ճակատամարտում Կոստանդիոսի կողմից գերի վերցվեց նույն այդ Նարսեհ անունը կրող թագաժառանգը: Փավստոսի մոտ պահպանված հայկական ավանդության մեջ պատմության տարբեր շրջաններին վերաբերող դեպքերը միաձուլված են, ընդ որում փորձաքար է ծառայել Նարսեհ անունը և երկու դեպքում էլ պարսկական գահի թագաժառանգների համանման բախտը:

Եթե մեր վերլուծությունը ճիշտ է, իսկ այն կասկածանքի ենթարկելու հիմք չկա, ապա մենք պետք է ընդունենք, որ Սինգարայի ճակատամարտի *ժամանակ հայկական գահը զբաղեցնում էր Տիրանը*: Այլապես դժվար կլինի բացատրել, թե ինչո՞ւ մեզ հետաքրքրող պատմությունը Փավստոսը համապատասխանեցնում է Տիրանի ժամանակներին: Ճշտելով նշված ճակատամարտի ժամանակը՝ կստանանք կարևոր հենակետ Արշակունյաց թագավորների ժամանակագրության վերաբերյալ:

Այդ ժամանակաշրջանի հռոմեա-պարսկական հարաբերությունների վերաբերյալ պատմագիրների հաղորդած տեղեկությունները առհասարակ հակասական են ու կցկտուր: Ո՛չ Թեոփանեսը, ո՛չ Զատկական ժամանակագրությունը, որոնց տվյալներից սովորաբար օգտվում են ուսումնասիրողները, չեն կարող վճռական համարվել: Հուլիանոսի ճառի մեջ կա որոշակի ցուցում Սինգարայի ճակատամարտի թվականի մասին և այդ ցուցումը պետք է ընդունվի որպես ճիշտ: Պատմելով Մծբինի մի պաշարման մասին, որը տեղի ունեցավ, իր իսկ ցուցումով, Մագնենտիոսի ապստամբության և Կոստաս կայսեր սպանության ժամանակ, այսինքն՝ 350 թվականին՝ Հուլիանոսը նկատում է. «Սինգարայի ճակատամարտը

[1] Հաջողությունը ավելի շատ պարսիկների կողմն էր, և եթե նրանք այնուամենայնիվ նահանջեցին, ապա այդ հանգամանքը մասամբ բացատրվում է, ինչպես կարծում է Ռառուլինսոնը, Նարսեհ թագաժառանգի մահով. Շապուհը ցնցված էր որդու տխուր ճակատագրով, տե՛ս «The Seventh», p. 161:

տեղի ունեցավ Մծբինի պաշարումից մոտ վեց տարի առաջ»: Հետևաբար նշված ճակատամարտը պետք է թվագրել 345 թ.: Այդ թվականին Կոստանդիոսը՝ մասնակցելով մարտին, իրոք գտնվում էր Մծբինում, ինչպես երևում է նրա հրապարակած հրովարտակից՝ Imp. Constantius A. Nemesiano com. larg. a. 345. III, IV id. Mai Nizibi. Amantio et Albino conss[1]:

Կայսրի՝ Մծբինում գտնվելը կապված է պարսից պատերազմի, նախևառաջ Սինգարայի ճակատամարտի հետ: Սինգարան ընկած էր Մծբինից հարավ համանուն լեռներում, որ այժմ արաբական արտասանությամբ կոչվում է Սինջարա: Այդ լեռների հարավային լանջին էլ ընկած էր Կիպերտի կողմից ներկայիս Tepe Hil-ին[2] համապատասխանեցված Հիլեա վայրը: Հաջորդ 346 թ. Կոստանդիոսին մենք տեսնում ենք Մեդիոլանում, ինչպես երևում է դարձյալ նրա այդ նույն թվականի դեկտեմբերի արձակած հրամանագրից[3]: Այդ ժամանակ Սինգարայի մոտակայքում մարտական գործողությունները վերջացել էին, և պարսիկների դեմ պատերազմը առհասարակ վերջացել էր, եթե կայսրը մեկնել էր Մեդիոլան:

Փավստոսի պատմելով՝ հայոց Տիրան թագավորին պարսիկները գերի վերցրին մինչև այն ճակատամարտը, որտեղ զոհվեց Ներսեհը, և միայն խաղաղություն կնքելուց հետո նրա տեղը նշանակվեց Տիրանի Արշակ որդին: Նշանակում է, եթե ոչ Տիրանի անկումը, ապա համենայն դեպս Արշակի գահ բարձրանալը պետք է համարվի 345 թ.: Ավելի հավանական է, որ Տիրանը գահընկեց եղավ նախորդ 344 թ.: Եզրակացությունները, որոնց մենք հանգում ենք, հիմնավորվում են նաև հետագա մի քանի փաստերի վերլուծությամբ:

## II

Շուտով պատերազմական գործողությունները վերսկսվեցին: Շապուհը զորքերի գլուխն անցած՝ պաշարեց Մծբինը: Այդ պաշարումը վերագրվում է 350 թվականին: Ժամանակը պարսիկների համար շատ բարենպաստ էր՝ նկատի ունենալով Հռոմեական կայսրությանը ալեկոծող քաղաքական խռովությունները: Կոստաս կայսեր անձնապահանորդ զորքի հրամանատար ոմն Մագնենտիոս Գաղիայում 350 թ. կայսր հռչակվեց, և այդ ինքնակոչի զոհը դարձավ Կոստասը: Մեկ ուրիշ ինքնակոչ գրավեց իշխանությունը Իլլիրիայում: Կայսրության համար այդ դժվար պահին

[1] Cod. Just., X. XIX, 3, p. 403.

[2] R. Kiepert, Kleinasien Nsebin.

[3] Cod. Just., X. IX, p. 30.



պարսիկները Մծբինի պաշարումով սկսեցին պատերազմական գործողությունները: Չնայած Շապուհի նախկինին գերազանցող արտակարգ պատրաստություններին, պարսիկներն այս անգամ էլ հաջողություն չունեցան: Պաշարվածները ետ մղեցին թշնամու գրոհները, և թշնամին 3-4 ամսվա ծանր ջանքերից հետո ստիպված եղավ թողնել պաշարումը և հեռանալ: Պաշարման հանգամանքները նկարագրված են Հուլիանոսի մոտ:

Սինգարայի հիշյալ ճակատամարտի նկարագրությունից հետո մեր ներբողերգուն պատմում է այն մասին, թե ինչպես Կոստանդիոսը «ելնելով բոլորի դեմ՝ ետ մղեց թե՛ բռնակալների ամբոխին, թե՛ բարբարոսների ուժերը. ձմեռն արդեն վերջանալու վրա էր, մոտավորապես վեց տարի անց այն ճակատամարտից, որի մասին խոսք եղավ վերը, երբ լուրստացվեց, որ Գալատիան (այսինքն՝ Գալլիան) միացել է ինքնակոչին, ապստամբել քո եղբոր դեմ և սպանել նրան»՝

*«ἦν μὲν γὰρ ὁ χειμὼν ἐπ' ἐξόδοις ἤδη ἔκτον που μάλιστα μετὰ τὸν πόλεμον ἔτος οὐ μικρῷ πρόσθεν ἐμνήσθην, ἧκε δὲ ἀγγέλων τις, ὡς Γαλατία μὲν συναφεστῶσα τῷ τυράννῳ ἀδελφῷ ἐβούλευσέ τε καὶ ἐπετέλεσε τὸν φόνον»*[1].

Նույն բանն էր կատարվում նաև Իլլիրիայում՝ մյուս բռնապետի կողմից:

«Իսկ պարսիկները,- շարունակում է Հուլիանոսը,- այն ժամանակից սպասելով բարենպաստ պահի, որպեսզի առաջին իսկ հարձակումով գրավեն Ասորիքը, մեր դեմ էին հանել տարբեր տարիքի, սեռի ու վիճակի մարդկանց: Շարժվեցին մեր դեմ տղամարդիկ ու երեխաներ, ծերունիներ, բազմաթիվ կանայք ու ստրուկներ՝ և ոչ միայն բանակին ծառայություններ մատուցողները, այլ մեծ մասամբ ավելորդ [մարդիկ]. պարսիկները մտածում էին այն մասին, թե ինչպես, գրավելով մեր քաղաքներն ու տիրելով մեր երկրին, մեզ մոտ գաղութներ կհաստատեն».

*Πέρσαι δὲ ἐξ ἐκείνου τὸν καιρὸν τοῦτον παραφυλάξαντες, ὡς ἐξ ἐφόδου τὴν Συρίαν ληψόμενοι πᾶσαν ἐξαναστήσαντες ἡλικίαν καὶ φύσιν καὶ τύχην ἐφ' ἡμᾶς ὥρμηντο, ἄνδρες, μειράκια, πρεσβῦ ται καὶ γυναικῶν πλῆθος καὶ θεραπόντων, οὐ μόνον τῶν πρὸς τὸν πόλεμον ὑπουργιων χάριν, ἐκ περιουσίας δὲ πλεῖ στον ἑπόμενον, διενοοῦντο γὰρ ὡς καὶ τὰς πόλεις καθέξοντες καὶ τῆς χώρας ἤδη κρατήσαντες κληρούχους ἡμῖ ν ἐπάξουσι*[2].

[1] Cod. Just., X. IX, p. 32.

[2] Նույն, էջ 33:

Պարսիկներին չհաջողվեց գրավել քաղաքը: Քաղաքի պաշարմանը Հուլիանոսը անդրադառնում է երկրորդ ճառում ևս, բայց ոչինչ նոր բան չի հաղորդում, բացի պաշարման զուտ տեխնիկական մասի վերաբերյալ աննշան մանրուքներից:

Հետաքրքրական են նրա եզրափակիչ խոսքերն այն մասին, որ այն ժամանակից սկսած Շապուհը «պահպանում է խաղաղություն և կարիք չի զգում ո՛չ երդումների, ո՛չ պայմանագրերի, այլ գերադասում է մնալ տանը, եթե հանկարծ կայսրը չցանկանա գնալ նրա վրա և վրեժխնդիր լինել հանդգնության ու անմտության համար»՝ *καὶ ἄγει πρὸς ἡμᾶς εἰρήνην ἐκ τούτου, καὶ οὔτε ὅρκων οὔτε συνθηκῶν ἐδέησεν, ἀγαπᾷ δὲ οἴκοι μένων, εἰ μὴ στρατεύοιτο βασιλεὺς ἐπ᾽ αὐτὸν καὶ δίκην ἀπαιτοίη τοῦ θράσους καὶ τῆς ἀπονοίας*[1].

350 թ. Մծբինի պաշարման մասին հայկական ավանդությունը պահպանել է հիշողություն և նրա մասնակից է դուրս բերել Արշակ թագավորին որպես Շապուհի դաշնակից: Փավստոսի ասելով, Արշակը գահ բարձրանալով, կայսեր մոտ ուղարկեց պատվավոր դեսպանություն, «որպեսզի նորոգի հաշտության ու խաղաղության պայմանագիրը»[2]:

Արշակը հոր՝ Տիրանի հետ գտնվում էր պարսիկների գերության մեջ և հաշտությունից հետո, ինչպես կարծում է Փավստոսը, իսկ մեր կարծիքով Սինգարայի անհաջողությունից հետո, Շապուհը հավանաբար կայսեր պնդմամբ համաձայնեց Հայաստանում վերականգնել կարգ ու կանոն և Տիրանի փոխարեն գահի վրա նստեցրեց նրա Արշակ որդուն[3]: Արշակի դեսպանությունը, ըստ երևույթին, առաքելություն ուներ կայսերական իշխանությանը հավաստել, որ թեև հայոց թագավորը հանդիսանում է Շապուհի դրածոն, բայց նա կցանկանար համաձայն 298 թ. պայմանագրի՝ երկու տերությունների հետ էլ խաղաղ ապրել:

Ցավոք, Փավստոսի մոտ Արշակի պատմությունը հյուսված է Ներսես Մեծ կաթողիկոսի առասպելական բնույթի վարքին: Այժմ մեր խնդիրը չէ Ներսեսի վարքի քննությունը, նկատենք միայն, որ այն զրկված չէ գրավոր աղբյուրների հիմքերից. հավանաբար այն գոյություն է ունեցել որպես առանձին պատմություն, բայց հետո մտցվել է Արշակի պատմության մեջ: Դրանով են բացատրվում պատմական իրադրությունն աղավաղող ժամանակավրեպ մի քանի տվյալներ: Ըստ Փավստոսի, Արշակի դեսպանության կազմի մեջ էր մտնում նաև Ներսեսը, նա մայրաքաղաքում ելույթ ունեցավ արիոսականության և արիոսամետ Վաղես կայսեր դեմ, որի համար էլ իր վրա բևեռեց նրա զայրույթը՝ բանտարկվեց և հետո աքսորվեց: Փավստոսը հավատացնում է, որ Ներսեսի բանտարկությունը պատճառ դարձավ բարեկամական հարաբերությունների խզման: Եվ Արշակը, կայսեր վարմունքից դժգոհ, արշավանքներ կազմակերպեց կայսրության սահմաններում և վեց տարի շարունակ ամայացնում էր Գամիրքի երկրից (Կապպադովկիա) մինչև Անկյուրիա քաղաքը[1]:

Ներսեսի մասնակցությունը արիոսական վիճաբանություններին և նրա աքսորը, Հայ եկեղեցու առաջնորդին ուղղափառության ջատագով ներկայացնելու միտում ունեցող առասպել է: Ներսեսի արկածները չէին կարող տեղի ունենալ Վաղեսի օրոք, որովհետև այն ժամանակ հայերը նրա դաշնակիցներն էին և կռվում էին պարսիկների դեմ: Այդ առասպելը, եթե միայն այն պատմական ինչ-որ հիմք ուներ, հյուսվել է հավանաբար 346 թ. Սարդիկայի վեհաժողովում արիոսական հարցի շուրջը ծագած վեճերի ժամանակ, երբ արիոսական բարձրաստիճան հոգևորականներից մի քանիսն աքսորվել էին Հայաստան:

Ինչպես էլ որ վերաբերելու լինենք Փավստոսի պատմածին, անտարակույս ճիշտ է, որ Արշակին չհաջողվեց չեզոքություն պահպանել և նա գեթ ժամանակավորապես հակվեց դեպի Շապուհը: Փավստոսի խոսքերի իմաստով Արշակը իր քաղաքականության մեջ տատանվում էր և չէր կարողանում դիրքորոշվել այս կամ այն կողմը: Շահագրգռված տերությունների հորդորող ջանքերը կարող էին նրան թեքել համապատասխան կողմ: Նա սպասում էր, որ նման քայլ կատարվեր կայսեր կողմից, և Մծբինը պարսիկների կողմից պաշարվելուց առաջ Արշակը սպասում էր, թե «նրանցից որը իրեն օգնության կկանչի, - ասում է Փավստոսը: - Ինքը՝ Արշակը, հակված էր դեպի հունական կայսրը և հաճույքով նրան օգնության կգնար, բայց հույները նրան չխնդրեցին և ուշադրության ու պատիվների չարժանացրին»:

Բոլորովին հակառակ էր գործում Շապուհը. նույն պատմիչի հավաստումներով, նա Արշակի մոտ ուղարկեց մարդկանց և ամեն կերպ համոզեց մասնակցելու հույների դեմ արշավանքին: Այն ժամանակ Արշակը զորք հավաքեց և Աղձնիքի վրայով ներխուժեց Արվաստան՝ Միջագետքի հյուսիսը, ճամբար դրեց Մծբինի առջև: Փավստոսի չափազանցված պատկերացմամբ հայերը չէին ցանկացել սպասել մինչև պարսկական ուժերի գալը: Նրանք միայնակ կռվի բռնվեցին և հաղթանակ տարան:

[1] **Julianus**, Orat., II, p. 85.

[2] **Փավստոս Բուզանդ**, Դ, 5:

[3] Անդ, Դ, 1:

[1] **Փավստոս Բուզանդ**, Դ, 11:

Այդպիսի սխրանքի համար որպես երախտագիտություն պարսից Շապուհ թագավորը Արշակին հրավիրեց իր մոտ մայրաքաղաք և նրա հետ դաշինք կնքեց «անխախտ բարեկամություն հավիտյանս հավիտենից»: Նա իր դստերն առաջարկեց Արշակին կնության և նրան նվիրեց մի մեծ գավառ այնպիսի վայրում, որպեսզի Արշակը Հայաստանից Տիզբոն գնալու ժամանակ ճանապարհին ամբողջ ժամանակ գտնվեր սեփական երկրում[1]:

Փավստոսի պատմության մեջ քաքնված է պատմական ճշմարտության որոշ բաժին: Ամմիանոսի մոտ կան, ինչպես կտեսնենք ստորև, Փավստոսի խոսքերը հաստատող տվյալներ: Ամմիանոսը վկայում է, որ Շապուհն ամեն միջոցներով աշխատում էր ձեռք բերել Արշակի բարեկամությունը՝ դիմելով մե՛րթ խարդավանքի ու խաբեության, մե՛րթ էլ խոստումների: Մծբինի ճակատամարտը, որում մասնակցում էր Արշակը, պետք է հասկանալ Մծբինի 350 թ. պաշարումը: Հնարավոր է, որ Շապուհի խոստումները վերաբերում են այն տարածքային զիջումներին, որոնց մասին խոսում է Փավստոսը հեքիաթի եղանակով:

Մի ուրիշ տեղ մեր պատմիչն ավելի որոշակի է մատնանշում Շապուհի խոստացած տարածքը: Խոսքը Ատրպատականի[2] մասին է, որը 298 թ. պայմանագրով պատկանում էր հայոց թագավորին, բայց հետագայում, պատերազմի վերսկսման ժամանակից, այսինքն՝ 337 թ., ըստ երևույթին, պարսիկները ետ էին խլել: Այսպես թե այնպես, Շապուհին հաջողվեց Արշակին հեռացնել կայսեր ազդեցությունից:

Արշակի դաշինքը Շապուհի հետ երկար չշարունակվեց: Նրանց միջև եղած կապերի խզման մասին խոսում է Փավստոսը, ըստ որում գժտության պատճառը, սովորության համաձայն, որոնում է շահագրգիռ հայ ավատատերերի բանսարկությունների ու մրցակցության մեջ:

Բայց Արշակի քաղաքականության մեջ շրջադարձային կետ ծառայեց հավանաբար հատուկ առաքելությամբ քվեստոր Տավրոսի Հայաստան ժամանելը: Ամմիանոսը հաղորդում է, որ Կոստանդիոսի 17-րդ և Գալլոս կեսարի 4-րդ տարում, այսինքն՝ 354 թ. քվեստոր Տավրոսը ուղարկվեց Հայաստան՝ eoque tempore Taurus questor ad Armeniam missus[3]: Ցավոք պատմագիրը քվեստորի գալու նպատակը լռության է մատնում, բայց հետագա իրադարձություններից դժվար չէ գուշակել, որ այն կայանում էր Հայաստանի և կայսրության միջև բարեկամական հարաբերությունները վերականգնելու մեջ: Բանն այն է, որ 350 թ. Մծբինի անհաջող պաշարումից

[1] **Փավստոս Բուզանդ**, Դ, 20:

[2] Անդ, Դ, 16:

[3] **Ammian. Marc.**, XVI, 11.



հետո էլ պատերազմը չդադարեց: Հանգամանքները դասավորվեցին այնպես, որ երկու կողմերին էլ ձեռնտու էր ժամանակավորապես զենքը ցած դնել: Կոստանդիոսին շեղել էր 353 թ. զոհված Մագնենտիոսի ապստամբությունը և ալեմանների դեմ պատերազմը, իսկ Շապուհն իր ուժերը փոխադրեց արևելք՝ կռվելու կայսրության ծայրամասում ռազմատենչ ժողովուրդների դեմ, որոնք մերթ թշնամանում էին պարսիկներին, մերթ դաշնակցելով նրանց հետ՝ հարձակվում էին հռոմեացիների վրա[1]:

Շուտով նորից սկսվեց պարսիկների թշնամական հարձակումը Միջագետքի վրա: Պարսից առաջնորդ Նահոդարը սպառնալից դիրք գրավեց և հարմար պահի էր սպասում, որպեսզի հարվածի առավել խոցելի վայրը՝ Եդեսիայի ուղղությամբ[2]: Ուշադրության է արժանի այն հանգամանքը, որ, խոսելով ասպատակությունների և այդ նույն պարսկական առաջնորդների 355 թ. ավերածությունների մասին, Ամմիանոսը ավելացնում է. «nunc et Armeniam», այսինքն՝ սկզբում 353 թ. նրանք ավերել էին Միջագետքը (incursare Mesopotamiam), իսկ 355 թ. իրենց արշավանքներն ուղղեցին նաև դեպի Հայաստան՝

Persici duces vicini fluminibus, rege in ultimis terrarum suarum terminis occupato, per praedatorios globos nostra vexabant, nunc Armeniam, aliquotiens Mesopotamiam confidentius incursantes[3].

«Գետափի երկայնքով կանգնած պարսկական առաջնորդները առանձին ջոկատներով անհանգստացնում էին մեզ այն ժամանակ, երբ իրենց թագավորը պատերազմով էր զբաղված սեփական երկրի ծայրամասերում, իսկ այժմ նրանք հանդգնում են ասպատակել Հայաստանը, մի քանի անգամ նաև Միջագետքը»: Ակնհայտ է, որ կարճ ժամանակահատվածում տեղի են ունեցել այնպիսի իրադարձություններ, որոնք ստիպել են պարսիկներին Հայաստանն էլ ներքաշել պատերազմական գործողությունների ասպարեզ: Գաղտնիքը գտնվում է Արշակի՝ Շապուհի դաշինքից հեռանալու մեջ, որը պետք է համարել քվեստոր Տավրոսի դիվանագիտական հաջողության արդյունքը:

Փավստոսի մոտ պահպանվել է երկու տարբերակ, որոնք անսպասելիորեն հաստատում են ժամանակագրության վերաբերյալ մեր եզրակացություն-

[1] **Ammian. Marc.**, XVI, 3.

[2] Nohodares quidam nomine e numero optimatum incursare Mesopotamiam quotiens copia dederit ordinatus, ibid, XIV, 3.

[3] **Ammian. Marc.**, XV, 13.

ները: Նրա խոսքերով Արշակի և Շապուհի միջև հարաբերությունները խզվելուց անցել էին ութ խաղաղ տարիներ[1], որովհետև պարսից թագավորը զբաղված էր կայսեր դեմ պատերազմով և չէր անհանգստացնում Արշակին, բայց հենց որ կայսեր դեմ պատերազմը դադարեց, թշնամությունը վերսկսվեց: Ինչպես հայտնի է, երկու կռվող տերությունների միջև խաղաղություն կնքվեց 363 թ. ամռանը: Եթե Արշակի վեճը Շապուհի հետ տեղի է ունեցել խաղաղությունից 8 տարի առաջ, ապա նշանակում է, որ այն համընկնում է 354 թ., տարեթիվ, որ մենք արտածում ենք՝ ելնելով վերը շարադրված դատողություններից:

Այնուհետև ինքը՝ Փավստոսը հաղորդում է, որ Արշակի թշնամությունը կայսեր հետ շարունակվեց 6 տարի, որի ընթացքում նա ամայացնում էր կայսերական հողերը մինչև Անկյուրա[2]:

Եթե կայսեր հետ հաշտությունը տեղի ունեցավ 354 թ., ապա այդ հաշվով խզումը ընկնում է 348 թ.: Ինչպես մենք տեսանք, Արշակը գահ բարձրացավ 346 թ.: Նույն Փավստոսի ասելով, Արշակի առաջին տարիները նվիրված էին երկիրը կարգի բերելուն, իսկ հետո արդեն դեսպանություն ուղարկվեց կայսեր մոտ, որն էլ հանգեցրեց հարաբերությունների ցավալի խզմանը: Հետաքրքրական է, որ մեզ արդեն հայտնի Մծբինի պաշարումից բացի, Հերոնիմոսը հիշատակում է պարսիկների դեմ 348 թ. կայսերական զորքերի ևս մի ճակատամարտ: Ճակատամարտը տեղի է ունեցել Սինգարայի մոտ, բայց դա այն ճակատամարտը չէ, որը Հուլիանոսի խոսքերի հիման վրա մենք վերագրում ենք 345 թ.: Ռուփոս Փեստոսը նույնպես վկայում է, որ Սինգարայի մոտ տեղի ունեցավ երկու ճակատամարտ, նրա հաշիվներով Կոստանդիոսի օրոք կայսերական զորքերը դիմագրավեցին պարսիկների 9 ճակատամարտի, բացի աննշան սահմանային ընդհարումներից, որոնցից 7-ը վարում էին նրա զորավարները, իսկ երկուսը տեղի ունեցան Սինգարայի մոտ նրա անձնական հրամանատարությամբ՝

«novies decertatum est; per duces suos septies, ipse praesens bis adfuit veris et gravibus pugnis. Nimirum Singarenae praesente Constantio et iterum Singarenae Constantiensi quoque»[1].

Շատ հավանական է, որ Շապուհի դաշնակցությամբ կայսեր դեմ Արշակն առաջին անգամ դուրս է եկել 348 թ.: Այդպիսով, Փավստոսի ցուցումը հաստատում է մեր եզրակացությունները, որոնց մենք հանգել ենք այլ ճանապարհներով:

---

[1] **Փավստոս Բուզանդ**, Դ, 21:

[2] Անդ, Դ, 11:

[3] **Rufi Fest.**, XXVII.



Փավստոսին լավ հայտնի է երկու պետությունների միջև 363 թ. կնքված հաշտության պայմանագիրը: Նա մանրամասն պատմում է դրան հաջորդած Արշակի թշնամության և պարսից թագավորի դեմ պատերազմների մասին, բայց ոչինչ չգիտե խաղաղությանը նախորդած իրադարձությունների մասին, չնայած այն բանին, որ դրանց որպես կայսեր դաշնակից գործարար մասնակցություն է ունեցել Արշակը: Հայ պատմիչը հավաստիացնում է, որ խաղաղության դաշինք կնքելուց 8 տարի առաջ Շապուհը թաքցնում էր իր թշնամանքը Արշակի նկատմամբ և նկատի ունենալով կայսեր հետ պատերազմը՝ աշխատում էր սիրալիր վերաբերմունքով Արշակին պահել իր կողմը: Իրականում Արշակն այդ տարիներին գտնվում էր Շապուհի դեմ գործող ճամբարում: Այդ ժամանակների իրադարձությունները նկարագրված են դեպքերի ժամանակակից և նույնիսկ պատերազմական գործողություններին մասնակցած Ամմիանոսի կողմից:

Չնայած այն բանին, որ Շապուհն ինքը զբաղված էր իր կայսրության առանձին ծայրամասերում ապստամբությունները ճնշելով, նրա զորաջոկատները չէին դադարում անհանգստացնել թշնամուն Միջագետքում[1]: Պրետորիաների պրեֆեկտ Մուսոնիանոսը, իմանալով այն մասին, որ պարսից թագավորը պատերազմ է մղում անհնազանդ ցեղերի դեմ և մեծ կորուստներ է կրում, ցանկացավ օգտագործել պահը պարսիկների հետ խաղաղություն կնքելու համար: Այդ նպատակով նա գաղտնի բանակցությունների մեջ մտավ պարսից բանակի հրամանատար Դենշապուհի հետ: Դենշապուհը բարեհաճությամբ վերաբերվեց Մուսոնիանոսի քայլին և այդ բոլորի մասին զեկուցեց այն ժամանակ Խիոնիտների երկրում գտնվող Շապուհին, որը կռվում էր այդ երկրի ցեղերի դեմ: Նամակը Շապուհին է հասել ուշ՝ 358 թ. (Դակիանոսի և Ցերեալիոսի հյուպատոսության շրջանում)[2]: Նա արդեն վերջացրել էր պատերազմական գործողությունները և հաշտություն կնքելով՝ ուզում էր տուն վերադառնալ, երբ ստացավ Դենշապուհի նամակը: Շապուհը խաղաղությանը դեմ չէր, բայց ենթադրելով, որ հակառակորդի գործերն թերևս լավ չեն, եթե այն խաղաղության է ձգտում՝ Շապուհը ցանկանում էր օգտագործել հռոմեացիների առաջարկը և դադարեցնել պատերազմն ամենաձեռնտու պայմաններով:

Նա ոմն Նարսեհին ուղարկեց Կոստանդիոսի մոտ նվերներով և չափազանց ամբարտավան եղանակով գրված նամակով հանդերձ.

«Ես, արքայից արքա Շապուհս՝ աստղերին հաղորդակից, արևի ու

---

[1] **Ammian. Marc.**, XVI, 9.

[2] Անդ, XVII, 5, 7:

լուսնի եղբայր, Կոստանդիոս Օգոստոսին հղում եմ ջերմ ողջույն: Ես ուրախ եմ և ինձ հաճելի է տեսնել, որ դու վերջապես ցանկալի ուղի մտար և ենթարկվեցիր արդարության մաքուր ձայնին իր իսկ կյանքից սովորելով, թե երբեմն ինչպիսի դժբախտություններ է ծնում համառ կիրքը ուրիշի սեփականության նկատմամբ: Եվ ահա, քանի որ արդարության խոսքը պետք է լինի անբռնազբոսիկ և ազատ, իսկ բարձր դիրք ունեցող մարդկանց վայել է ասել այն, ինչ նրանք զգում են, ապա իմ առաջարկությունը ես ձևակերպում եմ համառոտ խոսքերով, հիշեցնելով, որ այն բոլորը, ինչ ես պատրաստվում եմ շարադրել, հաճախ շարադրվել է իմ կողմից: Որ մինչև Ստրիմոն գետը և մակեդոնական սահմաններին տիրել են իմ նախնիները, այդ մասին վկայում են նաև ձեր հուշարձանները: Հենց այդ էլ պետք է ես պահանջեմ, ես,- թող դա մեծամտություն չթվա, ինչ որ ես ասում եմ,- մեր նախնի թագավորներին մի շարք նշանակալից քաջագործություններով և շքեղությամբ գերազանցողս: Բայց ինձ համար թանկ է ամենուրեք ուղղամտությունը, որին սովոր եմ փոքր հասակից, ես այնպիսի բան չեմ արել, որի համար պետք լիներ երբևէ զղջալ: Այդ պատճառով ես պետք է **ետ տանեմ իմ պապի օրոք խաբեությամբ խլված Հայաստանը Միջագետքի հետ միասին**: Մեզ մոտ երբեք ընդունված չի եղել այն, ինչ դուք պնդում եք հրճվելով, թե պետք է հավանության արժանանա պատերազմական յուրաքանչյուր ելք՝ անկախ այն բանից, թե փառքո՞վ է ձեռք բերվել, թե՞ խարդախություններով: Վերջապես եթե ցանկանաս իմ խորհրդով ճիշտ վարվել, գցիր մշտապես դժբախտություն ու արյունահեղություն բերող աննշան մասը, որպեսզի անվարան ձեռք բերես մյուս մասը, դատիր խելամտորեն. չէ՞ որ հմուտ բժիշկներն էլ երբեմն կտրում են ու այրում, կամ վիրահատում են մարմնի մասերը: Այդ նույնն էլ անում են նաև գազանները, որոնք, հենց որ նկատում են, թե հատկապես ինչի համար են իրենց որսում, հոժարակամ այն թողնում են, որպեսզի հնարավորություն ունենան հետագայում անվտանգության մեջ ապրել: Եվ այն էլ, իհարկե, ես հաստատում եմ, որ եթե իմ դեսպանությունը վերադառնա ձեռնունայն, ապա ձմեռային հանգստի վերջում ամենայն ուժերով զինված և որքան հնարավոր է շտապ հարձակման կանցնեմ՝ բարեհաջող ելքի հույսը դնելով իմ ճակատագրի և առաջադրված պայմանների արդարության վրա»[1]:

[1] Ամմիանոսից կատարված մեր հատվածական թարգմանությունները արվել են դեռևս 1901-1902 թվականներին, որից հետո լույս տեսավ պրոֆ. Կուլակովսկու ամբողջական հիանալի թարգմանությունը, ըստ որի էլ ես ուղղել եմ իմ թարգմանությունը՝ հոդվածի տպագրության ընթացքում (3):



«Rex regum Sapor, particeps siderum, frater Solis et Lunae, Constantio Caesari fratri meo salutem plurimam dico. Gaudeo tandemque mihi placet ad optimam viam te revertisse et incorruptum aequitatis agnovisse suffragium rebus ipsis expertum, pertinax alieni cupiditas quas aliquotiens ediderit strages. Quia igitur veritatis oratio soluta esse debet et libera et celsiores fortunas idem loqui decet atque sentire propositum meum in pauca conferam, reminiscens haec quae dicturus sum me saepius replicasse. Ad usque Strymona flumen et Macedonicos fines tenuisse maiores meos, antiquitates quoque vestrae testantur: haec me convenit flagitare - ne sit adrogans, quod affirmo - splendore virtutumque insignium serie vetustis regibus antistantem. Sed ubique mihi cordi est recta ratio, cui coalitus ad adulescentia prima nihil umquam paenitendum admisi. Ideoque Armeniam recuperare cum Mesopotamia debeo, avo meo composita fraude praereptam. Illud apud nos numquam in acceptum feretur, quod adseritis vos exultantes nullo discrimine virtutis ac doli prosperos omnes laudari bellorum eventus. Postremo si morem gerere suadenti volueris recte, contemne partem exiguam semper luctificam et cruentam, ut cetera regas securus, prudenter reputans medelarum quoque artifices urere non numquam et secare et partes corporum amputare, ut reliquis uti liceat integris; hocque bestias factitare: quae cum arvertant cur maximo opere capiantur, illud propria sponte amittunt ut vivere deinde possint inpavidae. Id sane pronuntio quod, si haec mea legatio redierit inrita, post tempus hiemalis quietis exemptum, viribus totis accinctus, fortuna condicionumque aequitate spem successus secundi fundante venire, quoad ratio siverit, festinabo».

Շապուհի նամակին Կոստանդիոս կայսրը պատասխանեց հետևյալ տողերով. «Ցամաքում և ծովում հաղթանակած Կոստանդիոսը, հավիտյանս Օգոստոս, հղում եմ իմ թագավոր եղբայր Շապուհին ջերմ ողջույն: Եթե ցանկանում ես, որպես նախկին բարեկամ, ես շնորհավորում եմ քեզ քո բարեկեցության համար, բայց քո մշտապես համառորեն ու առատորեն հորդացող ագահությունը ես խստորեն դատապարտում եմ: Դու պահանջում ես Միջագետքը որպես քո սեփականություն, և բացի այդ նաև Հայաստանը, և խորհուրդ ես տալիս առողջ մարմնից պոկել մի քանի մասեր, որպեսզի նրա առողջությունը հետագայում ավելի ամրապնդվի. այդ բոլորը պետք է ավելի շուտ մերժել, քան ինչ-որ համաձայնությամբ խրախուսել: Դե ուրեմն լսիր, հետին մտքերով չքողված, այլ պարզ ու դատարկ խոսքերով չվախեցնող ճշմարտությունը: Պրետորիաների իմ պրեֆեկտը, կարծելով, թե սկսում է ընդհանուրի օգտին տանող գործ, առանց իմ գիտության և ինչ-որ անկարևոր մարդկանց միջոցով խաղաղության վերաբերյալ բանակցել է քո զորավարի հետ: Մենք չենք մերժում և չենք վանում

խաղաղությունը, միայն թե այն կնքվի արդարաբար ու պատվավոր և չխլվի մեր պատվից և մեծությունից: Այն ժամանակ, երբ իմ քաջագործությունների [համբավի համար] բացվել են ականջները, որոնք մեր նկատմամբ նախանձից շատ անգամ փակ են եղել, երբ ինքնակոչների ոչնչացումով՝ ամբողջ հռոմեական աշխարհը ենթարկվում է մեզ, անհեթեթություն է և միաժամանակ անվայել զիջել այն, ինչը մենք երկար, դեռևս արևելյան կիրճերի մեջ փակված պահպանել ենք անձեռնմխելիությամբ: Դե վերջ տվեք խնդրում եմ նաև սպառնալիքներին, որ սովորության համաձայն թափվում են մեր վրա, որովհետև չի կարելի կասկածել, որ ոչ թե վախից, այլ համեստությունից ելնելով՝ մենք երբեմն ավելի շատ ընդունել ենք պատերազմի հրավերը, քան մենք ենք այն սկսել: Իսկ երբ որ մեզ մարտահրավեր են նետում, ապա մենք պաշտպանում ենք մեր ունեցվածքը ամեն ինչին պատրաստ ամուր ոգով՝ փորձով ու սովորույթներով համոզված լինելով, որ ճակատամարտերում հազվադեպ հռոմեական գործին հաջողություն չլինի, իսկ պատերազմի հետևանքները երբեք նրանց համար վնասով չեն ավարտվել»[1]:

«Victor terra marique Constantius semper Augustus fratri meo Sapori regi salutem plurimam dico:

Sospitati quidem tuae gratulor ut futurus, si velis, amicus, cupiditatem vero semper indeflexam fusius que vagantem vehementer insimulo. Mesopotamiam poscis ut tuam perindeque Armeniam et suades integro corpori adimeri membra quaedam, ut salus ejus deinceps locetur in solido, quod infringendum est potius quam ulla consensione firmandum. accipe igitur veritatem non obtectam praestigiis sed perspicuam nullisque minis inanibus perterrendam. Praefectus praetorio meus opinatus adgredi negotium publicae utilitati conducens eum duce tuo per quosdam ignobiles, me inconsulto, sermones conseruit super pace. Non refutamus hanc nec repellimus: adsit modo cum decore et honestate nihil pudori nostro praereptura vel majestati. Est enim absonum et insipiens cum gestarum rerum ordine placatae sint aurae invidiae, quae nobis multipliciter inluserunt, cum deletis tyrannis totus orbis Romanus nobis obtemperat, ea prodere, quae contrusi in orientales angustias diu servavimus inbibita. Cessent autem quaeso formidines quae nobis intentantur ex more, cum ambigi nequeat non merita nos sed modestia pugnas interdum excepisse potius quam intulisse et nostra, quotiens lacessimur, fortissimo benevolentiae spiritu defensare, id experiendo legendoque scientes in proeliis quibusdam raro rem titubasse Romanam, in summa vero bellorum numquam ad deteriora prolapsam».

[1] Ammian. Marc., XVII, 5, 7.



Իր պատասխան նամակը, Շապուհին ընծայված նվերներով հանդերձ, Կոստանդիոսն ուղարկեց հատուկ դեսպանության միջոցով, որը կազմված էր կոմիտ Պրոսպերիուսից, տրիբուն և նոտար Սպեկտատոսից, համոզող խոսքի վարպետ փիլիսոփա Եվստաթիոսից: Դեսպանությունը հրահանգ է ստացել բոլոր միջոցները գործադրելով, ուշացնել Շապուհի արշավանքը, որպեսզի այդ ժամանակամիջոցում կարողանան ամրացնել հյուսիսային սահմանները:

Դեսպանները ներկայացան Շապուհին Տիզբոնում. մատուցեցին նվերներ և «խնդրեցին խաղաղություն՝ գոյություն ունեցող իրավիճակը անփոփոխ պահպանելու պայմանով: Հիշելով կայսեր հանձնարարականը՝ դեսպանները բնավ չհրաժարվեցին ո՛չ հռոմեական շահերից, ո՛չ էլ արժանապատվությունից և հաստատ մնացին իրենց տեսակետին, թե խաղաղության պայմանագիրը պետք է կնքվի այնպես, որ ոչ մի ձևով չքարծրացվի Հայաստանի ու Միջագետքի դրության փոփոխության հարցը: Այնտեղ երկար սպասելով, երբ նրանք վերջապես հասկացան, որ ինքնասածի թագավորը համառում է [ցանկանալով] ընդունել խաղաղությունը ոչ այլ կերպ, քան այդ երկրների նկատմամբ իր իշխանությունը հաստատելով, ետ վերադարձան՝ չկատարելով իրենց տրված հանձնարարությունը»՝ poscebantque rebus integris pacem et mandatorum memores nusquam ab utilitate Romanae rei maiestateque discedebant, amicitiae foedus sub hac lege firmari debere adseverantes, ne super turbando Armeniae vel Mesopotamiae statu quidquam noveretur. Diu igitur ibi morati, cum obstinatissimum regem, nisi harum regionum dominio sibi adiucato, obdurescentem ad suscipiendam cernerent pacem, negotio redierunt infecto[1].

Դրանից հետո մի անգամ էլ Կոստանդիոսը փորձեց այլ դեսպանների միջոցով պարսիկների հետ խաղաղություն հաստատել, բայց դարձյալ անհաջող: Շապուհը չէր ուզում հռոմեական իշխանության հետ հաշտվել Հայաստանի ու Միջագետքի տարածքում և վճռեց տիրանալ նրանց բացարձակ զենքի ուժով: «Համակված զերմարդկային կրքով՝ ընդարձակել իր թագավորությունը, - ասում է պատմագիրը, - նա սկսեց զենք կոել, զորք ու պարեն հավաքել. նա աղերսանքով դիմեց ստորգետնյա ոգիներին, հարցմունք արեց բոլոր մոգերին ապագայի վերաբերյալ», որպեսզի գարնան սկզբից թշնամական գործողություններ սկսի: «Consilia tartareis manibus miscens et praestigiatores omnes consulens de futuris»[2]:

Հպանցիկ նկատենք, որ այս խոսքերը ըստ ամենայնի հաստատում են Փավստոսի՝ Շապուհին տված նկարագիրը:

[1] Ammian. Marc., XVII, 14.

[2] Անդ, XVIII, 4, 1.

Շապուհի ռազմատենչ բանակման զորավիգ էր ոմն Անտոնինոս՝ հարուստ վաճառական, որ նախկինում պաշտոնավարել էր Միջագետքի դուքսի գրասենյակի հաշվապահական բաժնում և մի քանի մարդկանց մեղքով պարտքերի տակ ընկնելով՝ ստիպված փախել էր պարսիկների մոտ՝ հնարավորություն չունենալով հաշիվները փակել գանձարանի հետ, ուր հանձնված էր նրա պարտամուրհակները: Նա մանրամասն տեղեկություններ հավաքեց հռոմեացիների ռազմական ուժերի և պարենի պաշարների մասին և այդ բոլորը հայտնեց պարսից հրամանատար Դենշապուհին, որպեսզի դրանով վրեժխնդիր լինի իր հայրենակիցներից իրեն անտեղի հասցրած վիրավորանքի համար: Անտոնինոսը իր ընտանիքով անցավ Պարսկաստան, ներկայացավ թագավորին նրա ձմեռային նստավայրում: Շապուհը նրան ընդունեց շատ սիրալիր և արժանացրեց պատվավոր խույրի, հանգամանք, որը նրան իրավունք էր տալիս մասնակցելու խորհրդակցություններին ու արտահայտելու իր կարծիքը»՝ et apicis nobilitatis auctoritateque honore participantur mensae regales et meritorum apud Persas ad suadendum ferendasque sententias in contionibus ora panduntur[1].

Քինախնդիր Անտոնինոսն ամեն կերպ գրգռում էր Շապուհին իր հայրենիքի դեմ: Լինելով կրթված և տիրապետելով պերճախոսությանը՝ նա կարողանում էր խոսել և տպավորություն գործել: Թագավորական սեղանի շուրջը, «որտեղ նրանց մոտ, ինչպես հին հույների մոտ, քննարկվում էին ռազմական և այլ կարևոր հարցեր», թշնամու կողմն անցած դասալիքը մշտապես զգոն դրդում էր թագավորին զենք վերցնել՝ վստահ լինելով իր ճակատագրի վրա, իսկ ինքն իր կողմից խոստանում էր ամեն ինչում զորավիգ լինել՝ inter epulas sobrius perfuga, ubi de apparatu bellorum et seriis rebus apud eos Graecorum more veterum consultatur[2].

Կայսրությունը պատրաստ չէր պատերազմի. նրա դրությունը այնքան էլ լավ չէր հատկապես Արևելքում: Երկրամասի կառավարիչ, պրայտորիայի պրեֆեկտ Մուսոնիանոսը աչքի էր ընկնում իր անհոգությամբ և ծախու մարդու համբավ էր վայելում: 359 թ. պատերազմի նախօրեին նրան փոխարինեց Հերմոգենեսը: Ծնունդով պոնտացի՝ նա գիտեր Արևելքը, բայց զուրկ էր զինվորական ընդունակություններից: Տվյալ պահի համար ամենահարմար մարդը Ուրզիցինոսն էր, բայց նրան էլ հետապնդում էին պալատական բանսարկությունները: 354 թ. նա Մծբինի հեծելազորի պետն էր, հաջորդ տարին նրան փոխադրեցին Գալլիա, որտեղ նա հաջողությամբ

[1] Ammian. Marc., XVIII, 5, 6.

[2] Անդ, 5, 8:



հաշվեհարդար տեսավ ինքնակոչ Սիլվանոսի հետ: 357 թ. հեծելազորի պետի պաշտոնով մեր պատմագիր Ամմիանոսի ուղեկցությամբ նա նորից եկավ Արևելք: Ուրզիցինոսի դեմ հատկապես բանսարկություններ էր անում թագավորական սենեկապետ՝ praepositus cubiculi-ն՝ Եվսեբիոսը: Օգտվելով կայսեր բարեհաճությունից՝ նա հասավ այն բանին, որ Ուրզիցինոսին Արևելքից հեռացրին Իտալիա և նրա տեղը նշանակեցին իր սիրելի Սաբինիանոսին: Ուրզիցինոսի պաշտոնազրկումը Ամմիանոսը համարում է խոշոր սխալ. նրա կարծիքով այդ օրհասական պահին այդպիսի մարտական հրամանատարի անձը, ինչպիսին Ուրզիցինոսն էր, որ հիանալի ծանոթ էր պարսիկների մարտավարությանը, ավելի քան անհրաժեշտ էր: Շապուհի կողմից հավանության արժանացած Անտոնինոսի համարձակ ծրագիրը կառուցված էր Ուրզիցինոսի բացակայության և նրա փոխարինողի անընդունակության վրա: Նա պարսիկներին առաջարկեց ժամանակ և ուժեր չվատնել ամրությունների պաշարման վրա, այլ սրընթաց երթով անցնել Եփրատը և գրավել Ասորիքի՝ Գալլիանոսի ժամանակներից ի վեր պատերազմ չտեսած, ծաղկուն գավառները[1]:

Կոստանդիոս կայսրն անսպասելիորեն չեղյալ հայտարարեց հրամանը, և Ուրզիցինոսը կես ճանապարհից ետ վերադարձավ Միջագետք՝ հետևակի պետի պաշտոնով: Նրա դրությունը բարդ էր, մանավանդ որ բանակը փաստորեն մնաց ուրիշի հրամանատարության տակ:

Ուրզիցինիանոսը շտապեց Մծբին և սկսեց ամրացնել քաղաքը: Շուտով Տիգրիսից այն կողմ Մավրերի ամրոցի և Սիսարայի կողմից երևացին թշնամու առաջապահ ջոկատները: Ուրզիցինոսն ու Ամմիանոսը քաղաքից դուրս եկան, որպեսզի փակեն նրանց ճանապարհը, բայց հարկադրված եղան Ամուդիի և Մեյակարիրի վրայով փախչել Ամիդ:

Ուրզիցինոսի կարգադրությամբ Ամմիանոսը ուղևորվեց Կորդուքի Հովինիանոս սատրապի մոտ, որը գաղտնի համակրանք էր տածում հռոմեացիների նկատմամբ: Ասորիքում պատանդ լինելով՝ նա զբաղվում էր գիտություններով և այժմ այրվում էր հռոմեացիների մոտ վերադառնալու ցանկությամբ: Ամմիանոսի ուղևորությունը հետախուզական նպատակ ուներ: Սատրապի ուղեկցորդը նրան մի բարձր դիտակետ հատկացրեց, որտեղից հորիզոնում երևում էին մոտեցող թշնամական հրոսակները: Նրանց առջևից գնում էր ինքը՝ թագավորը, փառահեղ հանդերձանքով՝ ձախ կողմում ունենալով խիոնիտների Գրումբատես թագավորին, իսկ աջում՝ Աղվանքի թագավորին. նրանց ետևից գնում էին ուրիշ մանր իշխաններ ու հարևան ցեղերի նշանավոր դեմքեր:

[1] Ammian. Marc., XVIII, 6.

Ուրզիցինոսը, որն ուներ ընդամենը 700 հոգուց բաղկացած երկու հեծյալ ջոկատ, և ստիպված եղավ Ամիդից նահանջել Սամոսատ: Պարսից Դեն-շապուհ և Նախողար զորավարները 20 հազարանոց զորքի գլուխ անցած՝ փորձեցին կտրել նրա ճանապարհը: Ամիդի մոտ, լեռներում, նրանք հասան Ուրզիցինոսի ջոկատին, ջախջախեցին այն. Ուրզիցինոսն ինքը հազիվ փրկություն գտավ Մելիտենեում:

Այդ ընթացքում գլխավոր ուժերը Շապուհի հրամանատարությամբ հասան Մծբինի սահմաններին, իսկ այնտեղից էլ Անտոնինոսի խորհրդով թեքվեցին հյուսիս և շրջանցելով Bibases, Harren, Maiacarire և Charcha[1] կետերը, հայտնվեցին Ամիդի պարիսպների առջև: Քաղաքի համառ պաշտ-պանությունը պարսիկների ճնշման տակ կոտրվեց և 73 օր տևող պաշա-րումից հետո քաղաքն ընկավ: Ամմիանոսը փախավ Մելիտենե, այնտեղից իր հրամանատար՝ Ուրզիցինոսի հետ գնաց Անտիոք[2]:

Ամիդից Շապուհը սլացավ հարավ դեպի ռազմավարական շատ կարևոր կետ Սինգարա, որպեսզի այն գրավելով ապահովի իր թիկունքը Անտիոքում իր ուժերը կենտրոնացնող թշնամուց: Շապուհը նորից նետվեց հյուսիս և պաշարեց Տիգրիսի վրայի նշանավոր Բեզաբդե ամրությունը՝ հին Փենիկը (Phoenica)[3] այժմյան Ջեզիրե-իբն-Օմարը: Այդ ամրոցն էլ ընկավ: Պարսից հաջողությունները հարկադրեցին Կոստանդիոս կայսրին անձամբ կանգնել բանակի գլուխը: Այդ նույն տարում, երբ հռոմեական ամրոցները մեկը մյուսի ետևից ընկնում էին թշնամու հարվածների տակ, Կոստանդիոսը զորքերով ժամանեց Կեսարիա (Կապպադովկիական), [որը նախկինում անվանվում էր Մազակա]՝ Mazakam antehac nominatam (XX, 9):

Այստեղ նա իմացավ, որ Գալլական լեգեոնները՝ իրենց արևելք փոխադ-րելու հրամանից դժգոհ, կայսր են հռչակել Հուլիանոսին: Որոշ տատա-նումներից հետո՝ արդյոք շարունակել ճանապարհը, թե գնալ Հուլիանոսի դեմ, Կոստանդիոսը մարդ ուղարկեց նրա մոտ՝ Կեսարի տիտղոսով բավա-րարվելու առաջարկությամբ, իսկ ինքը պատրաստվեց արշավանքի:

Լուրեր էին պտտվում, թե պարսիկները բոլոր միջոցները ձեռք են առնում հայոց թագավոր Արշակին ստիպելու հեռանալ հռոմեացիներից և Շապուհի կողմն անցնելու համար: Կոստանդիոսը հիանալի հասկանում էր, որ եթե պարսիկների խարդավանքները Հայաստանում նպատակին հասնեն, ապա հռոմեական զորքը կզրկվեր լուրջ օգնությունից, այդ պատճառով նա ձգտում էր իրեն ապահովել այդ կողմից՝ նախապես ստանալ Արշակի հետ դաշինքի ամրության հավաստիացում:

[1] Այդ կետերը գոյություն ունեն մինչև այժմ և ընկած են Դարայից Ամիդ տանող գլխավոր ճանապարհի վրա:

[2] Ammian. Marc., XIX, 8.

[3] Անդ, 7:



«Կոստանդիոսը,- ասում է Ամմիանոսը,- իր մոտ հրավիրեց հայոց թագավոր Արշակին, ընդունեց նրան արտակարգ սիրալիրությամբ և թախանձագին խնդրեց ու հորդորեց, որպեսզի նա մնա մեզ բարեկամ և հավատարիմ (դաշնակից): Նա լսել է, որ պարսից թագավորը բազմիցս փորձ է արել՝ գործելով մերթ խաբեությամբ, մերթ խարդավանքով, որպեսզի Արշակը հեռանալով հռոմեացիների հետ ունեցած դաշինքից՝ անցնի իր կողմը: Արշակը բազմիցս երդվեց, որ նա ավելի շուտ իր կյանքը կտա, քան իրեն թույլ կտա դավաճանել, և, առատ նվերներ ստանալով, ուղեկիցներով, որոնց բերել էր իր հետ, վերադարձավ իր թագավորությունը: Հետագայում նա չհամարձակվեց խախտել տված խոստումը, կապված լինելով Կոստան-դիոսի հետ երախտագիտական շատ կապերով, որոնց շարքում ամենա-կարևորն այն էր, որ կայսրը Արշակին կնության տվեց իր հանգուցյալ եղբայր Կոստասի նախկին հարսնացու՝ Օլիմպիային, որը պրետորիայի պրեֆեկտ Աբլաբիոսի դուստրն էր: Արշակին ճանապարհելով՝ Կոստան-դիոսը Կապպադովկիայից դուրս եկավ և Փոքր Հայքի Մելիտենե քաղաքի վրայով անցնելով Եփրատը՝ եկավ Եդեսիա»՝

Constantius aditum Arsacen, Armeniae regem, summaque liberalitate suscep-tum praemonebat et hortabatur, ut nobis amicus esse perseveraret et fidus. Audiebat enim saepius eum temptatum a rege Persarum fallaciis, et minis, et dolis, ut Romanorum societate posthabita, suis rationibus stringeretur. Qui cre-bro adjurans animam prius posse amittere, quam sententiam, muneratus cum comitibus, quos duxerat, rediit ad regnum, nihil ausus temerare postea promis-sorum, obligatus gratiarum multiplici nexu Constantio, inter quas illud potius excellebat, quod Olympiada Ablabii filiam praefecti quondam praetorio, ei cop-ulaverat conjugem, sponsam fratris sui Constantis. Quo dimisso a Cappadocia ipse per Melitinam minoris Armeniae oppidum, et Lacotena, et Samosata, transi-to Euphrate, Edessam venit[1].

Այստեղ նա առժամանակ կանգ առավ՝ սպասելով համալրման և շարժվեց Ամիդի վրա: Պարսիկների կողմից կործանված քաղաքի տեսքը ծանր տպավորություն թողեց կայսեր վրա: Ամիդից Կոստանդիոսն անցավ Բեզաբդեն և այն գրավելու թույլ ու անհաջող փորձից հետո հեռացավ Անտիոք: Այստեղ նրան հայտնեցին, որ Հուլիանոսն արշավում է դեպի մայրաքաղաք: 360-361 թթ. ամբողջ ձմեռը նա անհրաժեշտ պատրաս-տություններ էր տեսնում ներքին ու արտաքին թշնամիների դեմ պատերազմ վարելու համար:

[1] Ammian. Marc., XX, 11.

Գարնանը սպասվում էր պարսիկների առաջխաղացում, և կայսրը մի անգամ ևս քայլեր ձեռնարկեց ամրապնդելու դաշինքը հայոց թագավորի և հարևան միապետների հետ: Քանի որ նրանք սարսափում էին պարսիկների գարնանային հարձակումից, ապա այդ նույն պատմագրի խոսքերով «Անդրտիգրիսյան թագավորներին ու սատրապներին առատ նվերներով դեսպաններ ուղարկվեցին, որպեսզի խնդրեն ու հորդորեն նրանց մնալ մեր կողմում և երբեք չմտածել որևէ խաբեության կամ խարդավանքի մասին: Ամենից առաջ Հայաստանի և Իբերիայի թագավորներ Արշակին ու Մերիբանեսին աշխատեցին կաշառել փառահեղ հանդերձանքով ու բազմազան նվերներով, որպես մարդկանց, որոնք կարող էին հարված հասցնել հռոմեական գործին, եթե այդ դժվարին պարագաներում անցնեին պարսիկների կողմը՝ «ad Transtigritanos reges et satrapes legati cum muneribus missi sunt amplis, monituri cunctos et hortaturi nostra sentire et nihil fallax temptare vel fraudulentum. Ante omnia tamen Arsaces et Meribanes, Armeniae et Iberiae reges, cultu ambitioso indumentorum emercabantur et multiformibus donis damna negotiis Romanis illaturi, si rebus tum etiam dubiis descivissent ad Persas»[1].

Շուտով Միջագետքում կանգնած հռոմեական զորապետները զեկուցեցին, որ Տիգրիսի երկայնքով ձգված պարսկական զորքերը պատրաստվում են պատերազմական գործողություններ սկսել: Կոստանդիոսը անմիջապես Անտիոքից մեկնեց Եդեսիա՝ թշնամուն ընդառաջ: Սակայն պարսիկները փոշմանեցին և անսպասելիորեն ետ քաշվեցին իրենց սահմանները: Կայսրը վերադարձավ Անտիոք և այդտեղից էլ մեկնեց Կոստանդնուպոլիս, բայց ճանապարհին Տարսոնում հիվանդացավ տենդով և վախճանվեց Մոփսուկրենե իջևանում 361 թ. հոկտեմբերի 5-ին[2]:

Կայսր հռչակվեց Հուլիանոսը: Վճռելով շարունակել պատերազմը պարսիկների դեմ՝ նա 362 թ. հունիս ամսին մեկնեց Անտիոք: Նրա փառքը և նրանից սարսափը տարածվել էր հեռու և հասել մինչև Արևելք: Ամեն կողմից ներկայանում էին խաղաղասիրական դեսպանություններ, «խնդրում էին խաղաղություն նաև անդրտիգրիսյան ժողովուրդներն ու հայերը»՝ Transtigritanis pacem obsecrantibus et Armeniis[3]:

Հուլիանոսը փայփայում էր հսկայական ծրագրեր և մտածում էր մի հարվածով վերջ դնել պարսիկների դարավոր թշնամությանը և ջախջախել հատկապես վերջին 60 տարիներին այնքան դժբախտություններ պատ-

[1] Ammian. Marc., XXI, 6.

[2] Նույն, XXI, 15:

[3] Նույն, XXII, 7:



ճառած և բազմիցս հռոմեական զորքը մինչև վերջին մարդը կոտորած պետության հզորությունը[1]:

Ինքնավստահ կայսրը, ճիշտ է, սիրալիր ընդունում էր տարբեր ժողովուրդների՝ նրան օգնություն ուղարկելու մասին առաջարկությունները, բայց հպարտությամբ նրանց հասկացնել էր տալիս, որ հռոմեական տերությանը վայել չէ օգտվել արտաքին օգնությունից, և, ընդհակառակը, ինքը պատրաստ է պաշտպանել իր բարեկամներին և դաշնակիցներին, եթե նրանք խնդրանքով դիմեն նրա օգնությանը: «Միայն հայոց թագավոր Արշակին,- շարունակում է պատմագիրը,- պատվիրեց, որպեսզի նա հավաքելով զգալի թվով զորք, գործի այնպես, ինչպես իրեն կհրամայվի. իսկ թե նա ուր պիտի շարժվի, ինչ պիտի անի, շուտով կիմանա»՝ «Solum Arsacem monuerat Armeniae regem ut collectis copiis validis iubenda operiretur, quo tenderet, quid deberet urgere propere cogniturus»[2].

Կողմնակի օգնության ավելորդության մասին մեծամիտ հայտարարությունից հետո հայոց թագավորի նկատմամբ այդպիսի բացառությունը լավագույն ապացույց է ծառայում, թե այն ժամանակ ինչ դեր էր խաղում Հայաստանը և ինչքան թանկ էին գնահատում նրա դիրքը պատերազմող կողմերը:

Հուլիանոսի երկերում պահպանվել է նրա նամակը՝ հասցեագրված Արշակին, որն ասում է.

**«Արշակին՝ Հայաստանի սատրապին:**

Արշակ, շտապիր մարտի ընդդեմ թշնամու, խոսքից արագ, զենք առ ձեռքդ պարսից մոլեգնության դեմ:

Մեր սպառազինությունն ու ջանադրությունը իրենց առաջ խնդիր են դնում երկուսից մեկը, կամ արժանին մատուցել (այսինքն՝ զոհվել)՝ պարթևական հողի վրա կատարելով մեծ սխրագործություններ, և սարսափելի չարիք պատճառել թշնամիներին, կամ էլ աստվածների օգնությամբ հնազանդեցնել նրանց և հաղթանակով վերադառնալ տուն՝ թշնամիների նկատմամբ տարած հաղթանակի հուշարձան կանգնեցնել:

Արդ՝ թոթափի՛ր քո անփութությունը, թո՛ղ քո խաբեությունները: Մոռացիր այն երանելիին, ինչպես և շռայլ ու վատնող Կոստանդիոսի օրոք բարձրաստիճան անձանց կողմից քո և քեզ պես բարբարոսների վրա շռայլված առատ նվերները և այժմ մտածիր իմ՝ գերագույն քրմի՝ Հուլիանոսի մասին, կեսարի և օգոստոսի, աստվածների ու Մարսի սպասավորի մասին, ֆրանկներին ու բարբարոսներին խորտակողի մասին, գալլերին ու իտալացիներին ազատագրողի մասին: Եթե դու մտքիդ ինչ-որ ուրիշ բան ես

[1] Ammian. Marc., XXII, 12.

[2] Նույն, XXIII, 2:

դրել, ես էլ գիտեմ, որ դու խորամանկ ես, վատահամբավ զինվոր ես ու պարծենկոտ, ինչպես այդ ցույց են տալիս նրա գործերը, քանի որ դու փորձում ես թաքցնել քեզ մոտ ընդհանուրի շահի թշնամուն - առայժմ դու հետաձգում ես քո մտադրությունը մինչև պատերազմի բախտը պարզվելը: Մեզ բավական է դաշինքը աստվածների հետ թշնամիներին ոչնչացնելու համար: Իսկ եթե ճակատագիրը ինչ-որ ուրիշ բան է վճռել, նրա վճիռը հենց աստվածների ցանկությունն է - ապա ես այն կընդունեմ անվախ և քաջությամբ: Դե, իմացիր, որ դու կընկնես պարսիկների ձեռքով և պայքարում խոցված կկործանվի քո տունը և հայկական թագավորությունը: Քեզ հետ ձախորդությունները կբաժանի նաև Մծբին քաղաքը, ինչպես այդ մասին վաղուց ի վեր մեզ հայտնել են երկնային աստվածները»:

*Ἀρσάκῃ Ἀρμενίων σατράπῃ.*

*Ἐπείχθητι πρὸς τὴν τῶν πολεμίων παράταξιν, Ἀρσάκιε, θᾶττον ἢ λόγος, τὴν δεξιὰν κατὰ τῆς Περσικῆς μανίας ὁπλίσας ἡ γὰρ ἡμετέρα παρασκευή τε καὶ προθυμία δυοῖν θάτερον βεβούλευται, ἢ τὸ χρεὼν ἀποδοῦναι ἐπὶ τῆς Παρθυαίων ἐνορίας τὰ μέγιστα διαπραξαμένους καὶ τὰ δεινότατα διαθεμένους τοὺς ἀντιπάλους, ἢ τούτους χειρωσαμένους, πρυτανευόντων ἡμῖ ν τῶν θεῶν, καλλινίκους ἐπανελθεῖν ἐπὶ τὴν ἐνεγγικαμένην, τρόπαια κατὰ τῶν πολεμίων ἐγείραντας. πᾶσαν οὖν ῥαστώνην καὶ φενακισμὸν ἀποθέμενος, καὶ τὸν μακαρίστην ἐκεῖνον καὶ τὰς τῶν εὖ γεγονότων περιουσίας τὰς εἰς σέ τε καὶ τοὺς ὁμοτρόπους σοι βαρβάρους ὑπὸ τοῦ ἁβροτάτου καὶ πολυτελοῦς Κωνσταντίου κενωθείσας, νῦν μοι τὸν Ἰουλιανόν, τὸν ἀρχιερέα, τὸν καίσαρα, τὸν αὔγουστον, τὸν θεῶν τε καὶ Ἄρεος θεραπευτὴν ἐννόησον, τὸν Φραγκῶν τε καὶ βαρβάρων ὀλετῆρα, τὸν Γάλλων τε καὶ Ἰταλῶν ἐλευθερωτήν, εἰ δὲ ἕτερον τι βουλεύσαιο πυνθάνομαι γὰρ εἶναι σε πανοῦργον καὶ κακὸν στρατιώτην καὶ ἀλαζόνα, ὡς τὰ παρόντα μοι πράγματα δείκνυσιν. ἐχθρὸν γὰρ τινα τῆς κοινῆς λυσιτελείας λανθάνοντα ἀποκρύπτειν παρὰ σοὶ πειρᾶσθαι τέως μὲν τοῦτο ὑπερτίθεμαι διὰ τὴν τοῦ πολέμου τύχην. ἀρκεῖ γὰρ ἡμῖ ν ἡ τῶν θεῶν συμμαχία πρὸς τὴν τῶν πολεμίων καθαίρεσιν. εἰ δὲ τι τὰ τῆς εἱμαρμένης κρίνειε. θεῶν γὰρ βούλησις ἡ ταύτης ἐξουσία, ἀδεῶς καὶ γενναίως οἴσω τοῦτο. ἴσθι δὲ ὡς σὺ μὲν πάρεργον ἔσῃ τῆς Περσικῆς χειρός, συναφθείσης σοι παγγενεὶ τῆς ἑστίας καὶ τῆς Ἀρμενίων ἀρχῆς. κοινωνήσει δέ σοι τῆς δυστυχίας καὶ ἡ Νισιβίων πόλις τῶν οὐρανίων θεῶν τοῦτο πάλαι ἡμῖν προαγορευσάντων*[1].

---

[1] Iuliani opera, vol. I, epistola 66, p. 589-590.



Այս նամակը թե՛ իր ձևով և թե՛ բովանդակությամբ լուրջ կասկած է հարուցում. անտովոր կոպիտ տոնը անարժան է համարվում Հուլիանոսի գրչին, ինչպես նաև չի համապատասխանում իսկական իրադրությանը: Կայսրը չէր կարող այդպիսի վիրավորական լեզվով խոսել այն տիրակալի հետ, որի օգնությունը նա շատ գնահատում էր, ինչպես այդ երևում է Ամմիանոսի խոսքերից: Նամակի վերջին մասը, որ վերաբերում է Արշակին ու նրա տան և առհասարակ հայկական թագավորության կործանմանը, ավելի շատ մտանանիշ է անում այն, որ այդ վավերագիրը ստեղծվել է Արշակունյաց՝ Հայաստանի արքայատան կործանման կատարված փաստից հետո: Բացի դրանից, նամակում *τῶν μακαρίστην ἐκεῖνον* «այն երանելի»-ի տակ հասկացվում է հավանաբար Կոստանդիանոս Մեծը, որի օրոք Արշակը չէր կարող գահի վրա լինել: Սա դարձյալ վավերագրի իսկության կասկածելիությունը հաստատող հանգամանք է:

Նամակի տոնի մեջ, անվիճելի է, արտահայտվել է այն զայրույթը, որ կարող էր համակել Հուլիանոսին այն բանից հետո, երբ Արշակը, չնայած իր ամբողջ ցանկությանը, ինչպես պարզվեց հետագայում, չկարողացավ հռոմեացիներին օգնություն ցույց տալ: Երբ Հուլիանոսը ժամանեց Խառան և իմացավ այն մասին, որ թշնամին արդեն անցել է սահմանը, նա առանձնացրեց 30.000 մարդուց բաղկացած ջոկատ և այն հանձնեց Պրոկոպիոսին, հրամայելով զորաշարժ կատարել Տիգրիսի ափերին և աչալուրջ հետևել թշնամու ռազմերթերին: «Նա պատվիրեց հնարավորության դեպքում միանալ Արշակին և նրա հետ միասին արագ երթով Կորդուքի և Մոկքի վրայով անցնելով՝ ավերել Մեդիայի հարուստ գավառը, Խիլիոկոմը և նրա այլ շրջանները և հետո շտապել իր մոտ՝ Ասորիք, իրեն օգնություն ցույց տալու համար, եթե դրա կարիքը լինի»՝ mandabatque eis ut, si fieri potius posset, regi sociarentur Arsaci cumque eo per Corduenam et Moxoenam Chiliocomo uberi Mediae tractu partibusque alliis praestricto cursu vastatis apud Assyrios adhuc agenti sibi concurrerent necessitatum articulis adfuturi[1].

Դրա մեջ էր կայանում Արշակի ռազմական օգնությունը, և դրա վրա են մատնանիշ անում պատմագրի վերը բերված խոսքերը, թե Հուլիանոսը հրամայեց Արշակին պատրաստվել և սպասել իր կարգադրությանը:

Ինքը՝ Հուլիանոսը, գլխավոր ուժերով Տիգրիսի հոսանքով շարժվեց հարավ, դեպի պարսից թագավորության մայրաքաղաքը: Նա հաղթական երթով հասավ Տիզբոն, և չնայած այն բանին, որ Նաարմալխում՝ գլխավոր ճակատամարտում, Ամմիանոսի հավաստիացումներով, Հուլիանոսը ջարդեց պարսիկներին, դրանից հետո այնուամենայնիվ հռոմեական

---

[1] Ammian. Marc., XXIII, 3.

զորքերը գերադասեցին բռնել վերադարձի ճանապարհը: Ընդ որում որպես Հուլիանոսի վիճակը վատացնող հանգամանքներից մեկը նշվում է այն «ոչ փոքր դժբախտությունը՝ չհայտնվեց այն ջոկատը, որը սպասվում էր՝ Արշակի և մեր զորահրամանատարների հետ, որի ուշացման պատճառը նշված է վերևում»՝ haud exiguum malum, quod nec adminicula, quae praestolabamur cum Arsace et nostris ducibus, adparebant ob causas inpedita praedictas[1].

Ցավոք, Ամմիանոսի ներկա տեքստում Արշակին կասեցնող պատճառների մասին չկան ցուցումներ, որոնք վկայակոչում է հեղինակը: Այդ խոսքերից երևում է նախ և առաջ, թե ինչպիսի մեծ նշանակություն էր տրվում Արշակի օգնությանը, և երկրորդ՝ որ Արշակը բոլորովին էլ մեղավոր չէր այն բանում, որ չի կարողացել Հուլիանոսին օգնության գալ: Հուլիանոսի համարձակ ձեռնարկումը վատ վերջացավ: Նահանջի ճանապարհին 363 թ. հունիսի 26-ին՝ նա ընկավ թշնամու նետից խոցված:

***Շարունակությունը հետևում է (4):***

[1] **Ammian. Marc., XXIV, 7.**



# ՔՆՆԱԿԱՆ ՆԸՄԱՐՆԵՐ ԵԶՆԻԿԻ ՄԱՍԻՆ

## (Լ. Մարիեսի աշխատության առթիվ)

### I

Հին մատենագիրների շարքում Եզնիկ Կողբացին այն բացառիկ դեմքերիցն է, որ պահել է գոնե ցայժմ իր ավանդական հռչակը ամուր և անքասիր: Այն ինչ ներկայումս անվստահությունն ու կասկածները մթագնել են մեր գրի սկզբնական շրջանի հորիզոնները և թանձր ստվեր ձգել շատ անունների վերա, Եզնիկը մնացել է անխոցելի և ամեն տարակուսանքից վեր: Չէ թե միայն ոճի և բովանդակության կողմից, այլ և հավաստիության տեսակետից Կողբացու փոքրիկ երկը հաշվում է հայ գրականության պարծանք:

Եզնիկին նվիրված նոր ուսումնասիրությունը, որ պատկանում է մի լատին կրոնավորի (1), չի սպառնում բնավ որևէ կերպ նսեմացնելու նորա դարավոր փառքը: Ընդհակառակը, հայ բանասերների կողմից, գլխավորապես Նորայրի (2) և Հր. Աճառյանի (3), հայտնված քանի մի դիտողություններ, որոնք նկրտում էին բծեր գտնելու Եզնիկի գործի մեջ, Լ. Մարիեսի խոհուն մտքի առաջ ընկրկում են և չքանում:

Հենց սկզբից Եզնիկի նոր քննադատը հայտնում է, որ ավանդական տեսակետը, ստույգ և ընդունելի է համաձայն Ս. Վեբերի լուսաբանության (4), և մատենագիր Եզնիկ Կողբացին (սխալմամբ Կողբը Տայքի մեջ է դնում) այն անձն է, որ ներկա էր Արտաշատի ժողովին 449 թվականին և որ իր երկը գրել է 441 թ., ավելի ճիշդ 445-448 թթ. մեջ, ինչպես հաշվում է նույն Վեբերը. այստեղից հետևում է այն հայտարարությունը, որ անում է Մարիեսը, որ «Եզնիկի հարց չկա, ինչպես հայ Խորենացու և կամ Ագաթանգեղոսի և ուրիշ նման հարցեր»:

Դժբախտաբար, վաղաժամ ենք համարում այսօրինակ համարձակություններ և ցավում, որ Մարիես, հակառակ իր քննական և զննական ընտիր ձիրքերին, հավատ է ընծայել Վեբերի հաշիվներին, որ համոզիչ հիմքեր ունենալուց հեռու են:

Արդարև, Վեբերի ելակետը Եզնիկի մի նկատողությունն է պարսից կրոնի մասին, որ «ընդ գրով չեն կրօնքն», այսինքն՝ գրի չեն առնված, ուստի երբեմն այս են ասում, երբեմն այն՝ *մարդկանց խաբելու և մոլորեցնելու համար*[1]: *Այս*

[1] **Եզնիկ Կողբացի, Բ, 9:**

խոսքերը Եզնիկը չէր կարող ասել, ըստ Վեբերի, պարսից հազարապետ Միհրներսեհի դավանական նամակից հետո, որ ուղղված էր հայերին Հազկերտ թագավորի հրամանով: Պարսից թուղթը և նրա պատասխանը հայոց կողմից, գրված Արտաշատի ժողովում, նմանություն ունին Եզնիկի գործին, որը բացատրելու է նրա անմիջական մասնակցությամբ, և ուրեմն, եզրակացնում է Վեբերը, նորա երկը 450 թվից առաջ պիտի գրված լինի:

Նախ հայտնի չէ, Եզնիկի նկատողությունն իրե՞ն է պատկանում, թե քաղած է գրավոր աղբյուրից: Ինչպես կտեսնենք ստորև, պարսից կրոնի վերաբերյալ հիմնական հոդվածը թարգմանածո է: Եվ որ հիշյալ նկատողությունը վերցրած է գրավոր աղբյուրից, դորա կտրական ապացույցն այն է, որ նույն միտքը գտնում ենք նաև Բարսեղ Կեսարացու մոտ, խոսելով *τῶν μαγουσαίων ἔθνος*-ի մասին, նա նկատում է. *οὔτε γὰρ βιβλία ἔστι παρ' αὐτοῖς οὔτε διδάσκαλοι δογμάτων, ἀλλὰ ἔθει ἀλόγῳ συντρέφονται, παῖ ς παρὰ πατρὸς διαδεχόμενοι τὴν ἀσέβειαν.* որ է` «մոգերի (մագուս, հին պարսկ. magus) ժողովուրդը ո՛չ գիրք ունին և ո՛չ կրոնի վարդապետներ, այլ անմիտ սովորությամբ են սնվում հորից որդի ժառանգելով ամբարշտությունը»[1]:

Չենք ուզում ասել, որ Եզնիկը կախումն ունի Բարսեղից: Ստորև կտեսնենք, որ երկու հեղինակների մեջ և ուրիշ նման կետեր կան, այնպիսի հանդիպումներ, որոնք ենթադրել են տալիս ընդհանուր աղբյուրի գոյությունը: Եթե այս աղբյուրից է առած հայ հեղինակը մեզ հետաքրքրող տողերը պարսից կրոնի մասին, ապա ուրեմն Վեբերի դատողությունները կորցնում են իրենց հողը:

Սակայն ընդունենք իսկ մի րոպե, որ նույն տողերն իրեն Եզնիկին է պատկանում: Միամտություն կլիներ կարծել, որ Միհրներսեհին վերագրած թուղթը պատմական իսկություն է և նրա վերա հենվելն այս դեպքում ներելի: Բավական է հիշել, որ երկու ժամանակակից համարված հեղինակ, Եղիշեն և Ղազարը, տարբեր բաներ են պատմում թղթի թե՛ էության և թե՛ հետևանքի մասին: Ճշմարիտ է, Ղազարին ևս անծանոթ չէ, որ Միհրներսեհը «իրենց օրենքը գրել և ղրկել է հայերին», բայց նա ավելացնում է, որ հայերը մինչև իսկ արժանի չհամարեցին բանալ թուղթը և կարդալ: Ահա նորա բուն խոսքերը. «այլ վասն օրինաց ձերոց, զոր գրեալ էր և տուեալ բերել առ մեզ, մեք ձեզ ոչ երբեք լսեմք: Մինչ որ այդր լինիմք ի դրանն և կամ ի մոգուցդ որ ձեր օրէնսուսոյցքդ իմն կոչին, այպն արարեալ արհամարհեմք. թող թէ և գրոց ևս յօժարեցուցանէք զմեզ կարդալ և լսել որ ինչ ոչ է մեզ պիտոյ և

[1]Ad Epiph., 4. Migne, P. G., col. 258.



խնդիր: Այլ յառաւել ևս պատուելոյ զթագաւորութիւնդ ձեր և *բանալ անգամ զգրեալդ կամ տեսանել ոչ կամեցաք*. զի զօրէնս զոր ճանաչեմք եթէ սուտ են և անմիտ մարդոյ բարբանջմունք, զոր բազում անգամ մեր լուեալ է ի ձեր անուանեալ սուտ վարդապետացդ և տեղեակ եմք իբրև զձեզ, զայն ոչ կարդալ պարտ է և ոչ լսել: Դարձեալ կրկնում է. «զձեր սուտ և զարժանի ծաղու օրէնսդ չհամարեցաք արժանի կարդալոյ և մատուցանելոյ ի մեզ»[1]...

Այսպես է խոսում Փարպեցին, մինչ Եղիշեն բերում է պարսից դավանական թուղթը և նրա հերքումը: Մտադիր չենք բնավ մեկի խոսքերը մյուսով քննելու և կամ մեկի կարծիքին առավելություն տալու: Երկու պատմագիրն էլ այս դեպքում ճշմարտության դեմ մեղանչում են պատմական տեսակետից:

Այլ է գրականը. նամակագրությունը հին գրականության մեջ ընդունված ձև է, որ հեղինակները հաճախ հորինում են որոշ դիտումներով, այս կամ այն միտքը ավելի ազդու և ցայտուն կերպով ներկայացնելու համար: Հավանական է, որ պարսկական դրան կողմից որևէ գրավոր հրաման եղած լինի: Սորա շուրջը ծագել է գրագրության զրույցը: Մի պատմագիրը հարկավոր է համարել հորինել և՛ թուղթն և՛ պատասխանը և այդպիսով երևան հանել պարսիկների կրոնական տկարամտությունը և հայերի քրիստոնեական ջերմեռանդությունը: Մյուս պատմագիրը նույն նպատակի համար, նամանավանդ պարսիկներին վիրավորելու դիտավորությամբ, գերադասել է այնպես ձևացնել, որ հայերը նույնիսկ պետք չեն տեսել անհավատների թուղթը կարդալու, մոտեն ծանոթ լինելով նրանց ամբարշտության:

Այսօրինակ միտումնավոր գրությունների վերա հիմնել այնպիսի գրական բարդ խնդիր, որպիսին է Եզնիկի հարցը, նշանակում է իրավամբ ավազի վերա տուն շինել:

Դրական ապացույց չունինք նաև Եզնիկի և Արտաշատի ժողովին մասնակից Բագրևանդա եպիսկոպոսի նույնության, ինչպես և հաստատուն կռվան չկա, որ պատմագիր Եղիշեն նույն ժողովի անդամ Ամատունյաց Եղիշե եպիսկոպոսի հետ մի անձն է: Արդյոք Եղիշեի մատյանը, ծանոթ լինելով Փիլոնի հայ թարգմանության, կարո՞ղ է Արտաշատի ժողովին ժամանակակից համարվել:

Չենք ուզո՛ւմ այժմեն իսկ պնդել, որ նույն դրության մեջ է և հռչակավոր «Եղծ աղանդոց»-ը: Ամենայն դեպքում խնդիրն այնքան էլ պարզ չէ, ինչպես թվում է շատերին: Կկամենայի օգտվել դեպքից, հաջող առթից, որ տալիս է Մարիեսի լրջմիտ աշխատությունը, և հրապարակ հանել քանի մի անձնա-

[1] Ղազար Փարպեցի, էջ 128-129:

կան դիտողություններ, որ զբաղեցնում են ինձ վաղուց, և որ կարող են անորոշության եթե ոչ անվստահության ամպեր բերել Եզնիկի գործի շուրջը[1]:

## II

Լ. Մարիեսի աշխատությունը կոչվում է **«Le *De Deo* d'Eznik de Kolb connu sous le nom de «Contre les sectes»**՝ մի վերնագիր, որ ինքնին քննորոշում է Եզնիկին նվիրած նոր ուսումնասիրությունը և հայտնում նորա էությունը:

Ասել է, թե քննադատը եկել է այն եզրակացության, որ հանրածանոթ *«Եղծ աղանդոցը»* կոչելու է այսուհետև *«Յաղագս Աստուծոյ»*:

Անվան խնդիրը, որքան և ձևական, ինքնըստինքյան, արժանի է սակայն ուշադրության, ցորչափ որ մերկացնում է գրական գործի ոգին և կամ նպաստում է հասկանալ նորա կառուցվածքը:

Վերնագրի հարց է ծագում, որովհետև միակ թանկագին ձեռագիրը, որ պահել է մեզ Եզնիկի գանձը, կորցրել է վերնագիրը: Առաջին հրատարակիչը Աբրահամ վարդապետը հայտնում է իր առաջաբանի մեջ, որ ինքն է բաժանել «զերկար ճառակերպ գրեալսն ըստ զանազանիցն պարբերութեանց իմացուածոյ ի գլուխս 76»:

Վենետիկցիք արտատպելով նույն հրատարակությունը, պահել են բաժանումները չնչին փոփոխությամբ, և այն ոչ միշտ հաջող, վերածելով նաև ամբողջ երկը չորս գրքերի:

Աբրահամ վարդապետը կոչել է իր հրատարակությունը *«Գիրք ընդդիմութեանց»* (5): Արսեն Բագրատունին, Վենետիկի հրատարակության նախաձեռնողը, հարմար է դատել անվանել *«Եղծ աղանդոց»* (6):

Եզնիկն համենայն դեպս անպարտ է այս խնդրում և պատասխանատու չէ ընտրած վերնագիրների համար, քանի որ ձեռագիրը չէ պահել երկի իսկական անունը:

Այս անհայտությունն է պատճառը, որ Մարիեսն ևս իր կողմից մի նոր վերնագիր է առաջարկում՝ *«Յաղագս Աստուծոյ»:* Նա արդար է, երբ խոսում է արդի բաժանմունքների և վերնագրի դեմ, որոնք շեղել են քննադատների ուշադրությունը և արգելք եղել Եզնիկի գործի ճշմարիտ մեկնության: Մարիեսը կարծում է, որ Եզնիկը միապաղաղ գրություն է և ամենևին կարիք չկա քմահաճ տրոհումների: Ջնջելով գրքի բովանդակությունը աչալուրջ ուշադրությամբ, մեր քննադատը առաջարկում է հիշածս նոր վերնագիրը, գտնելով այն միանգամայն համապատասխան երկի ընդհանուր բնավորության:

Պետք է խոստովանել, սակայն, որ Մարիեսի ընտրությունը ևս անհաջող է ու բռնազբոսիկ և ինչ որ զարմանալի է, բնավ չի պատշաճում իր ման-

[1] Եզնիկի գործը մասնավոր դասախոսության նյութ է եղել Ս. Պետերբուրգի համալսարանում՝ 1914-1915 ուսումնական տարիներին:



րակրկիտ և ճշմարիտ վերլուծման: Ամբողջ ութ էջի վերա Մարիեսը ներկայացնում է մեզ բովանդակության տախտակը, որ ընդհանուր առմամբ ուղիղ է: Անսպասելի է միայն նորա եզրակացությունը, որ իբր թե «ամեն ինչ բոլորում է» ճշմարիտ Աստուծո գիտության շուրջը:

Մինչդեռ վերլուծման տախտակից իսկ բացահայտ երևում է, որ խնդիրը Աստուծո մասին չէ, այլ չարի և բարվո մեծ հարցն է, որ զբաղեցնում է հեղինակին: Աստուծո մասին խոսում է այն չափով, որքան հարկավոր է հիշյալ հարցի տեսակետից:

Արդ չարի և բարվո և սրանց տեսակ-տեսակ արտահայտությանց ծագման և մեկնության բանալին համարում է անձնիշխանությունը կամ ժամանակակից խոսքով ազատ կամքը: Հետևապես, եթե ուզենայինք ավելի մոտեն քննորոշել, պետք է ասեինք. խոսքը անձնիշխանության մասին է: Բայց որովհետև հեղինակը կանգ է առնում երկարորեն չարիքների կամ իր խոսքով «անհարթութիւնների» վերա և նպատակ ունի հերքել արմատացած թյուր հասկացողությունները, մանավանդ կրոնական մեծ վարդապետությանց նույն խնդրի վերաբերյալ ունեցած դավանանքը, ուստի անդեպ չէր լինի ասել, որ խոսքը նրանց մասին է՝ աղանդավորների և հերձվածողների:

Մյուս կողմից *«Յաղագս Աստուծոյ»* կոչումը խորշելի պիտի լիներ Եզնիկի համար այն պարզ պատճառով, որ նա իր նախաբանի մեջ հարկ է համարում շեշտել, որ Աստուծո էությունը անհաս է և անքնին: Սեղմ և գրեթե քանդակե նախադասությամբ հայտարարում է հենց սկզբից, որ «առ նորա անքննութիւնն ընծայութիւն անգիտութեան մատուցանելի է և առ էութիւն նորին դաւանութիւն գիտութեան և ոչ քննութեան»: Ուրիշ խոսքով, Աստուծո անքննությունը գիտության և ուրեմն քննության նյութ չէ, այլ միայն անպայման հավատի:

Այս նկատողությունը ուղղված է գնոստիկյան վարդապետության դեմ, որը *հավատին*՝ πίστις հակադրում էր և գերադաս համարում ***գիտությունն***՝ γνῶσις և սորանով էր ուզում հիմնավորել և մինչև իսկ փոխարինել հավատը: Գնոստիկյաններից էր հռչակավոր Վալենտինիանոսը, որի ուսման հերքումին է նվիրված Եզնիկի առաջին գիրքը (7):

Ահա ինչու համար դժվար է կարծել, որ գնոստիկյանների դեմ պայքարող մատենագիրը իր գործն անվաներ *«Յաղագս Աստուծոյ»*, մանավանդ որ խոսքը բնավ Աստուծո մասին չէ:

Թվում է, թե Եզնիկի առաջին հրատարակիչ Աբրահամ վարդապետը ավելի մոտ է խնդրական վերնագրին: Միայն թե նույն միտքը պետք էր արտահայտել Եզնիկյան բառերով և նորա ճաշակով: Եղծ բառը հերքման իմաստով նորալուր է և խորթ Եզնիկին, ինչպես արդեն դիտել է հ. Գ. Գալեմքեարյան (8): Ընդդիմության փոխարեն Եզնիկ գործ է ածում *յանդիմա-*

*նութիւն:* Այսպես, Ա 28, էջ 111-րդում երեք անգամ կրկնվում է «հանդիմանել» բառը. «զարտաքինսն իրօք ճշմարտութեան առանց զրոց *յանդիմանել* և զկարծեալսն ներքինս և ոչ ճշմարտեալս գրովք սրբովք *յանդիմանել:* Ջհիւղայն կարծիս, որովք յոյնք մոլորեցան, բաւական համարեսցուք առաջ-նոցն բանիցն *յանդիմանութեամբ*՝ վճարել»: Դարձյալ՝ Մարկիոնի հասցեին ասում է էջ 196-րդում՝ «զորոյ անմահութիւնն ի դէպ ժամանակի *յանդի-մանեսցուք».* կամ էջ 192-րդում՝ «նախ յիւրեանց իսկ բանիցն *յանդիմանին».* և այլն: Այստեղից հետևում է, որ Եզնիկն իր գործը, իր անելիքը որոշում է «յանդիմանութիւն» բառով:

Նկատենք, որ նույն գործածութիւն է և Բարսեղ Կեսարացու «*Վեցօրեայ-ք»-ի* մեջ: Այսպես էջ 3՝ «ոչ գիտեմ, ուստի պարտ և պատշաճ իցէ առնել նախ սկիզբն ճառիս, եթէ ի *յանդիմանութենէ* ընդունայնութեան արտաքնոցն»: Նույնպես էջ 4՝ «այլ ես գործ աւելի համարիմ» կալ և դնել ընդ նոսա *յանդիմանութիւն»:* Այլև էջ 48՝ «և յորժամ *յանդիմանին* ի մէնջ». և կամ էջ 61՝ «առ ի *յանդիմանել* զստութիւն նոցա» և այլն: «*Յաճախապատում»-ի* մեջ ևս ընդունված է նույն իմաստով հանդիմանություն բառը ինչպես էջ 23՝ *յանդիմանութիւն* մոլար մտաց, այլ և էջ 46, 67:

Չմոռանանք հիշել, որ Եպիփանի նշանավոր գործը Խորենացու մոտ կոչվում է նմանապես «*Յանդիմանութիւն»*:

Հավանական կլիներ կարծել, որ Եպիփանի հետևությամբ Եզնիկն ևս իր գործն անվաներ «*Յանդիմանութիւն հերձուածոց»* կամ *աղանդոց:* Եզնիկը, կարծես, աղանդ է կոչում հեթանոս կրոնները և կամ փիլիսոփայական վարդապետությունները, իսկ հերձված բառը վերապահում է քրիստոնյա եկեղեցու ծոցում տեղի ունեցած այլամիտ ուսմունքներին:

Մի տեղ Եզնիկն իր գրությունը անվանում է *ճառ.* «որպէս բազում անգամ յոգնազոյն օրինակօք ոչ մոռացաք յառաջին *ճառսն* առնել»[1]: Իրավացի կլիներ կոչել Եզնիկի գործը «*Ճառք յանդիմանութեան»* մի պարզ ու ան-պաճույճ վերնագիր, որ թե՛ լեզվական և թե՛ իմաստի տեսակետից միան-գամայն պարտ ու պատշաճ է մեր հեղինակի ճաշակին:

Վերնագրի խնդիրը շատ կարևոր կետ է. այստեղ է Մարիեսի աշխատության հանգույցը, այստեղ է այն նոր ջահը, որով ուզում է այլ լույս սփռել Եզնիկի գործի վերա: Անտարակույս, Մարիեսն առաջինն է, որ ուղիղ է հասկացել Եզնիկի երկի զանազան բաժինների ներքին սերտ կապը, որի հետևանքով եղած կասկածները բնագրի պակասավորության և կամ խառնակության մասին ընդմիշտ ընկնում են իբր անհիմն ենթադրու-թյուններ: Չորս գիրքը իրենց զանազան մասերով կազմում են մի ամբող-

[1] Եզնիկ Կողբացի, էջ 144:



ջություն: Չենք կարող բնավ համաձայնել, որ այդ ամբողջության անունը «*Յաղագս Աստուծոյ»* է: Մարիեսի վերլուծական տախտակն իսկ բողոքում է այս հասկացողության դեմ:

Անվիճելի փաստ է, որ Եզնիկը կանգնած է պինդ անձնիշխանության սկզբունքի վերա: Նորա բարձրությունից դիտում է կյանքի բացասական երևույթները, այն ինչ որ կոչում ենք չարիք, լինի ժողովրդական սնապաշ-տության և հավատալիքների աշխարհում, թե օտար վարդապետություննե-րի և աշխարհայեցողությունների մեջ, քննում է և բացատրում է բոլորը նույն անձնիշխանության, անհատական ազատության, սկզբունքով: Եզնիկի ապագա հրատարակչին կարող էինք հանձնարարել «*Ճառք յանդիմա-նութեան»* գլխագիրը[1] (9):

Եզնիկի քննադատին հաջողվել է գտնել մի քանի նոր աղբյուրներ՝ և այս նորա գլխավոր արժանիքն է: Հին և նոր աղբյուրները միասին կազմում են մոտ 12 հեղինակից բաղկացած մի փունջ: Դժվար թե Եզնիկն անմիջապես այդ հեղինակներից քաղած լինի այն հատվածները, որ նմանություն ունին: Ավելի շուտով զուգադիպումներն են, որ առնված են ընդհանուր աղբյուրից: Արդարև, եթե ձեռքի տակ ունենար Որիգենեսին կամ Դիոդորոսին, մեր մատենագիրը չէր բավականանալ այս կամ այն երկտող օրինակները քաղվածելով. նորանց մոտ իրեն համար պիտանի շատ ավելի նյութեր պիտի գտներ:

Համենայն դեպս Եզնիկի գործը մի գրական գողտրիկ շենք է, թեև տարբեր նյութերից, տարբեր՝ ըստ որակի և ըստ ծագման:

Այստեղ մենք պիտի բաժանվենք առ այժմ Մարիեսից, որպեսզի կանգ առնենք մի հարցի վերա, որ մեր հետաքրքրության նյութ է և որի պա-տասխանը չենք գտնում Մարիեսի մոտ:

Մարիեսի աչքում ևս Եզնիկը տեսակ- տեսակ քարերից շինած մի գործ է. նա աշխատել է և հաջողել է գտնել այն թելը, որի վերա նրանք շարված են. գտել է այսպես ասած շարադրական գիծը: Բայց ի՞նչ հարաբերություն կա զանազան մասերի, զանազան քարերի մեջ, ինչպես են նրանք քովեքով եկել, նրանց այսպես ասած ծննդական (génétique) կապը, մնացել է առկախ: Քննել այս հարցը, նշանակում է որոշել, արդյոք Եզնիկը խմբագրակա՞ն գործ է, թե՞ սկզբնագիր:

[1] Մարկիոնի հանդիմանության առաջաբանում, որ է նախորդ, երրորդ, գրքի վերջին երկու էջը, հեղինակը կարծես թե հարցը շրջում է Աստուծո էության, հայտարարելով, «ապա ցուցցուք թէ ով է Աստուած և զինչ նորա արարածք»: Սակայն և այս հանգամանքը վկայում է միայն մի բան, որ եղծը զանազան երկերի հավաքումն, խմբագրություն է, ինչ որ պիտի տեսնենք: Հավանորեն Մարկիոնի հերքումն այլ տեղից է վերցրած, և անձնիշխանության գծի վերա հարմար, ճևականորեն պատշաճ տեղ չի գտել:

Առնենք առաջաբանը, այն է առաջին երեք գլուխները, որ Մարիես ևս ներածություն է անվանում: Եթե մի կողմ թողնենք ինչ որ վերցրած է Արիստիդեսից և կամ ինչ որ նմանություն ունի Բարսեղի «Վեցօրեայք»-ին և մնացած մասը համեմատենք իսկական աղբյուրների՝ Ադամանտիոսի և Մեթոդիոսի հետ, առաջաբանը կներկայանա մեզ իր հիմնական և թարմատար մասերով:

Սկզբից ևեթ Եզնիկը շեշտում է Աստուծո անհասությունը, անքննությունը, որպեսզի որոշի հավատի և գիտության սահմանները առաջիկա բարձր նյութի մասին ճառելիս: Նույնը տեսնում ենք և Ադամանտիոսի առաջաբանում, ուր այլ խոսքերով միևնույն միտքն է արտահայտում. *«ἐπί τὴν ἀξιέραστον καὶ ἀξιάγαστον πίστιν τὴν είς θεὸν ἀφορῶντες ἐγκρατεῖς τῆς ἀμείνονος καὶ τελειοτάτης δόξης γίνονται»*, այսինքն՝ «ով որ ապավեն ունի ամենասիրելի *հավատն* առ Աստված, նա և՛ տեր է լավագույն և՛ կատարյալ ***գիտության***» (10):

Մեթոդիոսի ներածության գլխավոր իմաստը ևս պահպանված է Եզնիկի մոտ: Պատարայի եպիսկոպոսը հակադրում է արտաքին բնությունը, նորա ահավոր երևույթների անշեղականությունը մի կողմից և ընկերական կամ մարդկային կյանքի հեղհեղականությունը մյուս կողմ արարչության տեսակետից: «Անցյալ օրը կանգնած ծովափին, - խորհում է Մեթոդիոսը, - դիտում էի բնության հրաշալիքները. խռովահույզ ծովը կուտակում էր ամեհի ալիքները, կարծես, պատրաստ էր ողողելու և լափելու երկիրը: Հանկարծ ստրկի հլությամբ հետ են քաշվում ջրերը և հանդարտում իր սահմաններում: Գերագույն և աներևույթ զորության արդյունք: Նույնկերպ և երկնակամարը իր շրջանառությամբ, արևը ծագելով և մայր մտնելով, լուսինը աճմամբ և նվազելով կրում են իրենց վրա անհաս վերին ուժի ներդաշնակ տընօրինությունը»:

«Դառնալով տուն», Մեթոդիոսը հանդիսատես է լինում այլ պատկերի, հասարակական կենցաղի ներհակ և անհաշտ երևույթների:

Այսպես բնության մեջ թագավորում է անփոփոխ ներդաշնակությունը, իսկ մարդկային կյանքում անկայունություն: Մի տեղ տիրում է մշտնջենական օրենքը, մյուսում՝ հեղհեղուկ ազատությունը:

Նույն հակադրությունը տեսարանների նկատվում է և Եզնիկի առաջաբանում: Խոսելով արեգակի, լուսնի և չորս տարրերի մասին հայ մատենագիրը ընդգծում է, որ որքան և դրանք գեղեցիկ և օգտակար լինին, իրենք այդ չգիտեն և չեն զգում: Անգիտակցությունն է այն մեծ անջրպետը, որ զատում է միմյանցից բանավոր և անբան աշխարհները: Արեգը, ջուրը, հուրը, օդն ու երկիրը «թէ իցեն և թէ չիցեն զայն ոչ գիտեն և զսպասաւորութիւնն, յոր կարգեցան անդադար մատուցանեն, վարելով այնր, որ



կազմեաց զնոսա»: Ուրեմն, բնության տարրերը անգիտակցորեն ընթանում են միանգամ ընդմիշտ սահմանված օրենքի համաձայն:

Օրինականության և կամ անհրաժեշտության սկզբունքը արտահայտում է Եզնիկը մի հրաշալի պատկերով, ուր Աստուծուն նմանեցնում է զարմանալի կառապանի, որ վարում է աշխարհը «իբրև զկառս լծեալ ի չորից երիվարաց», այն է չորս տարրերից:

Օրենքի աշխարհին կից տեսնում ենք մարդու ընկերային միջավայրը «լի անհարթություններով», այսինքն՝ բարվո և չարի խառնակ երևույթներով:

Արդ «ուստի են չարիք, ուստի են աշխատությունք, ուստի՞ են ըկանք» սա այն կնճիռը, որ լուծել է ձգտում հեղինակը:

Ադամանտիոսի մոտ ընդունված ձև է, որ երկու կողմերը նախքան վեճի բռնվիլը պարզում են իրենց տեսակետը. այնուհետև միայն բացվում է տրամախոսությունը:

Այսպես է եղել և Եզնիկի նախակաղապարում: Հավատարիմ նույն սովորության, առաջաբանը հայտարարում է, որ բնության իր ներդաշնակության մեջ անփոփոխ օրենքը, նորա «գեղեցկությունը», ծագում է Աստուծուց, իսկ հասարակական կյանքի չարության և բարության պատճառն է անձնիշխանությունը» (*αὐτεξουσία*) : Ահա ինչո՞ւ «չիք ինչ չար, որ բնութեամբ չար իցէ և ոչ է արարիչ չարաց իրաց, այլ բարեաց»:

Հակառակորդի տեսակետն է, որ բարին «ի բարւոյ արարչէ է», իսկ չարի աղբյուրը հյուլեն է կամ նյութը:

Այսպիսով Եզնիկի ներածությունը իր ներկա ձևով նման է կարծես մի կրկնագրի, որի մեջ նկատելի են հիմնական և թարմատար մասեր: Հիմնականը բաղկացած է եղել երեք եղածներից.

**ա.** Հավատ և գիտություն, **բ.** Բնական օրենքներ, որ անհաս են և անձնիշխանության միջավայր, որ քննելի և գիտելի է, **գ.** Երկու հակառակ տեսակետ քննելի միջավայրի կամ չարի և բարվո ծագման վերաբերյալ: Թարմատար են մնացյալ հավելումները, որ ծանրաբեռնել և սքողել են հիմնականը և տվել նորան արդի կերպարանքը: Կարծես թե հին նյութերը վերստին խմբագրված են:

Սույն բնավորությունն է կրում և Եզնիկի գործի ամբողջությունը, այսինքն՝ այստեղ ևս նշմարելի են երկագրության կամ վերախմբագրության գծերը:

Մարիեսը Եզնիկի երկը բաժանում է երկուսի. առաջին մասը ընդգրկում է Ա, Բ, Գ գրքերը, իսկ երկրորդը՝ վերջին գիրքը: Այլև առաջին մասը վեր է ածում երկու հատվածի:

Թվում է, թե այսպես է վարվել Մարիեսը Ադամանտիոսի տրամախոսության ազդեցության տակ: Ինչպես երևում է, նույն Ադամանտիոսի հե-

տևությամբ է, որ ծնունդ է առել Մարիեսի մտքում *«Ցաղագս Աստուծոյ»* վերնագիրը:

Ադամանտիոսի տրամախոսության մեջ առաջին վիճաբանողը ոմն Մեգեթիոս է, որ պաշտպանում է Մարկիոնի վարդապետությունը: Նրան հետևում է Մարկոսը, որ նույնպես կողմնակից է Մարկիոնի ուսման: Միջնորդ դատավորը ոմն Եվտրոպիոս երկու կողմերը լսելուց հետո կարդում է իր վճիռը:

Այնուհետև հրապարակ են գալիս հաջորդաբար շարունակելու վեճը Մարինոս, Դրոսերիոս և Վալենտոս, որոնք բոլորեքյան կանգնած են գնոստիկ Վալենտինիանոսի տեսակետի վրա և ջատագով են նրա հայացքների: Վերջը դարձյալ նույն դատավորը արձակում է իր վճիռը:

Քանի որ երկու անգամ է միայն դատավորը որոշում տալիս, տրամախոսությունը բաղկացած պետք է համարել երկու բաժնից, նվիրված երկու աղանդավորների՝ Մարկիոնի և Վալենտինիանոսի ուսմանց քննության: Այսպես է բաժանված Ադամանտիոսի գործը նորա նոր և քննական հրատարակության մեջ[1]:

Ադամանտիոսի աշխատության կերտվածը խիստ կարևոր է Եզնիկի կազմը և շենքը հասկանալու համար:

Տրամախոսության մեջ վիճաբանությունը սկսվում է Մարկիոնից և կրում է դավանաբանական բնույթ, ինչպես կարելի է տեսնել Ադամանտիոսի credo-ից և դատավորի վճռից: Միանգամայն հասկանալի է, թե ինչո՞ւ համար Ադամանտիոսի գործը կոչվում է *Περὶ τῆς εἰς θεὸν ὀρθῆς πίστεως*, *«Ցաղագս* որ յԱստուած *ուղիղ հաւատոյ»:*

Այլ կարգ է Եզնիկի մոտ: Այստեղ առաջին տեղը բռնում է Վալենտինիանոսը և վեճը բոլորում է չարի խնդրի շուրջը: Առաջին գրքի սկզբի գլուխները Ա-ԺԴ, ազատ թարգմանություն են Մեթոդիոս Պատարացու (կամ Օլիմպիացու) գրվածքի: Մեթոդիոսից է քաղում նաև Ադամանտիոսը Վալենտինիանոսի վերաբերյալ էջերը:

Հետևյալ ԺԵ-ԻԷ գլուխները կազմում են առանձին հոդված նույն հարցի առթիվ: Սորա սկսվածքը, որ է՝ «արդ յետ այսր ամենի հաւանութեանց յամառեալ զնոյն ի մէջ բերին», արդեն ցույց է տալիս, որ այս հատվածը այլ ծագում ունի, քան նախընթաց գլուխները:

Նույն առաջին գրքի վերջին ԻԸ գլուխը ամփոփումն է վիճաբանությանց, կարծես թե դատական որոշում, ինչպես Ադամանտիոսի մոտ: Եվ ապա հայտարարվում է, որ վեճը անցնում է պարսից քեշին:

Այս բաժինը բռնում է երկրորդ գրքի Ա-ԻԳ գլուխները: Հետաքրքրական

[1] Dr. W. H. Van de Sande Bexhuysen, Περὶ τῆς εἰς θεὸν ὀρθῆς πίστεως, 1901.



է նկատել, որ ԻԳ գլխի վերջին տողերը դարձյալ արձագանք են դատական վճռի. «Եվ յայս ամենայնէ յայտնէ, եթէ ոչ է բնութեամբ չար այլ կամօք» և այլն: Սորանով վերջանում է պարսից կրոնի հերքումը:

Երկրորդ գրքի մնացած մասը սկսված ԻԴ[գլխից] նվիրված է աստեղագետների և նրանց նմանների ուսմունքին:

«Բայց քանզի ի նմին յամառութեան կան, զամենայն ինչ կենդանի և շնչաւոր համարելով, ոչ հեղգասցուք և այնմ ևս առնել պատասխանի», այս խոսքերով հեղինակն անցնում է երրորդ գրքին, որն, ակներև, նույն վիճաբանության շարունակությունն է, միայն թե հեղինակի աղբյուրն է փոխված, կամ ինչպես Ադամանտիոսի մոտ է, մի երկրորդ անձն է առաջ գալիս, նույն դրությունը պաշտպանելու շատ թե քիչ տարբերությամբ:

Սույն վեճը կլանում է ամբողջ երրորդ գիրքը մինչև վերջին գլուխը: Վերջին, այն է՝ ԺԷ գլուխը, նորեն մի տեսակ եզրափակություն է վիճաբանության, դատական վճռի նման, որ նշան է զրույցի ավարտման:

Եզրափակությունը, սակայն, գրավում է միմիայն ԺԷ գլխի առաջին երկու տասնյակի չափ տողերը: Սրան հաջորդում է մի հատված, որը սկսվում է. «և բազում պատճառք էին և այլն», որ ոչ այլ ինչ է եթե ոչ Մեթոդիոսի գրության վերջին մասը: Եվ ապա մի ներածականով, որ նույն ԺԷ գլխի վերջին մասն է սկսած՝ «և արդ ի զուր ջանան» (էջ 270), հեղինակն անցնում է մարկիոնականության քննության, որին հատկացրած է ամբողջ վերջին, այն է՝ չորրորդ գիրքը[1]:

Ուշադրության արժանի՝ Մեթոդիոսի կտորը, երեք էջ՝ 236-239, նրա իսկական տեղն է Ա գրքի ԺԴ գլխից հետո: Եզնիկն այստեղ, ԺԴ գլխով ընդհատում է Մեթոդիոսի փոխառությունը: Սորանով իսկապես ավարտվում է չարիքի մասին տարած վեճը: Այնուհետև խոսակիցը, ուրեմն Վալենտինիանոսը նորեն դառնում է հյուլեի խնդրին և հարց տալիս. եթե հյուլեն սկզբնակից չէ Աստծուն և առաջ գոյություն չուներ, ինչո՞ւ այժմ գոյություն ունի և ինչո՞ւ համար է Աստված նորան ստեղծել:

Ահա այս հարցի պատասխանն է ամփոփում հիշյալ կտորը:

Արդ ինչպե՞ս է պատահել, որ սա անջատվել է մայր բնագրից և ընկել այնքան հեռու, այսինքն՝ Ա գրքի ԺԴ գլխից ընկել է Գ գրքի ԺԷ գլուխը: Չափազանց կարևոր հարց, որի պատասխանը կարող է հեղաշրջել մեր ավանդական հասկացողությունը Եզնիկի մասին, այլ կերպ ներկայացնելով մեզ նորա գործի ճարտարապետությունը:

[1] Այս ներածականը իսկապես պատկանում է հետևյալ գրքին, և նոր հրատարակության մեջ պետք է այդպես էլ զետեղել, ինչպես որ առաջին հրատարակիչն Աբբահայր վարդապետն է արել և ի զուր վենետիկցիք փոխել են:

Անջատումն տեղի է ունեցել, շնորհիվ միջամուխ հոդվածների, որոնք ներս մտնելով սեպի պես ճեղքել և բաժանել են Մեթոդիոսի գրությունը երկուսի: Եթե հանենք հեռացնենք նրանց զատող հոդվածները, Մեթոդիոսի գործը պառակտված կտորի միջոցով անմիջապես կմիանա Գ գրքի, կամ Մարկիոնի ուսմունքին: Կստանանք մի նախակաղապար, բաղկացած միմիայն Վալենտինիանոսի և Մարկիոնի վարդապետությանց նվիրված *վիճաբանությունից*: Այս եզրակացությունը գայթակղիչ է մանավանդ նրանով, որ ինչպես վերև տեսանք՝ Ադամանտիոսի գործը ևս ճիշտ այդ երկու աղանդավորներով է զբաղված մի ձևական տարբերությամբ, որ այստեղ առաջ Մարկիոնականն է վիճում, հետո Վալենտինականը:

Ի նկատի ունենալով Եզնիկի խնամությունը Ադամանտիոսի հետ, անհիմն չի լինել ենթադրել, որ հայ մատենագրի հույն նախակաղապարը նման կազմ է ունեցել: Պարսից և հույն կրոնների հերքման միջամուտ հավելումով նախակաղապարի ամբողջությունը քակտվել է և Վալենտինիանոսի գիրքը անջատվել Մարկիոնից, և երբեմնյան միության հիշատակը պահել է մեզ Վալենտինիանոսի գրույցի կտոր, որ մնացել է կառչած Մարկիոնի ներածականի սկզբում:

Կարևորը, սակայն, այդպիսի նախակաղապարի գոյությունը չէ, թեև նա հասկանալի կկացուցաներ մեզ, թե Եզնիկի մերձավորությունը Ադամանտիոսին և թե այն շեղումները, որ նկատվում են նորա մոտ Մեթոդիոսի գործի թարգմանության մեջ: Այս բոլորը կարելի էր վերագրել ենթադրյալ նախակաղապարին:

Կարևորը միջամտության փաստն է, այն որ առաջին գրքի ԺԵ գլխից մինչև երրորդ վերջընթեր գլուխը համեմատաբար նորամուտ մասեր են: Չենք ուզում ասել, որ դրանք անհարազատ միջանկներ են (interpolation): Մենք պաշտպանում ենք այն միտքը, որ դրանք այլ աղբյուր, այլ ծագում ունին երկի ճարտարապետության, կառուցումի տեսակետից: Անցնենք դրանց քննության:

Աղանդների հանդիմանությունը լոկ տեսական, այսպես ասած, գիտական հարցասիրության նյութ չէ Եզնիկի համար: Նա ունի և գործնական նպատակներ: Քննելով և տապալելով խոշոր վարդապետական սիստեմները, նա աշխատում է վանել ժողովրդի մեջ արմատացած շրջուն գաղափարներն ու հավատալիքները, մշակված դարերի ընթացքում հակաքրիստոնեական ուսմունքների տակավին մթնոլորտում, աշխատում է հնացած մեռած աշխարհայացքների մնայուն ստվերները վանել քրիստոնեական գիտության լույսով:

Այդպիսի գործնական նշանակություն ունի առաջին գրքի երկրորդ մասը ԺԵ-ԻԷ, այսինքն՝ առաջին մեծ հոդվածը այն բաժնի, որ անվանեցինք



միջամուխ: Ժողովրդական կենդանի միջավայրից առած թանկագին նյութեր են, որ բերում է Եզնիկն ու լուսաբանում, պայքարելով հին տեսության հետ, հայ ժողովրդի հավատալիքների և պաշտամունքների աշխարհին վերաբերյալ հնավանդ տեղեկություններ են, շողուն գոհարներ հայ ֆոլկլորի, որ փայլում են Եզնիկի էջերում:

Այդ մասին կխոսինք առանձին հոդվածում (11), ի նկատի ունենալով նյութի կարևորությունը, այլև չուզենալով ծանրաբեռնել ներկա գրությունս: Հիշենք միայն այսքան, որ ԺԵ-ԻԷ միջամուխ գլուխները, մեր կարծիքով, քաղվածո բնավորություն ունին և բացի արդեն հայտնի աղբյուրներից, ինչպես, օրինակ, Հիպպոլիտոսը, Եզնիկն օգտվել է նաև մի հին հիշատակարանից, որ կոչվում է «Հարցումն և պատասխանիք Սրբոյն Գրիգորի Պարթևի»: Սորան է պարտական Եզնիկը մանավանդ հայ ֆոլկլորի վերաբերյալ թանկարժեք նյութերը:

Այսպիսով Եզնիկի առաջին գիրքը բաղկացած է երկու տարբեր տարրերից. հիմնական կամ թարգմանածո *բնագիր* (Ա-ԺԴ) և երկրորդական կամ թարմատար *հավելում* (ԺԵ-ԻԷ):

Մեզ թվում է, որ երկրորդ գիրքն ևս իր կազմով նման է առաջինին, այն է, ունի հիմնական մաս և հարակից առտնին հարցերի և նրանց մեկնության նվիրված հավելում:

Հիմնական են համարելի Ա-ԺԲ գլուխները, ուր քննվում է պարսից քեշը կամ զրվանականությունը և հերքվում:

Հետևյալ մասը զբաղվում է ժողովրդական հավատալիքների հետ կապված մի շարք հարցերով, որոնք պահանջում են նոր լուսաբանություն, քանի որ հին պատասխանները, որ ծագում էին զրվանականությունից, թյուր ու մոլար պիտի ճանաչվեին նույն վարդապետության հերքումով:

Առաջին հարցն է. եթե չարը իբր սկզբունք ինքնուրույն հեղինակ չունի, եթե սատանան ևս ի բնե չար չէ, և մյուս կողմից Աստված անմասն է չարին, ապա որտեղի՞ց է մահը, և կամ արդյոք առաջուց որոշված է կյանքի սահմանը, թե ո՛վ երբ պիտի մեռնի. ուրիշ խոսքով, ճակատագիր կա՞, թե չէ, ինչպես պնդում են աստղագետները: Սրան պատասխանում են ԺԳ, ԺԴ և ԺԵ գլուխները:

Իսկ եթե ճակատագիր չկա, ինչպե՞ս հասկանանք Աստուծո կանխագիտությունն ու կանխահատուցումն: Այս հարցին հատկացրած են ԺԶ և ԺԷ գլուխները:

Անձնիշխանությունն է պատճառ չարության և բարության: Առանց ընտրության իրավունքի մարդիկ կնմանեին անբան և անպատասխանատու անասուններին, որոնք գործում են հիշողությամբ և բնազդով և ոչ գիտակցորեն:

Բայց ինչպե՛ս հաշտեցնել գիտակից արարմունքի հետ բնազդից բխած թելադրանքները, որոնք հատուկ են մարդուն ինչպես և նախագուշակ երազները:

Հեղինակն իր բացատրության մեջ ստիպված է հաշվի առնել և դևի մասնակցությունը մի քանի դեպքերում, ուստի և խոսքը կնքում է նորեն սատանայից դառնալով: Այս հարցը բռնում է ԺԸ-ԻԳ գլուխները:

Երկրորդ գրքի սույն երեք հատվածները՝ ճակատագրի, կանխագիտության և բնազդի վերաբերյալ, Եզնիկի գրական շենքի մեջ նույնպիսի քարեր են, որպիսի առաջին գրքի երկրորդ մասը՝ ԺԵ-ԻԷ գլուխները, որ կոչեցինք թարմատար:

Հավանական էր, որ սրանք ևս առնված են մի տեսակ հարցարանից, նման Գրիգորի հարցմունքի: Առաջին՝ ճակատագրի հատվածը, որ սկսվում է ԺԳ գլխից, իրենից անմիջապես առաջ ունի մի հետաքրքրական խոստովանություն. «հրամանացն ևս հարցուածք սովին մտօք լուծանին»: Կարծես, մի պտամա ակնարկ է գրավոր հիշատակարանի՝ *հարցվածք* և *լուծումն* սովորական տիպարի[1]: Ճիշտ է, ճակատագրի և բնազդի վերաբերյալ տեսությունները կրում են, ինչպես կտեսնենք ստորև, Բարսեղ Կեսարացու «Վեցօրեայք»-ի ազդեցությունը, բայց այդ կարող էր լինել և Հարցարանում:

Կանխագիտության նայող հատվածը՝ ԺԶ գլուխը, սկսվում է «բայց զայն ևս գիտել պարտ է» բառերով, որ ակնհայտնի նշան է նոր աղբյուրին: Առաջին գրքում Գրիգորի հարցմունքից քաղած մասերը ընդմիջված են մի հատվածով, որ նմանապես սկսվում է «բայց և զայն ևս պարտիմք գիտել» նախադասությամբ (գլ. ԻԳ): Երկու դեպքում էլ խոսքը ի գրոց է, այսինքն՝ Ս. Գրքի վերա հիմնած: Գուցե սրանք Հարցարանից դուրս են և հեղինակի կողմից գիտական հավելումներ:

Երկրորդ գրքի վերջին հինգ գլուխները ԻԴ-ԻԸ, իսկապես, պատկանում են երրորդ գրքին, *ուր հերքվում է հույն իմաստունների հայացքները*: Անհավանական չէ բնավ, որ սրանք ուրիշ ծագում ունենան, քան երրորդ գիրքը: Փոխանցման նախադասությունը ԻԴ գլխի վերջին, «բայց քանզի ի նմին յամառութեան զան և այլն» թվում է արդարացնում է մեր ենթադրությունը: Այս դեպքում և հույն կրոնքներին նվիրած մասը կրածանվի մյուս գրքերի նման երկուսի, հիմնական, որ է երրորդ գիրքը և երկրորդական

[1] Նկատենք, որ էջ 153 տող 9, հետևում է մի հատված՝ «և միանգամայն հրամանացն ես հարցուածք սովին մտօք լուծանին», որի քննությունը բռնում է ԺԳ-ԻԱ գլուխները, և անմիջապես կապված չէ նախընթաց ԺԲ գլխի հետ, ուր խոսած է սատանայի մասին: Թվում է, որ ընդհատված թելը վերստին կանգնում է, սկսած 180-րդ էջ վերջին տողից, ուր նորեն սատանայի մասին է զրույցը՝ «և փորձել այնչափ իշխէ» և այլն:



կամ թարմատար, որ մի տեսակ ներածականի բնույթ ունենալով զետեղված է հիմնականին առաջ, նախընթաց ԻԴ-ԻԸ գլուխները:

Հետազոտության արդյունքը կարող էինք ներկայացնել պատկերորեն հետևյալ տախտակով:

I. Վալենտինիանոսի դեմ. հիմնական. Ա, գլ. ա-ժդ, թարգմ. Մեթոդիոսից.

թարմատար, ժե-իէ

(իը, եզրակացություն)

II. Պարսից քեշի դեմ. հիմնական. Բ, գլ. ա-ժբ

Թարմատար, ժգ-իգ

(իգ-ի վերջին տողերը եզրակացություն)

III. Հույն իմաստնոց դեմ. թարմատա՞ր. Բ, գլ. իդ-իը

հիմնական, Գ, գլ. ա-ժգ

ժէ սկիզբը՝ եզրակացություն

ժէ-ն շարունակություն Մեթոդիոսի[1]

Միջամուտ

IV. Մարկիոնի դեմ. հիմնական. Գ, գլ. ժէ, վերջին մասը. և Դ, գլ. ա-ժե

(թարմատար, ժզ)

Այսպիսով, Եզնիկի գործի ճարտարապետությունը կազմված է երկու մասից, Վալենտինիանոսի և Մարկիոնի հանդիմանությունները մի կողմից, և՛ պարսից և՛ հույն իմաստասերների հանդիմանություն՝ մյուս կողմից: Այլ և վերջինս ունի հիմնական մասեր, համազոր առաջինին, և երկրորդական կամ թարմատար լրացումներ:

Հիմնականները ծագումով տարբեր են թարմատարներից: Վալենտինիանոսի հանդիմանությունը, ինչպես հայտնի է, Մեթոդիոսի «**Յաղագս ինքնիշխանութեան**» գրվածքի հայացումն է:

Մարկիոնի հերքումն նմանություն ունի Ադամանտիոսի «Յաղագս ուղիղ հաւատոյ յԱստուած» տրամախոսության:

Անուրանալի է և նրա խնամությունը Ս. Եփրեմի և Իրինեոսի նման գրություններից, ինչպես ցույց է տալիս Մարիես: Ինչևիցե, աղբյուրը ամեն

[1] Գ-րդ գրքի ժէ գլուխը պետք բաժանել երեք մասի՝ ա) սկզբից մինչև հետևյալ էջ 5 տող. բ) էջ 236, տող 6-240, տող 8. գ) էջ 240, տող 9 - մինչև վերջ:

դեպքում անկասկած է, որ Մարկիոնի մասը ևս օտար բնագրի հայացումն է՝ նման Մեթոդիոսի գրության:

Ավելի քան հավանական ենք համարում, որ հայի հույն կաղապարում Մեթոդիոսի ընդդեմ Վալենտինիանոսի և անհայտ հեղինակի ընդդեմ Մարկիոնի գրվածքները միասին մի գործ են կազմելիս եղել այս կամ այն ձևով, նման Ադամանտիոսի, թե՞ մի այլ կերպ:

Այսպիսի մի դրություն ենք ենթադրում և միջամուտ մասի հիմնական հոդվածների նկատմամբ: Կարծում ենք, որ պարսից քեշի հերքումը , ինչպես և հույն փիլիսոփաների հայացքները, ոչ միայն թարգմանություն են օտար բնագրից, այլև հավանորեն միասին են եղել, մի հատոր են կազմել նույն բնագրում: Կանգ առնենք մի րոպե այս կարևոր հարցի վրա:

Պարսից քեշին նվիրած էջերը շատ մոտ աղերս ունին Թեոդորոս Մոպսուեստացու մի գրության հետ: Վերջինս մեզ չի հասել, բայց նորա բովանդակության մասին հակիրճ հաշիվ է տալիս բազմերախտ Փոտը իր Մատենադարանում: Թեոդորոսի գրությունն այնքան կարևոր է, որ վաղուց իր վերա է հրավիրել իրանագետների ուշադրությունը: Շատերի աչքից չի խուսափել Թեոդորոսի նկատողության նմանությունը Եզնիկին[1]: Բայց Մարիեսն առաջինն է, որ հարց է հարուցանում, արդյոք հայ հեղինակը կախում չունի Թեոդորոսից:

Եզնիկի զրվանականությանը նվիրած ճառում Մարիես որոշում է երկու շերտ, երկու հերքում և այն կարծիքն է ուզում հայտնել, որ մեկի աղբյուրը կարող է Դիոդորոս Տարսոնացին լինել և մյուս նորա աշակերտ Թեոդորոսը:

Սակայն, եթե երկվության ծագումն շիտակ ըմբռնենք, կարիք չի լինել տարբեր աղբյուրներ որոնել:

Ինչպես հայտնի է, պարսից քեշը մի քանի ճյուղեր ուներ: XII դարի հեղինակ Շահրեստանին որոշում է երեք դավանություն՝ զրադաշտական, գայումարթյան և զրվանական: Առաջինը ուսուցանում էր, որ Որմիզդն ու Ահրիմանը համագոյ են *a principio*, երկրորդը՝ որ Որմիզդն ու Ահրիմանը սկիզբն են առել Զրվանից, այն է ժամանակից[2]:

Դամասկիոսի ասելով, Եվդեմոս Ռոդոսացին, որ Արիստոտելի աշակերտներեն էր, գիտեր, որ կան երկու տեսակ մոգեր, կամ մոգական ուսմունք, մեկը ամեն բանի սկիզբն էր համարում տեղը (իմա՛ *տարածությունը*), մյուսը՝ ժամանակը. *Μάγοι... οἱ μὲν τὸπον οἱ δὲ χρόνον καλοῦσι τὸ νοητὸν ἄπαν*[3]:

---

[1] **Spiegel**, Eran. Altert. II, 184. **Darmesteter**, Ohrmazd et Ahriman, p. 338. **Casartelli**, La philosophie religieuse du mazdéisme, p. 5. **Joh. Mich. Schmid**, Wider die Secten des Eznik von Kolb. p. 90.

[2] **Katt. Pettazoni**, La religione di Zarathustra, p. 189.

[3] Frag. ph. gr. III, p. 289. **Darmesteter**, op. cit., p. 335.



Հետաքրքրական է, որ ըստ Ավեստայի (**վենդ**. 19, 13, 16) Ահուրա-Մազդան է, որ ստեղծում է տարածությունը *thwasa* և ժամանակը՝ *zrvan*.

Ժամանակի հասկացությունն, որ կապ ունի շարժուն երկնակամարի հետ, որը համարվում էր և՛ չարի և՛ բարվո տնօրեն, բնականորեն, ստանում է և բախտի նշանակություն, իսկ տարածությունը, երկնային անհուն տարածությունը իր պայծառությամբ նույնանում է լույս գաղափարի հետ[1]: Այսպիսով *χρόνος* և *τόπος* կամ *zrvan* և *thwasa* զուգորդվում են *baxta* և *farr*, բախտի և փառքի հետ:

Եզնիկն հենց սկզբից հայտնում է, որ Զրվան «թարգմանի բախտ կամ փառք»: Ասել է, թե նա ի նկատի ունի զրվանականության երկու ճյուղերը, որոնցից մեկը ընդունում է զրվան-բախտ և մյուսը զրվան-փառք վարդապետությունը: Հիրավի, առաջին վեց գլուխները նա հատկացնում է զրվան-փառքի քննության և հերքման, իսկ հետևյալ վեցը՝ զրվան-բախտին:

Արդ այս մեկնությամբ ընկնում է տարբեր աղբյուրների ընդունելու անհրաժեշտությունը: Եզնիկը կարող էր միևնույն հեղինակի մոտ գտնել իր երկփեղկ ընդդիմությունը: Եվ այդ հեղինակը, հավանորեն, Թեոդորոս Մոպսուեստացին է: Սրան է պարտական Եզնիկն ոչ միայն պարսից քեշի, այլև հույն իմաստասերների հանդիմանության հիմնական բնագիրները: Թեոդորոսի գրության կազմը հիմք է տալիս մեր կարծիքին:

Փոտի ասելով Մամուեստայի եպիսկոպոսի գրքույկը բաղկացած էր երեք գլխից կամ ճառից: Առաջին ճառը վերաբերում էր մոգական կրոնի քննության, իսկ մնացյալ երկուսը պարզում էին ճշմարիտ հավատի էությունը:

Ահա ինչ է ասում մոգության մասին. «Առաջին ճառում առաջ է բերում պարսից պիղծ հավատը, որ ավանդել է Զարադը, և որը վերաբերում է Զրվանին, որին սկիզբն է համարում ամեն բանի և որին կոչում է նաև բախտ: Եվ թե ինչպես զոհում է, որ ծնի Որմիզդին, բայց ծնում է բախտը և սատանային: Խոսում է նաև նրանց *արենապղծության* մասին: Մի խոսքով ամբարիշտ և խայտառակ հավատը կետ առ կետ մեջ բերելով, քննում է առաջին ճառում»[2]:

---

[1] **Darmesteter**, op. cit., p. 338. **Casartelli**, op. cit., ավելի պարզ մեկնություն է տալիս, հենվելով Շահնամեի մի տողի վրա, ուր ասում է որ *zaman* ունի իր *zamane*, այսինքն՝ ժամանակն իր դժբախտությունները: *Zrvan* իբր նույնանիշ *zaman*-ի կարող էր ստանալ *zamane*-ի նման բախտի նշանակություն: Եթե ի նկատի ունենանք, որ Աստուծո գաղափարը հնում արտահայտվում էր dhaga բառով, որ նշանակում է բաշխիչ (հավանորեն, երկնային լույսի) և որից է և *baxta* բաշխյալ, բնական կլիներ տեսնել հնության արձագանք, հին Աստուծո հատկությունը վերաբերած բաբելոնյան աշխարհից առած (համեմատաբար նոր) զրվան հասկացողության:

[2] P. G., 103, col. 281. բնագիրը բերած ենք «Մաշթոց և նրա աշակերտները» հոդվածում, տե՛ս «Հանդես Ամսօրյա», 1925: Բերված է նաև Մարիեսի մոտ՝ «Le de Deo d'Eznik de Kolb», Paris, 1924.

Այստեղ հիշված Զարադը հայտնի Զրադաշտն է, Զարադուստրան: Զրվանի ուսմունքը, իսկապես, Զրադաշտին չի պատկանում, ինչպես երևում է վերև հիշած Շահրեստանի վկայությունից: Բայց Թեոդորոսը, ինչպես և Եզնիկը վերագրում են Զրադաշտին:

Արենապղծության հիշատակությունը ակնարկ է Որմզդի խառնակության իր հարազատ մոր և քրոջ հետ, որպեսզի ծնե արևն և լուսինը: Եզնիկը հիշում է երկու ավանդություն, որից մեկը տալիս է Զրադաշտին. «արդ զմին Զրադաշտ ոմն զեղխագործութեան (փոխ.ի, զեղխագործութիւնէ˜) դնէ, եթէ ի մայրենի և ի քեռական առականաց արեգակն և լուսին արարան»[1]: Նույնը կրկնում է Բ, 3՝ «և ապա մայրենի և քուրական (!) առականօք զարարած լուսաւորացն մուծանէ»: Դարձյալ՝ Բ, 8՝ «արդ եթէ իմաստուն էր, ընդ մօրն մտանէր և արեգակն որդի լինէր և ընդ քեռն անկանէր և լուսին ծնանէր»:

Թեոդորոսի գրությունը զուգադիպում է Եզնիկին և Զրվանի բախտ կոչումով, *ζουρουάμ... ὃν καὶ Τύχην καλεῖ*. Եթե Զրվան բառը իրոք բախտ նշանակեր, զարմանալի չէր լինի այս զուգադիպումը: Բայց որովհետև երկու բառերը իրար մոտ է բերում և միացնում միայն վարդապետական մեծ կամուրջը, և ուրիշ տեղ չենք գտնում նման հիշատակություն, ուստի պետք է ենթադրել, որ շատ մոտիկ աղերս կա երկու հեղինակների մեջ, աղերս որ նույնանում է փոխառության հետ[2]:

«Երկու մյուս ճառերում Թեոդորոսը բացատրում է, թե ի՞նչ է ճշմարիտ հավատը, սկսելով արարչագործությունից, բացատրում է նաև շնորհի հանգամանքները նույն ոճով, թեև համառոտակի»:

Այս Թեոդորոսը թվում է, թե Մոպսուեստացին է, ավելացնում է Փոտը, «որովհետև Նեստորի աղանդի մասին մանավանդ երրորդ ճառում նախաքարոզ է լինում պարզորեն, այլ և քարոզում է մեղավորների վերականգնման մասին»:

Քարսեղ Կեսարացին *«Վեցօրեայք»-ի* մեջ հաճախ կոչ է անում հեթանոս, առավելապես, հույն իմաստասերների հայացքներին, մեջ է բերում

1 Եզնիկ Կողբացի, Բ, 9:

2 Թե որտեղից է առնում ինքն Մոպսուեստացին, այդ խնդիրը մեր անմիջական զբաղման նյութ չէ: Սկզբնական աղբյուրն, անշուշտ, պահլավական է, օր. Minok-i-xrat հայտնի հիշատակարանը զիտե, որ Զրվանը նույնանիշ է բախտի կամ այդպես է կոչվում, տե՛ս **Darmesteter**, *Ohrmazd*, էջ 318: Եղեսիա իր հռչակավոր դպրոցով վաղ ժամանակվանից զիտության լուսատու ջահ էր և խոշոր անուններ ուներ, որոնք ամեն տեսակ հերետիկոսության դեմ ոգորել են: Կիլիկիա և Ասորիք, Թեոդորոսի գործունեության վայրերը, հեռու չէին Եղեսիայի լուսավոր մթնոլորտից:



նրանց վարդապետությունը, հիշատակում է նաև աստղագետների ուսմունքը, որպեսզի ցույց տա նրանց տկարությունը, հերքե և փոխարենը սերմանե քրիստոնեական հավատից բղխած ճշմարիտ տեսություններ և մեկնություններ:

Շատ կետերում նկատվում է մոտ առնչություն Քարսեղի և Եզնիկի մտքերի մեջ, առնչություն, որ երբեմն նույնանում են և լեզվական դարձվածներով:

Արդ Թեոդորոսի երկրորդ և երրորդ ճառերը կարող էին *«Վեցօրեայք»-ի* հետ ընդհանուր գիծ ունենալ և արարչության հարակից և նրա առթիվ հարուցանելի խնդիրների քննությունն ու լուսաբանությունը պարունակել: Այս դեպքում Թեոդորոսի երկու ճառերը կմոտենային իրենց բնավորությամբ Եզնիկի երրորդ հիմնական բնագրին, ուր քննվում է աստեղագետների և փիլիսոփաների ուսմունքը:

Թեոդորոսը երրորդ ճառում խոսում է շնորհի մասին, այսինքն՝ Քրիստոսի մարդեղության: Եզնիկն ևս ճիշտ համեմատելի մասում (Գ, 16-րդ գլխում), բոլոր կրոնների տեսությունից հետո, կանգ է առնում այն հարցի վրա: Ուշագրավ է մանավանդ, որ մեկնել կամենալով թե «ընդէր յամեաց գալուստն» Քրիստոսի՝ բերում է բժշկի օրինակը[1], որը գտնում ենք Որիգենեսի մոտ, և որը նորանից անցել է մյուս հայրերին, ինչպես ցույց է տալիս Մարիեսը[2]: Նույն քննադատը մատնանիշ է անում և մի ուրիշ օրինակ, որ հավասարապես գտնում ենք Եզնիկի և Որիգենեսի մոտ[3]: Այս կետերը ևս մերձեցնում են Եզնիկին Թեոդորոսին:

Փոտ պատրիարքը դժգոհ է, որ Թեոդորոսը քարոզում է մեղավորների վերականգնման մասին: Խոսքը *ἀποκατάστασις*-ի մասին է, մի հասկացողություն, որ հեղինակը Որիգենեսն է[4], և որ հետագայում խոտելի համարվեց եկեղեցու կողմից:

Արդ այս հանգամանքը կապում է Թեոդորոսին գաղափարական թելով հռչակավոր Աղեքսանդրացու հետ: Որիգենյան նյութերը, ուրեմն, Թեոդորոսից կարող էին անցնել Եզնիկին: Սրանով մեր ենթադրությունը Եզնիկի և Թեոդորոսի հարաբերության մասին մի նոր նեցուկ է ստանում:

Կա ավելի կարևոր փաստ: Փոտ պատրիարքը վկայում է, որ Թեոդորոսի մեզ զբաղեցնող ճառերը ուղղված են եղել մի հայ քորեպիսկոպոսի, որի

1 Եզնիկ Կողբացի, Գ, 16, էջ 233:

2 **L. Maries**, Le De Deo d'Eznik de Kolb, p. 58.

3 Անդ, էջ 56:

4 **J. Tixeront**, Histoire des dogmes, I, p. 327.

անունը հնչում է *Μαστώβιος* Մաստուբիոս: Խոսքը, անտարակույս, հայ լուսավորության հայր Մաշտոցի մասին է: *Μαστώβιος*-ը ուղղելու է *Μαστούζιος*: Մեր դիտողությունները այս առթիվ հայտնել ենք առանձին հոդվածում և պարզել այն հիմքերը, որոնք թիկունք են տալիս մեր կարծիքի[1]: Մաշտոցի համար գրված երկը, իհարկե, կարող էր տրամադրելի լինել նրա սիրասուն աշակերտին՝ Եզնիկին:

Թեոդորոսի գրության մերձավոր առիթը հայտնի չէ: Հայ գրի անխոնջ աշխատավորը կարող էր իր որոնումների ժամանակ հարաբերության մեջ մտած լինել նորա հետ:

Հայաստանը միայն աշխարհակալների քաղաքական տենչանքների մրցարան չէր, այլև կրոնական և գաղափարական մեծ շարժումների, հին և նոր քաղաքակրթությանց նշանավոր հանգույց: Հնարավոր է, որ Մաշտոցը բացի տեսական, հարցասիրական կարիքից, ունենար և որևէ գործնական շարժառիթ, ասենք, մոլար ուսմունքների տարածման իրական թե սպառնացող վտանգի դեմ մաքառումը:

Մաշտոցին մատչելի գրականությունը սեփականություն կարելի է համարել նրա դպրոցի: Եզնիկն, իբր նրանցից մեկը, հնարավորություն ուներ օգտվելու Թեոդորոսի առ Մաշտոց գրած գործից այս կամ այն չափով:

Ուշի-ուշով դիտելով Եզնիկի երկը՝ «Եղծ աղանդոց»-ի բնագիրը, իր ներկա կացությամբ, գալիս ենք այն եզրակացության, որ նա հերյուրված է երկու տեսակ նյութից, հիմնական և թարմատար: Մեկը՝ դրա դրական շենքի քարերն են, մյուսը՝ շաղախ: Դրանք տարբեր են ծագումով և արժեքով:

Արդ դրանց իրար մոտ բերել և շարել կանոնավոր գծերով նուրբ խմբագրական գործ է, մի տեսակ վերագրություն այն մտքով, ինչ որ ասացինք առաջաբանի նկատմամբ: Հիմնական անվանածս մասերը, անկասկած, թարգմանածո են, և ոչ միայն գնոստիկների հանդիմանությունը, որ Մեթոդիոսի հայացումն է, այլև Մարկիոնի, ինչպես և զրվանականության և հույն փիլիսոփաների հայացքների:

Թարմատար հատվածներն ևս, թվում է, գրավոր աղբյուրներից են քաղած. գոնե հայ ժողովրդական մտաշխարհին վերաբերյալ նյութերը, անպայման, առնված են մի գրավոր հիշատակարանից, որ հասել է մեզ:

Բնականորեն ծագում է մի օրհասական հարց. արդյոք միևնույն անձն է, որ հայերենի է վերածել օտար աղբյուրները և հետո նրանց ավելացրել այն՝ ինչ որ գտել է պատրաստի ընթացիկ հայ գրականության մեջ, թարգմանածո թե ինքնուրույն, և այսպիսով շաղկապել մի ամբողջական երկ. թե այլ ոք է,

[1] Ն. Ադոնց, Մաշտոց և նրա աշակերտները, «Հանդես ամսօրյա», 1925:



որ թարգմանել է օտարը և այլ՝ որ խմբագրել է, խառնելով օտար և հայ նյութերը[1]:

Եթե մի անձի գործ է, արդյոք հնարավո՞ր է հայ ֆոլկլորի բանկագին էջերը պարունակող «Հարցմունք Գրիգորի» հիշատակարանը, որ աղբյուր է ծառայել «Եղծ աղանդոց»-ին, տանել և զետեղել հայ դպրության արևածագին (12): Իսկ եթե չէ, եթե հիշատակարանը ավելի ուշ գրություն է, ինչպե՞ս հասկանանք նրա ձուլումն երկի ամբողջության հետ:

Կամ Հիպպոլիտոսի հատվածը, ո՞վ է ներս առել երկի մեջ, գրքի վերջին ճարտարապե՞տը, թե իսկական հեղինակն ինքն՝ Եզնիկը և ուրեմն Հիպպոլիտոսի թարգմանությունը նախքան Եզնիկն է: Դժվար հարցեր են, սերտորեն կապված հայ դպրության ծագման բարդ հարցին:

«Եղծ աղանդոցն» իր նյութով և բովանդակությամբ իսկ մի ինքնօրինակ երևույթ է ամբողջ հայ գրականության մեջ և նորա բազմիլը գրական երախայրիքների կողքին, նորա այնքան վաղ երևումը, գրեթե առեղծված: Անշուշտ, մի մերձավոր առիթ լինելու էր. պարզել նորա իսկական շարժառիթը, կնշանակեր ձեռք բերել մի վստահելի կռվան, ժամանակագրական հենակետ, ներշնչածս կասկածները որոշ սահմանների մեջ պահելու համար:

Եզնիկի ժամանակ ընդհանուր եկեղեցու կյանքի մեջ ամենախոշոր երևույթը Եփեսոսի ժողովն էր: Եթե ոչ ներկա և մասնակից ժողովի զբաղմունքներին և կամ սոսկ ականատես, 431 թվի մոտերքը այնտեղ լինելով՝ մոտեն ծանոթ էր ժողովի գործունեության:

Ժողովականները նիստերը փակելուց հետո մի նամակ են ուղղում Կելեստին պապին (422-432), ամփոփ հաշիվ ներկայացնելով ժողովի գործունեության մասին: Նամակի վերջում ասում է հետևյալը. «*Ἀναγνωθέντων δὲ ἐν τῇ ἁγίᾳ συνόδῳ τῶν ὑπομνημάτων τῶν πεπραγμένων ἐπὶ τῇ καθαιρέσει τῶν ἀνοσίων Πελαγιανῶν καὶ Κελεστιανῶν, Κελεστίου Πελαγίου, Ἰουλιανοῦ, Περσιδίου, Φλώρου,*

[1] Հայ նյութեր ասելով չենք ուզում հասկանալ այնպիսի մանրուք, ինչպես «խարամանի» մեկնությունը, որ խմբագրի անձնական կարծիքը կարող էր լինել, նմուշ ժողովրդական կոչված ստուգաբանության. խարամանի իբրև թե Արհմնի մականուն է «առ ի յարևէ զարեգակնատենչիկսն արկանելոյ, ուստի և զանունն իսկ խարամանոյ առ»: Խարաման Աhրիմանի, ուրեմն Արհմնի. մի այլ և ավելի հին հնչումն է, ավելի ուղիղ Հարիման. բայց մեր հեղինակը սխալմամբ կապում է պարսիկ խար: *khvār* բառին, որ արև է նշանակում, և հնարում մի մտացածին բացատրություն:

*Μαρκελλίνου, Ὀρεντίου καὶ τῶν τὰ αὐτὰ τούτοις φρονούντων, ἐδικαιώσαμεν καὶ ἡμεῖς ἰσχυρὰ καὶ βέβαια μένειν τὰ ἐπ ἀυτοῖς ὡρισμένα παρὰ τῆς σῆς θεοσεβείας*»[1]: («Կարդալով սուրբ ժողովում այն վավերագիրները, որոնք վերաբերում են անարժան Պելագիականների և Կելեստիականների կարգալուծման, այն է Կելեստիոսի, Պելագիոսի, Հուլիանոսի, Պերսիդիոսի, Փլորոսի, Մարկելլինոսի, Օրենտիոսի և մյուս սրանց նման խորհողների, որոշեցինք մենք ևս, որ քոյդ Աստվածապաշտության կողմից տված վճիռը հաստատ և անխախտ մնա»):

Պելագիականությունը բավականին զորեղ շարժում էր, որ արևմուտքից անցավ նաև արևելք և կարող էր ծանր հետևանքներ ունենալ, եթե Ս. Օգոստինոսի ընդդիմությունը չլիներ, որի շնորհիվ նորալուր ուսմունքը խեղդվեց:

Պելագիոս-Օգոստինյան վեճը սերտորեն կապված էր անձնիշխանության հարցին: Առիթը Օգոստինոսի աղոթքն էր. «da quod iubes et iube quod vis»՝ «տուր ինչ որ հրամայում ես, և հրամայիր ինչ որ ուզում ես»[2]: Պելագիոս (Pelagius) կրոնավորը այս մտքի մեջ տեսնում էր մարդու բանկամքին իրավունքի նսեմացումն: Նորա քողոքը շուտով համակրողներ գտավ, որոնց մեջ ամենից մոլեռանդն էին Կելեստիոս (Celestius) և Հուլիանոս:

«Libertas arbitrii, qua a Deo emancipatus homo est, in admittendi peccati et abstinendi a peccato possibilitate consistit»՝ «Անձնիշխանությունը, որով մարդս ազատագրված է Աստուծուց, մեղք գործելու կամ մեղքից հրաժարելու հնարավորությունն է»[3]:

Անձնիշխանություն, հունարեն *αὐτεξουσία*, liberum arbitrium այն է, ինչ որ նոր ժամանակներ փիլիսոփայության մեջ կոչվում է ազատ կամք: Հույն փիլիսոփաների տեսակետը, որ լավագույն և որոշակի ձևակերպումն ստացավ ստոիկյանների դպրոցում, մարդու կամքի ազատության խնդրում յուրացրել է քրիստոնեական եկեղեցին: Ընտրության իրավունքը, եկեղեցու հայրերի վարդապետությամբ, հենց այն աստվածային պատկերի արտահայտությունն է մարդու մեջ, որի մասին խոսում է Արարչության գիրքը: Այս կետում բոլոր հայրերը համաձայն են: Տարաձայնությունը սկսվում է, երբ անցնում են առաջին մարդու մեղսագործության, Ադամի անկման:

Առաջին հանցանքը գործելուց հետո շնորհիվ Ադամի պատվիրազանցության, արդյոք մարդու անձնիշխանությունը վտանգվո՞ւմ է, թե՞ մնում է իր զորության մեջ:

[1] P. L., 50, col. 522.

[2] Runze, Freiheitswillen, Realencyclopädie für Prot. Teol. Kirche, հատ. 21, էջ 312.

[3] Pelagii libellus fidei (P. L., 45, col. 1716). J. Tixeront, Hist. des dogmes, II, 438.



Եկեղեցու տեսակետն այն էր, որ մարդը ստեղծված էր անմահ, անցավ և անհաղորդ աշխարհային դառնությանց: Ստանալով ազատ կամք, նա կատարյալ տեր իր բախտի, եթե պատվիրապահ լիներ, կմնար այնպես, ինչպես ստեղծված էր: Բայց նա ընտրեց չարը, պատվիրազանց լինելով, որով և վիճակվեց նորան մահ և՛ ցավ, և՛ վիշտ, և՛ ամեն տեսակ թուլություն:

Արդ նախահոր անկումը ինչպե՞ս է անդրադառնում նորա սերունդների վերա, ի՞նչ վիճակ է պատրաստել մեզ համար. արդյոք բոլորս մեղսակից ենք նորան, նորա անձնական մեղք մեզ է անցել ժառանգաբար, թե Ադամը պատասխանատու էր միմիայն իր համար, և մենք անկախ նորանից հիմնվելով ի բնե մեզ տված ազատ կամքի, անձնիշխանության սկզբունքի վերա, մնում ենք տեր և տնօրեն մեր վիճակի:

Պելագիական ուսումը պատասխանում էր այս հարցին առանց տատամսելու, որ անձնիշխանության սկզբունքը մնում է ինչպես առաջ անկապտելի և ուրեմն մարդ կարող է, հնարավորություն ունի, անմեղ լինելու. «ego dico posse esse hominem sine peccato»:

Այս տեսակետը խորշելի էր եկեղեցուն, քրիստոնեական վարդապետության, իբրև մի հայացք, որ ավելորդ էր կացուցանում աստվածային շնորհը, Քրիստոսի մարդեղությունը, որի նպատակն էր փրկել մարդկությունը սկզբնական մեղքից: Հիրավի, եթե մարդուն տված էր կարողություն անձնիշխանության միջոցով զերծ մնալ մեղքից, ապա իզուր է Քրիստոսի՝ Աստուծու Որդու գալը: Որպեսզի մարդեղությունը իմաստ ունենա, պետք է որ մարդիկ իրոք ճանաչվին մեղապարտ, հանցավոր առաջին մեղքով: Ս. Աթանաս ասում էր, որ Ադամա մեղքը անցել է բոլորին, *είς πάντας ἀνθρώπους ἔφθασεν ἡ ἁμαρτία* և Քրիստոսն է, որ սրբել ազատել է մեզ նորանից[1]:

Դիդիմոս Կույրի կարծիքով նախահոր հանցանքն արյան հետ անցել է սերնդեսերունդ *κατὰ διαδοχήν* ժառանգաբար[2]. շնորհիվ մարմնական կապի. ահա ինչո՞ւ Քրիստոս ծնվելով կուսից անմաս է նախնական մեղքից:

Այս հասկացողությամբ մեղքը բնածին է դառնում մեզ համար: Կյուրեղ Աղեքսանդրացին հետևողական է, երբ որ վկայում է, որ մեր բնությունն ինքն ենթարկվել է մահվան, *ἡ φύσις εὐθὺς θανάτῳ κατεδικάζετο*, մեր բնություն հիվանդացել է նորանով, *νενόσηκεν οὖν ἡ φύσις τὴν ἁμαρτίαν*[3]:

[1] Contra Aria., I, 51. Tixeront, անդ, II, 141:

[2] Contra Manich., VIII, 1055. Tixeront, անդ:

[3] Tixeront, III, 210.

Անտիոքի դպրոցը և այս խնդրում սեփական հայացք ուներ և տարբեր դիրք էր բռնում: Թեոդորետոսի տեսակետն է, որ ամեն ոք մեղավոր է ոչ թե նախահոր հանցանքի ժառանգմամբ, այլ իր անձնական մեղսալից կյանքի հետևանքով, *οὐ γὰρ διὰ τὴν τοῦ προπάτορος ἁμαρτίαν, ἀλλὰ διὰ τὴν οἰκείαν*[1].

Այսպես էր մտածում և Թեոդորոս Մոպսուեստացին, որ առանձին կարևորություն ունի մեզ համար: Բազմերախտ Փոտ պատրիարքը հիշատակում է Թեոդորոսի այս հարցին նվիրած և այժմ կորած մի գործը. *Θεοδώρου Ἀντιοχέως πρὸς τοὺς λέγοντας φύσει καὶ οὐ γνώμῃ πταίειν τοὺς ἀνθρώπους*, *«Թեոդորոսի Անտիոքացւոյ յաղագս այնոցիկ որք բնութեամբ ասեն և ոչ կամօք գործել մեղս զմարդիկ»*[2]:

Անտիոքացի է կոչվում Մոպսուեստայի եպիսկոպոսը իր ծննդավայրի անունով: Թեոդորոսը հայտնում է, որ ոմն հեռավոր արևմուտքից փախել է արևելք և այստեղից աղանդամիտ գրվածքներ է շարադրում և ղրկում իր հայրենիքը: Նորա անունը թե մականունը (հաստատ չգիտեմ) Արամ է, ասում է Թեոդորոսը, *Ἀρὰμ δὲ τὸν ἀρχηγὸν αὐτῶν (οὐ γὰρ ἔχω σαφῶς εἰπεῖν) εἴτε ὀνομάτει εἴτε ἐπονομάτει*. Նրա և իր հետևորդների ուսումն այն է, որ մարդու բնությունը Ադամից հետո փոխվել է դեպի վատը, որի հետևանքով *ἐν τῇ φύσει, καὶ οὐκ ἐν τῇ προαιρέσει κεκτῆσθαι τὴν ἁμαρτίαν*, բնությունից է և ոչ ընտրության իրավունքից մեղքի ծագումը: Այս պատճառով քարոզում են նաև, «որ երեխաները թեև նորածին ազատ չեն մեղքից, «*μηδὲ παιδία, κἂν ἀρτιγέννητα ᾖ, μὴ ἀπηλλάχθαι ἁμαρτίας*», և որ Ադամի շնորհիվ նորա ամբողջ սերունդը հանցավոր է. *καὶ εἰς πᾶν τὸ ἐξ ἐκείνου γένος τῆς ἁμαρτωλῆς (ὡς ἂν εἴποιεν) φύσεως παρατεινομένης*». Փոտը սխալ է գտնում Թեոդորոսի կարծիքը այն մասին, «որ Ադամը հենց սկզբից մահկանացու էր ստեղծված, միայն թե որպեսզի տեենք հանցագործությունը՝ Աստված այնպես է ձևացրել իբրև թե մահը սահմանել է, որպես պատիժ հանցագործության համար». «*ἔτι δὲ οὐδὲ τὸ λέγειν αὐτὸν ἀπ' ἀρχῆς μὲν θνητὸν πεπλάσθαι τὸν Ἀδὰμ, ἐνδείξει δὲ μόνον ἵνα μισήσωμεν τὴν ἁμαρτίαν σχηματίσαι οὕτω τὸν θεὸν ὡς διὰ τὴν ἁμαρτίαν ἀντὶ τιμωρίας ἐπιτένειται ὁ θάνατος οὐ μὲν οὖν οὐδὲ τοῦτό μοι δοκοῦν εἰς ὀρθοὺς ἀναφέρειν λογισμούς*».

Բավական է հիշել Պելագիոսի վարդապետության առաջին կետը, որ համոզվինք, թե որքան նա համամիտ է Թեոդորոսին. «Adam mortalem factum, qui sive peccaret, sive non peccaret, moriturus esset. Ադամը մահկանացու էր ստեղծված և ուրեմն մեղ գործեր, թե չգործեր, մեռնելու էր»: Երկրորդ կետը. «quoniam peccatum Adae ipsum solum laeserit et non genus humanum. մեղսագործելով նա միայն իրեն է վնասել և ոչ մարդկային սեռը»:

Երեխաների վերաբերյալ այն միտքն է հայտնում, որ նրանք մինչև անգամ եթե անկնունք են, ժառանգում են հավիտենական կյանք. «infantes, etsi non baptizentur, habere vitam aeternam»[1]:

Պելագիոսի և Թեոդորոսի գաղափարական համերաշխությունը զարմանալի չպիտի թվա, քանի որ հայտնի է, որ Պելագիոսի ուսուցիչը այս խնդրում Ռուփինոս ասորի քահանան էր: Իսկ Ռուփինոսը Թեոդորոսի աշակերտն էր, որ V դարու սկիզբը արևելքից անցավ Հռովմ և նորալուր վարդապետության սերմերը ձգեց:

Պելագիականության իսկական հեղինակը, այսպիսով, հանդիսանում է Մոպսուեստացին: Ով է այն Արամը, որի քարոզության առթիվ և նորա դեմ է դուրս եկել նա, հայտնի չէ: Հավանորեն, Արամ արամեացի, արամեական ծագում ունեցող անձ է նշանակում: Ոմանք ակնարկ են համարում Հերոնիմոսի կամ Օգոստինոսի հասցեին: Այս խնդիրները մեր զբաղման շրջանից դուրս են: Դուրս են նաև պելագիականության կապված անցուդարձերը: Կարևորը մեզ համար այն փաստն է, որ խռովահույզ հարցը դառնում է Եփեսոսի ժողովի զբաղման նյութ և այնտեղ է գտնում հեղինակավոր լուծում:

Եփեսոսյան մթնոլորտին այնպես ընտանի Եզնիկը բյուզանդական մայրաքաղաքում եղած ժամանակ, անշուշտ, պիտի առիթ ունենար ծանոթանալու աղմկող հարցին: Թերևս այս պայմաններումն է, որ հղացել է իր մեծ գրական գործի միտքը: Մարդու ազատության՝ անձնիշխանության շուրջը բոլորող վիճաբանությունն և այն՝ ընդհանուր եկեղեցու ծոցում մի ավելի քան պատեհ դեպք էր, որպեսզի հայ եկեղեցականը պարտք զգար նույն հարցը որոճալու և հետևանքը ներկայացնելու իր հայրենի եկեղեցուն ճշմարտության լույսով:

Գուցե առարկեն, որ պելագիականության մասին խոսք չկա Եզնիկի մոտ: Ճիշտ է, Պելագիոսի վարդապետությունը դեռ մի ժամանակ շարունակեց վրդովել արևմտյան եկեղեցին, և որոշ արձագանք ունեցավ և նեստորականության շրջաններում, այնպես որ տակավին վեցերորդ դարու վերջին ասորի կաթողիկոսը նզովք էր կարդում նրանց, որոնք մեղքն ի բնե են համարում[2], սակայն պետք է խոստովանել, որ արևելյան եկեղեցու համար

[1] In epist., ad Rom V, 12; Tixeront, III, 209.

[2] «Bib. Phot.», 177; P. G., 103, col. 513.

[1] Tixeront, Hist. des dogmes, II, 439. Hefele, II, էջ 168.

[2] Սաբրիշո կաթողիկոսը (596-604). Chabot, Synod., 459.

նորալուր ուսմունքը միանգամայն անհետևանք անցավ: Մասնավորապես Հայ եկեղեցու համար կարևորն այդ ուսմունքը չէր, այլ նրա հիմք կազմող գաղափարական խմորը: Տակավին քրիստոնեության առաջին ջատագովները Հուստինոս, Թեոփիլոս, Հիպպոլիտոս և մյուսները և նրանց հետևությամբ եկեղեցական գրողները ըստ արժանվույն ուշադրության էին առել անձնիշխանության սկզբունքը: Պելագիոսի դեպքը մի նոր խթան էր առաջ մղելու և վճռական տեսակետ մշակելու մի հարցի վրա, որ քրիստոնեության բարոյականության խարիսխն է կազմում:

Ահա այս պահանջիս հոգատարը Հայ եկեղեցու համար եղավ Եզնիկն իր նշանավոր երկով: Կապելով «Եղծ աղանդոցի» եղացումը Եփեսոսի հետ, բնավ չենք ուզում դորանով կանխորոշել և նրա ծնունդը: Եզնիկը մոտ է կանգնած Պրոկղի թղթին[1]:

Եթե մյուս հայ հեղինակներն իրենց թերություններով են անվստահելի. Եզնիկն, ընդհակառակ, իր գործի կատարելությամբ է, որ կասկած է հարուցանում: Մեր տպավորությունն այն չէ, որ «Եղծ»-ը՝ իր տեսակում առաջին գործ է: Կազմը շատ բարդ է, թեև պարզ է թվում, նման է մի շքեղ հագուստի, որ սակայն տեսակ-տեսակ կտորներից է կազմված: Արդյոք կտորները նույն հեղինակին են պատկանում, թե նրանցից շատերը գրականության մեջ կանուխ գոյություն ունեին ցանուցիր և հետո են իրար կցվել և մի մարմին կազմել: Հիպպոլիտոսի օրինակը խրատական է: Նրա անունով մեզ հասած մի բեկոր մտած է Եզնիկի շենքի մեջ իբրև թանկագին քար: Ուղիղ այն հարցին է վերաբերում, որը հետաքրքրում է մեր հեղինակին: 1. «Ոմանք ի հարցն անմահ ասացին զմարդ: 2. Այլք <ոչ> անմահ ասեն և ոչ մահկանացու, այլ ընդունիչ կամ մահու կամ կենաց: 3. Բայց այլք և վիճեն ևս ***եթե մահկանացու եղև*** և ***մեղանչելի***, որպէս թէ Աստուած պարտ իցէ մահու նորա և մեղաց: Եւ զայն ոչ գիտեն եթէ անմիտք Վաղենտիանոսացն են, որք բնութեամբ և ծննդեամբ ասեն զմեղսն. և զնոյն հաստատեալ ասեն ***սոքա***, եթէ որ անմահ ոք է ոչ մեղանչէ, որպէս թէ ասասցեն թէ որ մեղանչելի ոք է, նմա չէ մարդ ոչ մեղանչել»[2]:

[1] Եզնիկի առաջաբանի՝ «նա և որ ընդ ճառագայթս արեգականն հայել կամիցի, պարտի զպղտորութիւն աչացն՝ զաղտն և զրիժն ի բաց պարզել, զի մի՛ մթարքն՝ որ զբբօքն շողայցեն արգել հայելոյ ի յստակութիւն լուսոյն լիցին», հիշեցնում են Պրոկլի թղթի՝ «զի աչք բժարեալք զարեգական ճառագայթս սուրբս ընդունել չկարեն և միտք հիւանդացեալ ի հաւատոց բարձրութեան անդր հայել չկարեն»՝ λημῶν γὰρ ὀφθαλμὸς ἡλίου ἀκτῖνας καθαρῶς οὐ δέχεται καὶ ἀσθενοῦσα πίστεως οὐ προσίεται ὕφος. Այս միակ նախադասությունը բավական է, որ Եզնիկի ծանոթությունը Պրոկղի թղթին աներկբա կացուցանե:

[2] Ձեռագիր Պարիսի Ազգային Մատենադարանի, թիվ 116-118, թուղթ 110 v. Հ[այր] Գ. Գալեմքեարյանի հրատարակության մեջ կան անճշտություններ: Անհնար է մնացել ձեռագրում պակաս տողերը սորին լուսանցքի եղծման հետևանքով:



Հիպպոլիտոսը հերքում է առաջին և երրորդ կարծիքը և ընդունում երկրորդը, կանգ առնելով անձնիշխանության հողի վերա, ինչպես Եզնիկը: «Ուղղոց մտաց, այն է թէ արար Աստուած զմարդն ընդունիչ պատուիրանաց և մահու», ահա Հիպպոլիտոսի լուծումը:

Այսպես է մտածում, նկատենք ի դեպ, և Հիպպոլիտոսի ժամանակակից Թեոփիլոս Անտիոքացին. «*οὔτε οὖν ἀθάνατον αὐτὸν ἐποίησεν οὔτε μὴν θνητὸν ἀλλὰ δεκτικὸν ἀμφοτέρων*», այսինքն՝ «ո՛չ անմահ զնա արար և ո՛չ մահկանացու, այլ ընդունիչ երկոցունց»[1]:

Երրորդ կարծիքը «եթե ***մահկանացու եղև***» հիշեցնում է Պելագիոսի «Adam mortalem factum»: Արդյոք Հիպպոլիտոսի թարգմանության առիթը դարձյալ նոյն Պելագյան վեճերը չեն եղել. ավելի հեղինակավոր հերքում խորք ուսման դժվար թե կարելի լիներ գտնել:

«Եղծ»-ը թվում է, որ խնամության թելերով կապված է նաև Բարսեղ Կեսարացու *«Վեցօրեայք»*-ի հայերեն թարգմանության և Լուսավորչին վերագրած *«Յաճախապատում»*-ին: Հայ մատենագրության պատմության տեսակետից առանձնապես կարևոր են Եզնիկի հայ աղբյուրները, այն գրական գործերը, որոնք եղել են հնում և հասել են մեզ, որովհետև նրանց միջոցով կարելի կլինի թերևս որոշել Եզնիկի դիրքը մյուս մատենագիրների շարքում: Ուշադրության արժանի են այն ընդհանուր կետերը, որոնք նշմարվում են Եզնիկի և հիշյալ երկերի մեջ, ինչպես կարելի է տեսնել հետևյալ համեմատություններից[2]:

**«Վեցօրեայք», Ճառ Ա**

**Էջ 1.** Որպիսի միտք ժամանեսցեն արժանաւոր իրօք ընդ առաջ ելանել այնց ընթերցուածոց զոր լսելոց եմք, բայց եթէ որք սրբեալք և զգաստացեալք իցեն ի կարեաց մարմնաւորաց...:

*Հմմտ.* Եզնիկի առաջաբան, որի ընդհանուր միտքն է՝ պարտ է զմիտս յստակել և զխորհուրդս սրբել.

**Էջ 4.** Կէսք ի փիլիսոփայիցն վրիպեցին ասել, թէ մինչև երևելի արարածոցս երևեալ, **փոշի մանրամաղ**. Հմմտ. Եզնիկ, էջ 228 **հողամաղ**.

**Էջ 14.** Եւ իրք թեթևք ընդ երեսս բարձրութեան երկնից վերանան և ծանունքն յերկիր իջանել: Հմմտ. Եզնիկ, 192. որ ինչ թեթև է ի վերին կողմն գնայ և որ ինչ ծանր է ի խոնարհ...

[1] Theophyli, ad Autolycum, II, 27. P. G., VI, col. 1084.

[2] Հ. *Թորոսյանը Եզնիկին նվիրած հոդվածում* («Բազմավեպ», 1889) *ցույց է տալիս*, որ Եզնիկը օգտվել է Եպիփանից, և հիշում է անցողակի նորա աղերսը «Վեցօրեայք»-ի հետ և բերում է մի քանի օրինակներ, որոնցից միայն մեկն է հիշատակված Մարիեսի մոտ: Ընդհանուր կետերն ավելի են, քան նկատված է ցայժմ:

**Էջ 16.** Զիարդ թոյլ և ցիր բնութիւն կարող իցէ հանդարտիլ այսչափ ծանրութեան երկրի, որ հաստատեալ կայ ի վերայ նորա.

*Հմմտ.* Եզնիկ, 192. որչափ ևս առաւել զայնչափ ծանրութիւն երկրի չէ հնար օդոյ ի վեր ունել:

**Էջ 17.** Եւ յայտ է, որ ինչ ի մէջ երկուց գլխաւորացս գտանի, ընդ նոսին իբրև զնոսա արարեալ և հաստատեալ գտանի:

*Հմմտ.* Եզնիկ, 194. պարտ է իմանալ, թէ ամենայն ինչ որ ի միջի նոցա գտանի, հարկ է զի ընդ նովին արարեալ իցէ.

**Ճառ Բ**

**Էջ 25.** Զհիւղէ յայտ առնեն... զի առանց գունոյ էր և առանց կերպարանաց և նմանութեանց... Աստուած... ած զնա ի գոյնս և ի ***կերպարանս*** և ի կարգս...

*Հմմտ.* Եզնիկ, 25. զոր հիւղ առ ձեռն դնիցեն... որ *անկերպարան* և անզարդ տեսանեմք զաշխարհս ի պէսպէս *կերպարանս*...

**Էջ 30.** Բնութեան չար... այլ ինչ մի չար է, որ ինչ յանձնէ եկաց... պատճառք մահու: Սկիզբն մոլորութեան արկանել յոգիս մարդկան եթէ ***մարկիոնեստայք*** և եթէ ծայդանձինք և եթէ պղտորեալ ուսմունք կողմանն *Մանեայ*...

*Հմմտ.* Եզնիկ, հերքելի աղանդները: *Ծայդ անձինք* (փոխ. ծայդոնցիք) համապատասխանում է հույն բնագրի *Վաղենտինյանք*-ին. *οὐχὶ Μαρκιω(νίσ)τες, οὐχὶ Οὐαλεντῖνοι ἐντεῦθεν οὐχὶ ἡ βδελυκτὴ τῶν Μανιχαίων αἵρεσις* II, 4: Ինչպե՞ս բացատրել, որ Վաղենտինյանքի փոխարեն Ծայդոնցիք է: Ծայդոնցիք ևս աղանդավորներ էին, Սիդոնացիք, որոնց մասին հիշում է Դամասկ(իոս)ը. *Σιδώνιοι δὲ κατὰ τὸν αὐτὸν συγγραφέα πρὸ πάντων χρόνον ὑποτίθενται καὶ πόθον καὶ ὀμίχλην*[1].

**Էջ 32.** Այլ եթէ ոչ ի՛սկ իցէ, ասեն, չարն և ոչ յԱստուծոյ եղև իսկ, ուստի եղև... այլ մեք ասեմք, եթէ առնեն չարիք գործովք և ոչ որպէս նոքայն ասեն թէ կենդանի է չարն ***բնութեամբ:***

*Հմմտ.* Եզնիկ, հաճախ կրկնված հիմնական միտքը:

**Էջ 89.** Վնասակար է արիւն ցլու... ծանրագորաւ բազում անգամ բժիշկք քուն ածեն:

*Հմմտ.* Եզնիկ, 66. եթէ արիւն (ցլոյ) ոք ըմպիցէ սատակի... զծանրագորն քնածու լինի քնհատաց...

[1] Damascius, p. 385, ed Kopp.



**Ճառ Ջ**

**Էջ 133.** Եւ զնացք իմն են, ասեն, յաշխարհին Եւրիպեցւոց յովկիանոս, որ երբեմն ցուցանեն յաւելուածս լիութեան իւրեանց, որ երբեմն զիջանէ ի լիութենէ աստի և այն, ասեն, ըստ գնացից լուսնին փոփոխի...

*Հմմտ.* Եզնիկ, 215. Եւ յԵւրոպն տեղիք ինչ են ծովուց, որոց ջուրն ըստ աճել լուսնին՝ աճէ և ըստ լնուլն՝ ընդ և ըստ պակասելն՝ պակասէ[1]:

**Էջ 134.** Բայց անհամ և սնոտի պատմութիւն, որ իբրև զբարբանջ ծերութեան զառանցելոյ անկելոյ ի մտաց իցեն, այնչափ ծաղու և արհամարանաց արժանի են... շարժելով, ասեն, շարժեն մարդիկ զլուսին և յերկիր իջուցանեն: Ինչ զոր Աստուած հաստատեաց եդ անշարժ ի տեղւոջ իւրում և յօրինեաց եդ զնա ի մշտագնաց, զիարդ կարիցեն դիւթութիւնք կախարդաց շարժել ի տեղւոյ. քաւ մի լիցի ասել մեզ զայս կամ լսել: Եւ որ տեղի բաւական էր ընդունել զայն, որ սահմանեալ կայ ի մեծ աստիճանին զօրութեամբն Աստուծոյ:

*Հմմտ.* Եզնիկ, 217. Եւ չէ հնար լուսնի յերկիր իջանել, որպէս կախարդաց տեսեալ ի ժամանակի հրամանաւ Աստուծոյ զլուսնոյն արփնազոյն լինելոյ զկերպարանսն դիւի նմանել լուսնի բարբանջեն, թէ զլուսին իջուցանեն, որում չէն մարթ լինել, թէ որ քան զբազում աշխարհս մեծ է՝ թէ ի կալ մի փոքրիկ ամփոփիցի:

**Էջ 187.** Զհատ կամ զկորիզ իրիք յորժամ տանի ի ծակն, ընդ մէջ կտրէ և դնէ, զի մի բուսցին ի հիւքոց խոնաւութենէ... և դարձեալ եթէ խոնաւեսցին հատքն, հանէ առեզերբ մրջիւնցին արկանէ տարածոց և ցամաքեցուցանէ... յորժամ զիտէ թէ արև կայ և պարզ իցեն և ոչ անձրև:

*Հմմտ.* Եզնիկ, 174. Որպէս և մրջեան յամարանոյն պատրաստելոյ զկերակուր և ընդ երկու զհատն կտրելոյ զի մի բուսանիցի և ի ջեր ժամանակս հանելոյ զկտիկն յորջէ անտի և ցամաքեցուցանելոյ:

**Էջ 114.** «Եղիցին լուսաւորք ի հաստատութիւն երկնից»...

Եւ դարձեալ ասէ. եթէ եղիցին ի նշանակս և ժամանակս և յաւուրս և ի տարեկանս: Յոյժ պատշաճ և պիտոյ են աշխարհի և մարդկան նշանք որ լինին ի լուսաւորաց... զի վասն խոնաւոյ ժամանակաց բազում անգամ վարդապետք լինին մեզ ***օդոյն պղտորութեան և դառնաշունչ հողմոցն սաստկանալոյ:*** Քանզի է ինչ որ երևի *յարեգակնէ* և տէր մեր յայտնեաց մեզ յասելն թէ յորժամ տեսանիցէք զի ամպ արևմտից և ասէք թէ ***անձրև լինի*** և լինի. և յորժամ ***հարաւ շնչիցէ,*** ասէք, եթէ *խորշակ* ընթանայ և լինի այդպէս. և յորժամ դարձեալ ընդ երեկս ***կարմրանայցեն*** երկինք, զպարզոյ յայտ առնեն, և յորժամ ընդ առաւօտն կարմրանան, ***զանձրևի նշան*** ցուցանեն...,

[1] Տե՛ս Հ. Թորոսյան, «Բազմավեպ», 1889, էջ 317, ծան.:

Զի յորժամ ընդ ծագել արեգականն մթագոյն ելանիցէ և արեան և կայծական նշանակ ունիցի ճառագայթիւք ըստ փոփոխմանց խստաշունչ օդոցն և եթէ ի նմին կերպարանս կացցէ, օդն պղտորեալ և յուզեալ ոչ յստակեսցի ի գոյնն մթագոյն ոչ լրթասցի և հողմք խստաշունչք և յաւելցին և ամպ ևս քան զևս բազմասցի զերկար խռնաւայուզից և զսաստիկ անձրևաց յայտ առնեն:

Եւ յորժամ շուրջ բակ ունիցի լուսինն ամպոց և ունիցի մռայլ զարեգակն ամպոց, ջուրք բազումք յօղոց յերկիր առաքին...

*Հմմտ*. Եզնիկ, ԻԴ, 185-187. Արար Աստուած զլուսաւորսն մեծամեծս և եդ զնոսա ի հաստատութեան երկնից և այլն մինչև 187[1]:

**Էջ 116-120**. Աստեղագետների ուսմունքը աստեղատունների և մարդկանց բախտի հարաբերության մասին, *հմմտ*. Եզնիկ, Բ, 14: Մանավանդ «Վեցօրեայք»՝ 120, Խոյ՝ ճոխ: Բ, 14՝ Եզն՝ գործուն և հնազանդ, կարիճ՝ մարդասպան:

*Հմմտ*. Եզնիկ, 156. եզն՝ հզօր և բարենշան, խոյն՝ մեծատուն, կարիճ՝ չար...

**Էջ 122**. Որչափ արդեաւք թագաւորք ծնանին հանապազ... արդ ընդէր ոչ հանապազ ծնանիցին թագաւորք և վասն է՞ր ի հարց առ որդիս կարգի գայ ժառանգութիւն թագաւորաց... մինչև էջ 123՝ Ոզիա ծնաւ զՅովաթամ և այլն...

*Հմմտ*. Եզնիկ, 160. ապա ոչ թագաւորի որդի թագաւոր լինէր... որպէս Դաւթայ որդի Սողոմոն ի հօրն աթոռ նստաւ և այլն:

**Էջ 123**. Ավելորդք են դարձյալ դատաւորք և այլն. - *Հմմտ*. Եզնիկ, 160-162 չէ պարտ ոչ թագաւորաց մահու հրաման տալ և ոչ դատաւորաց:

Հետաքրքրական են նաև դարձվածների և բառերի գործածությունը երկուսի մոտ. օր. «Վեցօրեայք»՝ 45. ընդարոյս բնութեամբ ***անկեալ*** են ի մեզ, հմմտ. Եզնիկ, հաճախ գործ է ածում և ոմանք ուզում են ուղղել *անկեալ* յանարդարի:

Նույնպես և էջ 17, 49. զլոյծ և զխաղաց բնութիւն ջուրցն, հմմտ. Եզնիկ, 197, լոյծ բնութիւն ջուրցն. խաղացական էջ 211. և Եզնիկի *խաղաց* կարիք չկա ուղղելու *խախաց*:

Այլ և անկերպարան, անիրան («Վեցօրեայք», 26, 28), անհամ պատմութիւն (121, 61, 85), Եզնիկ, 196 անհամություն: Մարմնապատ («Վեցօրեայք», 54), հողապատ (Եզնիկ, 72), Ծիրեցին ծնկեցին (Եզնիկ, ծիրի ծնկի), դանդաչէ («Վեցօրեայք», 62), Եզնիկ 196, բարբաջ ծերության բանդագուշյալ: Ապա եթէ յամառիցի ոք («Վեցօրեայք», 12): Այլ և ամառն լուսնի (113), անիւ լուսնի (112) և այլն:

[1] Տե՛ս Հ. [illegible], «Բազմավեպ», 1889, էջ 314, ծան.:



Ի նկատ առնելու է նաև *յափշտակեցաւ յերրորդ երկինս* («Վեցօրեայք», 48) նախադասությունը, թեև մեկնութիւնը զանազանվում է Եզնիկից:

«Ցաճախապատում»-ի մեջ ուշադրության արժանի են այն կետերը, ուր շեշտվում է անձնիշխանության նշանակությունը, որով մոտենում է և հարում Եզնիկին:

**Էջ 17**. Եւ անձնիշխան կամօք երկնաւորք և երկրաւորք, մարդիկ և հրեշտակք:

Այլ թէ ասիցէ ոք, որպէս ներեաց Աստուած սատանայի այնքան տարածել զմոլութիւնն զանօրէնութեանս, իմացի՛ր, զի իշխանական կամս է հրեշտակաց և մարդկան որ յաստուծոյ պատուեալ:

*Հմմտ*. Եզնիկ, 76. ընդէր եմոյծ զնոսա ի կռիւս ընդ միմեանս: Այսու զանձնիշխանութիւնն սատանայի և զմարդոյն կամի խափանել և այլն.

**Էջ 19**. Ճշմարտութիւն հաւատոյ լոյս է աչաց մտացն և այլն:

*Հմմտ*. Եզնիկ, Առաջաբան:

**Էջ 25**. Է ինչ և ի սողունս իրաց ինչ ի պէտս, որպէս յօձիցն ասէ զթերակէն:

*Հմմտ*. Եզնիկ, 63. զի՞նչ չար քան զօձ կայցէ և ի նմանէ թերիակէ:

**Էջ 26**. Զի զտարերս ամենայն աստուածս արարին զշնչաւորս և զանշունչս, զջուր և զհուր: Զի ջուրն ի պէտս կենդանեաց արարան յաստուծոյ, որ արբուցանեն զերկիր և դարձեալ ապականին նեխելով և նուազելով: Եւ հուր առ ի պէտս մեր արարաւ որ դարմանօք վառի և սպասաւորէ մեզ և ի պակասել կերոյն զիջանի և ապականի: Նոյնպէս և հողմք և ամպք:

*Հմմտ*. Եզնիկ, 15-16. Եւ կամ զհուր, որում և զքեզ իսկ երկրորդ արարիչ կազմեաց յօրինիչն, զի յորժամ կամիցիս վառիցես և յորժամ կամիցիս խափուցես և այլն... և զներքին և զարտաքին աղտեղութիւնս մեր նորօք սրբեմք:

**Էջ 29**. Զի և գազանք ոչ եթէ բնութեամբ եղեն չարք, որպէս ընտելութեամբն ցուցանին առ թովիչսն և առիւծ և ինծ և արջ հնազանդին մարդկան, որպէս եզն և շուն և այլն ամենայն...

*Հմմտ*. Եզնիկ, 148-149՝

**Էջ 63**. Ապա եթէ ի նոյն ***յամառեալ*** կայցեն ի չարիսն. Հմմտ. Եզնիկ, 59, 198՝ Աստուած ոչ սատակէ և ոչ բառնայ զյիշատակս ստահակաց և անզգամաց. ոչ կամիմ զմահ մեղաւորի:

*Հմմտ*. Եզնիկ, 76՝ ես ոչ ընդ ձեր մահ կամէի.

Համեմատությունները բավական են ցույց տալու, որ Եզնիկը մեն միայնակ չէ, այլ որ նա և կապեր ունի մյուս երկերի հետ, և «Եղծ»-ի խմբագրության հարցը այնպես անկնճիռ չէ, ինչպես թվում է: Խոստովանելու է, որ Փավստոսը, Եղիշեն, «Ցաճախապատումը», Ագաթանգեղոսը, քան Եզնիկն ավելի բախտավոր վիճակի մեջ չէ և գտնվում է նրանց հետ միևնույն ցանցի մեջ:

Դառնանք նորեն Մարիեսին: Մեզ մնում է քննել նրա մի շարք լեզվական և բնագրային ուղղումները, որ նրա աշխատության մեջ մեծ տեղ են բռնում և հեղինակն ևս նրանց առանձին նշանակություն տալու հակամետ է: Երբեմն համեմատում է հունական բնագրի հետ և սխալներ է գտնում, որոնց համար և Եզնիկի հունագիտությունը հարվածում: Հակառակ մեր խորին հարգանքի Եզնիկի նոր քննադատի՝ որ այնպիսի սիրով և ուշադրությամբ նվիրվել է իր գործին և նշանավոր շնորհիք մատուցել հայ գրականության ուսումնասիրության, դժբախտաբար գովեստի խոսքեր չունինք նորա հասցեին առաջարկված ուղղումների առթիվ: Նայինք մի առ մի:

**Եզնիկի**

**էջ 22.** «Կէսք անսկզբնակից ինչ ընդ Աստուծոյ ***երկեալ, դնել նոցա*** (i. e. ***չարեաց***) ***արարչի լինել Աստուծոյ*** կամեցան դնել. և կէսք ըստ նմանէ նիւթ ինչ...»: Խնդիրը լեզվական թերիքը չէ, որ ներելի է և ուղղելի:

Նույն իսկ իմաստի տեսակետից սխալ է: Նախ Մարիեսը հետևողական լինելու համար, եթե կարծում է, որ հայ և հույն համեմատելի նախադասությունները բնագրորեն կապված են միմյանց, պետք է որ երկրորդ պարբերությունը ևս լրացներ համաձայն հույնի. այսինքն՝ և կէսք ըստ նմանէ նիւթ ինչ, զոր հիւղն անուանեն, թէ ի նմանէ արար զարարածս ***«երկուցեալ չարեաց արարիչ չաստուած ասել»***: ἐκ τοῦ φοβηθῆναι, τῶν κακῶν ποιητὴν εἰπεῖν τὸν θεὸν.

Սակայն հավելումների կարիք չկա: Եզնիկի երկու եղածը ամփոփումն է նախընթաց Ե գլխում բացատրած մտքի. «Եւ զի՞ պիտոյ է մեզ բնաւ մի ըստ միոջէ թուել, այլ համառօտ իսկ ասել, թէ ուստի՞ է այս ամենայն և ո՞վ է սկիզբն և գործիչ այնպիսի անպատեհից, բայց ***եթէ իցէ ինչ չար զօրութիւն,*** որ զայն ամենայն անհարթութիւնս տայցէ գործել, և ինքն իսկ արարիչ իցէ նոցա, զի զաստուած արարիչ ասել այնպիսի իրաց անպատշաճ է»[1]: Մյուս եղածը. «վասն որոյ կարծի թէ էր ինչ ընդ նմա, որում հիւղն անուն էր, որ է նիւթ» և այլն[2]:

Մարիես կարծում է, որ Մեթոդիոսի երկու եղածներից մեկը՝ մոնիստական է և մյուսն՝ դուալիստական, մինչդեռ Եզնիկի մոտ երկուսն էլ դուալիստական են: Տարբերությունը սակայն առերևույթ է. ձևական և ոչ էական: Ո՛չ Մեթոդիոսը և ո՛չ Ադամանտիոսը չեն քննում այն եղածը, թե Աստված չարի արարիչ է, ընդհակառակը՝ հենց սկզբից ընդունում են, որ

[1] **Եզնիկ Կողբացի**, էջ 20:

[2] Անդ, էջ 21:



այդպես մտածել «անպատշաճ է» և այս դրությունը ելակետ ունենալով՝ ոմանք առաջարկում են ընդունել չարը իբրև հիպոստաս, ինքնուրույն գոյացություն (ինչպես մանիքեցիք), մյուսները՝ գերադասում են առաջ մղել հյուլեի գաղափարը և նրանից հանել չարը: Վեճը այս հարցերի շուրջն է և թե այն պարզ և անվիճելի երկուստեք եղածի, որ Աստված չէ չարի սկիզբը:

Հյուլեականներին ջրելուց հետո, Եզնիկը Մեթոդիոսի հետևությամբ անցնում է հիպոստասականներին: Սրանց հերքումը միևնույն ժամանակ հերքումն է հյուլեականներին, որովհետև եթե չարը իբր հասկացողություն հիպոստաս չէ, այլ միայն հատկություն, ուրեմն և հյուլե չկա: «Եւ արդ զհիւղեայն խնդիր թողեալ զոր նիւթն ամենայնի կոչեն, ի չարեացն խնդիր եկեսցուք զոր ի նմանէն իմանան: Զի յորժամ չարիքն յայտ լինիցին թէ չեն անձնաւորք, անտի և հիւղն յանդիմանի թէ ոչ էր երբէք և ոչ բնութիւն անձնաւոր»[1]:

Վերև Եզնիկը զորություն բառով է արտահայտում ὑπόστασις գաղափարը, այստեղ նույն իմաստն ունի և ***անձնավոր***[2], կամ ***բնություն անձնավոր*** բառը: Մեթոդիոսի պատճառաբանությունը Եզնիկի մոտ կրճատ և պարզ ձևի է վերածած: Մարիես միշտ ձգտելով հույնի շրջանակի մեջ մտցնել, դժվարանում է հասկանալ և դարձյալ ուղղումներ է առաջարկում. ***անձնաւոր*** կարդում է ***մասնավոր, պատճառ*** ուղղում է ***բազ***(!) ***չարն***, ընդունում է և Գալեմքեարյանի առաջարկած ընթերցումը ***չար***՝ փոխանակ բնագրի ***արարիչ***:

Եվ այս բոլոր ջանքերը ի զուր են: Եզնիկի դատողության թելը հետևյալն է:

Չարը հիպոստաս, անձնավոր չէ, այսինքն՝ անհատական գոյություն ունեցող ինչ չէ, այլ միայն ***արգասիք անձանց,*** այսինքն՝ հատկություն:

Վերցնենք չարի մի տեսակը, որ բղխում է մարդուց. ասենք սպանություն, շնություն: Մարդը անձնավոր է, իսկ նրա գործած չարիքը իր բարքի արդյունք, «բարքն չանձնավորք», և ոչ անձնավոր ինչ:

Ենթադրենք, սակայն, հակառակը, ինչ որ ընդդիմախոսն է պաշտպանում, որ չարիքը, իրոք, անձնավոր է: Այն ժամանակ ստիպված պիտի լինենք ընդունելու, որ նրա ***պատճառը*** ևս անձնավոր է, որովհետև տեսա-

[1] **Եզնիկ Կողբացի**, էջ 34:

[2] ***Զօրութիւն*** է թարգմանած ὑπόστασις նաև Պրոկղի թղթում. զմարմնացեալոյն Աստուծոյ բանին զօրութիւն. «Գիրք թղթոց», էջ 2: Ստեփաննոս Սյունեցու թերած ***«Թուղթ Հռոմայ ի Հայս»*** գրության մեջ Կյուրեղ Աղեքսանդրացու ԺԲ գլուխներն են բերված, ուր ὑπόστασις թարգմանված է ***անձնաւորութիւն***. գլ. Բ, անդ, էջ 361, իսկ ***«Կնիքն աս Նշանաց բացատր»***, միևնույն Բ գլխում թարգմանած է ***բնութիւն***, անդ, էջ 404:

նելի չարը անտեսանելի չարի մասն է: *Պատճառ* այստեղ ամբողջության իմաստ ունի՝ ինչպես Աստված բարվո լիություն է, այնպես էլ այն, որ չարի ***պատճառ*** է համարում, չարի ամբողջություն է: Այսպես հասկանալով, պետք չենք տեսնում պատճառ կարդալ **բովանդակ չար**, եթե ***բացչար*** ասելով, այս է ըմբռնում Մարիեսը:

Սակայն այստեղից ի՞նչ է հետևում. եթե չարի պատճառը անձնավոր ոմն է, ուրեմն «էր երբէք զի բնաւ չէր ամենևին ինչ արարիչ բովանդակ», այսինքն՝ կար ժամանակ, երբ այդ անձնավոր ոմն լիակատար ***արարիչ*** չէր չարի: Ինչո՞ւ համար. որովհետև Աստված դեռ չէր ստեղծել մարդուն, որը «մասանց չարեաց արարիչ» է, որը մասնավոր արարիչ է չարի: Եվ ուրեմն սորա ստեղծվելովը՝ այն անձնավոր ոմն արարիչ չարի կլրանա, կամբողջանա: Բայց մարդուն Աստված է ստեղծել. հետևապես սորանով Աստված պատճառ է դառնում չարի ամբողջության, ասել է թե «և բաւանդակ իսկ չարեացն արարիչ Աստուած է»: Անհեթեթ եզրակացություն. դատողությունը հասցրեց ad absurdum, ուրեմն սխալ է ընդունել, որ չարն անձնավոր է:

Մարիես, էջ 167. կանգ է առնում նաև հետևյալ պարբերության վերա և ուզում է մոտեցնել Մեթոդիոսին. «Զի ուր երկու ոք ի միասին իցեն, ***հարկ է թէ միայն ոք իցէ և ուր երկու ոք զատ իցեն***, հարկ է թէ իցէ որ զատանից ի միջի»:

Քննադատի ջանքերն այնքան հեռուն են գնում, որ ուզում է մինչև անգամ Ադամանտիոսին սրբագրել, որ հաշտեցնի Մեթոդիոսի հետ: Այնինչ Ադամանտիոսի բնագիրն իսկ վկայում է, որ Եզնիկի նախադասությունը պետք չունի փոփոխման և իրար հետ համերաշխ են:

Արդարև, վեճը այն մասին է, թե՝ երկու ոք եթե միասին են, պետք է և մի երրորդը լինի իբր խտրող, երկուսին բաժանող: Երկուսի մի միություն կազմելու դեպքը Եզնիկը բացեբաց ձգած է, որ լոկ դիալեկտիկական լրացումն է, որ վեճի էության համար արժեք չունի: Պայքարը երկու սկզբունք ընդունելու հարցի շուրջն է և նորա դեմ. ***երկուսը ենթադրում է և մի երրորդը***, որ անջրպետում է՝ ուրեմն անընդունելի է:

**Էջ 170.** «Արդ հարկ է ի պատճառս չարեացն գալ և ցուցանել թէ ուստի լինին չարիքն և չէ ***մարթ ասել թէ*** չէ պատճառ չարեաց Աստուած այնու զի առընթեր նմա զհիւղն դնեն»: Իմաստի տեսակետից հարկավոր լրացումն է, բայց մեզ թվում է, որ կարելի է խուսափել ուղղումից, կարդալով «*չէ՞* ***պատճառ չարեաց*** և այլն» իբր հարցական, արդյոք Աստված չարյաց պատճառ չէ՞ և այն ժամանակ, երբ նրա քով հյուլեն են դնում:

**Էջ 175.** «Մթարքն շողայցեն» առաջարկում է կարդալ «մթարքն *շաղախ* իցեն» ! միանգամայն անտեղի: Մթար այստեղ նշանակում է աչքի ճպուռ, որ սպիտակ լինելով կարող է շողալ, ըստ կազմության մութ + ար(առնել)



ընդհանրապես մթագնող բան է նշանակում և այդպես է անվանում Եզնիկն «զաղտն և զրիժն»[1]:

**Էջ 178.** «Եւ պահէ կենդանի... և զգայականացն անշնչից յիւրաքանչիւր կայանի»: Մարիես կարդում է «և զկայական ածն անշնչից»! Զգայական չի նշանակում *doue de sensibilité*, այլ *sujet à sensibilité*, այսինքն՝ կրավորական մտքով է գործածված: Ուրիշ տեղ նորա փոխարեն գործ է ածում ***զգայուն*** բառը նույն իմաստով, այսպես էջ 96. «որ ինչ ի ***զգայնոցս*** շօշափի կամ զննի կամ ազդի, այն մարմնաւոր է և որ <փ> զգայնոց ոչ ազդի անմարմին» և այլ: Ամեն ինչ, որ ենթակա է մեր զգայարաններին, այն զգայական է: **Անշունչ զգայական** ասելով Եզնիկը հասկանում է երկնի լուսավորները, ինչպես շարունակությունից երևում է, էջ 14. «արդ բարիոք է արեգակն... և այլքն յանշնչոցն արարածոց»:

Մարիես արդար է, երբ անհարթություն է գտնում նախադասության մեջ քերականական տեսակետից, բայց իր ուղղումը չի շտկում գործը, որովհետև «պահէ կենդանի... զկայական ածն» ևս անհարիր է: Բնագիրը պետք է թողնել անփոփոխ, անկանոնությունը հեղինակինն է:

**Էջ 179.** «Ծովացուլ զկով գործեաց» ուղղել՝ «ծովացուլս կով գործեաց» դժվար թե պետք կա: Եզնիկի խոսքերը որոշ միտք ունին:

**Էջ 180.** ***Սաղթ*** փոխանակ մաղթ կասկածելի է: ***Խարափ***, հավանորեն, ***խարխափ***, բայց ոչ երբեք ***խարակ***:

**Էջ 181.** Սակայն իբր ***սակ այն***, ինչպես և երկար մեկնությունները ***եղև***, ***առ***, մանավանդ, ***քանզի*** և ***որպեսզի*** բառերի առթիվ ավելորդ բծախնդրություններ են և հակառակ հայ լեզվի ոգուն: Կենդանի խոսքի ազդեցությունը հաշվի է առնելու այսպիսի դեպքերում (որպեսզի հմմտ. որպես որ):

**Էջ 183.** ***Անուանս***՝ ուղղել ***անուանս***, հավանական է. սակայն անհրաժեշտություն չէ. Հմմտ. «Վեցօրեայք», էջ 119. «այս **անուն**, ասեն, գանգրահեր է և այլն. և մանավանդ «Յաճախապատում», 34. զի ***յանուանց*** ուսուցանեն մեզ երկնաւորք և այլն:

**Էջ 184. Որ ընդ անբաւ ինչ ոք ուրեք**, իբրև թե պետք է ուղղել՝ ընդ դեմ **բաւ ինչ ոք**: Ավելի հավանական է սկզբի **որ** կարդալ **ար** համաձայն վերջին **ուրեք**, որ կրկնություն է և անհարթությունը կվերանա:

**Էջ 186. Դիւի նմանել** լուսնի փոխել ***զատին մանել***, կամայական վարկած է:

**Էջ 189.** Այլ թէ ցերրորդ երկնի *ἕως τρίτου οὐρανοῦ* **ասելով**՝ Մարիես ուղղում է ***առանց յիմ ասելո***, իբր **sans dire dans lequel.**

Սխալ մեկնություն: Խոսքը հայերեն ***ն*** տառի մասին է, որ համա-

[1] Հմմտ. «Վեցօրեայք», էջ 115. ***գծագրության միջի***:

պատասխանում է ըստ Եզնիկի հույնի *τοῦ* արթերն՝ *ἄρθρον*, այսինքն՝ յոդին: Հետևապես կարդալու է առանց -ինն, փոխ. առանձինն, առանց *τοῦ* ի, -*ինն* (թերևս-ենն) = նու, *ն* տառի հին անունն է:

**Էջ 190.** զՄարկիոնն ուղղել **զմարդիկն**, կասկածելի է: Պարզ հեգնություն է Մարկիոնի հասցեին:

**Էջ 104-112.** Մարիես փորձում է բացատրել այն տարբերությունը, որ կա Եզնիկի և Մեթոդիոսի մեջ մի կարևոր կետում, այն է՝ Եզնիկ, էջ 44: Դժբախտաբար հոնքը շինելու տեղ բնագրի աչքն է հանում, ավելորդ ենթադրություններով: Մեր կարծիքով Եզնիկի տարաձայնության աղբյուրը մի պարզ թյուրիմացություն է. *διδασκαλίας* հայը հասկացել է Ս. Գրքի վարդապետություն, և ոչ սատանայի, ինչպես շիտակ իմաստն է բնագրի.

«Ուստի ոչ ոք կարէ անարար ինչ և անձնաւոր զչարն ցուցանել. և դարձեալ ոչ յարարչէն, այլ յանսաստութենէ դիպեալ ստունգանողին և յուրույ **վարդապետութենէ** դրդեալ»: Մինչև այստեղ հարազատ է բնագրին, բայց հետևյալ տողերից սկսվում է թյուրիմացությունը.

| | |
|---|---|
| 1) զի ոչ եթէ այնպիսի ինչ հաստատեալ բնութեամբ զմարդն ցուցանել կարէ ոք. | *οὐδὲ γὰρ τοιαύτην φύσιν εἰληφὸς ὁ ἄνθρωπος,* |
| 2) եթէ այնպիսի ինչ **բնութիւն** մարդոյն առեալ էր. | *εἰ γὰρ οὕτως εἶχεν.* |
| 3) ապա ոչ ի բնութենէ արարածոյ b) և **յաստուածեղէն գրոց նմա վարդապետութիւն** ընծայանար. | b) *οὐκ ἂν αὐτῷ κατὰ διδασκαλίας τοῦτο προσέγενετο, τῆς a) φύσεως αὐτῆς οὕτως ἐχούσης.* |
| 4) որպէս ասէ ուրեք աստուածական բարբառն եթէ ի մանկութենէ մարդիկ ի խնամս չարին միտեալ են: | *λέγει δέ τις θεία φωνή μεμαθηκέναι τὸν ἄνθρωπον τὰ πονηρά.* |

Երկու բնագիրը միանգամայն համերաշխ են ընթանում, միայն երրորդ կետում հայը սխալ է ըմբռնել *κατὰ διδασκαλίαν*, ինչպես ասացինք, ազդվելով, անշուշտ, հաջորդ նախադասությունից, ուր, իրոք, կոչում է արած Ս. Գրքին: Հույնն ասում է. «և ոչ նմա ի վարդապետութենէ այս ընծայանայր, զի բնութիւն նորա այսպէս եղեալ է. (կամ ի բնութենէ այդպէս արարեալ)»: Իմաստը պարզ է. չարը բնածին չէ, այլ ստունգանողի անհնազանդության հետևանքը: Դրդողը սատանան է, «ուրույ վարդապետութիւն»: Եթե մարդը բնությամբ չար ստեղծված լիներ, այն ժամանակ սատանայի վարդապետության **պետք** չէր լինի, քանի որ մարդու բնությունը չար է կամ չար է



ստեղծված: Հույնը Ս. Գրքից վկայություն է բերում, որ ցույց տա, թե մարդը սովորել է, գիտացել է չարը **սատանայից**: Իսկ հայը միանգամ սխալ հասկանալով հիշածս պարբերությունը, մոլորում է և շփոթում է Ս. Գրքի մեջբերումը, քաղելով ոչ այն, որին ակնարկում է բնագիրը[1], այլ մի ուրիշը, որ ավելի մոտ է իր ըմբռնումին[2], որ է. եթե չարն **ի բնութենե** է, ապա ինչո՞ւ Ս. Գրքի մեջ ասված է, որ մարդը **ի մանկութենէ միտեալ** է դէպի չարը և ոչ թե մարդը ի բնե չար է: Վարդապետության բառի թյուր ըմբռնումը դժվարություն է ստեղծում թարգմանողի համար հետևյալ *φύσεως αὐτῆς οὕτως ἐχούσης* նախադասության իսկական իմաստը հասկանալու և նա թարգմանում է՝ ***ի բնութենէ արարածոյ***:

Բնագրերի համեմատությունից բղխած այս պարզ բացատրությամբ ընկնում են Մարիեսի մանվածապատ լեզվական պտույտները, որ տանում են դեպի բնագրի աղճատումը: Այսպես օրինակ՝ ***բնութիւն***, որ ամբողջ դատողության և վեճի հիմնաքարն է, փոխել՝ ***բանութիւն*** նշանակում է, հանցանք գործել: Եզնիկի հունագիտությունը ևս կասկածի ենթարկել, և նորան վերագրել *λέγω* և *πάσχω* բառերի շփոթումը՝ հիմք չկա:

**Էջ 207.** «Մինչև եկն Աբրահամու աստուածպաշտութիւնն և աղաւաղեաց զայն»[3], համեմատում է հույնի ***ἕως ὅτου συνήφθη τῇ τοῦ Ἀβραὰμ θεοσεβείᾳ*** հետ և պատրաստ է դարձյալ Եզնիկի լեզվական տգիտությունը հանդիմանելու: Մինչդեռ բերած նախադասությունս իսկապես հակառակորդների եղածն է, որ պիտի հերքե Եզնիկը և հերքումը, իրոք, տեսնում ենք՝ Գ, գլ. ժե, էջ 229-230. «բայց թէպէտ և հեթանոսութիւն եմուտ յաշխարհ, այլ աստուածպաշտութիւնն ոչ ամենևին պակասեաց: Եւ յայտ անտի է, զի գնացեալ Աբրահամ ի հեթանոսացն եկն աստուածպաշտաց **պատահեաց**»: Թվում է, որ այստեղ է *συνήφθη*-ի թարգմանությունը ***պատահեաց*** և ոչ թե աղաւաղեաց:

Երրորդ գրքի վերջին գլխի վերջին երկու էջերը (240-241) պատկանում են չորրորդ գրքին և նրա ներածականն են: Շատ տարօրինակ է, որ նախորդ գլուխներում մանրամասնորեն հույն փիլիսոփաներին և նրանց դպրոցները կրկտելուց հետո, վերստին խոսքը շրջում է դեպի հունաց իմաստունները, և սկսում Հեսիոդիոսից ու Հոմերոսից: Այս մի կարևոր պարագա է և ցույց է տալիս, որ Մարկիոնի հերքումը խմբագրական ձեռքով է միացրած մյուս գրքերի հետ, սկզբում՝ Վալենտինիանոսի գործի հետ:

Հայի օտար կաղապարը թվում է թե ավելի ծանրակշիռ ներածություն է

---

[1] Երեմ., 13, 23:

[2] Ծննդ., 8, 21:

[3] Եզնիկ, Եղծ աղանդոց, էջ 207:

ունեցել. և հայը կրճատ և ամփոփ ձև է տվել: Այստեղից է ծագում և այն դժվարությունը, որ հանդիպում են մասնագետները, ներածականի իմաստը և նրա կապը Մարկիոնի գրքի հետ ճշմարտապես ըմբռնելու համար:

Մարիեսն էս փորձում է իր ուժերը և պետք է խոստովանել, բավականին չարչարում է հայոց լեզուն: Սակայն լեզվական բռնությունները մեղմանում են նորանով, որ ընդհանրապես ճիշդ է մեկնում բնագրի իմաստը:

Հույն փիլիսոփաների հասցեին հայ հեղինակը դիտում է, որ Աստծուն չճանաչողները «զիարդ զԱստուծոյ ճառել մտաբերիցեն: Եւ մանավանդ **որ քան** զամենեսինն իմաստնագոյն համարին զՊղատոն, որ վասն Աստուծոյ և վասն հոգւոյ և վասն արարածոց խօսել յօժարեցաւ»:

Գերմաներեն թարգմանությունը ունի, էջ 171` und insbesondere derjenige, welcher für den weisesten von allen *gehalten wird,* Plato welcher և այլն. Մարիեսը թարգմանում է. էջ 148` Et surtout celui-là qui *est estimé* plus pieux que tous, (plus pieux) que Platon, lequel և այլն:

Մեզ թվում է, որ պետք է թարգմանել. «մանավանդ նա, որ համարում է Պղատոնին ամենից իմաստուն», այսինքն նա, որի աչքում ամենամեծ հեղինակությունը Պղատոնն է: Հետևապես որ... ***համարին***, պետք է կարդալ որ ***համարէ***-ն. այսինքն` ոչ թե որը համարվում է, այլ որը համարում է: Մնացած մասը բնագրի թողնելու է, ինչպես կա: Ակնարկը վերաբերում է Մարկիոնին. հեղինակը առաջիկա հերքման, առարկության ուժ տալու համար, հենց սկզբից հայտարարում է, որ հանդիմանելի վարդապետության, այն է` մարկիոնականության աղբյուրը Պղատոնն է, որը չնայելով որ փիլիսոփաներից ամենեն աստվածապաշտն է, բայց էլի ակարամիտ է:

Հասկանալի է, որ նորա վերա հիմնած ուսմունքը ևս թույլ և սխալ պիտի լինի: Արժեքավոր է Մարիեսի համեմատությունը Իրինեոսի` quibus religiosior Plato ostenditur մտքի հետ:

Ներածականը նվիրված է, ուրեմն, Պղատոնի հանդիմանության: Նորան վարկարեկ անելով, բնականորեն կանխապես խախտում է նորա հետևորդի Մարկիոնի ուսման հիմը:

Այսպիսով, բացի մի քանի մանրուքներից, գրեթե բոլոր առաջարկված ուղղումներն անվստահելի են, ասենք մեղմ լեզվով: Սորանով սակայն միտք չունենք նսեմացնելու Մարիեսի աշխատության հարգը: Թերիքները մի կողմ` Եզնիկին նվիրած ուսումնասիրությունը այն թանկագին լուման է, որ բերում է հեղինակը հայ գրական-պատմական գանձանակին: Անձնապես շնորհակալ ենք, որ մեզ առիթ տվեց մեր դիտողությունները ևս հայտնելու:



# ԳՐԻԳՈՐ ՊԱՐԹԵՎԻ ՀԱՐՑԱՐԱՆԸ ԵՎ ԵԶՆԻԿ

**«Հարցումն եւ պատասխանիք Գրիգորի Պարթեւի»** հնավանդ նշխարը հասել է մեզ կանոնագրքերի մեջ[1]:

Ձեռագիրների մեկի գրիչը ևս վկայում է, որ հանված է այնտեղից:

Նույնն են հաստատում և սկզբի երկու կանոնները, որոնք իսկապես կապ չունին **«Հարցմունքի»** հետ և եթե կցվել են նրան միմիայն շնորհիվ Գրիգորի անվան: Սրանք վերագրվում են Նիկիո ժողովին, որին մասնակցել է ազգային ավանդությամբ Արիստակեսը: Լուսավորիչն, ընդունելով իր որդու բերած առաջին տիեզերական գումարումի որոշումները, հաստատել է և հայ եկեղեցու սեփականություն դարձրել: Այս մտքով Նիկիո ժողովի կանոնները կարող էին Լուսավորչի անվան կառչել:

Հիշատակարանիս կրկնակի վերնագրից մեկը` **«Կանոն սրբոյն Գրիգորի»** վերաբերում է միմիայն այս երկու կանոններին, իսկ մնացյալի ճշմարիտ գլխագիրն է **«Հարցումն եւ պատասխանիք»**:

Ձեռագիրն ունի` **«Կանոն երկրորդ** երանելոյն Գրիգորի», որ սխալ ընթերցման արդյունք է: Օրինակում, երևի, գրված է եղել` **«Կանոն Բ»**, այսինքն` **երկու** և ոչ երկրորդ ինչպես գրիչն է կարդացել:

Կանոններիս բախտակցությունը «Հարցմունքին» այն նշանակությունն ունի, որ իրենց Նիկիական ծագումով, իրական թե ենթադրական, որոշ հնության լույս են ցողում և նրա վրա:

Մեր հիշատակարանը ժամանակով ինքնուրույն կյանք է ունեցել անկախ կանոնագրքից, հետո է միայն մուտ գործել այնտեղ և անջատվելիս պոկել, կորզել է իր հետ հիշյալ երկու կանոնները:

Իբրև զատ և ուրույն գործ արժանի է առանձին ուշադրության:

**«Հարցմունք»**-իս նմանությունը Եզնիկին բացահայտ է: Այստեղ է կենտրոնացած նրա նշանակությունն ու հետաքրքրությունը: Նորագյուտ հիշատակարանիս գրական պատմական արժեքը կախված է այն եզակի հարցից, թե արդյոք ի՞նչ հարաբերություն կա նրա և Եզնիկի մեջ:

Համեմատությունը դյուրացնելու համար մեր բնագրին կից զետեղված են Եզնիկի համապատասխան էջերը (1):

[1] Այս հոդվածը տպված է նաև ֆրանսական «L'Orient Chrétien» գիտական հանդեսում, 3e série, T. V (XXV), Nos 3 et 4 (1925-1926), pp. 309-357 (**ծան. «Հայրենիքս»-ի - Պ. Հ.**):

Սրանք չեն ծածկում միմյանց լիովին. կան ավելի և պակաս կետեր: Ինչ և լինի նրանց խնդիրը, նմանությունը ավելի շատ է, նմանություն, որ հասնում է գրեթե նույնության և ցույց է տալիս, որ երկուսն էլ մի աղբյուրի ջուր են: Բայց ո՞վ է բանաքաղը, ո՞ւմ է պատկանում առաջնությունը, ահա խնդրի կնճիռը:

Բնական էր կարծել, հենվելով մանավանդ Եզնիկի համբավին, որ հիշատակարանն լինեն մրգված Եզնիկից: Իսկ այն հոդվածները, որոնք պակասում են Եզնիկի մոտ, ինչպես Ձ և ԺԳ հարցերի որոշ և մեծագույն մասերը, համարելու էր անձնական հավելումներ բանաքաղի կողմեն:

Սակայն իրավացի հարց է ծագում, ի՞նչ ստիպողական պետք կար հռչակավոր մատենագրի հանրածանոթ երկից քաղվածներ անել և վերագրել Գրիգոր Պարթևին:

Կրոնական խնդիրներում, թերևս, հասկանալի լինեն անունների փոխարինումը: Եթե խնդիրը դավանաբանական բնավորություն ունենար, Հայ եկեղեցու հիմնադրին կոչ անելը միտումնավոր իմաստ կունենար: Ժողովրդական այս կամ այն մոլար հավատալիքները հանդիմանելու համար Եզնիկի անունն ինքնին բավական ազդու հեղինակություն էր, անկարոտ կողմնակի նեցուկի:

Ավելի հավանական է թվում հակառակ ենթադրությունը: Գրիգորի հարցումը հնության հազվագյուտ բեկոր է, որ իր ժամանակին մտել, կլանվել է գրեթե ամբողջովին Եզնիկի գործի մեջ, բայց դիպվածով պահել է և իր անհատական գոյությունը, թաքնվելով կանոնագրքի ծալքերում:

Մի քանի դիտողություններ, հիմնված մանավանդ բնագիրների համեմատության վրա, գալիս են հաստատելու այս միտքը:

Եզնիկի գործի կառուցվածքը պետք է աչքի առաջ ունենալ, որպեսզի կարելի լինի հասկանալ մեր հիշատակարանի մուտն ու զետեղը ընդհանուր շենքի մեջ: Պարագայորեն խոսած լինելով «Եղծ աղանդոց»-ի կազմի մասին[1], բավականանանք միայն հիշել մեր վերլուծության կետերը այնչափ, որքան պետք են ներկա նպատակի համար:

* * *

Եզնիկի երկը կազմված է երկու տեսակ նյութից՝ հիմնական և թարմատար: Հիմնական ենք անվանում այն մասերը, որոնք շենքի իսկական քարերն են և թարգմանածո, հավանորեն հունարենից:

Առաջին գրքի ա-ժդ գլուխները, որ Մեթոդիոս Պատարացու «Յաղագս անձնիշխանութեան» գործի հայացումն է, չորրորդ գիրքը՝ նվիրված Մարկիոնականության, այլ և երկրորդ գրքի ա-ժբ և երրորդ գրքի ա-ժգ

1 «Բազմավեպ», 1925, թիվ հոկիս [№ 7] և հետևյալ ամիսները:



գլուխները՝ հատկացված զրվանականության և հեթանոս փիլիսոփայության՝ սրանք են հիմնական բաժինները: Թարմատար են մնացած մասերը:

Գործի կամ ավելի ճիշտ նյութերի ծագման, ծննդական տեսակետից առաջին գրքի հիմնական բաժինը, այսինքն՝ Մեթոդիոսի գործը, երբեմն միացած է եղել անմիջապես չորրորդ գրքի հետ: Մեթոդիոսի ավարտական կտորը, որ Եզնիկի մոտ ընկել է երրորդ գրքի վերջը և հարում է անմիջապես չորրորդ գրքի առաջաբանին, (որը հրատարակության մեջ կցած է երրորդ գրքին) այլ բան չէ, եթե ոչ հին քակված շղթայի օղակ:

Քակման պատճառը նոր նյութերի սպրդումն է, որպիսիք են առաջին գրքի ժե գլխից սկսված մինչև երրորդ գրքի վերջին գլուխը: Ճարտարապետության տեսակետից սրանք միջամուտ հոդվածներ են: Մի մասը հիմնական է և նվիրված զրվանականության և հույն իմաստասիրության: Մնացյալը թարմատար լրացումներ են, որ շաղախի պես միացնում են հիմնական քարերը միմյանց հետ և կազմում մի շենք:

Թարմատար տարրերը զանազանվում են հիմնականից ոչ միայն իրենց բնավորությամբ, այլև գրական ծագումով: Մեզ թվում է, որ նրանք մեծ մասամբ առնված են հայերեն աղբյուրներից:

Առաջին գրքի երկրորդ բաժինը, ինչպես ասացինք, թարմատար ենք համարում: Սրա առաջին գլուխները, այն է ժզ-իգ, ընդհանուր կետեր ունին Թարսեղ Կեսարացու և կամ Տիտոս Բոստրացու գրությանց հետ և հավանական ենք համարում, որ նրանց հայերեն թարգմանությունից կամ նման աղբյուրներից ազդված լինեն, ինչպես որ օգտագործված է Հիպպոլիտոսի մի պատառը ժը գլխում:

Իդ-իզ գլուխները ևս ուրույն աղյուսներ են ընդհանուր պատի մեջ շարած և զուտ ազգային գույն ունին: Եվ որովհետև այս գլուխներն են, որ նման են մեր հիշատակարանին, ուստի կարող են քաղված համարվիլ վերջինիցս: Եզնիկի գործի ընդհանուր կառույցը, ուրեմն, ոչ միայն արգելք չէ, այլ նպաստավոր հանգամանք այս տակավին տեսական վարկածին: Երկուսի համեմատական քննությունը բերում է ավելի դրական արդյունքի:

Գրիգորին վերագրած «Հարցումն եւ պատասխանիք» սովորական հարցարան է, մի տեսակ տրամախոսություն, ուր հարց ու պատասխան մատչելի ձևի տակ լուսաբանվում են զանազան հարցեր, որոնք առօրյա կյանքում ընդհանուր հետաքրքրության նյութ են: Ուրիշ գրականության մեջ, ինչպես օրինակ, հույն, ևս ընդունված է, eroteseis kai apocriseis՝ տարածված գրական տեսակ է:

Գրիգորի հարցարանը շոշափում է մի շարք բարձր և նույնժամայն կենսական խնդիրներ ժողովրդական հավատալիքների աշխարհից: Սակ,

մեղք, արքայություն, դժոխք, կախարդներ, դևեր և նրանց ազդեցությունը մարդկանց վրա, ինչպես ոգիներ՝ համբարու, հուշկապարիկ, քաջքեր, վիշապներ և այլ առասպելական էակներ, ինչպես ծովացուլ, խանդիռն, առլեզ, նահանջ, պայ, սրանց մասնակցությունը կյանքում՝ ահա այն չարատանջ խնդիրները, որոնք ծագում են և պատասխան պահանջում, հենց որ երևում են անհատի մեջ գիտակցության և բարոյական համարատվության առաջին նշույլները:

Այս հարցերից շատերը մշակված դրական լուծումներ ունեին, հեթանոս անցյալից ժառանգած և քրիստոնեական միջավայրում իսկ տակավին նվիրական և անդրդվելի: Եկեղեցին պարտք էր զգում թյուր և երբեմն կործանարար հասկացողությունները վանելու, պիտանի ավանդները սրբագրելու, և ընդհանրապես ժողովրդական մտաշխարհը նոր լույսով վերանորոգելու:

Հարցարանի պատասխանները շատ պարզ են և ազատ որևէ վարդապետական պաճուճանքից: Միակ հեղինակությունը, որ ընդունում է, Ս. Գիրքն է, որին և՛ կոչ է անում, և՛ նրանով հիմնավորում իր ասելիքը: Այսպես, այն հարցին, թե ով է մահվան հայրը, այսինքն՝ որտեղից է ծագում մահը, պատասխանում է՝ *նախանձը:* Ինչո՞ւ. որովհետև ասված է թե *բանսարկուի նախանձից մահը մտավ աշխարհ:*

Ո՞վ է մեղքի մայրը՝ *Ագահությունը*. որովհետև ասված է, թե բոլոր *չարիքի արմատը արծաթասիրությունն է:*

Նույն եղանակով գտնում է, որ հավիտենական կյանքի պայմանը հեզությունն է, դժոխքի առիթը՝ լրբությունը: Միշտ միևնույն Ս. Գիրքն է, որի վկայությամբ լուծվում են նման և ավելի բարդ հարցեր:

Արդ ինչպե՞ս է վերաբերում նույն խնդիրներին Եզնիկը:

* * *

Իրավունք ունեինք հուսալու նրանից նաև տեսական լուսաբանություն: Եզնիկի գործը նախ իմաստասիրական բնույթ ունի, և նվիրված է անձնիշխանության սկզբունքի պաշտպանության: Անձնիշխանությունը հույն autexousia բառի թարգմանությունն է և նշանակում է այն, ինչ որ ներկայումս կոչվում է կամքի ազատություն:

Եկեղեցին սկզբից ևեթ որդեգրել է անձնիշխանության գաղափարը և նրա վրա կանգնել քրիստոնեական բարոյականության շենքը: Հեթանոս այլազան ուսմանց հանդեպ եկեղեցին ստիպված է սեփական հայեցակետ մշակելու այն խնդիրների նկատմամբ, որոնց համար ոչ միայն Հին Կտակարանը, այլև Ավետարանն ու Առաքելոց թղթերը թեր և դեմ պատասխաններ ունեին: Ազատ կամքի տեսությունը ուղիղ այն ջահն էր,



որի հետևողական լույսով կարելի էր լուծել հրապարակ հանված գայթակղիչ հարցերը:

Մեթոդիոս եպիսկոպոսի իմաստալից գրության թարգմանությամբ պատրաստ էր միանգամայն հարցի տեսական կողմը: Մնում էր նրա կիրառումը գործնական հողի վրա, որ է մի շարք կենսական երևույթների պարզաբանումը:

Նախքան խնդրին անցնելը Եզնիկը մի անգամ ևս դառնում է չարի գաղափարին: Աստված չարի հետ կապ չունի, նա միայն բարության արարիչ է: Ուրեմն որտեղի՞ց են կյանքի ախտավոր կողմերը, հիվանդություն, ցավ, դիվահարություն, մեղք և նման թերիքներ:

Ահա այս հարցի շուրջն են բոլորում թարմատար անվանածս մասի *ժե-իզ* գլուխները: Հեղինակը ցույց է տալիս, որ չարը հարաբերական գաղափար է և չկա ոչինչ, որ բնությամբ չար լինի: Կանգ է առնում մասնավորապես մահվան վրա, որ չարիքներից դառնագույնն է:

Անձնիշխանականների տեսակետն այն է, որ Աստված չի ստեղծել մահը, այլ *նա հետևանք է կամքի ազատության: Ոչ միայն* հրեշտակները, այլև մարդիկ ստեղծված են այնպես, որ կարող էին անմահ մնալ: Աստված տվել է նրանց ազատ կամք և եթե նրանք պահեին Աստուծո պատվերը, անմահ կմնային, բայց ընտրեցին պատվիրազանցությունը և նրա հետ ժառանգեցին մահ և ամեն տեսակ ցավեր:

Ով որ մտածում է, որ մարդը սկզբից ևեթ մահկանացու է ստեղծվել, այդպիսիների դեմ Եզնիկը բերում է Հիպպոլիտոսի դատողությունն առանց հիշելու անունը:

Մեզ թվում է, որ հիշած գլուխներում Եզնիկը տրամադրել է երկու աղբյուր, Բարսեղ Կեսարացու մի ճառը, և Հակոբ Մծբնեցու վերագրված մի այլ գրություն:

*Ի նկատի ունենք Բարսեղի ճառը՝* Quod deus non est auctor malorum, ուր հարցը այսպես է դրված:

«Որտեղի՞ց են,- ասում են, - հիվանդությունները, որտեղի՞ց տարաժամ մահերը, որտեղի՞ց քաղաքների ավերումը, նավաբեկումը, պատերազմները, սովը»,- ասում են, - այս բոլորը չարիք են և Աստուծո արարք»[1]:

Սրա տեսական պատասխանն է. ինքնիշխանությունն է սկիզբն և արմատը մեր հանցագործության: Հիշվում է նաև այն միտքը, որ «չարիքներից յուրաքանչյուրը իմաստուն և բարի տիրոջ կողմից մեզ ի բարին է», երևի այն մտքով, որ երբեմն ավելի մեծ չարիքների առաջն առնելու համար է:

Այս նույնն է, ինչ որ ասում է Եզնիկը գլ. ի՝ «Բազում անգամ թերևս

[1] Migne, P. G., 31, col. 330.

չարիք ինչ մեծամեծք առաջի մարդոյն կայցեն, կամ նեղութիւնք, որոց ոչ կարէ ժուժալ» և այլն:

Եկեղեցու հայրերից շատերն են գրել այս խնդիրների մասին: Եթե մենք մատնանիշ ենք անում Թադեոս Կեսարացուն, պատճառն այն է, որ մեր եկեղեցու սիրված հայրերից մեկն է, մեզ մոտ ոչ միայն հարևանությամբ, զուցե և արյունով: Նրա այս ճառը ևս կարող էին թարգմանած լինել:

Ավելորդ չէ հիշել, որ Սեբեոսի հրատարակության Առաջաբանում Միհրդատյանցը վկայում է, որ իր ձեռագրում կար նաև մի ճառ տարաժամ մահվան վերաբերյալ և կրում էր Հակոբ Մծբնա հայրապետի անունը: Դժբախտաբար հնարավորություն չունենք ստուգելու, արդյոք հաջողեց լույս ընծայել նույն ճառը համաձայն իր խոստման: Մծբնա հայրապետի անունը գրավական է, որ հին գործ է: Անշուշտ սույն հայրապետի հետ կապ չունի, բայց առնչություն ունի՞ արդյոք Թադեոսի գրության, դժվար է գուշակել:

Ինչ և լինի, մի բան հաստատ է, որ **ժե-իզ** գլուխների առաղձը կազմում են հայերեն լեզվով եղած նյութեր:

Այնուհետև Եզնիկը թևակոխում է մեր Հարցարանի սահմանները: Այնտեղ դրված հարցերին պատասխանում է երբեմն կարևոր հավելումներով և երբեմն արտագրում հավատարմորեն:

Եզնիկը չէ բավականանում ասելով, թե մահվան ծնողը նախանձն է, այլ պետք է տեսնում բերել նաև տեսական հիմ, որպեսզի բացատրվի, թե որտեղից է սատանայի նախանձը: Հիմը նույն անձնիշխանության սկզբունքն է: Սատանան լինելով ազատ կամքի տեր, հոժարությամբ ընտրել է նախանձը. «Զի Աստուած որ աննախանձն արար զնոսա անձնիշխանս, ոչ կամէր թէ որպէս զանասունս ի հարկէ վարիցին. եւ ապա անձնիշխանութիւնն այնուհետեւ չլինէր անձնիշխանութիւն»:

Դարձյալ խոսելով այն մասին, թե սատանան չի համարձակվիլ մարդու մեջ մտնել առանց Աստուծո հրամանի, Եզնիկը ավելացնում է ընդդեմ Հարցարանի, թե «վասն յանդիմանելոյ զանձնիշխանութիւն երկոցուն թուլացոյց ըստ կամաց երկոցունց»: Ուրեմն Աստուծո հրամանն այնպես պիտի հասկանալ, որ առաջուց գիտեր, որ թե՛ սատանան և թե՛ մարդն անձնիշխանությամբ ուզում են թուլանալ, ուստի և Աստված թույլ տվավ:

Նույն բացատրությունն է կրկնում Եզնիկը և այն վտանգավոր հարցի առթիվ, թե Աստված, գիտենալով նախապես, որ մեկը կախարդ պիտի լինի, մյուսը՝ կռապաշտ, ինչո՞ւ արգելք չի լինում նրանց երևալուն: Արգելք չի լինում այն հասարակ պատճառով, «զի նորա բարերարութիւն երեւեսցի եւ նոքա յիւրաքանչիւր անձնիշխանութեանն պարտաւորեսցին», նորա համար, «զի նորա բարերարութեամբ երեւեսցին եւ նոքա իւրաքանչիւր անձնիշխանութեանն պարտաւորեսցին»:



Հետաքրքրական է, որ մնացյալ կետերում, ուր զուգադիպում է Հարցարանին, Եզնիկն այլևս անձնիշխանության մասին ակնարկ չի անում: Թվում է թե երբեմն նույնիսկ հականձնիշխանական պատասխաններն արտագրելով Հարցարանից լռությամբ է անցնում և կամ թողնում է այն հարցերը, որոնք անձնիշխանության բանալիով չեն լուծվում: Այսպես Եզնիկն անտես է արել Հարցարանի հետևյալ հոդվածները՝ ոչ թե կախարդները, այլ Աստված միայն կարող է փոխել արարածների բնությունը:

Մեղավորներին կախարդները անզոր են որևէ վնաս հասցնել, եթե ոչ Աստուծո թույլտվությամբ:

Կայենի սպանության առթիվ ասում է, որ մահու հրամանն Աստուծուց է:

Կանանց ամլության պատճառը Աստված է:

Դիվահարության, անմեղ երեխաների տանջանքին և մյուս կետերին նայող հոդվածները գտնում ենք նաև Եզնիկի մոտ, սակայն դարձյալ առանց անձնիշխանության մեկնության: Արդյո՞ք պատճառն այն է, որ անձնիշխանությունը տկար է այս հարցերին գոհունակ պատասխանելու, թե վերև բերված բացատրությունը տարածելի է համարել սրանց վրա:

Աստուծո կանխագիտությունը և մարդու ազատությունը, անձնիշխանությունը, երկու հակասող հասկացողություններ են, որ միմյանց հետ հաշտեցնելու համար սքոլաստիկ աստվածաբանությունը հնարել է ante praevisa merita բանաձևը:

Վերև հիշած երեք դեպքերում Եզնիկը վարվում է համաձայն այդ բանաձևին, իսկ հետևյալներում ինչո՞ւ չէ օգտվում նույն բանալիից: Թանսարկուի նախանձը, սատանայի մարդու մեջ մտնելը և կախարդների ծնունդը այնպիսի հարցեր են, որոնք հաճախ պատահում են Ծննդոց գրքի մեկնիչների մոտ: Սրանց համար Եզնիկը կարող էր բացի Հարցարանից ուրիշ օժանդակ աղբյուր ունենալ և նրա ազդեցությամբ կիր առնել հիշյալ սկզբունքը: Իսկ այն հարցերում, ուր նա կախված է եղել բացառապես Հարցարանից, մնացել է հարազատ իր աղբյուրին, բարձիթող անելով անձնիշխանության չափսը:

Սրանով փոխառության ենթադրությունը հավանական է դառնում և այս կետում:

* * *

Կա և մի երրորդ հանգամանք դարձյալ ոչ ի նպաստ Եզնիկի:

Մեղքերից և տանջանքներից ազատվելու համար մեր գիտուն հեղինակը քանիցս անգամ հանձնարարում է ***«տապալինել ի սրբոց մարտիրոսացն ճշմարտա»***, որպեսզի ***«զօրութիւն Աստուծոյ որ ի սուրբսն է»*** երևան գա և փրկե նրանց:

Վերստին հորդորում է, որ փոխանակ հավատալու կախարդներին, որ իբր թե նրանք կապում են դևերին և դրանցով խեղդում մարդկանց, *«լաւ էր թէ յայտնէր եւ սրբովք աղաչեցեալ զԱստուած օգնականութիւն գտանէր բաժնելոյ ի չարէն »:*

Միանգամ ևս հիշեցնելով, որ առաքյալների հրաշագործությունների առաջ տեղի էին տալիս կախարդները, հավատացնում է, որ նրանց *«նշանացն նշխարք և այժմ ի սուրբ եպիսկոպոս եւ ի ճշմարիտ վանականս երեւին. եւ զայնր զփորձ ոչ միայն քրիստոնեայք, այլ եւ հեթանոսք եւ մոգք գիտեն»:*

Այս խորհրդալից խրատները չկան Հարցարանում: Մի տեղ միայն հայտնում է, որ «մարդ որ զԱստուած թողու, զսրբութիւն, զպահս, զաղօթս եւ ի դիւթս եւ ի կախարդս ապաւինի, խափանում է Աստուծո յոյսը: Հարցարանիս այս նկատողությունը կրկնվում է Եզնիկի մոտ մի նշանակալից սրբագրությամբ: *«Զի եթող ոմն Աստուած զսուրբս, զպահս, զաղօթս եւ ի կախարդն, որ եւ անձին չկարեն օգնել, ապաւինեցաւ»:* Սրբութիւն փոխարինված է զսուրբս բառով, որով պիտի հասկանալ սրբերի մատուռներ, վանքեր:

Հարկավոր է հիշել ուխտատեղիների նշանակությունը մեր ժողովրդական կյանքում ներկայումս, և Եզնիկի խրատների իմաստը կպարզվի լիովին: Հայտնի է, որ ամեն գյուղ, ամեն տուն և շատ անձինք իրենց սիրած սրբերն ունեն, որոնց տարին մի անգամ ուխտ գնալ անշեղ պարտք է համարվում: Մանավանդ անբույժ հիվանդներն ու ցավագարները երազում են տարիներով սրբերի ոտի տակ դարման գտնելու: Տխուր պատկեր են ներկայացնում ընկնավոր կանայք: Պատարագի միջոցով մատաղ անելուց հետո, երիտասարդ հարսն ու աղջիկներ իրար հետևելով հանկարծ ընկնում են սեղանի առաջ ուշաթափ և սկսում են խոսել բարձրաձայն, **դել տալ**, ինչպես ասում են: Մինչև իսկ անխոս հարսներ, որոնք իրավունք չունեն դեռ խոսելու, այդ վիճակում դեն են ձգում ամոթխածությունը և լեզվի կապերն արձակում:

Հավատացնում են սթափվելուց հետո, որ այս կամ այն սուրբը, հաճախ Աստվածածինը, երևացել է նրանց և խոստացել բժշկություն, եթե մատաղ տանեն մի որոշ սրբի:

Եզնիկի հրահանգները պարզ ակնարկ են նմանօրինակ սովորության: Եթե ընդունելու լինենք, որ Հարցարանը քաղված է Եզնիկից, անհասկանալի կմնար այս կարևոր խրատների հապավումը: Եզնիկից քաղվածներ անելն ուրիշ իմաստ չէր ունենալ, եթե ոչ ավելի մատչելի անել ժողովրդին որոշ հայացքներ և տարօրինակ կլիներ այս դեպքում, որ բանաքաղ կրոնավորը զեղծեր սրբերին ապավինելու և նրանց օգնությունը հայցելու խրատները:

Այս հանգամանքը այնքան ծանրակշիռ է, որ հարկադրում է ընդունել Եզնիկի կախումը Հարցարանից, եթե միայն հետամնաւո տարրեր չեն, ավելացնենք զգուշաբար, խորթ սկզբնական բնագրին:



Հարցարանի «Խանդիոն ի յիշոյ եւ Արտանդ ի գետս եւ ի մառանս» չկա Եզնիկի մոտ: Եթե ձեռագրական պակաս չէ, պետք է ընդունել, որ Եզնիկն ինքն է բաց թողել: Խանդիոն և Արվանդ իրենց անունով և էությամբ հին պատկերներ են և չեն կարող հետասմուտ համարվիլ: Այս կետում ևս Հարցարանի և Եզնիկի հարաբերությունը ի նպաստ Եզնիկի չէ ամենևին:

Արտավազդի ավանդությունը ունի մի հավելված Հարցարանում, որ չկա Եզնիկի մոտ, այն է դարբինների զարկելը սալերի վրա: Կարծել, որ հետին լրացումն է, այդ պատճառով անհայտ է մնացել Եզնիկին, անհավանական է: Բացը նույն կարգի երևույթ է, ինչպես հիշածս Խանդիոն ու Արվանդը:

Մյուս կողմից Արտավազդին Եզնիկն համեմատում է Դավթի հետ, որին ակնկալում էին հրեաները, թե պիտի գա և վերականգնի Իսրայելի թագավորությունը: Այս համեմատությունը եկեղեցականի գիտնական հավելումն է և բնական է, որ Հարցարանում չկա: Մինչև այժմ ժողովուրդի մեջ, գոնե մի քանի տեղ, Նավասարդի օրը, երբ դարբինները տալիս են ավանդական զարկը սալին, համարվում է Դավիթ մարգարեի տոն, անշուշտ եկեղեցու ազդեցությամբ: Հեթանոս սովորությունները արմատախիլ անելու ձգտումով, եկեղեցին գերադասել է Արտավազդի հիշատակը ջնջել հօգուտ հրեական Դավթի:

Այս համեմատությունից սակայն չի հետևում բնավ, որ Արտավազդը Եզնիկի մոտ բարի ոգի է տակավին և որ հետո է չարի փոխվել: Դավթի հետ համեմատելը նպատակ ունի միմիայն ակնկալության նանրությունը ցույց տալու և միմիայն: Արտավազդը, անշուշտ, երբեմն բարի ոգու հռչակ է ունեցել, սակայն հիմք չկա կարծելու, որ Եզնիկի Արտավազդը նման է եզիպտացոց կալանավոր Ալեքսանդրին, որ պիտի ելնե և «մահ խնդրիցէ»:

Ալեքսանդրի զրույցը նմանապես տարբերության նյութ է Հարցարանի և Եզնիկի մեջ: Առաջինը գիտե, որ Ալեքսանդր կապված է Հռոմում. իսկ ըստ Եզնիկի եգիպտացիք են, որ փակել են նրան մի ՀՀի մեջ և լուր տարածել, որ պիտի դուրս գա և նոր կոտորածներ անե:

Դիտելու է, որ Ալեքսանդրի մասին հարց է դրված մեր հիշատակարանում, բայց պատասխանի մեջ անտես է արված նրա մասին խոսել: Արդյոք մեղապարտը գրիչը չէ՞, որ զեղչել է և չի՞ եղել նույն ՀՀի պատմությունը և մեր Հարցարանում:

Կարող է պատահել, որ Եզնիկն ուրիշ տեղից քաղած լինի ինչ- ինչ գծեր, ինչպես օրինակ բասիլիսկոս օձի մասին տված տեղեկությունը:

Համենայն դեպս մոռանալու չէ, որ Հարցարանի նոր օրինակները (2), որ անկասկած հանգչում են տակավին «Կանոնագրք»-ի պես ժողովածուներում, կարող են ավելի լրիվ լինել և հեշտությամբ լուծել մանր կնճիռները լավագույն ընթերցումներով:

Մի ճկատողություն ևս ընդդեմ Եզնիկի: Առաջին գրքի **իգ** գլխում քննում է Եզնիկը այն հարցը, որ ***«հրեշտակք եւ դեւք եւ ոգիք մարդկան անմարմինք են»:*** Հոդվածի վերջում նկատում է. «Այս ամենայն ասացաւ, չի ցուցցի», թե ինչ ասել է մարմնավոր և անմարմին: Ամբողջ գլուխը կարևոր կանխաբանություն է դևերի խնդրին անցնելու: Հիրավի վերջին նախադասությունը, որ մի տեսակ ամփոփումն է կամ եզրակացությունը, ունի. **«Եւ արդ քանզի անմարմինք են հրեշտակք եւ դեւք, յայն սակս եւ ծնունդք ոչ գոն նոցա»:**

Սրանից հետո անմիջապես հետևում է. ***«Այլ ասեն համբարուաց ծնունդք գոն եւ մեռանին»:*** Եվ պատասխանը սկսվում է այսպես. ***«Նախ զայն տեսցուք թէ բնաւ ցուցեն այլ ինչ արարածք բանաւորք քան զհրեշտակս եւ զդեւս եւ զմարդիկ. եւ ապա եկեսցուք այնր ի քննն թէ իցե՞ն ի դիւաց կէսք մարմնաւորք կէսք անմարմինք»:***

Արդ քանի որ Եզնիկը նախորդ գլխում մանրամասնորեն արդեն սպառել է նույն հարցի քննությունը, պետք է կարծել, որ ավելորդ է վերստին նույն նյութին դառնալ և որոշել, ով է դևերից մարմնավոր կամ անմարմին: Կրկնությունս բացատրել կարելի է նրանով, որ Եզնիկն այստեղ արտագրում է բառացի Հարցարանից: Դրված հարցի պատասխանը շատ հակիրճ է, մի պարզ հայտարարություն, միանգամայն համապատասխան Հարցարանի ոգուն, որ չէ սիրում երկարաբանություն և բավականանում է ծանրություն ձգելով միշտ Ս. Գրքի վրա: Կարճ պատասխանը կրկնում է Եզնիկը հակառակ իր բծախնդիր սովորության, երևի, հիշելով որ նախընթաց գլխում երկարորեն ճառել է նույն խնդրի վրա:

* * *

Արձանագրած դիտողություններս թվում է, որ ճպատավոր են Հարցարանին ընդհանրապես: Սակայն չի կարելի զանց առնել մի գիծ, որ երկբայական է:

Դիվահարության առթիվ Հարցարանը և Եզնիկը այն միտքն են հայտնում, որ անմեղների պատիժը նրա համար է միայն, որ երկյուղ ազդե իսկական մեղանչողներին և բերում են մտրակի օրինակը. ինչպես որ իշխանի տանը կախված մտրակը նրա համար է, որ տեսնողներին սարսափեցնե, այնպես էլ տղաների ըկանքը այն նպատակով է, որ սքափեցնե մեղավորներին:

Այս համեմատությունը ծագում է օտար աղբյուրից: Անտարակույս սույն օրինակն ունի ի նկատի Բարսեղ Կեսարացին, երբ իր վերև հիշածս ճառում ասում է, որ տեսակ-տեսակ դժբախտությունները ինչ ծագում էլ որ ունենան, տեղի են ունենում մարդկանց խելքի բերելու համար՝ «համայն չարիքը հրապարակային մտրակով է սաստում Աստված», demosiais mastigi[1]:

Տիտոս Բոստրացին, գրեթե ժամանակակից Բարսեղին, **«Ընդդէմ Մանիքեցւոց»** գրության մեջ ունի հետևյալ խոսքերը.

«Ոչ բարի և ոչ չար կարելի է կոչել նրանց (գազաններին), որ լոկ բնական երկյուղ են ազդում մարդկանց դեպի լավը ուղղելու համար. նրանց անգործությունն իսկ արգելք է մարդկանց պարապության նման մի մտրակի, որ ի ցույց է դրված տանը որպես միջոց սաստելու ընդոծիններին, արդյոք թերանում են, թե փութաջան են տան գործերում»[2]:

Կարծում ենք, որ մտրակի օրինակը առնված է Սիրաքի իմաստությունից և համապատասխանում է 23, 12՝ kai ouk apostesetai apo tou oikou autou mastix այլ և՝ 23, 2՝ tis epistesei epi tou dianoematos mou mastigas:

Հայն ունի. «Եւ ոչ ի բացեայ լիցին ի տանէ նորա ***հարուածք»***. «ո՛ կացուցանէր ի վերայ մտաց իմոց ըկանս». Հույնի mastix հայը թարգմանում է հարվածք, իսկ mastigas - ըկանս, կամ ինչպես Սիրաքի հին թարգմանության մեջ է, **խրատ սաստից**: Անտարակույս է, որ Եզնիկը և կամ Հարցարանը կախում չունեն Սիրաքի հայերեն թարգմանությունից, քանի որ հունարեն բառը թարգմանում են մտրակ, և ոչ հարվածք: Թեև Հարցարանի «նոյնպէս եւ տղայոցն **ըկանսն»** հիշեցնում է Սիրաքի բառը, բայց չենք կարծում, որ մտրակի օրինակը առնված լինի անմիջապես հայերեն թարգմանությունից: Ավելի հավանական է, որ եկեղեցական հայրերի գրությունից է վերցրած: Ասել է, թե այդ հոդվածում պետք է ընդունել օտար աղբյուրի ազդեցությունը:

Արդ՝ մեզ այնպես է թվում, որ Հարցարանը բուսած է հայ հողի վրա և կազմված զուտ հայ նյութերից: Մինչդեռ Եզնիկի մոտ երևում է մեկեն ավելի օտար աղբյուրների հետքեր: Արդյո՞ք և մտրակի օրինակը նրան չենք պարտական: Սակայն, եթե ընդունենք, որ օտար աղբյուրը հայերեն թարգմանված է եղել և այստեղից է անցել Հարցարանը, այն ժամանակ մեր կասկածը կփարատվի դարձյալ հօգուտ Հարցարանի առաջնության ընդդեմ Եզնիկի:

* * *

Հիշատակարանս մի քանի նոր ընթերցումներ է առաջարկում, որ արժանի են ուշադրության:

«Ոչ երբեք ի մարդկանէ եղեալ պայն **զորմէ ասեն թէ եբեսած է»**,

[1] **Migne**, P. G., 31, col. 337.

[2] Անդ, 18, col. 1177:

փոխանակ Եզնիկի «ոչ երբեք ի մարդկանէ եղեալ պայն՝ եթէ **առերես արարած իցէ»**:

Եթե **երեսածէ** խորթ բառը կարդանք տրոհելով **երես ածէ**, այն ժամանակ Նորայրի սրբագրությունը առ երես արածիցէ (փոխանակ արարած իցէ) պետք կլինի ուղղել՝ առ երէս ածիցէ, կամ ավելի ճիշտ վերականգնել ըստ Հարցարանի **երէս ածիցէ**:

«Զտոհմականս անղէոց ծծեն», փոխանակ Եզնիկի «զտոհմականս արդեանց կրեն»:

Առավելություն պիտի տալ Հարցարանի ընթերցման, որ նշանակում է հոտի լավագույն ոչխարներին ծծում էին: Մինչդեռ արդյունքի տոհմականը կրել՝ նվազ պատշաճավոր է. մանավանդ որ «զարդիւնս ի կալոց» կրելու մասին խոսում է հաջորդ նախադասության մեջ:

**«Եւ ոչ իշխան ինչ եղեալ»**, արդյոք ուղղելու է **«և ոչ ի շանէ ինչ եղեալ»**:

«Քաջաց եւ վիշապաց **տեարք** են ի լերինս բարձունս եւ բնակութիւնք»: Եզնիկն ունի «եւ ոչ **տամարք** իբրեւ մարդկան են նոցա ի բնակութիւնս»:

Շեշտելու է նաև Հարցարանի **շէգն** ընթերցվածը փոխանակ առլեզն և «կնոջ պէս **ցուլ** անուն» (վրացի **ցուլի**՝ կին, արդյո՞ք սրա ազդեցությամբ է առաջ եկել ցուլ ընթերցումը), ինչպես և երազազգ՝ Եզնիկ՝ երազազանք և ուրիշ նվազ կարևոր տարբերություններ:

Վաղաժամ ենք համարում տարբեր ընթերցվածների մասին կտրուկ որոշումներ տալ: Պետք է սպասել նոր օրինակների: Լիահույս ենք, որ այդպիսիները կան և անուշադիր են մնացել բանասերների կողմից, որովհետև համարվել են Եզնիկից քաղվածներ և ուրեմն անկարևոր:

Հարցարանները իրենց մատչելի ձևով տարածված են եղել և շատ ընթեռնելի: Կենդանի հիշատակարանները, բնականորեն, ավելի ենթակա են փոփոխության և այլայլման: Զարմանալի չպիտի թվա բնավ, եթե մեր Հարցարանը երևան գա այլազան խմբագրությամբ:

Էջմիածնի թիվ 453 ձեռագրում, գրված 1628 թվին կա Վարդանի **«Հարցմունք եւ պատասխանիք»** վերնագրով մի գործ, որ թվում է, թե կլանել է մեր հիշատակարանը, դատելով այն կտորից, որ բերում է պրոֆ. Ն. Մառը «Ամարային ուղևորություն» աշխատության մեջ (3) եւ որը ավելորդ չենք համարում դնել այստեղ ամբողջապես:

**«Հց.** Ապա զիարդ է, որ բազումք ասեն թէ քաջք պատերազմունս մղեն եւ զորս էրէոց որսան. եւ վիշապք զտոհմականս յանղէոց ծծեն եւ յոլով մարդիկ տեսեալ, զի վիշապք վերանան յերկրէ յերկինս:

**Պտխ.** Այսպիսի յիմարութեամբ լցեալ է երկիր. մի՞թէ արժան է այսպիսի ասացողսն քրիստոն(ե)այս համարել եւ կամ բնաւին առ մտաւորս: Ոչ քաջ լեալ է եւ ոչ վիշապ: Վիշապդ անուն բառ է, զի որ ինչ երկրի մեծ լինի, վիշապ



ասեն ըստ գրոց թէ **դու փշրեցեր զգլուխ, եւ ասար**, որ նշան էր զՓարաւոն փշրել ի Կարմիր ծովն. եւ զզէնսն եւ զզարդս նոցա յալեաց եզր ծովուն գտեալ եւ ի ձեռն լեռորդացն ի խորսն անկաւ յաշխարհն Հնդկաց: Նա էր վիշապն, որպէս մարդ մեծանձնեա յաղթանդամ ասի: *Եւ թէ ուղիղ է, որ* ասեն, ցորեան եւ գինի առեալ դիւաց. սակայն ոչ ուտեն եւ ոչ ըմպեն եւ ոչ ի տեղոյն շարժեն, այլ երեւոյթս իմն տան: Մի՞թէ հրեշտակքն զոր մատուցանէին նոցա կերակուր, որպէս Մանուէ(լ) եւ Գեդէոն, կերան: Անմարմնոյ բնութիւն զիարդ կերակրի զմարմնական կերակուր: Դեւք լոկ երեւոյթս տան:

**Հրց.** Իսկ ընդէ՞ր (ոք) ապա ասեն, տեսեալ ոմանց քաջաց եւ վիշապաց տամարս ի լերինս բարձունս եւ բնակութիւնս, ուր եւ զԱղէքսանդր կապեալ ունին ի Հռոմ եւ զԱրտաւազդ Հայոց թագաւոր ի Մասիս եւ զԵրուանդ ի գետս եւ ի մռայլս:

**Պտխ.** Ոչ Աղէքսանդր կայ կենդանի ի կապանս եւ ոչ Արտաւազդ եւ ոչ այլ ոք յառաջնոց անտի, զի յորդոց մարդկան Ենովք եւ Եղիայ միայն կենդանիք են, այլ ամենեցուն զմահ ճաշակեալ է: Բայց մոլորութիւն դիւաց խաբեաց զկռապաշտսն հայոց ի ձեռն քրմաց, որք ասէին թէ Արտաւազդ ոմն վիշապ արգելեալ են կենդանի ի Մասիս լեառն եւ նա (ձեռ. ի նա) ելանելոց է (ձեռ. են) եւ զաշխարհն ունելոց: Եւ ոմն այլմտաց ունէր զիշխանութիւն հայոց, զարհուրեալ հարցանէր զղձապատումս (ձեռ. զղձայս որում) դիւաց եւ զկախարդսն թէ երբ լինի Արտաւազայ ելանելն ի կապանացն:

Եւ նոքա ասեն. թէ ոչ կամիս զելանելն նորա ի կապանաց, հրաման տուր ընդ ամենայն աշխարհիս դարբնոցն որ ի նաւասարդի օրն որ ամենայն դարբին կոբէ կռանաւ ի վերայ սա(յ)լի իւրոյ. եւ երկաթն Արտաւազայ անդրէն հաստատի: Եւ կատարեն զնոյն հրաման այժմ ամենայն դարբին, որ ի նաւասարդի կռանաւ հարկանեն զսա(յ)լն մինչեւ ցայսօր: Եւ զայս ստութիւնս արձանացոյց սատանայ յաշխարհս:

Նոյնպէս եւ զվիշապ, որ է օձ մեծ առ աջօք ցուցանէ, զի ահագին երեւեալ մարդիկ ի պաշտօն առնուցուն զօձն, որպէս արարին Բաբելացիք եւ Եղլադացիք, զվիշապ օձսն պաշտեցին եւ յԱստուծոյ հեռացան»:

Անտարակույս է, որ այս բանկագին էջերը Վարդանին չեն պատկանում, այսինքն՝ նա չէ հեղինակը: Նա իր ձեռքի տակ է ունեցել մեր Հարցարանի լավագույն և լրիվ խմբագրությունը, որից և արտագրել է հավատարմորեն (4):

Վերև նշանակեցինք, որ մեր Հարցարանում Աղեքսանդրի մասին հարց է դրված, բայց պատասխանը պակասում է: Մեր տարակուսանքը փարատում է Վարդանը, որից երևում է պարզ, որ պատասխանը եղել է իրոք Հարցարանում և գուցե պատահմունքով բաց է թողած:

Հաստատվում է նաև **«զտոհմականս անղէոց ծծեն»** ընթերցվածը: Ընդհակառակը, կասկածի տակ է դրվում **տեարք** բառը, որի տեղ ունի **տամարք** համաձայն Եզնիկի:

Ուշագրավ է ի **մտայս** ընթերցվածը փոխանակ ի **մտաւանս** Երվանդի վերաբերյալ:

«Դու փշրեցեր զգլուխ» և «ետուր կերակուր», Սաղմոսի 73, 14 տան հետևյալ «անկաւ յաշխարհն Հնդկաց» խոսքերից երևում է, որ Վարդանը ևս կարդում է «ետուր կերակուր **զաւրացն հնդկաց**», համաձայն հայերեն թարգմանության: Եզնիկն ունի **ջախջախեցեր** (փոխ. **փշրեցեր**) և **ժողովրդոցն Եթովպացւոց** համաձայն հույն laois tois Aithopsin փոխանակ **զաւրացն հնդկաց**:

Արդյո՞ք նախնի թարգմանության մեջ այդպես է եղել, որ հետո ուղղել են, թե Եզնիկի անձնական թարգմանությունն է այն օտար, ասենք հույն աղբյուրի, որից օգտվել է իր գործի համար:

Ղ. Ալիշանը ծանոթ է թվում Հարցարանին, ինչպես երևում է այն ակնարկներից և մի քանի տողերից, որ բերում է «Հին հավատք հայոց» աշխատության մեջ, անշուշտ այն ձեռագրական աղբյուրների հիման վրա, որ տրամադրելի են եղել նրան վանքի ժողովածուից: Նրանց հրատարակությունը մեծ կարևորություն ունի մեր հարուցած խնդրի նկատմամբ:

Հիշատակարանիս հնության գրավական է այն փաստը, որ նրա հետքերը նշմարելի են արդեն Հովհան Մանդակունու մոտ: Ճշմարիտ է, սրան վերագրված ճառերի հարազատությունը դեռ վիճելի է, սակայն նրանց հնությունը կասկածից դուրս է. «Վասն հմայից դիւթականաց եւ անօրէն յուռթողաց» ճառը մատնում է իր ծանոթությունը ինչպես Եզնիկի, այնպես էլ մեր Հարցարանի հետ: Այսպես՝

- Աղէ, ցոյց զոք ի կախարդաց, որ անցաւ եւ անմահ եղեւ. Հովհան Մանդակունի, էջ 185= Հարցարան, Չ հարցի վերջը և Եզնիկ:

- Սատանայ առանց քոյոց հրամանաց եւ Աստուծոյ թողացուցանելոյ արարածոց Աստուծոյ ոչ իշխէ: Դու իսկ գիտես եթէ ի խոզիցն̂ երամակ ոչ իշխեաց մտանել, բայց եթէ հրամայեաց եւ զինչս նոցա ոչ իշխեաց կորուսանել, բայց եթէ ի տեառնէ առ հրաման. էջ 195, հմմտ., Եզնիկ, գլ. **իը**:

- Վասն այդորիկ եւ մահ տարաժամք, վասն այդորիկ եւ նեղութիւնք բազումք, վասն այդորիկ եւ **անզաւակութիւնք ի ծննդոց եւ կապումն երկանց անլուծանելի**, վասն այդորիկ եւ ըկումն դիւաց... էջ *199*, հմմտ. Հարցարանի՝ **որդիս տալ ամլոց եւ զմէջ սատանայն կապեցուցանել** բարիս առնել: Ձեռագիրներից ոչ մեկը չի պահել սույզ ընթերցումը, որ մենք վերականգնում ենք **զմէջ սկնդուկս**: Հին բառ է սկնդուկ եւ նշանակում է ամուլ[1]:

- Եւ արդ հայեսցուք ի պատուիրանս Աստուծոյ եւ զգուշալս ի նմա արասցուք եւ մի մոլորեսցուք իբրեւ զհեթանոսն ի բախտ եւ ճակատագիր եւ ի

[1] **Եռ**., 54, 1:



հրամանս: Զի զինչ եւ հրամանքդ տարածեն ընդ ամենայն երկիր եւ բանդագուշեալք խօսեն սուտ եթէ մարդ ընդ հրամանաւ վարի եւ գործէ: Եթէ այդպէս է եւ ընդ հրամանաւ գործէ մարդ, ապա յայտ է եթէ եւ դատի ոչ վասն մեղացն, զի զհրաման նորա կատարեմք... էջ 200 = Եզնիկյան դատողություն, հմմտ., ա 15:

- Այլ արարածս ընդ հարկաւ եւ ընդ ծառայութեամբ եւ ըստ հրամանի սորա վարին եւ **ճնճղուկ անգամ յորոգայթ ոչ անկանի առանց հրամանի**, բայց միայն զմարդ տէր եւ ի վեր, քան զհրաման ստեղծ... էջ 200= Հարցարան, Չ հարցի վերջը:

-Ով յիմար ընթերցող, յամենայն մոլորութեանց չեղեն քեզ բաւական նշխարք մարտիրոսաց, որ եկեալ եւ դադարեալ են առ քեզ եւ հանապազ խնդրին վասն քո ... էջ 197 = հմմտ., Եզնիկ, **ա 22:**

- Արդ եթէ ոք հաւատովք առ Աստուած անկանի, աղաչանօք ապաւինի ի նշխարս մարտիրոսաց, ընդունի բժշկութիւն ցաւոց, զհալածումն ախտի եւ զելումն դիւաց. էջ 188՝ հմմտ., Եզնիկ:

Կան և ուրիշ ընդհանուր կետեր և մանավանդ անձնիշխանության սկզբունքն է, շատ որոշ և պարզ ձևակերպված, որով մոտենում է Եզնիկին: Սակայն ամլության վերաբերեալ ակնարկը և ճնճղուկի օրինակը, որ միայն Հարցարանում ենք գտնում, երևան է հանում հեղինակի ծանոթությունը և մեր հիշատակարանի հետ:

Այսպիսով և այս փաստը, որ Հարցարանս երեց է, քան Մանդակունու անունը կրող ճառը, գալիս է ուժ տալու մեր մի շարք դիտողություններին նրա և Եզնիկի փոխհարաբերության նկատմամբ: Դիտողություններս առանձին առանձին առած գուցե և տկար, բայց հատ հատ թելեր են, որ միասին կազմում են առասան, կապելով «**Եղծ աղանդոցը**» Հարցարանիս: Եվ այս կապը համոզիչ է մանավանդ եթե նկատի առնենք Եզնիկի գործի ընդհանուր կազմը, որի վերլուծումն արել ենք «Բազմավեպ»-ում, ինչպես հիշեցինք վերև:

Հիշատակարանիս և Եզնիկի մեզ զբաղեցնող էջերը, անկախ արտահայտածս հայացքից, առաջնակարգ նշանակություն ունին, իբրև ժողովրդական մտաշխարհի թանկագին գոհարներ, արժանի հատուկ ուսումնասիրության (5):

---

Գրությունս արդեն պատրաստ էր, երբ դիպվածով ծանոթացա «Patrologia Orientalis» խմբագրության մեջ **«Հարցմունք Եղիշայի»** կարևոր հիշատակարանին: Տարաբախտաբար չկարողացանք օգտվել մեզնից անկախ պատճառով: Հնարավոր եղավ միայն աչքի անցնել: Վերև հիշած **Վարդանի** հարցմունքի անմիջական աղբյուրը այս հիշատակարանն է անպայման (6):

## ՆՇԱՆԱԳԻՐ ԿԱՐԳԱՑ ԲԱՆԻՑ ԵԶՆԿԱՆ ԵՐԻՑՈՒ

Պարիսի Ազգային Մատենադարանի հայ ձեռագրական հավաքածուի մեջ կարևորագույններեն մեկն է թիվ 51, նոր ցուցակով թիվ 112, ձեռագիրը, որ պարունակում է **«Ցամախապատումը» և Ագաթանգեղոս**, և գրված է 1254 թվին Իտալիայում ոմն Վարդանի ձեռքով:

Ձեռագիրն իր նախնական վիճակի մեջ չէ: Երևում է քայքայված դրության մեջ է եղել և մի անհայտ ձեռք նորոգել է, կարկատել, և մի կարևոր փոփոխություն մտցրել: Ներկայումս **«Ցամախապատումը»** բռնում է թղ. 1-104, որից թղ. 1-58, ուրեմն գրեթե կեսը նոր գրչություն է և պատկանում է նորոգողին: Թղ. 104, 105, 106 և 107 պարապ են, իսկ թղ. 108-րդ սկսվում է Ագաթանգեղոս և հասնում մինչև 292ա: Թղթերի թվագրողը սխալմամբ մի թուղթ չէ համարել, և Ագաթանգեղոսի վերջին թուղթը հաշվել է 291, փոխանակ 292: Գրությունը երկսյուն է և թղ. 292-ի առաջին էջի երկրորդ սյունակի կեսից սկսվում է Եզնիկ Երեցի **Նշանագիրը**, հետևում է թղ. **293ը «Ժամանակի հայրապետացն հայոց»** պատառիկը և վերջանում թղ. 294 գրչի հիշատակարանով:

Ձեռագրի նորոգողը նշանակել է ստորին լուսանցքներում տետրակների թվահամարը՝ Ա-ԻՁ, ընդամենը ուրեմն 26 տետրակ:

Սակայն բուն ձեռագրում, գրիչ Վարդանի ձեռագրում, առաջին տեղը բռնելիս է եղել **Ագաթանգեղոս** և երկրորդը՝ **«Ցամախապատում»**, ինչպես կարելի է տեսնել տետրակների հին թվահամարից, որ տեղ-տեղ պահվել է ստորին և վերին լուսանցքներում, շատ տեղ փոխել է նորոգողը: Այսպես **Ագաթանգեղոսի** առաջին էջի ստորին լուսանցքում պարզ նշմարելի է Ա տառը, առաջին տետրակը, և **«Ցամախապատումի»** վերջին տետրակը կրում է Ձ տառը, որից հետևում է, որ ձեռագիրն իր սկզբնական վիճակի մեջ ունեցել է 27 տետրակ՝ Ա-Ձ: Նորոգողն Ա ուղղել է ԺԱ ավելացնելով Ժ տառը հին Ա-ին՝ նոր թանաքով և նոր գրչով: Նմանապես հին Ո ուղղված է Ձ, հին Ձ ուղղված է Է: Միայն **Ագաթանգեղոսի** բնագիրը բռնել է հնումն 16 տետրակ, իսկ **«Ցամախապատումը»**՝ 11: Նորոգողն, ինչպես հիշեցինք, արտագրել է նորեն **«Ցամախապատումի»** գրեթե կեսը, առաջին 14 գլուխները, արտագրել է ավելի սեղմ գրով. ամփոփելով ամբողջ երկը տասն տետրակում, փոխան իր օրինակի 11 տետրակին, ուրեմն մի տետրակ խնայողություն է արել, և որովհետև կարգը փոխել է դնելով **Ագաթանգեղոս**



հետ **«Ցամախապատումի»**, ուստի և Ագաթանգեղոսի առաջին տետրակի Ա դարձրել է ԺԱ-րդ:

Այս փոփոխությունն արժանի է ուշադրության տես՝ ինչ նկատումով: Եթե բուն ձեռագիրն ունեցել է Ագաթանգեղոս- «Ցամախապատում», փոխանակ այժմյան «Ցամախապատում»- Ագաթանգեղոսի, պետք էր սպասել, որ գրչի հիշատակարանը զետեղված լինեը «Ցամախապատումից» հետո, ինչպես սովորություն է: Մինչդեռ այստեղ հիշատակարան չկա, այլ քանի մը բաց, չգրված թղթեր: Բնականորեն հարց է ծագում, արդյոք նորոգողը տեղահան չէ արել հիշատակարանը, ուր, նկատենք, գրիչը կոչում է իր գործը **«Աստուածաշունչ սուրբ տառ Սրբոյն Գրիգորի»**, որ թերևս ավելի «Ցամախապատումին» է պատշաճում, քան Ագաթանգեղոսին, որի վերնագիրն է ձեռագրում **«Պատմութիւն նահատակութեան Սրբոյն Գրիգոր Լուսաւորչին» Ագաթանգեղոս**: Եթե գրչի հիշատակարանն իր բուն տեղը չէ, այն ժամանակ հարց է ծագում, արդյոք **«Ժամանակի հայրապետաց»** գրությունը լրի՞վ է և թուղթ չէ՞ պակաս, ուր թերևս շարունակվում էր կաթողիկոսների ցանկը: Վերջին անունը՝ Ստեփ[անոս] ջնջված է: Ինչո՞ւ: Առաջին յոթն անունները գրավում են ամեն մեկը մի տող, մնացածները երկուսը՝ մի տող, բացի վերջին տողից ուր սեղմված են երեք անուն: Վերջընթեր տողը՝ Դավիթ, Տրդատ և Բ (այսինքն՝ Դավիթ երկրորդ) իսկապես երկանուն է, քանի որ Դավիթ երկրորդի անունը զեղջված է: Վերջին տողի երկրորդ անունը ջնջված է, որպեսզի այս տողն ևս մյուսների նման երկանուն լինի և թերևս կամեցել է ջնջված Ստեփ[անոս] անունը տեղափոխել հաջորդ թուղթը: Այս կարող է հիմ տալ կասկածելու, որ պակաս թուղթ կա, մինչդեռ հաջորդ թուղթը բռնում է գրչի հիշատակարանը:

Սակայն եթե գրիչը տրամադրել է մի թուղթ ևս ուր ենթադրաբար պիտի գրեր Ստեփանոսի և հաջորդների անունը, այդ պարագային ի՞նչ պետք ուներ սեղմելու իր գրությունը և ամեն տողում երկու երկու անուն զետեղելու, փոխանակ շարունակելու, ինչպես սկսել էր, մի մի տող հատկացնելու անուններին: Տողերի թիվը ևս 27-ից հասցրած է 32-ի, գրության խտացումը մի բան կարող էր նշանակել՝ այն է սպառել անունների ցուցակը մի էջի վերա առանց անցնելու նոր էջի: Մի ուրիշ հանգամանք: Ձեռագրի գրիչը սովորություն չունի թղթե թուղթ անցնելիս նշանակել ստորին լուսանցքի անկյունում հաջորդ էջի սկզբի բառերը թղթերի հաջորդական կարգը պահելու համար, ինչպես ընդունված է հին ձեռագիրներում, երբ էջերը թվագրելու եղանակը տակավին գործածական չէր: Միայն մի բացառություն է արած. վերջընթեր թղթի լուսանցքում, ջնջված Ստեփ[անոսի] անվան ներքո կարդացվում է՝ **փառք ամենա-**, որ է հաջորդող հիշատակարանի սկսվածքը՝ **փառք ամենասուրբ**: Սրանով կարծես թե փարատում են վերև հայտնած կասկածները թե պակաս թուղթ կա **Հիշատակարանից** առաջ:

Ձեռագրի ճորոգիչը շատ տեղ ավելացրել է փոխանցագրությունը, անշուշտ քայքայված թղթերի կապը որոշելու համար: Եվ որովհետև ո՛չ հին ձեռագրում և ո՛չ իր վերստին ընդօրինակած մասում չկան փոխանցագրություններ, կարելի է կարծել, որ **փոքր տառեր** նորոգիչի կողմից է ավելցրած և ոչ թե պատկանում է բուն գրչին: Ձեռագիրը քննել ենք շատ տարիներ առաջ և այն տպավորությունն ենք ունեցել, որ գիրը նման է ձեռագրի գրչության: Թերևս ստուգելու պետք կա: Սակայն այժմ մեր քննության նյութն է Եզնիկի **Նշանագիրը**, որի հետ հարուցած խնդիրն աղերս չունի:

Եզնիկի այս գործը հայտնի է շատոնց և արդեն հրատարակված է 1893 թվին Արշակ Տեր-Միքելյանի ջանքով (1), որ Ս. Էջմիածնի ճեմարանի խոստումնալից սաներիցն էր և մեռավ երիտասարդ հասակում, աշակերտել էր Գերմանիայում նշանավոր Հ. Գելցեր գիտնականին և էր դասընկեր Կարապետ Տեր-Մկրտչյանի՝ հայտնի եկեղեցականի:

Տակավին Ա. Բագրատունին օրինակել է Եզնիկի **Նշանագիրը** Պարիսի ձեռագրից 1823-1824 թվերին և «Հայկազյան բառարանի» հորինողները օգտվել են այդ ընդօրինակությունից (տե՛ս «խառնակ» բառը): Հ. Գաթըրճյան ևս ընդօրինակած է եղել և նորերս հրատարակեց հ. Ն. Ակինյան **«Հանդես ամսօրյայի»** մեջ[1] հանդերձ քննական ուսումնասիրությամբ:

*Չգիտենք միայն, ինչո՞ւ* ***Նշանագիրը*** անվանած է **Նկարագիր**. թվում է, թե անուշադիր ընթերցանության վրիպանք է: Հ[այր] Ակինյան կարծում է, որ **Նշանագիրի** հեղինակ Եզնիկ Երեց ոչ այլ ոք է, եթե ոչ նշանավոր Եզնիկ Կողբացին: Նույն կարծիքն հայտնել է նրանից առաջ հ. Բ. Սարգիսյան: Վերջինիս տեղեկությունը շփոթ է **Նշանագրի** ձեռագրական դրության նկատմամբ. ուստի ավելորդ չհամարեցինք նորեն հրատարակելու այնպես ինչպես ձեռագրի մեջ է: «Ագաթանգեղեա պատմության վերջը, - գրում է հ. Բ. Սարգիսյան, կա մի ծանոթագրություն, ըստ որում Ագաթանգեղա համար կսվի թե թարգմանված է Եզնիկ Երիցու ձեռքով ի հայրապետության Կոմիտաս կաթողիկոսի... այս ծանոթագրության կիաջորդե **«Նշանագիր կարգաց** հիշատակարանը»: Ծանոթագրություն ասելով հ. Բ. Սարգիսյան ի նկատի ունի **Նշանագրի** վերջին նախադասությունը «Եղիցի յիշատակ Եզնակն ի թարգմանել զգիրս զայս»: Նրա ենթադրությամբ այս հիշատակագիրը վերաբերում է Ագաթանգեղոսին և սկզբում կցված է եղել նրան և հետո տեղը փոխել է **Նշանագրի** հավելումով: **Նշանագիրը** առանց վերջին կտորի, Հռիփսիմեի վանքի նորոգության, պատկանում է, նույն հ. Բ. Սարգիսյանի կարծիքով, Եզնիկ Կողբացու գրչին և հետևապես պետք է

[1] «Հանդես ամսօրյա», 1937, № 11-12 (2):



ընդունել, որ անհարազատ կտորի ներմուծումով հիշատակագիրը միանգամ ևս փոխել է իր տեղը և կարգվել այս կտորի վերջը, ինչպես այժմ է: Եզնիկ Կողբացին որպես թե թարգմանած լինի հունարեն համառոտ բնագրեն Ագաթանգեղոս և նրա ընկերակից Կորյուն թարգմանություն ճոխացրած և ընդարձակած[1]:

Հ[այր] Սուքիաս Պարոնյան, նախկին Մխիթարյան, որ Հասունյան խռովության առթիվ դարձավ մայր եկեղեցու գիրկը և հովիվ կարգվեց Պարիս, տակավին 1867 թվին կազմել է [Փարիզի] Ազգ[ային] Մատենադարանի հայ ձեռագիրների ցուցակը կարևոր դիտողություններով (3), այն միտքն էր հայտնել, որ Եզնիկ Երեցը Կողբացին չէ, այլ Կոմիտասի ժամանակակից ոմն, որ հեղինակել է **Նշանագիրը** և թարգմանել հունարենից **Ագաթանգեղոսը**: Այս կարծիքը հավանություն է գտել և l'abbé Martin-ի [կողմից], որ Պարոնյանի ցուցակը թարգմանել է ֆրանսերեն և լրացրել (4), և հայտնի հայագետ V. Langlois-ի (5) կողմեն:

Հ[այր] Սարգիսյանի և հ. Պարոնյանի ենթադրությունները Ագաթանգեղոսի վերաբերյալ անընդունելի են: Հ[այր] Ակինյան իրավամբ ընդդեմ է արտահայտվում Եզնիկ Երեցը Ագաթանգեղոսին կապելու ծախող մտքին: Եվ այս նրա ուսումնասիրության դրական կետն է: Ինչ վերաբերում է **Նշանագրին**, նա հարում է հ. Սարգիսյանի կարծիքին, և աշխատում է հիմնավորել այն, ինչ որ սոսկ ենթադրություն էր իր նախորդի կողմեն:

Բ. Սարգիսյան անհարազատ էր համարում միայն վերջին մասը՝ Ս. Հռիփսիմեի նորոգության մասը, հ. Ակինյան զեղջում է նաև Ս. Սահակին և Ս. Մեսրովպին նայող հատվածը:

Մենք բոլորովին տարբեր հայացք ունինք խնդրի վերա: Նախ ավելորդ չենք համարում միանգամ ևս վերարտադրել ստորև վավերագիրը ամենայն հարազատությամբ համաձայն ընդօրինակության, որ արել ենք տարիներ առաջ Պարիսի ձեռագրից:

[1] Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ հայերեն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարյանց ի Վիեննա, հատ. Բ, 1924, էջ 1060: Հմմտ. նաև՝ «Ագաթանգեղոս և յուր բազմադարյան գաղտնիքն», Վիեննա, 1890, էջ 315:

## (Թ. 291ա) ՆՇԽԱՆԱԳԻՐ ԿԱՐԳԱՑ ԲԱՆԻՑ

Թ. 292ա Եզնկանն երիցու, թէ ուստի էին կամ որպէս: Զիարդ յաջորդութիւնք թագաւորացն Տրդատայ, և քահանայապետացն, ի սրբոյն Գրիգորէ որ կային մինչև առ մեզ: Վարումն փոքր ի շատէ դրոշմեալ վասն գիտութեան ի վերայ հասանելոյ:

Յետ Տրդատայ թագաւորեաց որդին իւր որ կոչեցաւ Փոքր Խոսրով: Ի սորա աւուրս եկաց քահանայապետ երէց որդին Գրիգորի Վրթանէս: Յետ նորա Տիրան որդին Խոսրովու, ի սորա աւուրս Թ. 292բ Յուսիկ որդի Վրթանիսի եկաց քահանայապետ: (Յետ նորին թագաւոր) յաւուրս Տիրանայ: Յետ մահուան Յուսկանն կալաւ զքահանայապետութիւն. հայոց Փառներսէհ ոմն, մի յազարակէն մատրանն Յովհաննու ի Տարաւն գաւառէ ի Մեհենա գեաւղն, որ մայր է եկեղեցեացն հայոց այսինքն նախ անդ եկեղեցի զառաջին շինեալ: Յետ նորա թագաւորէ Արշակ որդին Տիրանայ: Ի սորա աւուրսն Ներսէս որդի Աթանագինէի եկաց յաթոռն Յուսկանն, թոռն Գրիգորի մեծի, զորմէ ասեն համեմատեալ Գրիգորի ի գործս կարգաց վարուց գնացից իւրոց: Զկնի սորա Սահակ: Սա եկաց կաթողիկոս: Եւ ապա Շահակ և Զաւրէն և Ասպուրակ կացին կաթողիկոսք որ էին ի զաւակէ Աղբիանոսի եպիսկոպոսի: Յետ նորա Պապ որդին Արշակայ Յետ նորա Վարազդատ (ի) նմին թագաւորութեանն տոհմէ որ ապա ատարակալութիւն: Ապա Խոսրո(վ) ոմն ի նմին տոհմէ թագաւորացն հայոց: Առ սովաւ բաժանեցան զերկիրն հայոց ընդ երկու թագաւորն յունաց և թագաւորն պար(սից): Պարսից կողմանն Խոսրով թագաւորէ, մասինն յունաց աշխարհին Աշակ ոմն ի նմին տոհմէ թագաւորէ հրամանաւ յունաց թագաւորին: Յետ սորա կոմեսք կալան: Յետ Վրամշապուհոյ որ կողմանն պարսից թագաւորեաց ապա ամս հարուստս մարզպանք պարսից կալան մինչև առ մեզ: Իսկ ապա Արտաշէզ որդի Վրամշապուհոյ թագաւորէ հրամանաւ պարսից արքային: Եւ ապա մարզպանք պարսից կալան մինչև առ մեզ: Առ որով Ասպուրակէս կաթուղիկոս: Եւ դարձեալ առ որով ընտրեցաւ Սահակ անուն լինել կաթող- Թ. 293ա իկոս, որ է որդի Ներսեսի առաքինւոյ թոռն Աթանագինէ թոռն սրբոյն Գրիգորի: Առ սովաւ դպրութիւնք հայոց յաջորդեալ: Եւ կտակարանք եկեղեցւոյ ի սմանէ յառաջ թարգմանեցան և կարգք գործոցն Գրիգորի նորոգեալ արամբ միով երանելեաւ Տարաւնացւոյ որում անուն Մասրովպ ճանաչէր: Որ էառ զձեռնադրութիւն երիցութեան ի նմին Սահակայ կաթողիկոսէ: Սա եգիտ նշանագիր դպրութեան հայերէն լեզուին վարելոյ ալափետացն հանգամանս յորում ժամանակի լցան նոքաւք կարգքն յառաջադիմութեան: Եւ նոցուն աշակերտ Ղևոնդ այր սուրբ և ընտրեալ և ճշմարիտ ի գործ մշակութեան Այ. Արձան և Կորիւն և Եզնիկ և արքանեակք նոցուն լուսաւոր հանդիսիցն ձեռնադրեալ են ի ն(մին) սրբոյ կաթողիկոսէ:

Եւ եղև հանումն և նորոգումն նոսկերացն սրբոցն Գայիանեայ և Հռիփսիմեա և ընկերաց նոցին ի Սահակայ կաթողիկոսէ, զի եդածովն Գրիգորի կային նոքա: Եւ շինեաց զվկայարանսն վիմատաշ կոփածոյ քարամբք ի Վաղարշապատ քաղաքի: Եւ նորոգեաց զտուն Այ. այսինքն զսուրբ եկեղեցին: Զի մեծին Գրիգորի եղեալ էր զհիմունս զայն, որպէս և ցուցեալ էր տեսլեանն երևեցելոյ: Բազում և այլ տեղիս նորոգեալ է սուրբ և ճշմարիտ կաթողիկոսն մեծ Սահակ: Եւ ապա շինեաց զսուրբ եկեղեցին և զվկայարանս սրբոցն ընդ ամենայն տեղիս Հայոց Մեծաց: Եւ եղև այս ի յամս Աբդլահի վանաց երիցու սրբոյ ի Վաղարշապատ քաղաքի: Մինչև յաւուրս Կոմիտա- Թ. 293բ սայ սրբոցն Հռիփսիմեանց սպասաւորի որ արժանի եղև աթոռոյն սրբոյն Գրիգորի որ ցանկացաւ նորոգել զեկեղեցիսն որում և շնորհեցաւ մեզ ի Քէ.: Նախ նորոգել զսուրբ կաթողիկէն և ապա զվկայարանսն սրբոյն Հռիփսիմէի որ կայր նովին տապանաւ սրբոյն Գրիգորի պատեալ իւրովք ձեռաւք.

19. Վրիպակ. գրիչը կանխել է սխալմամբ գրել ինչ որ հետևում է 14-րդ տողում:

26. Թերևս ի մեհենագեաւղէն:

34. Թոռ (ի)ն:

45. Աշակ. հետո ավելացրած է ք տառին վերև:



129. Աբդլահի անվան մեջ վերջին ա-ի երրորդ սանղնի փոխարեն մի կետ է:

132. «Մինչև յաւուրս» ուզում է ասել՝ Եւ այսպէս եկաց մնաց մինչև յաւուրս. ոճաբանական թերություն է անվարժ գրչի:

145 ողջ և անքակ խառնակք
յաւղիցն նովին հանդեր-
ձով: Որ արդեաւք ան-
հաւատալի թուիցի զկը-
նի մեր եկելոց, այլ մեր-
150 ովք իսկ ձեռովք արժա-
նի եղաք շաւշափել յա-
նդիման բազմամբոխ
հրապարակաց զոր
փոխեաց ի հանգիստ ի
155 նոյն յարկս զոր շինեաց
արաստոյ վիմաւք յաւ-
ուրս Յոհաննկան սրբոյն
կաթողիկէի վանաց երի-
ցու և Կամովէղի նորուն
160 սրբոյն Հռիփսիմէի վան-
աց երիցու ի Վաղարշապա-
տ քաղաքի:
Քաանևիննեռորդ ամի Խո-
սրովայ արքայի ց ամաքա
164 յի որդւոյ Որմզդի:
Եղիցի յիշատակ Եզնակն
ի թարգմանել զ գիրս զայս.

162 ԺԱՄԱՆԱԿԻ ՀԱՅՐապետացՆ
ՀԱՅՈՑ:

165 Սրն. Գրիգոր, ամս լ.
Սրն. Ռստակէս, ամս է.
Սրն. Վրթանէս, ամս ժէ.
Սրն. Գրիգորիս, ամս ժէ.
Սրն. Յուսիկ, ամս զ.
170 Սրն. Ներսէս ամս գ.
Տր. Փառներսէս ամս դ.
Տր. Շահակ զ. Տր. զօրէն դ.
Տր. Ասպուրակէս ամս է.
Սրն. Սահակ խա. Տր. Գաղ ժէ.
175 Տր. Յոհան Մանդանդ ժր.
Տր. Բաբգէն Ե. Տր. Սամուէլ ժ.
Տր. Մուշէ ը. Տէր Սահակ ժ.
Տր. Քրիստափոր զ. Տէր Ղևոնդ դ.
Տր. Ներսէս ի. Տր. Յովհաննես ժէ.
Տր. Մովսէս լ. Տր. Աբրահամ իգ.
Տր. Յոհան իզ. Տր. Կոմիտաս
Տր. Քրիստափոր Գ. Եզր ժ.
Ներսէս ի. Անաստաս զ. իէ. լ
Սահակ իզ. Եղիա ծզ.
185 Դաւիթ ծզ. Տրդատ իզ. բ. ա
186 Սիոն իէ. Եսայի ծզ. Ս|տե|փ. բ.
փառք ամենա

163. Կարդալ՝ արքայից արքայի:

165. Եզնակն փոխ. Եզնկան, նորոգողը սխալվել է և գրել ակ փոխ. կա-ի:

186. Ստեփ. անվան վրան քանի մը շեղ գիծ է քաշած, ջնջել ուզելով, բայց տարբերակը ջնջված չէ:

160-186. Նոտարատիպ բառերը գրված են վերջին նորոգողի ձեռքով: Ինչպես երևում է թղթի այդ նեղ շերտը վերևից վայր խոնավությունից, թե այլ պատճառից վնասված է եղել և գրերը դժվարընթեռնելի կամ եղծված: Ուստի նորոգողը թղթի երկայն շերտ է կպցրել վնասված մասի վրա և ինքը վրան գրել անշուշտ ըստ ձեռագրի:



Թ. 294ա Փառք ամենասուրբ երրորդութեանն հաւր և որդւոյ և
սրբոյն հոգւոյն յաւիտեանս յաւիտենից, ամէն:
Շնորհիւն այ. սկսայ և ողորմութեամբ նորին կատարե-
ցաւ ածաշունչ սբ. տառս սրբոյն Գրիգորի հայոց լու-
սաւորչի ի խնդրոյ երջանիկ առաքելաշնորհ եպիսկո-
պոսին Յովանիսի և սրբասնեալ քահանայից Դանիէլի
և Սիմէոնի, զի բազում յուսով և փափագանաւք ցա-
նգացող եղեն սբ. գրոցս ի վասն յիշատակի իւրեանց:
Եւ ես պատճառեցի զանկարութիւն իմ բայց տեսի զյոյս
դոցա և ի յանձն առի, առաւել վասն բազում մեղաց ի-
մոց յուսալով իմ յողորմութիւնն այ. և ի բարեխաւսու-
թիւն սբ. հայրապետին Գրիգորի:
Արդ գրեցաւ գիրքս այս ձեռամբ մեղաւոր և անար-
ժան եւ անպիտան կիսամեռ եւ դանդաղ փցուն գրչի Վար···[1]
ի թւականիս հայոց չզ. ի քաղաքիս որ կոչի Ռիմ ընդ
հովանեաւ սբ. տաճարիս որոյ յանուն սբ. աւետարան-
չացն Յոհաննու և Մատթէոսի և է սա հոգետուն հա-
յոց: Եւ ես ստւտանունս Վարդան գրեցի զգիրքս զայս
եւ եդի զայս յայսմ եկեղեցւոջ ի յիշատակ ինձ և ծնա-
ղաց իմոց հաւր և մաւր որ ըստ մարմնոյ և հարազատի
ն իմոյ Ստեփանոսի քահ. և քեռն իմոյ և որդւոյն Յոհանիսի
որոց ողորմեսցի տր. ած. և հանգուսցէ ընզ սբս. իւր
աղաչանաւք սրբոյն Գրիգորի Լուս. և ամենայն սրբոց
ընդ նմին ողորմեսցի տր. քս. երջանիկ եպիսկոպոսին
Յովհանէսի և սրբասնեալ քհիցն. Դանիէլի և Սիմէոնի
և ծնողաց իւրեանց և բնաւ զարմից ազգանաց. ամէն:
Ողորմեսցի ած. աշխատողաց ի գիրքս և որ հանդիպեցան
յայսմ տեղւոջ և աշխատեցան ի սպասաւորութե. տկարութենս.
մերոյ ամէն, Պաւղոսակ, Պալաւակ:

Արդ այս երկի առաջին մասը՝ սկզբից մինչև 79-րդ տողը (Առ սովաւ դպրութիւնք) հ. Ակինյան ընծայում է Եզնիկ Կողբացուն:

Հ[այր] Ա[կինյան] ընդունում է, որ գրվածքիս հեղինակը «աչքի առաջ է ունեցած Փավստոսի Պատմությունը» և մատնանշել է քանի մը կետեր, բայց ոչ բոլորը: Խնդրի պարզաբանության համար անհրաժեշտ է նշանակել բոլոր քաղվածները:

Գրության խորագիրն անգամ կրում է Փավստոսի «Խոստաբանութեան»

[1] Վրան կետեր դրած որպես ջնջման նշան:

ճշմարեփ ազդեցությունը. **«կարգ** անցելոց իրաց, գործք և վարք.... ժամանակագիր արարեալ ի թագաւորութենէն **Խոսրովու որդւոյ Տրդատայ մինչեւ ի միս վերջին ժամանակն վատթարելոյ թագաւորացն Հայոց եւ ի քահանայապետութեանն Վրթանայ որդւոյ Գրիգորի** ..... մինչև ցայնոսիկ ի վերջինսն.... **դրոշմեալ** նկարեցի .... առ ի զօգուտն ժառանգել որք միանգամ կամին սրտի մտօք հասու լինել սմին»: Նաև գլ. Ա՝ «եղաք **փոքր ի շատէ** ի կարգի պատմութեան»:

«Ապա... թագաւորեաց **Խոսրով Կոտակ թոռն Խոսրովու,** որդի քաջի և առաքինւոյն Տրդատայ արքայի: Յաւուրս **սորա եկաց** և եղև **քահանայա-պետ** յաքոռն հօրն **երէց որդին Գրիգորի Վրթանէս»** (նույն, Գ, 3):

«Տիրան որդի Խոսրովու առ զթագաւորութիւնն ... ընդ նմին ... **Յուսիկ** յաջորդեաց ... զհետ **հաւրն իւրոյ Վրթանայ»**: (Գ, 12) «ոչ որ գոյր որ առաջնորդէր նոցա **զքահանայապետութիւն**... համարեցան արժանի **զՓառէն ոմն երեց ի գաւառէն Տարօնոյ ի մեծէ մարգարէանոցէն*... յագարակն** մեծի մարգարէանոցի» (Գ, 16):

«Նախ և **զառաջին** եկեղեցին ի մայր **եկեղեցեացն ամենայն** Հայաս-տանեաց .... զի յառաջ նախ անդ էր շինեալ սուրբ եկեղեցին» (Գ, 14). յԱշտիշատ ուր զառաջինն էր շինեալ եկեղեցի» (Գ, 13):

«Թագաւորեցոյց զ**Արշակ որդի Տիրանայ»** (Դ, 1):

**«Ներսէս որդի Աթանագինի** զթոռն** քահանայապետին **Յուսկան որդւոյ Վրթանայ որդւոյն Գրիգորի** մեծի» (Գ, 3):

«Զի **վարս կարգաց զնացից իւրոց նմանեալ հօրն մեծին** Գրիգորի արդարև հայրաքարոյ» (Գ, 4):

«Եւ էր **Զաւէն** այս անուանի **զաւակ Աղբիանոս եպիսկոպոսի** » (Զ, 2):

**«Ապա Շահակ** Կորճեայ եկաց գլուխ եպիսկոպոսաց **Ասպուրակ ոմն ի զաւակէ Աղբիանոսի** (Զ, 4 և 15) «թագաւորեցոյց **զՊապ զորդին Արշակայ»** (Ե, 1):

**«Յետ մահուն** Պապայ ... **զՎարազդատ ոմն** ի նմին տոհմէ: Տային զաշխարհն հայոց ի ձեռն Սուրենայ .... **մարզպանին»** (= ստարակալութիւն՝ **Նշանագրի**) (Ե, 38):

**«Ապա** զառնէր **ի նմին տոհմէ** մանուկ մի անուն Խոսրով և կապեաց թագ ի գլուխ նորա» (Զ, 1):

---

* Նշանագրում մարգարէանոց հին և անգործածական բառը փոխարինված է ավելի ընթացիկ՝ մատուռն բառով:

** Նշանագիրն ունի «յաքոռն Յուսկան», որ կարելի էր թերևս սխալագրություն համարել փոխան «թոռին», եթե չլինեին վերև հիշած՝ «եկաց յաքոռն հաւրն»:



**«Թագաւորն Յունաց եւ թագաւորն Պարսից** լաւ համարեցան զաշխարհն Հայոց նախ **ընդ երկուս** ի մէջ իւրեանց **բաժանել** .... ընդ երկու զաշխարհն բաժանեցին:

Բաժին **կողմանն Պարսից** էր թագաւորին **Խոսրովու** և բաժին **մասինն Յունաց** էր թագաւորին Արշակայ» (Զ, 1):

Ահա այս քաղվածներից են կազմված **Նշանագրի** այն մասը, որի հեղինակն է, ըստ հ. Ակինյանի Եզնիկ Կողբացին: Վռամշապուհի և Արտաշեսի վերաբերող տողերը 60-70, մատնում են այլ աղբյուր: Կանգ առնենք առայժմ Փավստոսից հանած մասի վերա:

Հ[այր] Ակինյան «դասական նկարագիր» է տեսնում խորագրի լեզվի և ոճի մեջ: Թողնենք, որ Եզնիկին վերագրելու համար բավական չէ դասական կոչված տարտամ կնիքը, պետք է Եզնիկյան կնիք, որ ավելի որոշ հասկացողություն է: Հանձնարարված բառերից «նկարագիր» գոյություն չունի, ինչպես տեսանք, այլ «նշանագիր»: Հների մոտ «նշանագիր» նշանակում է «տառ», *στοιχεῖ α:* Ագաթանգեղոսն է, որ գործ է ածում «դպրի, գրողի» իմաստով: Իսկ **խորագրում** «նշանագիր» է «գրուածք, գրութիւն»՝ իմաստ որ դասական չէ: «Կարգ» չէ նշանակում պատմություն, այլ միմիայն կարգ, «կարգ բանից», «կարգ գործոց»՝ հաջորդություն բանից, գործոց, և «նշանագիր կարգաց բանից» է, որ շարադրության, պատմվածքի իմաստ ունի: Չէ կարելի անջատել «բանից» բառը, ինչպես հ. Ակինյան է անում, որովհետև «նշանագիր կարգաց» ոչինչ չէ նշանակում, ամեն պարագային չէ նշանակում «պատմութիւն», «փոքր ի շատէ» ոչ Եզնիկյան է և ոչ սուրբգրենական, իսկ «դրոշմել»՝ սովորական բառ է անկարող որակել որևէ ոճ: «Վասն գիտութեան ի վերայ հասանելոյ»՝ անհաջող նախադասություն ոճի տեսակետից:

Մնում է «վարումն», որ արժանի է ուշադրության: Հ[այր] Ակինյան կարծում է, որ «վարումն» նշանակում է «ամփոփումն, համառօտ առաջ-բերութիւն, համադրութիւն»: Ինչո՞ւ և ինչպե՞ս: «Վարումն» գործողության անուն է «վարել» բայի, վարել զիշխանութիւն, զկեանս, որից և վարումն իշխանութեան, կենաց: Հետևապես «վարումն փոքր ի շատէ դրոշմեալ» այլ միտք չունի քան «վարումն (իմա՛ թագավորության կամ հայրապետության) և կամ ինչ որ մենք այժմ անվանում ենք «վարմունք», նույն անվան հոգնակին:

Հ[այր] Ա[կինյան] գտել է նույն «վարումն» բառը Եփրեմ Ասորու թարգմանության մեջ, բայց անդ ևս չի նշանակում «ամփոփումն, համառօտ յառաջբերութիւն»:

Եփրեմ Ասորին կոչում է Մնացորդաց գիրքը «Դպրութիւն Իբբամենու» և իր մեկնությունը սկսում է այսպես. «Մատենագիրն Դպրութեան Իբբամենու,

զի է մեկնութիւն նորա Դպրութիւն՝ վարումն աւուրց թագաւորաց Յուդայ»...

Խոսքն «Իբրամեննու» մասին է, որ Մնացորդաց գրքի ասորական անունն է: Բուն եբրայական անունն է **Սեփեր Դիբրէ Հայամիմ**, Sepher Dibhrêy Hayamîm, որ հիշատակվում է Դ. Թագ. մեջ «Մնացորդ բանից գրեալ են ի **գիրս բանից աւուրց** թագաւորացն Յուդայ», *ἐπὶ βιβλίῳ λόγων* (կամ *ῥημάτων τῶν ἡμερῶν*[1]: Ուրեմն բուն հին անունն է՝ **Գիրք բանից աւուրց**, որ Յոքանասունք փոխել են Մնացորդաց-ը:

Եբրայական անունն անցել է ասորերեն նախ որպես **Դիբրեամին**, Dibryamin, հետո խանգարվել դարձել է Իբրեամին, ibryamin, անգամ Բրեամին Bryamin, սկզբի դի, di վանկի զեղչումով, որն ասորի գրիչները շփոթել են իրենց լեզվի համահնչյուն նախդիր-ի հետ: Եփրեմ Ասորին, մեկնության հեղինակը հարկավ գիտեր անունին ծագումը և անպարտ է հետագա աղճատման համար:

Հայ թարգմանության մեջ ևս բառը ներկայանում է արդեն աղճատ ձևով, Իբրամեն փոխանակ Դիբրամեն (ավելի ճիշտ Իբրամին, Դիբրամին): Հավանորեն թարգմանիչը չէ պատասխանատու աղճատումին, այլ այդպես է գտել իր ասորի օրինակում:

Արդ «Դպրութիւն Իբրամեննու» համապատասխանում է Sepher dibryamîn, ուր դպրություն նշանակում է sepher «գիրք»: Յաջորդող խոսքերի մեջ՝ «զի է մեկնութիւն նորա դպրութիւն՝ վարումն աւուրց», պարզ չէ թե ի՞նչ միտք ունի «Դպրութիւն» և ի՞նչ է պաշտոնը կցորդ «վարումն»-ի: Եթե դպրություն այստեղ ևս նույն sepher-ն է և ուրեմն «վարումն» է զուգակշիռ dibhrey-ի, պետք էր սպասել, որ «վարումն» դրված լիներ այս դիրքում սեռական հոլովով և ո՛չ ուղղական: Իսկ ենթադրել, թե այստեղ «դպրութիւնն» է ներկայացնում dibhrêy և «վարումն» է լոկ բացահայտիչ, նշանակում է ընդունիլ, որ միևնույն բառը միևնույն պարբերության մեջ եռակի առումով է գործածված: Այս անհավանական է:

Գերադասելի է առաջին ենթադրությունը: Քերական անհարթությունը կվերանա, եթե «Դպրութիւն» կարդանք «Դպրութեան»: Մատենագիրն «դպրութեան Իբրամինու զի է մեկնութիւն նորա (մատենագրի) դպրութեան՝ վարումն աւուրց», այսինքն հեղինակի գրքի (անվան) մեկնութիւնս է «վարումն աւուրց»: Կամ պետք է հաշտվիլ քերական անողորկության հետ և հասկանալ այսպես. «զի է մեկնութիւն նորա (Իբրամինու)՝ դպրութիւն «վարումն աւուրց»: Այսպես թե այնպես մեզ հետաքրքրող «վարումն» համազոր է dibhrêy բառին և ավուրց՝ yamin: Յոքանասունք, ինչպես

1 Դ. Թագ., ԺԴ, 18 և 28. ԺԵ համար:



հիշեցինք, թարգմանել են այս բառը *λόγοι*, մերոնք հավատարմությամբ՝ **«բանք»** Իբրամին = «բանք աւուրց», *λόγοι τῶν ἡμερῶν*: Արդ եբրայագետների կարծիքով dibhrey նշանակում է «իրք, գործք», ուրեմն իրք «աւուրց թագաւորաց», թագավորների կյանքը, անցուդարձը: «Վարումն աւուրց» = աւուրք վարեալք, ապրած, քաղած օրեր թագավորների վարքը, վարմունքը: «Վարումն» եզական բառ է և հավանորեն կաղապարված պահլավ «վարիշն» varisn բառի վերա որի -իշն ածանցը հավասարազոր է հայերենի **մնն**-ի որպես կազմիչ բայանունների: **Վարիշն**՝ նշանակում է վարք, կենցաղավարություն: Նիբերգ հայտնի իրանագետը varisn համեմատում է հայերեն «վարք»ի հետ, բայց կազմությամբ ավելի համապատասխան է «վարումն»-ի[1]:

Միանգամայն հավանական է, որ **Նշանագրի** հեղինակ գիտե «վարումն» բառը Եփրեմի թարգմանությունից: Պակաս չեն նման օրինակներ երբ հետնորդները քաղում են հին մատենագիրներից սակավածանոթ բառեր: Ագաթանգեղոսի «զուարափակ»-ը երևան է գալիս Մովսես Կաղանկատվացու մոտ, Եվսեբիոսի «խլվրտյուն»-ը՝ Թովմա Արծրունու մոտ: Այսպիսի բառեր անվանել դասական չէ կարելի, որովհետև դասական լեզվի մեջ ընդունված և հանրածանոթ չեն: Եփրեմի թարգմանությունը պատկանում է հեռեզնիկյան շրջանին և «վարումն», որ Եփրեմից է անցել **Նշանագիր**, տանում է մեզ բոլորովին հակառակ եզրակացության, քան հ. Ա[կինյան] այն է, որ **Նշանագրի** հեղինակը հետեզնիկյան շրջանի մարդ է և չէ կարող ինքն Եզնիկն լինել:

Այսպիսով՝ Փավստոսից քաղած մասը ոչ մի նկատումով՝ լեզվի թե ոճի, հիմ չեն տալիս Եզնիկ Կողբացու վերագրելու:

Ինչ վերաբերում է այն տողերին 60-79, ուր հիշվում է կոմսերի, Վռամշապուհ և Արտաշես թագավորների, այլ և մարզպանների իշխանությունը, նրանք ևս օտար են Եզնիկ Կողբացուն: Կոմսերի պաշտոնեությունը տևեց Հայաստանում մինչև 529 թվականը, ինչպես պարզել ենք մեր «Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում» աշխատության մեջ: Հետևապես, եթե հեղինակը ասած լիներ՝ կոմսք կալան «մինչև առ մեզ», կարելի էր եզրակացնել, որ նա գրել է մինչև 529 թ., քանի որ չի ասում «մինչև առ մեզ», կոմսերի հիշատակությունը ժամանակագրական արժեք չունի, ինչպես չունի Խորենացու մոտ:

Մարզպանների համար ասված է, որ կալան «մինչև առ մեզ» և ասված է երկու անգամ, Վռամշապուհից հետո, և Արտաշեսից: Առաջինից հ. Ա[կինյան] հետևեցնում է, որ Նշանագիրը գրված պիտի լինի «ընթացս տասնամյա շրջանի, որ Վռամշապուհի և Արտաշեսի մեջ կ'իյնա, այն է ընդ մեջ 409-420 տարիներին»: Իսկ երկրորդ հիշատակությունը հավելված է

1 H. S. Niberg, Hilfbuch des Pehlevi, II, p. 233.

համարում հեղինակի կամ ուրիշի կողմեն 430-442 տարիների մեջ, «վասնզի իբր 443 թվին մարզպան կարգվեցավ Վասակ, որ պարսիկ մարզպան չէր կրնար նկատվիլ»:

Սխալ հաշիվներ են. հ. Ա[կինյան] մոռացել է, որ Վռամշապուհի և Արտաշեսի մեջ «ոչ հարուստք ամք» կային և ոչ որևէ մարզպան, թողթե «մարզպանք»: Վռամշապուհին հաջորդեց Խոսրով երկրորդ անգամ և կարճատև թագավորությամբ և ապա Հազկերտ «թագաւորեցոյց զիւր որդին Շապուհ», ինչպես վկայում է Ղազար, «ի տեղի Արշակունւոյն»: Շապուհ Պարսիկը մարզպան չէր, այլ թագավոր և մեռավ 421 թվին իր հոր հետ միաժամանակ: Ապա թագավորեց Արտաշես, իշխեց վեց տարի: Այնուհետև «մարզպանք կալան», այսինքն՝ սկսվեց մարզպանական շրջանը: Պատմականորեն միայն վերջին հիշատակությունն է ճիշտ. առաջինը՝ գրչի անուշադիր կրկնագրություն է, (ինչպես 19-րդ տողի «յետ նորին թագաւոր», որ սխալ կանխագրություն է 30-րդ տողի): Մարզպանական իշխանությունը վերացավ Սասանյանների կործանումով և ուրեմն մարզպանք կալան «մինչեւ ցառ մեզ» խոսքը ավելի բան չէ լիազորում կարծել, քան որ հեղինակն ապրում էր մինչև Սասանյանների անկումը VII դարի կեսին:

Կոմսներից մինչև Սահակ հատված լի բովանդակությունը հայտնի է Ղազարից և Կորյունից, բացի Ասպուրակես, Մաարովպ և Կոմեսք: Փավստոսից առնված կտորի մեջ՝ Ասպուրակ է ինչպես Փավստոսի մոտ է: Ասպուրակես ուրիշ աղբյուրից է: Նմանապես Մաշթոցի Մաարովպ անունը, որ թերևս առաջին անգամ այստեղ է պատահում (հմմտ. «Գիրք Կայսերաց», էջ 57 Մեսրովբ և Մաարոպ ընթերցումները): «Նշանագիր» գործ է ածված այստեղ, այլ և այն իմաստով ինչ որ Կորյունի և Ղազարի մոտ՝ տառի նշանակությամբ և ոչ նշանագրության, ինչպես խորագրում: Ապացույց, որ ուրիշ աղբյուրից է օգտվել հեղինակը: Դժբախտաբար Ղազար Փարպեցու առաջին գիրքը խաթարված է, մի ստոր ձեռք վրայից անցել է և չգիտենք, արդյոք կոմսների և Ասպուրակեսի մասին հիշատակություն չի՞ եղել նախքան բնագրի խանգարումը:

Երկու հատվածների տարբերությունը բացատրում ենք ուրեմն, նրանով որ տարբեր աղբյուրներից են քաղած, մեկը՝ Փավստոսից, մյուսը՝ Ղազար-Կորյունից առավելապես, բայց երկուսի հեղինակը մի անձն է և այն, որ պատմում է Հռիփսիմեի նորոգության պարագան որպես ականատես, այսինքն՝ Եզնիկ Երեցը:

Համամիտ չենք, որ Հռիփսիմեի նորոգության հատվածը «չունի որևէ առնչություն առաջին մասի հետ»: Առնչություն կա և շատ սերտ: Եզնիկ Երեցը Ագաթանգեղոսի գործը ընդօրինակելուց հետո բարի ցանկություն է ունեցել ի շահ իր ընթերցողներին հակիրճ տեղեկություն տալ Տրդատի և Ս. Գրիգորի հաջորդների մասին: Ագաթանգեղոսի նյութը միայն Տրդատի և Ս. Գրիգորի պատմությունը չէ, այլ և Հռիփսիմյանց նահատակությունը:



Ուստի Ս. Սահակի գրական գործունեության հարևլով և նորա շինարարությունը հիշում է, որ Լուսավորիչի շինած վկայարանը նորոգվել է նախ Ս. Սահակի և ապա Կոմիտասի ձեռքով: Ս. Սահակի նորոգության համար գրավոր աղբյուր է ունեցել, քանի որ հիշում է վանաց երեցի Արդլայի անունը: Իսկ Կոմիտասի օրով կատարված նորոգությունը և կույսերի տապանի բացումը Եզնիկ պատմում է որպես ականատես: Նորա պատմածը կախում չունի ո՛չ Սեբեոսի համանման հատվածից և ո՛չ Վրթանես Քերթողին կորսված գրությունը, ուր որպես թե պատմված էր «վասն շինութեան վկայարանի Հռիփսիմեանց ի Կոմիտաս Կաթողիկոսէ»: Վրթանեսը մեռած էր տարիներ առաջ, երբ Կոմիտաս կաթողիկոսացավ և ապա ուրեմն չէր կարող Կոմիտասի նորոգության մասին բան գրել (6): «Հայկազեան բառագրք»-ի հիշած Պատմութիւնը, ինչ և լիներ նրա բովանդակությունը, թյուրիմացությամբ է կրում Վրթանես Քերթողի անունը (7):

Սեբեոսի հատվածը Հռիփսիմյանց մասին նս անկախ է Եզնիկից և պատկանում է Սեբեոսին: Այս առթիվ եղած կասկածները ձրի են: Հատվածը զետեղված է Կոմիտասի՝ Մոդեստոսին գրած թղթից հետո, և անտարակույս Սեբեոս պարտական է այդ հատվածը այն աղբյուրին, որտեղից հանել է նրա թղթակցությունը Մոդեստոսի հետ: Երևում է, թղթի վերջը հիշատակարանի ձևով պատմված է եղել Կոմիտասի կատարած նորոգությունը Հռիփսիմեի վանքի: Սեբեոսի հատվածի հեղինակը նս ականատես է, բայց տարբեր անձ է, քան Եզնիկ Երեց: Երկուսի հաղորդության մեջ զգալի զանազանություն կա և մինչև անգամ հակասություն: Մեկի ասելով, նորոգությունը տեղի է ունեցել Խոսրովի 29-րդ տարին, այն, ինչ մյուսն ունի 28-րդ տարին: Սեբեոսի մոտ Կոմիտաս «ոչ համարձակեցաւ բանալ» Հռիփսիմեի տապանը և միայն կնքեց իր մատանիով, ինչպես արել էին նույնը Ս. Գրիգոր և Ս. Սահակ: Մինչդեռ Եզնիկ Երեցը հավատացնում է, որ Ս. Գրիգորի ձեռքով պատած տապանի մեջ «ողջ և անքակ» էին մնացել «խառնակք յաւդիցն նովին հանդերձով» և թե ինքը շոշափել է իր «իսկ ձեռովք» (= ձեռաւք), որից երևում է որ տապանը բաց է արված:

Սեբեոս չգիտե, գոնե չէ հիշում, թե ով էր այն ժամանակ Հռիփսիմեի վանահայրը: Եզնիկ գիտե, որ Կամովեղ էր: Կամովեղն հիշեցնում է «Կամ-յեշով» և կարծես ասորական անուն լինի: Բայց հավանական է, որ սխալ գրություն է փոխան Սամուելի, ինչպես արդեն ենթադրել է հ. Գաթըրճյան: Արդարև Խոսրովի 17-րդ տարին, Աբրահամ կաթողիկոսի ընտրության, Հռիփսիմեի վանահայրը կոչվում էր Սամուել և կաթողիկեի (և ոչ կաթուղիկեի, ինչպես տպված է) վանահայրը՝ Աբրահամ[1]:

[1] «Գիրք թղթոց», էջ 51:

Հ[այր] Ակինյան դժվարության է բախում իր տեսության հետ հաշտեցնելու **Նշանագրի** վերջին կարճ հիշատակագիրը՝ «եղիցի Եզնկան ի թարգմանիչ զգիրս զայս»: Եթե խորագրի Եզնիկ Երեցը է Եզնիկ Կողբացին, ո՞վ է այս վերջինը: Հ[այր] Ակինյանի կարծիքով, հիշատակարանը անհարազատ է, որպես թե ոմն գրիչ իր կողմից ավելացրել է որպես մաղթանք: Այսպես է մտածում որովհետև թարգմանել բառը գործ է ածված այստեղ «յօրինել» իմաստով, ինչ որ խորթ է Կողբացուն: Այո՛, խորթ է Կողբացուն, բայց ո՛չ Եզնիկ Երեցին: Կարիք չկա անհող ենթադրության: Յոթներորդ դարու մի համբակ գրիչ որպիսին է Եզնիկ Երեց կարող էր թարգմանել = յորինել բառով որակել իր կարկատած գործը: Արդեն դասական կոչված լեզվում թարգմանել չէ նշանակում միայն թարգմանել, այլև մեկնել: Եփրեմ Ասորու երկերից մեկը կոչվում է **«Թարգմանութիւն Աւետարանի»**[1], որ ամենևին թարգմանական բնույթ չունի, այլ նվիրված է Քրիստոսի առակավոր խոսքերի բացատրության, մեկնության: Հետագայում՝ կիրարկել նաև «կազմել հորինել» իմաստով օտարոտի պիտի չքվե:

Հետևելով քայլ առ քայլ հ. Ակինյանի դիտողություններին և դատողություններին հասանք նրա վերջին և ծանրակշիռ փաստարկության, հիմնված **Նշանագրի** սկզբի «մինչև առ մեզ» խոսքի վերա: Սա է արժանապատիվ բանասերի տեսության ելակետը: Այստեղից է ծագել Եզնիկ Կողբացուն ընծայելու գաղափարը: Արդարև, երբ մեկը խոստանում է դրոշմել Տրդատի և Ս. Գրիգորի հաջորդությունը «մինչև առ մեզ», կարող է կարծել տալ, որ խոստացողը ապրում էր վերջին թագավորների՝ Վռամշապուհի և Արտաշեսի օրով: Այդպես էլ հասկացել է հ. Ակինյան և հետևողաբար ստիպված է ժխտել Նշանագրի խոշորագույն մասը, ա՛յլ գրչի գործ համարել ոչ միայն տաճարի նորոգության հատվածը, այլ և այն մասը, ուր հիշվում է Եզնիկ Կողբացու անունը Արճանի և Կորյունի հետ:

Սակայն այս հոշոտումից հետո երկից մնում է միայն մի բեկոր, որ նոր բան չէ տալիս, այլ քաղվածք է Փավստոսից, և ուրեմն անարժան Կողբացու վճիտ անվան և փայլուն հռչակին: Հ[այր] Ա[կինյան] նոր միտք է հղացել, սրբագրել խորագիրը «Նշանագիր կարգաց ի բանից Եզնկան Երիցու», այս են թե Եզնիկ ավելի մեծ պատմական **«ճառն»** է գրած եղել և այնտեղից է հանված **Նշանագրի** առաջին մասը: Սրբագրությունը անհաջող է լեզվական տեսակետից: «**Նշանագիր կարգաց**» - ոչինչ չէ նշանակում, և ենթադրությունը չէ ծառայում պարզելու խնդիրը, այլ ավելի բարդացնում է անզո անհայտով: Երբ բանասիրական լուծումը հանգում է ad absurdum, նշանակում է ելակետը սխալ է եղել և ստուգության պետք ունի: Ելակետը խորագրի

[1] **Եփրեմ Ասորի**, հատ. Բ, 261-345:



«մինչև առ մեզ» խոսքն է: Կարծում ենք, հնարավորություն կա այլ կերպ հասկանալու:

**Նշանագրի** ճիշտ այն մասը, որ վեճիս նյութն է սերտ առնչություն ունի *Διήγησις* կամ «Narratio de rebus Armeniis» հույն գործի հետ: Հույնը թարգմանություն է հայերեն մի բնագրից, որ կորսված է: Թարգմանությունը կատարված է նույն յոթներորդ դարու վերջերին մոտ 692 թվին Սահակ Ձորափորեցի կաթողիկոսի օրով: Բովանդակությունը կրոնական է, նվիրված Հայ-բյուզանդական եկեղեցական վեճերին: Սկզբի մասը, որ վերաբերում է Տրդատի և Ս. Գրիգորի հաջորդության, հար և նման է մեր **Նշանագրին** և անկասկած առնված է այնտեղից: Մեզ հետաքրքրողն է մասնավորապես խորագիրը, բայց նախ տեսնենք ի՞նչ է պատմվում Տրդատի և Լուսավորչի հաջորդների մասին: Հիշելով, որ Նիկիո ժողովը տեղի է ունեցել Կոստանդին Մեծի ժամանակ, Տրդատի 34-րդ և Ս. Գրիգորի Վիրապեն ելնելու 20-րդ տարին և որ ժողովին ներկա է եղել Արիստակես, շարունակում է այսպես, որ թարգմանում ենք բառացի ի դյուրություն համեմատության:

«Յետ նորա Վրթանէս որդի Գրիգորի, Յուսիկ, Փառներսեհ *τῶν Ἀσπράκων τῆς Ἀστισὰτ χώρας* այսինքն՝ յ-Ասպրակաց (= Վասպուրական) յԱշտիշատ գեղջէ: Ապա սուրբն (*ὁ ὅσιος* = առաքինի?) Ներսէս: Ապա թագաւորք Հայոց՝ Խոսրով, Տիրան, **Աշակ**, Վարազտրդատ (= Վաբազդատ), Աշակ: Յաւուրս սորա բաժանեցան ընդ երկուս **Հայք**, յորում ժամանակի շինեցաւ Թէոդոսիուպոլիս ի մեծէն Թէոդոսէ կայսրէ որում հնազանդեցաւ **Աշակ** արքայն Մեծաց Հայոց: Իսկ Խոսրով եկաց - ընդ իշխանութեամբ արքային պարսից Շապհոյ - թագաւոր յերկրին Հայոց զոր և յետ ամ. ց չորից ընկէց նոյն Շապուհ: Յամս մեծի Թէոդոսի եղև սուրբ ժողովն ի Կ. Պոլիս հարիւրեւիսուն հարց սրբոց ընդդէմ Մակեդոնի հոգեմարտին և նզովեցին զնա: Ի Հայս սուրբն Ներսէս էր յաւուրս յայնոսիկ: Եւ խոստովանութիւն հաւատոյ մի էր և նոյն զոր ընկալան ի սրբոց հարց առ թագաւորաւն Վռամշապհով և առ որդւով նորա Արտաշէզ -իւ և յետ այսորիկ իշխեցին Հայոց **Մարզպանք**»:

Նմանություն, ավելի ճիշտ, նույնությունը Նշանագրի հետ, ակներև է: Հապավումներ կան դիտավորյալ թե պատահական, ինչպես Պապ, Զավեն, Շահակ և Ասպուրակ, բայց կարևորը պակասորդը չէ: Նշանակալից է Արշակի՝ **Աշակ** (*Ἀσάκ*) և Արտաշեսի՝ Արտաշեզ (= *Ἀρταχέτζης*, ուր *χ*=շ, և *τζ*=զ) ընթերցումները, որոնք նույնությամբ գտնում ենք և՛ **Նշանագրի** մեջ: Ներսեսի մակդիրը *ὅσιος* թվում է, թե հայ բնագրի՝ **առաքինի** բառի փոխանակն է: Բաժանեցան Հայք (= *οἱ Ἀρμένιοι*) հունարեն սխալ է հասկացված. Հայք = Հայոց երկիր է ոչ Հայք = հայեր: Վճռական է

մանավանդ մարզպանների հիշատակությունը՝ հույնն ունի *ἡ μαρσαπάνη*= որպես թե մարզպանություն, մարզպանական իշխանություն, բայց որովհետև բայը՝ *ἐκράτησαν* = իշխեցին, կալան, հոգնակի է, բացահայտապես ուղղագրական սխալ է *ἡ μαρσαπάνη* փոխանակ *οἱ μαρσ(α)πάνοι*, հետին հունարենում *η* և *οι* միևնույն i հնչյունն ունենալու հետևանքով:

Ուշադրության արժանի է, որ «մինչև առ մեզ» հապաված է հունարենում որովհետև թարգմանության և հորինման միջոցին 692 թվին այլևս մարզպաններ չկային Հայաստանում, մինչդեռ 619 թ., Կոմիտասի օրով տակավին կային:

Դառնանք այժմ խորագրին, որ ոչ պակաս հրահանգիչ է: Դնենք դեմ առ դեմ հույնի և հայի համապատասխան կետերը:

| | |
|---|---|
| *Διήγησις ἀπὸ τοῦ ἁγίου Γρηγορίου μέχρι τοῦ νῦν* | Նշանագիր կարգաց բանից ի Սրբոյն Գրիգորէ որ կացին մինչև առ մեզ. |
| *περὶ τῶν ἐν τάξει γενομένων διαδόχων καὶ περὶ τῶν ἐν τάξει* | թէ ուստի էին (կամ որպէս զհարդ) յաջորդութիւնք. |
| *γενομένων καὶ βασιλευσάντων* | (յաջորդութիւնք) թագաւորացն. |
| *ἐν ταῖς ἡμέραις αὐτῶν ἔν τε Ῥωμαίοις καὶ Πέρσαις περιγινώσκειν* | վասն զիտութեան ի վերայ հասանելոյ. |

Հույնի «որք թագաւորեցին յաւուրս նոցա ի Հռոմս և ի Պարսիկս» չի վերաբերում կայսրերին և պարսից թագավորներին, այլ ակնարկում է հայ վերջին թագավորներին ընդ իշխանությամբ հռոմեաց և պարսից:

Հույն թարգմանությունը հատկացրել է առաջին տեղը Ս. Գրիգորի հաջորդներին հասկանալի պատճառով քանի որ հետապնդում է կրոնական նպատակներ: Կարևորն այն է, որ «մինչև առ մեզ» վերաբերում է միմիայն Գրիգորի հաջորդութենեն: Հույնը հայ բնագիրը յուրացրել է, ինչպես տեսանք, **Նշանագիր**-ը: Խորագրի՝ «թագաւորացն ի Տրդատայ և քահանայապետիցն ի սրբոյն Գրիգորէ որ կային մինչև առ մեզ» երկդիմի է. «որ կային մինչև առ մեզ» կարելի է վերագրել միմիայն «քահանայապետիցն» և կամ հավասարապես «թագաւորացն և քահանայապետիցն»: Հույն թարգմանությունը վերջ է տալիս երկդիմության ի նպաստ առաջնի, քահանայապետների:

Այս ըմբռնումով զայթակղիչ «մինչև առ մեզ» չի տանում անհրաժեշ-



տաբար V դար մինչև հայ վերջին թագավորները, այլ նայում է Եզնիկ Երեցի և Կոմիտասի ժամանակին: Հարկավ կարելի է առարկել, որ հայրապետների հաջորդությունը չի հասցրած մինչև Կոմիտաս ուղիղ գծով, այլ Սահակից մինչև Կոմիտաս հայրապետների անուններ չեն հիշված: Այս առթիվ մտաբերենք նախ, որ խորագրի նախազգուշությունը, «փոքր ի շատէ» ասելով, թերևս ակնարկ է, որ ոչ թե միայն կարճ պիտի խոսի այլև ո՛չ բոլոր հայրապետների մասին ասելիք ունի: Այնուհետև չպիտի մոռանալ, որ «Ժամանակի Հայրապետաց» ցանկի առաջին մասը մինչև Կոմիտաս պատկանում է հավանորեն նույն Եզնիկ Երեցին: Արդարև ավելի քան խորհրդավոր է, որ Կոմիտասի հայրապետության տարիները չեն նշանակված, ասել է թե հեղինակի գրության ժամանակ Կոմիտաս տակավին հայրապետական աթոռի վերա է: Ցանկը ևս թարգմանված է հունարեն Չորափորեցու օրով և երևում է, որ այն ժամանակ արդեն մասն էր կազմում **Նշանագրի**: Հունարենում կոչվում է *Καθολικοὶ τῆς Μεγαλῆς Ἀρμενίας* «Կաթողիկոսք Մեծաց Հայոց»: «Ժամանակք Հայրապետաց»-ի մեջ Սահակ վարել է աթոռը 41 տարի, հունարենում՝ 40 տարի: Այս համերաշխությունը, հակառակ Խորենացու 51 տարվան, վկայում է հայտնորեն, որ հույնը կախում ունի հայից:

Կաթողիկոսական ցանկերի քննություն մեր ներկա նյութից դուրս է: Այս կամ այն ձևով «Ժամանակք Հայրապետաց», կարծում ենք, Եզնիկ Երեցի գրչեն է ելած (8): Սրանով կարդարանար նրա խոստումը՝ դրոշմել Գրիգորի հաջորդությունը մինչև իր ժամանակ, այսինքն՝ Կոմիտասի օրերը: Եվ այս այն պարագային, եթե չենք ուզում արժեցնել նրա վերապահությունը արտահայտված «փոքր ի շատէ» բառով: Ինչ և լինի, **Նշանագիրը** պատկանում է ամբողջապես Եզնիկ Երեցին, որ ժամանակակից էր Կոմիտասին և պետք չէ շփոթել Եզնիկ Կողբացու հետ:

Ավելորդ չենք համարում նկատել, նախ քան վերջացնելը, որ **Նշանագրի** **Զարեհ** անունը ավելի հին ձևն է **Զաւէն** - ի ինչպես երևում է նույն անվան մի այլ համազորից՝ **Զարեհ** և ավելի ուշ՝ **Զարայ**: Հուսիկ հայ անունը կապ չունի հույն՝ *Ἰσαακ* -ի հետ, ինչպես և **Սահակ** չէ սարական Ishaq: **Սահակ** պահլավ անուն է, որի հին ձևն է **Սահրակ** (հմմտ. Սահրիկ) և Սահրեն Sahrên (ինչպես՝ Արտակ = Արտեն, Մանակ - Մանեն և այլն): Փառներսեհ պահլավ անունը հանել «Փառեն ոմն երեց»-ից հանձնարարելի չէ և անհարիր մեր պատվական բարեկամի բարձր և լուրջ գիտնականության (9):

# ՀԱՅՐ Ն. ԱԿԻՆՅԱՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԻՆ ՊԱՏԱՍԽԱՆ

Մխիթարյան արգո բանասերը դժգոհ է մնացել մեր քննական նկատողություններից (1), որ արել էինք իր մի անհաջող ուսումնասիրության առթիվ: Իր սրտմտության թև է տվել մի նոր գրությամբ (2): Ցավալի է, որ փոխանակ խոստովանելու գործած սխալը, ծանրացնում է իր պատասխանատվությունը նորանոր սխալներով և թյուր դատողություններով: Գովական չէ նաև իր հոխորտ լեզուն, որ խորթ է բանասիրական խաղաղավետ որոնումներին և ոչինչ չէ ավելացնում ո՛չ իր գիտության և ո՛չ մեր անգիտության: Մնա՛նք վայելչության սահմաններում, հավատարիմ մեր ճաշակին և հեռու այն ամենից ինչ որ հարում է կոկոզաբանության: Քննե՛նք նրա «Հերքումները», քննե՛նք նյութին պատկան անդորրությամբ:

Հ[այր] Ն. Ակինյան հրատարակել է մատենագրական մի նշխար՝ «Նկարագիր կարգաց ի բանից Եզնկան» վերնագրի տակ[1]: Հոդվածն սկսվում է հետևյալ աներկդիմի հայտարարությամբ. «Այս խորագրի տակ հասած է մեզի գրվածք մը Պարիսի Ազգ[ային] Մատ[ենադարան] թ. 112 ձեռագրիս մեջ»: Արդ մեզ ծանոթ էր, որ գրվածքիս վերնագիրն է՝ «Նշանագիր կարգաց բանից Եզնկան»: Տարբերությունն ակներև է: Հրատարակիչն հիշել էր, որ **բանից**-ի վրա ավելացրել է **ի** նախդիրը, բայց որ **նշանագիր** -ը դարձրել է **նկարագիր**. այս մասին ո՛չ մի ակնարկ:

Բնական էր կարծել, որ անախորժ վրիպակ է, աչքի պատահական սայթաքում: Այժմ հ. Ակինյան հայտնում է, որ բնավ վրիպակ չէ, այլ մի սրբագրություն, միայն թե մոռացել է հիշատակել և հարկ եղած բացատրությունը տալ:

*Մեզ թվում է, որ վրիպակը շատ ավելի ներելի կլիներ, քան նման սրբագրություն*, որ կատարյալ հանցանք է մեկնե ավելի նկատումով: Նախ պետք չէ խաթարել ձեռագիրը, հետո՝ պետք չէ մոռանալ խաթարումը և վերջապես պետք չէ տեղիք տալ այսօրինակ փորձանքի, մեղանչելով բանասիրական հրատարակության տարրական սկզբունքի դեմ՝ վերարտադրել ձեռագիրը հարազատորեն, իսկ սրբագրությունները, ինչ և լինին նրանց բնավորությունն ու արժեքը, վերապահել ուսումնասիրության մեջ հիշելու: Այս կերպով ձեռագիրը կմնար անեղծ և սրբագրությունը կբռներ իր պատշաճ

[1] Տե՛ս «Հանդես ամսօրյա», 1937, № 11-12:



տեղը առանց ավելորդ վեճերի առիթ տալու: Պարզ ճշմարտություն:

Քանի որ խոսքը վրիպակի մասին է, հիշենք որ նման զանցառություն թույլ է տվել իրեն հ. Ա[կինյան] նաև իր պատասխան-հոդվածում: Մենք գրել էինք, որ **Նշանագիրը** պատկանում է Եզնիկ Երեցին, որի անունը նշանակված է գրվածքի սկզբում և վերջում և, որ հեղինակը յոթներորդ դարու մարդ է, ականատես 618 թվին կատարված մի իրողության:

Այս առթիվ հ. Ա[կինյան] առարկում է, որ Եզնիկի հիշատակարանը զետեղված է երրորդ մասի վերջը, այն է կաթողիկոսների ցանկից հետո, և որովհետև ցանկը հասցրած է մինչև 790 թվականը. ապա ուրեմն Եզնիկը ապրում էր այս թվից հետո և ո՛չ յոթներորդ դարում:

*Հ[այր]* Ա[կինյան] սխալվում է, զոհ իր անուշադրության: Հիշատակարանը գտնվում է երկրորդ մասի վերջը և ո՛չ թե երրորդ, ուստի և իր դատողությունը միանգամայն անտեղի է: Այս ևս մենք համարում ենք մի տեսակ վրիպում, որպեսզի չասենք զրպարտություն, եթե այստեղ ևս մասն ունի իր գիտակցությունը:

Այժմ դառնանք բուն նյութին:

Մեր տեսակետը պարզ է: Մեր հակառակորդի խրոխտ «հերքումները» կարդալուց հետո ևս մնում ենք հաստատուն: **Նշանագիրը** պատկանում է Եզնիկ Երեցի գրչին, որ ժամանակակից է Կոմիտաս կաթողիկոսին:

Այլ կերպ է մտածում հ. Ա[կինյան], նստած մի շարք ենթադրությունների ավազի վերա: Նա բաժանում է գրվածքը նախ՝ երկու մասի, ապա՝ առաջին մասը ճեղքում երկու կտորի, բոլորը մի կողմ է նետում և թողնում միայն առաջին կտորը, որպեսզի Եզնիկ Երեցի մեջ տեսնե Եզնիկ Կողբացին: Այս բավական չէ, մի քանի սրբագրություններ է անում նույն նպատակով: **Նշանագիրը** փոխում է **նկարագրի**, կարգաց **բանից**՝ շինում է կարգաց **ի բանից**: Այս վերջին սրբագրությունն անում է «իմանալու համար,- բացատրում է մեզ,- թե նկարագիր կարգաց-ը գրած է Եզնիկ Երեց, **լավ ևս**՝ քաղված հանված է Եզնիկ Երիցու մեկ գրվածքեն»:

Ի՞նչ է նշանակում այս **«լավ ևս»**-ը. արդյոք ընդունիլ հաստատապես, որ գրվածքը Եզնիկի գործը չէ, այլ քաղվածք նրա մի գործից՝ թե տակավին հնարավորություն է մնում Եզնիկի բուն գործ համարելու ի դեպ հարկի: Եթե քաղվածք է, վերնագրից ի՞նչ է պատկանում Եզնիկին և ի՞նչ քաղվածքի անհայտ հեղինակին: Ամեն պարագային «Նկարագիր կարգաց ի բանից Եզընկան» կարդալու դեպքում, «Նկարագիր կարգաց» չէ կարող պատկանիլ Եզնիկին, այլ քաղված անողին: Ապա ուրեմն ինչո՞ւ է այն ճիգը ցույց տալու, որ «Նկարագիր կարգաց» դասական արտահայտություն է: Արդյո՞ք քաղված անող անծանոթը ևս դասական շրջանի անձ է: Շփոթ և խառնակ է հ. Ա[կինյանի] միտքը:

«Նշանագր»-ի այն մասը, որ հ. Ա[կինյան] Եզնիկ Կողբացուն է ուզում վերագրել, այլ բան չէ, քան քաղված Փավստոսից և Ղազարից: Հ[այր] Ա[կինյան] կարծիքով, նախ Եզնիկ Կողբացին է քաղել և կազմել և ապա նրա քաղվածքից մի երկրորդ ձեռք, մի անծանոթ, նոր քաղվածք է արել: Ուրեմն Կողբացու քաղվածքն էր «Թանք Եզնկան», իսկ անծանոթինը՝ **«Նկարագիր կարգաց** ի բանից Եզնկան»: Վերնագրի մնացյալ մասը՝ **«թէ** ուստի՞ էին կամ որպէս զիարդ» և այլն, ո՞ւմ է պատկանում, Կողբացուն, թե անծանոթին, մնում է անորոշ: Հ[այր] Ա[կինյան] փույթը չէ, պետք չէ տեսնում կշռելու «լավ ևս»-ի հետևանքները և շարունակում է գրվածքի վերնագիրն ամբողջապես վերագրել Կողբացուն:

Մենք նկատել էինք և այժմ կրկնում ենք, որ գրվածքը քաղված լինելով Փավստոսից կարող է «դասական» կնիք ունենալ այնչափով, որչափ Փավստոս «դասական» է: Գործը Կողբացու վերագրելու համար պետք է, որ Եզնիկյան կնիք ունենա: Խնդիրը պարզ և հստակ է: Հ[այր] Ա[կինյանը] գտնում է, որ մենք «նրբախնդիր» ենք: Ինչո՞ւ: «Որովհետև լեզվի տեսակետով,- բացատրում է հ. Ա[կինյանը],- դասական նկարագիրն է չափանիշը և ոչ անհատի ոճը»: Սակայն խնդիրը ճիշտ անհատի, Եզնիկի, մասին է և ո՛չ դասական գրողների: «Եթե Աղոնց Եզնիկ Երեցի այս փոքրիկ գրվածքին վրա Եզնիկ Կողբացվո անհատական կնիքը կփնտրե, կարող է գտնել նույնը անաշխատ, ամեն բառ, ամեն նախադասություն Եզնիկյան կնքով է հոն, **որովհետև դասական դրոշմով է»**: Տրամաբան լինենք: Եզնիկ դասական է, բայց ամեն դասական Եզնիկ չէ: Չշփոթենք վեճի նյութը: Մեր բարեկամն ինքն իրեն հանձնարարում է որպես մի անձն, որ շրջել է դասական պարտեզներում, ապրել է այնտեղ, սնել է իր «քիմքը դասական ճաշակով», այնպես որ գիտե զանազանել պարտեզի վարդերը, «հոտավետ, նվազ հոտավետ և առավել հոտավետ»: Արդ կուզենք, որ իր այդ անօրինակ կարողությամբ ցույց տա մեզ Եզնիկ Երեցի գրվածքի մեջ այն վարդը, որ Եզնիկյան լիներ, առանց Փավստոսյան լինելու:

Հայր Ա[կինյանը] փորձում է հանել և ցուցադրել Եզնիկյան ոսկին Փավստոսից առած մետաղի վերա: «Եզնիկ Երեց օգտված է Փավստոսեն,- գրում է հ. Ակինյան,-քաղած հանած է անկե մտքեր, նախադասություններ, բայց անցուցած է զանոնք իր տետրակին մեջ ոսկի գրչով, Փավստոսի անփույթ ոճը ուժ, կերպարանք առած է իր գրչին տակ. այստեղ ինքնակաց է Եզնիկ, նույն ջղապինդ, դասական հեղինակը»:

*Շատ բարի: Ի՞նչ ապացույց: Ահա և այն օրինակը*, որով հ. Ակինյան ուզում է լուսաբանել, հիմնել իր պատասխանատու հայտարարությունը: Փավստոս գրում է. «զի ի վարս կարգաց զնացից իւրոց նմանեաց իւրոյ հօրն մեծի Գրիգորի»[1], նույն միտքը հայտնում է և մի ուրիշ տեղ. «առաջնոյն Գրիգորի՝ հօրն զործոցն նմանեալ»[2]:

Եզնիկ Երեց փոխ է առել այս տեղիքը: Հ[այր] Ա[կինյան] ընդունում է այս, բայց տե՛ս ի՞նչ է գրում. «Եզնիկ կշրջե իր սքանչելի գրչով այսպես. «զորմե ասեն համեմատե(ա)լ Գրիգորի ի գործս կարգաց վարուց զնացից իւրոց»:

Դժվար չէ տեսնել, որ Եզնիկ այլ բան չէ արել, քան դիզել Փավստոսի երկու նախադասությունները: Եվ մեծ երևակայություն է հարկավոր կամ համառություն՝ որակելու այս խղճուկ կուտակյալ նախադասությունը որպես «ինքնակաց», «ջղապինդ» և նման պինդ մակդիրներով: Վերագրել Եզնիկ Կողբացուն այսպիսի մի բան, նշանակում է ամբաստանել նրան, այն հեղինակին, որի միտքը պայծառ է և խոսքը՝ վճիտ, հեռու բառական ճոռոմ կուտակումներից:

Պետք է խոստովանել, որ բերած օրինակը շատ անհաջող է և դժբախտաբար չէ արդարացնում հ. Ակինյանի՝ իր կողմե հանձնարարված դասական հոտառությունը: Նույնչափ ձախորդ են և իր մյուս և գրեթե բոլոր լեզվաբանական արշավանքները ի նպաստ մի մոլար, բայց համառ մտքի: Մի առ մի քննենք, սկսելով իր նշանավոր սրբագրությունից:

**Նշանագիր:** Ինչպես հիշեցինք, **նշանագիր** հ. Ակինյան սրբագրել է **նկարագիր**: Ի՞նչ իրավունքով: Որովհետև «նշանագիր, այսպես եզակի, գործածություն չուներ դասականաց քով, իսկ նշանագիրք կնշանակեր գիր, տառ»: Ուստի հարկ է համարել «կարդալ երկու գրի փոփոխությամբ նկարագիր տեղվույն հարմար իմաստ մը տալու համար»:

Սակայն նախ պետք էր ապացուցանել, որ գրվածքը «դասականաց» կարգին է պատկանում և ապա մտածել սրբագրության մասին: Երբ մի փոքր գրվածքի մեջ երկու անգամ պատահում է միևնույն բառը, ինչպես նշանագիր, անխոհեմություն է ժխտել նրա հարազատությունը:

Հ[այր] Ա[կինյան] սխալվում է, որ նշանագիր եզակի ձևով գոյություն չուներ «դասականաց» քով: Սխալ է, որ նշանագիրք նշանակում է տառ, գիր և ոչ տառեր, գրեր: Սխալ է, որ նշանագիրք միմիայն տառ է նշանակում: Ոչ, մեկեն ավելի նշանակություն ունի նշանագիր բառը, ինչպես պիտի ցույց տանք:

Հ[այր] Ա[կինյան] հիշում է Կորյունից երկու տեղիք ուր կարդացվում է «նշանագրոյ» և շտապում սրբագրել նշանագրոց, իսկ անտես է արել այն տեղիք ուր սրբագրել չի կարելի, ինչպես՝ «զնշանագիրն ստուածատուր»:

---

1 **Փավստոս Բուզանդ**, Գ, 5:

2 Անդ:

Սրբագրությունը միանգամայն անհաջող է և սխալ. «նշանագիր» բառի հոգնակի սեռականը կլինի «նշանագրաց» և ո՛չ «նշանագրոց»: Դյուրին էր տեսնել իր իսկ թված վկայություններից մեջ, որ ամենուրեք՝ «նշանագրաց», «նշանագրաւք» է: Եթե պետք կա սրբագրելու, կանոնավոր ձևն է «նշա-*նագրաց»: Բայց չաճապարենք, քննենք նախապես Կորյունի բնագիրը* և տեսնենք, ի՞նչ իմաստով և ինչ ձևերով է հոն կիրարկված մեզ հետաքրքրող «նշանագիր» բառը:

Հարկավոր ենք համարում բերել բոլոր տեղիքը:

1. «Ի գիրս նշանագրոյ Հայաստան ազգին»[1]:

2. «Որոյ յանկարծ ուրեմն նշանագիրս աղփաբետաց հայերէն լեզուի» (էջ 17):

3. «Նախ ինքն տեղեկանայր ի Դանիէլէ նշանագրոյն» (էջ 17):

4. «Ընկալեալ զնշանագիրսն ի Հաբէլէն» (անդ):

5. «Որով զնշանագիրսն մարթասցեն» (անդ):

6. «Նովին նշանագրովք տանէր» (անդ):

7. «Չեն բաւական նշանագիրքն» (էջ 18):

8. «Մանաւանդ զի և նշանագիրքն թաղեալք» (անդ):

9. «Որում պարգևէր իսկ վիճակ յամենաշնորհողէն Աստուծոյ... նշանագիրս հայերէն լեզուին» (էջ 19):

10. «Զամենայն ընտրութիւն նշանագրոյն» (անդ):

11. «Առաջի արկեալ նոցա զնշանագիրն աստուածատուր» (էջ 20):

12. «Առնոյր կարգել նշանագիրս վրացերէն լեզուին» (էջ 25):

13. «Աղուանից առնէր ապա նշանագիրս» (էջ 29):

Հակառակ հ. Ակինյանի, երկրորդ կոչումի մեջ, ինչպես և իններորդի, «նշանագիրս» հոգնակի հայցական չէ, այլ եզակի ուղղական ու դիմորոշ հոդով, որպես նշանագիրս այս: Ուղղական այն պարզ պատճառով, որ երկու դեպքում էլ ենթակայի պաշտոն ունի, ուրեմն չի կարող հայցական լինել: Կորյունին հատուկ ու հոդի նման գործածությունը. հմմտ. «որպիսի արամբ այնպիսի նորոգատուր աստուածեղէն շնորհս երևեցաւ» (էջ 7), այսինքն՝ շնորհս այս. «եպիսկոպոսս տեսուչ եկեղեցւոյն Սիւնեաց կարգել, որոյ անունն կոչէր Անանիաս» (էջ 24): Վեցերորդ կոչումի՝ «նովին նշանագրովք» կարդալու է՝ «նովին նշանագրով» (համաձայն «նշա-նագրոյ») (եթե ոչ «նշանագրաւ, նշանագրաւք»):

Այսպիսով, Կորյունի մոտ գործածական է «նշանագիր» բառը եզակի և հոգնակի հավասարապես: Ձեռագրական տվյալներ չկան, որ արտոնեին

[1] Կորյուն, Պատմութիւն վարուց և մահուան Սրբոյն Մեսրոպայ վարդապետի մերոյ թարգմանչի, էջ 16:



այս կամ այն սրբագրություն: Բայց ունինք՝ հին վկայություն, որ երկու ձևերն էլ օրինական են: Խորենացին օգտվել է Կորյունից և հիշում է «նշանագիր» հինգ անգամ[1]:

1. «Հայկականացս լեզուաց առնել նշանագիր»:

2. «Եստեղծ զնշանագիրս մեր»:

3. «Բերեալ զնշանագիր մերոյ լեզուիս»:

4. «Առնէ և նոցա (վրաց) նշանագիրս (կամ նշանագիր )»:

5. «Եստեղծ զնշանագիրս կոկորդախօս ... Գարգարացւոց լեզուին»:

Խորենացու ընթերցվածներն իր հերթին կարելի է ստուգել Հովհաննես Կաթողիկոսի քաղվածով, որ արված է Խորենացուց. 1. «բերեալ զնշանագիր մերոյ լեզուի». 2. «ըստ լեզուի նոցա (Վրաց) արարեալ նշանագիր». 3. «եւ նոցա (Աղուանից)ստեղծանէ նշանագիր» (էջ 32)[2]:

Կաթողիկոսը գիտե միայն եզակի ձևը: Այս իրավունք է տալիս Խորենացու՝ «եստեղծ զնշանագիրս մեր» հասկանալ թերևս ոչ հոգնակի, այլ եզակի դիմորոշ հոդով, ինչպես Կորյունի մոտ (հմմտ. զնշանագիրս իմ). և ամեն պարագային՝ նախընտրել (չորրորդ կոչումի մեջ) նշանագիր ընթերցվածը (փոխան նշանագիրս): Կաղանկատվացին ևս քաղում է Խորենացուց. «որ Հայոց և Վրաց ետ նշանագիր», «եստեղծ զնշանագիրս կոկորդախօս... լեզուին Գարգարացւոց»[3]:

Կորյուն Վրաց և Աղվանից համար գործ է ածում «նշանագիրս». Խորենացին ունի «նշանագիրս» Աղվանից համար, և այս ընթերցվածը հաստատում է Կաղանկատվացին:

Այս բոլորից հետևում է, որ Խորենացու ձեռքում եղած Կորյունի ձեռագրում կար նշանագիր՝ եզակի ձևով: Կորյունի մեզ հասած ձեռագրում, եթե անգամ անխոհեմաբար սրբագրենք բոլոր ընթերցվածները, ամեն պարագային մի ընթերցվածը՝ «զնշանագիրն աստուածատուր» կմնա անխախտ, դիմադրելով ամեն մի սրբագրական փորձի:

Զննենք այժմ հարցը զուտ լեզվագիտական տեսակետից, որպեսզի ըմբռնենք բառի բոլոր նշանակությունները: Ի՞նչ է «նշանագիր»-ը որպես բառ:

[1] Մովսես Խորենացի (քննական), գիրք Գ, գլ. 52-54:

[2] Անտես ենք անում Ղազար Փարպեցին, որովհետև բնագիրը խանգարված է և վստահություն չէ ներշնչում: «Կարգել զվարդնջուցն գրեալ շարագիրս տառիցն» (Ղազար Փարպեցի, քննական, էջ 16) առնված է Խորենացուց (էջ 326): Այս միայն բավական է, որ հարազատ չհամարենք Մաշթոցի վերաբերյալ հատվածը: Մեր անցյալ հոդվածում («Սիոն», № 6) մի անախորժ տպագրական վրիպակ է «սառը ձեռք» փոխանակ «օտար ձեռք»-ի: Նույնպես «թուղթէ» կարդալու «թող թէ»:

[3] Մովսես Կաղանկատվացի, էջ 218:

Նշան, հունարեն *σῆμα*, լատիներեն signum, հայերենում, ինչպես բոլոր լեզուներում նշանակում է նաև գիր, տառ, որովհետև տառը մի նշան է: Ավետարանի նշանախեց հայտնի բառը Ոսկերերանի մեկնության մեջ երևան է գալիս գրախեց ձևով[1]: Կորյունի՝ «մատնանշան ծաղկեցուցանել» սրբագրելու է՝ «մատենանշան», համաձայն ձեռագրական ընթերցվածի և նշանակում է «մատենա-գիր»: Զենոբ Գլակ գիտե, որ գիր և նշան նույնանիշ են, երբ գրում է. «զայս գրեցին ասորի և հելլենացի գրով (և յոյն) և խմայէլացի նշանաւ»[2]:

Սակայն ամեն նշան տառ չէ: Բառիս լայն առումը մասնավորելուն համար կցել են գիր և կազմել նշանագիր նոր բառը, *γράμμα*: Առաջ հույն բառին համապատասխանում էր գիր, որ սակայն գործ չէր ածվում հոգնակի ձևով որպեսզի չշփոթվի գիրք բառի հետ, այլ միշտ եզակի, նշանակելով *γράμμα* և *γράμματα*. «Եւ էր գիր գրեալ ի վերայ նորա յունարէն և դաղմատերէն և եբրայեցերէն գրով»[3] = *ἐπιγραφὴ γεγραμμένη αὐτῷ γράμμασι*. Այստեղ գիր = *γράμματα*. Թրակացու քերականության մեջ՝ *γράμματα ἐστιν* թարգմանված է «գիր է»[4]: Նույն իմաստով և Կորյուն գրում է՝ «Զասքանազեան ազգիս և Հայաստան աշխարհիս զաստուածապարգև գրոյն»[5], և Խորենացին՝ «պարսկականաւն վարէին գրով»: «Նշանագիր» այն առավելությունն ունի, որ կարելի է արտահայտել ոչ միայն եզակի «նշանագիր» = գիր, այլև հոգնակի՝ «նշանագիրք»:

Հայ լեզվի հատկություն է փոխել բարդ բառերում հոլովական հիմը. «գործ, գործոյ, գործոց», բայց «բարեգործ, բարեգործի, բարեգործաց, գետ, գետոյ, գետոց», բայց «միջագետաց»: Այսպես էլ «գիր, գրոյ», բայց «արձանագիր, արձանագրի, -աց»: Հետևապես և «նշանագիր» պիտի հոլովեր «նշանագրի, նշանագրաց»: Արդ Կորյուն հոլովում է «նշանագրոյ, -ով», իսկ հոգնակին՝ «նշանագրաց (և ո՛չ նշանագրոց»): Ինչո՞ւ: Մենք չենք սիրում շուտափույթ սրբագրություններ, այլ միշտ աշխատում ենք հասկանալ, մեկնել այն, ինչ որ թվում է օտարոտի և արտաքո որոշ կանոնի: «Աստուածապարգև գիր»-ն նույնն է ինչ որ «նշանագիրն աստուածատուր», այսինքն՝ «նշանագիր» չի նշանակում մի տառ, այլ եզակի ձևում պահում է նույն հավաքական իմաստն ինչ որ ունի գիր: Ուստի և հոլովում է որպես «գիր», եզակի թվում, բայց հոգնակի՝ «նշանագիրք» հետևում է ընդհանուր օրենքին.

[1] Սեկ. Մատթ., Ա, էջ 243:

[2] Զենոբ Գլակ, էջ 31,

[3] Ղուկ., ԻԳ, էջ 38:

[4] Տե՛ս իմ հրատ., էջ 4:

[5] Կորյուն, էջ 7:



«նշանագիր» նշանակում է նաև նշանագրող: Նշան = գիր, նշանա-գիր = գրագիր: Այս իմաստով կիրարկված է քանիցս անգամ Ագաթանգեղոսի մոտ. 1. «դիպեցան անդ նշանագիրք, որ գրեցին զամենայն բանս»[1]. 2. «գրեցին ատենակալ դպիրքն նշանագրացն»[2]. 3. «Ոչ կարի ինչ անտեղեակ լեալ ձեռնարկութեան նշանագրացն»[3]. 4. «կարգել ինձ ի ձեռնարկութենէ նշանագիր ժամանակագրացն»[4]. 5. «և հրամայեցին նշանագրի միում որ եկեալ էր ի Յունաց»[5]:

Հայր Ակինյան սար ու ձոր է ընկնում բացատրելու այս վկայությունները, միշտ կառչած այն մոլար մտքին, թե նշանագիրք այստեղ ևս նշանակում է տառ: Մինչդեռ առաջին և վերջին վկայությունները կասկածի տեղ չեն թողնում, որ նշանագիրն ունի նշանագրողի իմաստ: Երկրորդ վկայությունը ևս նույնն է հաստատում. «դպիրք նշանագրաց» հասկանալու համար պետք է վերհիշել Փավստոսի խոսքը. «և գրեցին զայս սեմիար. նոտարաց (տպ. նոտարացի) արքային»[6]: «Սեմիարք» նույնն է, ինչ որ Սեմագիրք Եվսեբիոս Կեսարացու[7]: Սեմագիր, *σῆμα* «նշան» և գիր բառերից կազմված զուգակշռում է «նշանագիր»: «Սեմիար» = *σῆμ, -άριος* ածանցով, համիմաստ է սեմագրի: Հինգերորդ վկայությունը, որ այնքան ջինջ է, հ. Ակինյան մոռացության է տվել անարդարաբար: Երրորդ վկայությունը լուսաբանվում է չորրորդով. «ձեռնարկութիւն նշանագրաց» = «ձեռնարկութիւն նշանագիր ժամանակագրաց», ուր «ժամանակագիրք» է ժամանակագրողք: Հնարավոր է նաև «նշանագրաց» և «ժամանակագրաց» հասկանալ որպես նշանագրության և ժամանակագրության իմաստով, եթե համեմատելու լինենք «նշանակից» ժամանակագրաց: Ագաթանգեղոսի՝ «պատմագիր մատենից»ի հետ. «մտանել ի պատմագիր մատենիցս խորութիւն»[8]:

«Նշանագիր» ունի արդարև և մի երրորդ նշանակություն, որպես նշանագրություն, գիր, թուղթ, գրվածք: Եվ այս է վեճի բուն առարկան:

Ոսկեբերան գրում է. «պարտ և պատշաճ էր մեզ ոչ կարօտանալ ի նշանագիրս գրելոցն օգնականութեան»[9]: Զարմանալի է, որ հ. Ակինյան չի

[1] Ագաթանգեղոս, էջ 97:

[2] Անդ, էջ 60:

[3] Անդ, էջ 9:

[4] Անդ, էջ 10:

[5] Հովհան Մամիկոնյան, էջ 16:

[6] Փավստոս Բուզանդ, էջ 118:

[7] Եվսեբիոս Կեսարացի, Եկեղեցական պատմություն, էջ 468:

[8] Ագաթանգեղոս, էջ 9:

[9] Սեկ. Մատթ., Ա, էջ 1:

նկատել, որ այստեղ «ճշանագիրք» չէ նշանակում տառ և չի կարող նշանակել: Բերում է հույն բնագիրը. *τῆς ἀπὸ τῶν γραμμάτων βοηθείας*, բայց անօգուտ, իմաստը չի հասկացել: *Γράμματα* հոս չի նշանակում տառ, այլ գրվածք, գիրք: Հույն բառը երկու նշանակություն ունի, տառ և դպրություն, գիրք, ինչպես և լատին litterae, հույնի հետևությամբ, և ֆրանս. lettres լատիններենից ծառանգած:

Եթե չգոհանար միայն բառաքաղով, այլ աչք ածեր բնագիրը, այս կոպիտ սխալը չէր գործել: «Պարտ և պատշաճ էր մեզ ոչ կարօտանալ ի ճշանագիրս գրելոցն օգնականութեան, այլ այնպէս սրբական վարս ընծայեցուցանել որպէսզի շնորհք հոգւոյն փոխանակ ընդ գրոց լինէին մերոց հոգւոց ի պաշտպանութիւն և զոր օրինակ **զգրեալսն** մելանաւ, նոյնպէս և զմեր սիրտս սուրբ հոգւովն գրել»:

«Գրոց» և «զգրեալս» նույնանիշ է «ճշանագիրք»-ի: Հայ թարգմանը շատ ճիշտ է արտահայտել հույն *ἀπὸ τῶν γραμμάτων* = «ի ճշանագիրս գրելոցն», ուր գրելոցն տալիս է *ἀπό* -ի իմաստը: Հույնը չէ ասում *τῆς τῶν γραμμάτων βοήθεια*, օգնականություն ճշանագրաց, այլ *τῆς ἀπό γραμμάτων βοήθεια*, օգնականություն ի կողմանէ ճշանագրաց, կամ գրելոց (որ ինչ գրյալ է, ի ճշանագիրս):

Նույն թյուրիմացությունը տեսնում ենք և մյուս վկայության նկատմամբ, քաղած Իգնատիոսի թղթերից. «զոր ի ձեռն սակաւ ճշանագրացս խնդրեմ ի ձէնջ» = *δι' ὀλίγων γραμμάτων*. ճշանագիրք հոս ևս թուղթ, գրություն է նշանակում և ոչ տառ:

Հ[այր] Ա[կինյանը] հիշում է մի վերջին վկայություն, քաղելով «Հայկազեան Բառգրքից»՝ «իւր ճշանագրաւս՝ ձեռամբ ասէ գրել զողջոյն. Ոսկ., Բ, Թես.» և անհապաղ սրբագրում. «այլ թէ զողջոյնս իմով ձեռամբ գրեմ», որպես թե «համաձայն հունարենի և Էջմիածնի և Թեհրանի» ձեռագիրների: Բայց և այնպես սրբագրությունն անտեղի է:

Ոսկերերանի խոսքը մեկնություն է Բ Թես. վերջին տան: Բավական էր կարդալ այդ տունը, որ խուսափեր կամայական սրբագրությունից: Ահա այդ տունը. «Ողջոյնս՝ իմոյ ձեռին Պաւղոսի է, որ է **նշանակ** յամենայն թուղթս, այսպէս գրեմ. շնորհք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ամենեսին ձեզ»:

Բերենք Եփրեմի մեկնությունը. «Եւ քանզի գրեցին նոքա թուղթս յանուն իմ և ընթերցան առաջի ձեր, զողջոյնս զայս ձեռին իմոյ Պաւղոսի գրեալ է. և ամենայն թղթոց իմոց զայս նշանակ դնեմ ես: Եւ արդ այսուհետև զամենայն թուղթս զոր բերեն առ ձեզ, և այս նշանակ չիցէ ի նոսա, աւելորդք և անպէտք համարեալ լիցին ձեզ (Գ, էջ 192-193): Լույսի պես պարզ է:

Առաքյալը զգուշացնում է կեղծիքներից ասելով, որ իր ողջունագիրը թող լինի նշանակ՝ *σημεῖον*, որ թուղթը հարազատ է: Ոսկերերանի մեկնության



մեջ «ճշանագիր» բացատրվում է «հաջորդ ձեռամբ» բառով. փոխանակ «նշանակ»-ի գործ է ածում մի բառ՝ «ճշանագիր», որ է գիր, ձեռագիր որպես նշան կամ նշանակ. հետևաբար այս բառը կապ չունի մեզ զբաղեցնող «ճշանագրի» հետ:

Այս մանրակրկիտ քննությունից հետո դառնանք Եզնիկ Երեցի **ճշանագրին**, վեճի բուն առարկային:

Մենք ասել էինք, որ **ճշանագիր** «գրուածք» իմաստով դասական չէ. և ուրեմն դասական հեղինակի գրչեն ելած չէ կարող լինել: Հ[այր] Ակինյան. ավելացնում է, որ բառի այս իմաստը «նաև ոչ-դասական չէ»: Ուրեմն բառը գոյություն չունե՞ր բնավ:

Մեր կարծիքի հիմը պարզ էր. «ճշանագիրք» իբրև գրվածք հունաբանություն է, ինչպես բացատրեցինք, և հետևապես դասականները, որ իրենք էին այդ նորաբանության հեղինակները, մանավանդ Եզնիկ Կողբացին, եթե նա է Ոսկերերանի հավանական թարգմանիչը, ինչպես կարծում է հ Ա[կինյան], չէին կարող գործածել «ճշանագիր» նույն իմաստով:

Այլ է հետնորդների վերաբերումը: Բառի ծագումը մոռացվում է: Սովորական երևույթ է: Հետագայում «ճշանագիրք» հնչում է հայ ականջին (նման բազմաթիվ նույնակազմ բառերի, «արձանագիր, ստվերագիր, նկարագիր, մատենագիր, ճակատագիր, աշխարհագիր» և այլն իրենց հոգնակի ձևերով) իբրև ճշանագիր, ճշանագիրք: Մովսես Կաղանկատվացին գրում է. «ո՛վ սքանչելի պատմութեանս, զոր հանդերձեալ եմ հնչեցուցանել.... որում ոչ համեմատ է ո՛չ դարուցն առաջնոց **ճշանագիրք** ազգի ազգի պատերազմաց և խռովութեանց»[1]: Ընդգծված բառը գիտե մեր պատմագիրը Ագաթանգեղոսից, բայց չենք կարծում, որ նա գիտենար բառի ծագումը: Նրա համար ճշանագիրք հոգնակի ձևն է ճշանագիր-ի: Ուրիշ օրինակ: «Իսկ ժամանակ ժողովոյն որպէս ի **ճշանագիրսն** գտաք ի հիւպատոսութեան Պաւղինայ և Յուլիանոսի»[2]: Այստեղ ի **ճշանագիրս** թարգմանություն է բնագրի *ἐν παρασημειώσεσιν*. հայ թարգմանը գիտե այս բառը, բայց դժվար թե գաղափար ունենար նրա ծագման և *γράμματα* -ի հետ ունեցած աղերսի մասին: Հոգնակի ձևը համապատասխանում է հունականին, որ ևս հոգնակի է: Հույն եզակին՝ *παρασημείωσις* կթարգմաներ անտարակույս **ճշանագիր**: Եղիշեն ասում է. «ահա ճշանագրեցի յայսմ եօթն յեղանակիս» = (կապ չունի Ագաթանգեղոսի «ճշանագրել»-ի

[1] Մովսես Կաղանկատվացի, էջ 230:

[2] Սոկրատ, Եկեղեցական պատմություն, էջ 38:

հետ. «անցուցանէ զժողովուրդն յանապատ զոր եւ նշանագրեալ վայելեցուցանէ»[1]): Այս բայը ենթադրում է նշանագիր բառի գոյությունը (ինչպես «արձանագրել՝ արձանագիր» և այլն). ասել է, թե Եղիշեին ծանոթ էր նշանագիր բառը: Իսկ Եղիշեն հետ-դասական է, ըստ հ. Ա[կինյանի], մինչև անգամ VII դարու հեղինակ:

Ի՞նչ զարմանք, եթե նույն գործածություն գտնվի և՛ Եզնիկ Երեցի մոտ: Եզնիկ Երեց գիտե «նշանագիր» բառը Ագաթանգեղոսից, Կորյունից և նրանց հետևելով գործ է ածում կրկնակի իմաստով՝ գրություն և գիր = տառ: Վերնագրում Եզնիկ Երեց իր գործը անվանում է «նշանագիր», իսկ վերջը, հիշատակարանում՝ «գիր». «ի թարգմանել զգիրս զայս»: Հ[այր] Ա[կինյան] պատրաստ է սրբագրել՝ «ի թարգմանել գրոցս այսոցիկ»: Իզուր, գեթ հիշեր Փարպեցու Պատմության սկիզբը՝ «և ի բաժանելն զքազաւորութիւն Արշակունւոյն». կամ Ագաթանգեղոսի՝ «ի սպանանել զնա Արտաշրի»: Ամեն պարագային՝ «գրոյս այսորիկ» և ոչ «գրոցս այսոցիկ». «զգիրս զայս» հոգնակի հայցական չէ, այլ եզակի դիմորոշ հոդով՝ գիր: Այս «գիր»-ը նույնն է, ինչ որ «նշանագիր»:

Եզնիկ Երեց երկրորդ անգամ կիրարկում է «նշանագիր» տառ = գիր իմաստով: Հ[այր] Ա[կինյան] «տարտամ» է գտնում այս իմաստը: Կորյուն ասում է՝ «նշանագիրս ալփաբետաց հայերէն լեզուի», Եզնիկ՝ «նշանագիր դպրութեան հայերէն լեզուի վարելոյ ալփաբետաց հանգամանս»:

Այսպես որ կողմեն որ մոտենանք «նշանագիր» բառին, բանասիրական, թե լեզվագիտական, հիմ չենք գտնում կասկածելու նրա հարազատությունը:

***Նկարագիր:*** Սակայն հ. Ա[կինյան] չի վարանում ջնջելու «նշանագիր»-ը և տեղը դնելու «նկարագիր»-ը և կարծում է, որ Վարդան գրիչը, որ 1254 թվին ընդօրինակել է մեր ձեռագիրը չի հասկացել «նկարագիր» բառի իմաստը և փոխարինել է «նշանագիր»-ով: «Նկարագիր» սովորական բառ է, մինչդեռ «նշանագիր» ըստ հ. Ա[կինյան], գոյություն չունի ո՛չ դասական և ո՛չ հետ-դասական գրականության մեջ: Ուրեմն ո՞րտեղից է գտել խեղճ Վարդանը: Պետք է խոստովանել, որ այս ենթադրությունը մեռյալ ծնունդ է:

Հ[այր] Ա[կինյան] հուշակում է, որ «նկարագիր դասական առումով կնշանակե պատմություն, գրություն»: Բերում է երկու վկայություն Ոսկեբերանի մեկնություններից, և երկու ուրիշ՝ հետ-դասական հեղինակներից: Այս ըմբռնումը ևս սխալ է և ծագում է կոչումների թյուր հասկացողությունից:

Ս. Գիրքը, դասական լեզվի մայրը, չգիտե բառիս Ակինյանական նշանակությունը: Հիշվում է երկու անգամ՝ «նկարագիր տան» = *διαγραφή*[2], և

[1] Ագաթանգեղոս, էջ 159:

[2] Եզեկ., ԽԳ, 11:



«նկարագիր էութեան» = *χαρακτήρ τῆς ὑποστάσεως*[1]: Այս վերջին իմաստով է, որ գոչում է Ոսկեբերան. «զիա՞րդ կարացից զքեզ ընդ մարդկան հաշուել, յորժամ ոչ տեսանիցեմ ի քեզ նկարագիրս այսպիսի բնութեան[2] = *τῆς τοιαύτης φύσεως τοὺς χαρακτῆρας*[3]: Առաջին իմաստը Ագաթանգեղոսի մոտ «նկարագիր» Հռիփսիմեի[4], Սեվերիանոսի՝ «նկարագիր մարմնոյս»[5] և այլն:

Մի երրորդ նշանակությամբ գործ է ածվում Ս. Գրքի նախադրությունների և Ոսկեբերանի մեկնությունների մեջ. «նկարագրաւն ի գործասիրութիւն զարթուցանէ զյոյլսն»[6], «Տեսիլ զազանացն ըստ նկարագրին... զտիրելն Աստուծոյ յայտնէ»[7], «նկարագրաւն զհարուածս Եդովմայ յետ դարձին... զհամբառնալն Քրիստոսի մարգարէանայ»[8]:

Այստեղ «նկարագիր» է կոչված Ս. Գրքի բնագրի կտորները, ընթերցվածները: Այսպես են կոչված Ոսկեբերանի մոտ Ս. Գրքի այն տները, որ իր մեկնության նյութ են: Եսայի մարգարեի Խ գլխի առաջին տները՝ «Մխիթարեցէք, մխիթարեցէք զժողովուրդս իմ ...» և յառակապես՝ «ամենայն ձորք լցցին և ամենայն լերինք խոնարհեսցին» տունը մեկնելուց հետո, ասում է՝ «եւ տեսանեմք ըստ նկարագրին»[9]: Մատթեոսի «հրաման տուր մեզ երթալ յերամակ խոզիցն» տան առթիվ քանի մի բացատրություն է տալիս, հետո ավելացնում. «եւ եթէ այլ ոք ինչ երեսս կամիցի առնուլ, նմա չէ արգել: Բայց նկարագիրս զայս յայտ առնէ. պարտ է գիտել ստոյգ թէ մարդք խոզացեալք դիւրաւ ըմբռնին ընդ դիւաց իշխանութեամբ»[10] = *εἰ δέ τις καὶ κατὰ ἀναγωγὴν ταῦτα ἐκλάβοι τὸ κωλύον οὐδέν. Ἡ μὲν γὰρ ἱστορία αὐτή.*[11]:

«Հայկազեան Բառգիրքը» բերում է նաև Ոսկեբերանից մի ուրիշ վկայություն առնված Գաղատացվոց թղթի տակավին անտիպ մեկնությունից. «նկարագիրն ոչ միայն զայն ցուցակէ որ երևինն, այլ՝ և այլ ինչ

[1] Եբր., Ա, 3:

[2] Մատթ., Ա, էջ 57:

[3] Migne, P. G., 57, col. 49.

[4] Ագաթանգեղոս, էջ 79:

[5] Սեվերիանոս, էջ 116:

[6] Նախ. Առակաց, ԺԵ:

[7] Նախ. Եզեկ., Ա:

[8] Նախ. Եսայ., ԽԷ:

[9] Մեկ. Եսայ, 248:

[10] Մատթ., էջ 443:

[11] Migne, P. G., 57, col. 355.

բացում»: Գտանք հույն բնագրի համապատասխան տեղը. *ἡ μὲν ἱστορία αὐτή οὐ τοῦτο μόνον παραδηλοῖ ὅπερ φαίνεται, ἀλλὰ καὶ ἄλλα τινὰ ἀναγορεύει διὸ καὶ ἀλληγοριὰ κέκληται*[1]:

Հայ թարգմանության՝ նկարագիր-ը, ուրեմն, համապատասխանում է հույն *ἱστορία αὐτή*. Եսայի մեկնության հույն բնագիրը հայտնի չէ, բայց հավանորեն այնտեղ ևս *ἱστορία αὐτή* է:

Ահա այստեղից է հ. Ա[կինյանը] հանել, որ «նկարագիր» նշանակում է «պատական առումով պատմութիւն, գրութիւն»: Այստեղ է և գայթակղության քարը:

Հ[այր] Ա[կինյանը] չգիտե, որ *ἡ ἱστορία* կամ *ἡ ἱστορία αὐτή*. հատուկ նշանակություն ունի հին մեկնաբանական գրականության մեջ, ընդունված եզր է, մի տեսակ terminus technicus, որով կոչվում են Ս. Գրքի բնագրից առած վկայությունները, տուն թե տներ մանավանդ, երբ ուզում են շեշտել նրանց բառական իմաստը ի հակադրություն այլաբանականի, որ տալիս է *ἀναγωγή* կամ *ἀλληγορία* այլաբանություն: «Ամենայն ձորք լցցին և ամենայն լերինք խոնարհեսցին», այս *ἱστορία* է, այսինքն՝ նշանակում է՝ ձորեր կլցվին և լեռները կխոնարհին: Եվ ուրիշ ոչինչ: Բայց նույն խոսքը կարելի է հասկանալ և այլապես, այն է՝ որ հրեաները պիտի վերադառնան գերությունից առանց արգելքի, և կամ Քրիստոսի անօրինությամբ ճանապարհները հարթվում են նոր կյանքի համար: Այս արդեն *ἱστορία* չէ, այլ *ἀναγωγή*:

Հայ թարգմանը զովեստի արժանի է, որ ըմբռնել է բառիս մասնավոր երանգը և թարգմանել «նկարագիր», մինչդեռ այլուր ուր նույն բառը նշանակում է իսկապես պատմություն՝ այդպես էլ թարգմանել է, օր. «և երանելի կենացն նոցա պատմութիւն»[2] = *καὶ τῆς μακαρίας ζωῆς αὐτῶν ἱστορία*[3]: Նույնպես «պատմութիւն» է թարգմանած[4] = *διήγησις*[5]:

«Հայկազեան Բառագիրքը» շատ ուղիղ է բացատրել բառիս նշանակությունը, դնելով դեմը *ἱστορία αὐτή* և մեկնելով՝ «բուն պատմութիւն, գրութիւն, ճառ սուրբ գրոց, բնագիր» (իմա՛ Սուրբ գրոց):

Հ[այր] Ա[կինյան] քաղել է իր տեղեկությունները «Հայկազեան Բա-

1 Migne, P. G., 61, col. 662.

2 Մեկ. Մատթ., 58:

3 Migne, P. G., 57, col. 355.

4 Մեկ. Մատթ., էջ 440:

5 Migne, P. G., 57, col. 352.



ռագիրքից», բայց անտեսել է այնտեղ տված բացատրությունը, «պատմութիւն գրութիւն Սուրբ գրոց» արտագրելով «պատմութիւն, գրութիւն», իսկ հույն բառը հասկացել է սովորական իմաստով: Երբ հ. Ակինյանը նեղություն քաշեր գեթ ստուգելու «Հայկազեան Բառգրքի» կոչումները, անշուշտ չէր շեղվի ճշմարտության ճանապարհից:

Չի ստուգել նաև Եվսեբիոս Կեսարացու մի վկայությունը, բավականացել է արտագրել «Հայկազեան Բառգրքից», առանց փույթ ունենալու ըմբռնել թե ի՞նչ է նշանակում վկայությունը: «Հայկազեան Բառգիրքը» բերում է և այս տեղիքը. «բանք նկարագիրք որպէս և անդ ասացեալ է՝ գրեաց նա»[1]: Հ[այր] Ակինյան արտագրել է նույնությամբ, ավելացնելով, էջ 110: Եվսեբիոսի էջ 110 տես ի՞նչ է գրած. «եւ իբրև ընթեռնուն զգիրս սուրբս, իմաստնանան հայրենի իմաստութեամբն, և մեկնեն զառակս, որ դրոշմեալ են ի նոսա. զի բանք որ ասացեալ են՝ նկարագիր խորհուրդք առակաց համարին թէ դրոշմեալ է ի նոսա»:

Վստահ ենք, որ հ. Ա[կինյան] չի ըմբռնել այս տողերը, եթե ոչ անխոհեմություն չէր ունենար ասելու, թե նկարագիր նշանակում է այստեղ «պատմութիւն, գրութիւն»:

Եվսեբիոս, քանի ի տող հետո, գրում է. «զի օրէնք ամենայն թուին մարդկան այնմիկ եթէ նման են մարմնոյ, և բանք որ ասացեալ են՝ նկարագիր համեմատել կշռեն զնոսա ի մարմին(:), իսկ զշունչն՝ զծածուկ իմաստութիւնն որ թաղեալ է ի նոսա[2]:

Եվսեբիոս պատմում է, Փիլոն Եբրայեցու վկայությամբ, թե Հռոմում (3) հրեական համայնք կար, ուր Ս. Գիրքը կարդում էին և մեկնում, ըստ հայրենի սովորության, այլաբանորեն: Թե ի՞նչ է նշանակում ընդգծած «բանք որ ասացեալ են՝ նկարագիր», կպարզե հույն բնագիրը. *ἐπεὶ δὴ σύμβολα τὰ τῆς ῥητῆς ἑρμηνείας νομίζουσιν ἀποκεχρυμμένης φύσεως ἐν ὑπονοίαις δηλουμένη*[3]:

Մյուս տեղիքը. *καὶ σῶμα μὲν ἔχειν τὰς ῥητὰς λέξεις, ψυχὴν δὲ τὸν ἐν ἀποκείμενον ταῖς λέξεσι ἀόρατον νοῦν*[4]:

Արդ *ἡ ῥητὴ ἑρμηνεία*, «բան ասացեալ», և *αἱ ῥηταὶ λέξεις*, «բանք ասացեալք» նշանակում է այն, ինչ որ *ἱστορία αὐτή*, և հայտնի է մանավանդ *τὸ ῥητόν* կարճ ձևով: Հայը ավելացրել է «նկարագիր» բա-

1 Եվսեբիոս, Եկեղեցական պատմության, գլ. 8, էջ 110:

2 Անդ, էջ 113:

3 Migne, P. G., 20, col. 177.

4 Անդ, col. 181.

ցատրելու համար «բանք որ ասացեալ են», որ այլ իմաստ չունի, հետևապես, քան Ս. Գրքի ընթերցվածք, տեղիք: Թարգմանի՞չն է ավելացրել «նկարագիր»-ը, թե մի բանիմաց մեկնիչ լուսանցագրությամբ, այդ կարևոր չէ: Վկայության իմաստն այժմ պարզ է: Հռովմի հրեական համայնքը համարում էր Ս. Գրքի բնագիրը մի տեսակ սիմբոլներ, որոնց մեջ թաքնված իմաստը երևան է գալիս այլաբանական մեկնությամբ, կամ, ինչպես ասում էին հները, «առակով», այլաբանություն բառը տակավին ծանոթ չլինելով: Նրանց աչքում Ս. Գրքի ընթերցվածները նման են մի կենդանի էակի, մի մարդու, որի մարմինն են ընթերցվածները իրենց բառական իմաստով, իսկ հոգին՝ այնտեղ թաքնված անտեսանելի միտքը: Այսպես ուրեմն «նկարագիր» չի նշանակում Եվսեբիոսի մոտ «պատմութիւն, գրութիւն»:

Անհաջող են նմանապես հ. Ա[կինյանի] վերջին փաստերը՝ Կոմիտասի «աւետարեր նկարագիր»ը և Եղիշեի «նկարագիր»-ը:

Կոմիտասի նամակը պատասխան է Մոդեստոսի թղթին, որի մեջ հայտնում է Երուսաղեմի ավերումը և վերաշինությունը: Կոմիտաս իր թուղթն ուղղում է «նեղելոց, վշտացելոց» և այժմ «խրատելոց... զգուելոց, սփոփելոց և սիրեցելոց ի հօրէ»: Թղթի օրագիրն է սա: Ապա հիշում է մարգարեի խոսքը՝ «մխիթարեցէք, մխիթարեցէք զժողովուրդ իմ, քահանայքդ խօսեցարուք ի սիրտ Երուսաղէմի և մխիթարեցէք զդա, զի լի եղև տառապանօք»: Մարգարեն ասում է այնուհետև թե «թողեալ լիցին դմա մեղք իւր, զի ընկալա ի ձեռանէ տեառն զհատուցումն մեղաց իւրոց»:

Կոմիտաս ուզում է ասել, որ Երուսաղեմացիք տառապեցին, բայց խրատվեցին նեղության մեջ և արժանացան նորեն վերին շնորհի: Հիշելով որ այս պարագան մեծ մխիթարություն է նաև հայերի համար, որ կարող են առաջվան պես ուխտի գնալ և սփոփանք գտնել սուրբ վայրերում, ամփոփում է մարգարեի խոսքերի բարոյականը. «իբրև դարձոյց բարձրեալն զերեսս իւր ի մէնջ... խռովեցաք: Այլ յորժամ կամեցաւ... առնել բարերարութեամբ քաղցրութիւն, ընկղմեցաք ի խորութիւն բարձրութեան»: Ապա ասում է. «եւ ի վերայ այսր **աւետարեր նկարագրի**» անդադար... զտէր օրհնեսցուք, զի թէպէտ ահագին էր դատաստան, բայց Աստուած սրբեաց զձեզ», ինչպես Երիքով գնացող մարդը, որ ավազակի ձեռք ընկավ, կողոպտվեց, բայց ողորմած Սամարացին օգնության հասավ և սփոփեց նրան: «Աւետարեր նկարագիր» ասելով Կոմիտաս ի նկատի ունի մարգարեի խոսքը «մխիթարեցէք, մխիթարեցէք», որն իր թղթի բնաբան էր: Այս «նկարագիրն» է մխիթարության աղբյուրը, և ոչ թե Մոդեստոսից ստացած նամակը, ինչպես կարծում է հ. Ա[կինյանը] և որից ենթադրել է, թե «նկարագիր» նշանակում է թուղթ: Բացահայտ սխալ է: Թերևս «աւետարեր» մակդիրն է մոլորեցրել արգո բանասերին: Ահա՛ Ոսկեբերան ևս նույն



«նկարագիր»-ը մեկնելիս, ինչպես վերև հիշեցինք, համարում է այն՝ «աւետիք յաւերակ երկիր Հրէաստանի»[1]: Հավանորէն Կոմիտասի թուղթը գրված է Ոսկեբերանի հիշյալ տեղիքի շնչի տակ և այնտեղից է առել «աւետարեր նկարագիր», ինչպես և «զգուել», = Ոսկեբերան՝ «փայփայանք են առ այնոսիկ, որ ի պատիժսն էին, զի այսպես իմն պատիժք սովոր են լինել լուծիչ մեղաց»[2]:

Եղիշեի մոտ հիշված «նկարագիր»-ը ևս այն իմաստը չունի ինչ որ կարծում է հ. Ա[կինյան] արտագրելով «Հայկազեան Բառգրքից» «ի ձեռն առեալ զքաջ նկարագիրն Մակաբայեցւոց ընթեռնոյր ի լսելիս ամենեցուն»: Վկայությունը թերի է: Եղիշեն ասում է. «և ըստ պատերազմական կարգին **զքաջ արանց** զյիշատակարանս հանապազ երկրորդէր առաջի նոցա, զի և ինքն իսկ տեղեակ էր ի մանկութենէ իւրմէ սուրբ Կտակարանաց (:) զոր և ի ձեռն առեալ՝ զքաջ նկարագիրն Մակաբայեցւոց ընթեռնոյր ի լսելիս ամենեցուն»[3]:

«Հայկազեան Բառգիրք» հասկացել է նկարագիր նույն իմաստով ինչ որ վերև բացատրեցինք: Սակայն այնտեղ խնդիրը Ս. Գրքի հատ հատ ընթերցվածների և տոների մասին է և ոչ ամբողջ գրքի: Եղիշե ասում է, որ Վարդան Ս. Գիրքը ձեռն առած՝ կարդում էր Մակաբայեցիների քաջ նկարագիրը: «Քաջ» բառն արդեն ցույց է տալիս, որ խոսքը բնագրի մասին չէ, այլ Մակաբայեցիների հերոսական պատկերի, քաջ նկարագրի = *χαρατήρ*, թե «որպէս կռուեցան ի վերայ աստուածատուր օրինացն ընդդէմ թագաւորին Անտիոքացւոց. զի թէպէտ և ի նմին կատարեցան մահուամբ, սակայն անուն քաջութեան եկաց մինչև ցայսօր ժամանակի»: Ամեն դեպքում հ. Ա]կինյան] հայտարարությունը որ «նկարագիր» դասական հեղինակների մոտ սիրված բառ է՝ պատմություն, *շարադրվածք* իմաստով, չի հաստատվում և ոչ մի վկայությամբ, այլ հերքվում է իր իսկ հիշած կոչումների ճշգրիտ ըմբռնումով:

Ապա ուրեմն Եզնիկ Երեցի գործը չի կարելի անվանել նկարագիր բառիս և մի իմաստով: Հ[այր] Ակինյանի սրբագրությունն անհիմն է և պետք է թողնել նշանագիր ինչպես կա:

«Նկարագիր կարգաց ի բանից» նմանապես անիմաստ է, փոխան «Նշանագիր կարգաց բանից»: Հ[այր] Ակինյան ասում է «նախնյաց մատենագրութենեն իրեն անծանոթ է կարգք բանից»: Իսկ «նկարագիր կարգաց» ծանո՞թ է իրեն նախնյաց մատենագրութենեն: Իհարկե, ոչ, որովհետև գոյություն չունի: Ինչ վերաբերում է «կարգք բանից», իրեն ծանոթ

[1] Մեկ. Եսայ., էջ 247:

[2] Անդ, էջ 246:

[3] Եղիշե, էջ 182:

չէ, բայց ծանոթ է հայ լեզվի մեծ վարպետին՝ Խորենացուն: Ոլիմպիոդորոսի գրույցին առթիվ գրում է Պատմահայրը. «մատեան լեալ զՔսիսութրեա, և զորդւոց նորա... յորում, ասեն, կարգ լեալ բանից այսպիսի»[1]: Այստեղ կարգ բանից այն իմաստը չունի ինչ որ Երբ., Է, 8, այլ նշանակում է զրույցք, ինչպես ինքը Խորենացին անվանում է նույն «կարգ բանից» զրույցք, ասելով. «և այսոքիկ զրոյցք սուտ և կամ թէ արդարև լեալ, մեզ փոյթ չէ ինչ»: Ագաթանգեղոս ունի. «զկարգս զրուցաց յիշատակել»[2], որ արդարացնում է Եզնիկի «կարգաց», եթե Հ[այր] Ակինյանի թծախնդիր է բառի հոգնակի ձևին, այնքան ընտանի Կորյունին: «Կարգել զբանս»» սովորական դարձված է, և ուրեմն «կարգ բանից» միանգամ կանոնավոր:

Կարիք կա՞ նկատելու, որ «Նկարագիր կարգաց» նեցուկ չունի և հունարեն *διήγησις* -ի մեջ, հակառակ Ն. Ա[կինյանի], աններելի ճիգին: Եզնիկ Երեց ունի՝ հաջորդությունք թագավորացն և քահանայապետիցն: Հույնը կրկնում է՝ հաջորդությունք Գրիգորի՝ *ἐν τάξει γενομένων διαδόχων* և հաջորդությունք թագավորելոց *ἐν τάξει γενομένων καὶ βασιλευσάντων (= γενομένων βασιλέων)*. Ն. Ա[կինյան] կարծում է, որ Նկարագիր = *διήγησις*, և *ἐν τάξει γενομένων* = կարգաց: Բայց *ἐν τάξει γενομένων* չի կարելի բաժանել հետևյալ *καὶ βασιλευσάντων* բառից:

Համամիտ չենք Ն. Ա[կինյանի] և մյուս լեզվական դիտողություններին: «Նշանագրի» մեջ նա տեսնում է «դասական լեզվի ինքնատիպ լուսացնցող ճառագայթները»: Որպես ապացույց բերում է մի քանի բառեր, շարելով վկայություններ զանազան հեղինակներից բացի Եզնիկից, մինչդեռ նպատակն է ցույց տալ, որ գործը Եզնիկի գրչից է ելած:

Մենք գտնում ենք, որ «որպէս զիարդ», զույգ հոմանիշների գործածությունը, հատուկ ճապաղ ոճի հեղինակներին՝ Փավստոսից մինչև Հովհաննես Կաթողիկոս և Թովմա Արծրունի, բոլորովին օտար է Եզնիկին: «Յաջորդութիւն» բառը ծանոթ չէ Ս. Գրքին: Բ Մակ., Դ, 29, *διάδοχος* թարգմանված է «փոխանակ», և Իմ., Է, 30, *διαδέχεται*, «փոխանակէ»: Եթե Ն. Ա[կինյանը] ընդունում է, որ Եզնիկ մասնակցել է Ս. Գրքի թարգմանության, ապա պետք է ենթադրել, որ չգիտեր տակավին «յաջորդ» բառը:

«Վարուճն» համեմատել էինք, Ն. Ա[կինյանին] հետևելով, Եփրեմի՝ «դպրութիւն՝ վարուճն աւուրց»-ի հետ և փորձել էինք մի ընդհանուր իմաստ հանել: Հ[այր] Ա[կինյան] մեր «բացատրութենեն բան մը չի հասկցել», և տալիս է իր բացատրությունը. «Եզնիկ կթվե հայ թագավորներու և կաթողիկոսներու յաջորդությունը. «վարէ յառաջ զանուանս նոցա մինչև առ մեզ». մյուս կողմեն այդ անունները կքաղե կհանե Փավստոսի պատմութենեն, կմշակե յուր ծրագրին (!) համաձայն. այս գործողությունները վարուճն են (!), զոր ուրիշ բառով կրնանք թարգմանել «ամփոփումն, համառոտ յառաջբերութիւն, համադրութիւն»: Ասով կկարծենք, թե բռնազբոսած չենք բառին իմաստը: Ի հարկե ավելի բացահայտ պիտի ըլլար, եթե կարդայինք «վարուճն աւուրց կամ ամաց»:

Արդյո՞ք Ն. Ա[կինյանը] բան հասկցավ իր այս տողերեն, առանց բռնազբոսելու մտքի հետևողականությունը:

Մենք պարզել էինք, թե ի՞նչ է նշանակում Եփրեմի մոտ «իրրամեն», և ինչպես հասկանալ «դպրութիւն՝ վարուճն աւուրց»: Ասել էինք, որ «իրրամեն» սխալ է փոխանակ դիրրամեն և որ այս բառը Թագ. գրքի մեջ թարգմանված է «բանք աւուրց», մինչդեռ ըստ նորագույն գիտնականների՝ է «գործք աւուրց»[1]:

Կարծելով, որ Եզնիկ Երեցի մոտ «վարուճն» նույն բառն է ինչ որ Եփրեմի, փորձել էինք երկու իմաստով ըմբռնել, 1) վարուճն իշխանության, և 2) վարուճն կենաց, պատմություն և վարք (հմմտ. վարմունք կրկնակի իմաստով):

Այժմ տեսնում ենք, որ իզուր ենք հավատ ընծայել Ն. Ա[կինյանին]: Եզնիկի «վարուճն» անկախ է Եփրեմից: «Վարուճն դրոշմել» նշանակում է «վարուճն բանից դրոշմել», այսինքն «վարել զբանս և դրոշմել», որ ուրիշ բան չէ, քան մեկնություն խորագրի՝ «Նշանագիր կարգաց բանից», որ է նշանագրել «զկարգս բանից» կամ «կարգաւ զբանս»:

Հետևապես «վարուճն» չի նշանակում «ամփոփումն, համառօտ յառաջբերութիւն» և ոչ «վարուճն աւուրց», այլ միմիայն «վարուճն բանից» և դրոշմել-ի հետ նշանակում է պատմել:

**Վասն գիտութեան ի վերայ հասանելոյ**: Ասել էինք և կրկնում ենք, որ անհաջող ոճ է, ճապաղ, նույն կարգի ինչ որ «որպէս զիարդ»: Հ[այր] Ա[կինյանը] առանց ամենափոքր ճիգի հասկանալու հակառակորդի ասածը, սիրում է իսկույն որոնել ազգիտություն և մեզ բացատրում է, որ «ի վերայ հասանել» նշանակում է հասկանալ: Սակայն խնդիրը «ի վերայ հասանել»-ի վրա չէ, այլ «ի վերայ հասանել գիտութեան»: Կարելի է ասել հասանել ի վերա իմաստության, ի վերա «իրաց», ի վերա «լաւութեանց», ինչպես իր իսկ բերած օրինակներից կարող էր տեսնել: Վերջապես կարելի է ասել «հասանել ի վերայ ճշմարիտ գիտութեան, ի վերայ գիտութեան սուրբ գրոց (և ո՛չ հունաց փիլիսոփայից): Բայց «ի վերայ հասանել գիտութեան»

[1] Մովսես Խորենացի, էջ 26:

[2] Ագաթանգեղոս, էջ 6:

[1] E. Dhorme, L'évolution religieuse d'Israël, t. 1, p. 51.

ճապաղ է: Հ[այր] Ա[կինյան] բերում է Ագաթանգեղոսի «զի ոչ եթէ իւրեանց կարճահաս իմաստութեամբն *հասեալք չքնաղ գիտութեանն Աստուծոյ»* և չտապում, իր վատ սովորության համաձայն, սրբագրել «ի վերայ չքնաղ գիտութեանն Աստուծոյ»:

Բուն հայկաբան ոճն է «հասանել գիտության», ինչպես ունի Եզնիկ՝ «մարթի հասանել գիտութեան»[1], «հասանել բանից սրտի իմոյ»[2], «հասանել ի գիտութիւն ճշմարտութեան», ուր «ի գիտութիւն» = *εἰς ἐπίγνωσιν* հունաբանություն է փոխանակ «գիտութեան»): Այստեղից և «հասու լինել»: «Ի վերայ հասանել» կրում է հունական *ἐπιγιγνώσκειν* և նման *ἐπὶ* -ով սկսվող բայերի ազդեցությունը. «վերահասու լինել» հետ-դասական է:

**Փոքր ի շատէ**: Այս բառի առթիվ հ. Ա[կինյան] կարկուտ է թափում մեր գլխին, հանդիմանում որ «դասական հայերէնի մասին վճիռներ կկտրենք, այն ինչ ուշադրությամբ չենք կարդացած Ս. Գիրքը և Եզնիկ»: Անշուշտ, այդ անօրինակ հիշողությունը չունինք, որ Ս. Գրքի բառերը պահենք մեր գլխում, բայց ունինք մեր տրամադրության տակ «Հայկազեան Բառարանը» և Համաբարբառը, որտեղից և մեզ հայտնի էին գիտուն խրատտուիս բերած վկայությունները:

Եզնիկ Երեց, «փոքր ի շատէ» առած է Փավստոսեն: Այս առթիվ նկատել էինք, որ բառը Եզնիկյան չէ և ո՛չ սուրբգրենական: Դասական է «սակաւը, սակաւիկ մի, սակաւ ինչ, փոքր մի, փոքր ինչ»: *Հայ լեզվի առաջին գրական* թքովը, այն որ կոչում են դասական լեզու, ուսումնասիրելիս, շատ կարևոր հարց է, թե ի՞նչ տեղ են բռնում այնտեղ հունաբանությունները մի կողմից և ռամկորենի տարրերը մյուս կողմից: Մեզ այնպես է թվել, որ «փոքր ի շատէ» ժողովրդական դարձվածք է: Մեր տպավորությունը հիմնված է հետևյալ դիտողության վրա:

Հին Կտակարանում բառս պատահում է միայն մի անգամ ընդդեմ հույն *μικρόν*[3]: Ավետարանները չգիտեն, իսկ Պողոսի թղթերում երևան է գալիս որպես թարգմանություն հույն *ἀπὸ* կամ *ἐκ μέρους* որ նշանակում է «մասամբ, մասամբ իւիք»[4]:

Արդ ուշագրավ երևույթ է, որ Եզնիկ, Ոսկեբերան և Եփրեմ նաև Համախապատում[5] գիտեն այս բառը Պողոսի թղթերից, գոնե հիշում են

---

[1] Եզնիկ, էջ 252: Հմմտ. Յաղ., Ը, 13:

[2] Բ Տիմ., Գ, 7:

[3] Բ Եզր., Թ, 8:

[4] Հռովմ., ԺԱ և ԺԵ: Ա Կորն., ԺԳ և Բ Կորն., Ա և Բ:

[5] «Ցանախապատում ճառք» , էջ 7-8:



միայն այնտեղից առած կոչումների մեջ, բայց իրենք գործ են ածում «սակաւ մի, փոքր մի»: Եզնիկ բերում է Առաքյալի[1]՝ «փոքր ի շատէ գիտեմ», բայց իր գործածած բան է «սակաւիկ մի»[2], «մանր» («մանր միտ դնել»)[3]: Եփրեմ հիշում է «փոքր ի շատէ»[4]: Բայց նույն տեղը ինքը գործ է ածում՝ «սակաւիկ մի»[5]. հիշում է նույն բառը Ա Կորն. (ԺԳ, 9-10), բայց ինքն ասում է՝ «փոքր մի»[6]. հիշում է Բ Կորն. (Բ, 5), բայց ինքը ավելցնում է որպես բացատրություն «փոքր ի շատէ»՝ ըստ յուրում չափս: Համաբարբառի մեջ՝ «փոքր մի ամբարշտեցան, սակաւիկ մի խրատեաց» (էջ 37):

Այստեղից հետևում է, որ «փոքր ի շատէ» տեղ չունի Եզնիկի և ոչ Եփրեմի թարգմանչի անհատական բառարանում, ինչպես օր. «պլան», «գործուղի» և նման բառեր մնում են օտար այն թերթերի, որոնք հիշում են այդ բառերը իրենց մեջբերումներում:

Ավելի հետաքրքրական է Ոսկեբերան: Սա ևս հիշում է Առաքյալի՝ «փոքր ի շատէն խափանեսցի»[7], Մատթեոսի մեկնության մեջ (Ա, էջ 247): Բայց Բ Կորն., Բ, 5 և Հռովմ., ԺԱ, 25 կոչումների մեջ «փոքր ի շատէ»-ի փոխարեն գտնում ենք «ի մասնէ». «զի կուրութիւն **ի մասնէ** եղև Իսրայէլի», քանի մի տող ստորև՝ «թէ որք տրտմեցոյց, ոչ եթէ զիս տրտմեցոյց այլ **ի մասնէ ինչ**, որպէսզի մի՛ ծանրացայց ձեզ»[8]:

Ոսկեբերանի մոտ սուրբգրենական կոչումներն ընդհանրապես համաձայն են մեզ հասած Ս. Գրքի բնագրին, բայց կան և շեղումներ, որ շատ նշանակալից են: Տեղը չէ այս խնդրով զբաղել: Գաղափար տալու համար բերենք մի օրինակ հենց Ավետարանի սկզբից[9]. «և *առաքեաց կոտորեաց* զամենայն մանկունս, որ էին ի Բեթղահէմ և յամենայն սահմանս նորա յերկեմենից և ի խոնարհ, ըստ ժամանակին զոր ստուգեաց ի մոգուցն»: Ոսկեբերանի մոտ, «և առաքեալ և կոտորեաց զամենայն **մանկտին զոր եգիտ** ի Բեթղահէմ և յամենայն սահմանս նորա յերկեմենից և ի խոնարհ, ըստ ժամանակին **որպէս** եւ ստուգեաց ի մոգուցն»[10]:

---

[1] Ա Կորն., ԺԳ, 10:

[2] Եզնիկ, էջ 254:

[3] Անդ, էջ 77:

[4] Հռովլ., ԺԵ, 25:

[5] Եզնիկ, էջ 10:

[6] Անդ, էջ 75:

[7] Ա Կորն., ԺԳ, 10:

[8] Ոսկեբերան, Պաւղ., Բ, էջ 286:

[9] Մատթ., Բ, 16:

[10] Ոսկեբերան, Մատթ., Ա, էջ 124:

Երբ Եզնիկն է Ս. Գրքի սրբագրողը և Ոսկեբերանի թարգմանիչը, անհասկանալի են այս տարբեր ընթերցումները: Ավելի ակնբախ է Ոսկեբերանի կոչումը. «ի Յիսուսի ծնանելն ի Բեթղահէմ Հրէաստանի յաւուրս Հերովդի արքայի, **ահաւասիկ** մոգք յարևելից եկին յԵրուսաղէմ, **ասէին**, ուր **իցէ ծնեալն** արքայն հրէից»:

Այս կարգի շեղումները ընդունված բնագրից տանում են այն ենթադրության, որ ընդունված բնագիրը, Սահակի և Եզնիկի սրբագրությունից հետո, ենթարկվել է նորեն սրբագրության:

Հանգուցյալ Եղիշե պատրիարքը (Դուրյան) համեմատելով Եզնիկի մի քանի վկայությունները գտել էր, որ նրանք ևս համաձայն չեն Ս. Գրքի այժմյան ընթերցումներին, և այս առթիվ նկատում է նրբորեն, իրա՞վ է, որ Եզնիկ սրբագրած լինի Ս. Գիրքը, և կամ Եզնիկ արդյո՞ք հեղինակ է իր գործին[1]:

Համեմատությունները չէ սպառած հ. Եղիշե: Հիշենք մեր կողմից Եզնիկի մի տեղիքը, ուր բերում է Առաքյալի խոսքը՝ թե «զորս յառաջագոյն ճանաչէր, յառաջագոյն **սահմանեաց** կերպարանակից լինել պատկերի որդւոյն իւրոյ», որ ակնարկ է Հռովմ., Ը, 29. «զորս **յառաջն** ճանաչէր, յառաջագոյն **հրաւիրեաց** կերպարանակից լինել» և այլն:

«Յառաջագոյն սահմանեաց» համաձայն է հույն բնագրի՝ *προώριζε*, մինչդեռ ուղղված է «հրաւիրեաց». երկու «յառաջագոյն»-ներից մեկը՝ շինած է «յառաջն», ինչպես վերև՝ «ի Յիսուսի ծնանելն» = *τοῦ Ἰησοῦ γεννηθέντος*, շրջած է «ի ծնանելն Յիսուսի»: Սրբագրությունների նպատակն է եղել ավելի հայացնել, ավելի դյուրացնել:

Արդ մեր տպավորություն է եղել, որ այս կարգի սրբագրություն է նաև «փոքր ի շատէ» փոխան «ի մասնէ», որ դիպվածորեն պահվել է Ոսկեբերանի մոտ: Արդարև ինչո՞ւ Ոսկեբերանի թարգմանիչը «փոքր ի շատէ» հիշելուց հետո, պիտի գրեր «ի մասնէ», եթե «ի մասնէ» չկար Ս. Գրքի հայ բնագրում, այլ կար «փոքր ի շատէ»: Հնարավոր է, որ սրբագրությունից հետո է, որ գրիչները մուծել են նոր ընթերցումը Ոսկեբերանի և Եզնիկի կոչումների մեջ: Այս և նման դիտողությունների ազդեցությամբ էր, որ նկատել էինք անցողակի, որ «փոքր ի շատէ» Եզնիկյան չէ և ոչ սուրբգրենական: Մենք դատական վճիռներ չենք տալիս, բանասիրական խոհեր են, որոնց առթիվ, որքան և անհավանական համարին հ. Ա[կինյան] և ուրիշներ, պետք չէ տամներ կրճատել, այլ ձեռքը ճակատին դնել և աշխատիլ կնճիռները լուծել:

**Թարգմանել**: «Նշանագր»-ի միատող հիշատակարանը՝ «Եղիցի յիշատակ Եզնկան ի թարգմանել զգիրս զայս», արգելք է հ. Ա[կինյանի] տեսության: Ուստի և ձգտում է վարկաբեկել և թեին տակ առած՝ ցատկում է յոթներորդ դարից տասներեքերորդ դարը: Կարծում է, որ հիշատակարանը մի մաղթանք է, որ արել է ձեռագրի Վարդան գրիչը 1254 թ. ընդօրինակությունն ավարտելուց հետո: Սակայն հիշատակարանը ձեռագրի վերջում չէ, ինչպես վերև հիշեցինք, այլ կնքում է «Նշանագիր»-ը: Ապա հետևում է «ժամանակք կաթողիկոսաց» և հետո Վարդան գրչի հիշատակարանը: Կաթողիկոսների *ցուցակում* Կոմիտասի հայրապետության տարեթիվը չէ նշանակված: Այստեղից ուզեցել էինք հետևցնել, որ ցուցակի առաջին մասը թերևս նույն Եզնիկի գործ լինի, որ «Նշանագիր»-ը կազմելուց հետո հանդերձ իր հիշատակարանով, շարել է կաթողիկոսների անունները մինչև իր ժամանակ, շարել է ինքը կամ ժամանակակից մի ընդօրինակող: Մի ուրիշը շարունակել է ցուցակը մինչև Ստեփանոս, ութերորդ դարու վերջը: Նշանակում է այս անծանոթը ապրում էր Ստեփանոսի հաջորդի օրով: Ուրեմն ցուցակը Վարդան գրչի գործը չէ: Այս նպատակով էր, որ ձեռագիրը նկարագրելիս աշխատեցինք պարզել, թե ցուցակը լրի՞վ է արդի ձեռագրում, թե թուղթ է ընկած: Վարդանի գործը չէ ևս առավել ցուցակից առաջ զետեղված՝ Եզնիկի հիշատակարանը:

«Թարգմանել» բառը ևս չի կարող իջեցնել հիշատակարանը մինչև Վարդանի ժամանակը: Հ[այր] Ա[կինյանի] կարծիքով թարգմանել «յօրինել իմաստով առաջին անգամ Հերացին է գործածել 1184 թ., հետո Սմբատ Սպարապետ իր Տարեգրքում 1272 թ.: Գտնում է, որ այս տարիների միջև 1254 թ. Վարդան ընդօրինակած է ձեռագիրը և գործածած նույն բառը նույն իմաստով»: Սխալ է այս կարծիքը իր հիմքերով: Հերացին վկայում է, որ իր գործը քաղել է արաբ, պարսիկ և հույն գրքերից և ուրեմն իրավունք ուներ ասելու «հաւաքեցի և թարգմանեցի ի հայ բարբառ»: Օգտվել է նաև հայ նյութերից և կամեցել այս բոլորից «առնել գիրքս», ուստի և ասում է՝ «թարգմանեցաւ և գրեցաւ գիրքս»: «Թարգմանել» գործ է ածած իր բուն իմաստով, և ոչ թե որպես «յօրինել»:

Սմբատի Տարեգիրքը երեք քառորդ մասով քաղված է Ուռհայեցուց և Գրիգոր Երեցից. մի, և վերջին քառորդն է միայն իրենը: Եզնիկի գործը ևս ունի նույն բնավորություն. մեծ մասը քաղված է հին աղբյուրներից և իրեն գրչի սեփականություն է գրեթե միայն Հռիփսիմյանց հատվածը: Սմբատ իրեն անվանում է երկիցս «թարգմանող պատմութեանս»: Եզնիկ ևս նույն բառով է որակում իր գործը: Ի՞նչ է բառի իմաստն այս դեպքում:

Հների մոտ թարգմանություն նշանակում է նաև մեկնություն: Թվում է թե այս իմաստը պարզ հետևություն է հունարենի, ուր *ἑρμηνεύω* նշանակում է մեկնել և թարգմանել:

[1]Դուրյան Սամենաղարան, թիվ 7, էջ 367 (4):

Բյուզանդական շրջանում, ինչպես և նոր հունարենում, *ἑρμηνεία* պահում է միայն «մեկնութիւն» իմաստը: «Թարգմանել» արտահայտվում է *μεταφράζω* բառով, որ դարձյալ երկու իմաստ ունի՝ paraphraser, և թարգմանել: Հունարան դպրոցը թարգմանել է այս բառը՝ հարասել, որ, սակայն, մեծ ընդունելություն չէ գտել: Կարծում եմ, որ հույն *μεταφράζω* բառի հետևությամբ, «թարգմանել» բառը գործ է ածված նաև paraphraser -ի իմաստով:

Արդ Եզնիկի աշխատությունը մեծ մասով *μετάφρασις*, paraphrase է, և ուրեմն կարող է ասել՝ թարգմանել: Սմբատի Տարեգիրքը Եւ *μετάφρασις* է. և ինքը՝ թարգմանող, *μεταφραστής*:

**Զատարափակ**: Հ[այր] Ա[կինյանը] կասկածում է, թե Կաղանկատվացին առած լինի այս բառը Ագաթանգեղոսից: Մենք մնում ենք մեր կարծիքին: Ոչ միայն բառեր, այլ ամբողջ նախադասություն է քաղել Ագաթանգեղոսից, ինչպես՝ «ասպնջական ցանկալի սուրբ հաւատոցն լինելով յաշխարհածնունդ հայրենեացն որդի զտանիւր շնորհացն (sic) Աստուծոյ մերձաւոր կենարար կենաւքն լինելով»[1]: «Պարոյկ» որմոյն Կաղանկատվացու մոտ[2] այլ բան չէ, քան Ագաթանգեղոսի «պարկէն»-ը, շփոթած պարոյկի հետ, եթե միայն գրչագրական սխալ չէ:

**Փառներսեհ**: Հ[այր] Ա[կինյան] համառում է իր անօրինակ սրբագրության վերա. Փառներսեհ անունը որպես թե ծագած է Փառեն ռմն երեց բառերի սխալ ընթերցումից: Ինչո՞ւ Փառեն պիտի Փառներսեհ դառնար հարց է տալիս հ. Ա[կինյան]: Իսկ ինչո՞ւ Կորյունի Մաշթոց դարձել է Եզնիկ Երեցի մոտ Մեսրաւպ: Հ[այր] Ա[կինյան] ավելի հեռու է գնում, երբ պնդում է, որ Փառներսեհ չէ կարող պահլավ անուն լինել, և որ պահլավ բառակազմության օրենքը պահանջում է Ներսեհ-Փառեն: Այդպիսի օրենք չկա: Գեթ հիշեր այնքան զորեղ հիշողության տեր բանասերը Փավստոսի՝ Փառավազ = Սեբեոսի՝ Փառավազ = արևմտյան հեղինակների՝ *Φαρνάβαζος*, Փառանձեմ էլ չեմ ասում հույն հեղինակների՝ *Φαρνάσιτης*, *Φαρανδάτης* և ուրիշները, որ դյուրությամբ կարող էր գտնել իր «Iranisches Namensbuch» հայտնի գրքում: Հիշենք նաև Սեբեոսի՝ Խրոխ-Որմիզդ, Խորենացու՝ Խոռոխբուռ ուր խորոխ մի այլ հնչումն է փառն-ի, կամ Farrux-Sapuh, ուր farrux դարձյալ նույն փառն բառի այլ ձևն է:

**Ցուսիկ = Սահակ = Շահակ**: Կամակոր մտքի մի ուրիշ օրինակ: Երեք հիմնովին տարբեր անունների նույնացման դեմ կարելի է միայն երեք

¹ Ագաթանգեղոս, էջ 381:

² Մովսես Կաղանկատվացի, էջ 351:



անգամ «չէ» ասել: Հ[այր] Ա[կինյանի] կարծիքով, Սահակ անունը Կորճայքում արտասանվում էր Շահակ ասորական ազդեցության տակ, իսկ «հայ բնիկ ժողովուրդին բերանը սեղմված եղած է Հուսիկ»: Ոչ, որքան կուզեք սեղմեցեք բերանը, Սահակից՝ Հուսիկ չի դուրս գալ: Բերան սեղմելով չի կարելի բառեր մեկնել և ո՛չ էլ բերան լայնելով՝ սխալ մեկնություններ պաշտպանել: Հ[այր] Ա[կինյան] ժամանակ է գտել թերթելու Հյուբշման, ուր տեսել է, որ այս լեզվագետ Շահակ անունը «զգուշորեն» կկապե իրանական շահ բառի հետ, իսկ «մտքեն չի անցներ Շահրիկ, Շահեն անուններու հետ համեմատել»: Իսկ Հյուբշման մտքեն կանցնե՞ Շահակը հանել Սահակ-ից: Այս է խնդիրը: Սահակ անգամ Եփրեմի թարգմանության մեջ մնացել է միշտ Սահակ:

Ինչ կվերաբերի Սահակի ստուգաբանության սահա ի՞նչ է ասում մի ուրիշ հեղինակավոր անձ. “*Shahak* = pers. *Shahak* (etwa zu *Shahpuhr*) oder besser *Shahrak* (Hyponoisticon eines mit *Shahr* = ap. *Shathra* “Herschaft” Zusammengesetzten Namen”[1].

Անտեղի է և իր հեգնոտ ճկատողությունը Շահրիկ-ի վերաբերյալ: Շահրիկ նշանակում է կողմնապետ, բայց է և՛ հատուկ անուն[2], ինչպես Շահապ է սատրապ, բայց նաև հատուկ անուն է՝ Փավստոսից հայտնի («եպիսկոպոս Տայոց Կիրակոս, որ Շահապ կոչէր»): Դեհկան ևս կողմնապետ է նշանակում, բայց նաև հատուկ է նույն Փավստոսի մոտ: Ինչ վերաբերում է մեր համեմատության Շահակ և Շահիկ, սխա ինչ է մտածում նշանավոր իրանագետը. Der Name Shahrak scheint eigentlich Kreisvorsteher zu bedeuten und mit Shahrigh gleich zu sein[3] : Պարզ է:

**Արքանեակ**: Եզնիկ Երեց իր գործի ընթացքին հիշատակում է Սահակի և Մեսրոպի աշակերտներից, Ղևոնդ, Արձան, Կորյուն և **Եզնիկ**, անվանելով նրանց «**արքանեակք նոցուն լուսաւոր հանդիսիցն**»: Եզնիկի անունը պարզապես աքացում է հ. Ա[կինյանի] մոլար կարծիքի դեմ և ապացուցանում, որ **Նշանագրի** հեղինակ Եզնիկ Երեցը չի կարող նույնը լինել Կողբացու հետ: Հ[այր] Ա[կինյան] փորձում է վերացնել այս խոչընդոտը, հայտարարելով այն անհարազատ. իբր թե «արքանեակ և հանդէսք բառերը գործ են ածված ոչ-դասական առումով»: Այստեղից, կարծեմ, մի բան է հետևում, որ Նշանագրի հեղինակը չէ կարող լինել դասական Կողբացին, և ոչ թե որ հիշյալ խոսքերը անվավերական են: Թողնենք, որ ճկատողությունն ինքը սխալ է: Հ[այր] Ա[կինյան] ի չարն է գործ դնում իր «դասական

¹ J. Marquart, Philologus, Bd., 55, p. 240.

² Hoffman, Auszüge aus Syrichen Akten, p. 72.

³ Justi, Iranisches Hamensbuch, p. 277.

քիմք»-ի ներշնչումները: Կորյուն իրեն կոչում է «աբբանեակ ըստ աւետաբանական հրամանաց» Սահակի և Մաշթոցի[1]: Խեղճ Եզնիկ Երեցը կրկնում է նույնը նաև Կորյունի ընկերակիցների՝ Ղևոնդի, Արձանի և Եզնիկի նկատմամբ և անշուշտ հետևելով Կորյունին: Եզնիկ Երեց համարում է Ղևոնդին «ճշմարիտ ի գործ մշակութեան», որ ոչ այլ ինչ է, եթե ոչ Կորյունի՝ «աստուածագործ մշակութիւն»:

Հ[այր] Ա[կինյան] փորձում է հերքել մեր տեսակետը Հռիփսիմյանց հատվածի վերաբերյալ: Ի հարկե չի հրաժարում այստեղ ևս նորանոր և անհանդուրժելի սրբագրություններ առաջարկելուց: Արդյա ուղղում է Աբրահամ, Կամռվեղ՝ Սամուել, որպեսզի նույնացնի 607 թվին հիշված վանաց երեցների հետ: Զանազանություն չէ տեսնում Եզնիկի և Սեբեոսի խնդրին հայող պատմվածի մեջ: Սեբեոսի՝ 28-րդ տարին Խոսրովի, ուզում է հաշտեցնել Եզնիկի՝ 29-րդ տարու հետ, մեկը՝ շինության սկիզբը համարելով, մյուսը՝ ավարտումը: Եվ այնքան միամիտ է, որ կարծում է, թե Հռիփսիմյանց տաճարի նման մի շենք կարելի է ավարտել «գրեթէ յընթացս մէկ տարւոյ», և այն էլ Երևանի դաշտում ուր տարվան մեջ հազիվ 5-6 ամիս նպաստավոր է շինության համար: Թվերի տարբերությունը այստեղ նույն տեսակի է ինչ որ նկատվում է Սեբեոսի և «Գիրք թղթոցի» տվյալների մեջ 607 թվի ժողովի մասին: Ըստ «Գիրք թղթոցի» ժողովը կայացել է Խոսրովի 17-րդ տարին, մինչդեռ Սեբեոսի ասելով, Սմբատ, որի հրամանով ժողովը գումարվել էր, վերադարձել է Պարսկաստանից 18-րդ տարին: Թեթև անճշտություններ են: Հարկավ, կարելի է, թերևս, ԺԷ և ԺԸ սրբագրել մեկը մյուսով, բայց դժվար է նույնն անել ԻԸ և ԻԹ նկատմամբ: Վերջապես եթե մեկը հիշում է շինության սկիզբը, մյուսը՝ վերջը, ինչպես կարծում է հ. Ա[կինյան] սրանով վերանում է հակասությունը, բայց ո՛չ աղբյուրների տարբերությունը, թո՛ղ որ հ. Ա[կինյանի] մեկնությունն ինքնին չէ համապատասխանում իրականության:

Եզնիկի՝ «խառնակք յօդից» բնավ նույնանիշ չէ Սեբեոսի՝ «յօշեալ ի միմեանց»-ի, այլ բոլորովին հակառակը: «Խառնակք» բառի իմաստը պարզելու համար պետք է դիմել սուրբգրենական հետևյալ տեղերին: Պողոս Առաքյալ համեմատում է եկեղեցին մարդկային մարմնի հետ ուր զանազան մասեր ներդաշնակորեն շաղկապված՝ կազմում են մի միություն. «ամենայն մարմին յաւդիւք եւ խաղալեօք տարաբերեալ եւ խառնեալ աճէ»[2], ուր խառնյալ = հույն $συμβιβαζόμενον$ դարձեալ, «ամենայն մարմին յօդեալ և պատշաճեալ ամենայն խաղալեօք տարբերութեան»[3]: Այստեղ

[1] Կորյուն, էջ 47:

[2] Կող., Բ, 19:

[3] Եփ., Դ, 16:



պատշաճյալ = նույն $συμβιβαζόμενον$. Ոսկեբերան իր մեկնության մեջ առաջին դեպքում գործ է ածում՝ «ընդ միմեանս յարեալ»[1], երկրորդ՝ «հաստատեալ»[2]. Եփրեմ ևս ունի հաստատել[3]: Նույն իմաստը բառիս տեսնում ենք նաև Եզեկ, ԻՁ, 11, «և արասցես օդս պղնձիս յիւուն և խառնեսցես զօղսն ընդ ճարմանդսն և կցեսցես զփեղկսն և եղիցին մի»: Ընդգծված բառերը հոմանիշ են և թարգմանություն միևնույն հույն բառի՝ $συνάφεις$: Ասել է, թե «խառնակք յօդից ողջ և անքակ» նշանակում է՝ «խառնումն մարմնոյն յօդիւք կայր ողջ և անքակ». ուրիշ խոսքով, Հռիփսիմեի մարմինը քայքայված չէր, և հանդերձն անգամ չէր փտել:

Սեբեոս աչքի առջև ունի Ագաթանգեղոսի՝ «յօշէին զնա անդամ անդամ»[4] և ասում է որ Կոմիտաս «ոչ համարձակեցաւ բանալ» տապանը, այլ բավականացավ «կնքել իւրով մատանեաւ» Ս. Գրիգորի և Ս. Սահակի նման: Մինչդեռ Եզնիկի «նովին հանդերձով» ակնարկ է Ագաթանգեղոսի մի ուրիշ տեղիքի, ուր Ս. Գրիգոր «զմի մի իւրաքանչիւր ի սրբոցն առեալ յիւրաքանչիւր արկեղ դնէր՝ իւրաքանչիւր հանդերձով»[5]: Եզնիկ ոչ միայն տեսել է, այլև շոշափել իր ձեռով, որ մարմինը ողջ և անքակ էր ուստի և ասում է՝ «արդեօք անհաւատալի թուիցի զկնի մեր եկելոց»: Եթե միայն տապանը շոշափած լիներ, ինչպես կարծում է հ. Ակինյան, զարմանալու ի՞նչ կար հետնորդների համար:

Բացի սրանից Սեբեոս չգիտե, որ Կոմիտասի օրով Հռիփսիմեի վանահայրն էր Կամռվեղ: Հ[այր] Գաթըրճյան ուզեցել է ուղղել Սամուել, երևի, ինչպես նկատել էինք, ենթադրելով, որ 607 թվին ժողովին ներկա Սամուելն է, Հռիփսիմեի վանահայր: Այստեղից հ. Ա[կինյան] նոր եզրակացություններ է հանել, և նոր ավերածո սրբագրություն կատարել Եզնիկի բնագրի մեջ: Սակայն Կամռվեղ հաստատապես այլ անձ է, քան Սամուել: Հայտնի է Կոմիտասի արձանագրությունը. «Ես, Կոմիտաս, եկեղեցապան Սրբոյ Հռիփսիմէի, կոչեցայ յաթոռ Սրբոյն Գրէգորի. շինեցի զտաճար սրբոց վկայիցս Քրիստոսի»: Սամուել Կոմիտասից առաջ էր վանահայր Ս. Հռիփսիմեի, 607 թվին, իսկ Կամռվեղ նրա հաջորդն է նույն պաշտոնում, 618 թվին: Անունն օտարոտի է: Հավանորեն նույնն է, ինչ որ Ս. Գրքից հայտնի Կամուել կամ Կամիշոյ-ի («յարեաւ Ցիսուս») պես մի անուն:

[1] Ոսկեբերան, էջ 593:

[2] Անդ, էջ 792:

[3] Եփրեմ, էջ 148:

[4] Սեբեոս, էջ 107:

[5] Ագաթանգեղոս, էջ 394:

Արդլա անունը ևս ուղղելու չէ Աբրահամ, ինչպես իրեն թույլ է տվել հ. Ա[կինյան]: Ձեռագիրը շատ պարզ է և ոչ մի կասկածի տեղիք չէ տալիս: Վերջին տառի մի ստեղն մաշված է և ճորոգող լրացրել է այնպիսի զգուշությամբ, որ ստեղն կետի նման է: Հ[այր] Ա[կինյան] հայ եկեղեցական անունների մեջ չի գտել Արդլա, ուստի և սրբագրելու պետք է տեսել: Այս բնավ բանավոր պատճառ չէ: Արիստղոմ անունն ևս չի պատահում ո՛չ եկեղեցական և ո՛չ աշխարհական անունների մեջ: Բայց ահա այդ անունն երևան է գալիս Անիի 622 թվի արձանագրության մեջ, ուրեմն մեր Եզնիկ Երեցի օրով: Արիստղոմ սխալմամբ Աբրահամ են կարդացել շատ շատերը և այդպես էլ տեսնում եմ հ. Գարեգին [Հովսեփյանցի] «Քարտեզ հայ հնագրության» աշխատության մեջ, բայց ստույգ ընթերցումն է Արիստղոմ: Ուրանա՞նք, ուրեմն, արձանագրությունը և կամ սրբագրե՞նք Աբրահամի: Արդլայի գոյություն հայոց մեջ Շմուելի և Բրքիշոյի դարում զարմանալի չէ, մանավանդ որ հասարակ անուն չէ: Ասորական Արդլահայի սղումն է. իսկ Արդլահան երեց էր, որ նահատակվեց Արդիշո և Արդա եպիսկոպոսների հետ 374 թվին: Սրանք ընդունված են և մեր «Յայսմաւուրք»-ներում և մինչև անգամ հին օրացույցներում:

Հ[այր] Ա[կինյան] միայն Արդլա անունը չէ սրբագրել, այլ մի ամբողջ նախադասություն, աղավաղելով բնագիրը:

Եզնիկ Երեց պատմում է *Հռիփսիմյանց նշխարների բացումը* Ս. Սահակի օրով և կնքում իր խոսքը ասելով. «եւ եղև այս ի յամս Արդլաի վանաց երիցու սրբոյ ի Վաղարշապատ քաղաքի (:) մինչև յաւուրս Կոմիտասայ, Սրբոցն Հռիփսիմեանց սպասաւորի»[1] և այլն: Փակագծի մեջ առած վերջակետին նշանակություն տալով, կարծել էինք, որ նախադասությունն այդտեղ վերջանում է: Այժմ տեսնում ենք, որ վերջակետը ջնջելու է: Պատմածը տեղի է ունեցել նախքան Կոմիտաս, որի օրով պատահած նույնանման դեպքը պիտի պատմե, այն է նշխարների վերստին բացումը տաճարի վերաշինության ժամանակ, երբ Հոհանիկ վանահայր էր կաթողիկեի և Կամովեղը՝ Հռիփսիմեի:

Ամեն ինչ կանոնավոր է և անկարոտ մեկնության:

Սակայն հ. Ա[կինյան] ուզում է անպատճառ Արդլա կարդալ Աբրահամ որպեսզի նույնացնի նրան 607 թվի Աբրահամի հետ: Այս ձախորդ միտքը տանում է նրան դեպի մի նույնպես ձախորդ բնագրային շեղումի, որպես թե

[1] Հ[այր] Ա[կինյան] բերում է Հովհաննես Կաթողիկոսի անունը կրող ցուցակից. «Տէր Կոմիտաս... ի շինուածէ վկայարանի Սրբոյն Հռիփսիմէի»: Զարմանալի է, որ սրբագրության այնքան սիրահար բանասերը չէ նկատել, որ շինուած սրբագրելու է շինող:



«եւ եղեւ այս ի յամս Արդլայի» է սկիզբը Կոմիտասի հատվածը. և հետևապես Արդլա՝ խեղաթյուրված Աբրահամ էր երեց կաթողիկեի՝ Կոմիտասի ճորոգության ժամանակ:

Սակայն կասկածից դուրս է, որ «եւ եղև այս»-ը վերաբերում է Սահակի հատվածին և ոչ Կոմիտասի: Վերջինիս օրով կաթողիկեի վանահայրը Հոհանիկ էր և ոչ երևակայական Աբրահամ: Այս իր հակասությունը վերացնելու համար հ. Ա[կինյան] հայտարարում է, որ Աբրահամ մեռել է 618-619 տարիների ընթացքին եկեղեցու շինության ավարտելեն առաջ: Իսկ 616-617 թթ., այսինքն՝ Խոսրովի 28-րդ տարին, ուրեմն Աբրահամը տակավին կենդանի էր, մինչդեռ, ըստ Սեբեոսի, այդ տարին կաթողիկեի վանահայրը Հոհանիկն էր:

Այս կարգի սրբագրությունները հարգել չենք կարող և կարծում ենք, որ ազատությունն էլ իր որոշ սահմանն ունի և պիտի ունենա:

Եզնիկ և Սեբեոս քաղել են ըստ հ. Ա[կինյանի] իրենց հաղորդագրությունը Հռիփսիմեի մասին Վրթանես Քերթողի գրվածքից: Եզնիկ պատմում է որպես ականատես և ուրեմն անկախ է որևէ աղբյուրից: Բացի սրանից կասկածով ենք վերաբերում, որ Վրթանես Քերթող այդպիսի մի գործ ունենար, որովհետև Վրթանես մեռած էր Կոմիտասի կաթողիկոսանալուց առաջ: Մեր այս մտքի դեմ խոժոռում է հ. Ա[կինյանը] և ապացույցներ պահանջում: Վրթանես տեղապահ էր Մովսեսի մահվանից հետո և իր ժամանակի ամենակարկառուն դեմքը հայ եկեղեցականության մեջ: Առաջինն է, որ հավաստիորեն կրում է Քերթող՝ այնքան բովանդակալից անունը, որ վկայում է իր բարձր գիտությունը: Անվհեհեր ճակատեց քաղկեդոնականների վտանգավոր հորձանքի դեմ, որոնց գլուխն էր փառատենչ և ուխտազանց Կյուրիոն, պաշտպանեց հայրենի ավանդները հայրապետական աթոռի թափրության ժամանակ: Վաստակավոր դեմք էր և միակ արժանավոր թեկնածու Լուսավորչի գահին: Երբ 607 թվին չընտրվեց, պատճառը Սմբատ Բագրատունի իշխանի հաշտարար քաղաքականությունն էր: Անջատականներին մոլորությունից հետ բերելու համար Սմբատ մեկուսացրեց Վրթանեսին, որպես պայքարի մեջ շեշտված հակառակորդների կողմնե անընդունելի անձն, և ընտրել տվեց Աբրահամի պես անգույն եկեղեցական: Վրթանես մնաց իր դիրքում, որպես խորհրդական և՛ Սմբատի և՛ Աբրահամի: Հարկավ, Սմբատի հույսերը չարդարացան, անջատականները, արտաքին ուժերի ազդեցության տակ, ընտրեցին մի այլ կաթողիկոս: Սմբատ Պարսկաստան կոչվեց: Միության գործը ձախողեց: Վրթանես հիշվում է վերջին անգամ Աբրահամի ընտրությունից մի տարի հետո 608 թվին: Այնուհետև ոչ մի լուր: Հովհաննես Մամիկոնյան պատմում է, որ Աբրահամ ուղարկեց Կյուրիոնի մոտ միության գործով Կոմիտասին: Աբրահամ

կաթողիկոսը մեռավ 610-611 թվին երեք թե չորս տարի իշխելուց հետո (ԻԳ տարին ուղղելու է Գ կամ Դ): Կոմիտասի երևան գալը մի դերում, որ պատկանում էր տարիներն ի վեր Վրթանեսին, ներշնչում է այն միտքը, որ Վրթանես այլևս չկար, թողել էր այս աշխարհը: Երուսաղեմի գրավումից հետո 614 թ. պարսկական արքունիքում մեծ ժողով գումարվեց դավանաբանական խնդրի շուրջ: Հայոց եկեղեցու կողմից ներկա էին Կոմիտաս և Մատթեոս եպիսկոպոսները: Դարձյալ Վրթանես չկա, մի լուսավոր գլուխ, որ իր փորձառությամբ և տեսական պատրաստությամբ ամենեն որակյալն էր ներկայացնելու Հայ եկեղեցին միջազգային մի կաճառում, որպիսին էր Տիզբոնի ժողովը: Կասկածը, որ Վրթանես մեռած էր, նոր ուժ է ստանում: Վերջապես հայրապետական գահը 610/611 հետո քանի մի տարի թափուր է մնում և Կոմիտաս ընտրվում է մեր հաշվով 616-617 թվին: Նորեն Վրթանես չկա: Այս դիտողությունները իրավունք են տալիս մեզ ասելու, որ Վրթանես մեռած էր Կոմիտասի ընտրութենեն տարիներ առաջ (5): Կարծեմ հ. Ա[կինյանը] չէ արգիլել մեզ մեկնել երևույթները, ինչպես մենք ենք հասկանում և լուսաբանում առանց սրբագրական ավերումների և այլ կարգի բռնությունների:

Վերջացրինք մեր ասելիքը: Հ[այր] Ա[կինյանի] «Պատասխան»-ի մեջ դժբախտաբար չգտանք և ոչ մի առողջ կետ, որ մեր միտքը հանգչեր տեսնելով մի քան ճշտված, մի թյուրիմացություն վանած, մի սխալ ուղղված: Սխալաշատ գրություն, որպիսին արժանի չէր ուշադրության, որ մենք հատկացրինք և հատկացրինք միմիայն հարգելով, ինչպես միշտ, հեղինակի անձը, որ արտակարգ տոկունությամբ և սիրով աշխատում է այն դաշտում, որ մեզ այնքան մոտ է: Այդ հարգանքն է, որ թելադրում է մեզ և մի վերջին նկատողություն: Հ[այր] Ա[կինյան] հայտարարում է, որ «դասական լեզվի նկարագիրը նկատելու և անոր առանձնահատկությունները զգալու համար, քաղցրությունն ճաշակելու համար, հարկ է ապրած ըլլալ դասական մատենագրության մեջ, սնուցած ըլլալ քիմքը դասական ճաշակով: Պահանջք մը, առանց որո անկարելի է զանազանություն դնել դասական և ոչ-դասական լեզուներու մեջ և որ Ն. Ադոնց չէ հետաքրքրված դասական լեզվով: Կա վարդ հոտավետ, նվազ հոտավետ և առավել հոտավետ, տարբերությունը տեսությամբ չենք կրնար դատել, վարժ հոտառությունը միայն կզգա»:

Արդ, մեր կարծիքով, այս հայտարարությունը ամենատխուր հանձնաբարականն է, ցավալի վկայական, որ մի բանասեր կարող է ինքն իրեն տալ: Մխիթարյան հայկաբանության լուսափայլ աստղերը, սկսած «Հայկազեան Բառգրքի» անմահ հեղինակներից, նույնպես սրած էին իրենց քիմքը, ոչ պակաս, քան հ. Ակինյան, դասական վարդեր հոտոտելով: Բայց և այնպես Եղիշե, Խորենացի, Փիլոն, անգամ Զենոբ համարում էին V դարու գրիչներ:



Մեր ժամանակ, հայր Հացունի, որ գուցե ավելի, քան հ. Ա[կինյան] սերտել է Ոսկեբերանի և Եփրեմի մեկնությունները, նյութեր քաղելով իր ուսումնքների համար, ահա, լեզվական արգելք չէ տեսնում Խորենացին V դարում թողնելու:

Ավելի լավ է թողնել քիմքը, չվստահանալ հոտառության: Քիմքը աղբյուր է քմահաճության: Ընտրենք այլ ուղեցույցներ, և առաջնորդվինք այլ սկզբունքներով:

# ԱՄՊԵԼԻՈՍ՝ ՔԵՐՍՈՆԻ ԵՊԻՍԿՈՊՈՍ

**(Հայկական «Գիրք թղթոցի» քննադատության շուրջ)**

Հայոց եկեղեցու պատմության վերաբերյալ նամակային վավերագրերի ժողովածուն, որը կոչվում է «Գիրք թղթոց», հին հայկական դպրության այն հուշարձաններից է, որի նշանակությունը գնահատվեց գիտական աշխարհում նրա տպագրությունից (1) անմիջապես հետո (2): Ճիշտ է, իր բովանդակությամբ այդ հուշարձանը ոչ մի նոր բան չի ներկայացնում, քանզի դրանում ընդգրկված դրվագները, հազվագյուտ բացառությամբ, հայտնի էին ուրիշ ձեռագիր հավաքածուներից, բայց և այնպես այն կարևոր է հենց որպես հավաքական աշխատություն: Այստեղ մենք տեսնում ենք, թե ինչ վավերագրեր, ինչ երկեր են հայերի կողմից համարվել առավել հեղինակավոր ու վճռորոշ՝ եկեղեցական դավանաբանության բարդ հարցերը մեկնաբանելիս:

Քննադատությունը, թվում էր, պետք է անդրադառնար հիշյալ ժողովածուին ամենից առաջ որպես այդպիսին, անմիջական խնդիր ունենալով որոշել նրա նախնական ծավալը և հետևել նրա հետագա աճին: Իրական տեսքի պարզաբանումով, կպարզվեին նաև ժողովածուն կազմողի խնդիրը և մերձավորագույն նպատակը, իսկ դա կնպաստեր լավագույնս ըմբռնելու շատ վիճելի դրվագներ կամ նրանց առանձին մասեր: Հայկական դավանաբանությունը, ինչպես նաև եկեղեցական և ընդհանրապես հասարակական մտքի ուրիշ դրսևորումներ, այնպիսի հարթ ու ուղիղ ճանապարհով չի ընթացել, ինչպես որ այն պատկերացնում են հայոց եկեղեցականության հին ու նոր ջատագովները: Այստեղ էլ են տեղի ունեցել ոլորապտույտներ ու թեկումներ, և առավել, քան որևէ մեկ այլ բնագավառում: Հետագա դարերի տրամադրություններն ու միտումները հաճախ են արտացոլվել վաղուց ի վեր անցած-գնացած ժամանակների իրերի դրության վրա, և հայրենի բարեպաշտության նախանձախնդիրը դիտավորյալ կամ անգիտակցաբար ուղղումներ է մտցրել հնության մեջ, նորովի հասկանալով, ուստի և աղավաղելով հինը:

«Գիրք թղթոցը» չի խուսափել այդ ճակատագրից. այն ոչ միայն աճել է ըստ ծավալի, այլև դրա առանձին հոդվածներ զերծ չեն մնացել կողմնակի ձեռքերի միջամտությունից: Նախնական ծավալի հարցը լուծվում է առանց դժվարության: Կոմիտաս կաթողիկոսի հավատի մասին գրվածքի վերջում



պահպանված գրառումն այն մասին, որ «Գրիգոր Վկայասերի ձեռագիրն ավարտվում է այստեղ»[1] պետք է հասկացվի ոչ թե այն իմաստով, իհարկե, որ հայրենի դպրության նշանավոր երկրպագուն իր տրամադրության տակ ունեցել է «Գիրք թղթոցի» պակասավոր ձեռագիր: Այդ գրառումը նշանակում է, որ Գրիգորի օրոք դեռևս մեր ժողովածուն ազատ է եղել Կոմիտասի նշված գրվածքից հետո եկող բոլոր հետագա հոդվածներից: Ինչ վերաբերում է ժողովածուի սկզբում տեղադրված դրվագներին, ապա դրանցից Սահակի և Պրոկղի գրագրությունը հազիվ թե վերաբերի սկզբնական խմբագրության կազմին. իսկ երկու քրիստոսաբանական կշռադատությունները, որոնք վերաբերում են Մովսեսին և Հովհանին, անկասկած, ավելի ուշ են մուծվել ժողովածուի մեջ: Նշված մասերը բացառելով, «Գիրք թղթոցում» մնում են վավերագրեր, որոնք վերաբերում են Հայոց եկեղեցու հարաբերություններին երկու հարևան եկեղեցիների՝ ասորականի և վրացականի, հետ: Այդ վավերագրերում քննարկվում են հայկական դավանաբանության զարգացման պատմության մեջ երկու՝ մեկը մյուսին հաջորդող պահ՝ պայքարը նեստորականության դեմ և պայքարը քաղկեդոնականության դեմ:

Կարելի՞ է արդյոք վստահել այդ վավերագրերին: Արդյո՞ք դրանք ժողովական հեղինակություն վայելող վավերական այն սահմանումներն են, որոնց հավակնությունը ունեն: Մանրակրկիտ դիտարկումները որոշ դեպքերում հանգեցնում են հուսախաբությունների և հարկադրում են վերաբերվել դրանց հարկ եղած զգուշությամբ:

Հայ-ասորական հարաբերությունների պատմության վերաբերյալ մեր ժողովածուում եղած վավերագրերից շատ կարևոր են երկու ուղերձ: Դրանք երկուսն էլ, առավել հնագույնները, ծագել են Բաբկեն [Ա Ոթմսեցի] կաթողիկոսի օրոք կայացած Դվինի առաջին ժողովից, և երկուսն էլ ուղղված են ասորական կամ, ավելի ճիշտ, պարսից հավատակիցներին: Երկրորդ ուղերձում հիշատակվում է Քերսոն քաղաքի ոմն եպիսկոպոս՝ Ամպելիոս անունով: Այդ եպիսկոպոսի անձնավորությունը առայժմ հայտնի չէ այլ աղբյուրներից: Չգիտես ինչու, հետազոտողները լռելյայն շրջանցում են նրան: Այն աշխատություններում, որտեղ քննարկվում են հայ-ասորական հարաբերությունները ըստ մեր հուշարձանի տվյալների, հիշյալ անձնավորությունը պարզապես անտեսվում է[2]: Մինչդեռ եպիսկոպոսի անձնավո-

[1] «Գիրք թղթոց», էջ 219:

[2] Հարցի վերաբերյալ հատուկ աշխատության հեղինակ Ե. Տեր-Մինասյանը ոչ մի խոսք չի ասում Ամպելիոսի մասին և իր աշխատության հավելվածում, որտեղ տրվում են Բաբկենի առաջին ուղերձի և հետագա գրագրության թարգմանությունները, նա բաց է թողնում երկրորդ մեզ հետաքրքրող ուղերձը («Die armenische Kirche in ihren Beziehungen zu den syrischen Kirchen bis zum Ende des 13. Iahrhunderts». Leipzig, 1904).

րության բացահայտումը, որի հեղինակությունը վկայակոչում են հայոց հոգևոր պետերը, կարող էր լույս սփռել քննարկվող ուղերձի էության վրա:

Երկրորդ ուղերձը, առաջինի պես, հետևանք է պարսից քրիստոնյաների կողմից հայերին ուղղված դիմումի և գրված է հակոբիկյան երեց Սիմեոնի երկրորդ անգամ հայտնվելու առիթով՝ նույն հականեստորական առաքելությամբ: Հայոց եկեղեցաժողովը կաթողիկոսի գլխավորությամբ երկրորդ անգամ հանդես է գալիս հակոբիկյանների պաշտպանությամբ նեստորականության դեմ նրանց պայքարում, և, դատապարտելով, համաձայն «Նիկեայի ժողովի» որոշման, Նեստորի և նրա հետևորդների սուտ ուսմունքը, դիմում է մեծն Ամպելիոսի հեղինակությանը.

«Եւ փախչիմք ուրացեալ զ՚ի Քաղկեդոնին ստութիւն Նեստորի և այլոցն նմանից, զոր գիտեմք կեղծաւորութեամբ փախուցեալ ի հեթանոսութենէ և ի հրէական մոլութենէ, և զնոյն խոստովանին զհեթանոսութիւն, միանգամայն և զհրէութիւն, <ի> պատրել ի մոլորութիւն զմիտս անմեղաց՝ որ է տգիտաց, վրիպեցուցանելով ի ճանապարհէ զկոյրս, որով սահմանեցաւ ի սրբոյ Հոգւոյն մարգարէիւն հաւուցումն նոցին, զոր<ս> սուրբ հարքն միաբանութեամբ իւրեանց ի Նիկեա յանդիմանեալ, խզեցին զընթացս չար խորհրդոց նոցա, ի սրբոց գրոց նզովելով զՆեստորիոս և <զ>Արիոս և զԴիոդորոս և զԹէոդորեաոս և զԵւտիքոս և զՊաւղոս Սամուսատցի, և զնմանս նոցին, որ խառնակութիւն զանգուածոյ զմարդանալն Քրիստոսի ասել իշխեցին, իբրև զլոկ մարդ, ո՛չ կատարեալ Աստուած ի մարմնի կատարելում:

Զոր և մեծն Ամպեղիս եպիսկոպոս Քերսոն քաղաքի, ճշմարիտ հաւատոյ սիրաւղ և սպասաւոր, գրեաց ճշտիւ ճշմարտապէս, յորում փութացեալ ոչ վերջացաւ: Նմին գրոյ նախանձաւոր լեալ երէցն բարեպաշտ Անատոլիս Կոստանդիանուպալսի, վկայեալ սրբոյ եպիսկոպոսի Ամպեղի գրոյ, յաւելուած սրբոյ Երրորդութեանն ոչ գիտացեալ՝ զ ՚ի սրբոյ կուսէն զծնունդն Որդւոյ, այլ զնոյն ինքն Աստուած և Բան մարդացեալ անախտաբար մնաց նոյն, որ յառաջ քան զյաւիտեանս երկրպագի ընդ Հաւր և ընդ սուրբ Հոգւոյն:

[Ճշմարտապէս գրեաց սուրբ քահանայապետն Քերսովնացւոց Ամպեղիս, հանդերձ երկոտասան գլխովք Կիւրղի եպիսկոպոսի երանելւոյ. ի նոյն յարելով և զթուղթն Զենոնի բարեբանելոյ թագաւորին Հոռոմոց, ստուգութեամբ վկայեաց երէցն աստուածասէր Անատոլիս»][1]:

Ուղերձի վերջում կարդում ենք.

«Եվ վասն թղթոյն սրբոյ Ամպեղի եպիսկոպոսի, և Անատոլեայ [երէցու], հրամայեցաք աստ գրել»[2]:

[1] «Գիրք թղթոց», էջ 49:

[2] Անդ, էջ 51:



Այդ նշումի իմաստը, ըստ երևույթին, այն է, որ ուղերձին կից եղվում են նաև Ամպելիոս եպիսկոպոսի և Անատոլիոս երեցի նամակների պատճենները:

Սույն վավերագրերով զբաղվող գիտնականները, կրկնում ենք, ուշադրություն չեն դարձրել այստեղ հիշատակվող անձնավորությունների վրա և ճեղություն չեն կրել պարզելու նրանց ինքնությունը: Համապատասխան գրականության մեջ մեր փնտրտուքը չհանգեցրեց դրական արդյունքների: Պետք է ենթադրել, որ այդ անձնավորությունները, որոնց վկայակոչում են հայոց հոգևոր պետերը, իրենց հեղինակությամբ հայտնի էին ոչ միայն հայերին, այլև նրանց հակառակորդներին: Նրանք պետք է բարձր հռչակ վայելեին եկեղեցական աշխարհում ընդհանրապես, որպեսզի նրանց վկայակոչումը որևէ կշիռ ունենար այսքան սուր և վիճելի մի հարցում: Եթե Ամպելիոսը և Անատոլիոսը լինեին տեղական գործիչների թվից, ապա կարելի էր ենթադրել նրանց հանրահայտ լինելը գոնե իրենց բնակավայրերում, լիովին անծանոթ լինելով հանդերձ հայրենի սահմաններից դուրս: Բայց Ամպելիոսը անվանվում է Քերսոնի եպիսկոպոս. ուստի, նա գործում էր հայկական աշխարհից հեռու. իսկ եթե հայերը հենվում են նրա հեղինակության վրա, ապա համենայն դեպս հայերը չեն նրա փառքի ստեղծողները և միայն նրանք չեն նրա գիտելիքների գնահատողները: Ակնհայտ է, որ Ամպելիոսը այն անձանցից է, որոնք անուն են հանել ընդհանուր եկեղեցական կյանքի թատերաբեմում: Ո՞վ կարող էր լինել նա:

Քերսոն քաղաքի անունը կարող է ծառայել իբրև մի ընդհանուր կետ, որը հարազատացնում է փնտրվող եպիսկոպոսին Քերսոնի նշանավոր վտարանդու՝ Տիմոթեոսի, հետ: Ականավոր մարտնչող, միաբնակության սյուն Դիոսկորոսի զինակից, վերջինիս մահից հետո նա կանգնեց ի պաշտպանություն նրա ուսմունքի՝ հավատարիմ հետևորդի կրքոտությամբ: Թե կյանքի ինչ փոթորիկներ ու ցնցումներ ապրեց նա իր անձնվնության պատճառով, քաջ հայտնի է նրա կենսագրությունից: Կոստանդնուպոլսի եկեղեցին տեսնում էր վտանգավոր հակառակորդի և ահեղ թշնամու ի դեմս Տիմոթեոսի և դրա համար զինվեց նրա դեմ պայքարի ու հալածանքների բոլոր միջոցներով, ընդհուպ մինչև նրա՝ կայսեր հրամանով վտարվելը: Գենադիոս պատրիարքի օրոք նա իր ուսուցչի Դիոսկորոսի նման աքսորվեց Գանգրա[1], բայց թշնամիները չբավարարվեցին դրանով, և, որպեսզի վերջնականապես կասեցնեն նրա ազդեցությունը եկեղեցական կյանքի վրա, Գանգրայից նետեցին հեռավոր Քերսոն, «մի երկրամաս, որ բնակեցված էր բարբարոսներով և անկիրթ մարդկանցով»[2]: Աքսորում Տիմոթեոսը

[1] «The Syriac chronicle known as that of Zachariah of Mitylene», IV, 7, p. 74.

[2] Անդ, IV, 11, էջ 79:

ամբողջապես տրվեց գրական գործունեության. իր անձնական ու գաղափարական հակառակորդների դեմ պայքարի այլ միջոցներ չունենալով, նա հաճդես էր գալիս նրանց դեմ գրչով: Նրա աշխատություններից մեկը և, ըստ երևույթին, գլխավորը, «Հակաճառութիւն առ սահմանեալսն ի ժողովոյն Քաղկեդոնի», հնում թարգմանվել էր հայերեն և վերջերս հրատարակվեց շնորհիվ Էջմիածնի միաբանության երկու գիտնական միաբանների ջանքերի[1]:

Թե ինչ նշանակություն ուներ Տիմոթեոսի նշված աշխատությունը հայ եկեղեցական կյանքում, բավարար չափով շեշտված է նրա հրատարակիչների կողմից առաջաբանում: Այդ կատաղի հակաքաղկեդոնականի ազդեցությունը Հայոց եկեղեցու գործիչների ու գրողների վրա պարզաբանելը մի հարց է, որ հատուկ հետազոտություն է պահանջում: Համենայն դեպս, անժխտելի է, որ հայկական ուղղափառության մշակման ժամանակաշրջանում հայոց եկեղեցական միտքը գտնվում էր Տիմոթեոսի գաղափարների ուժեղ ճնշման տակ (3): Նրա աշխատությունը փաստարկների անսպառ աղբյուր է Քաղկեդոնի ժողովի դեմ. այս երկին էին դիմում հայ դավանաբանները վկայակոչելով այս կամ այն եկեղեցական հորը և հաճախ նրանց գիտեին միայն ըստ Տիմոթեոսի: Ահա թե ինչու մեզ թվում է, որ խնդրո առարկա Ամպելիոս եպիսկոպոսի անվան տակ թաքնված է Տիմոթեոսի անձնավորությունը: Հետաքրքիր է, որ Ամպելիոսը ուղերձում անվանված է Մեծ: Ինչպես հայտնի է, Տիմոթեոսն իր գործունեությամբ այնպիսի նշանակություն էր ձեռք բերել ժամանակակիցների աչքում, որ արժանացել էր Մեծ մականվան[2]: Քերսոնացի մակդիրը, ինչպես նաև Անատոլիոս երեցի անունը մեզ ուղղում են Տիմոթեոսի կողմը՝ Ամպելիոսի անձնավորությունը փնտրելիս: Այստեղ հիշատակվող Անատոլիոսը, անշուշտ, այն երեցն է, որը Տիմոթեոսի հետ միասին գտնվում էր Դիոսկորոսի մոտ Եփեսոսի ժողովում, և որի մասին Տիմոթեոսը հետևյալ կերպ է արտահայտվում իր աշխատության մեջ:

«Նոյն աւրինակ և որք առ երկրորդաւն յԵփեսոս ժողովովն, պետաւորելով այսմիկ երիցս երանելւոյ հաւր մերոյ և եպիսկոպոսապետի և խոստովանողի Դիոսկորոսի, ընդ որում առընթեր էաք յայնժամ ես իսկ և երանելի իմ եղբայր Անատողիոս երէցն»[3]:

[1]«Տիմոթէոսի եպիսկոպոսապետի Աղէքսանդրեայ Հակաճառութիւն առ սահմանեալսն ի ժողովոյն Քաղկեդովնի», Կարապետ վ. և Երվանդ վ., Էջմիածին, 1908:

[2] «The Syriac chronicle», IV, 1, 4, pp. 22, 63 և այլն:

[3] «Տիմոթէոսի հակաճառութիւն...», էջ 35:



Այս խոսքերից երևում է, որ Անատոլիոսը ոչ այլ ոք է, եթե ոչ իր՝ Տիմոթեոսի հարազատ եղբայրը: Զաքարիայի մոտ պահպանված իր նամակներից մեկում նույնպես Տիմոթեոսը հիշատակում է Անատոլիոս երեցին և անվանում է նրան իր եղբայր[1]:

Եվ այդպես, եթե մեծ եպիսկոպոսի տակ պետք է հասկանալ Տիմոթեոսին, ապա ինչո՞ւ է նա կրում Ամպելիոս անվանումը: Ճիշտ է, մեր տեքստը շատ եղծված է, բայց հազիվ թե հնարավոր լինի սրբագրությամբ Ամպելիոսը վերածել Տիմոթեոսի: Ըստ երևույթին, այստեղ աղավաղում է տեղի ունեցել թյուրիմացության հողի վրա:

«Գիրք թղթոցում» կա Պետրոս Ալեքսանդրիացու գրագրությունը Ակակիոս Կոստանդնուպոլսեցու հետ: Նամակներից մեկում (Պետրոսից առ Ակակիոս), ի միջի այլոց, խրատներ ենք կարդում այն մասին, որ սուրբ պատարագի ժամանակ ինչ-որ հերետիկոսների փոխարեն հարկ է ուրիշ անուններ հիշատակել:

«Յորժամ առնիցես զպատարագս նոցա, այսինքն Մարկիանոսի և Պողոքերայ ամպարիշտ թագաւորաց և Պեղինեայ և Անտեղիսեայ և Գնադիսեայ, որ յառաջ քան զքեզ եպիսկոպոսք էին հերետիկոսք, և Շմաւոնի երիցու վանականի... Այսուհետև փոխանակ Պեղինէի եպիսկոպոսի հերետիկոսի մատո զպատարագն քո առաջի Աստուածութեանն վասն *Դէոսկորոսի հայրապետի որ էր յԱղէքսանդրիա*, այն որ վկայեաց յաւուրս Մարկիանոսի թագաւորի հերետիկոսի: Եւ փոխանակ Անտեղիսեայ եպիսկոպոսի հերետիկոսի արա զպատարագն երանելւոյն Թէոդոսի եպիսկոպոսի Երուսաղէմի... Եւ փոխանակ Գնադիոսի եպիսկոպոսի հերետիկոսի, արա՛ զպատարագն երանելւոյն Տիմոթէոսի հաւատարիմ Հաւր մերում հայրապետի Աղէքսանդրացւոյ: Եւ փոխանակ Շմաւոնի վանաց երիցու հերետիկոսի արա զպատարագն երանելի եղբաւրն Տիմոթէոսի այսինքն Անտեղիս երիցու, այն որ վկայեաց ի Գանգրա յաւուրս Լևոնի արքայի հերետիկոսի»[2]:

[1] «The Syriac chronicle», IV, 12, p. 96. V, 4, էջ 111-ում պատմվում է այն մասին, որ Տիմոթեոսը փոխադրել է Դիոսկորոսի և «իր եղբայր Անատոլիոսի» («of Anatolius his brother») աճյունները: Զաքարիայի աշխատության անգլերեն թարգմանիչը անձնական անունների ցանկում մուծում է «Anatolius, brother of *Dioscorus*» և վկայակոչում է այդ տեղը: Մինչդեռ էջ 111-ում հիշատակվող Անատոլիոսը միևնույն անձն է նրա հետ, որի մասին խոսվում է էջ 96-ում, և նա Տիմոթեոսի և ոչ թե Դիոսկորոսի եղբայրն է: Անատոլիոսի, Տիմոթեոսի եղբոր մասին հիշատակություն կա նաև հայտնի անանուն «Կայսերք Հռովմոց» ժամանակագրության մեջ՝ հրատարակված Վենետիկում՝ «Անանուն ժամանակագրութիւն յօրինեալ յէ դարու», 1904, էջ 66, 67:

[2] «Գիրք թղթոց», էջ 259:

Այդ վավերագիրը հայերեն թարգմանված է ասորերենից, ինչպես պարզ է դառնում հատուկ անունների ընթերցումից և տառադարձումից՝ Պողքերա Pulcheria, Պեղին - եայ Flavianus, Անտեղիս - եայ Anatolius, Գնադիս - այ Gennadius, Շմաւոն Simeon. Պետրոս պատրիարքը առաջարկում է թվարկված անձանց փոխարեն մեծարել Դիոսկորոսի՝ Ալեքսանդրիայի պատրիարքի, Թեոդոսիոսի՝ Երուսաղեմի եպիսկոպոսի, Տիմոթեոս Ալեքսանդրիացու և «երանելի եղբաւրն Տիմոթէոսի, այսինքն՝ Անատոլիոս երիցու, այն որ վկայեաց ի Գանգրա յաւուրս Լեոնի արքայի հերետիկոսի» հիշատակը:

Այստեղ վկայություն ունենք, որ Տիմոթեոսը Անատոլիոս անունով եղբայր ուներ: Մենք տեսնում ենք նաև, որ Անատոլիոս անունը տառադարձվում է ասորերենից հայերեն Անտեղիս ձևով: Վերադառնալով մեզ զբաղեցնող՝ անծանոթ Ամպեղիս անուն պարունակող բնագրին, մենք կարող ենք խնդրո առարկա Ամպեղիսի մեջ տեսնել Անատոլիոս անվան ասորական տառադարձումը: Այնուհետև, հարկ է ենթադրել, որ սկզբնապես տեքստում չի նշվել Քերսոն քաղաքի եպիսկոպոսի անունը, այլ ընթերցվել է «մեծ եպիսկոպոս Քերսոն քաղաքի», որով հասկացվում էր բոլորին հայտնի միաբնակության ջատագով Տիմոթեոսը: Ամպեղիս անունը (Անտեղիս-ից), որը կողմնակի ձեռքով գրառված է լուսանցքում որպես մեկնաբանություն կամ համարժեք Անատոլիս անվան, հետագայում մուծված էր տեքստի մեջ, ընդորում այն սխալմամբ վերագրված է Քերսոնի եպիսկոպոսին, մի սխալ, որն առավել քան հասկանալի է, քանի որ եպիսկոպոսի անունը տեքստում չի եղել և ենթադրվել է, որ պատահաբար բաց թողնված անունը նշվել է լուսանցքում: Քննարկվող հատվածում Ամպեղիսը հանդիպում է մի քանի անգամ, բոլոր դեպքերն էլ միատեսակ կերպով հարազատ չեն, ընդմիջարկված են: Որ ուղերձի տեքստն ընդհանրապես աղավաղված է, երևում է այն բանից, որ հատվածի Ամպելիոսին վերաբերող վերջին արտահայտությունը՝ «Ճշմարտապէս գրեաց» մինչև «աստուածասէր Անատոլիոս»՝ նախորդի պարզ կրկնություն է որոշ բացահայտորեն *ժամանակավրեպային* բնույթի հավելումով: Այդ բառերի իմաստով, Ամպելիոսի նամակին Անատոլիոսը կցել է Զենոն կայսեր հրովարտակը՝ «ի նոյն յարելով և զթուղթն Զենոնի բարեբանելոյ թագաւորին *Հոռոմոց*»:

Բայց Անատոլիոսը ապրել և մահացել է Զենոնի նախորդ Լեոն կայսեր օրոք, իսկ Ամպելիոսը, եթե ճիշտ ենք նրան նույնացնում Տիմոթեոսի հետ, ավելի վաղ, մինչև Զենոնի հրովարտակի դուրս գալը: Մենք ենթադրում ենք, որ եթե ոչ ամբողջ նշված արտահայտությունը, ապա համենայն դեպս Զենոնի հրովարտակին վերաբերող խոսքերը հարկ է համարել ուշ ընդմիջարկում:



Մեր նկատած ժամանակավրեպությունը կարող է ուղղվել մեր դրույթի դեմ. եթե Ամպելիոսը և Անատոլիոսը գիտեն Զենոնի հրովարտակը, ապա մեր կռահումը նրանց նույնության մասին Տիմոթեոսի և Անատոլիոսի հետ, կորցնում է ոտքի տակի հողը, քանի որ այդ անձնավորությունները մահացել են մինչև Զենոնը: Բայց բանն այն է, որ քննարկվող ուղերձը ընդհանրապես է կրում Տիմոթեոսի ազդեցությունը, անկախ Ամպելիոսի անձնավորության հարցից: Բուն ուղերձում վկայակոչվում են եկեղեցու մի շարք հայրեր, հենց նրանք, ովքեր կազմում են Տիմոթեոսի փաստարկումների և պաշտպանության հիմքը ոչ միայն նրա հրատարակած կոթողային երկում, այլև նրա առանձին նամակներում, որոնք մեզ են հասել Զաքարիա Միտիլենացու միջոցով: Աքսորից Տիմոթեոսը խիստ շատ էր գրում Քաղկեդոնի ժողովի և Լևոնի տոմարի դեմ և ուղարկում բոլոր կողմերը: Հնարավոր է, որ դրանցից էլ կազմվել է «Հակաճառութիւնը»: Նա հետապնդում էր նեստորականներին, բայց չէր խնայում նաև եվտիքեականներին: Մի նամակում, որն ուղղված է նրանց դեմ և պահպանվել է Զաքարիայի մոտ, Տիմոթեոսը քաղվածքներ է բերում «Աթանասիոսից, Հուլիոս Հռոմեացուց, Գրիգորիոս Հրաշագործից, Բարսեղ Կեսարացուց, Գրիգոր Նյուսացուց, Գրիգոր Նազիազանցուց, Հովհանն Ոսկեբերանից, Ամբրոսիոսից, Թեոփիլոս Ալեքսանդրիացուց և Կյուրեղից»[1]: Բոլոր այդ անունները հերթով թվարկվում են նաև մեր վավերագրում՝ Իգնատիոս, Աթանասիոս, Բարսեղ Կապադովկիացի, Գրիգոր Մեծ, երկու մյուս Գրիգորները (Նյուսացին և Նազիազանցին), Հուլիոս, Ամբրոսիոս, Հովհանն, Ատտիկոս, Թեոփիլոս, Կյուրեղ, Պրոկղ և Արիստակես:

Տիմոթեոսի հիշյալ նամակում ի միջի այլոց մի քաղվածք կա Աթանասիոսի Էպիկտետոսին հղված թղթից, որում մեկնաբանվում է հենց «յաւելուածի» հարցը: Նեստորական ըմբռնմամբ, այսինքն՝ Քրիստոսի մարմնի Բանի հետ միանման բնություն ունենալը չընդունելով, երրորդության մասին հասկացությունը վերանում է, քանզի եթե Բանի մարմինը խորթ է Աստծու բնությանը, դրանով իսկ նա մի տեսակ հավելված է դառնում Երրորդությանը, և դրա հետևանքով ստացվում է ոչ թե Երրորդություն, այլ, մարմնի հավելվածով, չորրորդություն: Բուն այդ հասկացությունը արտահայտում է հայերեն «յաւելուած» բառը, որի դեմ առարկում է մեզ զբաղեցնող վավերագիրը, պնդելով, որ «Ամպելիոսը և Անատոլիոսը Մարիամից ծնված Որդուն չէին համարում հավելված Երրորդությանը, այլ նույն ինքն Աստված և Բան մարդացեալ»:

[1] «The Syriac chronicle», IV, p. 85.

Ճի՞շտ է արդյոք, որ քննարկվող թուղթը ներծծված է Տիմոթեոսի ազդեցությամբ, և եթե ճիշտ է, ապա արդյո՞ք այն բխում է Տիմոթեոսի այժմ հրատարակված երկից, թե՞ նրա որևէ մեկ ուրիշ երկասիրությունից, որը եղել է գրաբար թարգմանությամբ: Սրանք հարցեր են, որոնց ճիշտ լուսաբանումը կարևոր է ոչ միայն տվյալ թղթի համար, այլև ունի պատմագրական մեծ հետաքրքրություն: Հայերի ուղարկած թղթին կցված է եղել, ինչպես հուշակում են եզրափակիչ խոսքերը, Ամպելիոսի և Անատոլիոսի նամակը: Եթե այդ նամակի տակ նկատի ունենանք այդ անձանց որևէ մեկ այլ, մեզ չհասած երկասիրություն, ապա մեր հարուցած հարցը նշանակալիորեն կհստակեցվի: Բայց եթե խոսքը գնում է Տիմոթեոսի հայտնի աշխատության որևէ մի գլխի և ընդհանրապես դրա՝ այս կամ այն ձևով ազդելու մասին, ապա այնժամ թղթի՝ Ամպելիոսին և Անատոլիոսին վերաբերող մասերը, եթե ոչ ամբողջ թուղթը, այլևս իրենց նկատմամբ վստահություն չեն ներշնչում: Նրանք չեն կարող ճանաչվել գրական առումով հարազատ, քանի որ Տիմոթեոսի հիշյալ երկասիրության երևան գալը հայերեն թարգմանությամբ վերաբերում է ոչ միայն Բաբկեն կաթողիկոսից, այլև Ներսես կաթողիկոսից հետո ընկած ժամանակաշրջանին: Տիմոթեոսի հրատարակիչները ենթադրում են, որ «Հակաճառութիւնը» թարգմանված է հայերեն 555 թվականի Դվինի երկրորդ ժողովի ժամանակ: Էջմիածնի միաբանության անդամ Միաբանը [Գ. Տեր-Մկրչյան] հնարավոր է գտնում թարգմանությունը հասցնել 486 թվականին: Ամպելիոսի անձնավորության և Բաբկենի թղթի վրա Տիմոթեոսի ազդեցության մասին մեր դատողությունները կարծես թե ընդառաջում են Միաբանի տեսակետին և կարող էին ամրապնդել նրա եզրակացությունները: Միաբանի կարծիքը, սակայն, անընդունելի է, և ոչ այն պատճառով, որ հիմնված է մեկ տոմարական տվյալի վրա, ընդորում կասկածելի արժեք ներկայացնող (4), այլ գլխավորապես այն պատճառով, որ այն ոչ լիովին է համապատասխանում այն արդյունքներին, որոնց հասել է գիտական հայագիտությունը վերջին տասնամյակներին հայկական դպրության վաղ շրջանի գրական ուղղությունների ու դպրոցների ուսումնասիրության բնագավառում: Հունաբան թարգմանական գրականության արդյունքների մեջ այնպիսի մի բնորոշ աշխատություն, որպիսին է Տիմոթեոսի թարգմանությունը, չէր կարող ելնել ոչ միայն մինչև V դարի վերջը, ինչպես կարծում է Միաբանը, այլև նույնիսկ VI դարի կեսը պետք է ընդունել որպես փոքր ինչ վաղ, հակառակ գիտական հրատարակիչների՝ Կարապետ և Երվանդ վարդապետների պնդման: Մեր կշռադատումներով, որոնց մասին մենք կխոսենք մեկ ուրիշ անգամ, Տիմոթեոսի առկա թարգմանությունը ելնում է VI-VII դարերի սահմանածրում հայկական ուղղափառության նշանավոր պաշտպան



Վրթանեսի շրջանակից: Այդ հիման վրա մենք ենթադրում ենք, որ Ամպելիոսի մասին մեզ հետաքրքրող հատվածը թղթի մեջ կարող էր մուծվել նշված ժամանակաշրջանից հետո: Մեզ հասած տեսքով Բաբկենի ոչ միայն երկրորդ, այլև առաջին թուղթը չեն ներկայացնում նախասկզբնական խմբագրության հարազատ բնագիր: Առաջին թղթի վերաբերյալ մենք գիտենք, որ ժողովին մասնակցում էին նաև վրաց և աղվանից եպիսկոպոսները. սակայն առկա խմբագրության մեջ նրանց ստորագրությունը չկա: Աբրահամ կաթողիկոսի հստակ վկայությամբ թղթի հայերեն բնագիրը ոչնչացվել է հայոց 572 թվականի ապստամբության ժամանակ, և հայերը ստիպված են եղել թարգմանել այն հունարեն պատճենից, որը գտնվելիս է եղել Ուրհայում: Կյուրիոնին ուղղված նամակում հիշյալ կաթողիկոսը, առաջարկելով Բաբկենի օրոք տեղի ունեցած ժողովի նիստերին մասնակցած և հայերի հետ միասին Քաղկեդոնի ժողովը և Լևոնի տոմարը մերժած վրաց եպիսկոպոսների ցուցակը, ավելացնում է. «Եւ զի պայման նամակն՝ որ հայերէն գրով էր, յապստամբութեանն կորեաւ, և թարգմանեցաւ այս յՈւրհայ քաղաքի ի հոռոմ գրով. քանզի և նոքա ունէին ի մէնջ. և ստոյգ և սուրբ, որպէս արժան էր, չկարացին թարգմանել, զի են որ քաջ յայտնի են եպիսկոպոսացդ և եպիսկոպոսարանացն անուանք, և են որ կարի ի ծածուկ և այլաձևք: Բայց թէ կամիք անուամբք եպիսկոպոսացն և յաջորդաւք տեղեացն և այլաձև անուամբք եպիսկոպոսացդ՝ որպէս գրեալ են, կարէք զստոյգ անուանս եպիսկոպոսարանացն գտանել. և զայլոցն ևս, քանզի և մեք զմերս, այդ տարազու մարթացաք գտանել, և մանաւանդ թէ զպայման նամակն իսկ գտանիցէք գրով ձերով»[1]:

Այդ արտակարգ արժեքավոր հայտնությունը բավական է, որպեսզի համոզվել նրանում, որ առաջին ժողովի գործունեությունից պահպանված փաստաթղթերը չեն հառնում մինչև ժողովի իսկական արձանագրական ակտերը, և պատմական արժեք ունեն այնքանով, որքանով որ թարգմանություններ են պատճենից:

Հետաքրքիր է նշել, որ արդեն Աբրահամ [կաթողիկոսի] ժամանակներում, այսինքն՝ մեկ դար անցած Դվինի ժողովից, ժողովի զբաղմունքի բուն առարկան արդեն հասցրել էր մթագնել սերունդների գիտակցության մեջ, և հականեստորականությունը արդեն հավասարազոր էր դարձել քաղկեդոնական ըմբռնմանը: Աբրահամի կարծիքով, ժողովը մերժել էր Քաղկեդոնի ժողովը և Լևոնի տոմարը, մինչդեռ քաջ հայտնի է, որ ժողովը բացառապես ուղղված էր նեստորականության դեմ: Աբրահամի օրոք պահի շահագրգռությունը՝ պայքարն էր կայսերական եկեղեցու դեմ. և բնական է,

[1] «Գիրք թղթոց», էջ 183:

որ պայքարի մեջ ընդգրկված մարդիկ իրենց ոչ վաղ նախորդների գործերը դիտում էին ընթացիկ կյանքի պայմանների տեսանկյունից և երանգավորում էին դրանք ժամանակի թելադրած գույներով: Ահա այդ պայմանները, այդ տրամադրությունները էլ կազմեցին այն հողը, որի վրա էլ տեղի ունեցան մեր ենթադրած ընդմիջարկումները Բարկենի թղթում: Ամբողջ թղթի հարազատությունը կասկածի ենթարկելու հիմք չկա: Դավանաբանական առումով մի շատ բնորոշ դարձվածք Բարկենի թղթից բառացիորեն կրկնվում է ասորիներին հղած Ներսես [Բ Բագրևանդեցի] կաթողիկոսի պատասխան թղթում:

«Եւ երկրպագեմք հանդերձ Աստուածութեամբն զմարմնաւորութիւնն, և հանդերձ մարմնաւորութեամբն զԱստուածութիւնն»[1], համեմատիր.

«Երկրպագեմք և փառաւորեմք զԱստուածութիւնն հանդերձ մարմնաւորութեամբն, և զմարմնաւորութիւնն հանդերձ Աստուածութեամբն»[2]:

Այդ դավանաբանական բանաձևը անվիճելիորեն Ներսեսը վերցրել է Բարկենի մեր քննարկած թղթից: Ներսեսը, մեր կարծիքով, իր թղթակցության մեջ երևան չի բերում ծանոթություն Տիմոթեոսի հետ. տեղեկությունն այն մասին, որ նրա օրոք է Տիմոթեոսի գիրքը հայերեն թարգմանվել, արդեն դրանով իսկ վստահության արժանի չէ: Բայց անկախ այդ հարցից, անկախ այն բանից, ծանոթ է եղել Ներսեսը Տիմոթեոսի գրքին, թե ոչ, նա չէր զանց առնի, Բարկենի թղթից օգտվելիս, վկայակոչել Ամպելիոսին և Անատոլիոսին, եթե նրանց անունները լինեին նրա օգտագործած թղթում:

Ամբողջ շարադրանքը մեզ հիմք է տալիս կասկածի տակ առնելու Ամպելիոսի և Անատոլիոսի մասին հատվածը:

[1] «Գիրք թղթոց», էջ 48-49:

[2] Անդ, էջ 56:



## «ՀԱՅՈՑ ՆԱԽՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ» ՍԵԲԵՈՍԻ ԵՐԿՈՒՄ ԵՎ ԴՐԱ ԱՂԵՐՄՆԵՐԸ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ ԵՎ ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԻ ԵՐԿԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏ

«Հայոց նախնական պատմությունը» կամ այսպես կոչված Անանունի պատմությունը, չնայած դրան նվիրված նշանակալի թվով հետազոտությունների (1), դեռևս շարունակում է առեղծված մնալ հայ բանասիրության համար: Դրա բացահայտումը հիմնական հետաքրքրություն ունի, հատկապես այժմ, Մովսես Խորենացու հարցում Անանունի վճռական նշանակության իմաստով: Գիտնականներին չի հաջողվել իրական լույսի ներքո մեկնաբանել «Նախնական պատմությունը» և որսալ դրա իսկական առնչակցությունը Խորենացու վերաբերմամբ գլխավորապես այն պատճառով, որ նրանք շրջանցել են բնագրի հարկ եղած քննադատության հարցը, որը պետք է նախորդեր ամեն մի այլ քննադատության: Հանգուցյալ Ք. Պատկանովը այնպիսի վճռական եղանակով էր արտահայտվել Անանունի մասին (2), որ էական մասերում նրա կարծիքի ստուգումը երկար ժամանակ ավելորդ էր թվում: Նրա հայացքներն Անանունի պատմության ծավալի և Սեբեոսի նկատմամբ դրա առնչության մասին հաջորդ քննադատներն ընդունեցին անվերապահորեն, դրանցից էին ելնում իրենց աշխատություններում հարցի վերաբերյալ անգամ առավել հանգամանալի և կարևոր աշխատությունների հեղինակները: Բայց Պատկանովի քննադատությունը, իր ամբողջ կտրականությամբ հանդերձ, հետադիմական քայլ է Անանունի պատմության ուսումնասիրության մեջ: Դրա հետևանքով էլ նրա վրա հիմնված հետագա հետազոտություններն անբավարար են:

Ներկա հոդվածում ես փորձում եմ կատարել Սեբեոսի երկում գտնվող «Նախնական պատմություն» բնագրի նոր քննադատությունը և որոշել դրա առնչությունը Խորենացու և Փավստոսի հետ: Քանի որ այն կյանքի է կոչվել Ստ. Մալխասյանցի վերջերս լույս տեսած գրքույկի[1] կապակցությամբ, ուստի ավելորդ չէ մեր քննադատությանը ներկայացնել այդ հետաքրքրական էտյուդի վերլուծության հետ կապակցված:

Ստ. Մալխասյանցը պաշտպանում է այն տեսակետը, որի վրա

[1] Ստ. Մալխասյանց, Սեբեոսի պատմությունը և Մովսես Խորենացի, մատենագրական ուսումնասիրություն, Թիֆլիս, 1899:

կանգնած էին Անանունի դեռևս առաջին հետազոտողները (Թ. Միհրդատյանցը, Ա. Գարագաշյանը): Նրանք պնդում էին, որ «Նախնական պատմությունը» պատկանում է իրեն՝ Սեբեոսին, և որ երկրորդ գլխի վերնագրում հիշատակվող Ստեփանոս պատմիչը ուրիշ, Ասողիկից տարբեր անձնավորություն է, որն ապրել է մինչև VII դարը (3): Այդ կարծիքը, որը Պատկանովը մերժել է, Մալխասյանցը պաշտպանում է, ջանալով բոլորապատել այն նոր տվյալներով: Գրքույկի հեղինակը բաժանում է պ. Խալաթյանցի հիմնական դրույթը Անանունի և Սեբեոսի բառապաշարի և խոսքի կառուցվածքի միջև ապշեցուցիչ նմանության գոյության մասին: Բայց եզրակացություններում տարբերվելով Խալաթյանցից, նա հարում է Միհրդատյանցին: Մալխասյանցը ճիշտ է դնում հարցը. եթե վերնագրում նշված պատմիչը մեզ հայտնի Ստեփանոս Տարոնացին է, ապա մենք իրավունք ունենք սպասելու, որ երկրորդ գլխի բովանդակությունը քաղված է կամ Խորենացուց, կամ Ասողիկից, և կամ նրանց երկուսից: Այնուհետև վերլուծելով գլուխը, Մալխասյանցը գտնում է, որ պարթևական արքաների ցանկը գրեթե տառացիորեն Ասողիկի մոտ էլ կա. Սամիկոնյանների տոհմի ծագման մասին հատվածը երկու-երեք տողով հիշեցնում է Խորենացուն, իսկ մնացյալում այն գրավոր աղբյուր չունի, ըստ իրեն՝ հեղինակի հայտարարության: Ինչ վերաբերում է երկու համաժամանակացույց աղյուսակներին, ապա դրանք չի կարելի քաղել ո՛չ Խորենացուց, ո՛չ Ստեփանոս Ասողիկից: Այստեղից եզրակացություն՝ Սեբեոսի Ստեփանոսը չունի ոչ մի ընդհանրություն X դարի հայտնի համանուն պատմիչի հետ, նա ուրիշ Ստեփանոս է, հենց այն, ով գրել է եկեղեցական ժամանակագրությունը, որից պահպանվել և մեզ է հասել միայն մի քանի թերթ[1]: Հենց այդ հեղինակից է օգտվել Սեբեոսը, Մալխասյանցի կարծիքով, ժամանակագրությունը կազմելիս: Ենթադրվում է, որ առաջին աղյուսակը նա յուրացրել է Խորենացուց. այնուհետև, մինչև Հուստինիանոս I-ը, այն վերցրել է ժամանակագրության հեղինակից, իսկ մնացյալը, մինչև Սասանյան միապետության անկումը, անձամբ ինքն է կազմել իբրև ժամանակակից:

Այսպիսով Մալխասյանցը կարծում է, որ Խորենացու երկասիրության հետ Սեբեոսի ծանոթության փաստը ապացուցված է. հետևաբար, Խորենացին VII դարում արդեն հավաստի պատմիչի հռչակ ուներ:

Հենվելով Մալխասյանցի քննարկած տեքստին, հեշտությամբ կարելի է մերժել նրա դրույթները: Մալխասյանցը ճիշտ չէ բացահայտել այն առնչությունը, որ ունի երկրորդ գլխի խորագիրը նրա բուն բովանդակության հետ:

Երկրորդ գլխի տեքստը երկու տեղ վնասված է: Սամիկոնյանների մասին

[1] «Արարատ», 1868, էջ 104-105՝ արտատպված են Ստ. Մալխասյանցի մոտ:



դրվագը ոչ մի կերպ չի կապվում արքաների ո՛չ նախորդ և ո՛չ էլ հետագա ցուցակի հետ: Ակնհայտ է, որ այն իր տեղում չէ: Նրա իսկական տեղը, իմ կարծիքով, ներքևում՝ 13-րդ էջում է, այնտեղ, որտեղ խոսվում է Կոռնակի մասին[1]: Եթե ուշադրություն դարձնենք հատվածի վերջին բառերի վրա՝ «յայսմանէ այն է սպարապետ», դժվար չէ համոզվել, որ հեղինակը խոսք է բացել Սամիկոնյանների ծագման մասին այդ նույն տոհմից ինչ-որ սպարապետի առիթով: Այս սպարապետը ոչ այլ ոք է, եթե ոչ Կոռնակը՝ Խոսրով արքայի զորավարը, որի մասին խոսք է գնում հենց նոր նշված տեղում (էջ 13): Այստեղ նույնպես բնագիրը պակասավոր է, որը լավագույնն է ապացուցում ենթադրության արդարացիությունը, որ հատվածը սկզբնապես այդ տեղն է գրավել: Հեղինակը հաղորդում է, որ Կոռնակը երկար կյանք էր ապրել, 160 տարի, ընդ որում մինչև մահ պահպանել էր իր օրգանիզմի երիտասարդական ավյունը: Այդ անսովոր երևույթը պատմիչը վերագրում է Կոռնակի օտար, չինական ծագմանը և ի միջի այլոց հաղորդում է այն, ինչ իմացել և լսել է նրա մասին: Այսպիսով, երկու միմյանցից անջատված մասերի միջև տրամաբանական կապ կա, թեև դժվար է դրանք միացնել քերականորեն և վերականգնել բնագիրն իրական տեսքով[2]:

Ներդիր հատվածը իր տեղը փոխադրելուց հետո պարսից Արշակունիների ցանկը կհայտնվի համաժամանակացուցային աղյուսակի կողքին: Ոչ ոք չի ժխտում, որ պարսկական ցանկից անմիջապես հետո նախկինում եղել է հայ Արշակունիների համանման ցանկ: Եթե հեղինակը հայտարարում է «Արդ՝ այսպէս զատուցեալ երևէին երկու ցեղքն թագաւորութեանց Պարսից և Հայոց»[3] և թվարկում է պարսից արքաներին, բնական է, որ նա պետք է բերեր նաև հայոց արքաների անունները: Այդպիսի ցանկ, հիրավի, եղել է նախասկզբնական բնագրում: Նրա մնացուկները երևում են աղյուսակի վերջին մասում, որը տեղակայված է առաջին դպրության ավարտին, սկսած

[1] «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», Ս. Պետերբուրգ, 1879, էջ 13:

[2] Շատ հնարավոր է, որ Կոռնակը նա ինքն Կոնակ՝ երկու նախապես եղբայրներից մեկն է, որոնց վերաբերում է պատմությունը: Չէ՞ որ նրանք Հայաստան են եկել պարսից Արտավանի և Հայոց Խոսրով Մեծի օրոք: Իսկ Կոռնակը անվանվում է Խոսրովի զորավար և նրա օրոք դուրս է գալիս հռոմեացիների Կարոս կայսեր դեմ: Ճիշտ է, փախստական եղբայրները ժամանել էին «կնաւ և որդովք իւրեանց» (անդ, էջ 13), և Կոռնակը կարող էր այդ որդիներից մեկը լինել, բայց ինձ ավելի հավանական է թվում, որ ի դեմս «Կոռնակի» և «Կոնակի» ունենք միևնույն անվան երկու տարընթերցումներ: Կոռնակ ձևը հեշտությամբ կստացվեր Կոնակից, գրված լինելով «աւ»-ով: Կաւնակ կամ ու՝ Կունակ (հմմտ. Խորենացի Մամգուն): Եթե այդպես է, ապա նախընտրելի է հատվածի վերջին բառերը կարդալ այսպես՝ «եղեն յազգ մեծ ի Մամիկայ (ոչ Մամիկոնայ, ինչպես տպագրումն է) եւ Կոնակայ յայսմանէ սպարապետէ», փոխանակ ... յայսմանէ այն է սպարապետ», անդ («այն է» փոխանակ «անէ», որ նախորդող բառի վերջին վանկի կրկնողությունն է):

[3] Սեբեոս, էջ 13:

Արշամից: Ես ինձ թույլ եմ տալիս կասկածելու սույն աղյուսակի իսկությունը: Ներկա տեսքով այն ներկայացնում է հայոց արքաների սկզբնապես այնտեղ դրված ցանկի խառնուրդ Խորենացու նույնպիսի ցանկի հետ: Որ այն օտար ազդեցության հետքեր է կրում, երևում է թեկուզև հայ առաջին Արշակունու մասին հակասական ցուցումներից: 9-րդ էջում տեսքստը հուշակում է, որ Արշակ Մեծն ուներ չորս որդի, որոնցից մեկը գահակալեց Հայաստանում, իսկ մնացյալ երեքը՝ Թեսալիայում, Պարսկաստանում և Կիլիկիայում: Իսկ աղյուսակում հայոց Արշակը գահակից ունի նաև Վաղարշակին, իր եղբորը: Դրանից ստացվում է, որ Արշակն ունի ոչ թե 4, այլ 5 որդի: Քննադատությունը վաղուց է նշել, որ «եղբարբ իւրով Վաղարշակաւ, զոր թագաւորեցոյց Հայաստան աշխարհիս» արտահայտությունը օտարամուտ տարր է: Իսկությամբ Անանունին է պատկանում միայն աղյուսակի մի մասը՝ մինչև Տիգրանը, այնուհետև Արշամից սկսվող մասը կպցված է սրան երկրորդ դպրությունից՝ արտագրողի անհրազեկության և այն պատճառով, որ թերթերը խառնված են: Հարցախույզ հայացքը դրանում կհամոզվի թեկուզև կրկնությունների հիման վրա, որոնք նկատելի են աղյուսակում: Արշամից առաջ վերջին անունները՝ Արտաշես, Տիրան, Տիգրան, երկրորդաբար նշված են Սանատրուկից հետո: Հատկանշական չէ՞ արդյոք, որ հենց այդտեղ, ոչ վավերական մասում, Արշակին տրվում է գահակալության 7 տարի, հակառակ Խորենացու (նաև երկրորդ դպրության), բայց լիովին համաձայն Ասողիկին: Աղյուսակի այդ մասը այստեղ ընկել է երկրորդ դպրությունից, որտեղ այն բերվում է ըստ Ասողիկի. և վերջինիս հասարակ վրիպակը՝ Է (7) փոխանակ Լ (30)-ի նրանում ուժ է ստացել: Գործ ունենալով վատ պահպանված ձեռագրի հետ, Սեբեոսի արտագրողը ակամայից շփոթել է թերթերը: Դժվար է ասել, թե իրականում այդ ինչպես է տեղի ունեցել, բայց հնարավորությունը լիակատար է: Պատկերացնենք, որ նա, արտագրելով հայոց արքաների անունները առաջին դպրության վերջում, հասել է Տիգրանին, որով ենթադրենք, ավարտվել է թերթը: Այն բանի հետևանքով, որ այնուհետև թերթերը պոկված են եղել (ինչպես երևում է տպագիր հրատարակությունից) և ծայրերը քրքրված, նա չի կարողացել կողմնորոշվել դրանցում (4): Տեսնելով թերթերի վրա արքաների մի շարք անուններ և չնկատելով, որ դրանք կազմել են երկրորդ դպրության ցանկի մի մասը, նա հեշտությամբ այն ընդունում է որպես ոչ լրիվ արտագրված աղյուսակի շարունակություն և վերագրում է Տիգրանին, ընդորում թերթերի վնասվածությունը վերստին խանգարում է նրան հասցնելու ցանկը մինչև վերջ, և ընդհատում է այն Պապ թագավորով: Մի անգամ խախտելով կարգը, արտագրողն արդեն այլևս չի կարողացել գլուխ հանել ձեռագրից և արտագրել է ինչպես պատահել է, հայտնապես



բախտարքերի միացնելով Մամիկի և Կոնակի պատմությունը պարսից Արշակունիների ցանկին[1]:

Ի ամրապնդումն մեր կասկածների առաջին դպրության ցանկի վերաբերյալ, մենք ստորև կվկայակոչենք ուրիշ և ավելի ծանրակշիռ փաստարկներ: Բայց այն դեպքում, եթե մեր նկատառումները բավարար համոզիչ չեն թվա, ապա դա, անշուշտ, մազաչափ իսկ չի խախտի հավաստիացումն այն բանում, որ երկրորդ դպրության մեջ նախկինում եղել է հայոց արքաների ցուցակը: Հետևաբար, այդ դպրությունը իր իսկական տեսքով կազմված է եղել երկու ցանկից և երկու համաժամանակացուցային աղյուսակներից, ուր մտել է նաև Մամիկոնյանների պատմությունը: Քննարկելով վերջին աղյուսակները, Մալխասյանցը գտնում է, որ դրանք անհնարին է քաղել Խորենացուց, հավասարապես և Ասողիկից: Դրանք իրենց թվական տվյալներով կտրուկ կերպով շեղվում են Խորենացու և Ասողիկի տեղեկություններից: Բավական է ամենամակերեսային հայացք նետել, որպեսզի համոզվես Մալխասյանցի դիտողությունների արդարացիության մեջ: Բայց ի՞նչ անհրաժեշտություն կա քաղել դրանք հիշյալ պատմիչներից: Դժբախտությունն այն է, որ երկրորդ դպրության խաբուսիկ խորագիրը վերաբերում է միայն պարսից և հայոց արքաների առաջին երկու ցանկերին, և հիմք չկա այդ խորագրի տակ խցկելու նաև համաժամանակացուցային աղյուսակները: Բայց չպետք է մոռանալ, որ Սեբեոսի բուն ձեռագրում նրա պատմությունը բաժանված չէ գլուխների, և չկա ոչ մի ցանկ գլխոց[2]: Սեբեոսի հրատարակիչներին հարկ է թվացել խորագիրը վերագրել վերջինիս հետ ոչ մի առնչություն չունեցող աղյուսակներին ևս, բայց նման բաժանման համար ես հիմք չեմ տեսնում: Վերջապես, երբ ծանոթանում ենք դպրության բովանդակությանը, ապա տեսնում ենք, որ նրա մի մասը համապատասխանում է վերնագրին, իսկ մյուս մասը՝ ոչ, ուստի ամենաբնական եզրակացությունն է՝ խորագիրը վերագրել միայն առաջին մասին: Վճռականապես ոչ մի կարիք չկա այստեղ խոսք բացել ինչ որ մեկ ուրիշ Ստեփանոս պատմիչի մասին: Եթե անգամ ընդունելու լինենք պ. Մալխասյանցի բերած պատմական հիշատակարանի հիման վրա, որ գոյություն է ունեցել այդպիսի Ստեփանոս, ապա դրանով մազաչափ իսկ գործին չենք օգնի, քանզի նույն հիշատակության մեջ նա կոչվում է Մեսրոպի աշակերտ, իսկ որպես այդպիսին, ակներևաբար, նա չէր կարողանա ժամանակագրությունը հասցնել մինչև Հուստինիանոսը: Խնդրո առարկա Ստեփանոսը, որի անունը կարդացվում է երկրորդ դպրության խորագրում, անկասկած մեզ հայտնի Ստեփանոս Տարոնացին է, մականվանյալն Ասողիկ: Խորագրի

[1] Նման ձևով շփոթված են «Արշավանքի պատմության» սկզբնական թերթերը մինչև 37-րդ էջը: Դրանք կարգի են բերված Մալխասյանցի գրքույկում, էջ 116:

[2] Տե՛ս Ք. Պատկանովի հրատարակության Առաջաբանը:

տակ տեղակայված պարսից Արշակունիների ցանկը բառ առ բառ, տառ առ տառ վերցված է Ասողիկից[1]: Ըստ նույն պատմիչի է բերված եղել նաև հայոց արքաների ենթադրյալ, այժմ բացակայող, ցանկը, ինչ որ մատնանշեցինք վերը: Այդ ցանկերը մեկուսի են կանգնած և ոչինչ ընդհանուր բան չունեն ո՛չ նախորդի, ո՛չ էլ հետնորդի հետ: Դրանք ընդմիջարկություններ են, ուշ ժամանակների գրչի գործ, որը, ի նկատի առնելով առաջին դպրության նախորդող երկու աղյուսակներում եղած շեղումները (նշանակալի, հատկապես հայկականում, ինչպես կտեսնենք), հարկ է համարել բերել դրանք նաև «ըստ ճշմարտացի և հավաստի հեղինակների»: Ընդորում փութաջան գրիչը օգտվում է ըստ էության միայն Ասողիկից և այնտեղից էլ արտագրում է. բայց քանի որ նրան քաջ հայտնի է նաև, որ Ասողիկն ինքը քաղում է այն Խորենացու նշանավոր Պատմությունից, ուստի Ասողիկի անվան կողքին դնում է նաև Խորենացու անունը: Ահա, ըստ իս, հարցի ճիշտ լուսաբանումը:

Տեքստից ընդմիջարկման հեռացմամբ ընկնում է նաև քննարկվող գրքույկի հեղինակի ամենաէական դրույթը՝ իբրև թե Սեբեոսը, երկու գրքերի հեղինակը, իմացել է Խորենացուն: Մեր առարկությունները տանում են միանգամայն հակառակ պնդման: Եվ արդյո՞ք տրամաբանական է ենթադրել, որ մի մարդ, որ պատրաստվում է «զանստորագրեալ ժամանակ և զնախնին քաջացն ձեռնարկելով դրոշմել վիպասանութիւնս», իմանար Խորենացուն: Այդ դեպքում նրա ինչին է պետք շրջանցել նույն նյութի Խորենացու մոտ եղած անհամեմատ լավագույն մշակումը և շարադրել մի պատմություն, որը, ըստ նույն Խորենացու կարծիքի, «մի նշույլ իսկ ճշմարտություն չի պարունակում և սոսկ թլվատի կակազանք է»: Պարզ է, պրն. Մալխասյանցը մոլորության մեջ է: Բանասիրական բնույթի մյուս կշռադատումները, որոնց միջոցով Մալխասյանցը ջանում է հաստատել իր գլխավոր եզրակացությունը, չափից դուրս երկրորդական են և վճռական նշանակություն չունեն:

Եթե պրն. Մալխասյանցի մտքերը Խորենացու հարցում սնանկ են, ապա Անանունի մասին իր դատողություններում նա հաստատուն գետնի վրա է կանգնած: Մալխասյանցը համոզեցուցիչ հիմքեր չէ գտնում այն բանի համար, որպեսզի երկրորդ գլուխը անջատի առաջինից, իսկ այդ երկուսն էլ Սեբեոսի երկից: Այդ դրույթին ի հաստատումն, նրա բերած փաստարկները կարելի է էլ ավելի ուժեղացնել:

Անանունին վերաբերող բոլոր հետազոտությունները մի տեսակ երկրորդ գրքի համաժամանակային աղյուսակների կողքից են անցել: Մինչդեռ, բանից դուրս է գալիս, «Նախնական պատմության» *հարցում* վճռական խոսքը դրանց է պատկանելիս եղել:

[1] Ասողիկի համեմատությամբ ավել է Արշակի կյանքի տարիների թիվը՝ «կեցեալ ամս ճլ»: Ցանկերի հեղինակը այդ ժամանաշումը վերցնում է առաջին դպրությունից, որը չի համապատում ո՛չ Ասողիկին, ո՛չ էլ Խորենացուն:



Աղյուսակներից առաջինը ներկայացնում է հայոց, պարսից և բյուզանդական արքաների միմյանց միահյուսված ժամանակագրությունը: Առանձնացնելով դրանց, կստանանք արքաների հետևյալ երեք շարքը, իրենց կառավարման տարիներով, որը մենք ստուգել ենք բուն տեքստի ցուցումների *հիման վրա՝ նրանց կից դիտողություններով:*

## ԱՐՔԱՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՑԱՆԿԸ

| ՀԱՅՈՑ | ՊԱՐՍԻՑ | ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ |
|---|---|---|
| 1. Խոսրով....50 տ[արի] | 1. Արտաշիր.......50 | 1. Ավրելիանոս.................6 |
| [32-րդից=20] | | [3-րդ տարուց=] } 4 |
| Միջբազավ. ...11 | 2. Շապուհ .........73 | 2. Տերենտինոս..................6 |
| 2. Տրդատ........70 | | ամիս |
| 3. Խոսրով.......17 | 3. Ներսեհ...........9 | 3. Պրոբոս...........................6 |
| 4. Տիրան.........12 | 4. Որմիզդ...........3[2] | 4. Կարոս որդիների հետ...7 |
| 5. Արշակ.......49 կամ 48 } 60[1] | 5. Շապուհ.........73[3] | 5. Դիոկղետիանոս.............22 |
| Միջբազավ. ..11կամ 12 | 6. Արտաշիր......4 | 6. Կոստանդին.....................9 |
| 6. Պապ..........13 | 7. Վռամ...........11 | 7. Մաքսիմիանոս և Գալիանոս [Գալերիանոս] } 19[4] |
| 7. Վարազդատ....6 | 8. Հազկերտ մինչև 2-րդ տարին | 8. Մաքսիմիլիանոս ............13 [փոխ.Մաքսիմենտոսի] |
| 8. Արշակ և Վաղարշակ....5 | +225 | |
| 9. Խոսրով..............3 | | 9. Կոստանդիոս.................17 |
| 10. Վռամշապուհ...8 | | 10. Կոստանդինոս..............32 |
| Սոտավ. + 225 (5) [առանց Խոսրովի 30 տարուն = 225] | | 11. Կոստանդիոս և Կոստաս...................24[5] |
| | | 12. Հուլիանոս...................2 |
| | | 13. Վալենտինիանոս և Վալենտոս...............13 |

[1] Ըստ տեքստի Արշակը գահընկեց է արվել գահակալության 49-րդ տարում = Շապուհի 44-րդ տարում: Եթե 43-րդ տարին կամ 44-րդ տարին վերագրվի միջբազավորությանը, որը տևել է 12 տ., մինչև Շապուհի 56-րդ տարին, ապա Արշակինը կլինի 48 տարի: Իսկ եթե

14. Գրատիանոս............17[6]

15. Թեոդոսիոս .............19

16. Արկադիոս...............19

17. Հոնորիոս մինչ 2-րդ տարին

\+ 225

---

միջթագավորությունը հաշվենք 11 տարի, ապա այնժամ Արշակին տեխված կլինենք տալ 49 տարի «ի տէրութեան ի վերայ հայոց զերկոտասաներորդն» corrigendum՝ «զեօթներորդն» կամ «զութերորդն» կախված միջթագավորության տարիների թվից՝ 11 թե 12 տարի (էջ 17), այսինքն՝ (45-51) կամ (44-51) ներառնելով ծայրայիններըը:

[2] Վրիպակ. ղ̃ գ̃-ի փոխարեն. Արշակի 3-րդ տարուց մինչև 6-րդը, ընդորում 6-րդը = Շապուհի 1-ին տարին (էջ 16):

[3] Հրատարակության մեջ հ̆ corrg. հզ̆ և ոչ թե 74, ինչպես առաջարկում է Մալխասյանցը: Շապուհի 70-ը = Արկադիոսի 1-ին, իսկ Արկադիոսի 5-րդը կազմում է արդեն Արտաշիրի 1-ին տարին: Հետևաբար 70-ին պետք է ավելացնել Արկադիոսի 2, 3, 4 տարիները:

[4] Տպագրված է 18՝ 19-ի փոխարեն: Նրանց նախորդ Կոստանդինին տրվում է 9 տարի, Արտաշիրի 40-րդ տարուց: Նրա վերջին տարին, հետևաբար, համընկնում է Արտաշիրի 48-րդ տարուն, 49-ն ու 50-ը արդեն ընկնում են Մաքսիմիլիանոսին և Գալիանոսին: Ուստի Շապուհի 1-ին տարին = Մաքսիմիլիանոսի և Գալիանոսի 3-րդին, և ոչ թե 2-րդին, ինչպես տպագրված է: Այնուհետև, Արտաշիրի 49-ը = 18 (և ոչ թե 19, ինչպես տեքստում), քանզի Արտաշիրի 40 = Տրդատի 9-ին: Այստեղ տեքստը կարգին չէ. 49 տարի գահակալել է ոչ թե Շապուհը, այլ Կոստանդինի հաջորդները (էջ 14):

[5] Հրատարակված է ծղ̆ իղ̆ փոխարեն, որը տեքստային առումով ճիշտ է, քանի որ նա կառավարել է Տիրանի վերջին տարուց մինչև Արշակի 24-րդ տարին, ճիշտ է նաև պատմական առումով (337-361):

[6] Այդ երևում է տեքստից: Նրա տարիները ընդգրկում են Շապուհի 34-51-րդ տարիները: Այստեղ չեն նշվում ուրիշ մանր վրիպակներ, որոնք հասկանալի են ինքնըստինքյան:



# ԱՐՔԱՆԵՐԻ ԵՐԿՐՈՐԴ ՑԱՆԿԸ

## ՊԱՐՍԻՑ

8. Հազկերտ ...21
9. Վռամ ..........42 [22][1]
10. Հազկերտ .........19
11. Վաղարշ ..........4
12. Պերոզ .............48
13. Ջամասպ ........2[2]
14. Կավատ .........41
15. Խոսրով ...........47
16. Որմիզդ ............12
17. Խոսրով ............37
18. Կավատ ...........1
    (և Խոռյամ)
19. Արտաշիր .........3
20. Բորր .................2
21. Հազկերտ .........20[6]

\+ 298

## ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ

17. Հոնորիոս ..............22
18. Թեոդոսիոս ...........42 [22][1]
19. Կոստանդիոս ........1
20. Վալենտինոս .........30
21. Նարկեսոս .............6
22. Վռափնոս ..............3 (Փլաքիո՞ս)
23. Մարկիանոս ...........7 (5)[3]
24. Լևոն ........................11 (13)
25. Անթեմիոս ..............6
26. Օլիմպրիոս .............1
27. Զենոն ......................1[4]
28. Զենոն ......................17
29. Անաստասիոս ........27
30. Հուստինիանոս .......38
31. Հուստինոս ..............12
32. Տիբերիոս ................3
33. Մորիկ ......................21[5]
34. Փոկաս .....................8
35. Հերակլ .....................30
36. Հերակլեոն ...............1
37. Կոստանդին, մինչև 11-րդ տարին

\+ 298

---

[1] Էջ 18 «յամի ի̆ երրորդի Թէոդոսի» փոխարեն կարդալ «յամի ի̆ երրորդի երկրորդի [կամ «խ̆ երրորդի երկրորդի»], նաև «յամի Յազկերտի թագաւորէ» փոխարեն պետք է «յամի երկրորդի Յազկերտի» (մանրամասները մեր տեքստում), իսկ մեկ տող ներքև՝ «յամի երկրորդի Յազկերտի» ուղղել «յամի երրորդի Յազկերտի»: Վռամ 2-րդ տարին = Թեոդոսիոսի 1 տարուն 22 = 21. հաջորդ Թեոդոսիոսի 22 = Հազկերտի I. Թեոդոսիոսի հաջորդ Կոստանդիոսի 1-ին տարին ընկնում է Հազկերտի 2-րդ տարուն:

[2] Վրիպակ է հրատարակության մեջ՝ ը̃ ի̃ -ի փոխարեն:.

[3] Էջ 19 «Մարկիանոս ամս է̆» վատ չէր լինի ուղղել է̆ (450-457) և «Յամի իե̆՝ յամի իէ̆ կարելի է թողնել «Պերոզի»: Անթեմիոսին տրվում է 6 տարի, մինչև Պերոզի 44-րդ տարին, առաջին տարին ընկնում է Պերոզի 38-րդ տարուն. հրատարակության մեջ՝ «յամի լ̆», հետևաբար corrigendum լ̆ը: Լևոնի համար ժամանակամիջոց է մնում 27-38-ը կամ 25-38-ը՝ կախված Մարկիանոսի տարիների թվից: Ժամանակագրությունը ամենևին չի տուժում ո՛չ այս

Քննարկելով ներկայացված ցանկերը, նկատում ենք, որ ժամանակագրության ամբողջ խախտությունը պայմանավորված է միմիայն համաժամանակայնության այն ձևով, ինչ ձևով որ հեղինակը ենթադրում է դրանք: Բյուզանդական թագավորների թվական տվյալները, ինքնըստինքյան վերցրած, համաժամանակային առնչություններից դուրս, ընդհանուր առմամբ, ճիշտ են: Սխալը տեղի է ունեցել աղյուսակները միահյուսելիս, այն բանի հետևանքով, որ կայսրերին, որոնք միաժամանակ կառավարել են *Հռոմեական* կայսրության երկու կեսերը, և կամ կեսարներին, չտարբերելով նրանց օգոստոսներից, կազմողը տեղադրել է հաջորդականության գծով: Լիովին ճիշտ է, որ Մաքսիմիանոսը և Գալերիանոսը կառավարել են 19 տարի, միայն թե առաջինը՝ Դիոկղետիանոսի հետ միաժամանակ Արևելքում 286-305 թթ., իսկ Գալերիանոսը 292-304 թթ., որպես կեսար Դիոկղետիանոսի օրոք և 305-311 թթ. որպես օգոստոս Արևմուտքում: Նմանակերպ վերցված են արևմտյան տիրակալներից՝ Գրատիանոսը, Հոնորիոսը, երկրորդ ցանկում՝ Կոստանդիոսը, Վալենտիանոսը, Նարկեսոսը, Փլաքիոսը, Անթեմիոսը և Օլիմպրիոսը, *Մաքսիմիլիանոսը*, որին տրվում է 13 տարի, հավանաբար, Գալերիանոսի զարմիկն է, իսկ Կոստանդը՝ Կոստանդիանոս Մեծի հայրը: Առաջինը կեսար էր հորեղբոր օրոք, իսկ երկրորդը՝ Մաքսիմիլիանոսի (292-305), բայց ցանկում նրանք ինքնուրույն տեղեր են գրավում: Կոստանդիանոս Մեծը աղյուսակի մեջ մտցված է երկիցս՝ առաջին անգամ 9 տարվա կառավարմամբ, իսկ երկրորդ անգամ՝ 32, այն դեպքում, երբ վերջինիս մեջ արդեն պարունակվում են առաջին ինը տարիները: Կարծես թե հեղինակը ինքն է հանել բյուզանդական ժամանակագրության թվերը ինչ որ համաժամանակային աղյուսակից:

Մատնանշված վրիպումների հետևանքով Ավրելիանոսից մինչև Հոնորիոսը ստացվել է 225 տարվա ժամանակամիջոց, որը իրականությանը գերազանցում է գրեթե հարյուր տարով: Այդ անճշտությունը անդրադարձել է հայոց և պարսից ժամանակագրության վրա: Դնելով Արտաշիրին և Խոսրով [Մեծին] Ավրելիանոսի օրոք, հեղինակը ժամանակագրությունը տե-

և ո՛չ այն դեպքում:

4 Նա հենց ինքը Լևոն II-ն է՝ 474 թ.:

5 Էջ 20. «յամի է՟ Մաւրկայ» ուղղել «յամի բ՟», որպեսզի ստանանք, համաձայն բնագրի, Պերոզի համար 12 տարի, իսկ Մորիկի՝ 21 տարի:

6 Նույն տեղում. «յամի զ՟ Յազկերտի» փոխանակ «յամի ը՟ Յազկերտի». Հազկերտի 9-րդ տարին համընկնում է Հերակլի որդիների տարուն, իսկ 10-ը՝ (և ոչ թե է՟, ինչպես տպագրված է) – Կոստանդինի 1-ին տարուն:



ղաշարժել է առաջ ոչ պակաս, քան 50 տարով: Նման հասարակ սխալի պատճառով (թե ինչպես է այն տեղի ունեցել, մենք կտեսնենք), որ ժամանակի նշանակալի չափում է տվել, հեղինակին պետք չի եղել ձգելու հայոց և պարսից ժամանակագրությունը **pari passu** բյուզանդականին 100 տարով, այլ միայն կիսով չափ (100-50)[1]: Արդյունքում դուրս է եկել, որ պարսից արքաների տարիները ամբողջությամբ վերցրած ավելի քիչ են մեղանչում իրականության հանդեպ:

Տարիների գումարը հարստության հիմնադրից մինչև Հազկերտ հավասարվում է 223-ի, իսկ այս վերջինից մինչև սասանյան միապետության անկումը 278-ի կամ 298-ի, նայած թե Վռամին և Թեոդոսիոսին կտանք 22, թե 42 տարի: Շատ առումներով գերադասելի է երկրորդ ընթերցումը: Տառագրության առումով հասկանալի, այն չի խախտում նաև ժամանակագրությունը. եթե 22-ը պատմականորեն և մոտավորապես ճիշտ է Վռամի վերաբերմամբ (420-439)[2], ապա 42 թիվը կատարելապես է համապատասխանում Թեոդոսիոսին, որը թագավորել է 408 թվականից մինչև 450 թվականը: Ամենագլխավորն այն է, որ խբ՟ կարդալիս փոքր ինչ լուսաբանվում են երկրորդ ցանկում եղած սխալները: Այստեղ ժամանակագրությունը, որը խստորեն պահպանված է վերջին մասում, սկզբում սկսած Զենոնից, տառապում է կոպիտ վրիպումներով: Պերոզին հատկացվում է 48 տարի, ճիշտ ու ճիշտ երկու անգամ ավելի[3]: Եթե ընդունենք Վռամի համար էլ 42 տարի, ապա կստացվի չորս տասնյակ պատմականորեն ավելորդ տարի: Դրանք կարելի է պատճառական կապակցության մեջ դնել 40 նույնպես ավելորդ տարիների հետ բյուզանդական մասում, որ տեղի է ունեցել արևմտյան կայսրերին ցանկի մեջ մտցնելու հետևանքով (1 Կոստանդիոս + 30 Վալենտիանոս + 6 Նարկեսոս + 3 Վռափնոս = 40): Մեկը հետևանք է մյուսի: Ավելի հավանական է, որ հեղինակը Պերոզի համար դնելով 48 տարի պատահական գրասխալ թույլ տալով[4]՝ փոխանակ ի՟ը՟ [28], ինչպես նաև Վռամին 42- ի զուգահեռ Թեոդոսիոսի տարիներին [հմմտ. Խոսրով 50 - Արտաշիր 50, Տրդատ 70 - Շապուհ 73, Հազկերտ 21 - Հոնորիոս 22, նույնպես Թեոդոսիոս Մեծ 19 - Արկադիոս 19] և որպեսզի պահպանի հավասարակշռությունը և հանդիպեցնի Զենոնին Կավատի ու Ջամասպի հետ, մոլորությամբ ցանկի մեջ է խցկել արևմտյան

1 Սասանյանների սկզբնավորումից մինչև Հազկերտ, այսինքն՝ 226 թ. մինչև 399 հավասար է 173, 49-ով պակաս 223-ից:

2 Ըստ Mordtmann, Chronologie der Sassaniden. ըստ Ռիխտերի 421-442, Սեդիլիոյի՝ 420-440:

3 Ըստ Մորդտմանի (նույն տեղում) 457-483 թթ. ըստ Ռիխտերի՝ 461-488, Սեդիլիոյի՝ 457-488, Նյոլդեքեի՝ 457-484:

4 Տեքստում վրիպակ չէ, այդպես անցկացված է ժամանակագրությունում:

տիրակալներին: Վերջապես, առաջարկվող ընթերցումն այն առավելությունն ունի, որ այդ դեպքում ընդհանուր գումարում ստացվում է 223 + 298 = 521 թիվը, որը հատուկ իմաստ ունի գրական առումով: Սեբեոսը 137-րդ էջում Սասանյան կայսրության տևողականությունը սահմանում է այդ նույն թվով. «Թարձան տէրութիւն Պարսից և ազգին Սասանայ, որ կալան զթագաւորութիւն ամս շիա (տպագրում շիր-Ն. Ա.)»[1]: Նման համընկնումը չի կարելի պատահական համարել. եթե 521 թիվը պատմական հիմք ունենար ապա, հասկանալի է, նման համընկնումը ոչ մի նշանակություն չէր ունենա Սեբեոսի և երկրորդ գլխի հեղինակի փոխհարաբերությունները պարզելու համար: Բայց հենց այն պատճառով, որ այն պատմականորեն անհավաստի է և իր ծագմամբ պարտական է սոսկ բացառիկ բնույթի սխալների, այդ համերաշխությունը վճռական տվյալ է հանդիսանում հարցի համար: «Արշավանքի պատմության» բովանդակության ուրիշ ընդհանուր կետերի շփման առկայությունը ևս երկրորդ գլխի հետ, որոնք նշվել են Մալխասյանցի կողմից, 521 թիվը ակներև կերպով ցույց է տալիս, որ ցանկերը պատկանում են Սեբեոսին՝ իրեն:

Նույն երկրորդ գլխի ցուցմամբ հայ Արշակունիների տիրապետությունը շարունակվել է 405 տարի: Փաստորեն այն չի արդարանում, քանզի բերված թագավորների տարիները գումարում տալիս են 232, չհաշված միջթագավորության 23 տարին: Ակնհայտ է, աղյուսակը լրիվ չէ, այն՝ շարունակություն է, ուրիշ աղյուսակի մաս, այն է՝ այնպիսի աղյուսակի, որտեղ նշված են եղել առաջին Արշակունիները մինչև Խոսրով (որտեղից սկսվում է երկրորդ գլխի ցանկը): Այդ պարագան մեզ ուղղում է առաջին գլխի ցանկին և ուղղակի ընդառաջում է ցանկի անհարազատ բնույթի մասին վերը առաջ քաշված կռահմանը: Դրա ճշմարտացիության մասին է խոսում հեղինակի հայտարարությունը. «Ես Ագաթանգեղոս գրիչ գրեցի ի վերայ արձանիս այսորիկ իմով ձեռամբս զամս առաջին թագաւորացն Հայոց, հրամանաւ քաջին Տրդատայ՝ առեալ ի դիւանէ արքունի»: Եթե չենք ուզում հեղինակի վզին ժամանակագրական անհեթեթություն փաթաթել, ապա պարտավոր ենք ընդունել, որ Ագաթանգեղոսի արձանագրությունը չէր կարող պարունակել Տրդատին հաջորդած թագավորների անունները:

Վիճաբանել կարելի է միայն մի քանի մասին՝ մտնում է արդյո՞ք արձանագրության կազմի մեջ վերջին ցանկը: Ըստ իս, Անանունի քննա-

[1] Շիա և շիր-ում ա և ր տառերը, գրված սկզբնատառերով, կարող են հառնել մեկը մյուսին, հատկապես ը-ի միջնորդությամբ (հմմտ. վերը Ջամասպ ը փոխանակ ր), եթե միայն դուրս բերված 521 թիվը ճիշտ է և մեզանից չի վրիպել պակասող միավորը: Ուղղելի է նաև երկրորդ գլխի վերջում դրված շլբ թիվը:



դատները այնտեղ չեն փնտրում «արձանագրության պատճենը», որտեղ հարկ է: Նախ և առաջ պիտանի չէ ընդունված կարծիքն այն մասին, որ արձանագրությունը վերաբերել է հինգ թագավորների: Այն հիմնված է տեքստի սխալ ընթերցման վրա: Այն բառերը, որոնք առիթ են տալիս նման ըմբռնման, շարահյուսական առումով անհաջող դիրք են գրավում «... բացեալ ցաւերածն վասն սեանցն ըստ դիպան արձանագրին դրոշմեալ ի վերայ վիմի զամս և զաւուրս հինգ թագաւորացն Հայոց և Պարթևաց յունարէն դպրութեամբ» արտահայտության մեջ: Ճիշտ թարգմանությամբ նշանակում է. «ավերակները բացելիս հանդիպեցին արձանագրության, հունարեն տառերով դրոշմված[1] քարի վրա հայոց և պարթևաց հինգ թագավորների տարիներն ու օրերը»: Բացահայտ անհարիրություն: Այն կարելի է վերացնել, տեքստից հանելով ավելորդ բառերը՝ «զամս և զաւուրս հինգ թագաւորացն»: Դրանք վերցված են գրչի կողմից սկզբնական տողերից՝ «... ցուցից ... զամս և զաւուրս հինգ թագաւորացն յիշատակելով»: Գրիչը, հավանաբար, այդ արտահայտությունը հասկացել է անմիջապես նրան հարող «անդ հայիով ի մատեան Մարաբայ փիլիսոփայի ...» հետ կապակցված և սխալաբար ենթադրել է, որ Մարաբասի գիրքը պատմում է հինգ թագավորների մասին. իսկ դա հանգեցրել է անտեղի ընդմիջարկության, որը ոչ մի ընդհանուր բան չունի Մարաբասի գրքի հետ, ինչպես և բերված արտահայտությունը հինգ թագավորների մասին[2]:

Կարծում են, նաև, որ արձանագրության ենթադրյալ հինգ թագավորներն են Սելևկոսը, Անտիոքոս Սոտերը, Անտիոքոս Թեոսը, Արշակ Մեծը և Արշակ Փոքրը: Պրոֆ. Մառի արտահայտած և ուրիշների կողմից (Գր. Խալաթյանցի, Ստ. Մալխասյանցի) հավանություն ստացած կարծիքը սնանկ է: Նախ և առաջ, Սելևկյանները ի՞նչ հայոց թագավորներ են և ինչո՞ւ Տրդատը պետք է հավերժացներ նրանց հիշատակը սյուների վրա: Երկրորդ, ինչ որ նրանց մասին պատմվում է, վերցված է Եվսեբիոսի Ժամանակագրությունից և Անանունը միանգամայն ոչ մի շահ չուներ թաքցնելու լիովին հավաստի, բարձր հեղինակությամբ օժտված պատմիչի անունը և հնարելու Ագաթանգեղոսի արձանագրության վերաբերյալ խորհրդավոր պատմությունը: Վիճարկվող կարծիքը ամրապնդվում է նրանով, որ հինգ հիշյալ

[1] Եվ ոչ թե «գծված» (Ն. Մառ, «Նախնական պատմության մասին»), ի նկատի ունենալով օբյեկտը հայցական հոլովով: Վիճելի բառերը անգամ արձանագրության ինքնուրույն խորագրի տեսքով չէին կարող դրված լինել հայցական հոլովով:

[2] Ստ. Մալխասյանցի մեկնաբանությունը (նույն տեղում) միանգամայն անընդունելի է: Ի նկատի ունենալով, որ Սեբեոսը «ժամանակակից» (ժամանակեան) է համարում պատմությունը 34-րդ էջից՝ Խոսրովից, մենք հաճույքով թյուրանդականի փոխարեն կվերցնենք պարսից թագավորներին՝ 1. Որմիզդին, 2. Խոսրով Փարվեզին, 3. Կավատին, 4. Արտաշիրին, 5. Հազկերտին (6):

թագավորների պատմությունը դրվում է 6-րդ էջում հիշատակվող տարեգրի բերանը, որի տակ հասկանում են Ագաթանգեղոսին: Ուշադրությամբ զննելով տեքստը, նկատում ենք պատմողի կողմից ոչ միատեսակ վերաբերմունք դեպի այն նյութը, որը վերագրում են տարեգրին: Այն դեպքում, երբ Մարսյակի մասին պատմությունում նա օգտագործում է անորոշ արտահայտություն՝ «ասեն», Եվսեբիոսից բերված քաղվածքներում գտնում ենք նույն բառը «ասէ» ձևով. «զոր ունէր, ասէ, արքայ ի դրան իւրում թագաւորին» (պետք է կարդալ «թագաւորութեան»՝ հապավանշան պատ-վով)[1]: Ո՞վ «ասէ» - ոչ այլ ոք, քան Եվսեբիոսը, որի մոտ կա նույն արտահայտությունը, բայց, իհարկե, առանց միջանկյալ «ասէ» *բառի*[2]: Այդ բառի մուծումով Անանունը, ըստ երևույթին, կամեցել է հասկացնել տալ, որ այդտեղ վերջանում են իր օգտագործած ժամանակագրության բառերը, և հետագայում Արշակի մասին պատմության մեջ վերստին անցնում է այն աղբյուրին, որից և վերցված է Մարսյակի մասին հատվածը: Այստեղ, ինչպես և այնտեղ, պատմությունն արվում է «ասեն» հիմքի վրա. «Որդիք չորք ասեն լեալ Արշակայ»[3]. նրանց միջև սերտ կապ կա ոչ միայն իրենց գրական բնույթով, այլև ըստ բովանդակության: Մարսյակի մասին առասպելական պատմության մեջ լսելի է պատմականորեն հավաստի փաստի արձագանք: Արշակունիների երեք ճյուղ էր տիրակալում Առաջավոր Ասիայում՝ Պարսկաստանում, Հայաստանում, սպիտակ հոների կամ էփտալիտների երկրում: Դրանից առաջացել է երեք եղբայրների՝ Արքահամի ընդոծին Մարսյակի որդիների առասպելը: Նրանցից մեկը՝ Փառոխը, հաստատվել է Հայաստանում և նրա սերունդները խառնվել են Արմենակի տոհմի հետ. մյուս երկուսի ճակատագիրն անհայտ է, հուշարձանի պակասավորության պատճառով, բայց դյուրին է կռահել, թե ուր են նրանք մեկնել՝ Պարսկաստան և էփտալիտների մոտ: Առասպելը մի տեսակ ներածություն է կազմում Արշակ Փոքրի պատմությանը և նպատակ ունի մեկնաբանել Արշակ Մեծի կարգադրությունը: Վերջինս իր որդուն նշանակել է Հայաստանում ոչ թե որպես հաղթող, այլ որպես մերձավորագույն ազգական: Դուրս է գալիս, որ հայերը ընդհանուր ծագում ունեն պարթևների հետ:

Մարսյակի և առաջին Արշակների մասին առասպելական պատմության և դրա հետ կողք-կողքի Հայկյանների մասին ոչ պակաս առասպելական «Վիպասանքների» արանքում Եվսեբիոսի ճշմարտացի խոսքը հնչում է որպես ինչ-որ աններդաշնակություն: Այն համեմատաբար ուշ ժամանակաշրջանի նստվածքաշերտ է:

[1] Սեբեոս, էջ 8:

[2] Հրատարակություն Aucher, էջ 299:

[3] Սեբեոս, էջ 9:



Լիակատար հիմք կա մտածելու, որ նախասկզբնական տեքստում այլ կերպ է շարադրված եղել Արշակունիների բարձրացման պատմությունը: Պրոկոպիոս Կեսարացին, ինչպես կտեսնենք ստորև, գիտեր «Հայոց նախնական պատմությունը» նրա հին խմբագրությամբ, որտեղ հստակ դրվում էր պարթևների հայկական ծագումը. կա նաև թափանցիկ ակնարկ այն մասին, որ հենց այնտեղ Արշակունիների սկիզբը հասցվում էր ոչ թե Ալեքսանդր Մակեդոնացու մահից հետո անցած 60 տարում, այլ փոքր-ինչ ավելի վաղ ժամանակաշրջանի: Դրա համար էլ վստահորեն կարելի է պնդել, որ այժմ «մեր առջև դրված է արձանագրության ոչ հարազատ պատճենը» («զսոյն ճառէ ժամանակագիրն, որպես առաջիդ կայ»): Դրա փոխարեն մենք ունենք ինչ-որ վերապատում՝ երկու աղբյուրներից խառնուրդ՝ «ասեն» (արձանագրություն) և «ասէ» (Եվսեբիոս): Ճշմարտության նախանձախնդիր անհայտ մեկը, որը ծանոթ է եղել Եվսեբիոսին, կերպարանափոխել է *նախասկզբնական տեքստը, ընդ որում նրանից* թողել է հայերին վերաբերող բեկորը, որի հավաստիությունը նա չէր կարող ստուգել ըստ Եվսեբիոսի, նետել է մի կողմ Արշակունիների երկու ճյուղերի նախապետների պատմությունը, իսկ պարթևների՝ մակեդոնացիների հետ ունեցած ընդհարումները վերամշակել է ժամանակագրության հիման վրա: Եթե ճշմարիտ է, որ տարեգիրը, որի խոսքերից տրվում է Արշակունիների պատմությունը, ըստ տեքստի իմաստի՝ Ագաթանգեղոսն է, ապա նվազ հավանական չէ, որ փոփոխություններ մտցրած գրագետի տեսանկյունից նա ոչ այլ ոք է, եթե ոչ՝ նշանավոր Եվսեբիոսը (ժամանակագիրն, ն = ille), որին նա վկայակոչում է քաղվածքի վերջում: Ըստ էության տարեգրի անձնավորության հարցը արդեն զուտ ձևական հարց է այն բանից հետո, երբ հաստատված է նրան վերագրվող նյութի տարատեսակությունը:

Ասվածի հետևանքով, մեզ թույլատրելի է, արձանագրությունը փնտրելիս շրջանցել Եվսեբիոսից կատարված մեջբերումները: Տրամադրության տակ մնում է Արշակ Փոքրի պատմությունը, նրան կցված նրա հետնորդների ցանկով, հայկական Արշակունիների պատմությունը, որը հանդիսանում է «արձանագրության» առավել հարմար «պատճենը», որը շարունակում է «հայոց առաջին թագաւորաց տարիները»: Եթե ընդունում ենք ցանկը որպես Ագաթանգեղոսի գործ՝ ելնելով ժամանակագրական կշռադատումներից, մենք դրվում ենք նրանում նստվածքաշերտ, բերովի տարր ընդունելու անհրաժեշտությունը ճանաչելու առջև:

Նման պայմաններում ինքնըստինքյան միտք է ծագում մի կողմ նետել ցանկի վերջին մասը՝ սկսած Արշամից, մաս, որը նույնիսկ ձևականորեն կապված չէ նախորդի հետ. Արշամը դուրս է կանգնած որևէ ազգակցական կապերից նախորդ Տիգրանի հետ: Այդ մասի հեռացումից հետո կմնա թվով

տասը թագավորների մի շարք՝ մինչև Տիգրանը: Իսկական ցանկում այնուհետև հետևում էր հավանաբար Վաղարշի անունը (Տիգրանի որդու, ըստ Խորենացու), իսկ ենթադրաբար նաև Սանատրուկի՝ Տիգրանի և Վաղարշի միջև: Հայտնի է, որ Սանատրուկը, Խորենացու հաղորդմամբ իբրև թե Արշամի զարմիկը, պատմական անձնավորություն չէ. առաջին դարում չի եղել ոչ մի Սանատրուկ հայոց թագավոր: Բայց ի նկատի ունենալով այն ժողովրդականությունը, որ վայելում է հայկական վարքագրական գրականության մեջ Թադեոս Առաքյալին նահատակողը, դժվար է հնարավոր համարել, որ նա մտացածին անձնավորություն է: Նրա մասին եղած ավանդազրույցները, ամբողջ առասպելականությամբ հանդերձ, պետք է, որ որևէ իրական հող ունենան: Հայոց Արշակունիների շարքում հավաստի պատմությունը գիտե միայն մեկ Սանատրուկի[1], Վաղարշի հորը և նախորդին. նա թագավորել է II դարի վերջերին և հիրավի ժամանակակից է եղել Եդեսիայի թագավոր Աբգար IX-ին[2], այն նույնին, որը քրիստոնեություն էր ընդունել: Այն բանից հետո, երբ հյուսվեց Աբգարի մասին նշանավոր առասպելը, որը նրան III դարից փոխադրում է I դար, կամ, ավելի ճիշտ, նրա գործերը վերագրում էր նույնանուն թագավորին՝ Ուխհամային, նույն կերպով և նույն առասպելի ազդեցության տակ հայկական ավանդությունը Սանատրուկին էլ տեղաշարժեց և հարմարեցրեց նրան նույն Աբգարի ժամանակներին: Պետք է ինչ-որ պատմական կապեր եղած լինեին նրանց միջև, որ ճակատագիրն այդպես չէր ուզում նրանց բաժանել միմյանցից: Պատմական Սանատրուկի հետքերը պահպանվել են հայոց գրականության մեջ: Փավստոս Բուզանդի մոտ երկիցս հիշատակվում է «Սանատրուկ թագավորը»՝ մեկ անգամ նա անվանվում է առաքելասպան[3], իսկ մյուս անգամ՝ Մծուրք քաղաքի հիմնադիր, որ նա կառուցել էր Եփրատի վերին հոսանքի շրջանում[4]: Նրա անձյունը հանգչում էր Անիում և այն փորել-հանել էր պարսից զորքը (Դ, 24)[5]: Փավստոսը երկու Սանատրուկներին չի պատկերացնում որպես միևնույն անձ. այդ ճիշտ է համենայն դեպս եթե ոչ Փավստոսի, ապա այն աղբյուրի վերաբերմամբ, որտեղից նա փոխառել է այդ տեղեկությունը: Իսկապես, «առաքելասպանը» ապրել և կառավարել է Արևելյան Հայաստանում՝ Շավարշան կամ Արտազ

[1] **A. Gutschmid**, Geschichte Irans (7).

[2] **A. Gutschmid**, Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroena Abgar IX (179-214/6). «Mèmoires de l'acadèmie de St. P.», tome XXXV.

[3] **Փավստոս Բուզանդ**, Վենետիկ, 1832, Դ, 14:

[4] Անդ, Դ, 24:

[5] Դիոն Կասսիոսը պատմում է, որ Կարակալլա կայսրը խնդրել էր պարսից թագավորի դստեր ձեռքը, և ի վրեժխնդրություն մերժման համար՝ արշավել էր Պարսկաստան 217 թվականին, գրավել էր Արբելան և «Τὰ μνημεῖα τὰ βασιλικὰ τῶν Πάρθων ἀνορύξας τὰ ὀστᾶ ἔρριπεν». ОН. 1. Հրատարակությունը Բեկկերի, էջ 418:



գավառում: Իսկ մյուս Սանատրուկը հանդիսանում է թագավոր ճիշտ և ճիշտ Հայաստանի հակադիր Արևմտյան մասում, որը հարում էր Եփրատին և որի նստավայրն էր Մծուրքը: Նրա գերեզմանը դեռևս երկրում մնում էր հիշողության մեջ, III դարի կեսերին: Հավանաբար այստեղ բանը վերաբերում է ոչ թե անփառունակ առաքելասպան թագավորին, որը վախճանվել էր երեք դար առաջ, այլ արդեն ոչ վաղ անցյալի թագավորներից մեկին: Մեկ դեպքում մեր առջև պատմական անձնավորություն է, իսկ մյուս դեպքում նրա կերպարանափոխությունը, եթե թույլատրելի է այդպես արտահայտվել: Ամբողջ ասվածը դեռևս չի ապացուցում, որ Սանատրուկը նշված է եղել Անանունի մոտ, բայց այն հնարավոր է դարձնում նման ենթադրությունը, որը թույլատրելի է «Նախնական պատմություն» ներածական բառերի իմաստով: Ագաթանգեղոսի արձանագրությունը գտան Սանատրուկ թագավորի պալատի պեղումների ժամանակ: Հետևաբար, ենթադրվում է, որ նա թագավորել է Տրդատից՝ արձանագրության պատճառ հանդիսացողից հետո: Բայց Տրդատից հետո այդպիսի թագավոր չի եղել: Իսկ ինչպե՞ս հասկանալ հեղինակին: Առանձին հարկ չկա, որ Սանատրուկը անպայման ապրեր Տրդատից հետո: Բավարար է, եթե նա արձանագրություն գրել տված Տրդատի մերձավորագույն նախորդներից լիներ: Որպես այդպիսին, Սանատրուկը ի մի է ձուլվում Մծուրքի հիմնադրի հետ: Նա կառուցել է քաղաքը, նրանում կանգնել պալատներ: Նրա մահից հետո ինչպես քաղաքը, այնպես էլ պալատները չեն դադարել հիմնադրի անունը կրելուց: Նրա մերձավոր հաջորդներից մեկի՝ Տրդատի, օրով պալատի սյուներին փորագրվում է արձանագրություն, որը և հայտնաբերվում է հետագայում արդեն ավերակների վերածված պալատը պեղելիս:

Նշված ժամանակագրական անհամապատասխանությունը հարթելու նպատակով այլակերպ փորձեր են արված: Ենթադրել են, որ արձանագրության Տրդատը ոչ մի ընդհանուր բան չունի Գրիգոր Լուսավորչի հայտնի համագործակցի հետ և Անանուն հեղինակը ի նկատի է ունեցել ուրիշ Տրդատի, մոտավորապես առաջին Արշակունիներից մեկին, որը կրել է այդ անունը[1]: Կարծիքը խախուտ է և չի համերաշխվում մեզ զբաղեցնող հուշարձանի իսկական բնույթի հետ: Գրականության այդպիսի արտադրանքները ազուցվում են մեծահռչակ անուններին՝ դրանց ավելի մեծ հավաստիություն տալու նպատակով: Լիովին բնական է, որ անանուն զրույցը շաղկապվեր Հայոց պատմության և հոգևոր կյանքի մեջ ժողովրդականություն վայելող Տրդատին ու Ագաթանգեղոսին և ոչ թե ինչ-որ մի անծանոթ անձնավորության, որին մեզ հաջողվեց հարություն տալ սոսկ XIX դարում, շնորհիվ դրամագիտության: Նա, ով վերագրել է «Նախնական պատմությունը» Ագաթանգեղոսին, հիանալի է իմացել իր գործը: Ագա-

[1] **Н. Марр**, «О Начальной истории Армении» Анонима. См. «Византийский временник», т. I, вып. 2, 1894.

թանգեղոսը առաջինն էր գրառել երկրի իրադարձությունները և նրան էր վայել, ինչպես ոչ այլ ոքի, լինել հեղինակը այն պատմության, որը շոշափում էր հայրենի անցյալը առավել հեռավոր ժամանակներում և ընդհատվում էր հենց այնտեղ, որտեղ սկսվում էր Ագաթանգեղոսի բուն աշխատությունը: Արժանագրության մասին լեգենդի հեղինակը հիանալի գիտեր, որ Ագաթանգեղոսն է նկարագրել Տրդատի գործերը, բայց որ հենց նույն Ագաթանգեղոսը կարող էր կազմել «զամս և զաւուրս հին թագաւորացն» մինչև Տրդատը՝ դրանում նա ոչ մի անհավանական բան չէր տեսնում: Նա հավատարիմ է իրեն, երբ ստիպում է Ագաթանգեղոսին փորագրել վեմի վրա, դրանով վերջ է տրվում հնարավոր կասկածներին. իսկ ինչո՞ւ Ագաթանգեղոսի աշխատությունը չի պահպանվել «Հայոց դարձի» կողքին: Պատասխանը պարզ է՝ Ագաթանգեղոսը գրել է սյան վրա, իսկ սյունը հայտնագործվել է ուշ և պատահական ձևով: Ամեն ինչ այստեղ մտածված է. Տրդատի անունը չի կարելի վերացնել, այն լույսի ճառագայթ է, որոշելու համար Անանունի ծավալը:

Շարադրված կշռադատումներից ելնելով, մենք անձամբ ավելի, քան հավանական ենք համարում, որ Անանունի ցանկում Սանատրուկը նշված է եղել: Այն տեղը, որ նա գրավել է թագավորների շարքում, կտրուկ կերպով տարամերժվել է ավանդությունից. այս պարագան քիչ մեղսակցություն չունի վերը նշված թերթերի խառնման մեջ, ձեռագիրը վնասվելու հետևանքով: Սանատրուկի հաջորդի և որդու՝ Վաղարշի առաջին գլխի ցանկը և հենց առաջին գլուխը սերտորեն կապակցվում են երկրորդ գլխի համաժամանակային աղյուսակին, որը սկսվում է Վաղարշի որդի Խոսրով Մեծով: Մենք չենք պնդի, որ Անանունի մոտ եղած իսկական ցանկը եղել է ճիշտ առաջարկված ձևով և ոչ թե մի ուրիշ: Հարցը կարևոր է սկզբունքային առումով, որ ցանկը աղավաղված է, և այդ կասկածի ենթակա չէ: Իսկ վերականգնված ցանկի ճշմարտացիությունը զարմանալի է, թե որքան է մեծանում, երբ համադրում են Խորենացու հետ:

Գլխավոր և գրեթե միակ տարբերությունը նրանում է, որ Խորենացին հանել է ցանկից Անանունի մոտ եղած երեք թագավորների՝ Արտավանին, Արշավիրին և Արշակին և փոխարինել է նրանց նոր՝ Անանունին անծանոթ անձնավորություններով, որոնց թվում նշված են նաև Եդեսիայի թագավորներ Արշամը և Աբգարը: Այստեղից պարզ է դառնում, որ անանուն նյութը Խորենացին վերամշակել է մի այնպիսի ժամանակ, երբ ազգային ավանդույթը հասցրել էր արդեն հայացնել ասորական կառավարող Աբգար Ուհհամային: Այդ նույն ավանդության մեջ հայոց Սանատրուկի ճակատագիրը ագուցվում էր «բարեպաշտ հորեղբոր» պատմությանը, և ահա Խորենացին տեղափոխում է Սանատրուկին՝ դարձնելով նրան Աբգարի հաջորդը: Շնորհիվ կատարված փոփոխությունների, նրա մոտ ստացվել է մի նոր շարք՝ 14 հոգուց, երկուսով ավելի Անանունի մոտ եղածից: Վերջինիս մոտ 12-ական հոգի են թագավորների պարսից և հայոց ճյուղերում: Հավասարակշռությունը չխախտելու համար Խորենացին պետք է երկարացներ նաև



պարսից ճյուղը՝ հայկականի համաչափ: Հայտնի է, թե որքան բարձր է գնահատում նա անդամների թվի հավասարությունը տոհմածառերի մեջ՝ դրանում տեսնելով ծագումնաբանության ճշտության մեծ ապացույց[1]: Պարթևական թագավորների թիվը նա հասցրել է 14-ի հասարակ եղանակով: Առաջին երկու Արշակների համեմատաբար երկարատև գահակալության ժամանակը Խորենացին բաշխել է չորսի միջև. այլ կերպ ասած, երկատել է նրանց՝ Արշակ I-ի փոխարեն հանդես են գալիս Արշակ և Արտաշես, որոնք միասին կառավարում են այնքան, որքան Անանունի մոտ միայն Արշակը: Արշակ II-ի փոխարեն հանդես են գալիս նույնպես երկու անձնավորություններ՝ Արշակը, որը կառավարում է 53 տարի և Արշականը, ընդ որում խիստ հետաքրքիր է, որ վերջինիս հատկացվում է 30 տարի, սպասված 17-ի փոխարեն, որպիսի թիվ մնում է, երբ 70-ից հանում են 53: Խորենացին այդպես է վարվել ժամանակագրությունը որքան հնարավոր է շատ ցանկալի զուգահեռականության հասցնելու բացառիկ նպատակով: Երկարացնելով Արշականի տարիները, նրա հաջորդ Արշականին Խորենացին դարձրել է Հայոց թագավոր Տիգրանի ժամանակակիցը, որը հայկական ճյուղում գրավում է ճիշտ այնպիսի տեղ, ինչ որ պարսկականում Արշականը: Այնուհետև զուգահեռականությունն ընթանում է հաստատուն հետևողականությամբ:

Ինչ վերաբերում է բուն ժամանակագրությանը, ապա Խորենացին խստորեն հետևում է իր աղբյուրին: Խորենացու մոտ թվական տվյալների մեջ թափանցած սխալները ուղղելուց հետո ավելի հստակ է դրսևորվում պատմիչի մերձավորությունը Անանունին: Պարսկական մասում թվերը համընկնում են ամենուր. նվազեցրել է նա սոսկ Արտաշիրի և Պերոզի տարիները 26-ով և 30-ով = 56 տարով և ավելացրել է Արշականի ժամանակը 13-ով (83՝ 70-ի փոխարեն): Դրա հետևանքով Խորենացու մոտ ստացվում է 56-13 = 43 տարվա պակասորդ Անանունի համեմատությամբ: Իսկ դա բացատրվում է պարսկական ժամանակագրությունը հայկականին հարմարեցնելու Խորենացու ձգտմամբ: Բավական է հպանցիկ հայացք, որպեսզի համոզվես հայկական մասի ժամանակագրության Անանունից կախվածության բնագրային բնույթի մեջ: Արշակունիների զբաղեցրած ժամանակը Խորենացու մոտ մնում է անձեռնմխելի ամբողջ ընթացքում: Ամբողջ տարբերությունը սոսկ նրա բաշխման մեջ է, որում նա տարամերժվում է Անանունից՝ հարմարվելով ցանկի նոր կազմին: Առաջին Արշակունին Անանունի մոտ ունի 42 տարի. պատմիչը դրանցից 20-ը փոխանցում է Արշամին. Արշակի տարիները հատկացվում են Աբգարին ամբողջությամբ. Սանատրուկը փոխում է տեղը՝ պահպանելով իր տարիները: Արտավանի և Արշավիրի 24 տարին[1] փոխանցվում է Տիգրանի և Արտավազդի հաշվին, իսկ լրացնելու համար 11-12 տարվա պակասը, համապատասխան թվով տարիներ վերցվում են Տիրանից ու Արտաշեսից, որը կառավարել էր բոլորից

[1] Մովսես Խորենացի, Գիրք Ա, 5:

երկար: Մյուս անդամները, որոնք մնացել են իրենց տեղերում, պահպանել են նաև իրենց թվերը:

Տարիների ընդհանուր գումարը Խորենացու և ենթադրաբար Անանունի մոտ հավասարվում է 328-ի՝ սկզբից մինչև Խոսրովը, և 358-ից մինչև Խոսրովի 30 տարին, այսինքն՝ մինչև Արտավանի մահը (գլ. երկրորդ), իսկ պարսից թագավորների տարիների գումարը համապատասխան ժամանակամիջոցում, այսինքն՝ Արշակ II-ից մինչև Արտավանը, հավասար է (500-57) = 443-ի: Մենք նման թիվ կսպասեինք նաև հայ Արշակունիների համար: Մեր սպասումները, սակայն, այդ առնչությամբ ոչ բոլորովին են հիմնավոր: Նկատենք, որ Անանունի մոտ առաջին թագավորները մինչև Արշավիրը, դուրս են կանգնած ազգակցական իրավունքներից: Իսկ Արշավիրից հետո ազգակցական կապը չի խզվում: Եվ ամբողջ շարքը ներկայացնում է ժառանգաբար իջնող գիծ՝ հորից որդուն կամ եղբորից եղբորը: Այստեղ մենք իրավունք ունենք պահանջելու ժամանակի համապատասխանություն ցանկերում: Եվ իիրավի, որոշ չափով այն առկա է: Խոսրովի տարիները (մինչև 30-ը) համընկնում են Արտավանի ժամանակին, Վաղարշը և Սանատրուկը կանգնած են Վաղարշի հանդիման, Տիգրանը և Տիրանը՝ Պերոզի և այլն: Հարստության առաջին ներկայացուցիչների մեկուսացվածությունը, հավանաբար, պետք է մեկնաբանվի այն իմաստով, որ հեղինակը նրանց միջև ենթադրում է միջթագավորություն, երբ պարսից թագավորները ժամանակավորապես զավթում էին հայոց գահը: Թույլատրելի է, իհարկե, մտածել, որ այդ մասում թվերը, գուցե և անունները, աղավաղված են[2]: Ինչևիցե, բայց ճշմարիտ է, որ հենց այդպիսի անգոհացուցիչ տեսքով է ցանկը դրված եղել Խորենացու առջև: Խորենացին փորձել է համաձայնեցնել երկու ցանկերը. վրիպումները, որոնք նա թույլ է տվել այդ դեպքում, կարելի է բացատրել նրա նախընտրած ձևի՝ զուգահեռականության, օգնությամբ:

Թագավորների շարքում Երվանդը իր տեղով համապատասխանում է Դարեհին ինչպես Խորենացու, այնպես էլ Անանունի մոտ: Նա պետք է համընկնի նրան և ժամանակով, համաձայն Անանունի: Նման համա-

[1] Ընդ որում, հասկացե՞լ է արդյոք Խորենացին Անանունին մեր իմաստով (տե՛ս վերի աղյուսակի 6-րդ ծանոթագրությունը), թե՞ օգտվել է նա մեկ ուրիշ աղբյուրից, որի վերաբերյալ կան նաև այլ բնույթի տվյալներ. ինչպես կտեսնենք հետո՝ դրանից գործի էությունը չի փոխվում: Անկասկած, ինչ-որ կապ կա այդ 12 տարիների և նրանց միջև, որոնք Խորենացին հատկացրել է Տիգրանի ժամանակակից Արշականի գահակալությանը:

[2] «Արտավան» անունը բացառապես պարսկական է, իսկ Արշավիրը կարծես թե միևնույն անձն է, նրան ժամանակակից պարսից նույնանուն թագավորի հետ: Հետաքրքիր է, որ երկրորդ գլխում երկու միջթագավորությունները Խոսրովից և Արշակից հետո սահմանվում են 11-12 տարի: Արդյոք պարսից Արշավիր թագավորը չէ՞ զավթել հայոց գահը 12 տարով: Հավանաբար, Խորենացին ևս թերհավատորեն է վերաբերվել նրանց և մասամբ դրա համար էլ շրջանցել է դրանք:



պատասխանություն դրվում է նաև նրա հաջորդների և նրանց պարսկական երկվորյակների միջև: Բայց երբ ցանկը մշակելիս նա Սանատրուկին երկրորդ մասից փոխադրել է առաջին մաս, ինչպես նաև կրճատել է Արտաշեսի տարիներն այլ նպատակներով, ապա դրանով խախտել է ժամանագրական զուգահեռականությունը՝ նվազեցնելով ժամանակը [30+11+(1)] = 41-2 տարով: Որպեսզի վերականգնի այն, Խորենացին պետք է նույնքան ժամանակ պակասեցներ պարսից ցանկի համապատասխան մասում: Եվ նա կարճացրել է Արտաշիրի և Պերոզի երկարատև գահակալությունները, ընդ որում պահանջվող 42-ի փոխարեն ընտրել է 56-ը՝ ուշադրության առնելով նաև Արշականի ավելորդ տարիները: Բայց այդ գործողությունը միաժամանակ պահանջում էր պարսից տիրապետության ժամանակի կրճատում, հավասարակշռության համար պահանջվում էր հայկական տիրապետության հավասար կրճատում, այլ կերպ ասած՝ 2-րդ մասից առաջին մաս փոխանցված 41-42 տարին հարկ էր վերացնել: Խորենացին այդպես էլ վարվել է՝ 41-42 տարով առաջ մղելով հայոց Արշակունիների սկիզբը: Այդ հանգամանքը բացահայտում է Խորենացու և Անանունի տարաձայնությունը առաջին Արշակունու վերաբերյալ: Ըստ Անանունի Արշակը՝ պարթևական առաջին թագավոր Արշակի հարազատ որդին, նշանակվում է նրա իսկ կողմից կյանքի վերջին տարում, իսկ Խորենացու մոտ Վաղարշակը Արշակ Քաջի եղբայրն է և Հայաստան է գալիս նրա օրոք, նրա գահակալության 41-րդ տարում: Ծագումնաբանական առումով Խորենացին հարազատ է բնագրին, քանզի Արշակ Քաջը, որ Խորենացու մոտ ձևականորեն, ինչպես տեսանք, հայտնվել է 3-րդ տեղում, առաջին պարթև Արշակունու որդին է ըստ Անանունի: Տարբերությունը միայն նրանում է, որ Վաղարշակը Հայաստան է ուղարկվում ոչ թե հոր, այլ եղբոր կողմից: Խոտորումը ակամա էր՝ եթե ստիպված էր տեղաշարժել Վաղարշակի նշանակումը, որն այդ դեպքում համընկնում էր Արշակի եղբոր գահակալության ժամանակին: Այդպիսով, նվազեցնելով պարսից թագավորների տարիները և նույնքանով առաջ տանելով հայկական հարստության սկիզբը, Խորենացին շահել է 84 տարի հօգուտ հայկական ժամանակագրության: Բայց ներդաշնակություն հաստատելու այդ ջանքերի հետ մեկտեղ, նա, իր համար աննկատ, իրեն ներքաշել է կոպիտ անհետևողականության մեջ՝ պարթևների տիրապետության ծայրակետը դնելով ըստ Անանունի, դրանով իսկ պարթևների տիրապետության ընդգրկած ժամանակամիջոցը կրճատել է 42 տարով, հակառակ այդ նույն Անանունի: Վրիպումը լիովին բավական է մտքի այնպիսի ուղղության պայմաններում, որում աշխատում էր այն Խորենացու մոտ, որը կլանված էր միմիայն երկու ցանկերի հարաբերակցությամբ:

# ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ՑԱՆԿԸ
## ՊԱՐԹԵՎԱԿԱՆ

| ԸՍՏ ԱՆԱՆՈՒՆԻ | ԸՍՏ ԽՈՐԵՆԱՑՈՒ |
|---|---|
| I. Արշակ..............56\|57 | { 1. Արշակ Քաջ..........................31<br>2. Արտաշես...............26 }<br>{ 3. Արշակ Մեծ........................53<br>4. Արշական................30 } |
| II. Արշակ.............70 | |
| III. Աշնաշ..............32 | 5. Արշանակ...............32[5] |
| IV. Արշեն .............22 | 6. Արշես..................... 22 |
| V. Արշավիր...........45 | 7. Արշավիր ...............45[4]. |
| VI. Արտաշես.........34 | 8. Արտաշես................34 |
| VII. Դարեհ...........30 | 9. Դարեհ ................... 30 |
| VIII. Արշակ..........17 | 10. Արշակ....................17[1] |
| IX. Արտաշիր.......46 | 11. Արտաշիր ..............20 |
| X. Պերոզ .............64 | 12. Պերոզ ...................34 |
| XI. Վաղարշ.........50 | 13. Վաղարշ.................50 |
| XII. Արտավան....36 \| 33[2] | 14. Արտավան..............36 \| 33 |
| +502 \| 500 | + 459 \| 457 |



# ՀԱՅԿԱԿԱՆ

| ԸՍՏ ԱՆԱՆՈՒՆԻ | ԸՍՏ ԽՈՐԵՆԱՑՈՒ |
|---|---|
| I. Արշակ.................42 | 1. Վաղարշակ...........22 |
| II. Արշակ................13 | 2. Արշակ .................13 |
| | 3. Արտաշես .............25 |
| III. Արտաշես .........25 | 4. Տիգրան................33(34)[5]<br>5. Արտավազդ.........2-3 } 36 |
| IV. Արտավան........12 [6]<br>V. Արշավիր............12 } 12 | 6. Արշամ ................20<br>7. Աբգար.................37[4] |
| VI. Արշակ...............37 | 8. Սանատրուկ.......30 |
| VII. Երվանդ............21 | 9. Երվանդ..............21[3] |
| VIII. Արտաշես .........52 | 10. Արտաշես..........41 |
| IX. Տիրան................21\|22[7]<br>X. Տիգրան................42 | 11. Արտավազդ<br>12. Տիրան } 21 |
| XI. Սանատրուկ .....30 | 13. Տիգրան..............42 |
| XII. Վաղարշ............20 | 14. Վաղարշ............20 |
| +328 | +328 |

**Ծանոթագրություններ**. Մովսես Խորենացու «Հայոց պատմության» Բ գրքի 68 և 69 -րդ գլուխներում տրվում է պարսից Արշակունիների լրիվ թվարկումը՝ նրանց կառավարման ժամանակի նշումով: Տարօրինակ է, որ հետազոտողները օգտվում են, ըստ երևույթին, բացառապես այդ տեղից, զանց առնելով Խորենացու մոտ եղած ուրիշ ժամանակագրական տվյալներ: Դրա համար էլ նրանք չեն նկատել այնտեղ սողոսկած սխալները, որոնք հեշտ ուղղելի են նույն Խորենացու ցուցումների հիման վրա: Այսպես.

1) 69-րդ գլխում Արշակին տրվում է 19 տարի, որը բացահայտ վրիպակ է 17-ի փոխարեն: Ըստ Խորենացու, Արտաշես II-ը թագավորել է 41 տարի (Բ, 60)՝ Դարեհի 29-րդ տարուց (Բ, 47) մինչև Պերոզի 3-րդ տարին (Բ, 62): Նրա ժամանակը, հետևաբար, ընդգրկում էր Դարեհի 2-րդ տարին + 10 Արշակի + 20 Արտաշիրի և ևս Պերոզի 2 տարին: Նրա 3-րդ տարում գահ բարձրացավ Տիրանը, իր եղբայր՝ Արտավազդի մահից հետո, որը կառավարեց սոսկ մի քանի օր (յետ սակաւ աւուրց, Բ, 61): Այդպես տարիների թվագրումը = 41-ի միայն այն դեպքում, երբ Արշակին տրվի 17 տարի, լիովին համաձայն Անանունին:

2) Ըստ 69-րդ գլխի «Արտաւան ամս 31». կոպիտ վրիպակ է, փոխանակ 36-ի, ինչպես Անանունի մոտ է: Խոսրով Մեծը թագավորել է 48 տարի (Բ, 74). եթե Արտավանին հատկացնենք 31 տարի, այնժամ Խոսրովը պետք է Արտավանից ավելի ապրեր (48-31) = 17 տարի, նրանց միաժամանակ գահ բարձրանալու դեպքում, բայց Խոսրովը գահ է բարձրացել Արտավանի 3-րդ տարում (Բ, 65), դրա համար էլ նրանց մահվան միջև ընկած ժամանակամիջոցը մեծանում է ևս 2 տարով = 19 տարի: Խորենացին Խոսրովի մահը որոշակի դնում է 259 թվականին: Նրա սպանությունից հետո վրա հասած միջթագավորությունը՝ 27 տարի (Բ, 77), դադարեց Տրդատի գահ բարձրանալով, որը տեղի ունեցավ Դիոկղետիանոսի 3-րդ տարում (Բ, 82), այսինքն 286 թ. (և ոչ թե 287 թ., ինչպես որ սխալմամբ համարում են). ըստ այդմ էլ Խոսրովի մահը ընկնում է (286-27)= 259 թվականին: Իսկ Արտավանը սպանվեց Փիլիպպոսի (244-249) օրոք, որը օգնություն էր ցույց տվել Խոսրովին Արտաշիրի դեմ (Բ, 71-73): Եթե անգամ ենթադրենք, որ Արտավանի մահը համընկնում էր Փիլիպպոսի առաջին տարում, ապա այդ դեպքում էլ չի ստացվի 19-ամյա ժամանակամիջոց մինչև Խոսրովի մահը: Արտավանի համար 36 տարի կարդալու դեպքում ժամանակամիջոցը կրճատվում է մինչև 48-36+ 2=14 տարու և Արտավանի մահը ընկնում է 246 թվականին (հաշվելով նաև 259 թվականը), Խորենացու ցուցման համապատասխան: Մեզ թվում է, սակայն, որ ավելի հավանական է 33 թիվը երկուսի համար էլ՝ և՛ Անանունի և՛ Խորենացու: Ըստ Սեբեոսի երկրորդ գլխի, Արտավանը վախճանվել է Խոսրովի 31-րդ տարում, իսկ Խորենացին, ինչպես ասացինք, Խոսրովի գահակալության սկիզբը վերագրում է Արտավանի 3-րդ տարուն: Քանի որ երկրորդ գլուխը մենք համարում ենք օրգանապես կապված առաջինին, և նրանց երկուսից էլ Խորենացին օգտվել է, ուստի իրավացիորեն նույնացնում ենք զույգ ցուցումները. եթե Խոսրովի 1-ին տարին = Արտավանի 3-րդ տարուն, ապա Խոսրովի 31-րդ տարին կարող է համապատասխանել սոսկ Արտավանի 33-րդ տարուն. հետևաբար, նա թագավորել է 33 տարի: Այդ թիվը հաստատում է գտնում տեքստում: Արշակունի թագավորների տարիների ընդհանուր գումարը նշված է 573, հակառակ դրանց առկա գումարի՝ 576. փոխանակ շհգ ուղղելու և



դարձնելու շհ գ գերադասելի է լգ կարդալ լգ: Այնուհետև, Պրոկոպիոսի վկայությամբ, «Նախնական պատմության» մեջ Արշակունիների տիրապետությունը հաշվվում է 500 տարի: Եթե առաջին Արշակունու թիվը ուղղենք 56-ից 57-ի համաձայն Խորենացու և նրա հիման վրա, որը ոչ մի շահագրգռվածություն չի ունեցել տվյալ դեպքում շեղվելու բնագրից, ապա մեր Անանունի մոտ էլ կստացվի 500 թիվը, կամ ներառելով Արշակի կյանքի տարիները ևս, 574՝ շհդ, շհգ-ի փոխարեն, որն իր հերթին է խոսում հօգուտ լգ -ի վերականգնման. փոքր-ինչ ավելի դժվար է դ -ի (շհդ - ում) անցումը գ-ի: Արտավանի մահն այդ հաշվով վերաբերում է (500-251) = 249 թվականին, այսինքն՝ այս դեպքում էլ այն ընկնում է Փիլիպպոսի գահակալությանը, որը չի հակասում Խորենացուն: Միակ դժվարությունն այն է, որ այդ ընթերցման դեպքում Խոսրովի մահը տեղի է ունենում 10 տարի անց, փոխանակ սպասված 15-ի (48-33): Այդ պարագան հնարավոր է լիովին բացատրել Ագաթանգեղոսի ազդեցությամբ, համաձայն որի էլ, ըստ էության, Խորենացին շարադրում է Խոսրովի պատմությունը (տե՛ս նաև ծանոթագրությունների վերջը):

3) Ըստ Բ, 46-րդ գլխի Երվանդը «կալեալ զթագաւորութիւն ամս 20»: Այդպես է բերվում նաև հետազոտություններում (Մառ, Մալխասյանց և ուրիշներ), բայց ճիշտ չէ, քանզի նա կառավարել է, ըստ Խորենացու իսկ, Դարեհի 8-րդ տարուց ( Բ, 37) մինչև 29-րդ տարին, հետևաբար 21 տարի, համաձայն Անանունի:

4) Ըստ Բ, 68-րդ գլխի Արշավիր «ամս 46»: Խորենացու մոտ նկատելի ձգտման պայմաններում՝ պահպանել թագավորների տարիները համեմատ Անանունի, հասկանալի պատճառ չկար մեծացնելու Արշավիրի ժամանակը մեկ տարով: Միավորը միանգամայն ավելորդ է և առաջ է եկել նույնանիշ միավորի նստվածքով նրան ժամանակակից Արզաքի տարիների վրա: Արզաքի իսկական թիվը ոչ թե լը է (ինչպես Բ, 33), այլ՝ լէ տարի (ոչ այլ ինչ է, եթե ոչ Արշակի տարիները՝ փոխանցված Արզաքին): Այդ երևում է հետևյալից. եթե Արզաքին հաշվենք 38 տարի, ապա տարիների գումարը մինչև Խոսրովի մահը = 261 (38+30+21+41+21+42+20+48), իսկ քանի որ Արզաքը գահ է բարձրացել Քրիստոսի ծննդից մեկ տարի առաջ (Բ, 36), ապա Խոսրովի սպանությունը ընկնում է 260 թվականին: Խոսրովի մահվան ճիշտ թվականը 259 թիվն է (տե՛ս ծանոթ. 2): Մակերեսային հաշվի դեպքում, այն է, ընդունելով 287 թվականը Դիոկղետիանոսի 3-րդ տարին, հեշտ է ստանալ 260 թվականը Խոսրովի համար: Հաշվի ճշտությունից զատ, այդ թիվը չի համերաշխվում Խորենացու ցուցման հետ, ըստ որի Խոսրովի մահվան ժամանակ Վալերիանոսը դեռևս կենդանի էր և վախճանվեց շուտով դրանից հետո (Բ, 76. «ոչ ժամանէ մերոյ աշխարհիս բեւարկել Վաղերիանոս, նաեւ ոչ յերկարէ զկեանսն»): Իսկ Վալերիանոսը կառավարել է սոսկ մինչև 259 թվականը (այդ թվականին նա չի մահացել, ինչպես կարծում է Խորենացին, այլ գերի է ընկել պարսից թագավորի ձեռքը, զիջելով գահը Գալիենոսին, այլ մահացել է ավելի ուշ՝ 266 թվականին): Դրա համար էլ 259 թվականի վերաբերյալ, որպես Խոսրովի մահվան տարու, կասկած լինել չի կարող. ի շահ դրա, Արզաքին պետք է տալ միայն 37 տարի և ոչ թե մեկ տարի պակասեցնել Երվանդից, ինչպես արել են արտագրողները, ամենայն հավանականությամբ, այդ նույն դիտավորությամբ: Երկարացնելով մեկ տարով (պարզ վրիպումով՝ ը փոխանակ է) կամ ոչ ճիշտ ընթերցմամբ (թուր փոխանակ հայրն)] Արզաքի կառավարումը, որ տևել է Արշավիրի 20-րդ տարուց (Բ, 26)

մինչև Արտաշեսի 12-րդ տարին (Բ, 36) նույնքան էլ ավելացրել են Արշավիրի *ժամանակը*՝ պահպանելու համար ժամանակագրությունը:

5) Բ, 68-րդ գլխում «Արշանակ ամս 31. Արշէզ ամս 20»: Տիգրանի, Արշանակի և Արտավազդի գահակալությունը ընդգրկում է Արշականի 19-րդ տարուց (Բ, 14) մինչև Արշեսի կյանքի վերջը (Բ, 24) ընկած *ժամանակը*: Տիգրանը միայնակ կառավարել է 33 տարի (Բ, 19), և եթե Արշականին տանք 31 տարի, իսկ Արշեսին 20 տարի, ապա հազիվ կստացվի Տիգրանի 32-3 տարին: Իսկ Արտավազդի գահակալությունը, թեև կարճատև (պատմականորեն 30-33), *Խորենացին, համենայն դեպս*, օրերով չի հաշվում՝ դատելով նրան վերագրվող արշավանքներից: Այն բանից հետո, երբ Խորենացու բոլոր խոստումները Անանունից շինծու դուրս եկան՝ 31 և 20 թվերը վստահության արժանի չեն: Որ 31-ի փոխարեն Խորենացու մոտ առաջ գրված է եղել 32, երևում է Ասողիկից: Եթե Արտավազդին հատկացվի 2-3 տարի, իրավացիորեն կարող ենք Արշեսի 20 տարին ուղղել և դարձնել 22: Միայն այն պատճառով, որ ամենուր ճշտապահ Խորենացին պատահաբար բաց է թողել ու չի նշել Արտավազդի տարիները, գրիչները վրիպակ են թույլ տվել: Տեքստային և ժամանակագրական բնույթի խոչընդոտներ չկան կարդալու «ի քսաներորդի երկրորդի ի կատարումն ամաց թագաւորութեան Արշէզի թագաւորի Արշամ», փոխանակ «քսաներորդի» ինչպես հրատարակության մեջ է (Բ, 24):

6) Տեքստում «Արտաւան և Արշաւիր ամս 12», որը երկուսի համար շատ քիչ է: Եթե հուշարձանը թարգմանություն է հունարենից, ապա հնարավոր է, որ հեղինակը ճիշտ չի հասկացել հունարեն տեքստի *συνδώδεκα* արտահայտությունը: *σύν* նախդիրը թվականի հետ միացության մեջ ունի նաև բաշխիչ նշանակություն՝ *συντρείς* = լատինական terni, *συνδώδεκα* = 12-ական, և ոչ թե միասին 12 տարի. տե՛ս նաև **Kühner**, Ausfürl, Gramm. I, 624:

7) Խորենացու համար շահ չկա դնելու 21, եթե Անանունի մոտ եղել է 22, առավել ևս, որ նա ծանոթ է նաև Արտավազդին: Երկուսների շարքը (52, 22, 42) կասկած է հարուցում: Հավանականությամբ թույլ ենք տալիս նաև 21 թիվը Անանունի համար:

Այդպիսով տեսնում ենք, որ Խորենացին խստիվ հետևում է Անանունին: Նրանից տարաձայնվում է միայն Արտաշեսի և Պերոզի ժամանակը նշելիս, որը 56-ով նվազեցրել է Անանունի հանդեպ: Նշանակում է, Խորենացու մոտ տարիների գումարը պետք է հավասարվի 457-ի կամ 459-ի, Անանունի 500-ի կամ 502-ի կապակցությամբ [այսինքն 500-(Արշակունիների 56-13)= 457-ի]: Հետաքրքիր է, որ Ասողիկը նույնպես Արշակունիների տիրակալությունը հաշվում է 457 տարի՝ նծէ, ընդորում, նա ներկայացնում է հետևյալ *ցանկը* (բերում ենք ըստ Մալխասյանցի գրքույկի, ձեռքի տակ չունենալով տեքստը):



1. Արշակ ......................57 (կամ 26 Արտաշիրի հետ)
(Արտաշիր................31)
2. Արշակ ......................52.......... -1
3. Արշական...................30
4. Արշանակ ..................32
5. Արտաշես ................ 20........... -2
6. Արշավիր ..................46............+1
7. Արտաշես .................31 ........... -3
8. Դարեհ .......................30
9. Արշակ .......................19 ............+2
10. Արտաշես ................20
11. Պերոզ ......................34
12. Վաղարշակ .............50
13. Արտավան ..............36.............+3

+ նծէ = 457

Եվ այսպես, տարիների գումարը, իհարկե, հավասարվում է 457-ի: *Բայց Խորենացու ճիշտ* ցանկի համեմատ թվերում տեղ գտած սխալները ակնհայտ են: Դժվար է թույլ տալ Խորենացու հետ ունեցած ընդհանուր վրիպումներում (Արշես- 20, Արշավիր - 46, Արշակ- 19) այդպիսի խաղ հնություն, և մտածել, որ նրանք Ասողիկի մոտ են ընկել Խորենացու *բնագրից*: Իմ կարծիքով, սկզբնապես Ասողիկի մոտ թվերը դրված են եղել Խորենացուն լիովին համապատասխան և դրանց աղավաղումները կապակցության մեջ են գտնվում այն վրիպումների հետ, որոնք ժամանակի ընթացքում ներթափանցել են Խորենացու երկի մեջ: Տարիների ավելցուկը (6 + ) և պակասը (6 -) Խորենացու վերաբերմամբ հավասարակշռում են մեկը մյուսին և դրա համար էլ նծէ, որը հասնում է մինչև իսկական ցանկը, մնացել է անփոփոխ: Առավել ևս հետաքրքիր է, որ Ասողիկի բոլոր կոպիտ վրիպումները կենտրոնացված են երկրորդ գլխի ցանկերում (անգամ Պերոզի թիվը լգ փոխանակ լդ - նկատի առնելով գումարը), որը հաստատում է ընդմիջարկման փաստը և ապացուցում է նրա նշանակալիորեն ավելի ուշ ծագումը:

Թագավորների քննարկված ցանկերը այնուհետև շարունակվում են անմիջապես (առանց ընդմիջարկման) հաջորդ երկրորդ գլխում: «Նախնական պատմության» հաստատվող կապն այդ գլխի հետ, հասկանալի է, չպետք է ըմբռնել նրանց ընդհանուր ծագման իմաստով, որ նրանք երկուսն էլ տվյալ տեղում պատկանում են մի գրչի՝ Սեբեոսի գրչին: Գլխի հենց սկզբում հանդիպում ենք մի դժվարության, տարօրինակ կերպով Արտավանի մահը զուգադիպեցվում է Ավրելիանոսի ժամանակներին: Բայց այդ հանգամանքը ի վիճակի չէ սասանելու պաշտպանվող դրույթը: Բանն այն է, որ III դարի 50-ական թվականներին, որ ժամանակին վերաբերում է Արշակունիների անկումը ըստ Անանունի, Արևմուտքում կառավարում էր Էմիլիանոս կայսրը: Երկրորդ գլխի հեղինակը պարզապես շփոթել է անունները և իր աղբյուրի Էմիլիանոսին ընդունել է առավել հայտնի Ավրելիանոսի տեղ[1]: Որքան էլ որ տարօրինակ է, բայց այդ լիովին վայել է այդքան կոպիտ սխալներ կատարող մի հեղինակի, սխալներ, որ նա թույլ է տվել բյուզանդական կայսրերի ժամանակագրության մեջ:

Վերը մենք մոտիկից ծանոթացանք երկրորդ գլխի աղյուսակներին:

Խոսրովից մինչև հարստության անկումը, հայոց Արշակունիների քննադատորեն ստուգված տարիների գումարը հավասար է 232-ի, չհաշված 23 տարվա միջթագավորությունը: Իսկ առաջին գլխի ցանկի նախորդած թագավորների տարիների գումարը, մինչև Վաղարշը ներառյալ, հավասար է 328-ի: Ընդհանուր գումարով այն կտա 560 թիվը: Երկրորդ գրքում հարստության տիրապետության տևողությունը հաշվվում է ծ̅ն̅ տարի: Խոսք չի կարող լինել այդ թվի պիտանիության մասին, որն, անկասկած, աղավաղված է: Ցանկերի հետազոտությունը չուղեկցելով այն որևէ կողմնակի փորձով՝ խախտելու նրանց ժամանակագրությունը հանուն ծ̅ն̅ թվի, հանգեցրեց միանգամայն գոհացուցիչ արդյունքի: Մենք ամենևին չենք կասկածում ճառք բերված շ̅կ̅ թվի ազգակցությանը ծ̅ն̅-ի հետ[2], իսկ դա նոր թելով է կապում երկու գլուխները:

[1]Ըստ էության բնագրում ոչ թե Աւրելիանոս է, այլ «Եղիանոս» [=Եմ-եղիանոս]: «Եւ (եւ) էր Խոսրով լա̅ ամ: Եղիանոս՝ երրորդն, Արտաշիր զառաջինն» արտահայտութեան մեջ «ամ» բոլորովին ավելորդ է, դատելով այն բանից, որ հետագայում նման դեպքերում ոչ մի տեղ այն չի գրվում: Այսպես, օրինակ «Խոսրով լէ̅ Արտաշիր ե̅: - Խոսրով խա̅ Արտաշիր ծա̅» և կամ էջ 15. «Տրդատէս լէ̅ Օապուհ ծը̅» և այլն: Ամենայն հավանականությամբ «Ամ»-ը կորված է «Եղիանոսից» = Ամեղիանոս. = համապատասխանաբար՝ Եմ = Եղիանոս:

[2] Գլխատառ Շ-ն հապավանշան պատվի որոշակի դիրքի դեպքում նմանվում է Ն-ի: շ̅կ̅ և ծ̅ն̅ միջև նմանության դեպքում (սկզբից շ̅կ̅ և ն̅կ̅ կամ շ̅ն̅ և ծ̅ն̅) ցանկացած գրիչ ավելի շատ կանգ կառներ երկրորդ թվի վրա, այն բանից հետո, երբ գլուխները անջատվել էին ընդմիջարկմամբ: Սեբեոսի ձեռագրի մեկ օրինակով գոյության դեպքում, այն էլ խիստ աղավաղված տեսքով, կռահումների սահմանները շատ լայն են:



Անտեսված աղյուսակները գրական մեծ հետաքրքրություն են ներկայացնում. նրանք դիպչում են Խորենացու ժամանակագրությանը: Նրանց համադրումից երևան է գալիս ապշեցուցիչ մի փաստ. երկրորդ գլխի տվյալները, իրենց ամբողջ անհեթեթությամբ հանդերձ, ընկել են Խորենացու ժամանակագրության հիմքում: Խոսրովի տարիները (50) + նրա մահից հետո միջթագավորության (11) և Տրդատի տարիները (70) = 131 ըստ երկրորդ գլխի: Ուղիղ այդքան է նաև Խորենացու մոտ. տարբերությունը բաշխման մեջ է՝ Խոսրովին հատկացնում է 48 տարի, միջթագավորությանը՝ 27, իսկ Տրդատին՝ 56 գումարը՝ 131!: Մինչև Վռամշապուհը հաջորդ թագավորների տարիների գումարը երկրորդ գլխում հավասար է 124-ի, իսկ Խորենացու մոտ՝ միայն 94-ի, չբացառած նաև Տրդատից հետո երկու տարվա միջթագավորությունը: Տարբերությունը, հետևաբար, (124-94) = 30 տարի է: Այդ ամենը բացատրվում է նրանով, որ Խորենացին երկրորդ գլխի հայկական ժամանակագրությունը մշակելիս հարմարվել է իրեն ավելի լավ հայտնի բյուզանդական ժամանակագրությանը: Խորենացու համար, որն այդպես լայնորեն օգտվել է Եվսեբիոսի ժամանակագրությունից, դժվար չէր նկատել երկրորդ գլխի բացահայտ սխալները, որտեղ ժամանակի Ավրելիանոսից մինչև Կոստանդիանոս Մեծ ավելացված է ավելի, քան 50 տարով: Ուղղելով այդ սխալը, նա ըստ էության պետք է կրճատեր 50 տարով նաև հայկական ժամանակագրության համապատասխան մասը, որն ընդգրկում էր 131 տարի (ըստ երկրորդ գլխի Տրդատը վախճանվել է Կոստանդիանոսի 5-րդ տարում): Բայց նկատի ունենալով մատնանշված ժամանակագրական թոհւբոհը երկու տասնյակ հավելյալ տարի, Խորենացին գիտեր, որ 131 տարին կազմում է ըստ էության ժամանակը ոչ թե Ավրելիանոսից, այլ Էմիլիանոսից. այլ կերպ ասած, 131-ից մոտ 23 տարի պետք է գնա լրացնելու բացթողումը: Եթե կրճատենք այդ հաշվով, ապա հարկ էր կրճատել ոչ թե 50 տարով, այլ սոսկ մոտավորապես (50-23) = 27 տարով: Բայց այդ դեպքում կստացվեր, որ Տրդատը մահանում է Կոստանդիանոսի առաջին տարիներին, համաձայն երկրորդ գլխի, որն անհամատեղելի է այն նյութի հետ, որը նրան հայտնի է Ագաթանգեղոսից և ուրիշներից՝ երկու թագավորների փոխադարձ հարաբերությունների մասին:

Դրա համար էլ նա չի նվազեցրել 27-ով, որպեսզի այդ տարիների միջոցով դրանք լիովին ծածկի: Հաջորդ կեսում Խոսրով Կոտակից Խորենացին պակասեցրել է ժամանակը 30 տարով արևմտյան կայսրեր Գրատիանոսի 17 և Արկադիոսի 19 [երկրորդ գլ.՝ Արկադիոսի երկրորդ տարին = Հոնորիոսի երկրորդ տարում] = 36 ավելորդ տարիների փոխարեն,

## ՍԱՍԱՆՅԱՆ ՊԱՏՄԱԳՐՁԱՆԻ ԽՈՐԵՆԱՑՈՒ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

| | | | |
|---|---|---|---|
| 1. Խոսրով........................48 | †259 | 1. Արտաշիր........... | †285 |
| Միջթագավորություն.....27 | 259-286 | 2. Շապուհ...........49 | 285-334 |
| 2. Տրդատ........................56 | 286-342 | 3. Ներսեհ..............9 | 334-343 |
| Միջթագավորություն......2 | 342-344 | | |
| 3. Խոսրով........................9 | 344-353 | 4. Որմիզդ.............3 | 343-346[1] |
| 4. Տիրան ........................11 | 353-364 | 5. Շապուհ..........70 | 346-416 |
| 5. Արշակ.........................30 | 364-394 | | |
| 5. Պապ............................7 | 394-401 | | |
| 7. Վարազդատ................4 | 401-405[2] | | |
| 8. Արշակ (և Վաղարշակ)..5 | 405-410 } a | | |
| Խոսրովի հետ..............2½ | 410-413 } a | | |
| 9. Խոսրով (միայնակ)...2½ | 413-415 | | |
| 10. Վռամշապուհ............21 | 415-436 | 6. Արտաշիր........4 | 416-420[b] |
| 11. Խոսրով (երկրորդ անգամ).......1 | 436-437 | 7. Վռամ .............10 | 420-430 |
| Շապուհ պարսիկ.............4 | 437-441[4] | 8. Հազկերտ .......11 | 430-441[4] |
| Միջթագավորություն........3 | 441-444 | 9. Վռամ.............21 | 441-462 |
| 12. Արտաշես...................6 | 444-450 | 10. Հազկերտ մինչև 2-րդ տարին | 464[3] |

———

ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ: Մովսես Խորենացու ժամանակագրությունը ճշտիվ սահմանվում է նրա հետևյալ ցուցումներով.

[1] Խոսրովը, Տրդատի որդին, գահ է բարձրացել Որմիզդի



ընդ որում, քանի որ Թեոդոսիոսի կառավարումը երկարացրել է երկրորդ գլխի համեմատ (այստեղ 19, Խորենացու մոտ 26. երևի բարեպաշտ կայսեր ողորմածությունը նաև Արշակի ու Վաղարշակի վրա տարածելու նպատակով), ապա կրճատել է ոչ թե 36-ով, այլ ավելի փոքր թվով: Վերջում Խորենացու մոտ ստացվել է երկրորդ գլխի հետ գրեթե միատեսակ Վռամշապուհի մահվան տարեթիվը [չնայած այն բանին, որ Խորենացին

## ՍԱՍԱՆՅԱՆ ՊԱՏՄԱԳՐՁԱՆԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ
### ԸՍՏ ՍՈՐԴՏՄԱՆԻ՝ «CHRONOLOGIE DER SASSANIDEN»

| | | |
|---|---|---|
| 1. | | 226-240 |
| 2. | | 240-271 |
| 3. Բահրամ | 1, 2, 3 | 271-283 |
| 5. | | 283-300 |
| 7. | | 300-309 |
| 8. | | 309-379 |
| 9. | | 379-383 |
| 10. Շապուհ | | 383-388 |
| 11. | | 388-399 |
| 12. | | 399-420 |
| 13. | | 420-439 |
| 14. | | 439-457 |

———

երկրորդ և Կոստանդիոսի (337-361) 8-րդ տարում, այսինքն՝

երկարաձգել է նրա գահակալությունը 13 տարով երկրորդ գլխի համեմատությամբ]. Թ-րդ գլխում նա մահանում է Հազկերտի երկրորդ տարում, իսկ Խորենացու մոտ՝ 6-րդ տարում: Խորենացին հավատարիմ է մնացել այն հնարին, որը կիրառել է առաջին ցանկը (առաջին գլխի) մշակելիս, այսինքն՝ վերցնում է պատրաստի թիվը և բաշխում ճյուղի անդամների միջև յուրովի, փաստական նյութին համապատասխան, որը չգիտես ինչու ուզեցել է վերագրել այս կամ այն թագավորի ժամանակներին:

---

344 թվականին (III, 8):

2. Վարազդատը գահ է բարձրացել Շապուհի 55-րդ տարում (այսինքն՝ 346 + 55 = 401) Թեոդոսիոսի ողորմածությամբ, վերջինիս 20-րդ տարում (III, 40): Թեոդոսիոսը սկսել է կառավարել 379 թվականից, դրա համար էլ 401 թվականին կլինի ոչ թե 20-րդ, այլ 22-րդ տարին հարկ է «ի քսաներորդ ամի» կարդալ «քսաներորդ երկրորդ» (նույն տեղում): Ըստ Խորենացու Թեոդոսիոսը կառավարել է 26 տարուց ավելի. այժմ էլ Խորենացին նրան դնում է Արշակի օրոք (III, 41):

3. Խոսրով վերջինի երրորդ տարուց մինչև Հազկերտ 2-րդի 2-րդ տարին 51 տարվա ժամանակամիջոց է, որը գրավում է Սահակի կաթողիկոսությունը (III, 67), այսինքն՝ 413 թվականից մինչև 464 թվականը:

4. Կառավարիչ Շապուհի մեկնումը Հայաստանից Հազկերտի հիվանդության հետևանքով տեղի է ունեցել հոր մահվան տարում (III, 56):

ա) Ըստ III, 46-րդ գլխի Արշակը հինգ տարի կառավարել է ամբողջ Հայաստանը և 2,5 տարի նրա մի մասը, իսկ Խոսրովը կառավարել է ընդամենը 5 տարի (III, 50): Այս վերջինի մասին Մալխասյանցը չգիտի և թյուրիմացաբար Խոսրովին է վերագրել Արշակի տարիները:

բ) Մալխասյանցի մոտ 5 (*) և նրա հայր Շապուհի առջև հարցական նշան է դրված, երբ 51-րդ գլխում Արտաշիրի մասին պարզ ասված է. «յետ եօթանասուն զթագաւորութիւն հօրն կալեալ զաէրութիւն ամս 4»:



Պարսկական ժամանակագրությունը Խորենացին ճնել է ըստ հայկականի: Ներսեհից մինչև Հազկերտ տարիների մեջ Խորենացու և երկրորդ գլխի միջև գրեթե լիակատար համապատասխանություն է, նրանք տարաձայնվում են սոսկ առաջին Սասանյաններ Արտաշիրի և Շապուհի ժամանակը նշելիս: Խորենացին դեն է նետել 30-35 տարի նույն կշռադատումներով՝ հանդիպեցնելու Հազկերտին Վռամշապուհի հետ:

Թույլ տալ հակառակ հարաբերություն և երկրորդ գլխի թվերը արտածել Խորենացուց՝ քննասերի համար դժվարին գործ է: Երկրորդ գլխի՝ հեղինակի պատմական հիմքից զուրկ տվյալները հասկանալի են դառնում այդ նույն գլխում բյուզանդական կայսրերի արհեստական ժամանակագրության հետ նրանց կապի մեջ: Խորենացու մոտ բյուզանդական ժամանակագրությունը ճիշտ է, իսկ պարսից ու հայոց թագավորների ժամանակագրությունը պատմական քննադատության չի դիմանում: Այն առաջ է ընկնում ընդհանուր առմամբ 20-30 տարով, մանրամասներում բանը նվազ զոհացուցիչ է: Դժվար է ներքաղրել ծանոթություն Խորենացու հետ, էլ ավելի դժվար է նրա ազդեցությունը տեսնել այնտեղ, որտեղ առկա են այնքան տարաձայնություններ ու շեղումներ նրանից: Խորենացու հեղինակությունը սովորական հեղինակություններից չէ: Նրա փառքը, բացառապես հիմնված նրա երկասիրության ներքին, անվիճելիորեն երևելի հատկանիշների վրա, հիմնված, փաստերի առատությամբ հանդերձ, լակոնիկորեն սեղմ, բայց տաք զգացմունքով ջերմացած շարադրանքի վրա՝ հռչակվել է «Հայոց պատմության» առաջին իսկ հայտնությամբ: Ոչ մի հայ գրող չէր խիզախի հորինել ժամանակագրություն հակառակ նրա ժամանակագրության, առավել ևս խեղաթյուրել նրա տվյալները. բայց դրա կարիքը ամենևին էլ չկար Խորենացու համակարգի կուռ կառուցվածքի դեպքում: Վերջապես, մեզ հասկանալի է հարձակողական երբը դեպի ճշմարտության կողմը, իսկ հակառակը միտումնավոր դիտավորությունների (որոնց մասին տվյալ դեպքում ոչ մի խոսք չի կարող լինել) բացակայության պայմաններում առավել, քան պրոբլեմատիկ է: Քննարկված ժամանակագրություններում հաջորդականությունը կարելի է սահմանել միայն ի վնաս Խորենացու (8):

Այդ դրույթը ճշմարիտ է նաև Մամիկոնյանների ծագման մասին պատմության վերաբերյալ: Խորենացու մոտ այդ պատմության առավել բարդ և ակնհայտորեն ածանցական բնույթը չի դժվարացնի ոչ մի քննասերի, այն դնելու երկրորդ գլխի ներքակայության տակ: Ամենից առաջ, նշանակությունից զուրկ չէ, որ Խորենացու մոտ այն տեղադրված է հենց այնտեղ, որտեղ գտնվում է՝ Բ գլխում: Այստեղ պատմվում է Մամիկոնյանների մասին Դիոկղետիանոսի գահ բարձրանալուց առաջ, Կարոսի դեմ 284 թվականին Կառնակի ձեռնարկած արշավանքի առթիվ: Խո-

բենացին այն շարադրում է 285 թվականի տակ, Արտաշիրի մահից առաջ և այդ ժամանակին է վերագրում նախահայրերի ժամանումը հակառակ երկրորդ գլխի, որտեղ այն դրվում է Արտավանի գահակալության ժամանակ: Ճի՛շտ է հասկացել Խորենացին տեքստը վերը առաջադրված ստուգաբանության իմաստով: Էական տարբերությունը նրանում է, որ բնագրի Կոնակի և Մամիկի փոխարեն Խորենացու մոտ հայտնվում է Մամգուն և Բղդոխ: Առաջինի մեջ հեշտությամբ են իմացվում աղբյուրի երկու անունները. Խորենացին դեն է նետել պահլավական «-ակ» վերջավորությունը և հիմքերը կցել է՝ Մամ (ակ) + Կոն(ակ) = Մամկոն, իսկ հետո՝ Մամգուն նախորդող մ-ի ազդեցության տակ: Համանման կերպով կազմվել է նաև Բղդոխ անունը: Եթե գնալու լինենք Խորենացու որոշ քննադատների հետքերով, դժվար չէ դրա բաղադրամասերը գտնել Սեբեոսի մոտ: Զորագլուխը, որը մեծ խաքանի կողմից ուղարկվում է օգնության հեփթաղներին ընդդեմ Սմբատ Խոսրով Շումի, կրում է «Ճեմբուխ» անունը[1]. Նույն խաքանի մյուս զորագլխի անունը սեռական հոլովով հնչում է «Ճեպետուխոյ»[2]: Ուղղականը կարող է լինել «Ճեպետուխ», որը պետք է ընդունել որպես «Ճեմբուխի» աղավաղում: Այդ դեպքում այն միևնույն բաղադրությունն ունի «Ճեմբուխի» հետ և նշանակում է «չինական կամ չինացի բուխ», «չինացի բուխ». Խորենացու «Բղդոխը», եթե թուլացնենք ձայնավորը առաջին վանկում շեշտադրությունից առաջ, տարրալուծվում է «բուղ»-ի և «դոխ»-ի, արհեստականորեն կազմված բառ Սեբեոսի մոտ՝ երկու անունների միացման միջոցով: Բուխ + դուխ = բուխդուխ = բխդուխ = բղդող (խ= ղ դ-ից առաջ, և ու = 0 շեշտադրության տակ): Այն բանից հետո, երբ Խորենացին միաձուլել է Մամակ և Կոնակ անունները, որպեսզի ավելի ցցուն ցույց տա «Մամիկոնեան» [բառի] ստուգաբանությունը, նա ստիպված է եղել անուն գտնել նաև մյուս եղբոր համար:

Մամիկոնյանների նախահայրերը ըստ երկրորդ գլխի միայն մայրական կողմից են եղել չինական կայսեր եղբայրները: Խորենացու մոտ նրանք նրա «դայեկորդիք»-ն են, այսինքն՝ «մոր որդիները», որ միևնույնն է: Կայսրը Խորենացու մոտ կոչվում է Արբոկ Ճենբակուր, իսկ երկրորդ գլխում միայն Ճենբակուր: Այս վերջին անունը չպետք է շփոթել իրանական միահնչյուն πακόριος -ի հետ: Այն ոչ այլ ինչ է, եթե ոչ հին արաբական հեղինակների «faghfur», baghbur, baghbugh (Խորենացու մոտ՝ բղդող = բղբող?) տիտղոսի հայացված ձևը, որով նրանք նշում էին չինական կայսրերին[3]: Neumann-ը այն համարում է չինական Tsen-tze-ի պարսկական թարգմանությունը, որը

[1] Սեբեոս, էջ 66:

[2] Անդ, էջ 69:

[3] Richthofen, China, I, p. 523, 3, նաև՝ Justi, Iranisches Namenbuch.



նշանակում է «երկնքի որդի», bag և fur-ից, ինչպես երևում է, Խորենացու ազդեցության տակ, ըստ որի Ճենբակուր նշանակում է «ի նոցա լեզուն պատիւ թագաւորութեան» (Բ, 81) (9): Իսկ Խորենացու Արբոկը, հավանաբար Բակուրի պարզ գրաշրջությունն է (հմմտ. Գոմեր-Մերոգ, Թիրաս-Սիրաք): Խորենացու զրույցի վերջին վիպական մասը կատարելապես համընկնում է երկրորդ գլխին:

*«Ունտ խաղաղութեան մերոյ, ասէ, հաստատուն կայցէ ի միջի մերում, զի երդուեալ եմ առ նոսա, զի նոքա մի մեռցին, այլ եւոս տանել զնոսա ի մուտս արեւու և յեզր երկրի ի տեղին յայն, որ արեգակն ի մայր մտանէ»:*

Սեբեոս, գլ. II, էջ 13

*«Վասն զի երդուեալ էր նմա (Մամգունայ) հօրն իմոյ ի լոյս արեգական. այլ վասն անխռով զքեզ առնելոյ հալածեցի զնա յաշխարհէս յիմմէ յեզր երկրի և ի մուտս արեւու որ հասասարէ նմա և արդ մի լիցի պատերազմ ընդ իս և ընդ քեզ»:*

Խորենացի, Բ, 81

Մամիկոնյանների չինական ծագման մասին գիտե նաև Փավստոսը: Երևի նրան է ակնարկում երկրորդ գլխի հեղինակը. «Ազգ կայ մի մեծ, զորմէ ասէն եթէ ի ձերմէ աշխարհէն գնացեալ»: Բայց որ Խորենացին վերապատմում է երկրորդ գլխի հիման վրա, պարզորոշ երևում է բերված բառերի համադրումից: Պատմիչը չէր կարող վերցնել դրանք Փավստոսից, եթե թույլ տանք անգամ, որ կորսված գրքերում ինչ-որ նման մի բան շարադրվել է. քնորոշ բառերը պատկանում են երկրորդ գլխի հեղինակին. նա դրանք անձամբ լսել է «յառնէն մեծէ», չինական դեսպանից, և պատմում է նրա իսկ բառերով: Ունեցե՞լ են, արդյոք, որևէ վերաբերություն «Ճենաց գուսանների երգերը» Մամիկոնյաններին, և ա՞յդ է, արդյոք, ի նկատի ունեցել պատմողը, որը հետևցրել է լռողը՝ դա դեռևս հարց է: Բայց ընդհանուր առմամբ պատմվածքի մեջ ոչ մի անհավանական բան չկա:

Դիվանագիտական հարաբերությունները Չինաստանի և Պարսկաստանի միջև ուժեղանում են հատկապես VI դարի երկրորդ կեսից: Հիրկանիայի ժողովրդի երիտասարդ պետությունը, որն առաջացել էր այդ դարում Տիբեթի և Իրանի միջև ընկած տարածքում, այժմյան ռուսական անդրկասպյան մարզերում, սպառնալիք էր Պարսկաստանի և Չինաստանի համար: Դիզաբուլի օրոք, որը հայտնի էր իր հարաբերություններով Հուստինիանոսի հետ, այն սպառնում էր նրանց գոյությանը: Ընդհանուր թշնամու վտանգավոր հարևանությունը միավորել էր երկու կայսրությունները, որոնք այդ ժամանակից սկսեցին հաճախակի դեսպանություններ փոխանակել: Հավաստի տեղեկություններ կան մի շարք այդպիսի դեսպանությունների մասին մինչև Հազկերտ [III]-ը՝ վերջին Սասանյանը,

որը 638 թվականին դիմել էր Չինաստանի օգնությանը արաբների դեմ, ինչպես հաղորդում է Տաբարին: Ի՞նչ զարմանալի բան կա, եթե երկրորդ գլխի հեղինակը հանդիպեր մի որևէ չինական դեսպանի Խոսրովի արքունիքում: Դեսպանը նրան ինչ-որ բաներ է պատմել և հեղինակը այն յուրովի է հասկացել՝ ի նկատի ունենալով Մամիկոնյանների մասին ավանդությունը: Այն հախուռն և երբեմն հեղափոխական ոգին, որով այդպես աչքի են ընկնում Մամիկոնյանները, սկսած Փավստոս Բուզանդի հերոսներից մինչև մարող տոհմի վերջին փառապանծ ներկայացուցիչը Ղևոնդ պատմիչի մոտ, ի հակադրություն տոհմիկ հին իշխանների՝ Բագրատունիների պահպանողականության, անվիճելիորեն վկայում է թարմ, օտար արյան մասին: Երբ չինական ծագումը քիչ է հավանական, ապա այն պարտադիր էլ չէ: Բազմաթիվ ցեղեր ու ժողովուրդներ էին բնակվում հայերի հարևանությամբ արևելքում. երկպառակտչական խռովությունների հետևանքով որևէ մի իշխանական տոհմ կարող էր վանվել Հայաստան:

Երկրորդ գլխից Խորենացու կախվածության փաստը ամրապնդում է պաշտպանվող դրույթը այդ գլխի, և նրա միջոցով նաև «Նախնական պատմության» առաջին գլխի կապը Հերակլի արշավանքի պատմության հետ, և իր հերթին հաստատվում է նրանով: Այդ գլուխներում վճռականապես ոչ մի այնպիսի բան չկա, որը սովեր նետեր ճշմարտացի Սեբեոսի դեմքին: Լեզվի և ոճի նմանության նրբին համերաշխությունը առաջին գլխի և Սեբեոսի միջև երևան է հանել պրոֆ. Խալաթյանցը: Որքան ավելի խորն ես ընթերցում «Արշավանքի պատմությունը» և համեմատում առաջին գլխի հետ, այնքան ավելի պարզորոշ ես որսում ոճի զուտ Սեբեոսյան երանգները վերջինիս մեջ: «Արշավանքի պատմության» պարզ ու ուղիղ խոսքը ընդհանուր առմամբ ընթանում է հարթ ու անկաշկանդ. պահ առ պահ ենք միայն նրանում նկատում տատանում՝ մերթ դեպի խոսակցական կառուցվածքի (*հմմտ. էջ 39-44՝ Մուշեղի մասին*), մերթ դեպի ճոռոմաբանության (*էջ 35, 104-151*) կողմը: Այդ առումով նա իրեն չի դավաճանում նաև առաջին գլխում (հմմտ. օրինակ, «շան ես դու և յերամակէ շանց» ներածության էջ 4-ի հետ, կամ Հայկի ճակատամարտի սերևեր նկարագրության հետ՝ «և կանգնէ զկապարճս ի գետնոյ...»): Ոճի հարցը ընդհանրապես շատ փափկանկատ հարց է: Բայց պրոֆ. Խալաթյանցի կատարած երկու համադրություններ[1] այնքան ուժեղ են, որ հաջողությամբ կարելի էր մերձեցնել «Նախնական պատմությունը» Սեբեոսի երկին, անգամ այն դեպքում, եթե այն մեզ հասներ նրանից անջատ տեսքով:

Երկրորդ գլխում պատմվածքը քիչ կա, բայց այդ քչում էլ նշվում են

[1] Ի նկատի ունենք «թափեցից խոկ այսօր ի քեզ զկապարճս» և Հայաստանի սահմանները առաջին գլխում և Պատմության մեջ, էջ 37:



Սեբեոսի հետ ընդհանուր գծեր (հմմտ. էջ 93՝ Մալխասյանցի գրքույկում): Ինչ վերաբերում է համաժամանակ լինելուն (սինխրոնիզմին), ապա այն Սեբեոսի ոգով է, որը «Արշավանքի պատմության» մեջ ուրիշ առմար չգիտի էլ: Իրադարձությունները միշտ որոշվում են պարսից կամ բյուզանդական այս կամ այն թագավորի տարով: Միայն մեկ անգամ է հիշատակվում մեր թվականությունը՝ «յամի Կենարարին և Փրկչին մերոյ»[1]: Այդ տեղը հետաքրքիր է նաև նրանով, որ երևան է հանում հեղինակի իմացությունը, որ Դիոկղետիանոսը «թագաւորէ երեք ընկերօք»[2], որը չի կարելի համաձայնեցնել համաժամանակային աղյուսակի ցուցման հետ: Դրանում կարելի էր տեսնել լուրջ փաստարկ երկրորդ գլխի Սեբեոսին պատկանելու դեմ: Բայց այդ վկայակոչման նշանակությունը երկու դեպքում էլ նվազում է նրանով, որ նշված տեղը գտնվում է հայ հոգևորականության Կոստանդիանոսին հղված պատասխան թղթում: *Սեբեոսը բերում է այդ թղթի պատճենը*, որտեղ գործը ամենևին Դիոկղետիանոսին չի վերաբերում, և նա կարող էր աչքից փախցնել այդ հանգամանքը:

Սեբեոսի տեքստի հետ չեն կապակցվում Սոկրատից բերված անկապ քաղվածքները: Դրանք բնագրի մեջ թափանցած մեկնություններ են. «Ի սուրբ Կոստանդիանոսէ սկսանի և մինչև ի փոքր Թէոդոսն զանսրբոց և զսրբոց գործսն և զհայրապետացն զուղղափառութիւնս» արտագրված է Սեղբեստրոսի վարքից[3], «Ցուլիանոս և Գալիանոս»՝ Փոքր Սոկրատից[4]:

«Հայոց նախնական պատմութեան» հարցը, թվում է, սպառված է և մենք դեմ չենք այն այդպիսին համարելու Սեբեոսի և Խորենացու վերաբերությամբ: Բայց դրանով գործը չի ավարտվում. դիմակը դեռևս հանված չէ «Նախնական պատմության» հեղինակի դեմքից. հարցի կենտրոնն ընկած է «Նախնական պատմության» սքողված առնչություններում Փավստոս Բուզանդի հետ: Հարցը չի կարող սպառված համարվել ավելի վաղ, քան երբ կտահմանվի «Նախնական պատմության» իսկական տեղը նրա կողմից շոշափվող երեք պատմական երկերի միջև և կպարզաբանվեն վերջիններիս փոխհարաբերությունները:

Այն կարծիքը, որ Փավստոսի աշխատանքի կազմի մեջ մտել է ինչ-որ «Նախնական պատմություն», թելադրված այն պակասավոր տեսքով, որով հասել է մեզ նրա երկը, գերազանցապես հիմնված է հեղինակի իր՝ Փավստոսի խոսքերի վրա: Նման հիմնավորման դեպքում այդ կարծիքը դեռևս հեռու է պարտավորեցնելու իր կողմնակիցներին ընդունելու, որ Փավստոսի

[1] Սեբեոս, էջ 130: Ձեռագրում տարեթիվը պակասում է:

2 Անդ:

3 «Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական պատմութիւն և Պատմութիւն վարուց սրբոյն Սեղբեստրոսի եպիսկոպոսին Հռովմայ», Վաղարշապատ, 1897, էջ 692:

[4] Անդ, էջ 218:

ներադրյալ առաջին գիրքը ճիշտ և ճիշտ պարունակել է Մարաբասի «Նախնական պատմությունը», կամ գեթ նրան նման ինչ-որ բան: Դրա համար էլ հարկ եղած դեպքում հետազոտողները շրջանցում են այն և ըստ էության մեզ համար էլ ցանկալի կլիներ որևէ կերպ կոծկել այն մյուսների նման: Սակայն, կա փաստ, որը վերացնում է ամեն մի կասկած այն մասին, որ Փավստոսը իսկապես ունեցել է առաջին գիրք, և որ նրանում շարադրված է եղել Հայաստանի «Նախնական պատմությունը» կատարելապես համանման նրան, որ կա Սեբեոսի մոտ:

Բոլորին հայտնի է, VI դարի պատմիչ Պրոկոպիոս Կեսարացին օգտվել է ինչ-որ «*τῶν Ἀρμενίων ἱστορία*»-ից, որը իրավացիորեն մերձեցնում են մեր Փավստոսի հետ, բայց չգիտես ինչու ոչ ոք այդ հարցը քննարկելիս չի օգտվել այն հանգամանքից, որ այդ նույն Պրոկոպիոսը այդ նույն Հայոց պատմությունից գիտեր հետևյալը.

*«Βασιλεὺς μὲν ὁμογενὴς πάλαι τοῖς Ἀρμενίοις καθίστατο, ἥπερ τοῖς ἀναγραψαμένοις τῶν ἱστοριῶν τὰ ἀρχαιότατα δεδιήγηται. ἐπειδὴ δὲ Ἀλέξανδρος ὁ Μακεδὼν τὸν Περσῶν βασιλέα καθεῖλε, Πέρσαι μὲν δεδουλωμένοι ἡσυχῇ ἔμενον, Πάρθοι δὲ Μακεδόσιν ἐπαναστάντες καὶ τῷ πολέμῳ περιγενόμενοι ἐξήλασάν τε αὐτοὺς ἐνθένδε καὶ τὰ μέχρι ἐς Τίγριν ποταμὸν ἔσχον ὑπ᾿ αὐτοῖς τε τὸ λοιπὸν ἐς ἔτη πεντακόσια ἔκειτο τὰ Περσῶν πράγματα ἕως Ῥωμάιοις ὁ Μαμαίας Ἀλέξανδρος βασιλεὺς γέγονε. καὶ τότε τις τῶν ἐν Πάρθοις βασιλέων τὸν ἀδελφὸν τὸν αὐτοῦ Ἀρμενίοις βασιλέα κατεστήσατο Ἀρσάκην ὄνομα ὥσπερ ἡ τῶν Ἀρμενίων ἱστορία φησί. μὴ γάρ τις Ἀρμενίους τοὺς Ἀρσακίδας οἰέσθω εἶναι. εἰρήνη γοῦν αὐτοῖς ἐς ἔτη τὰ πεντακόσια κατὰ τὸ ξυγγενὲς διαγέγονε. καὶ ὁ μὲν τῶν Ἀρμενίων βασιλεὺς ἐν Ἀρμενίᾳ τῇ μεγάλῃ καλουμένῃ καθῆστο, τῷ Ῥωμαίων αὐτοκράτορι ἐκ παλαιοῦ ὑποχείριος ὤν»* և այլն:

*«Անցյալում հայերը թագավոր են ունեցել իրենց ցեղից, ինչպես այդ մասին վկայում է հնագույն պատմությունը: Երբ Ալեքսանդր Մակեդոնացին գահընկեց արեց պարսից թագավորին, պարսիկները հնազանդվեցին և հանդարտվեցին. իսկ պարթևները ապստամբեցին մակեդոնացիների դեմ, և հաղթելով կռվում, վռնդեցին նրանց և տիրացան մինչև Տիգրիս գետն ընկած հողերին: Այսուհետև նրանցից էր կախված Պարսկաստանի ճակատագիրը 500 տարվա ընթացքում, ընդհուպ մինչև հռոմեացիների կայսր Մամայայի որդի Ալեքսանդրի գահ բարձրանալը: Այդ նույն ժամանակ պարսկական թագավորներից մեկը Հայաստանում թագավոր կարգեց Արշակ անունով յուր եղբորը, ինչպես այդ մասին պատմվում է «Հայոց պատմության» մեջ: Եվ, սակայն, չպետք է կարծել, որ Արշակունիները սերում են հայերից: 500 տարվա ընթացքում նրանց միջև խաղաղություն էր տիրում շնորհիվ ազգակցության: Հայոց թագավորը նստում էր այսպես կոչված Մեծ Հայքում, հնուց ի վեր գտնվելով հռոմեական կայսրերի ներքակայության ներքո»* և այլն:

Procopii de Aedificiis, III, 1, ed. Nieburii, p. 245.

Փավստոսի մասին մեր սուղ գիտելիքների պայմաններում Պրոկոպիոսի այս տողերը արտակարգ կերպով արժեքավոր են: Դրանք վրիպել են հետազոտողների ուշադրությունից, մինչդեռ այնքան կարևոր են, որ ժամանակին միանգամից վերջ կտային Խորենացու մոտ եղած Մարաբասի գրքի դեմ ուղղված բոլոր կասկածներին: Պրոկոպիոսից բերված ամբողջ քաղվածքը, բացառությամբ թերևս առաջին դարձվածքի[1], ամբողջությամբ վերցված է «Հայոց նախնական պատմությունից»: Ոչ մի տեղ, ոչ մի գրականության մեջ չեք գտնի, որ Արշակունիները թագավորել են 500 տարի: Դա միայն մեզ մոտ է: Պարթևական թագավորի կողմից նշանակվող «Նախնական պատմության» Արշակն է և Խորենացու Վաղարշակը:

*μή γάρ τις Ἀρμενίους τοὺς Ἀρσακίδας οἰέσθω εἶναι* արժեքավոր նկատողությունը, նետված «Նախնական պատմության» դեմ, որտեղ, հավանաբար, Արշակունիներին տրվել է հայկական ծագում, փայլուն կերպով արդարացնում է Մարսյակի առասպելի պակասավորության մասին կռահումները[2]: Երբ 500-ամյա տիրակալությունը տևել է մինչև Մամայայի որդի Ալեքսանդրը, այսինքն՝ Ալեքսանդր Սևերոսը (222-235), ապա, նշանակում է, որ քննարկվող հուշարձանում Արշակունիների սկիզբը բարձրացվում էր ավելի վաղ ժամանակների, քան 60 տարին Ալեքսանդր Մակեդոնացու մահից հետո:

Շատ հետաքրքիր է ճշտիվ սահմանել Պրոկոպիոսի «Հայոց պատմության» առնչությունները Փավստոս Բուզանդի հետ: Ինչ եզրակացություններին էլ որ գալու լինենք այդ դեպքում, միևնույնն է, իր հիմքում հարցը մնում է աներեր. *τῶν Ἀρμενίων ἱστορία* Փավստոսի պատմությունն է: Փավստոսի և հատկապես «Նախնական պատմության» ճակատագիրը կրկին մթագնում է: Երբ Խորենացու և Սեբեոսի առնչությունները պարզ են, ապա Սեբեոսի և Փավստոսի կապը ընկղմվում է մշուշի մեջ:

Այն կարելի է ցրել, եթե փոխենք այն տեսակետը, որով դիտել ենք Սեբեոսի «Նախնական պատմությունը»: Մեր դատողությունները պտտվել են այն սահմաններում, որ գծագրել է հեղինակն ինքը: Իսկ այժմ, հրաժարվելով խոստարանությունից և հուշարձանի այն պատմությունից, որ ինքն է առաջարկում, վերաբերվենք «զանստորագրեալ ժամանակ»-ի նկարագրություններին պարզապես որպես գրական երկի՝ նրանք ավելի լավ կներկայացնեն մեզ իրենց ծագումն ու պատմությունը:

Խոստարանությունից հստակորեն չի երևում, ի՞նչ է մտադիր հեղինակը պատմելու, «հայելով ի մատեանս Մարաբայ փիլիսոփայի»: Դատելով

---

[1] Ἀρχαιότατα ἱστορία-ի տակ Պրոկոպիոսը, երևի, նկատի ունի Դիոդորոսին: Այդ ժամանակ . ὁμογενὴς βασιλεὺς βαρζάνης թագավորն է, որն ապրել է Ներոնի օրոք. «μετὰ δὲ ταῦτα πολλοῖς πλήθεσιν εἰς τὴν Ἀρμενίαν ἐμβαλὼν.. κατεπλήξατο τοὺς ἐγχορίους, διόπερ ὁ βασιλεὺς αὐτῶν βαρζάνης ὁρῶν ἑαυτόν οὐκ ἀξιόμαχον ὄντα μετὰ πολλῶν δώρων ἀπήντησε». lib. II, cap. 1.

[2] Н. Марр, «О начальной истории Армении» Анонима.

առաջին ներածական խոսքերի իմաստից, այնտեղ մտել է նաև Հայկյանների ծագումնաբանությունը, բայց գրքի նկարագրությունից ստացվում է, որ այն կարծես թե պարունակել է միայն առաջին թագավորների մասին արձանագրությունը[1]: Դատելով երկու հատվածների ընդհանուր բնույթից, մենք իրավունք ունենք միացնելու դրանք: Մարսյակի առասպելը իր բովանդակությամբ այդպես էլ հարում է ծագումնաբանությանը. այն պատույտ է տալիս «հենց նույն բարձրաբերձ լեռների շուրջը»: Լեռները անվանում են ստանում Մարսյակից ճիշտ այնպես, ինչպես Այրարատը՝ Արայից կամ Արմավիրը Արամաիսից. վերջապես, բովանդակությամբ այն ոչ պակաս է շոշափում «Արամենակի» ազգը, որքան Արշակունյացը: Երկու հատվածը պետք է դիտել որպես միասնական և այն երկուսն էլ մտնում են Մարաբա փիլիսոփայի գրքի մեջ:

Խոսում են Մարաբայի գրքի ասորական ծագման մասին[2]: Այդ կարծիքը, ներշնչված փիլիսոփայի ասորական անունով, քիչ է համոզիչ: Այն պատվածաշնչային գծերը, որոնք մատնանշվում են, վաղուց են դադարել սոսկ ասորական գրականության ստացվածքը լինելուց: Եթե Մարաբասը կամ Կաղմոսը ասորական անուններ են, բայց և այնպես դրանք հունականացված են: Ըստ առասպելի, արձանագրությունը եղել է հունարեն լեզվով: Բայց այդ բոլորը այնքան էլ կարևոր չէ: Հուշարձանն իր ներքին՝ բովանդակային տվյալներով, ավելի շատ հակամետ է դեպի Հյուսիսային Հայաստանը: Ճիշտ է, երկրի բնակեցումը սկսվում է հարավից: Հայկյանների շարժումը, Բաբելոնից ելնելուց հետո, ուղղվում է դեպի Արարադյան սարահարթը և այստեղից Հարքի վրայով անցնում է Այրարատյան մարզ[3]: Բայց դրանում ավելի շուտ պետք է տեսնել մշակույթի հարավից դեպի հյուսիս տեղաշարժման ճշմարտացի արձագանք, քան այդ հիման վրա ավանդության հարավային ծագում վերագրել: Ավանդությունում շոշափվող անվանարկումը վերաբերում է Հյուսիսային Հայաստանին: Անգամ Շամիրամին տեսնում ենք Այրարատում, ում-ում, բայց նրան կարելի էր թողնել հարավում, որտեղ նրա անունը ժայռածերպերում պահպանվել է առայսօր: Առավել ևս պակաս հիմնավոր է այդ կարծիքը Արշակունիների պատ-

[1] Հետաքրքիր է, թե ինչպես է Խորենացին վերաբերվում «Նախնական պատմության» երկիմաստ տեղերին: Նրա մոտ ևս պարզ չէ, թե Հայկյանների ծագումնաբանությունը նա գրքի՞ց է քաղում, թե արձանագրությունից, որ փորագրվել է Վաղարշակի հրամանով. «յորմէ (ի մատենէ՞ն թե յարձանէ) մեր հատուածս» և այլն (Ա, 9):

[2] **Н. Марр**, նշված հոդվածը:

[3] Սեբեոսի մոտ «Նախնական պատմության» մեջ և Խորենացու մոտ խառարեն առաջ-բերված է Այրարատը Արարադից:



մության վերաբերմամբ: Նրանց նախամայրը ապրում է Ազատ լեռան ստորոտին: Պատմականորեն նրանք, ինչպես գիտենք, կապված են Հյուսիսային Հայաստանին, որտեղ և նրանց նստավայրն էր: Այդ ամենով հանդերձ, ճիշտ է սակայն և այն, որ Արշակն ու Վաղարշակը ըստ «Նախնական պատմության» նստավայր ընտրում են Մծբինը, ակնհայտորեն ասորական մի քաղաք, որը երբեք Արշակունիների իշխանության տակ չի եղել:

«Նախնական պատմությունը» ըստ էության, անվավեր գործ չէ, ինչպես կարծում են[1]: Այն ներկայացնում է ժողովրդի հիշատակների սուղ պատառիկներ երկրի հին ճակատագրի մասին:

Ելնելով Սանատրուկի անունից, որը դեր է խաղացել «Նախնական պատմության» ճակատագրում, պետք է ենթադրել, որ վերջինս սաղմնավորվել և ձևավորվել է Եփրատի ակունքներում, թագավորի՝ «պալատների» տիրոջ փառապանծ մայրաքաղաքում, Դարանաղյաց և Եկեղյաց գավառներում՝ Հայաստանի կենսունակ ու գործունյա մասերում, երբեմնի հարուստ պատմական հուշարձաններով: Այնտեղ էին գտնվում ինչպես թագավորական, այնպես էլ կաթողիկոսական տան դամբարանները: Զարմանահրաշ «պատմությունը» ընկնում է գիտնական Մարաբայի ձեռքը: Ասորի է նա, թե ասորական անունով հայ, միևնույն է: Բայց նա ծնունդով Մծուրքից է[2]: Փիլիսոփան իր հետ արժեքավոր հուշարձանը տանում է Ասորիք, Մծբին: Եթե նա իսկապես փիլիսոփա է, ապա պետք է որ պատկանած լիներ որևէ մի դպրոցի. այդ դեպքում աշակերտների տակ հնարավոր է հասկանալ ընդհանրապես հետևորդների, անգամ ժամանակով միմյանցից հեռու: Մարաբայից հետո նրա աշակերտների շրջանում «Նախնական պատմությունը» կերպարանափոխումներ է կրում: Պատմությանն իրազեկ դպիրները վերացնում են Արշակունիների մասին ավանդազրույցը և որոշ չափով փոխարինում այն Եվսեբիոսի պատմությամբ: Այն, ինչ որ կատարելապես պարզ էր գիտնական ուսուցչի համար, մութ է դառնում նրանց համար, անհասկանալի «Մծուրքը» տեղը զիջում է Մծբինին. այնտեղ են փոխադրվում նաև Սանատրուկի պալատները, մի թագավորի, որը միգուցե աչքով իսկ չէր տեսեր Մծբինը. նրանց անգամ թվում է, որ ուսուցիչը՝ Մարաբան ինքն է գտել պատմությունը, այն էլ պալատի փլատակներում: Հայոց գրականությունը կարդացած լինելը թույլ է տալիս նրանց ավանդազրույցների հավանական և առավել պատշաճ հեղինակ համարել հայոց պատմիչներից հնագույնին՝

[1] **Н. Марр**, նշվ. հոդվածը:

[2] Մծուինացի փոխանակ Մծուրնացի ընթերցումը (**Н. Марр**, նշվ. հոդվածը) որքան որ հնարավոր է տառագրորեն, այնքան էլ անթույլատրելի է ըստ բուն կռահման նշանակությամբ: Հավանակա՞ն է, արդյոք, որպեսզի գրիչը հանրահայտ Մծբին քաղաքի փոխարեն դներ Մծուրք, անծանոթ կամ քիչ ծանոթ և վաղուց երկրի երեսից վերացած մի քաղաք:

Ագաթանգեղոսին: Այստեղից արդեն մեկ քայլ է դեպի միասնական արձանագրությունը, ինչպես բացատրեցինք վերը: Եվ ահա թվում է անհաղթահարելի խոստաբանությունը: «Նախնական պատմությունը» առաջին իսկական տարբերակով, որ մենք հանույքով կանվանեինք Մծուրքի ի տարբերություն երկրորդի՝ Մծբինի, մտել է Փավստոս Բուզանդի առաջին գրքի մեջ: Սեբեոսի մոտ եղած արձանագրության պատմությունը, որքանով որ այնտեղ շոշափվում է Ագաթանգեղոսի անունը, Փավստոսին հայտնի չէ: Չէ՞ որ ինքն իսկ ասում է նախաբանում. «Վասն զի է ինչ մեր պատմութիւն՝ որ առաջին է, և է ինչ՝ որ վերջին է. իսկ որ միջին ինչ եղև, այն ի ձեռն այլոց գրել գրեցաւ»[1]: Միջին պատմություն ասելով Փավստոսը հասկանում է, ինչպես գիտենք նույն նախաբանից, Թադեոսի քարոզչությունը և Գրիգոր Լուսավորչի առաքելությունը, այլ կերպ ասած Լաբուբնայի և Ագաթանգեղոսի երկերը: Պարզ է, որ Փավստոսը դեռևս չգիտի արձանագրության կամ «Նախնական պատմության» հեղինակ Ագաթանգեղոսին: Հասցրե՞լ էր, արդյոք, Փավստոսի օրոք ὁ ἀγαθάγγελος վերածվելու Ագաթանգեղոսի անձնավորությանը - դա ևս մի հարց է, որին կարելի է միայն ժխտական պատասխան տալ: Այդ հիման վրա հեշտ էր հերքել դեռ ոչ վաղ փորձը՝ համադրելու Սեբեոսի մոտ Ագաթանգեղոսի պատմությունը Փավստոսի կորսված գրքի հետ[2]: Իսկ այժմ, երբ այդ փորձը արդարացված է այլ ճանապարհով, «Նախնական պատմության» ճակատագիրը և նրա կապը Փավստոսի հետ այլ լուսաբանում են պահանջում: Փավստոսի առաջին գրքերի երբևէ գոյությունը ժխտող գիտնականները վկայակոչում են այն բանը, որ դեռևս Ղազար Փարպեցին գիտե այն մեզ հասած տեսքով. մի՞թե այդքան վաղ անջատվել ու անհետացել են առաջին գրքերը: Փաստարկը շատ ծանրակշիռ է, բայց նաև դյուրին վերացվող: Փավստոսի պատմության բնագրի մասին վիճաբանությունը պետք է լուծել ոչ հօգուտ հայերեն լեզվի: Փավստոսի երկը գրված է, մեր կարծիքով, հունարեն լեզվով IV և V դարի սահմանածրին, ոչ վաղ մինչև Մեսրոպի կողմից հայոց այբուբենը կատարելագործելը: Իսկ հայերեն թարգմանությունը կատարված է V դարում, ընդ որում, անտեսված են առաջին գրքերը: Այդ հանգամանքը չպետք է մեզ շփոթեցնի. առաջին գիրքը վերաբերում էր հեթանոսական ժամանակաշրջանին, որի մասին հիշողությունները եկեղեցապետությունը խնամքով ջանում էր ոչնչացնել: Իսկ երկրորդ գիրքը, Փավստոսի հավաստիացմամբ, սոսկ սեղմ ձևով տալիս էր Թադեոսի և Գրիգորի առաքելությունների պատմությունը, որն ավելորդ էր համարվում թարգմանել՝ գրականության մեջ բնագրերի առկայության պայմաններում: Ոգին, որ

[1] Փավստոս Բուզանդ, էջ 5:

[2] Н. Марр, նշվ. հոդվածը:



նշմարվում է հայկական տեքստում, այնքան անբարյացակամ՝ աշխարհիկ և ջատագովական՝ եկեղեցական իշխանության նկատմամբ, մուծված է թարգմանչի կողմից և նրա, որպես եկեղեցապետության ներկայացուցիչներից մեկի, տրամադրության արտացոլումն է: Հեղինակը՝ Փավստոսը, որն իր Պատմության մեջ հաճույքով տեղ է տվել Արշակունի թագավորների մասին ամեն տեսակ զրույցների, չէր կարող այդպես փշոտ վերաբերվել նրանց: Թունոտ երանգը ընդհանրապես խորթ է ռոմանտիկական պատմվածքներին. իսկ ռոմանտիկական տարրը Փավստոսի մոտ քիչ չէ: Եկեղեցու շահերի այդպիսի նեղ ըմբռնում ունեցող մարդը, իհարկե, չէր թարգմանի առավել, քան անբարեպաշտ և անարժան թագավորների հեթանոս նախնիների մասին ավանդազրույցները:

Ղազար Փարպեցին օգտվել է հայերեն թարգմանությունից, ուստի և նրա անծանոթ լինելը առաջին գրքերին, որպես փաստարկ նրանց գոյության դեմ, կորցնում է ուժը: Բացատրվում է նաև այն տարօրինակ փաստը, որ հայ գրականության մեջ մինչև Սեբեոսը ոչ մի հիշատակություն չկա «Նախնական պատմության» մասին: Նա չէր կարող այդպես անհետք անցնել, եթե երբևէ եղել էր հայ գրականության ստացվածքը:

Փավստոսից անկախ, դիպվածով ասորական Միջագետք նետված «Նախնական պատմությունը» պահպանվել էր այնտեղ մինչև VII դարը: Այնտեղից այն անցել է Սեբեոսի ձեռքը, որը հասկանալով գտնված հուշարձանի ողջ արժեքը, նախակցեց այն իր պատմական երկին: Խորենացու մոտ Մարաբասի գիրքը ծագումնաբանորեն կապված է Մծբինյան կամ Սեբեոսյան խմբագրության հետ: Արձանագրության մասին, որպես Ագաթանգեղոսի աշխատության, Փավստոսին անծանոթ առասպելը ծանոթ է Խորենացուն: Այն պարզորոշ լսվում է Վաղարշակի կարգադրության մեջ՝ «յարձանի հրամայէ դրոշմել» սերունդների համար: Նա պատմությունից այնքան էր հասկանում, որ կարող էր մերժել Տրդատին և արձանագրությունը վերագրել Վաղարշակին: Խորենացին գիտե նաև Մծբինում Սանատրուկի ներքադրյալ, Փավստոսի տեսակետից, պալատների մասին: Մծբին քաղաքի վերակառուցումը, որ նրա մոտ կատարում է Սանատրուկը («քակեաց և վերստին շինեաց պայծառագոյն (զՄծբին»)[1], ոչ այլ ինչ է, եթե ոչ խոստաբանությունից ներշնչված ծանոթագրություն Սեբեոսի մոտ թագավորի կառույցների «ավերակների» վերաբերյալ:

Խորենացու մոտ Մարաբայի պատմության ծավալի ճիշտ ըմբռնման դեպքում, նրանում ոչ մի էական բան չի մնա, որը հնարավոր չլիներ քաղել Սեբեոսից: Ընդհանուրի կողմից ընդունված ծավալը հանգչում է մոլորու-

[1] Մովսես Խորենացի, Գիրք Բ, 36:

թյան վրա: Ըստ Մարաբայի գրքի Խորենացին մտածում է շարադրել հին պատմությունը, «յորմէ ... երկրորդեմք ... ձգելով զրնիկ նախարարութիւնս մեր մինչև զքաղդեացւոց և Սարդանապալայ և ևս մօտագոյն»[1]: Նրա մոտ Սարդանապալը Պարույրի ժամանակակիցն է, իսկ պատմությունը այդ ժամանակաշրջանում ընդգրկում է Հայկյանների ծագումնաբանությունը: Սեբեոսի մոտ այն հասցվում է մինչև Շամիրամ. նույնպես և Խորենացու մոտ: Ա գրքի 19-րդ գլխում՝ «Որ ինչ զկնի մահուանն Շամիրամայ» պատմիչը բաժանվում է Մարաբայից ըստ էության այն բանից հետո, երբ ցուցադրելով իր ճշմարտասիրությունը («ասեմք լինել արդարաբան»), շարադրված պատմության համար ամբողջ պատասխանատվությունը գցում է նրանց վրա, «ըստ որոց հաւաքումն»: Նա չի թաքցնում նաև անճշան խոտորումները, որ թույլ է տվել Մարաբայի համեմատ («դոյզ ինչ կասեալ»)[2]:

Անցնելով Հայկյան թագավորական հարստության պատմությանը, Խորենացին դեռևս աչքը չի կտրում Մարաբայի գրքից: Բայց նա այնտեղ այլ բան չի գտնում, բացի «զհիմունս», որոնք վկայում են նրան ճշմարտությունը այն բանի, որ պատրաստվում է պատմել: «Մեզէն իսկ հիմունս այսպիսեաց բանից ընթեռնուլ արժանաւորեցաք, - ասում է Խորենացին, - ի չորս հազներգութիւնս, զարգասաւորին ի բանս և զիմաստնոյն իսկ և ի մէջ իմաստնոյ իմաստնագունին»[3]: Այս, մինչև այժմ չհասկացված արտահայտության խսկական իմաստը, ինչպես նաև «հազներգութիւն» բառի նշանակությունը հասկանալի են դառնում Սեբեոսի «Նախնական պատմութեան» հետ համեմատելիս: Այստեղ հեղինակը տարբերում է չորս ժամանակաշրջան Հայաստանի պատմության մեջ՝ Շամիրամից մինչև Արշակունիների գալուստը:

1. Զավքիչ Շամիրամի մահից հետո հայերը շարունակում են մնալ ասորեստանցիների իշխանության ներքո մինչև Սենեքերիմ:

2. Սենեքերիմի օրոք Զարեհ Հայկյանը տապալում է նրան, և Զարեհի տոհմը տիրապետում է մինչև Նաբուգոդոնոսոր:

3. Այնուհետև հայերը ենթարկվում են քաղդեացիներին և, վերջապես,

4. Վրա է հասնում Մակեդոնական տիրակալությունը մինչև Արշակունիներ:

Տվյալ տեղում «Հազներգութիւն» պարզապես նշանակում է «պարբերացում»: Մեր առջև են չորս ժամանակաշրջան, և նրանցում, 2-րդ ժամանակաշրջանում իսկապես «զհիմունս» կան, որոնք կռահում է Խորենացին, թե Հայկյանները «թագաւորութեան հասանէին յաստիճան»: Կրկին

[1] Մովսես Խորենացի, Ա, 9:

[2] Հմմտ. Միաբան (Գ. Տեր-Մկրտչյան), Խորենացու պատմության ուսումնասիրություն, Վաղարշապատ, 1896:

[3] Մովսես Խորենացի, Ա, 22:



անգամ Խորենացին վերադառնում է Մարաբային Բագրատունիների և Անգեղտան ծագման առիթով, որի մասին նա պարզ իմացնել է տալիս: Հետագա շարադրանքին Մարաբան բոլորովին անմասն է, և Խորենացին լքում է նրան, որպեսզի վերջին անգամ հարևանցի աչք նետի իմաստունին Արշակունիների պատմության մեջ: Պատմիչը հավանություն չի տալիս ասորու կարծիքին Արշակունիների նախամոր վերաբերյալ. դժգոհ է նաև թագավորների ցանկից, որը նրա մոտ ուժեղ վերամշակման է ենթարկվում: Ընդորում, Խորենացին հնարավոր է գտնում ըստ Մարաբայի թողնել միայն առաջին երեք անունները, իսկ Արտաշեսից հետո նրանք տարբեր ուղիներով են ընթանում: Իրավացիորեն Խորենացին հավելում է անում՝ «Աստանօր սպառին բանք ծերունւոյն Մար Աբայ Կատինայ»: Հավելման իսկական տեղը Արտաշեսից հետո է, բայց այն հայտնվել է Արշակի մոտ այն բանի հետևանքով, որ Խորենացին մոռացրել է և Արտաշեսին դարձրել Տիգրանի հայր, որին ծանոթ չէ Մարաբան: Իսկ Տիգրանի և նրա հետ միասին հոր՝ Արտաշեսի գործերը, նա շարադրում է ըստ այլ աղբյուրների[1]:

Այժմ կարելի է չզարմանալ հակասության վրա, որի մեջ Խորենացին ներքաշել է իրեն՝ Վաղարշակի օրոք և շնորհիվ նրա ձեռք բերված գրքում մտցնելով ոչ միայն Վաղարշակի, այլև նրա որդի Արշակի պատմությունը: Չենք զարմանում, որովհետև Խորենացին ճիշտ չէ խոսել ոչ թե այստեղ, այլ բուն գրքի պատմության մեջ, որը նա, իմաստակելով, փաթաթել է Վաղարշակի վզին:

*Թեև բերված զուգահեռը չի տանում ժխտման, սակայն ոմանց կարող է* թվալ, որ Խորենացին այլ աղբյուր է ունեցել «Նախնական պատմության» համար: Այն մեզ պետք կգա պարզելու համար, թե որտեղից է Խորենացու մոտ ընկել Մարաբայի անունը: Իսկ զուգահեռը, ընդհակառակը, երևան հանելով Խորենացու լիովին բարեխիղճ վերաբերմունքը իր օգտագործած նյութի նկատմամբ, ստիպում է մեզ շատ զգույշ լինել և միայն մտացածին բան չտեսնել այնտեղ, որտեղ չենք կարող կամ մինչև հիմա չենք կարողացել ստուգել Խորենացուն ըստ նրա աղբյուրների: Փոփոխություններ և հերյուրանքներ, իրենց զուտ իմաստով, երևակայամոլության իմաստով, խորթ են Խորենացուն: Վստահորեն դեպքում մեր պատմիչը հմուտ գրող է, փորձառու՝ սյուժեներ մշակելու ունակության մեջ: Մենք հեռու կլինեինք

[1] Ըստ Խորենացու Անգեղը Հայկազուն է «ի Պաւքամայ ումեմնէ». Սեբեոսի մոտ ևս նա Հայկազուն-Բագրատունի է: Խորենացին հիշատակում է բոլոր Հայկազնյան թագավորների անունները, որոնք կան Սեբեոսի մոտ, բացառությամբ Սարհանգի: Խորենացու Պաւքամը և Մարաբայի Սարհանգը կարելի է համադրել, ենթադրելով, որ Խորենացին ճիշտ չէ միացրել Սարհանգին պա վանկը նախորդող աղա-ից: Ապա, Սարհանգ = Խորենացու մոտ Պաւսարհանգ = Պասաքհանգ = Պասաքանգ = Պաւքա-նգ = Պաւքամ:

ճշմարտությունից, եթե մտածենք, որ Հայկյան թագավորների երկար պատմությունը Խորենացին հյուսել է Եվսեբիոսից յուրացրած հենքի վրա: Ճիշտ նույնպես Սեբեոսի «Նախնական պատմության» մեջ պակասող Հայկի տոհմածառը Խորենացու կողմից չի հորինված:

Պետք է ենթադրել, որ Խորենացին իր տրամադրության տակ ունեցել է «Նախնական պատմության» Փավստոսյան խմբագրությունը ևս: Ըստ Պրոկոպիոսի, այլ կերպ ասած ըստ Փավստոսի, առաջին Արշակունին թեկուզ և կոչվում է Արշակ, ինչպես Սեբեոսի մոտ, բայց նա նշանակվում է ոչ թե հոր, այլ եղբոր կողմից, համանման Խորենացուն: Այնուհետև, քննադատները նշել են, որ Պրոկոպիոսը Խորենացու հետ միանգամայն միատեսակ արտահայտություններով է պատմում փյունիկյան արձանագրության մասին[1], և միևնույն արտահայտություններն են երկուսի մոտ էլ նաև Հերոդոտոսի չորրորդ գիրքը վկայակոչելիս[2]: Եթե հարկ է ենթադրել նրանց համար ընդհանուր աղբյուր՝ Գուտշմիդի հետ մեկտեղ[3], ապա այն Փավստոս Բուզանդն է: Ըստ Խորենացու Պատմության իմաստի, Հայաստանի «Նախնական պատմությունից» երկու տեղն էլ Մարաբայի գրքերից են: Հետևաբար, նրանք կարող էին գտնվել Փավստոս Բուզանդի մոտ: **Այդ հանգամանքը հանգեցնում է** խիստ գայթակղիչ, բայց նույնքան էլ վտանգավոր մտքի՝ **համադրելու երկու պատմական աշխատությունները**՝ Փավստոսի և Խորենացու, իրենց ամբողջության մեջ. այնպես, ինչպես Խորենացու Գ-րդ գիրքը համապատասխանում է Փավստոսի երեք գրքերին և կազմում է նրանց համառոտ բովանդակությունը, այնպես էլ առաջին երկու գրքերը ոչ այլ ինչ են, եթե ոչ լայնորեն ընդարձակված Փավստոսի երկու սկզբնական գլուխները: Դրան չեն խանգարում Խորենացու գրքերի չորությունը, արհեստական և բանաքաղածո բնույթը. բավական է ենթադրել, որ Խորենացու Ա և Բ գրքերը այնպիսի վերաբերության մեջ են գտնվում Փավստոսի կորսված գրքերի նկատմամբ, ինչպիսի վերաբերության մեջ է Գ-րդ գիրքը պահպանվածների հանդեպ, այսինքն որ Խորենացին հեռացնում է Փավստոսի պատմության ամբողջ կենդանի հեքիաթային շիքը և պահպանում է միայն իրադարձությունների չոր կմախքը:

Մի կողմ թողնելով բացահայտորեն մեզ հայտնի մյուս աղբյուրների, գլխավորապես Եվսեբիոսի, ազդեցությանն արձագանքող տարրերը, մնացյալում մենք Խորենացու մոտ քիչ, զուտ Փավստոսյան մոտիվներ չենք գտնի:

Եթե անգամ ենթադրենք, որ կորսված գրքերից երկրորդն ամբողջովին

1 **Procopii Caesariensis**, De bello Vandalico, II, 10. **A. Carrière**, Nouvelles sources.

2 **Procopii Caesariensis**, De bello Gotthico, IV, 6. **A. Gutschmid**, Über Glaubwürdigkeit.

3 **A. Gutschmid**, նույն տեղում:



զբաղեցնում էին Ագաթանգեղոսը և Լաբուբնան, ապա մի գրքի ծավալը, դատելով մեզ հասած գրքերից, թույլ է տալիս այնտեղ առավել շատ նյութ տեղադրել, քան կա Սեբեոսի «Նախնական պատմության» մեջ: Խորենացու մոտ բոլոր այն տեղերը, որոնք վիպական բնույթ են կրում, կարելի է գրանցել Փավստոսի հաշվին: Ինչպես մեզ հասած, այնպես էլ սկզբնական գրքերում, Փավստոսը գրավոր աղբյուրներ չի իմացել: Նա պատմությունը տանում է ժողովրդական կենդանի ավանդությունների ու ավանդազրույցների հիման վրա: Գրական ճաշակով և ընդհանրապես կրթության ոգով Փավստոսը կտրուկ կերպով տարբերվում է Խորենացուց: Ինչ չափով որ լուսավորյալ Բուզանդացին հասկանում և բարձր էր գնահատում բանահյուսական ստեղծագործությունները, համարյա այն չափով Խորենացու համար նրանք մնում էին քիչ կարևոր: Խորենացին իսկական գրքի մարդ է: Նրա աչքում գրավոր խոսքը ինչ-որ հմայք և ուժ ունի: Նա թերահավատորեն է վերաբերվում Փավստոսի բոլոր վիպասանքներին, մի գրողի, որի մոտ Խորենացին չի նկատում ոչ մի խորագիտակություն դպրության մեջ: Նա անսպասելիորեն հանդիպում է մի հուշարձանի՝ «Նախնական պատմությանը» Սեբեոսի մոտ, և հուրախություն իրեն, իմանում է, որ Փավստոսի մոտ որպես ժողովրդական ավանդազրույցներ մատուցվողը հեռու է այդպիսին լինելուց, այլ գալիս է գիտնական Մարաբայից[1]:

Ի դեմս փիլիսոփայի գրքի, նա լիակատար երաշխիք ունի Փավստոսի մոտ եղած համապատասխան նյութի հավաստիության համար: Այդ մասը Խորենացին խնամքով առանձնացնում է որպես հատուկ հոդված, չմոռանալով հարկ եղածին պես հարդարել արժեքավոր հուշարձանի պատմությունը: Այժմ նա կարող է բացեիբաց հայտարարել. «Արդարացուցանէ այս զասացեալ զրոյցս անգիրս». «Զայս արդարացուցանէ... աշխարհիս մերոյ առասպելք զբազմահմուտ ասորին արդարացուցանեն» և այլն: Այդ ի՞նչ առասպելներ են, որոնք արդարացնում են ասորուն կամ արդարացվում են նրանով: Դրանք այն առասպելներն են, որոնք նա գտնում է Փավստոսի մոտ: «Զրոյցք, առասպելք, երգք, վէպք»-ի գոյության մասին Խորենացին գիտե Փավստոսից և մեծին մասամբ դրանք ակնարկներ են Փավստոսի «պատմությունների» մասին: Այդպիսի ընկալմամբ երկարաձիգ վիճաբանությունները այն հարցի վերաբերյալ, թե հայերն ունեցե՞լ են վիպերգեր, թե դրանք հմտորեն հյուսվել են Խորենացու կողմից Աստվածաշնչի «ծնունդոց»-ից, որոշ չափով վերանում են:

1 «Կատինա» մակդիրը Խորենացու մոտ դեռևս չի ապացուցում, որ Խորենացին գիտեր Մարաբայի ուրիշ խմբագրություն (ոչ ընդհանրապես «Նախնական պատմության»): Նրա համար դժվար չէր փոխարինել «Փիլիսոփան» Կատինայի, եթե նա հաջողեցրել էր իմանալ, որ «Բակուր պատրի թագաւորութեան ասի»:

Գրքային ոգին, զրամոլությունը քույլ չէին տալիս Խորենացուն շարադրանքի ընթացքում մնալու Փավստոսի սահմաններում: Նա թափառում է իրեն հայտնի գրավոր գրականության անկյուններում, փորփրում է Եվսեբիոսը, որպեսզի որևէ կերպ ընկնի հին պատմության կամ պարզ ակնարկների հետքի վրա, որոնցում կգտներ հաստատումն Փավստոսի խոսքերի: Եվսեբիոսի մոտ կարդալով Կյուրոսի և Վարրակեսի պատմությունը, նրա կաղապարով վերաձևում է Փավստոսի անբռնազբոսիկ պատմվածքը Պարույրի և Տիգրանի մասին, պատմվածք, որը հավանորեն նմանվում էր նրան որևէ մի առումով: Ի նմանություն Եվսեբիոսի Խորենացու հորինած ամբողջ էջերը, իհարկե, հազիվ թե ի վիճակի են համոզելու որևէ մեկին նրանում, որպեսզի դրանք հասնեն մինչև ինքնուրույն բնույթի ավանդավեպերը: Բայց մյուս կողմից չէ՞ որ դժվար է ենթադրել, որ Խորենացին, այդքան բծախնդիր վերաբերմունք դրսևորելով դեպի Մարաբայի գիրքը, առանց որևէ հիմքի Հայկազնեան թագավորության հիմնադիր դարձներ Պարույրին՝ Մարաբայի Զարեհի փոխարեն: Եթե նա չէր գնահատում Մարաբասին, ապա ինչո՞ւ էր նրա մոտ «զհիմունս» փնտրում, իսկ եթե նա իսկապես գնահատում է փիլիսոփային, ապա նրանից խոտորումը չի կարելի համարել Խորենացու կողմից քմահաճույքի գործ: Փավստոսի 4-րդ գրքից երևում է, որ նա գիտե Տիգրան թագավորին, որը Պաղեստինից հրեաներ է գաղթեցրել Հայաստան. նրան նա անվանում է «Արշակունի», կարծես թե ի տարբերություն մյուսից, նրան նույնպես հայտնի Հայկազնեան Տիգրանից: Փավստոսից հեռու չեն Խորենացու մոտ եղած և՛ առասպելները, և՛ Վահագնի երգը: Արշակունյաց ժամանակաշրջանի վերաբերյալ արդեն կասկած չի կարող լինել, որ Փավստոսի մոտ պատմվում էր ո՛չ միայն առաջին թագավորների մասին: Տիգրանը նրան քաջ հայտնի է, նաև Սանատրուկը. իսկ Արտաշեսի և Սաթենիկի մասին ռոմանտիկական երգը, որից այդպես էլ Փավստոս է քուրում, ամենայն հավանականությամբ պատշաճ տեղ էր գրավում նրա Պատմության մեջ: Արտաշեսի և Սաթենիկ թագուհու մասին մենք գիտենք ոչ միայն Խորենացուց, այլև Սուքիասյանց վարքից:

Դժվար է ասել, թե ինչպիսին է եղել Արշակունիների ընդհանուր ցանկը Փավստոսի մոտ: Տիգրանի, հատկապես «առաքելասպան Սանատրուկի» անունը կարող է հիմք ծառայել մերժեցնելու այն Խորենացու ցանկին: Բայց Փավստոսից չի երևում, թե ինչ Տիգրանի այստեղ ի նկատի ունի. արդյոք առաջի՞նը, որը Մարաբայի մոտ չի եղել, թե Երկարակյացը, որ կա երկու ցանկերում էլ: Ինչ վերաբերում է Սանատրուկին, ապա, կարծում եմ, Փավստոսը կարող էր նրան իմանալ միայն Սծուրքի Սանատրուկի կերպարով. եթե նա ծանոթ է Սանատրուկին որպես առաքելասպանի ևս,



ապա դրանով Փավստոսը պարտական է «Թադեոսի քարոզչությանը», և հազիվ թե նրան տեղ հատկացրած լիներ թագավորների շարքում՝ սեփական պատմության մեջ: Խորենացու մոտ ցանկի վերամշակումը արդյունք է գլխավորապես Աբգարի հայացման: Իսկ վերջինս դեռևս չի ենթադրվում նրանում, որ «Սանատրուկը սպանել է Առաքյալին»: Եթե Փավստոսը որևէ տեղեկություն ունենար Աբգարի մասին, որպես Հայոց թագավորի, ապա «Խոստաբանութեան» մեջ բարեպաշտ Տրդատի կողքին կդներ նաև առավել բարեպաշտ Աբգարի անունը և ոչ թե առաքելասպանի: Բացի այդ, հայտնի է, որ Պրոկոպիոս Կեսարացին հատկապես հետաքրքրվում էր Աբգարի՝ Քրիստոսի հետ ունեցած թղթակցության վերաբերյալ ավանդազրույցով[1]: Եթե τῶν Ἀρμενίων ἱστορία -ում որևէ բան լիներ առասպելի մասին, առավել ևս նրա հայացման մասին, նա անպայման կհիշատակեր այդ մասին: Ոչ միայն Փավստոսը, այլև Ղազար Փարպեցին, հնարավոր է նաև Սեբեոսը դեռևս ծանոթ չեն Աբգարի հայացմանը: Այն առաջինը կատարվել է, ամենայն հավանականությամբ, «Հայոց պատմության» հեղինակի գրչով և կամ նրա ժամանակ: Թագավորների ցուցակը Փավստոսի մոտ, ըստ բոլոր նշանների, ավելի շատ ընդհանրություններ ուներ Սեբեոսի, եթե միայն կատարելապես չէր համընկնում Մարաբայի ցանկի հետ, քան Խորենացու ցուցակի հետ:

Նման հարցադրման դեպքում Խորենացու «Հայոց պատմությունը» ուրիշ երանգավորում է ստանում իր ծագման մեջ: **Իր գլխավոր հիմքում և ամենից առաջ պատմական սխեմայում այն ոչ այլ ինչ է, եթե ոչ Փավստոս Բուզանդի *τῶν Ἀρμενίων ἱστορία* -ի վերափոխում, արմատական վերամշակում:** Եթե հիշենք Փավստոսի շնորհազուրկ վիճակը հայ գրականության մեջ Ղազար Փարպեցուց սկսած մինչև վերջին ժամանակները[2], ապա հասկանալի կդառնա նաև նման վերամշակման իմաստը: Այն պետք է մաքրազերծեր Փավստոսի մոտ եղած պատմական մաքուր հատիկը որոմներից՝ այն ժամանակ տիրապետող գրական ճաշակի ու ըմբռնումների տեսանկյունից: Հասկանալի է նաև Խորենացու կողմից Փավստոսի անունը լռության մատնելը, որը բացատրվում է ոչ թե պարտակչությամբ, ինչպես կարծում են, այլ դեռևս լուսավորյալ Ղազարի կողմից անվանարկված պատմիչի վատ համբավով:

[1] **Procopii Caesariensis,** De bello Persico.

[2] Մ. Չամչյանը նույնպես չէր հասկանում Փավստոսի նշանակությունը, որն առաջին անգամ ըստ արժանվույն գնահատվեց Հ. Գաբրոջյանի կողմից՝ «Տիեզերական պատմութեան» մեջ:

Ինչևէ, բարձրացված հարցը և նրա լուծումը նշանակություն ունի «Հայոց պատմության» քննադատության համար, նրա հեղինակի գրական կերպարը պարզաբանելու համար: Ինչ վերաբերում է հերթական հարցին՝ «Պատմության» ծագման ժամանակի մասին, ապա այստեղ վճռական խոսքը այն փաստինն է, որ նրա հեղինակը օգտագործել է Մարաբայի գիրքը, որի տակ մենք հասկանում ենք «Նախնական պատմությունը» Սեբեոսի մոտ: Եթե միայն ճիշտ են նույնացրել Անանունին «Հերակլի արշավանքի պատմության» հեղինակի հետ, ապա «Հայոց պատմությունը» չի կարող ծագած լինել VII դարից առաջ: Խորենացու բացասական քննադատության հետևում պետք է ընդունել կայուն հիմքերի առկայություն: Սեկ բան է խախուտ այդ քննադատության մեջ, իր ոչ գիտականությամբ կոպիտ հարցադրումը՝ իբր թե Խորենացին կեղծարար է:

Մովսես Խորենացու առնչությունները «Հայոց պատմության» հետ հարկ է այնպես լուսաբանել, ինչպես ընդունված է ընդհանուր գրականության մեջ բոլոր համանման դեպքերում: Հարկ է հանել Խորենացու անունը «Հայոց պատմության» վրայից և վերջինս դասել Անանուն կամ ավելի ճիշտ գրականության անվավեր երկերի շարքը: Ընդ որում, կենսագրական տեղեկությունները, որոնք մեզ հայտնի են «Պատմությունից», պահպանում են իրենց ուժը Խորենացու համար. նա լուսավորության դարաշրջանի ականավոր ներկայացուցիչներից մեկն է, և հավանաբար այն դժբախտ Մովսես փիլիսոփան, որի մասին դառնությամբ է հիշատակում Ղազար Փարպեցին: Նա մեծ փառք էր վայելում՝ շնորհիվ թարգմանական գրականության ասպարեզում ունեցած գործունեության («այր ծեր եւ պարապեալ թարգմանութեան»): Նրա հանճարեղ անվան տակ հայտնի նպատակներով թողարկվել է «Պատմությունը», կազմված նշանակալիորեն ավելի ուշ՝ մեզ անհայտ, ոչ նվազ գրական ընդունակություններ ունեցող հեղինակի կողմից: Եթե Փավստոս Բուզանդի «Պատմությունը», ըստ Մամիկոնյանների նրանում գրաված տեղի, վերաբերում է այդ տան հզորության ժամանակներին, ապա «Հայոց պատմությունը» նրա հեղինակի նկատելի միտումով՝ ետ մղել Մամիկոնյաններին և առաջ քաշել Բագրատունյաց իշխաններին, ընկնում է նրանց առաջնության դարաշրջանին: Այն հայտնվել է Հայաստանում քաղաքական խմորումների ժամանակամիջոցում՝ նոր թագավորական հարստության բարձրացումից առաջ: Հայրենասիրական խոր զգացմունքը, որով ներծծված է «Հայոց պատմությունը» ի հակադրություն Փավստոսի անտարբերության, մեզ վերստին փոխադրում է Բագրատունիների դարաշրջանը, երբ ազգային ինքնագիտակցությունը հասել էր բարձրագույն վերելքի: «Հայոց պատմությունը» որպես խստորեն քաղաքական պատմություն, որ գերազանցապես պատմում է Հայկազնյան



և Արշակունյաց նախկին թագավորությունների ճակատագրի մասին, ընդհանուր առմամբ պտտվում է բարձր տրամադրության ի տես սպասվող քաղաքական ազատության, իսկ մասնավորապես այն յուրատեսակ պսակ է *հայոց գահի* փառապանծ հավակնորդների անցյալին, որը պետք է սրբագործեր նրանց իրավունքները (10):

# ԳՐ. ԽԱԼԱԹՅԱՆՑ, ՀԱՅ ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԸ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ «ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ» ՄԵՋ: ՄՈՍԿՎԱ, 1903

Պրոֆ. Գր. Խալաթյանցի ներկա աշխատությունը 1896 թ. նրա հրատարակած հայկական էպոսի մասին ուսումնասիրության հետ կազմում է Մովսես Խորենացու «Հայոց պատմության» ամբողջական քննությունը (1):

Խորենացու մասին մինչև օրս հրապարակված աշխատանքները, ինչպես կարծում է հեղինակը, վերաբերել են առանձին հատվածներին կամ գլուխներին: Դրանք հիմնականում կասկածի տակ են առնվել, մերժվել են որպես հետագա ընդմիջարկություններ, ընդունվել են որպես պարականոններ, դիտվել են որպես ժամանակավրեպություններ:

Սակայն Խորենացու աշխատանքի ամբողջականությանը, նրա պատմական միջուկի առիթով որևէ ընդհանուր եզրահանգում չի արվել:

Պրոֆ. Խալաթյանցը նպատակ է դրել ուսումնասիրել Խորենացու «Հայոց պատմությունը» իր լրիվ ծավալով, նա աշխատել է «հետազոտել Խորենացուն հաջորդաբար, քայլ առ քայլ, բացահայտել, որքան դա հնարավոր է, նրա բուն աղբյուրները և ցույց տալ Խորենացու վերաբերմունքը դրանց նկատմամբ»: Հեղինակի խնդիրն է եղել նաև նոր տվյալներով ամրապնդել Խորենացու ժամանակի վերաբերյալ Ա. Գուտշմիդի (2) ու Ա. Կարրիերի (3) եզրակացությունները և դրա հետ միասին Խորենացու բոլոր աղբյուրների մանրամասն ուսումնասիրության և մանրակրկիտ ստուգման միջոցով, հնարավորության սահմաններում, պարզել նրա երկի՝ որպես պատմական հուշարձանի, արժանահավատության հարցը:

Պրոֆ. Խալաթյանցն այդ հիանալի խնդրի լուծմանը ձեռնամուխ է եղել կանխակալ տրամադրությամբ: Հափշտակվելով Խորենացու մերժողական քննությունների եզրակացություններով՝ նա դրանք հասցրել է ծայրահեղության և այնպիսի տեսություններ ու վճիռներ է կայացրել, որոնք գիտական տեսակետից հեռու են անբասիր լինելուց:

Քննադատների կողմից վաղուց արդեն մատնանշվել են այն հուշարձանները, որոնց մեջ կան Խորենացու հետ ընդհանուր տեղեր ու կետեր: Ենթադրվել է, որ դրանք ծագել են մեկ քննդհանուր աղբյուրից: Պրոֆ. Խալաթյանցը այլ կերպ է բացատրում նրանց հարաբերությունը և կարծում է, որ Խորենացին է կախված նրանցից: Հենց որ որևէ տեղ կապ է նկատում, երբեմն բոլորովին հեռավոր, պրոֆ. Խալաթյանցը երկար չմտածելով, այն հայտարարում է Խորենացու կախվածություն: Այնտեղ, որտեղ պետք է կամ կարելի է խոսել գրական զուգահեռների մասին, պրոֆ. Խալաթյանցը դիտում է փոխառության փաստ: Հուշարձանների փոխհարաբերությունների վերաբերյալ ամենաբարդ հարցերը երբեմն լուծվում են չափազանց հեշտությամբ: Համեմատությունները ու մերձեցումները ոչ միշտ են բխեցվում ճիշտ գնահատվող բովանդակության տվյալներից կամ պատմա-գրական նկատառումներից: Հաճախ դրանք կարծես թե թելադրվում են այն հետին մտքով, թե Խորենացին ապրել է IX դարում: Շատ դատողություններ ու վճիռներ իրենց վերջնական եզրակացություններով հիմնվում են միայն մեկ էական ենթադրության վրա՝ հայ հին գրականությունը, գրավոր թե բանավոր, Խորենացուն մատչելի է եղել այն նույն չափով, ինչ չափով դա հայտնի է այժմ մեզ: Եթե ընդունենք այդ դրույթը, ապա, թերևս, կարելի կլինի համաձայնել պրոֆ. Խալաթյանցի շատ եզրակացությունների հետ: Շնորհիվ այդպիսի մոտեցման, հեղինակին իրոք հաջողվել է «Խորենացու երկի ամբողջականությունը՝ նրա միջուկը ընդհանուր հանրագումարի բերել»: Պետք է խոստովանել, որ եզրակացություններն աչքի են ընկնում հիանալի հետևողականությամբ: Բայց դժբախտաբար նրանց հետևողականությունը հենված չէ գիտական ամուր ու հիմնավոր դրույթների վրա:

Չշոշափելով պ. Խալաթյանցի աշխատության դրական կողմերը՝ ես մատնանիշ եմ անում լոկ այն կետերը, որոնք ինձ անընդունելի են թվում:

Աշխատության հենց սկզբում հեղինակը կշտամբում է Խորենացուն այն բանի համար, որ նա հայ Արշակունիներին համարում է Ք. ա. II դարի գործիչներ, մինչդեռ պատմական արժանահավատ տվյալներով նրանք Հայաստանում հաստատվել են միայն Տիգրանից ու Տիգրանյաններից հետո, այսինքն՝ երկու հարյուրամյակ ավելի ուշ[1]:

Պրոֆ. Խալաթյանցը իրավացի է, երբ խոսքը վերաբերում է պատմական արժանահավատությանը: Բայց պակաս իրավացի չէ նաև Խորենացին այն իմաստով, որ նրա տրամադրության տակ եղել են աղբյուրներ, որոնցում փաստերը ներկայացվել է այնպես, ինչպես ինքն է հաղորդում:

Հայկական ավանդություններում թագը Տիգրանյաններից Արշակունիներին անցնելու հետևանքով երկու տոհմերը ձուլվել են և կազմել Արշակունիների հարստությունը, ըստ որում Տիգրանյանների հայկական ծագումը տարածվել է նաև Արշակունիների վրա:

Ձուլված հարստությունը պահպանել է հարստություններից մեկի անունը, իսկ ծագումը՝ մյուսի:

[1] Гр. Халатянц, Армянские Аршакиды в "Истории Армении" М. Хоренского, М., 1903, стр. 5.

Անտիոքոսի զորավար Արտաշեսից ծագած Տիգրանյանները սկսեցին թագավորել Հայաստանում Ք. ա. 189 թվից հետո, այդ պատճառով էլ Արշակունիների սկիզբը վերագրվել է այդ ժամանակների ավանդություններին:

Որ հայերի մոտ Արշակունիների հայկական ծագման մասին գոյություն է ունեցել ավանդություն, դա երևում է «Հայաստանի նախնական պատմության» այն խմբագրությունից, որից օգտվել է Պրոկոպիոսը[1]:

Եպիփանի աշխատությունից Ղ. Ալիշանի վերջերս հրատարակած[2] հատվածը հաստատում է Պրոկոպիոսի վկայությունը, Ալեքսանդր Մակեդոնացու մահով, ըստ Եպիփանի, ապստամբում են ոչ թե պարթևները, այլ հայերը, և նրանց մեջ հանդես է գալիս Արշակ Քաջը: Նրա սերունդներից մեկը Հայոց թագավոր Տիգրանն է, որ նվաճում է Մարաստանը, Պարսկաստանը, Հայաստանը, Ասորիքը և Էլամը: Հայ պատմիչ Փավստոս Բուզանդը Տիգրանին նույնպես կոչում է Արշակունի: Փոխանակ այն բանի, որպեսզի, օգտվելով այդ վկայությունից, արդարացնելու կամ լուսաբանելու Խորենացու խոսքերը՝ պ. Խալաթյանցը գերադասում է հավատ ընծայել Ա. Գարագաշյանի մտացածին մեկնաբանությանը, իբր թե Փավստոսի մոտ Տիգրանի Արշակունի անվանումը պետք է հասկացվի թագավորական հարստության իմաստով[3]: Արշակը բնավ էլ թագավոր չի նշանակում: Այդպիսի ավանդության գոյության դեպքում հասկանալի է, թե ինչու Խորենացին հայկական Արշակունիների սկիզբը դնում է Ք. ա. II դարում, այսինքն՝ այնպիսի ժամանակի, երբ Հայաստանում թագավորում էին Տիգրանյանները:

Արշակունիների անուններն ու կառավարման տարիները Խորենացին փոխ է առել «Հայաստանի նախնական պատմությունից»: Ըստ պ. Խալաթյանցի, դրանք պատմական ոչ մի քննադատության չեն դիմանում և «Հայաստանի նախնական պատմության» հեղինակի երևակայության արդյունքն են: Գր. Խալաթյանցը նույնիսկ կարծում է, որ պարսկական թագավորների անունները քաղված են Աստվածաշնչից, Եվսեբիոսից և Սեբեոսից: Սակայն նա չի բացատրում, թե այդ դեպքում հեղինակը ինչու է ընտրել հենց այդ անունները և ոչ ուրիշ, որոնք բավական շատ են Եվսեբիոսի ու Սեբեոսի մոտ, կամ թագավորների քանակն ինչու 12-ն է և ոչ ավելի կամ պակաս: «Հայկական էպոսի» մեջ պ. Խալաթյանցը Անանունի

[1] Տե՛ս «Византийский Временник», т. VIII, вып. 1-2.

[2] Ղ. Ալիշան, Հայապատում, Վենետիկ, 1901, էջ 31:

[3] Գր. Խալաթյանց, էջ 5, ծան. 2:



նախնական պատմությունը համարում է ուշ շրջանի՝ VIII-IX դարերի կեղծանուն գրվածք (ապոկրիֆ): Դատելով թռուցիկ արված նշումներից[1], նա այժմ էլ նույն կարծիքին է: Այն բանից հետո, երբ ապացուցվեց, որ «Նախնական պատմությունը» մտնում է Փավստոսի աշխատության մեջ, որ VI դարի կեսին Պրոկոպիոսն իմացել է Փավստոսին հենց այդ խմբագրությունից, պ. Խալաթյանցի կարծիքը Անանունի մասին կորցնում է հենարանը: Անանունը ոչ մի դեպքում չի կարող համարվել VIII-IX դարերի պարականոն: Նույնիսկ իր բովանդակության ակնհայտ առասպելական մասի թվական տվյալներով, այն ծագել է ավելի հին ժամանակներում, քան ենթադրում է պ. Խալաթյանցը՝ այն հենվում է Սասանյան դարաշրջանում Արշակունիների մասին եղած պարսկական ավանդությունների վրա:

Ըստ Անանունի, պարթևական թագավորների տիրապետությունը տևել է 500 տարի: Նրանք թվով 12-ն էին: Համեմատելով այդ թվական տվյալները արևելյան աղբյուրների տվյալների հետ՝ նրանց մեջ գտնում ենք որոշակի համապատասխանություն:

Ըստ սաորական աղբյուրների, պարթևների թագավորության տևողությունը նույնպես հաշվվում է 500 տարի[2]: Ենթադրվում է, և դրա համար Մասուդիի և Միրխոնդի մոտ կան տվյալներ, որ այդպիսի թիվ են նշում նաև պարսկական գրական հուշարձանները[3]: Հետագայում դրանք կրճատվել են համարյա կրկնակի՝ ըստ Bundeheš -ի 280 տարի, իսկ Ագաթիասի օգտագործած պարսկական գրական հուշարձաններում՝ 270 տարի: Այդ քանակը բխում է դավանաբանական-քաղաքական ըմբռնումներից, որի մասին պատմում է Մասուդին:

Ըստ պարսկական կրոնական գրքերի, պարսկական պետությունը Զրադաշտից 300 տարի հետո պետք է, որ մեծ հեղաշրջում ապրեր: Հեղաշրջում տեղի է ունեցել Ալեքսանդր Մակեդոնացու օրոք: Հազարամյակի վերջում պետությունը պետք է կործանվեր: Զրադաշտից մինչև Ալեքսանդր Մակեդոնացին պարսիկները հաշվում են 300 տարի, իսկ Ալեքսանդրից մինչև Սասանյանները՝ 500 տարի, հետևաբար մինչև հազարամյակի վերջը մնում է 200 տարի: Սասանյանների հարստության հիմնադիրը ապագա դժբախտությունները կանխելու կամ հետաձգելու նպատակով հրամայեց Ալեքսանդրից հետո եկող ժամանակը կրճատել: Նա այդ ժամանակը կիսեց և ընտրեց կրճատված ժամանակին համապատասխան հենց 12 թագավորների, իսկ մյուսներին դուրս գցեց: Ապա նա իր տերության մեջ ամենուրեք տարածեց, որ Ալեքսանդրից մինչև իր ժամանակն անցել է 270 տարի:

[1] Գր. Խալաթյանց, էջ 25:

[2] A. von Gutschmid, Zur Geschichte der Arsakiden. ZMG, Bd. XV.

[3] Ibid.

Այնուհետև պարսկական պատմագիրները, որպեսզի լրացնեն այդ ճեղքը, լրացուցիչ հնարեցին Աշգանյանների առասպելական գիծը, ի տարբերություն Աշկանների առաջին գծի:

Հայկական Անանունը, այնքանով, որքանով նրա մոտ էլ է առկա 500 տարին, ծագել է ասորական գրական հուշարձաններից. մյուս կողմից 12 անուն պարունակող թագավորների ցուցակը ցույց է տալիս նրա կախվածությունը պարսկական աղբյուրներից: Անանունի մոտ գոյություն չունի Արշակունիների ակնհայտորեն առասպելական Աշգանյանների երկրորդ գիծը, իսկ աղբյուրների տարաձայնությունը վերացվում է նրանով, որ 500 տարին բաժանված է 12 թագավորների միջև: Երբեմն դրա հետևանքով են ստացվել առասպելական 70, 60 տարվա թագավորության տարիները: Անանունի անտեղյակությունը պարսկական տարեգրությունների Արշակունիների կողմնակի գծին կարող է բացատրել այն բանով, որ **նա ծագում է ավելի վաղ շրջանից, քան պարսկական գրականության մեջ կողմնակի գծի երևան գալը**: Պարսկական գրականության մեջ այն երևան է եկել պարսկական էպոսի մշակման դարաշրջանում՝ Խոսրով Փարվեզի օրոք՝ VI-VII դարերի սահմանագծում: Հետևաբար Անանունի աշխատանքն այդ պայմանների հետևանքով կազմված է մինչև VII դարը և չի կարող VIII-IX դարերի կեղծանուն գրվածք համարվել:

«Հայաստանի նախնական պատմության» ենկատմամբ ունեցած բացասական վերաբերմունքով է բացատրվում մասամբ և այն, որ պ. Խալաթյանցը սխալ է մեկնաբանում Արշակունիների պատմությունից առանձին դրվագներ: Խորենացու պատմածները Արտաշես թագավորի նվաճումների մասին, հակառակ պ. Խալաթյանցի, հիմնված են ճշմարտության վրա: Հարցի էությունն իհարկե, ոչ թե պատմական արժանահավատությունն է մեծ, այլ զուտ գրական: Հայերի մոտ գոյություն է ունեցել նման ավանդություն Արտաշեսի մասին. այդ է վկայում VII դարի Անանուն **Աշխարհագրությունից** պ. Խալաթյանցի բերած հատվածը: Քիչ է հավանական, որ Խորենացին Արտաշեսի վերաբերյալ տեղեկության համար պարտական լինի **Աշխարհագրությանը**, ինչպես կարծում է պ. Խալաթյանցը: «Աշխարհացոյց»-ի մեզ հետաքրքրող հատվածը պարունակում է ավելին, քան տալիս է Խորենացին: Եթե վերջինս ծանոթ լիներ այդ հատվածին, նա կօգտագործեր այն ամբողջությամբ: Բացի դրանից, այդ հատվածը մի քանի ձեռագրերում պակասում է: Հնարավոր է, որ այն ընդմիջարկություն է, և «Աշխարհացոյց»-ի մեջ է մտել ուրիշ աղբյուրից, իսկ դա նշանակում է, որ հայերի մոտ պահպանվել են ավանդություններ հին Արշակունիների մասին դեռևս VII դարի ժամանակաշրջանից ի վեր:

Խորենացին Արտաշեսին է վերագրում նաև Կրեսոսի սպանությունը:



Գր. Խալաթյանցը պնդում է, որ Խորենացին դիտավորյալ է հայկականացրել Կյուրոսի և Կրեսոսի նշանավոր պատմությունը և Կյուրոսի դերը փոխանցել հայ Արտաշեսին (4):

Իրականում Խորենացու սխալն այլ հիմունք ունի: Վերլուծելով Կրեսոսի սպանության վերաբերյալ հարցը՝ հայ պատմիչը հայտարարում է, որ ըստ մի աղբյուրի Կրեսոսին սպանողի անունը Կյուրոս է, իսկ ըստ մի ուրիշի՝ Արտաշես: Նա երկմտում է և ավելի հարմար բացատրություն չի գտնում, քան ընդունել երկու Կրեսոսների գոյությունը՝ մեկը Ներտանեբոսի օրոք, որին սպանել է Կյուրոսը, մյուսը՝ Արտաշեսի օրոք: Հիմնվելով ժամանակագրական անհամապատասխանության վրա, պատմիչը նույնիսկ հակված է կարծելու, որ առաջինը բոլորովին էլ գոյություն չի ունեցել: Նա ինչ-որ տեղ գտել է, որ Կրեսոսը ապրել է Ներտանեբոսից 200 տարի առաջ, իսկ Ներտանեբոսը՝ Արտաշեսից այդքան տարի առաջ: Բոլոր թյուրիմացությունները Խորենացու մոտ հետևանք են այն բանի, որ նա սխալվել է Արտաշեսի հարցում, որին Կրեսոսի սպանող են համարում հույն պատմիչներ՝ Պոլիկրատեսը, Եվագրոսը, Սկամանդրոսը, Փլեգոնը և նրան Հայոց թագավոր է համարել: Մեր պատմիչը գլխի չի ընկել, թե նշված գրողների մոտ, ո՞ր Արտաշեսի մասին է խոսքը, ո՞վ է այդ կռվազան Արտաշեսը, որն իր սխրագործությամբ գերազանցում է Ալեքսանդր Մակեդոնացուն, Խորենացու մեջ բերած հույն պատմագիրները Արտաշեսի ներքո հասկացել են Կրեսոսին սպանող այն նույն Կյուրոսին: Հույները, ինչպես վկայում է Հովսեպոս Փլավիոսը, Կյուրոսին կոչել են Արտաքսերքսես: Խորենացու բերած հատվածում խոսվում է պարթև Արտաշեսի, այսինքն՝ պարսից թագավորի մասին: Հույն գրողները ոչ միշտ են զգուշավոր արևելյան ժողովուրդների անունները գործածելիս. հաճախ նրանք շփոթում են պարսիկներին պարթևների ու մարերի հետ: Խորենացին էլ հունական պատմագրի կողմից պարթև անունը ոչ ճիշտ օգտագործելու հետևանքով մոլորության մեջ ընկնելով՝ Արտաշեսին ընդունել է համանուն հայ թագավորի տեղը, որի մասին գոյություն է ունեցել ավանդություն, իբր թե նա արշավանքով հասել է մինչև Եվրոպա և սարսափ է տարածել Հելլադայում:

Երկասիրությունը գրելու ընթացքում Խորենացու առաջ բազմիցս խնդիր է առաջացել՝ քննել հակասական տվյալները և դրանք հաշտեցնել: Այսպիսի աշխատանքի դեպքում սխալներն անխուսափելի են, որ և նա իրոք թույլ է տվել բավական հաճախ: Նման դեպքերում որոշակի միատումնավորություն և փաստերի գիտակցական աղավաղում տեսնելն անհիմն անարդարացի է:

Ինչպես ենթադրում է Գուտշմիդը, Պոլիկրատեսի, Եվագրոսի, Սկա-

մաղրոսի և Փլեգոնից քաղած հատվածները Խորենացին ամենայն հավանականությամբ վերցրել է ճարտասանության որևէ դասագրքից:

Պարոն Խալաթյանցը գերմանացի ուսումնասիրողի կարծիքին հավանություն չի տալիս: Այն բոլորը, ինչ որ Խորենացին վերագրում է հիշյալ հույն պատմագիրներին, պ. Խալաթյանցի պնդմամբ, հորինել է ինքը, ըստ որում նրան աղբյուր են ծառայել մի կողմից Կալիսթենեսը, Փիլոնը, Մալալան, ինչպես նաև Փավստոսը, Անանիա Շիրակացին, մյուս կողմից՝ Աստվածաշունչը, Եպիփանը, Գրիգոր Նյուսացին: Հույն պատմագիրների պատառիկները Խորենացու մոտ զբաղեցնում են ընդամենը երկու էջ: Երկու խղճուկ էջ կազմելու համար պ. Խալաթյանցը ստիպում է Խորենացուն քրքրել այդքան հատորներ: Բանն այն չէ, որ այդ ճանապարհով Խորենացին ներկայացված է ծաղրանկարային տեսքով, այլ որ պ. Խալաթյանցը նսեմացնում է իր իսկ քրտնաջան աշխատանքը՝ բռնի նույնացումներ կատարելով: Օրինակ, նա հնարավոր է համարում Խորենացու կողմից Եվագրոսին վերագրվող հետևյալ խոսքերը՝ «և ոչ ողխք զգետն ստուարացուցին՝ արբմամբն ի ձմեռնային նուազութիւն իջուցանելով» համադրել Գրիգոր Նյուսացու ներբողում հանդիպող «զետք ձմեռնական ողխիւք զայրացեալ»[1] մի արտահայտության հետ:

Տիգրանի պատմությունը շարադրելիս Խորենացին օգտվում է Հովսեպոս Փլավիոսից: Ըստ պ. Խալաթյանցի, մեր պատմիչը նրանից վերցնում է նյութը, բայց վերամշակում է այն՝ հայացնելով պարթևա-հրեական հարաբերությունները ու իրադարձությունները: Պարոն Խալաթյանցը մատնանիշ է անում նաև ժամանակավրեպությունը՝ հրեաների Հյուրկանոս քահանայապետը պարթևաց Հրահատին գերի է ընկել Տիգրանի մահից 15 տարի հետո, մինչդեռ, ըստ Խորենացու, հրեական քահանայապետի գերեվարությունը տեղի է ունեցել Տիգրանի օրոք և նրա շնորհիվ:

Խորենացու «անբարեխղճությունը մերկացնելով» մեր ուսումնասիրողը տեղնուտեղը վերապահություն է անում. «Այնուամենայնիվ, իբրև հայ պատմիչի արդարացում, պետք է ասել, որ երևի նրանից շատ առաջ հայերի մոտ գոյություն է ունեցել ավանդություն Տիգրան Մեծի կողմից հրեական քահանայապետ Հյուրականոսի գերեվարության և հսկայական թվով հրեա գերիների հետ նրան Հայաստան բերելու վերաբերյալ: Այդ մասին հաղորդում է Փավստոս Բուզանդը»[2]: Թվում է, թե բանը պարզ է: Խորենացու կողմից պատմվող իրադարձությունների հայացումը տեղի է ունեցել ոչ թե Հայոց պատմության հեղինակի գրչի տակ, այլ նրանից շատ ավելի վաղ: Պատմաբանը, թերևս կարող է բավարարվել Խորենացու և Հովսեպոս

[1] Գր. Խալաթյանց, էջ 48, 49:

[2] Անդ, էջ 65:



Փլավիոսի խոսքերի համեմատությամբ: Բայց Խորենացու աղբյուրներն ուսումնասիրողի համար դա դեռևս բավական չէ: Տիգրանի պատմության մեջ Հովսեպոս Փլավիոսը չի կարող Խորենացու համար գրավոր աղբյուր համարվել:

Սանատրուկի, ինչպես նաև Թադեոս Առաքյալի ու Սանդուխտի նահատակության վերաբերյալ պատմությունը շարադրելիս Խորենացին օգտվել է նրանց նահատակության վերաբերյալ մեզ հասած վարքերից: Այդ մասին վկայում է հենց ինքը՝ Խորենացին: Համեմատելով Խորենացու պատումը այդ վարքերի հետ՝ պ. Խալաթյանցը գտնում է, որ պատմիչը հիշատակում է «որոշ հանգամանքներ, որոնք բացակայում են պահպանված ավանդագրույցներում, այն է՝ ապառաժ քարերի տակից Առաքյալի աշակերտների կողմից մասունքները (Առաքյալի և սուրբ կույսի) հանելը («вынутие»- sic!) և առապար փոխադրելը»[1]: Այդ մանրամասները պրոֆ. Խալաթյանցի կարծիքով մատնանիշ են անում «յոթերորդ դարից ոչ շուտ ժամանակներին վերաբերող զրույցի թարմացման վրա, քանի որ, ըստ Սեբեոսի, Ս. Գրիգոր եկեղեցին առապարում կառուցվել է միայն այդ դարի քառասնական թվականներին, որտեղ և, Խորենացու խոսքերով, փոխադրվել են մասունքները՝ իրադարձություն, որի մասին, սակայն, Սեբեոսի մոտ ոչ մի վկայություն չենք գտնում»[2]:

Պարոն Խալաթյանցի դատողությունները հիմնված են մասամբ բնագիրը ոչ ճիշտ ընկալելու, մասամբ էլ Խորենացու խոսքերը ոչ ստույգ մեկնաբանելու վրա:

Պարոն Խալաթյանցի սխալը բացատրվում է այն բանով, որ նա օգտվել է Խորենացու՝ Մկրտիչ Էմինի կատարած ռուսերեն թարգմանությունից, իսկ այդ թարգմանությունը, պարզվում է, որ մեզ հետաքրքրող մասում բոլորովին էլ ճիշտ չէ:

Խորենացու բնագրի ճիշտ թարգմանությունն ասում է. «Առաքյալի և նրա հետ եղածների նահատակությունը Շավարշան գավառում, որ այժմ Արտազ է կոչվում, և ապառաժ քարի շարժվելը, և աշակերտների հանդիպումը («յիրար գալ» ոչ թե քարի, այլ աշակերտների), առաքյալի մասունքները գտնվելը, այնտեղից վերցնելը և դաշտում թաղելը: Այնուհետև թագավորի դստեր՝ Սանդուխտի նահատակությունը ճանապարհի մոտակայքում և այստեղ նրա մասունքները հայտնաբերվելը և նրանց երկուսի մասունքները առապար տեղափոխվելը»:

[1] Գր. Խալաթյանց, էջ 91, 92:

[2] Անդ:

| **Խորենացի, Գիրք Բ, գլ. 34** | **Մ. Էմինի թարգմանությունը** |
| --- | --- |
| *Կատարումն առաքելոյն և որք ընդ նմա՝ ի գաւառին Շաւարշան, որ այժմ կոչի Արտազ, և պատառումն քարին և յիրեարս գալ և ընդունել զմարմին Առաքելոյն, և առնուլ անտի աշակերտացն և թաղել ի դաշտին. և մարտիրոսանալ թագաւորի դստերն Սանդխտոյ հուպ ի ճանապարհին. և տեսո ուրեմն յայտնել ճշխարաց երկոցունց, և փոխել յառապարն:* | *Мученическая кончина апостола и его спутниковь в области Шаваршанской, называемой теперь Артазом; разступление камня и вторичное его соединение по принятии тела апостола; вынутие оттуда (тела) учениками его и погребение в поле, мученическая кончина дочери царя Сандухт, близ дороги; явление мощей их обоих и перенесение их на каменистую крутизну[1].* |

Խորենացու խոսքերն այսպես հասկանալու դեպքում այլևս խոսք չի կարող լինել պ. Խալաթյանցի գրույցի ենթադրած նորացման մասին, համենայն դեպս, որքանով հարցը վերաբերում է «նրա աշակերտների (sic) կողմից ապառաժ քարի տակից Առաքյալի անյունը «հանելուն» («вынутия»): Այդպիսի «հանելն» իրականում չի եղել, և պատմիչը այդ մասին չի խոսում: Ավելորդ է այստեղ նաև պ. Խալաթյանցի դրած շվարման (sic!) նշանը: Առաքյալի աշակերտների տակ Խորենացին հասկանում է Կիրակոս Ճգնավորին և Սամուել քահանային, որոնք միասին որոնել ու գտել են մասունքները, ինչպես երևում է մասունքները գտնվելու վերաբերյալ գրույցից[2]:

Ինչ վերաբերում է մասունքները առապար տեղափոխելուն, ապա այստեղ, ինչպես ինձ է թվում, Խորենացու քննադատները նույնպես մոլորության մեջ են, և մեր պատմիչը, ըստ էության, ճիշտ է: Առապարի հարցը բարձրացրել է հայր Հ. Տաշյանը: Գր. Խալաթյանցը, ինչպես և Մխիթարյան գիտնականը, ցանկացել են այդ անորոշ արտահայտության ներքո հասկանալ VII դարում կառուցված Զվարթնոց կամ Ս. Գրիգոր եկեղեցին:

Հետագա պատմիչներից ոչ մեկը՝ ո՛չ Սեբեոսը, ո՛չ Ղևոնդը, ո՛չ էլ Հովհաննես Կաթողիկոսը ոչինչ չգիտեն Թադեոսի մասունքները փոխադրելու մասին: Վերջինը հիշատակում է Ս. Գրիգորի մասունքները հիշյալ եկեղեցի փոխադրելը, բայց ոչինչ չի ասում Թադևոսի մասունքների մասին: Ուստի, մասունքների ոչ մի փոխադրություն չի էլ եղել: Այդ դեպքում ի՞նչ են նշանակում Խորենացու խոսքերը և ինչպե՞ս պետք է դրանք հասկանալ:

Բանն այն է, որ Թադեոսի մասունքների գտնելը տեղի է ունեցել, ինչպես երևում է գրույցի արձանագրությունից, Հովհան Մանդակունի կաթողիկոսի

[1] "Истории Армении Моисея Хоренского". Новый перевод Н. О. Эмина, М., 1893, стр. 85.

[2] «Սոփերք Հայկականք», VIII, էջ 88:



և Վահան մարզպանի օրոք, այսինքն՝ V դարի վերջում: Զրույցի վերջում ասված է, որ կաթողիկոսն ու մարզպանը անհամար բազմության ուղեկցությամբ եկան խոնարհվելու սուրբ մասունքներին, ապա «իրենց հետ վերցրին Թադևոսի, Սանդուխտի և մյուսների մասունքներից, փառք տվին Աստծուն և խնդությամբ ցրվեցին յուրաքանչյուրն իր տեղը»՝ «Առնուին մասն ի նշխարաց Ս. Առաքելոյն Թադէոսի, և Սանդխտոյ և յայլոց վկայից, և տուեալ փառս Աստուծոյ գնացին յիւրաքանչիւր տեղիս խնդութեամբ»: Քանի որ Մանդակունին և Վահանը նստում էին Վաղարշապատում, ապա Խորենացին էլ եզրակացնում է, որ մասունքների մի մասը նրանք տարան այնտեղ, ընդ որում Խորենացին բավական անորոշ ձևով է արտահայտվում՝ մասունքների փոխադրման վայրը անվանելով **առապար**: Այդ բառը նշանակում է «չմշակված, վայրի» և կարող է պատահել նաև՝ «քարքարոտ» տեղանք: Հների մոտ այդպես է կոչվում Ս. Էջմիածնի եկեղեցիների շրջակայքը՝ Վաղարշապատի մերձակա ամբողջ դաշտը:

Նրանք, ովքեր **առապարի** տակ ցանկանում են հասկանալ Ս. Գրիգոր եկեղեցին, վկայակոչում են Սեբեոսի մի հատվածը. պատմելով Ներսես [Գ Իշխանեցի] կաթողիկոսի կողմից եկեղեցու կառուցման մասին՝ Սեբեոսը գրում է. «Նա գետից ջուր բերեց և օգտագործման համար պիտանի դարձրեց ամբողջ վայրի («անբերրի») տեղանքը. այգիներ ու ծառեր տնկեց»՝ («ած ջուր և երեր զգետոյն և արկ ի գործ զամենայն վայրսն **առապար**, տնկեաց այգիս և ծառատունկս»)[1]:

Այդ նույն իմաստով է օգտագործում **առապար** բառը նաև Փավստոսը, ըստ որում նույն տեղանքի վերաբերյալ. «Երբ տեսան, որ Մուշեղը հարձակվում է իրենց վրա, դուրս եկան քաղաքից՝ Վաղարշապատից և փախան առապար՝ Օշականի ամրոցի կողմը՝ հույսները դնելով անտապատային ու քարքարոտ տեղանքի վրա» («Եվ իբրև տեսին զնա յարձակեալ ի վերայ իւրեանց, փախեան ելին ի քաղաքէ անտի **յառապարն**, ի կողմն յՕշական բերդին և զանապատն և զքարուտ տեղիսն ապավէն յուրեանց համարեցան»)[2]:

Ս. Գրիգոր եկեղեցին գտնվում է Էջմիածնից արևելք, Երևանի ճանապարհի վրա, իսկ Օշականը՝ դեպի արևմուտք կամ հյուսիս-արևմուտք: Չնայած դրան, պատմիչները նրանց շրջակայքը կոչում են առապար: Ակնհայտ է, որ դրանց տակ հասկացել են ամբողջ շրջանը և ոչ թե հենց միայն այն տեղը, որտեղ կանգնած է եղել Ս. Գրիգոր եկեղեցին: Այս տարածաշրջանում եղել են շատ եկեղեցիներ, նրանցից մեկն էլ, ըստ

[1] Սեբեոս, էջ 119:

[2] Փավստոս Բուզանդ, էջ 17: Հմմտ. Խորենացու՝ «Եվ անտի մերձեալ զՕշականաւ առապարաւն» (Գիրք Գ, գլ. 9):

Խորենացու բնագրի իմաստի, կարող էին փոխադրել մասունքները: Խորենացու խոսքերը ճիշտ հասկանալու համար կարիք չկա ենթադրել, թե նա իրը ծանոթ է եղել Ս. Գրիգոր եկեղեցուն: Խորենացու Գ գրքի նախարանի խոսքերը սխալ մեկնաբանելու հետևանքով պ. Խալաթյանցը ձեռնամուխ է լինում նրա վերլուծությանը այն սխալ ելակետից, թե հայ պատմիչը ժխտում է հայերի մոտ այդ ժամանակի վերաբերյալ որևէ պատմական գրական հուշարձանի գոյությունը: Խորենացուն ուշադիր ընթերցողի համար պարզ է, որ հայերի մոտ պատմական հիշատակարանների բացակայության նկատմամբ նրա տրտունջը վերաբերում է արդեն իր կողմից նկարագրած երկու դարաշրջաններին և ոչ թե այն պատմաշրջանին, որ նա պատրաստվում է նկարագրել: Առաջին երկու գրքերի համար նա չի ունեցել մի որոշակի աղբյուր, և պատմիչն ստիպված է եղել նյութեր հավաքել տարբեր աղբյուրներից, իսկ մի մասն էլ գրել իր հիշողությանը վստահելով: Այդ պատճառով էլ նա ներողություն է խնդրում հնարավոր սխալ տեղեկությունների համար և խոստանում հաջորդ դարաշրջանի պատմությունը շարադրել անսխալ, հասկանալի է՝ նկատի ունենալով այդ դարաշրջանի վերաբերյալ հայկական հնագույն պատմական հիշատակարանների տվյալները: Նշելով ազգային պատմագրական հուշարձանների առկայության փաստերը՝ Խորենացին որոշում է դրանց նկատմամբ իր վերաբերմունքը. նա մտածում է դրանք դարձնել հանրամատչելի, «որպեսզի չտարվեն պերճախոսությամբ, այլ թանկ գնահատեն միայն պատմության հավաստիությունը և հաճախ ու անհագ վերընթերցեն մեր հայրենիքի պատմությունը» (Գիրք Գ, գլ. 1):

Հուշարձանը թե **Պատմությունը**, որ Խորենացին պատրաստվում էր վերապատմել հասարակ, հանրամատչելի լեզվով, Փավստոս Բուզանդի աշխատությունն է: Խորենացու հետ Փավստոսի համադրությամբ, պարզվում է Խորենացու խնդիրը. մեր պատմիչը մաքրել է Փավստոսին հեքիաթային տարրերից, երբեմն նաև թարոյազուրկ թովանդակության մանրամասներից և պահպանել միայն պատմական իրադարձությունների կմախքը՝ տեղ-տեղ այն լրացնելով այլ աղբյուրներից քաղած նյութերով: Ընդ որում, Խորենացին իրեն թույլ է տվել քիչ թե շատ նշանակալի շեղումներ Փավստոսից: Դրանցից մեկը պ. Խալաթյանցը դնում է պատմիչի անբարեխղճության և միտումնավորության հաշվին: Մյուսների համար նա պատրաստ է ընդունել ուրիշ աղբյուրներ: Ե՛վ այս, և՛ մյուս դեպքերում նկատվում են վրիպումներ ու անճիշտ լուսաբանություններ:

Խոսրովի և նրա թագավորության բնութագրության կապակցությամբ Խորենացին հեռանում է Փավստոսից: Հակառակ Փավստոսի գովաբանություններին, Խորենացին Խոսրովին կշտամբում է անգործունեության, թուլության և պարապության համար: Պարոն Խալաթյանցը այդպիսի վերաբերմունքը գտնում է անարդար և կարծում է, որ դրա համար հիմք է ծառայել Խոսրովի **Կոտակ** մականունը, որը, իբրև, Խորենացին սխալ է հասկացել՝ «թույլ, թուլակազմ» իմաստով[1]: Թվում է, թե անհարմար է կշտամբել Խորենացուն, որը, հավանորեն, մեզանից վատ չգիտեր հայոց լեզուն և **կոտակ** բառի նշանակությունը: Երկրորդ գրքի 83-րդ գլխում նա ասում է. Աշխենից ծնվեց Խոսրով որդին՝ **«ոչ համեմատ հասակի ծնողաց յարգոց»**: Այլ կերպ ասած՝ կարճահասակ, գաճաճ:

Խորենացու հարձակումները Խոսրովի վրա պայմանավորված են Փավստոսի նկատմամբ քննադատական վերաբերմունքով: Ուշադիր հետևելով այն ամենին, ինչ Փավստոսը պատմում է Խոսրովի վերաբերյալ, կարելի է գալ այն եզրակացության, ինչ Խորենացին:

Ահա Խոսրովի թագավորության գլխավոր իրադարձությունները:

1. Երկպառակտչական պատերազմներ, որոնց հետևանքը եղավ Մանավազյանների և Որդունիների՝ երկու նախարարական տոհմերի բնաջնջումը: Խոսրով թագավորի գործունեությունն այստեղ արտահայտվեց այն բանում, որ նա զորքերը ուղարկեց և ոչնչացրեց նրանց:

2. Մազքութների արշավանքը, որոնք լեռնային ցեղերի ուղեկցությամբ հասան մինչև Խոսրովի բուն նստավայրը՝ Վաղարշապատ, և ամբողջ տարվա ընթացքում քանդեցին ու ավերեցին երկիրը: Խոսրովը չկարողացավ նրանց հակահարված տալ, փախավ մայրաքաղաքից և պատսպարվեց Դարոյնք ամրոցում:

3. Դրանից հետո սկսվում են պատերազմներ պարսիկների դեմ: Խոսրովի կողմից հակառակորդի դեմ ուղարկված հայկական զորքերի հրամանատարը դավաճանում է իր թագավորին և 40 հազար զորքով անցնում պարսից կողմը:

4. Այնուհետև գալիս է հարավային նահանգներից մեկի բդեշխ Բակուրի ապստամբությունը: Խոսրովի հրամանով նրա տոհմը նույնպես կոտորվեց: Այսպիսով, իր իսկ՝ Փավստոսի հաղորդած փաստերը չեն ապացուցում, որ «Խոսրովի օրոք Հայաստանում իշխել են օրենքն ու արդարությունը, խաղաղությունն ու համերաշխությունը»:

Երբ Փավստոսը, հակառակ իր ներկայացրած պատերազմի ու գժտությունների պատկերի, գովաբանում է Խոսրովի ժամանակաշրջանը, ապա միայն այն պատճառով, որ նրա օրոք է ապրել Վրթանես կաթողիկոսը: Հայտնի է, թե Փավստոսը ինչպիսի կողմնակալությամբ է վերաբերվում Գրիգոր Լուսավորչի ժառանգներին: Խոսրովի ժամանակվա գովաբանված խաղաղությունն ու բարեկեցությունը Փավստոսի խոսքերի իմաստի

[1] Գր. Խալաթյանց, էջ 199:

համաձայն կապված է Վրթանեսի անվան հետ[1]: Խորենացին հետևում է երկրի գլխավորապես քաղաքական պատմությանը, այդ պատճառով էլ նա կարողացել է տարբերել Վրթանեսի գործունեությունը Խոսրովի անգործությունից: Խոսրովը, իրոք, պատկանում է անփառունակ և թուլամորթ թագավորների թվին: Խորենացին իրավացիորեն է կշտամբում թագավորին, որն այդպիսի պայմաններում հնարավոր է գտնում տրվելու հաճելի ժամանցների: Պատմաբանը չի բաժանում իր պատմիչի կարծիքը և շեշտում, թե «առանձնատների կառուցումը և սերը որսորդության նկատմամբ դեռևս չեն ապացուցում ո՛չ թեթևամտությունը, ո՛չ դատարկապորտությունը, որովհետև որսորդությունը,- ինչպես կարծում է պ. Խալաթյանցը,- եղել է բոլոր ժամանակներում բոլոր թագավորների սիրելի հաճույքներից մեկը»[2]:

Ասում են, թե Խորենացին հետապնդում է Մամիկոնյաններին: Այդ տեսակետից պ. Խալաթյանցի կշտամբանքները երբեմն անցնում են արդարության սահմանները[3]:

Հակառակ Փավստոսի, Խորենացին Տրդատի օրոք հայկական զորքերի գերագույն հրամանատար է համարում Արտավազդ Մանդակունուն և ոչ Մամիկոնյանին: Տվյալ դեպքում Խորենացին այդպես է վարվում բոլորովին էլ ոչ միտումնավոր մղումներից ելնելով: Չէ՞ որ, ըստ Խորենացու, Մամիկոնյանները Հայաստան էին եկել Շապուհ [I]-ի՝ Արտաշիրի որդու օրոք, նշանակում է Խոսրովի մահից հետո: Դրա համար էլ նրանք չէին կարող Խոսրովի սպարապետներ լինել: Իսկ Մամիկոնյանների հայտնվելը համընկնելով Շապուհի ժամանակներին՝ Խորենացին հետևել է պատմության տվյալներին: Ըստ Սեբեոսի, Մամիկոնյանները նույնպես այդ ժամանակ են հայտնվել Հայաստանում:

Փավստոսի համեմատությամբ Խորենացու շեղումներն ու հավելումները պ. Խալաթյանցը բացատրում է մասամբ **Ներսեսի վարքով**: Նա նշում է, որ երկու հուշարձաններում առկա են նման կամ նույնիսկ նույնական տարրեր: Անկասկած, նրանց մեջ կա սերտ կապ: Պարոն Խալաթյանցը դրանք մեկնաբանում է ոչ հօգուտ Խորենացու: Նա զանազանում է Ներսեսի Վարքի մի քանի խմբագրություններ, խոսում Մադրասում հրատարակվածի մասին, զգուշացնում այն չշփոթել «Սոփերքում» դրված խմբագրության

1 «Յաւուրս սորա եկաց եւ եղեւ քահանայապետ յաթոռն հօրն... Վրթանէս: Խաղաղութիւն և շինութիւն, ճարդաշատութիւն և առողջութիւն, պտղաբերութիւն և աստուածպաշտութիւն... յաւուրս սոցա աճեալ բազմացաւ: Լուսավորէր եւ առաջնորդէր նոցա Ս. Վրթանէս... իրավունք եւ արդարութիւն ծաղկեալ էին ի դարուն յայնմ» (**Փավստոս Բուզանդ**, Գիրք Գ, 3):

2 **Գր. Խալաթյանց**, էջ 201:

3 Անդ, էջ 130:



հետ: Նա զգուշորեն նկատում է, որ Խորենացին օգտվել է Վարքի ավելի հին խմբագրությունից և հետո անտեսելով իր իսկ դիտողությունները՝ նա Խորենացու բնագիրը համեմատում է Վարքի այն խմբագրության հետ, որը հենց ինքը համարում է ավելի ուշ ժամանակի՝ և այն վերագրում VII-VIII դարերի պարականոն ստեղծագործությունների թվին: Ավելին, պ. Խալաթյանցը պնդում է, թե ըստ Ներսեսի Վարքի կարելի է ստուգել Խորենացուն՝ պարզելու, թե պատմիչն ինչ է վերցրել նրանից և ինչ ավելացրել իր կողմից: Բայց պետք է համաձայնել, որ դժվար է ստուգել հեղինակին ուշ ժամանակի հուշարձանի խմբագրությամբ, երբ նա օգտվել է ավելի հին խմբագրությունից:

Պարոն Խալաթյանցը հակված է կարծելու, որ հայ Արշակունիների ու կաթողիկոսների ժամանակագրությունը Խորենացին վերցրել է Ներսեսի վարքից[1]: Ըստ թագավորների ժամանակագրության, Վարքի մեջ նշվում են միայն Պապի տարիները՝ 7 տարի, ուստի Խորենացին այնտեղից վերցնելու ոչինչ չի ունեցել: Ինչ վերաբերում է կաթողիկոսների ժամանակագրությանը, ապա Խորենացին այն կարող էր վերցնել այլ աղբյուրներից:

Փարիզի Ազգային գրադարանի մի հունարեն ձեռագրում պահպանվել և մեզ է հասել հայ կաթողիկոսների ցուցակը: Այն հրատարակել է Ֆ. Կոմբեֆիսը Auctarium-ում և այնտեղից արտատպել է Migne, t. 132: Ցուցակը պարունակում է հայ կաթողիկոսների անուններն ու տարիները՝ սկսած Գրիգոր Լուսավորիչից ընդհուպ մինչև Սահակ [Գ] Ձորոփորեցին: Այն թարգմանված է հայերենից: Նկատի ունենալով, որ ցուցակը հասցված է մինչև VII դարի 70-80-ական թվականներն ապրած Սահակը՝ դրա հայերեն բնագիրը պետք է վերագրել Սահակի ժամանակին: Հետաքրքրական է, որ Սահակի տարիները ցուցակում նշված չեն, որից էլ պետք է եզրակացնել, որ այն կազմել է Սահակի ժամանակակիցը նրա կենդանության օրոք:

Այդ հուշարձանի արժանահավատությունը երաշխավորվում է նրանով, որ այն գոյություն ունի նաև վրացերենով: Մի քանի տարի առաջ պ. Ժորդանիան այն հրատարակեց ըստ «Գրագիտության ընկերության» (Общество Грамотности) թանգարանի ձեռագրի: Որ այն ծագում է հայկական բնագրից, երևում է վերնագրից՝ მოთხრობა პატიმოთინასაგან[2]: Երկու՝ վրացերեն ու հունարեն, ցուցակներն իրենց բովանդակությամբ բոլորովին համընկնում են: Վրացերենում չի նշված միայն վերջին՝ Սահակի անունը, և այն ավարտվում է նրա նախորդի՝ Իսրայելի վրա (փոխ. Եղիայի, հայերեն Իղի բառը սխալ կարդալու պատճառով): Վրացի հեղինակը բաց

1 **Գր. Խալաթյանց**, էջ 211:

2 თ. ჟორდანია, ქრონიკები, **Թիֆլիս**, 1893, էջ 336: **Պ[արոն] Ժորդանիայի մոտ թյուրիմացաբար** տպագրվել է პატიმოთინასაგან.

է թողել Սահակի անունը հավանաբար այն պատճառով, որ բնագրում նշված չեն եղել նրա աթոռակալության տարիները, ինչպես դա երևում է հունարեն թարգմանությունից:

Այսպիսով, մենք տեսնում ենք, որ VII դարի երկրորդ կեսին հայ մատենագրության մեջ գոյություն են ունեցել կաթողիկոսների ժամանակագրության վերաբերյալ հուշարձաններ: Հիմք կա մտածելու, որ այդպիսի հուշարձաններ եղել են նաև Արշակունյաց թագավորների գահակալության վերաբերյալ: Հայ պատմական գրականությունը հարուստ է **«Գաւազանագիրք»** անունը կրող ժամանակագրական հատուկ ստեղծագործություններով: Բովանդակությամբ նրանցից առավել հնագույնը վերաբերում է X դարին (ՆԺԷ-967 թ.): Այդ հուշարձանի Փարիզի Ազգային գրադարանի թիվ 84 ձեռագրից մեր արտագրած նախաբանի սկզբում ասում է. «Մեր երկրի տիրակալ այրերի Արշակունի **թագավորների ժամանակագրության մասին գրքից** հետո ես ուզում եմ հիշատակել նաև հայ պատրիարքների՝ Աստծու սուրբ այրերի տարիները և հայտնել՝ ովքեր են նրանք, որտեղից են և քանի տարի են աթոռակալել: Մեր նախնիներից ոչ ոք չի հոգացել մեզ հաղորդելու կաթողիկոսների գահակալության տարիները. մեծ ջանքերի գնով մենք որոնել և դրանք ներկայացնում ենք ճշտությամբ»: Միանգամայն պարզ է, որ Անանուն հեղինակը կաթողիկոսների ցուցակից առաջ նախ տվել է Արշակունի թագավորների ցուցակը: Հովհաննես [Ե] Կաթողիկոսի Պատմության մեջ կա կաթողիկոսների ու թագավորների պատրաստի ցուցակ: Քանի որ Անանուն հեղինակն իր աշխատանքը համարում է առաջին փորձ, հետևաբար նրա ցուցակն իր նախնական տեսքով պետք է վերագրել Հովհաննես Կաթողիկոսից առաջ եղած ժամանակին:

Փարիզի Ազգային գրադարանում պահպանվող Ագաթանգեղոսի ձեռագրի վերջում, հենց այն ձեռագրի, որից կատարված է Ագաթանգեղոսի վենետիկյան թարգմանությունը, կա ոչ մեծ, բայց ըստ ամենայնի հետաքրքրական փաստաթուղթ՝ «Նշանագիր կարգաց բանից Եզնկան Երիցու» վերնագրով:

Կոմիտաս կաթողիկոսի ժամանակակից հեղինակ Եզնիկ Երեցը ականատես է եղել Ս. Հռիփսիմե եկեղեցու վերակառուցման ժամանակ Հռիփսիմեի մասունքների հայտնաբերմանը, որ տեղի է ունեցել [պարսից թագավոր] Խոսրովի 29-րդ տարում (619): Նրա աշխատության գլխավոր մասն իրենից ներկայացնում է հայ թագավորների ու կաթողիկոսների պարզ թվարկում՝ Տրդատից ու Գրիգորից հետո մի քանի տվյալների հավելումով: Այդ փաստաթղթին հետևում է կաթողիկոսների ցանկը՝ սկսած Գրիգոր Լուսավորչից մինչև VIII դարի վերջն ապրած Ստեփանոս [Ա Դվնեցին]՝ նրանց աթոռակալության տարիների նշումով: Ըստ որում, տարօրինակ է,



որ չեն նշված Կոմիտաս կաթողիկոսի տարիները՝ մի հանգամանք, որ կարելի է բացատրել միայն այն բանով, որ ցուցակը իր նախնական տեսքով ավարտվել է Կոմիտասի վրա (5): Այդ դեպքում այն, հավանաբար, պատկանում է նույն այդ Եզնիկ Երեցի գրչին: Հետևաբար VII դարի սկզբին արդեն ճշտված էին կաթողիկոսների տարիները: Այդ նույն ժամանակին է վերաբերում նաև Արշակունիների ժամանակագրությունը կամ ավելի շուտ ժամանակագրության փորձը Սեբեոսի Պատմության Բ գլխում, որի մասին պ. Խալաթյանցն առհասարակ լռում է:

Մեր նպատակի համար առայժմ ասվածներն էլ բավական են: Այսքան հետաքրքրական ու կարևոր տվյալների առկայության պայմաններում առնվազն մեծ համարձակություն է պնդել Խորենացու կախումը Ներսեսի վարքից: Ավելի քան հավանական է ընդունել հակառակը՝ համենայն դեպս ժամանակագրական մասում, անտարակույս, Վարքը կախում ունի Խորենացուց:

Անբավարար է նաև Խորենացու և Սոկրատի փոխհարաբերության հարցի վերաբերյալ պ. Խալաթյանցի տված բացատրությունը: Սոկրատի «Եկեղեցական պատմությունից» Խորենացու փոխառությունը, ըստ պ. Խալաթյանցի, մի փաստ է, որ կասկածի ենթակա չէ: Բայց հայտնի է, որ Խորենացու մոտ առկա է նմանություն ավելի Փոքր Սոկրատին, քան Մեծին, իսկ վերջինս [*հմա՝ Փոքր Սոկրատը - Պ. Հ.*] համարվում է Սոկրատի բուն աշխատության զուտ հայկական վերամշակումը: Ուստի նմանությունները կարելի է բացատրել փոքր Սոկրատի հեղինակի վրա Խորենացու ազդեցությամբ: Համենայն դեպս, այդ հարցը առայժմ մնում է բաց:

Ավելի լավ չեն գործերը Սեղբեստրոսի Վարքի հետ: Խորենացու՝ Մեսրոպի քնութագրության մեջ ուսումնասիրողները նշում են 15 տողանոց մի ամբողջական հատված, որը բառացիորեն նույն տեսքով գտնվում է 678 թ. հայերեն թարգմանված Ս. Սեղբեստրոսի ընդարձակ **վարքում**: Դա լուրջ և, կարող է պատահել, միակ էական փաստարկներից մեկն է Մովսես Խորենացու պատմության հին ծագման դեմ: Գր. Խալաթյանցը փոխառության այդ դեպքը համարում է ուշագրավ, թեև այն անհամատեղելի է այն կարծիքին, որը մեր քննադատն ունի Խորենացու հուշարձաններից օգտվելիս կիրառած հնարքների մասին: Պարոն Խալաթյանցի պատկերացմամբ, «աղբյուրները, որոնցից վերցնում է Խորենացին, սովորաբար նրան ծառայում են այն բանի համար, որպեսզի կամայականորեն վերափոխի նրանց բովանդակությունը՝ ընթերցողի առաջ նրա հետքերը ծածկելու նպատակով»[1]: Այս խոսքերից հետո պ. Խալաթյանցը առանց որևէ վերապահության պնդում է, որ ինքնամոռացության մեջ Խորենացին առանց

---

[1] **Գր. Խալաթյանց**, էջ 199:

քաշվելու, տառ առ տառ, Սեղբեստրոսի Վարքից արտագրել է մի ամբողջ հատված: Երկուսից մեկը՝ կամ պ. Խալաթյանցի՝ Խորենացուն տված բնութագիրը ճիշտ չէ, կամ Սեղբեստրոսի ամբողջ հատվածը մուծվել է **«Հայոց պատմության»** մեջ Խորենացուց անկախ, որպես ընդմիջարկություն:

Այն հուշարձաններից շատերը, որոնք պ. Խալաթյանցն ընդունում է որպես Խորենացու աղբյուրներ, կարելի է մերժել որպես այդպիսիք՝ ելնելով հենց միայն ընդհանուր բանասիրական նկատառումներից:

Եթե Խորենացին իր տրամադրության տակ ուներ, ասենք, Սոկրատը, Սեբեոսը, Ղևոնդը և այլն, հապա ինչո՞ւ է նա բավարարվել քչով և նրանցից չի քաղել այն ամբողջը, ինչ կկարողանար: Տարօրինակ չէ՞ արդյոք, որ մեր պատմիչն ամեն անգամ քրքրում է հարուստ գրական գանձարաններն այն բանի համար, որ այնտեղից վերցնի աննշան մանրուքներ, երբեմն ինչ-որ արտառոց բառեր կամ առանձին արտահայտություններ: Չեռքի տակ ունենալով իրենց բովանդակությամբ արժեքավոր պատմական հուշարձաններ, նա դիմում է նրանց միայն այն դեպքում, երբ իրեն անհրաժեշտ են ինչ-որ սիրած կամ դիպուկ բառեր ու արտահայտություններ, կամ էլ ամենևին աննշան տեղեկություններ ու դեպքեր: Պարոն Խալաթյանցը այդ հանգամանքը նույնպես համարում է տարօրինակ: «Պարսից պատերազմը նկարագրելիս, որ այնքան կարևոր է Հայաստանի համար, - գրում է պ. Խալաթյանցը, - Խորենացին, որքան էլ տարօրինակ է, չի օգտվել այդ իրադարձությունները բավական մանրամասն հաղորդող պատմական աղբյուրներից, ինչպես, օրինակ, հայերեն թարգմանությամբ իրեն հայտնի այդ նույն Սոկրատից կամ Մալալայից. նրանց գերադասել է Գրիգոր Նազիանզացու հայերեն թարգմանության **ճարտասանական կցկտուր արտահայտությունները»**[1]: Իսկապես, շատ տարօրինակ է: Այդ իմաստով տարօրինակ է նաև թե ինչպես Խորենացին վարվում է Սեբեոսի ու Ղևոնդի նկատմամբ: Չէ՞ որ նրանք էլ են սիրում Բագրատունիներին, շատ են պատմում նրանց մասին, նրանց աշխատություններում կան ոչ քիչ չափազանց հետաքրքրական դրվագներ Բագրատունիների կյանքից, որոնք Խորենացին կարող էր վերամշակել, վերափոխել «մինչև աննմանաչելիություն»: Բայց պատմիչը անհասկանալիորեն արհամարհել է դրանց և, ըստ Խալաթյանցի, անհրաժեշտ է գտել մեկ-երկու անգամ միայն բացել Ղևոնդի Պատմությունը, իմանալու Հայաստանում **Գողթն, Նախճավան, Ջուղա, Խրամ, Խոշակունիք** տեղանունների գոյության մասին և իմացություն ձեռք բերելու, թե «Արաքս գետը խստաշունչ ձմռանը սառչում է»[2]: Ես կարծում եմ, որ Ղևոնդին կարելի

[1] Գր. Խալաթյանց, էջ 217:
[2] -Անդ, էջ 216:



է դուրս հանել Խորենացու օգտագործած աղբյուրների շարքից՝ առանց պ. Խալաթյանցի պաշտպանած գործին որևէ չափով վնասելու:

Բոլոր նման դեպքերում, երբ մենք հաստատում ենք Խորենացու բնագրի և ինչ-որ ստեղծագործության նմանության անկասկածելի փաստ և վերը արված դատողությունների հիման վրա չենք կարողանում պնդել, որ մեր պատմիչը իր տրամադրության տակ ունեցել է դրանք, պետք է ընդունենք **ընդհանուր աղբյուրի** գոյությունը: Ներկա դրույթը ճիշտ է պ. Խալաթյանցի բերած աղբյուրներից շատերի նկատմամբ: **«Հայկական էպոսի»** վերջաբանում Խորենացու աշխատությունը հասցնելով VIII դարի ավարտը և նույնիսկ IX դարի սկիզբը, պ. Խալաթյանցը խոստանում է իր հաջորդ աշխատանքում ավելի ճշգրիտ պարզաբանումներ ներկայացնել **«Հայոց պատմության»** առեղծվածային հեղինակի և ժամանակի վերաբերյալ: Սակայն **«Հայաստանի պատմության»** գրության ճշգրիտ ժամանակը նոր աշխատության մեջ չի տրվում: Հեղինակի վերաբերյալ պ. Խալաթյանցը արդեն նոր բան է հաղորդում. բանից պարզվում է, որ Խորենացու բոլոր կեղծումները նպատակ են ունեցել «համոզել մեզ այն բանում, որ նա V դարի հեղինակ է և Սուրբ Սահակի ու Մեսրոպի այն աշակերտներից, որը հիշվում է Ղազարի մոտ Մովսես Փիլիսոփա բարձրագոչ անվան ներքո»[1]:

Խորենացու ժամանակի մասին հարցի այդպիսի լուսաբանության դեպքում դեռևս պետք է բացատրել, *ինչից* է, որ նրանք, որոնք առաջինը ծանոթացան Խորենացուն, այսինքն՝ Հովհաննես Կաթողիկոսը կամ Թովմա Արծրունին, զարմանք չեն հայտնում շշմեցնող հայտնագործության առթիվ: Թափ է տրվում դարավոր փոշին, և հանկարծ հայտնվում է ուշագրավ աշխատությունը, առավել նշանավոր հեղինակի՝ Սահակի աշակերտ Խորենացու աշխատությունը, որի մասին չորս դար ոչ ոք չի իմացել:

Չդիպչելով հարցի էությանը, պ. Խալաթյանցի հեղինակին վերաբերող հարցադրումը ես գտնում եմ բավական կտրուկ: Պետք է ընդունել, որ ոչ թե Խորենացին, այլ ինչ-որ ուրիշ Անանուն հեղինակ կազմել է «Հայոց պատմությունը» և շրջանառության մեջ դրել Խորենացու հայտնի անվան տակ, որ համարվել և եղել է Սահակի աշակերտներից:

Պորփյուրի հայերեն թարգմանված տրակտատներից մեկում մի հետաքրքրական վկայություն կա կեղծանուն ստեղծագործությունների մասին: Դրանք, ի միջի այլոց, լինում են տարբեր բնույթի՝ «**խորքք ասին շարագրածութիւնք, որ լինին ի ձեռն պատուասիրութեան, այսինքն՝ սնափառութեան: Քանզի ոմանք անփառք և աներևելիք գոլով՝ անուամբ**

[1] Գր. Խալաթյանց, էջ 375:

**վարդապետութեան կամելով յարգել զիւրեանց շարագրածսն, մակագրեն յիւրեանց շարագրածսն զերևելի ուրուք զանուն վարդապետի»**[1]:

Հնարավոր է, որ «Հայոց պատմության» հետ տեղի է ունեցել ինչ-որ նման բան: Համենայն դեպս, Խորենացու ճակատագիրը դեռևս մնում է առավել հիմնավոր վճիռ պահանջող առեղծված: Որպես Խորենացու բացասական քննադատների ներկայացուցիչ, պ. Խալաթյանցն այդ ուղղությամբ կատարել է իր խնդիրը: Իր արդյունքներով նրա հետազոտությունը համարվում է հայ պատմիչի նկատմամբ քննադատության ամենախիստ ու ամենակտրուկ արտահայտությունը: Պարոն Խալաթյանցի աշխատանքի նշանակությունը հենց նրա եզրակացությունների ծայրահեղությունն ու կտրականությունն է: Նրա հետազոտությունն իրենով ավարտում է Խորենացու ուսումնասիրության ժխտականության փուլը և համարվում անհրաժեշտ աստիճան ավելի դրական և համապատասխան ճիշտ (իրական) տեսակետի անցնելու համար: Այն բոլորը, ինչ որ կարելի էր ասել **«Հայոց պատմության»** դեմ, պ. Խալաթյանցի կողմից ասվել է (6): Խորենացու քննադատների մոտակա խնդիրն է չափավորել հափշտակության մոլուցքը և VI-VII դարերի հայկական գրական հուշարձանների շարքում ճշգրտորեն որոշել **«Հայոց պատմության»** տեղն ու ժամանակը: Մեր դրսևորած առարկությունները նպատակ ունեն պ. Խալաթյանցի հետազոտությունից լոկ մասնակիորեն վերացնելու այն տարրերը, որոնք որպես հափշտակության սայթաքումներ խախտում են վստահությունը Խորենացու մերժողական քննադատության նկատմամբ (7):

---

1 Կորյուն, Մամբրե Վերծանող, Դավիթ Անհաղթ, Մատենագրութիւնք, Վենետիկ, 1833, էջ 252:



# ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՎՈ «ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ» ԹՎԱԿԱՆԻ ՄԱՍԻՆ

**(Պարոն Հանս Լեվիի (1) մեկ հոդվածին (2) առթիվ)**

Մովսես Խորենացիի բոլոր քննադատներում մեջ, որոնք բազմաթիվ են, Hans Lewy երևան կուգա իբրև ամենեն ճշգրիտը, բայց նաև ամենեն խիզախը: «*Հայոց Պատմութիւնը*», ըստ իրեն, գրված է, 876 թվականի և 885 թվականի միջև: Ստույգն ըսելով, հարցն այնքան բարդ է, որ կարելի չէ այդքան բացորոշ կերպով վճռել զայն, առանց որևէ երկվանքի:

Ըսե՛նք իսկույն, թե Hans Lewy-ի առաջարկած լուծումը հիմնված է Մովսես Խորենացիի մեկ խոսքին վրա (3), որուն մեջ կկարծե ան գտնել ակնարկություն մը Վասիլ I-ի գահակալության: *Սխալ մըն է այդ: Խնդրո առարկա* հարցը բնավ հարաբերություն չունի Սահակի տեսիլքին հետ, որ Արշակունյաց ապագային կհայի: Այդ խոսքը կշոշափե հարց մը, որուն մասին վաղուց գրած ենք մենք (4): Քանի մը բառով ըսենք, թե ի՛նչ բանի վրա է այդ հարցը:

Մովսես Խորենացի գործածած է, ի միջի այլոց, վավերագիր մը՝ որ կկոչվի **«Գահնամակ»** («Ցանկ կարգաց»), ցուցակ մը՝ որուն մեջ իշխանական տոհմեր անվանադասված են համաձայն այն կարգին, որով անոնք, ըստ արժանյաց՝ ճանչցված էին Արշակունի կամ Սասանյան արքունիքին մեջ: Այդ վավերագիրը բարեբախտաբար հասած է մեզի, և կրնանք քննության ենթարկել զայն և հասկնալ Խորենացվո այն էջերը, որոնք անկե ներշնչված են: Ցուցակին մեջ Մամիկոնյանները հինգերորդ կարգը ունին, Կամսարականաց տոհմը՝ տասներեքերորդը, Ամատունյացը՝ տասնվեցերորդը: Հայ պատմիչը դժգոհ է այս կարգավորումեն: Իրեն այնպես կթվի, թե Մամիկոնյանք շատ վեր են դրված, ու մյուսները՝ շատ վար, պատվո այդ աստիճանաշարքին վրա: Այդ անիրավությունը բացատրելու համար, Մովսես ինքզինքին թույլ կուտա ենթադրություն մը, որ կհենու **«Գահնամակին»** առաջաբանին վրա, որուն մեջ հիշված են Սահակ, Վռամ և Արտաշիր: Ըստ այդ պատմության, Մամիկոնյանք հինգերորդ կարգը գրաված են, ոչ թե իրենց արժանիքովը, այլ շնորհիվ միջամտության Սահակ Հայրապետի, որ խնամի էր իրենց: Գալով մյուս երկու տոհմերուն՝ Կամսարականաց և Ամատունյաց, անոնք անավազված էին, պարսից թագավորին հակառակած ըլլալնուն համար՝ ի նպաստ հայ թագավորին: Սահակ բախանձած էր

պարսից Արտաշիր թագավորին, ոչ միայն Մամիկոնյանց այլ նաև Կամսարականաց և Ամատունյաց համար: Թագավորն ընդունած էր Սահակի աղերսը և Մամիկոնյանց տոհմին շնորհած էր հինգերորդ կարգը, մինչ մյուս երկուքը մնացեր էին խոնարհագույն աստիճանի վրա: Սահակ երբ երկրորդ անգամ Կտեսիփոնի արքունիքը կգտնվի, դարձյալ նույն խնդրանքը կնե, այս անգամ Արտաշիրի հաջորդ Վռամ թագավորին: Երկու բան կխնդրե ան. նախ` որ թագավորը հրամայե այնուհետև «Գահնամակ»-ը պահել այնպես, ինչպես կարգադրած էր Արտաշիր թագավորը, և հետո` որ մարզպանները ըստ կամս չկարենան փոփոխության ենթարկել զայն: Եթե թագավորը, Արշակունյաց դեմ իր ոխովը, մերժե անոնց արենակից Կամսարականներուն տալ իրենց պատշաճ կարգը, գեթ ստորակա դիրք մը շնորհել անոնց, ինչպես Ամատունյաց ևս, մինչև որ «Աստուած քաղցրասցի դարձուցանել ի կարգ հայրենի ընդ ձեռն *որ եւ է թագաւորի*»:

Hans Lewy կսախալի այստեղ փնտրելով ակնարկություն մը Վասիլ I-ի մասին: Բյուզանդացի կայսրը որևէ գործ չունի խնդրո մը մեջ, որ պարսիկ թագավորին միայն կվերաբերի: Մովսես Խորենացի «որևէ թագաւոր» ըսելով կհասկնա Վռամի հաջորդներեն մին: Անիկա ի նկատի ունի ապահովապես Վահան Մամիկոնյանի և Վաղարշ արքայի ժամանակը: Քաջ Մամիկոնյանը, երկու տարի կռվելե վերջ, հաննձ կառնե վար դնել զենքը` կարգ մը պայմաններով: Ի մեջ այլոց կպահանջեր ան, որ դիրք, պատիվ և վարձք բաշխված ատեն մեն մի իշխանի իրական արժանիքին միայն նայվի (= «Յաղագս գահու և պատուոյ շքեղութեան, հայելով յիւրաքանչիւր ուրուք վաստակս») (5): Վահան կխնդրեր նաև որ թագավորը Կամսարականներուն դարձնե իրենց հայրենական կարգը (= «Զի թէ էր եւ հնար էր շնորհել ձեզ զաւանուտէրութիւնն Կամսարականին») (6): Ակներև է ուրեմն, թե «որևէ թագաւոր»-ը Վաղարշն է, որ Վահանանց ապստամբական դիմադրութենեն հետո ինքզինքն ստիպված կզգա դարմանելու այն անկարգությունները ու բարոյալքումը, որոնց ենթարկված էր հայ ավատական միջավայրը Պերոզի և Հազկերտ [II-ի] նախընթաց թագավորությանց ատեն:

Գալով Բագրատունյաց ձգտումներուն, որոնցմով տոգորված է Խորենացվո գործը, անոնք անհրաժեշտորեն չեն հարկադրեր **«Հայոց պատմութեան»** երևումը հապաղեցնել մինչև Աշոտի արքայական գահ ելնելը: Մովսես[Խորենացին] Բագրատունյաց համակրություններուն հետ զույգ կ' ընթանա ոչ բարյացակամ զգացում մը հանդեպ Մամիկոնյանց, որ հակառակորդներն էին Բագրատունյաց: Մովսես Խորենացիի` Մամիկոնյաններու անունն աղարտելու ձգտումը կ'ապացուցանե միայն, թե Մամիկոնյանները տակավին վերջացուցած չէին իրենց քաղաքական



գործը. դեռ իրենց վերջին բառն ըսած չէին, թեև այնքան տկարացած էին, սակայն որ պատմիչին սրատես աչքը կրնար ընդնշմարել, թե անոնց դատը կորսված էր արդեն, և թե ապագան անոնց խռհական ոսոխներուն` Բագրատունի իշխաններունն էր այլևս: Այսքան միայն կարելի է ըսել ուրեմն, թե Մովսես Խորենացիի գործը Մամիկոնյանց նվազման թվականին միայն կարելի է դնել առ առավելն: Իսկ այդ նվազումը կուգա 775 թվի եղերական դեպքերեն անմիջապես հետո միայն և կվերջանա Մամիկոնյանց անհետացումով` Աշոտ Մսակերի († 826) առաջին հաջողություններուն հետ, որ Բագրատունյաց ճշմարիտ վերածնիչը եղավ:

Դիպվածավ չէ, այլ 775 թվի նույն այդ հեղափոխության հետևանքովն է, որ Մամիկոնյան նշանավոր տան վերջին ներկայացուցիչները, արաբներեն խույս տալով, գաղթեցին Բյուզանդիոն, և հոն նշանավոր և փայլուն դիրք ունեցան, IX դարեն սկսյալ: Այդ տոհմին կպատկանեին արդարև Մանուել անվանի զորավարը, Հայկական բանակաթեմին ռազմավարը 813 թվեն ալ առաջ, Վարդաս Կեսար, Պետրոնաս, 863 թվի դյուցազնը, և իրենց քույրը` Թեոդորա կայսրուհի:

Այդ ժամանակաշրջանին և նույն այդ պատճառով էր, որ Ամատունի Շապուհ իշխանը և իր որդին Համամ, տասներկու հազար գաղթականներու ի գլուխ, անցան սահմանեն և գացին հաստատվիլ բյուզանդական երկրին մեջ: Մովսես Խորենացի զմայլող մըն է հելլենական մշակույթին, ու չի ծածկեր իր համակրությունները քրիստոնեական այդ մեծ կայսրության վերաբերմամբ, բայց ատոր համար կարելի չէ իր այդ զգացումները, որոնց հաղորդ էին ուրիշ հայեր ևս հարաբերության մեջ դնել Աշոտի քաղաքականության հետ, որ դեպի խալիֆայություն ուղղության կհետևեր, և **«Հայոց պատմութեան»** հորինումը հետաձգել մինչև Աշոտի թագավորությունը: Պետք է ի նկատի ունենալ մանավանդ Աշոտի այդ քաղաքականության հակամամիկոնյան ձգտումը, ինչ որ կպարտավորե մտածել, թե հայ պատմիչը իր գործը գրած պետք է լինի Մամիկոնյանց վերջին հեղափոխական ճիգերուն տապալրության ներքև: Անիկա չի ճանչնար ոչ միայն իշխանաց իշխան Աշոտը, այլ նաև անոր հայրը` Սմբատ Խոստովանող, ինչպես նաև (հակառակ Յո. Մարկվարտի կարծյաց) Տարոնցի իշխանաց իշխան Բագարատը: Անիկա չէ տեսած Ղազար Փարպեցիի Պատմության մեջ հետո ներմուծված Սահակի տեսիլքին այժմյան հեղվածն ալ:

# ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ ՎԵՐԱԲԵՐՄԱՄԲ ՊԱՐՈՆ ԼԵՎԻԻ ՆՈԹԻՆ ՄԱՍԻՆ

Պ[արոն] Լեվի, վերի հոդվածին մեջ (1) հրաժարելով հանդերձ Խորենացվո **Պատմութեան** թվականը Վասիլ I-ի թագավորության ատեն դնելու իր տեսութենեն, կշարունակե մերժել մեր փաստերը և նույն իսկ հակասության ամբաստանություն կնե մեր մասին: Եվ սակայն, Վասիլ I-ի վրա գրած մեր հոդվածին մեջ, ուր առիթ ունեցած էինք քննելու Սահակի **Տեսիլ**-ը, մենք եզրակացուցած էինք թե այդ **Տեսիլ**-ը, իր ներկա ձևին մեջ, մինչև Փոտի ժամանակը կվերանա (2): Ըսած էինք նաև, թե մեր այս կարծիքը կբաղխի սա քանի մը դժվարություններուն. Սահակի տեսիլը հիշատակված ըլլալը անանուն հեղինակին *Διήγησις-ի*, որ Սահակ Գ կաթողիկոսի († 704) օրով հայերենեն թարգմանված կտոր մըն է (3). նույն տեսիլին հիշված ըլլալը Մովսես Խորենացիեն, և տեսիլին ժամանակեն մինչև անոր իրականացումը անցած 350 տարիներուն հաշիվը: Փորձած էինք նաև փարատել այդ դժվարությունները, ենթադրելով որ *Διήγησις-ը*, թարգմանված ըլլար Փոտի ատեն և Մովսես Խորենացին թերևս **Տեսիլ**-են հետո եղած ըլլար, ու նույնպես թելադրություն մը ըրած էինք 350 թիվին մասին: Եվ սակայն մեր քննության շարունակումը մեզի ցույց տվավ, թե մեր ենթադրությունները կամայական եղած էին և ընդունելի չէին կրնար ըլլալ գեթ *Διήγησις-ին* համար, նույնիսկ մեկ կողմ դնելով Մովսես Խորենացին: Այն ատեն առաջարկեցինք երկրորդ լուծում մը, որ սա է. Ղազար Փարպեցին կհիշե Սահակի տեսիլ մը՝ վերաբերմամբ Արշակունյաց և Գրիգորիսյանց վախճանին, առանց որևէ ակնարկության՝ ապագային անոնց վերերևումին. այս տեսիլքեն է որ, ժամանակ մը ետքը, մեկը հանած է ներկա տեսիլքը, Վասիլի պարագաներուն հարմարցնելու համար պետք եղած ընդլայնումը տալով անոր: Բայց, այս վարկածով, *Διήγησις-ին* և Մովսես Խորենացիի մասին այլևս խնդիր չի կրնար ըլլալ, վասնզի ոչինչ կ'արգելէ ընդունելու, որ անոնք ճանչցած ըլլան ներկա տեսիլքը և ոչ թե Ղազար Փարպեցիի սկզբնական գրվածքը: Ինչ որ ըսել է, թե կարելի պիտի չըլլա **Տեսիլ**-են ոչ մեկ փաստ հանել հայ պատմագրին թվականի մասին:

Պ[արոն] Լեվի դիտել կուտա տակավին, թե ինքը Մովսես Խորենացին Աշոտի (4) դարուն կդնե այն պատճառով, որ հայ պատմագրին մեջ երևցած



կրկնակ զգացումը, այսինքն՝ թե՛ Բագրատունյաց մասին ունեցած համակրությունը, թե՛ նույն ատեն «հելլենասեր» լինելը, Աշոտ թագավորի դարուն համար միայն կրնար հասկնալի ըլլալ, վասնզի Բագրատունյաց շրջանին մեջ Աշոտ է, որ առաջին անգամ սկսավ «հելլենասեր» քաղաքականության, ու հելլենասեր դրանիկ մը պիտի չկարենար տեղ գտնել Աշոտեն առաջագույն Բագրատունյաց արքունիքին մեջ:

Բայց ասոնք բոլորովին անձնական տեսություններ են, որոնք համաձայն ալ չեն պատմական վավերագիրներու: Իրապես, քիչ բան գիտենք Աշոտ թագավորի հելլենասեր քաղաքականության մասին: Ամբողջ իր ասպարեզը արաբական աշխարհայացքով է դրոշմված: Բուղայի ուղեցույցն է ինքը՝ Հայաստանի մեջ անոր ըրած անագորույն արշավանքին միջոցին. պահ մը մյուսլիման կձևացնե ինքզինքը, և ի վերջո արքունի ապարոշ կկապե, առանց բնավ Բյուզանդիա դարձնելու իր նայվածքը: Ընդհակառակն Բյուզանդիա է, որ Աշոտի բարեկամությունը ջանաց ունենալ, երբ հասկցավ թե իրական ուժ մը կներկայացներ ան: Ու երբ Փոտ օր մը հանկարծ Հայ եկեղեցիի միության խնդիրը հարույց, անձնական փառասիրությամբ էր, որ ըրավ ան այդ բանը, այսինքն՝ առաքելական գործունեության համբավ շինելու համար, ու միայն ասիկա կրավեր, որ Աշոտ իր կռնակը դարձներ Բյուզանդիայի:

Գիտենք մյուս կողմե, և ասիկա հակառակ պ[արոն] Լեվիի հավաստումին, թե շատ ավելի շեշտված հելլենասիրություն մը եղած էր Աշոտ Մսակերի և իր Շապուհ եղբոր օրով, որոնք Դարոյնքի (այժմ Պայազիտ) իրենց կալվածը թողուցին՝ Շիրակի մեջ հաստատվելու համար, հաջողելով այսպես իրենց համար հաստատուն կայք մը ստեղծել Տայքի և Սպերի մեջ, որովհետև անոնք պատեհ պարագային համար՝ Բյուզանդիո աջակցության վրա դրած էին իրենց հույսը: Լևոն [V] Հայկազն, որ այդ միջոցին կայսերական գահուն վրա էր, պատվեր էր Կղարջքի իշխան և Մսակերին ազգական և դաշնակից Բագարատը՝ Կյուրապաղատի տիտղոսով և պատրաստ էր օգնության հասնիլ Աշոտի և Շապուհի, Հայաստանի սրտին մեջ և Վանա լճին ափերուն վրա տեղավորված մյուսլիման իշխանությանց դեմ, երբ անոնք կռիվ մղել հարկադրվեին: Նույնպես Թեոփիլոս կայսրը Շապուհի Աշոտ որդին բարձրացուց անտի հյուպատ-պատրիկության, պատվո բացառիկ տիտղոս մը, որ հնարված էր պատվելու համար կեսար Ալեքսիոս Մուսելեսը:

Կտեսնվի ուրեմն, թե «հելլենասեր» ձգտում մը՝ Աշոտ թագավորեն առաջագույն ժամանակի մը մեջ «կարելիություն» մը չէ, այլ իրողություն մը: Ու երբ պ[արոն] Լեվի «հելլենասեր» դրանիկ կ'ուզե փնտրել, դյուրավ պիտի գտնե զայն Մսակերի արքունիքին մեջ: Մեզի համար, հայ պատմագիրը ոչ

դրանիկ մըն է և ոչ ծախված գրիչ: Մտավորական մեծ դեմք մըն է ան, որ ունի իր տեսությունները, իր համոզումները, և որ հայ անցյալը ակոսող երկու հոսանքներեն ազատորեն ընտրած է այն, զոր համաձայն է գտած իր գաղափարներուն, և իրեն համար պարտականություն նկատած է պաշտպանել այդ հոսանքին դրոշակիրը, Բագրատունյաց ընտանիքը:

Ուստի, պ[արոն] Լեվիի առաջ բերած փաստերը չենք գտներ համոզիչ՝ Մովսես Խորենացին Աշոտի թագավորության օրով դնելու համար: Չէ՞ որ ինք Խորենացին կ՚ըսե իրեն համար. «Ես արդ առ ստարացն թագաւորութեամբ կեցեալ» (Գիրք Ա, գլ. 22):



# ԽՈՐԵՆԱՑԻԱԿԱՆ ՀԱՐՑՆ ՈՒ ՀԱՅՐ ՎԱՐԴԱՆ ՀԱՑՈՒՆԻ

**Միրելի Չոպանյան,**

Ստացա նամակդ: Ցավում եմ, որ գոնե ներկայումս ժամանակ չունեմ ցանկացածդ հոդվածը գրելու: Բայց կհայտնեմ ստորև կարծիքս Ձեզ հետաքրքրող հարցի առթիվ, որքան կներեն նամակի սահմանները (1):

Հայր Ակինյան և հայր Հացունի աշխատում են տարբեր և հակառակ ուղղությամբ և չեմ կարծում, որ նրանց առաջ և հետ խաղացումներից մեծ բան շահե հայ բանասիրությունը: Միանգամայն ապարդյուն գործ է առաջնորդել Խորենացին դեպի V դար: Խորենացին օգտվել է Սեղբեստրոսի և Սոկրատի հայ թարգմանությունից՝ կատարված 678 և 696 թթ. և ապա ուրեմն ուշ է, քան 696 թիվը: Այս փաստ է, որի դեմ անզոր են առարկությունները և ընդդիմախոսական նկրտումները: Հարցի **terminus a quo** հաստատուն է, մնում է որոշել **terminus ad quem** - այստեղ է կայանում այսուհետև Խորենացու կնճիռը: Գիտեք, որ ոմանք տրամադիր են քարշել Խորենացին մինչև IX դարի վերջերը, ինչպես Մարկվարտ և ուրիշները: Նկատի ունենալով Խորենացու հակամամիկոնյան տրամադրությունը, որի դեմ իզուր է վատնում իր պերճախոսությունը հայր Հացունի, ես կարծում եմ, որ Խորենացին գտնվում է ութերորդ դարու խռովությունների, մասնավորապես 775 թվի ապստամբության և նրա ծանր հետևանքների ազդեցության տակ, ուստի և անընդունելի եմ համարում Մարկվարտի տեսությունը: IX դարում Մամիկոնյանները իջել և անհետացել էին հայ պատմության ասպարեզից և ուրեմն տեղիք չկար նրանց հանդեպ հակառակորդի դիրք բռնել:

Գալով Մովսես Կաղանկատվացու խնդրին, ինչ որ Ձեզ առանձնապես հետաքրքրում է, պետք է ասել, որ հայր Հացունիի տեսակետը հիմնավոր չէ: Եվ ահա ինչու: Կաղանկատվացու Պատմությունը բաղկացած է երեք գրքից և ամփոփում է Աղվանքի (իրապես Արցախի) անցյալը՝ սկզբեն մինչև 950-ական թվականները: Մխիթարյանները (ինչպես կտեսնեք Զարպհանալյանի «Հայոց մատենագրության պատմությունից») կարծում են, որ Կաղանկատվացուն են պատկանում միայն Ա և Բ գրքերը, իսկ Գ գիրքը գործ է ուրիշ հեղինակի, որ ուշ ժամանակվա՝ X դարու մարդ է, այն ինչ Կաղանկատ-

վացին ապրում էր VII դարում: Ի՞նչ հիմ ունի այս կարծիքը, կհարցնեք: Ըստ երևույթին՝ լուրջ: Սակայն Բ գրքի մեջ հիշված ամենեն որոշ իրողությունը վերաբերում է 685 թվին, ավելի ստույգ՝ 678-685 յոթն տարիներին: Այդ այն Թուղթն է, որ Հոնաց իշխանը ուղղել է Սահակ Ձորոփորեցի կաթողիկոսին (678-704) և Գրիգոր իշխանին, որ ընկավ խազարաց դեմ կռվելիս 685 թվին: Ուրեմն, Թուղթը գրված պիտի լինի 678-685 թվերին: Այստեղից հետևում է, որ Կաղանկատվացին ուշ է, քան 678-685 թիվը: Սակայն Բ գրքի 14-րդ գլխի մեջ, ուր հեղինակը պատմում է, թե ինչպես Աղվանից Վիրո կաթողիկոսը գնաց Խազարաց Շաթ իշխանի բանակը և ի՛նչ ընդունելություն գտավ, պատահում է «անդ **տեսաք** զբազմոցս նոցա» և քիչ հետո՝ «բարձեալ (զընծայս) ի բազկաց **մերոց**» առաջին դեմքով դարձվածը: Այս առիթ է տվել Մխիթարյաններին կարծելու, որ պատմողը՝ Կաղանկատվացին, ուղեկցել է Վիրո կաթողիկոսին, ներկա եղել ընդունելության և որովհետև այցը տեղի է ունեցել 628 թվին, ապա ուրեմն Կաղանկատվացին ապրել է յոթներորդ դարում և որպես այդպիսին չէր կարող Գ գրքի հեղինակ համարվել, որ վերաբերում է IX և X դարու անցքերին:

Այս ըմբռնումը հիմնովին սխալ եմ համարում: Զարմանալի է, որ հայր Հացունի շարունակում է կրկնել ինչ որ Զարպհանալյան գրել է գրեթե մի դար առաջ: Նախ, եթե Կաղանկատվացին 628 թվականին՝ արդեն կաթողիկոսին ուղեկցելու հասակն ուներ, պետք է զառամյալ ծերունի լիներ 685 թվեն հետո իր գործը գրելիս: Սակայն կարևորն այս չէ:

Երկրորդ գրքի 14-րդ գլխի շարունակությունն է 15-րդ գլուխ. «Վասն սաստկացեալ սովոյն եւ գերութեանն ի միասին», որպես հետևանք բարբարոսների հրոսակության: Եվ այս գլխի վերջը պահված է մի քանկագին հիշատակարան. «Ես Վիրոյ՝ Աղուանից եւ Լփնաց եւ Չողայ կաթողիկոս՝ թողում ասել զայլն ամենայն» և այլն: Այս հիշատակարանը վկայում է անստորեն, որ Վիրո կաթողիկոսի այցի նկարագրության բուն հեղինակն ինքը Վիրո կաթողիկոսն է: Իշխանների և ժողովրդի խնդրանքով և նրանց ներկայացուցիչ պատվական անձերի առաջնորդությամբ կաթողիկոսը հանձն է առել գնալ ողոքելու բռնավոր Շաթ իշխանի սիրտը և ազատելու գերիներին: Հաջող առաքելությունից հետո Վիրո գրել է իր ճանապարհորդության պատմությունը, թերևս կցած որևէ ձեռագրի որպես հիշատակարան, և Կաղանկատվացին առել և դրել է իր գործի մեջ: Վիրո պատմել է առաջին դեմքով, և Կաղանկատվացին փոխել է երրորդ դեմքի, միայն մի տեղ թողել է բնագրի «անդ տեսաք», որովհետև իսկապես անհարիր էր գրել՝ «անդ տեսան», քանի որ նկարագրում է, թե ինչպես վայրենի մեծամեծները Շաթ իշխանի՝ ոչ թե մարդավարի նստած էին, այլ ուղտի նման չոգած իրենց տիրոջ առաջ: «Ի բազկաց մերոց» չի նշանակում,



որ Կաղանկատվացին ևս իր բազուկների վերա ուներ ընծաներ Շաթին ներկայացնելու համար: Մի քանի տող ստորև ասում է՝ «եւ փոխեալ ի **նոցանէ** զօժիտն ի բազուկս իւրեանց», այսինքն՝ Շաթի մարդիկ Վիրոյի ուղեկիցների բազուկներից փոխադրեցին ընծաներն իրենց բազուկների վերա: «Ի բազկաց **մերոց»** նշանակում է ի բազկաց **«մերայնոց»**, «մերիններու բազուկներեն», ինչպես ասում են արևմտահայք, և **«մերոնց** (մերոց) բազուկներեն»՝ արևելահայք: Ագաթանգեղոս ևս գործ է ածում հաճախ «մերոց», «մերայնոց» իմաստով, որից և «մերոնց» արդի գործածությունը: Կաղանկատվացու գործը մի ժողովածու է, ուր հավաքել է ինչ որ գտել է իր ժամանակվան մատենագրության մեջ և հավանորեն Աղվանից կաթողիկոսարանում, Աղվանքի վերաբերյալ: Երբեմն պահել է հին հեղինակների անուններից: Այսպես՝ նույն Բ գրքի մեջ, գլ. Ձ՝ «Տեսիլ Վեհկի», կա վերջը հիշատակարան՝ «Ես Աղրիանէ որ յիշատակարանս գրեցի», մաղթեմ հիշել և այլն: Նույն գրքի գլ. Լ վերջ՝ հիշվում է. «ընդ որս ես իսկ Յովէլ նուաստ եպիսկոպոս»: Երկրորդ գրքի կարևորագույն էջերից է Իսրայելի քարոզչական առաքելությունը խազարաց մոտ, և այս էջերի հեղինակը նույն ինքն Իսրայելն է: Կան մի շարք վավերական պաշտոնական թղթեր և ժողովական կանոններ, առնված կանոնագրքերից և այլն: Առաջին գրքի մեծագույն մասը բռնում են վկայաբանական անվավեր հատվածներ և մի մասը քաղվածներ են Խորենացուց, Եղիշեից և Ագաթանգեղոսից: Վերջինիս ոճաբանական ազդեցությունը երևում է և երկրորդ գրքում:

Կաղանկատվացու երեք գրքերը կազմում են մի գործ և պատկանում են մի հեղինակի, որի գլխավոր ջանքն է եղել հավաքել ցան և ցրիվ նյութերը անցյալից հասած: Իր գրչին է պատկանում թերևս Գ-րդ գրքի 19-րդ գլխից սկսած մինչև վերջ. «Որ ինչ յերկերիւր թուականութենէն Հայոց եւ այսր գործք լեալ ի սահմանս Աղուանից»:

Մովսես Կաղանկատվացին կազմել է իր Պատմությունը գրեթե նույն ժամանակ, ինչ Հովհաննես Կաթողիկոս և Թովմա Արծրունի, X դարի առաջին կեսին, այսպես ասած՝ հատվածական կամ տեղական հայրենասիրության շրջանին. Հովհաննես Կաթողիկոս գրել է Բագրատունիների պատմությունը, Թովմա՝ Արծրունիների, Կաղանկատվացին, նրանց հետևելով՝ Աղվանից կամ Արցախի իշխանների: Մերձավոր առիթն է հավանորեն Աղվանից իշխանի՝ Սահակ Սևադա զորավոր իշխանի՝ իր որդու Գրիգորի հետ ճակատիլը Սմբատ [I Բագրատունի] և Աշոտ [II] Երկաթի դեմ և կարողանալը պաշտպանել իր անկախությունը, և Գրիգորի որդուն՝ Սևադա II Իշխանիկի արքայական թագ կապելը, թերևս այս առթիվ, կամ վերջինիս որդվոյն Հովհաննես Սենեքերիմի, «զոր ընտրեաց աջ բարձրելոյն

կոչելով ի թագաւորութիւն», կոչմանն ընդունվիլը հարկան պետու-թյուններից: Այս առիթներով է, որ նա գրում է իր նախնիքների պատմությունը, առաջ քան 949 թիվը: Առաջին անգամ հիշատակվում է Աղվանից Պատմությունը 949 թվականին, և հիշատակողը՝ Անանիա Մոկացի կաթողիկոսն է (943-965), որ երկիցս 949 և 958 (ավելի ստույգ 956) անձամբ գնաց Աղվանք եկեղեցական տարաձայնությունները հարդարելու և այս առթիվ հիշում է Մովսես Կաղանկատվացին և վկայություն բերում Գ գրքից:

Կարծեմ՝ կարողացա միտքս ամփոփել, առանց բանասիրական մանրամասնության մեջ մտնելու: Երրորդ գիրքը և մինչև անգամ վերջին գլուխը՝ Աղվանից կաթողիկոսների ցանկը (բաց ի թերևս մի քանի հետո ավելցած անուններ), առաջին երկու գրքերի հետ միասին, Մովսես Կաղանկատվացու խմբագրածու գործն է: Ցանկի առաջաբանը հար և նման է Ա գրքի 8-րդ գլխի առաջաբանին: Այստեղ հեղինակը գրում է՝ «**Ցոյժ ցանկալի էր** ըստ կարգաց գիտել զպատմածս, որ ինչ յԱռանայ նախա-գահութենէն ցայսօր գործք, բայց **արեւելեացս բազմազգութիւն ամբոխեալ** ցուցանէ զորպէսն եւ կտակարանացն **երկիզութիւնք**»... համեմատել Ցանկի հետևյալ սկսվածքի հետ. «Սակս հայրապետական անուանց (և՛ ոչ անուանդ, ինչպես տպված է) **պարտ եւ պատշաճ վարկանելի** էր զստոյգն դրոշմել ի գրի, բայց **զի յիսկզբանսն հալածեան** եւ նախաշաւիղ առաջնորդաց գործք եւ ժամանակք եւ անուանք **երկէզ եղեալ** յանօրինաց» և այլն:

Այս բոլորեն հետևում է, որ Մովսես Կաղանկատվացին VII դարու հեղինակ չլինելով չի կարող որևէ փաստ ծառայել, որևէ հիմ տալ ի նպաստ Մովսես Խորենացու խնդրին:

Ապա ուրեմն հայր Հացունու փաստարկությունը սխալ է:

Ընդունի՛ր ողջույնս և հարգանքս:

Ն. ԱԴՈՆՑ

Հ. Գ. Մոռացա հիշել (թեև կրկնում եմ բանասիրական և լեզվական կողմը չեմ շոշափում), որ Զարպհանալյան լեզվի և ոճի տարբերություն է գտնում Ա և Բ գրքերի և Գ գրքի միջև, որի համար և տարբեր հեղինակների գործ է համարել: Առ այս պետք է ասել, որ ոճի և լեզվի տարբերություն կա ոչ միայն գրքից գիրք, այլ հոդվածից հոդված, և տարբերությունը ծագում է սրանից, որ նյութերը տարբեր ժամանակների, այլևայլ գրիչների գործեր են և Մովսես Կաղանկատվացին, որպես միջակ գրող, հետամուտ անգամ չի եղել մի ոճի վերածել, ինչպես Մովսես Խորենացին է արել, այլ հավատարմությամբ ընդօրինակել է ինչպես կա, հապավումներով և անտեսելով հաճախ նույնիսկ ժամանակագրական կարգը:



# ՂԵՎՈՆԴ ԵՎ ԽՈՐԵՆԱՑԻ

**(Քննություն հայր Ն. Ակինյանի տեսության)**

Մեր Պատմահոր բազմաչարչար հարցը դեռ չէ հասել իր վախճանին: Մի բան է պարզված ընդմիշտ, որ Խորենացու անունով հայտնի երկը գրված է 696 թվից հետո: Այս վեր է ամեն կասկածից: Մնում է որոշել **terminus ad quem:**

Պրոֆ. Գր. Խալաթյանց իր նշանավոր աշխատության մեջ՝ «**Հայ Արշակունիք**»[1], շոշափման կետեր է գտել Խորենացու և Ղևոնդի մեջ և կարծիք հայտնել, որ **Ողբի** վերջին մասի մռայլ նկարագիրը կրում է Ղևոնդի այն էջերի ազդեցությունը, ուր նկարագրվում է արաբական բռնության ստեղծած անելանելի դրությունը: Ասել է, թե Խորենացին ժամանակով ուշ է նաև, քան Ղևոնդ: Հայ պատմության Հայրը այսպիսով տեղափոխվում է V դարից մինչև IX դար:

Հայր Ակինյան քարի միտք է ունեցել մոտեն ուսումնասիրելու Խորե-նացու և Ղևոնդի աղերսը, հերքական հարց, որ Խալաթյանց միայն ուր-վագծել է, բայց չէ վճռել:

Մխիթարյան միաբանության ականավոր անդամը խոհուն և բեղուն բանասեր է, հեղինակ բազմաթիվ կարևոր գործերի: Բանիմաց հասարա-կությունն իրավունք ունի հուսալու, որ նրա ամեն մի նոր գործը նոր աղյուս բերե հայ անցյալի ավեր շենքի վերակառուցման: Փութկոտությունը սակայն մեծապես վնասել է իր այս աշխատության: Հայ բանասիրությունը այն քաջագոտի ուղևորներից չէ, որ վազե առանց հետ ու առաջ նայելու. նրա ուղին անհարթ է, լի խոչերով և պահանջում է համր և ուշիմ քայլեր: Շտապ գրիչը ծնում է ակամայից անհաճո հակասություններ: Կարծել, որ Թովման ծանոթ չէ Ղևոնդի մատյանին[2] և հետո գտնել, որ Թովման իր առաջն ունի Ղևոնդի ժամանակագրությունը (էջ 76, այլև 124)՝ անախորժ է: Ենթադրել, որ Հռիփսիմեն հարս է դառել Արծրունյաց 785-են առաջ (էջ 264), և հաջորդ էջում ասել, թե այդ դեպքը տեղի է ունեցել մոտավորապես 800 թվին (էջ 265) ևս հաճելի չէ: Կամ գովել Ղևոնդի լեզուն որպես ընտիր հայկաբանություն,

[1]**Гр. Халатянц**, Армянские Аршакиды в "Истории Армении" Моисея Хоренского, ч. II, М., 1903.

[2] **Ն. Ակինյան, Մովսես Խորենացի և Ղևոնդ Երեց. երկու պատմագիրներու նույնության հարցը, Վիեննա, 1931, էջ 51 (այսուհետև մեջբերումները կարվեն տեքստում):**

այն հակադրել Խորենացու «կեղծ-դասական դանդաղկոտ եւ դժվարընկալ ոճագիտության, դարբնված հելլենական դպրոցի հետևողությամբ» (էջ 127) և հետո պնդել, որ Ղևոնդն ու Խորենացին նույն անձն են, առավել ևս անախորժ է:

Հայր Ակինյան անպայման այնքան անփույթ չէ որքան շտապփույթ: Գործի ընթացքին է, որ նոր գյուտեր է անում: Նախ՝ մեկնակետ ունենալով Խալաթյանցի ենթադրությունը, հարգո բանասերը հանգում է այն եզրակացության, որ Մոսկվայի գիտնականը սխալվել է, և որ ոչ թե Խորենացին բանաքաղ է Ղևոնդից, այլ **Ողբի** բուն հեղինակը Ղևոնդն է: Ապա առաջանալով (ախորժակը սրվում է ոչ միայն ուտելով, այլ գրելով) գալիս է այն հայտնության, որ չէ թե միայն **Ողբը**, այլ ամբողջ պատմությունը պատկանում է Ղևոնդի գրչին և «Խորենացի» նրա կեղծանունն է:

Ընթերցողը թերմտանքի մեջ է: Ի՞նչ կարիք կար այս դեպքում այնքան ջանք թափել **Ողբի** շուրջը ապացուցանելու, որ **Ողբը** սկզբնապես Ղևոնդի մատյանի սեփականությունն է եղել, հետո անցել է Խորենացու գրքին անհայտ ձեռքի միջոցով: Եթե երկու գործերի հեղինակը միևնույն անձն է, իմաստ չկա **Ողբը** տեղահան անելու իր ավանդական վայրից և մի գրքից մյուսը փոխանցելու: Ավելորդ աշխատանք չէ՞:

Եվ ինչ որ զարմանալի է, h. Ակինյան խրախուսված իր գյուտերից, պետք է տեսել մի նոր հոդվածով վիրավորել մեր Պատմահոր սրբազան հիշատակը: Ավելորդ եւևել, խորք բանասիրության:

Եվ հնարավոր է՞, որ մի մատենագիր, երկու գործ ունենալով, երկգլխանի հրեշ հանդիսանա, մի գլուխը արժանի Որմզդի, մյուսը՝ Ահրիմանի, Ղևոնդը գովելի, Ղևոնդը այպանելի միևնույն ժամանակ:

Կուզեինք սակայն հետևել մեր բանասեր բարեկամին հանգրվանե հանգրվան, ինչպես ինքն է անցել, հետևել նրա մտքի և գրչի հաջորդական զարգացման:

Երեք հանգրվան ունի h. Ակինյանի գործը: Ղևոնդ Երեց, Ղևոնդ և Խորենացու Ողբը, Ղևոնդ և Խորենացի:

### ՂԵՎՈՆԴ ԵՐԵՑ

Ո՞վ է Ղևոնդ և ի՞նչ գիտենք նրա մասին: Ոչինչ, բացի իր մատյանից:

Հայր Ակինյան աշխատել է ոչնչից ինչ ստեղծել: Եսայի [Ա Եղիպատրուշեցի] կաթողիկոսի մահվան առթիվ Ղևոնդ անվանում է նրան «երանելի, սուրբ եւ ուղիղ հաւատով»[1]:

Այս սովորական բառերի մեջ h. Ակինյան տեսնում է «հիացախառն, բարեպաշտական արտահայտություն» և բացատրում այնու, որ Ղևոնդ հավանորեն աշակերտել է Եսայիին նրա եպիսկոպոսության ժամանակ Գողթնում: Հնարավոր է գտնում նաև, որ Ղևոնդ Գողթնեցի լիներ և հրահանգված նույն կողմերի մենաստաններից մեջ, թերևս, Մաքենեաց վանքը (էջ 33):

Հայր Ակինյան մոռացել է հիշել, որ նույն պատմագիրը խոսելով առաջին անգամ Եսայիի մասին, անվանում է նրան «կաթողիկոս որոյ անուն էր Եսայիաս»: Մտերմության արտահայտություն չէ բնավ:

Ղևոնդ տեղ է տվել քաղաքական անցքերի մեջ Տրունի իշխաններին, որ Գողթն գավառից էին: Այս ևս ապացույց համարում պատմագրի Գողթնեցի լինելուն:

Այս դեպքում ինչո՞ւ չի հիշել ավելի կարկառուն անձ՝ Գողթնի Սահակ իշխանին, որ մասնակից էր Պարտավի ժողովին Աշոտ և Սմբատ Բագրատունիների հետ: Կամ ինչո՞ւ չպարծենար Վահան Գողթնեցու մարտիրոսությամբ:

«Երանելի» կոչելը մտերմության առանձին նշան չէ: Սահակ կաթողիկոսին ևս այնպես է անվանում («զմարմին երանեալ հայրապետին»[1]):

Եսայի հաջորդի՝ Ստեփանոսի մասին Ղևոնդ ասում է, որ կաշառքով գահ բարձրացավ: Սրանով պատմագիրը, ըստ h[այր] Ա[կինյանի], իբրև թե զգալ է տալիս, որ իր և Եսայիի միջև մտերմական կապ կա:

Արդարությունը պահանջում է չարատավորել Ստեփանոսի հիշատակը: Նրան նվիրված տողերի մեջ այն չկա, ինչ որ ուզում է տեսնել h. Ակինյան: Արար պաշտոնյան եկեղեցական գույքերի մի մասը գրավեց, ըստ պատմագրին, և մյուս մասը հանձնեց «ցաւանդապահս, նորին, մինչեւ **յաջորդել** յաթոռ հայրապետութեանն զՍտեփանոս, որ բազում կաշառօք յաջորդեալ ի հայրապետութեանն յաթոռ վատնեաց զամենայն ինչս եւ ստացուածս, մինչեւ **եղեւ բողոքիւն զինից եւ ծառայից եւ պարտուց**»[2]:

Ոչ մի կշտամբանք կաթողիկոսի հասցեին: **«Մինչեւ յաջորդել զՍտեփանոս»** խորք դարձվածը կարծել է տալիս h. Ակինյանին, որ հրամանատարը ինքը հաջողեցուց հաջորդել տալ հակառակ այլ թեկնածուների: Այս իմաստով հաջորդել բառը գործ է ածել Խորենացին. «յաջորդէ **Խոսրով զՍահակ**»[3]: Իսկ Ղևոնդի մոտ նույն բայը ներգործական է և ոչ անցողական (հետ մահվան Գրիգորի **յաջորդէ զիշխանութիւնն Աշոտ** , գլ. Ե): Ուստի ավելի հավանական է որ խորք դարձվածը պարզ հունաբանություն է, mechri tou Stephanou diadechesthai, և նշանակում է, մինչև որ հաջորդեց Ստեփանոսը: Արար

[1] **Ղևոնդ**, Պատմութիւն, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 169:

[1] **Ղևոնդ**, էջ 30: Ղևոնդ «երանելի» է կոչում և Արծրունի իշխաններին նախքան նրանց մարտիրոսությունը (էջ 164):

[2] Անդ, էջ 170:

[3] **Մովսես Խորենացի**, Գիրք Գ, գլ. 49:

հրամանատարը ընտրության խառնվելու տեղիք չուներ, նա միայն պահանջել է նորընտիր հայրապետից «կաշառք», իր հավանությունը տալու համար: Կաթողիկոսը ստիպված է եղել ոչ միայն իր ընտրության առթիվ «կաշառք», այլև գյուղերի և ծառաների համար փրկանք տալ:

Լոկ ենթադրություն է դարձյալ, թե Եսայիի մահը և Ստեփանոսի անարժան ընտրությունը, եկեղեցու կողոպուտը «ազդած են խորապես Ղևոնդի նյարդերու վրա և հարկադրած թողուլ հայրենիքը» և անցնել Բյուզանդիա, Շապուհ Ամատունու գաղթի հետ (էջ 25):

Ո՛չ Ակամսիս և Կող անունների ծանոթությունը և ո՛չ ծովամարտի նկարագրությունը և ո՛չ էլ երկու գրիվ մանանեխի անհեթեթ զրույցը չեն կարող մանանեխի չափ նպաստ բերել այս վարկածին:

Հայր Ակինյան ուզել է Ղևոնդին Կ. Պոլիս տեսնել, որպեսզի Լևոն [III կայսրի] և Օմար [II խալիֆի] թղթակցությունները նրա թարգմանություն համարի, կատարված Բյուզանդիայի մայրաքաղաքում: Բայց հետո հրաժարվում է այս մտքից և հետևապես Ղևոնդի երթը ևս ավելորդ է հանդիսանում:

Ավելի լավ է խոստովանել, որ պատմագրի կյանքը մեզ անծանոթ է, քան մոլար գիտությամբ կնճռոտել խնդիրը:

Ղևոնդ մի հիշատակ է թողել, այդ իր մատյանն է, շոշափելի և քննելի:

Ինչպե՞ս է կոչվել այս մատյանը և արդյո՞ք հարազատորեն է հասել մեզ:

Պատմագրիս մի ձեռագրի, ինչպես և Ասողիկի և Կիրակոսի հիշատակության հիման վրա հ. Ակինյան փորձում է վերականգնել սկզբնական վերնագիրը: Բայց իսկույն թողնում է այդ փորձը և կանգ առնում Ղևոնդի հիշատակարանի վրա, որ է «Կատարեցաւ վարդապետութիւն(?) Ղեւոնդի վասն ժամանակագրաց տանս Թորգոմայ, ի հրամանէ տեառն Շապհոյ Բագրատունւոյ»:

Այս անգրագետ տողերը չեն պատկանում Ղևոնդին, այլ որևէ գրչի: Անտեղի է վարդապետություն բառը:

Հայր Ակինյան կարծում է, որ բառս հոս գործ է ածված պատմության իմաստով և մի աններելի սխալ է գործում, վկայության կոչելով Ագաթանգեղոսի «զայս պատմեցուք... **վարդապետութեամբ** Սրբոյն Գրիգորի», որպես թե ընդգծված բառս նշանակեր հանդերձ պատմությամբ:

Ագաթանգեղոսի խոսքը վերաբերում է Գրիգորի վարդապետության, իր գրքի այն մասին, որ կոչվում է «**Վարդապետութիւն** Սրբոյն Գրիգորի»:

Հիշատակարանը աղավաղված է: Պետք է կարդալ թերևս վարդապետի (և **ո՛չ վարդապետություն**), **վասն** բառը ևս անտեղի է. ժամանակագիրք, այսինքն՝ (գիրք ժամանակաց) և ո՛չ վասն ժամանակագրաց: Թերևս բուն հիշատակարանում գրիչը կարդացել է՝ «**Վարդապետի Ղեւոնդի ժամանակագիրք** տանս Թորգոմայ» (1):



Ավելի կարևոր է Ղևոնդի գրքի թերի լինելու խնդիրը:

Հայր Ակինյանի կարծիքով գիրքը կորուստ ունի սկզբից: Որպես թե պակասում է հեղինակի ընծայականը, ուղղված Շապուհ Բագրատունուն: Մխիթար Անեցին, ծանոթ լինելով Ղևոնդին, գիտե անուններ ինչպես Քաղրթ, Եման և Շահրիար, որ չկան այժմյան Ղևոնդի մոտ: Ասողիկի «կարկառուն, սակավախոս բառերի մեջ արտահայտած ծանոթությունը Մահմետի շուրջը»[1] առնված է համարում Ղևոնդեն, ուր սակայն չկան այդ բառերը: Ուրեմն Ղևոնդը թերի է (էջ 50):

Այս երեք փաստերից առաջինը համոզիչ չէ, մյուսները սխալ են, անուշադրության վրիպակներ:

Ասողիկ գրել է իր գործը Սարգիս [Ա Սևանցի] կաթողիկոսի պատվերով և ընծայական չունի, այլ հիշում է Սարգսի պատվերի մասին իր վերջաբան հիշատակարանում: Նույնը կարող էր և Ղևոնդի մոտ լինել, ինչպես կարծել է տալիս գրչի հիշատակարանը:

Մխիթար Անեցու հիշատակած անուններից Շահրիարը կապ չունի Ղևոնդի հետ, իսկ Քաղրթ և Եման (կարդա Եմրան) իզուր է որոնել նրա մոտ: Մխիթարը առել է խորթ անուններն իր հայրենակից Սամուել Անեցուց, որի մոտ նույն անունները հնչում են Քաղրթ կամ Քաղարթ և Ամրան: Սրանք ոչ այլ ոք են, եթե ոչ Մահմետի անդրանիկ զորավարները՝ Խալիդ և Ամր (Օմար): Անունների խորթ տառադարձությունը մատնում է ասորական աղբյուր: Մխիթարի անգետ գրչի տակ նրանք դարձել են Մահմետի նախորդներ, ուստի և հնարավոր է գտել ասել՝ «ի Քաղրթայ մինչեւ յելանելն էին ամք ԼԸ, որպէս եւ Ղեւոնդ պատմագիրն զայն վկայէ»[2]:

Ղևոնդին նայում է միմիայն տարեթիվը՝ ԼԸ, մնացածը քաղված է Սամուել Անեցուց:

Չախորդ է նաև Ասողիկի կոչումը: Նրա «կարկառուն բառերը» (էջ 118) պատկանում են Սեբեոսին[3], և ինչ որ առնված է Սեբեոսից, իրոք կա այժմյան Ղևոնդի մոտ:

Ղևոնդ շարունակել է Սեբեոսի գործը և պետք չուներ անդրադառնալու Մահմետի անձին, ինչ որ արդեն հայտնի էր իր նախորդից: Ղևոնդի գրքի առաջին բառերը սխալ են հասկացված: «Նախ և առաջին որք եւ Ամիր-ալմումնիք անուանեցան»՝ վերնագիր է առաջին գլխին: Գերադասելի է կարդալ նախ և առաջինք և համարել մի բառ, քան ուղղել նախիշխանք կամ նախաթոռք, ինչպես անում է հ. Ակինյան:

[1] **Ասողիկ**, Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 118:

[2] **Մխիթար Անեցի**, Պատմութիւն, Ս. Պետերբուրգ, 1879, էջ 44:

[3] **Սեբեոս**, Պատմութիւն ի Հերակլն, Ս. Պետերբուրգ, 1879, էջ 104:

Պատմագիրը նպատակ ունի պատմելու առաջինների մասին, որոնք կոչվում էին նաև ամիր-ալ-մումնիք:

Գիտենք, որ այդ տիտղոսը ընդունեց առաջին անգամ Օմարը: Ղևոնդ ուրեմն իրավունք ունի չխոսելու Մահմետի և Աբուբաքրի մասին: Սրանց և երկու հաջորդների՝ Ամրի և Օթմանի իշխանությունը ի մի է ամփոփում ընթացս 38 տարվան, սկսած Հերակլի տասնմեկերորդ տարուց մինչև Մուավիայի համբարձումը: Հերակլ գահ բարձրացավ 610 թվի վերջերը, իսկ Մուավիան 661 թվի սկիզբը: Ուստի Ղևոնդ հաշվում է Հերակլի 11-րդ տարին 622 (և ոչ 621) և մինչև 660 գումարում է ուղիղ 38 տարի: «Զի (զի ամ) կալեալ զիշխանութիւնն Մահմետ մեռանի, յետ այնորիկ փոխանորդէ զիշխանութիւն Մահմետի Աբուբաքր եւ Ամր եւ Օթման, ամս ԼԸ»[1]:

*Փակագծի մեջ առածը հարազատ չենք համարում: Մահմետ քսան տարի* չէ իշխել, այլ տասը՝ 622-632: Պատմագիրը չի նշանակում Մահմետի երեք հաջորդների իշխանության տարիները առանձին առանձին: Կարելի է իրավամբ կասկածել, որ Մահմետին տրված քսան տարին իրեն չեն պատկանում: Գուցե ծագել է սխալ ընթերցումից, սկզբի զի մակրայի պատահական կրկնությունից: Երե կարդանք՝ «զի կալեալ զիշխանութիւնն Մահմետ մեռանի, յետայնորիկ փոխանորդէ... ամս ԼԸ». և այս երեսուն և ութ տարվան մեջ հաշվենք և Մահմետի իշխանության տարիները, կստանանք ստույգ տեղեկություն:

Ղևոնդի բնագրի պատահական կրկնագրությունից առաջացած սխալը հին է և մոլորեցրել է հետագա պատմագիրներին:

Մահմետի և Աբուբաքրի վրա խոսել զանց է անում պատմագիրը նաև այն պատճառով, ինչպես ինքն է բացատրում, որ քանի Հերակլ կայսրը կենդանի էր, արաբները չկարողացան սփռել իրենց ասպատակը: Բուն աշխարհակալությունը սկսվեց Օմարի և Օսմանի, առաջին ամիր-ալ-մումնիների օրով, ուստի և սրանց շուրջն է բոլորում իր խոսքը: Պատմում է ինչ որ գիտե Սեբեոսից, ինչ ինչ տարբերությամբ առաջին երեք գլուխներում: Տպագրի այս գլուխները կազմում են Ղևոնդի մատյանի առաջին գլուխը և մի տեսակ նախաբանություն է իր իսկական երկի, որ սկսվում է Մուավիայի իշխանությունից, այսինքն՝ այն տեղից, ուր վերջանում է Սեբեոսի պատմությունը:

Այսպիսով Ղևոնդի գիրքը կորուստ չունի սկզբից, հակառակ հ. Ակինյանի և ուրիշների կարծիքին (2): Իսկ կազմը արդյո՞ք փոփոխության է ենթարկված: Հայր Ակինյան կարծում է, որ ԺԹ և Ի գլուխներն իրենց տեղը չեն: Եռևառաջության պատճառը որպես թե Լևոնի և Օմարի թղթերն են:

[1] Ղևոնդ, էջ 3:



Տեսանք, որ հ. Ակինյան Ղևոնդին տարավ Կ. Պոլիս, տարավ, որպեսզի թարգմանել տա նրան այս թղթերը հունարենից հայերեն: Հետո, հրաժարվում է այս ենթադրությունից և ընկնում մի ուրիշ մոլորության մեջ, կարծելով որ թղթերը Ղևոնդի երկի հարազատ մասը չեն կազմում, այլ ներմուծված են մի ուրիշ և անհայտ անձի կողմից: Այս եկամուտ տարրը ներս մտնելով պատճառ է եղել գլուխների սկզբնական դասավորության խանգարման:

Նախ՝ ԺԹ և Ի գլուխները ճիշտ իրենց տեղն են: Ահա ինչու: Այստեղ պատմվում է Օմարի արշավանքը և Կ. Պոլսի պաշարումը: Ղևոնդ օգտվել է միայն վավերական աղբյուրից, ուր պատմական նշանավոր դեպքի լոկ ստվերն է մնացել: Շինծու և անճաշակ նամակները Մսլիմի և կայսեր հորինված են ոչ թե Ղևոնդի կողմեն, այլ առնված են նույն պղտոր աղբյուրից, ուր պաշարման տարեթիվը ինչպես և *ժամանակակից* ամիրապետի անունը արդեն մոռացված են եղել:

Ոչ մի երաշխիք չունինք, որ Ղևոնդ գիտեր, թե իր պատմածը վերաբերում է Օմարի իշխանության: Արշավանքի հերոսը Մսլիմն է, ամիրապետի եղբայրը: Լևոն կայսրը, որի անունը հիշվում է, թագավորել է 717-741, երբ Մսլիմ ասպարեզի վրա էր: Ղևոնդ իրավունք ուներ զետեղելու ԺԹ և Ի գլուխները Մսլիմի վերջին օրերին, քանի որ պատմությունը վերջանում է հետևյալ նշանակալից խոսքերով. «Եւ յետ այսորիկ գնաց ի տուն իւր, եւ ոչ էարկ սուր ընդ մէջ իւր **մինչեւ ցօր մահուան իւրոյ**»[1]:

Խոսքը Մսլիմի մասին է. ուրեմն Կ. Պոլսի անհաջող պաշարումից հետո Մսլիմ այլևս անգործության դատապարտվեց մինչև իր մահը: Բնական է, կարծել, որ այս խոսքերից հետո Ղևոնդ չէր կարող նորեն դառնալ Մսլիմի այն արշավանքներին, որոնց մասին խոսում է ԺԹ գլխում: Պարզ է ուրեմն, որ ԺԹ և Ի գլուխները իրենց պատշաճ տեղն են և հիմ չկա դնելու ԺԸ-ից առաջ հակառակ պատմագրի ունեցած ծանոթության:

Անընդունելի են հ. Ակինյանի առարկությունները Լևոնի և Օմարի թղթակցության դեմ:

Ղևոնդի տեղեկությամբ Օմարը «ազնուականագոյն քան զամենայն արս ազգատոհմին իւրոյ: Սա արար դարձ գերութեանն, զոր գերեաց Մահմետ յաշխարհէս հայոց յետ այրելոյն զնախարարս աշխարհիս»[2]: Հայր Ակինյան գիտե, որ Օմար թշնամի էր քրիստոնեության և շարունակող Կ. Պոլսի պաշարման: Նրա կարծիքով Ղևոնդ չէր կարող գովաբանել այսպիսի մարդու: Այնուհետև Օմարին վերագրվում է գերիների դարձը, մինչդեռ

[1] Ղևոնդ, էջ 112:

[2] Անդ, էջ 42:

Ղևոնդ նախընթաց գլխում Մահմետ զորավարի մասին խոսելիս չի հիշում, որ գերություն է հանել հայ երկրից:

Այստեղից հետևցնում է հ. Ակինյան, որ ո՛չ գովասանական խոսքերը Օմարի հասցեին և ո՛չ նրան վերագրած թուղթը աղերս չունին Ղևոնդի մատյանի հետ և համարելու են անհարազատ հավելումներ: Անհայտ ձեռքը որպես թե խարդախել է Ղևոնդի բուն տողերը, ուր պատմելիս է եղել Օմարի մուսուլման բարեմասնությունների մասին և փոխել նրա «բարի համբավը ի նպաստ քրիստոնեության»:

Դժվար չէ քանդել ենթադրության այս բարդ ցանցը: Պետք չկա նկատելու, որ Օմար կարող էր հրեշ լինել ուրիշների նկատմամբ, բայց բարի դեպի հայերը: Ներոնը մեծ ոճրագործ էր, բայց ազնիվ վարմունք ցույց տվեց հայերի հանդեպ, խաղաղացրեց մեր երկիրը և Արշակունյաց հարստության հիմը դրեց Հայաստանում: Ընդհակառակը, Տրայանոս կայսրը հռովմեական ճանաչավոր փառքերից մեկն է, բայց գարշելի անձն հայ պատմության տեսակետից: Նենգորեն իր մոտ կանչեց հայ թագավորին և սպանել տվեց արտակարգ տմարդությամբ (3):

Նույնը և Օմարի նկատմամբ: Հավանական է, որ ջերմեռանդ մուսուլման Օմարը, ձեռնարկելով խոշոր արշավանք դեպի կայսերական մայրաքաղաքը, խոհեմություն է համարել մեղմ քաղաքականությամբ շահել հայերի տրամադրությունը և ապահովել իր թիկունքը: Սակայն, խնդիրն այս չէ:

Ղևոնդ շատ լավ գիտե, որ Օմար «ցուցանէր եւ առ իւրային ազգն մտերմութիւն լաւագոյն քան զառաջինսն, որ նախ քան զնա իշխանքն էին»:

Ղևոնդ նորեն անդրադառնում է ԺԵ գլխում Օմարի «բարեխառնութեան եւ բարեմտութեան առ ազգս քրիստոնէից», որով ի նկատի ունի առավելապես հայերին, ինչպես ինքը հարում է՝ «որպէս նախ քան զայս պատմեցաք, գերեաց գերադարձ առնէր»[1]:

Հայր Ակինյանի ուշադրությունից սպրդել է այն կարևոր հանգամանքը, որ մեր պատմագիրը Օմարի բարեմտության մասին խոսում է ոչ միայն այն գլուխներում, որ երկրայական են թվում հ. Ակինյանին, այլև ԺԷ գլխում որ կասկածից դուրս է: Հիշամի վրա խոսելիս Ղևոնդ ասում է, որ նոր աշխարհագիր անել տվեց և հարկերը ծանրացուց «որպէս թէ դժուարելով ընդ բարեմտութիւնն Օմարայ, եթէ անիրաւութեամբ ծախեաց զմթերս գանձուցն»[2]:

Դարձյալ հ. Ակինյան ուշադիր չէ եղել, որ Օմարի քաղաքականության մասին նման նպաստավոր տեղեկություն ունինք մի ուրիշ հայ աղբյուրից,

[1] Ղևոնդ, էջ 3:

[2] Անդ, էջ 101:



Վահան Գողթնեցու վկայաբանությունից. «Եւ իբրեւ նստաւ Ոմառ ի գլխաւորութիւն տաճկաց, արկ ի սիրտ նորա աստուած յիշել զանհրաւութիւնն որ առ Հայս հրաման տայր ժողովել զգերեալն մեծաւ պնդութեամբ եւ ի ժողովելն արձակեաց զամենեսեան»[1]:

Սրանով վերանում է միանգամայն հ. Ակինյանի տարակույսը գերության վերաբերյալ: Վերջապես Ասողիկը գիտե Ղևոնդի մատյանը այն ձևով ինչպես հասել է մեզ և Մսլիմի արշավանքը դնում է Հիշամի օրով, ուրեմն համաձայն Ղևոնդի բնագրի[2]:

Ակներև է, որ Ղևոնդի մոտ գլուխների կարգը խանգարված չէ և Օմարի ու Լևոնի թղթերը պատկանում են բուն բնագրին:

Այլ խնդիր է, թե որքան արժանահավատ են այդ թղթերը պատմականորեն: Անպայման անվավերական գրություններ են: Լևոն և Օմար, ավելի ճիշտ Մսլիմ ունեցել են գրագրություն, բայց քաղաքական և ոչ կրոնական նյութի շուրջ: Ուշագրավ է Լևոնի թղթի այն կետը, ուր խոստովանում է թե՝ «բազում անգամ գրեցաք առ քեզ, արդեօք թէեւ այլ հասանիցէ գրել, այլ վասն աշխարհական իրաց, եւ ոչ վասն աստուածային իրողութեանց»[3]:

Եվ այս ստույգ է: Թեոփանեսի վկայությունը, որ Օմար դավանաբանական թուղթ է գրել Լևոն կայսրին ոչինչ չի հաստատում: Թեոփանեսը վանական էր, ժամանակակից Ղևոնդին և ավելի քննական միտք չէր քան հայ պատմագիրը: Նա ևս հավատ է ընծայել իր ժամանակ շրջող լուրերին և թղթին: Լևոնի թուղթը պետք ունի հատուկ քննության, երևան հանելու հնարավոր հավելումներն ընդդեմ Ղևոնդի: Օմարի և Լևոնի թղթերի զուգադրությունը ցույց է տալիս, որ հավելումներ եղել են, մի խնդիր, որ մեր նյութից դուրս է:

Լևոնի թղթի մեջ ասված է, որ Մահմետի երևումից անցել է «հարիւր ամ փոքր ինչ աւելի կամ պակաս»[4]: Ենթադրվում է, որ թուղթը գրված է Կ. Պոլսի պաշարման ժամանակ՝ 717 թվին, ուրեմն իրավ հարյուր տարի հետո Մահմետից, 622 թվից: Մի քանի էջ ստորև նույն թուղթը հաշվում է «ութ հարիւր ամք փոքր ինչ պակաս կամ աւելի, յորմէ հետէ Քրիստոս երեւեցաւ»[5]: Հետևապես թուղթը գրված պիտի լինի ութ հարյուր թվականի շուրջը:

[1] «Սոփերք Հայկականք», հատ. 13, էջ 20:

[2] Ասողիկ, էջ 128:

[3] Ղևոնդ, էջ 46:

[4] Անդ, էջ 60:

[5] Անդ, էջ 61:

Ղևոնդի պատմությունը ընդգրկած լինելով այդ թուղթը, գրված պետք է լինի ոչ առաջ քան նույն ութ հարյուր թվականը:

Սակայն, Ղևոնդի պատմվածքի թելը կտրվում է 788 թվի մոտերը:

Ե՞րբ է գրել Ղևոնդ իր պատմությունը:

Հայր Ակինյան կարծում է, որ Ղևոնդ շարադրել է իր գործը երկու նվագով: Առաջին անգամ գրել է սկզբեն մինչև ԼԳ գլուխը, հավանորեն 775 թվի ապստամբությունից առաջ: Ապա ավելացրել է վերջին մասը մերձ 790 թվականի: Լեզվի և ոճի տարբերություն կա որպես թե այս երկու մասերի մեջ:

Սակայն, մենք գտնում ենք, որ ԼԳ և ԼԴ գլուխները դժվար է միմյանցից անջատել: Նկարագրելով երկրի ծանր կացությունը, Ղևոնդ ավելացնում է, որ աղետն այնքան մեծ էր, որ անկարող է գրի առնել. «Պատմել ոչ կարեմք զաղէտիցն պատմութիւն»: Սրանով պատմագիրը որպես թե վերջակետ է դնում, գրիչը վայր դնում որ հետո նորեն վեր առնի 15-20 տարի անցնելուց հետո:

Մենք վերջակետ չենք տեսնում, այլ փոխանցում, պատմելու ապստամբական շարժումը որպես անմիջական և անխուսափելի հետևանք անպատմելի բռնության: Ուրիշ հանգամանք: Ղևոնդ սովորաբար նշանակում է ամիրապետի անունը և տարին և ապա արձանագրում անցքերը: Աբդլայի անունը և իշխանության քսան և երկու տարին տպագրի մեջ կցած է սխալմամբ ԻԸ գլխին, մինչդեռ պատկանում է հաջորդ ԻԹ. գլխին: Նրա կառավարությունը (754-775) ընդգրկում է ԻԹ գլխից մինչև ԼԵ գլուխը, և ուրեմն ԼԳ և ԼԴ գլուխները գրված են միաժամանակ և 775 թվից հետո:

Սրանով երկնվագ գրության հարցը, ջնջվում է:

Հայր Ակինյան նկատել է այս ծանր պարագան և փոխանակ սքափվելու և հրաժարելու իր ենթադրությունից, շտապում է խուչընդոտը վերացնել մի նոր ենթադրությամբ, այն է, որ Աբդլայի քսան և երկու տարին հետո է ավելցրած: Այս արդեն նշանակում է չարարկել կասկածելու իրավունքը: Եվ ինչո՞ւ են այս բռնազբոսումները:

Հայր Ակինյան ձեռնարկել է Ղևոնդի ուսումնասիրության հատուկ նպատակով:

### ՂԵՎՈՆԴ ԵՎ ԽՈՐԵՆԱՑՈՒ ՈՂԲԸ

Բանսարկուն մի օտարոտի միտք է ներշնչել մեր պատվական հոր, թե Խորենացու հռչակավոր **Ողբը** Ղևոնդի գործն է, զետեղված նախապես իր պատմության ԼԳ գլխից հետո, որպես վերջաբանություն առաջին նվագով գրված բաժնին: Հետագայում, 15-20 տարուց, երբ Ղևոնդ երկրորդ նվագով շարունակել է իր գործը մինչև 788 թվականը, պատշաճ է համարել հանել Ողբը իր տեղից և դնել ավելացրած մասի վերջը և նրանով կնքել իր մատյանը (էջ 155-157):



Այնուհետև մի անհայտ անձ, շարունակում է հ. Ակինյան, դատելով որ Ողբը շատ ավելի հարմար է Խորենացու մեծ գործին որպես ավարտաբանություն, գողացել է Ողբը Ղևոնդից և նվեր բերել մեր Քերթողահոր, ոչ առանց ինչ ինչ փոփոխության (էջ 158):

Հայր Ակինյանի կարծիքով, Ղևոնդ զգայուն մատենագիր է և չէր կարող գրիչը վայր դնել առանց վերջին հրաժեշտի խոսք ասելու իր ընթերցողներին (էջ 54), իսկ Խորենացին կարող է՞ր: Խորենացու «գեղեցկահյուս պատմության» որպես թե սազ չի գալիս Ողբի նման «ցավագար ավարտաբանություն» (էջ 158):

Սակայն, նման խորհրդածությունները չեն որ պղտորել են մեր բանասերի միտքը: Նրա հիմնակետը **Ողբի** վերջին կտորն է, ուր ողբերգուին թվում է, թե տարերքն անգամ փոխել է իր բնությունը, գարունը երաշտացել է, ամառը՝ անձրևահույզ, աշունը՝ ձմեռնացել է, ձմեռը՝ սաստկասառույց, մրրկալից. անպակաս՝ հողմեր, կարկուտ, կայծակ, անբերրություն, անաճելություն, սասանմունք, դղրդմունք: Հայր Ակինյան այն կարծիքին է, որ բնության այս նկարագիրը հռետորական չափազանցության արդյունք չէ, այլ համապատասխանում են դառն իրականության: Վկայության է կոչում մի ասորի պատմագիր, որի ասելով 762 թվին մարտ ամսին Տիգրիսը հորդացել է, ջուրը հեղեղել և մեծ վնասներ հասցրել, որ ձմեռը առատ ձյուն է եկել, հովիվներին հանկարծակի բերել: Նաև 772 թվին, ուրեմն տասը տարի հետո, անձրև չի եկել, գարնան ցանքերը վնասվել են, հետևյալ 773 թվին վաղաժամ ձմեռը փչացրել է այգիները, անասուններ և թռչուններ զոհվել են, կարկուտ է եկել՝ հատիկները կայծքարի մեծությամբ:

Մի ուրիշ ասորի հավաստացնում է, որ 763 թվին կարկուտ է եկել, «հատիկները ութ լիտր» (Միքայել Ասորու մոտ, նկատենք անցողակի, խոսքը կարկուտի մասին է[1]), և որ Խորասանում երկրաշարժ է եղել 764 թվին: Ղևոնդ իր պատմության ԼԳ գլխում հիշում է, որ «ի վերուստ վկայէր բարկութիւն զոլ բազմութիւն մարախոյն եւ կարկուտք եւ երաշտութիւնք անձրեւաց»[2]: Ըստ հ. Ակինյանի, բնության աղետների մասին Ղևոնդ վերապահել է մանրամասնորեն խոսել **Ողբի** մեջ, որը սկզբնապես ՀԳ գլխից հետո է զետեղված եղել:

Այժմ պարզ է թե ինչո՞ւ հ. Ակինյան այնքան աշխատանք է թափել Ղևոնդի պատմությունը երկուսի բաժանել, ինչո՞ւ Ողբը համարում է վերջաբանություն առաջին մասի և ինչո՞ւ այս մասի գրությունը դնում է 773-774 թվականներին:

---

[1] Michel le Syrien, Chronique, par. I.-B. Chabot, t. II, Paris, 1901, p. 524.

[2] Ղևոնդ, էջ 136:

Սակայն, ի՞նչ կապ ունի Հայաստանի հետ Խորասանի երկրաշարժը, կամ Միջագետքի ձյունն ու կարկուտը: Գիտենք, որ հայ աշխարհի բնությունը շղթայված չէ իր կամքի մեջ: Հավատում ենք, որ նա ցուցադրած լինի իր քմահաճությունները ոչ միայն 774 թվին, այլև դրանից առաջ և՛ հետո, և՛ հաճախակի: Ո՛չ խոշոր կարկուտը, ո՛չ դեզադեզ ձյունը, ո՛չ հեղեղասաստ անձրև, անգամ երկրաշարժն ու մորեխը, դժբախտաբար, հազվագյուտ երևույթներ չեն հայ հողի վրա:

Բնության նկարագրած արհավիրքները բացառիկ աղետ չեն նաև Միջագետքում: Եթե հ. Ակինյան թերթեր Դիոնիսիոս Տելմահրեցու երկը ամբողջապես, կտեսներ որ նրա էջերը լի են նման արհավիրքների նկարագրությամբ: Բնությունը բարի մայր չէ եղել ոչ միայն 763 և 773 տարիներին, այլև 753, 744, 738, 724, 717-720, 712, 704, թողենք, VI դարը: Օրինակ՝ 744 թվին տեղի են ունեցել ուժգին սառնամանիք, գետերի հորդումն, ձկների անշնչացած ափերի վրա, անձրևի պակասություն, սով, համաճարակ հիվանդություն, երկրաշարժ, որ լեռները տեղահան արեց, գյուղեր խորտակեց, մեծ ավերումներ գործեց, երկնքի վրա երևեցան բոցավառ ասուպներ, օդը լի փոշիով, աներևակայելի սով, որ չորս հարյուր հազար (հավանորեն չորս հազար) զոհ տարավ, փոթորկալից հողմեր և այլն: Դրությունն ավելի մխիթարական չէր, քան Ակինյանի ընտրած տարիներին:

Բնությունը չհրաժարվեց իր բարկությունը երևան հանելու և հաջորդ IX դարում: Առնենք 839-840 տարին, ուր հիշվում է նաև Հայաստանը: Երկրաշարժ Կարին քաղաքում, որի աշտարակներից ութը փուլ եկան, երկու հարյուր մարդ զոհվեց, երկու ամիս ժողովուրդը մնաց բացօթյա, բոցավառ ամպեր երկնքում (արևի խավարում), անձրևի առատությունից ձմեռը կանուխ սկսվեց, գետերը հեղեղեցին, Տիգրիսը տասն հազար տուն քանդեց. հաջորդ տարին ձմեռը անձրև չեկավ, սերմերը չծլեցին, հետո առատ ձյուն թափեց, ահռելի սառնամանիք. դրամի պակասություն, թանկություն, սով և հիվանդություն, համաճարակ ախտ. ապրիլին սերմերը ծլեցին, բայց կարկուտը վրա եկավ և բոլորը փչացրեց, վերջապես մորեխը հասավ և կերավ մնացած սերմերը, բամբակը և մյուս հունձը. սոսկալի փոթորիկներ արմատախիլ արին ծառերը:

Ծանր էին նաև հասարակական և քաղաքական պայմանները: Խուռամյան աղանդավորները նորեն սկսեցին իրենց բռնությունները Կորդվաց աշխարհում՝ Մուսա առաջնորդի ղեկավարությամբ: Անթիվ մարդկային զոհեր, սղություն. աղի քառասուն տրամը արժեր մի զուզա, պանրի երկու ունկը՝ մի զուզա, ընկույզ՝ հիսուն հատը մի զուզա: Համաճարակը տևեց երկու տարի[1]:

[1] Michel le Syrien, t. III, Paris, p. 105-109.



Կարծում ենք, որ այս նկարագիրը ավելի ահավոր է, քան ինչ որ առաջարկում է մեզ հ. Ակինյանը: Եթե նրա դատողության շավղով ընթանանք, իրավունք ունինք **Ողբը** մեխելու 840 թվին:

Սակայն, մենք զգուշանում ենք այսօրինակ փաստարկությունից: Ավելի ընդունելի ենք դատում, որ Ողբի արհավրալից տողերը ճարտասանության են պատկանում և ոչ իրականության: Բնության զայրույթին նվիրած տողերից հետո Ողբի հեղինակը, նույն հռետորական ավյունով ծառանում է ամբողջ հայ ժողովրդի դեմ սոսկալի բառերով: Հայ իրականության բոլոր ղեկավար ուժերը՝ վարդապետք, կրոնավորք, վիճակավորք, աշակերտք, ժողովականք, զորականք, իշխանք, դատավորք՝ ներկայացրած են որպես բարոյական հրեշներ: Արդյոք այս խավար պատկերը և՞ս համապատասխան է իրականության, այն դրության, որ տիրական էր Հայաստանում 774 թվերին:

Հայր Ակինյան այս դեպքում ևս չի ուզում ճարտասանական չափազանցություն տեսնել:

Սակայն, լույսի պես պարզ է, որ հայ մարդը երբեք այդպիսի այլանդակ պատկեր չի ունեցել և մանավանդ 774 թվականներին: Ջինատյաց անվանել հայ զորականին այն ժամանակ, երբ սուսերամերկ հերոսական պայքար էր մղում արաբական բռնության դեմ, նշանակում է անարդար լինել և հոդս բարբառել:

Հայր Ակինյան զուցե և իրավունք ունի նկատելու, որ Խորենացուն վայել չէր ստորագրել այսպիսի հուսահատ տողեր Բագրատունի իշխանի հանդիման: Բայց վայել է գտնում նույնը Ղևոնդի համար, որ նույնպես Բագրատունի իշխանի հետ գործ ուներ, և վերջը պետք է պատշաճ համարի նաև Խորենացուն Ղևոնդի դիմակով:

Հռետես հատվածը Ողբի աննշան կտորն է կազմում: **Ողբը** իր էական մասով, հ. Ակինյանի աչքում հռետորական շարադրություն է և ողբալու նյութը «անորոշ» (էջ 158): Նրան այնպես է թվում, որ Խորենացին շարժառիթ չուներ հառաչելու այնպիսի բարեզարդ դարագլուխ, որպիսին էր V դարու առաջին կեսը, երբ մեծ ուսուցիչների աշակերտները կանգուն էին, կղերը՝ զարգացած, Հովսեփ քահանան՝ տեղապահ, Վարդանը՝ սպարապետ, վանքերը՝ լի սրբակյաց կրոնավորներով (էջ 129):

Ուզում է վերլուծել **Ողբի** «անորոշ» նյութը և ուրիշ բան չէ գտնում քան երկու կետ. Հայաստանյայց եկեղեցու հովվագուրկ դրությունը և՛ Հովվի և՛ Հովվակցի մահվան առթած թախիծը (էջ 132): Սրանց անունը հեղինակը չի տալիս: Հայր Ակինյան կարծում է, որ Հովիվը Սիոն[Ա Բավոնեցի] կաթողիկոսն է և Հովվակիցը Սիոնի հաջորդ Եսայի[Ա Եղիպատրուշեցի] կաթողիկոսը:

Արդյոք ի՞նչ արժանիքի համար: Հայր Ակինյան ստիպված է խոստովանել, որ չգիտե թե ի՞նչ աղերս է ունեցել Ղևոնդը Սիոնի հետ (էջ 175):

Եսայի կաթողիկոսի մասին էլ մի բան գիտե, որ ուրիշների հետ միասին դիմել է ոստիկանին, հարկերը թեթևացնելու և խնդիրը անհետևանք է մնացել. զուցե և միևնույն նպատակով գնացել է Պարտավ: Այս վերջին քայլը, հ. Ակինյանի կարծիքով, արիասիրտ և հայրենասեր գործ էր և կարող էր Զորաբաբելի դեպքը հիշեցնել (էջ 177):

Այսպիսով Սիոնը ոչինչ բանի և Եսային չնչին բանի համար արժանանում են մեծագույն պատվի՝ լինել **Ողբի** Հովիվը և Հովվակիցը:

Պահանջկոտ չենք, բայց և այնպես կարծում ենք որ երկու կաթողիկոսներն իրենց հայտնի ու անհայտ արժանիքներով արժանի չեն **Ողբի** անգամ երկու տողին:

Զարմանալի է, որ հ. Ակինյան մոռացել է որ Հովվի և Հովվակցի առընթեր կա և թագավոր. «Բարձաւ թագաւոր եւ քահանայ»: Եթե քահանան Սիոնն է, ապա թագավորն ո՞վ է: Հայր Ակինյան պատասխան չունի, որովհետև շեղված է ճշմարտության ճանապարհից:

**Ողբը** իսկ իր տեղն է և նյութը շատ որոշ է և շատ հստակ ձևակերպված վերնագրում. «**Ողբք վասն բառնալոյ թագաւորութեանն** Հայոց յազգէն Արշակունեաց, եւ **եպիսկոպոսութեանն** յազգէ սրբոյն Գրիգորի»: Ակներև է, որ թագավորը Արտաշեսն է, Հովիվ և Հովվակիցը՝ Սահակ և Մաշթոց:

Խորենացին քաղաքական պատմիչ է և այլ հայացք ունի իրերի վրա, քան թելադրում է նրան վատորեն հ. Ակինյան: Արշակունի դարավոր թագը հանկարծ տապալվում է, Լուսավորչի տոհմը սպառվում, հայ պատմության զույգ զորավոր սյուները կործանվում են: Մի՞թե ողբալու երևույթ չէ: Եվ արդյոք V դարի դպրությունը կամ Վարդանն ու լուսավոր կղերը խանգարում են ողբալու հայ պետականության անկումը և կամ կարող են փոխարինել ազգային անկախության կորուստը, որպեսզի հայ պատմիչը ծափ ծափի զարկեր և ավելորդ դատեր ավաղելու իր «հէք թագաւորը, ազգաւ ի բաց ընկեցիկը»: Հայ եկեղեցու լուսավոր հիմնադրի տան վերջին ջահը մարում է: Մի՞թե ողբի արժանի չէ:

Ո՛չ և ո՛չ: **Ողբը** կապ չունի Ղևոնդի հետ, որպես գրական գործ այն բարձր է նրա ուժերից, և անքակտելի է Խորենացու պատմությունից: Հայր Ակինյան մոռացել է մի կարևոր հանգամանք: **Ողբը** Պատմահոր միակ ողբը չէ: Նրա պատմության երկրորդ գիրքը կնքվում է մի ուրիշ ողբով, որ նվիրված է Տրդատի հիշատակին և կոչվում է **ողբերգական** մեղադրություն:

Մենք էլ պահենք այս անունը, **Ողբից** զանազանելու համար: Բավական է համեմատել այս երկու գործերը, որպեսզի փարատվի ամեն կասկած և համոզվենք, որ երկուսն էլ միևնույն մտքի և գրչի ծնունդ են: Ահա Ողբերգականի սկսվածքը. «Զնորոյ եւ զմեծէ եւ զերկրորդ նահատակէ եւ զմերոյ լուսաւորութեան հոգեւոր վերակացուէ ճառերով, զ'ի Քրիստոսէ **հանուրց** եղելոցս ճշմարիտ թագաւորէ» և այլն:



«**Հանուրց եղելոցս** ճշմարիտ թագաւոր» խոսքերը հիշեցնում են Ողբի «**հանուրց** հիւսիսականաց վեհագոյն» և մատնում միևնույն գրիչը: Ողբերգականի ոճն ու կառուցվածքը հար և նման է Ողբին: Հեղինակը հայտնում է սրտի դառնությունը սուրբ թագավորի թունավորման առթիվ, նրան համարելով ոչ միայն «գործակից» (հմմտ. Ողբի՝ «գործակցաւք» և հավասար Լուսավորչին, այլ անգամ վեր է դասում. «այլ զառաւելութիւն ասեմ աստ թագաւորին»):

Հանդիմանում է մեր ազգի ամբարիշտությունը, ամաչում է հիշել անօրենությունն ու ամբարշտությունը, որով թունավորեցին այնպիսի թագավորի, որպես աթենացիք Սոկրատին և կամ հրեաները Քրիստոսին:

Այնուհետև խոսքը շրջում է իր անձի վրա իսկ և իսկ որպես **Ողբի** մեջ և դժգոհում է, որ ազգայինք անընդունակ են եղել գնահատելու նրան: «Ո՞վ ոք ի ձէնջ թռչակս յաղագս մեր, ո՞վ ոք վարդապետացն մաղթանս... Ո՞վ ոք յերթալն **մերում** բեռնաբարձս, ո՞վ ոք ի գալն **մերում** հանգիստ, ո՞վ ոք տուն կամ օթանոց մեզ պատրաստեաց»:

Շարունակելով իր տրտունջը, վշտացած հեղինակն ասում է ի միջի այլոց. «**Ուր շատախօսութեանն հոսանք իբրեւ յաղբերէ դիմեն», որպէս ասաց ոմն ի հնոցն»**: Ո՞վ է այս **ոմն**: Գրիգոր Նազիանզացին, որին է պատկանում արդարև մեջբերած խոսքը, ինչպես ցույց է տվել Գր. Խալաթյանց[1]: Սաղմոսի՝ «մինչեւ յերբ էք **ծանրասիրտք»** տանը, որ մեջ է բերում Ողբերգականի հեղինակը, ևս առնված է Նազիանզացուց (հայերեն թարգմանութեան մեջ **«խստասիրտք»** էք):

Արդ՝ հայտնի է որ Խորենացու **Ողբը** կրում է Նազիանզացու խոր ազդեցությունը: Հեղինակը չի թաքցնում և երկու անգամ ակնարկում է նրան. «Որպէս **ոմն** նախ քան **զմեզ իմաստասիրեաց**». «որպէս ասաց **ոմն** ի հարցն», ինչպես Ողբերգականի մեջ: Նազիանզացու ազդեցությունը այսպիսով կապում է սերտորեն Ողբը Ողբերգականի հետ և ապացուցանում, որ երկուսը միևնույն անձի գործ են: Ողբերգականի մասին կասկած չկա, որ Խորենացու երկի անկապտելի մասն է կազմում, ապա ուրեմն և Ողբը նրան է պատկանում:

Մի ուրիշ սխալ դիտողություն, որով հ. Ակինյան կարծում է հաստատել իր միտքը: Ողբի մեջ անհարազատ տարր է գտել, որպիսին համարում է հետևյալ պարբերությունը. «Եւ մինչ **նոքա զմերն** յուսային զդարձ եւ պատուասիրել **իմով** ամենիմաստ արուեստիւս եւ կատարելագոյն յարմարութեամբս, համայն եւ **մեք** փութապէս դիմեալք ի Բիւզանդիոյ, յուսայլարք հարսանեաց պարել եւ անվեհեր երագութեամբ կրթեալք... այդ... ողորմելի հառաչեմ... ոչ ժամանեցի աչաց նոցա կափուցման»:

[1] **Гр. Халатянц**, Армянские Аршакиды..., II, стр. 69-70.

Ընդգծված տեղերից երևում է, որ հեղինակը խոսում է մերթ եզակի, մերթ հոգնակի դեմքով: Հայր Ակինյան վերագրում է այս շփոթը այն «անճաշակ եւ անճարակ ձեռքին», որ **Ողբը** հանել է Ղևոնդի Պատմությունից և հարել Խորենացու երկին, անգրագետ փոփոխություններ մտցնելով: Ուստի հ. Ակինյան նրքա ուղղում է **նա**, առանց նկատել ուզելու որ խոսքը հոգևոր ծնողների մասին է, ինչպես հետևում է նախընթաց նախադասությունից. «**Զանգի ծնան** զիս եւ **սնուցին**»:

Սխալ է նաև **զմերն** փողել **զիմն** և մեք-ը՝ **ես**: Սխալ է, որովհետև հեղինակը ի նկատի ունի ոչ միայն իր անձը, այլև իր ընկերակիցներին: Ինչ որ իրեն է վերաբերում, արտահայտված է եզակի դեմքով: «Եւ մինչ նոքա զմերն (այսինքն իբրև իր ընկերների) յուսային դարձ եւ պատուասիրել (ավելի ճիշտ՝ պատվասիրիլ) **իմով** ամենիմաստ արուեստիւս եւ կատարելագոյն յարմարութեամբս համայն, եւ մեք (և ոչ թե՝ համայն եւ մեք) փութապէս դիմեալք ի Բիւզանդիոյ յուսայաք հարսանեաց պարել»: («Պատուասիրիլ» կախում ունի «յուսային» բայից և ոչ «դիմեալք յուսայաք»):

Պատմության հեղինակը մի ուրիշ տեղ ևս ցուցադրում է իր գիտությունը, իր ճանապարհորդության նայող գլխի (Բ, 62) մեջ, ուր ասում է՝ **անցաք**, **մտաք** և ապա «**ջիմն** ասեմ վարդապետէ, որում ոչ անարժան **զատայ** աշակերտ... ինքնացայ», և նորեն՝ **անկաք**, **մնացաք**: Ինչպես այստեղ, այնպես էլ **Ողբի** մեջ ասված է՝ «անհոգող դու այրութեամբդ եւ եղկելիք մեք որ զրկեալք եմք ի հայրենի վերակացութենէն»: Քիչ ստորև՝ «որպէս զախտս հանդուրժեցից... զլեզուս պնդեցից»:

Տարբերությունը հասկանալի է. խոսողը ինքն է միայն, բայց հայրենի վերակացությունից զրկվածը ինքը չէ միայն, այլ և յուրայինները:

Պատմության մեջ Խորենացին կիրարկում է գրեթե անխտրաբար հոգնակի և եզակի դեմք, երբեմն որոշ տարբերությամբ, բայց ոչ միշտ: Նույնը և **Ողբի** մեջ. (զծնողն **իմ**, եթէ **զիս**) եւ յետոյ՝ «ով **մեզ** ճառակցէ»:

Եթե հ. Ակինյանի նման մտածենք, պետք է Պատմության շատ և շատ գլուխները եկամուտ համարենք, որովհետև հաջորդում են համազոր նշանակությամբ: Հեռու չգնանք, առնենք առաջին գլուխը. ծա**նեայ**, տեսա**նեմ** և ապա՝ *ծանեաք*, *աշխատասիրեցայց* եւ *յիշատակեսցուք*: Բ գլուխը. զմ**եզ**, զտանե**մք**, զիտե**մք** և միևնույն ժամանակ՝ ոչ դանդաղի**մ**: Գ գլուխ. **ինձ** թվի, ավելորդ է մ**եզ**, զարմացեալ **եմ**, **մեզ** խոյզ խնդրոյ և այլն, և այլն:

Այս խնդրում զանազանություն չկա Ողբի և Պատմության մեջ, այլ նույնություն: Հետևապես հ. Ակինյանի առարկությունը ընդունելի չէ:



* * *

Եթե հ. Ակինյան իր կասկածանքը ուղղեր այն հատվածի դեմ, որ իրեն այնքան զբաղեցրել է և գայթակղել, մենք կողջունեինք և ձայնակից կլինեինք:

**Ողբի** հիվանդ մասը վերջին հատվածն է: Նրանով դատել ամբողջը սխալ է, իսկ ամբողջով այն քննել՝ արդար:

**Ողբը** բանաստեղծական դրվագ է, որի հարգը չի նսեմանում այնու, որ նմանողություն է Նազիանզացուն: Միևնույն քարերից կանգնում է հաճախ տարբեր ճարտարապետական շենք: Ինչ և լինեն փոխառյալ բառերն ու համեմատությունները, **Ողբը** գեղեցիկ հորինվածք է, ազնվական հյուսվածք:

Արժակ է, բայց չափականի ելևէջն ունի: Համավանկ բառերի հաջորդականությունը ստեղծում է նվագայնություն: Կան զեղուն զգացում, բաբախող սիրտ, խորդ հույզեր և ջերմ արտասուք: Մթագին ակնարկությունները շաղում են մի տեսակ խորհրդավորություն: Ուժեղ, շեշտված արտահայտությունները մնում են բանաստեղծական հունի մեջ և տեղի չեն տալիս հռետորական այլանդակության:

Հուզիչ, ոչ խռովիչ, լարվածքով, բուռն, ոչ ահարեկ թախիծով ընթերցողը սահում է ընտիր շարվածքի վրայից, հետզհետե աճող տրամադրությամբ և կանգ է առնում անդ, ուր բանաստեղծը ավարտում է մի վերջին շունչով. «Զարթի՛ր Երեմիաս, զարթի՛ր եւ ողբա՛ հանդերձ մարգարէանալ որ ինչ թշուառացաքս եւ որ ինչ թշուառանալոցս եմք: **Գուշակեա՛ զյառնել հովուաց տգիտաց**, որպէս երբեմն Զաքարիաս յԻսրայէլին»:

**Ողբի** ընթացքը փոխվում է: Բանաստեղծության հեզաքավալ ալիքները դադարում են, բացվում է մի ջրվեժ, հռետորական հորձանք: Նա, որ ցայժմ ողբում էր լալագին թագավորի և քահանայի մահը և վայում իր մենավոր որբությունը, հեղաշրջվում է, և «տխրական եւ սգաւոր» բարբառը լռում է և առաջ է գալիս մի անհույս հռետես և իր անեզր ամբաստանությամբ մի սև վարագույր է փռում հայ ազգի և հայ բնության վրա:

Հայ ժողովուրդը ներկայանում է մեզ որպես մի հրեշ. իր բոլոր խավերը ախտավոր են: Ամենեն անարգը զորականներն և իշխանները, որակված տասնական ահռելի արատներով: Վիճակավորները, ժողովրդականները և դատավորները յուրաքանչյուրը յոթն ծանր ածականով ծանրաբեռնված: Վարդապետները, կրոնավորները և աշակերտները ևս խնայված չեն:

Հոռի երևակայությունը առաջանալով՝ այլանդակ գծերով է ներկայացնում նաև հայ բնությունը, չորս եղանակները տակն ու վրա են եղել: Քաղաքական կացությունը դժնդակ է. թագավորները խիստ են, վերակացուները՝ անհարթարար, թշնամիները զորացած, սիրելիները՝ դավա-

ճանած, հավատը՝ վաճառված, հենք, հափշտակություն, ավար և ավեր, սով և հիվանդություն և մահ, մի խոսքով կատարյալ դժոխք, «ակնկալութիւն գեհենի», որից երկյուղ կրելով հոռետես գրիչը ավելացնում է «յորմէ պահեսցէ զմեզ Քրիստոս Աստուած» և սրանով փակում իր անլույս ճարտասանությունը:

Հետնորդները, հափշտակված այս աշխարհասասան պատկերից, չեն զլացել ավելացնել նորանոր սև գծեր: Բանասերները իրավամբ համարել են նման հավելածուները անհարազատ:

Արդ՝ բնական հարց է ծագում թե Ողբի վերջին հատվածը, որ նրա աննշան մասն է կազմում, և անհարիր է ամբողջության, հարազա՞տ է, թե եկամուտ:

Նշաններ կան թեր և դեմ:

Կասկածելի հատվածը չի պատշաճում **Ողբի** վերնագրին, որի համաձայն Ողբը պետք է վերջացած համարել Երեմիայի խոսքի մեջբերումով: Ինչ որ հետևում է, հակառակ է մեջբերումի իմաստին: Ողբերգուն խնդրում է որ նոր Երեմիան գուշակե «զյառնել հովուաց տգիտաց»: Ասել է թե դեռ չկան տգետ հովիվները, այլ ենթադրվում է, որ պետք է երևան:

Մինչդեռ հաջորդ տողերի մեջ արդեն թվում է, որ «վարդապետք տխմարք, կրօնաւորք կեղծաւորք» և իրենց նմանները արդեն հրապարակի վրա են:

Արդյոք մի ուրիշ ձեռք չէ՞ շարունակել **Ողբը**, շարելով այն աննախանձելի մարգարիտները, որ տեսանք: Նրանք խորթ են Ողբի հեղինակի աշխարհայացքին: Ողբերգականի մեջ նա որոշակի գծել է այն ինչ որ համարում է հայ ժողովրդի թերություն: Խստասրտություն, ամբարհավանություն կամ բարձրահոնություն, կամակորություն և ճշմարտությանը անհարազատ, ահա մեր ազգային պակասությունները: Եվ այս ճշմարիտ է. Խորենացին ինքը, այդ լավագույն հայորդին ունի սույն թերությունները: Ճշմարիտ է, որովհետև մեր նոր սերունդը մինչև անգամ պարծենում է այդ հատկություններով և մեծ առաքինություն համարում: Տրդատի մահվան առթիվ խոստովանում է Խորենացին, որ «ամաչում է ասել ճշմարտությունը, մանավանդ մեր ազգի անօրենությունն ու ամբարշտությունը»:

Արդյոք այսպես մտածողը ընդունա՞կ էր ստորագրել Ողբի այն կտորը, ուր հայ իրականությունը ներկացրած է մարդկային բոլոր արժանիքներից:

Դժվար է պատասխանել, որովհետև կա մի արգելառիթ պարագա: Աշակերտների նկարագիրը Ողբի մեջ, ինչպես վկայում է «Հայկազնյան բառգիրքը», առնված է նույն Գրիգոր Նազիանզացուց (տե՛ս «աստվածաբան» բառը): Այս արդեն մի մածուցիկ նյութ է, որ կապում է քննելի կտորը Ողբին և հանձնարարում է ձեռնպահ մնալ խոհեմաբար, առայժմ վճռական պատասխանից:



Ինչպես և լուծվի այս կնճիռը, մի բան մնում է հաստատուն և աներեր, որ Ողբը անկապտելի մասն է կազմում «Հայոց պատմության», լինի ամբողջությամբ, թե առանց վերջին հատվածի, որ համարելու է հռետորական եռանդի արգասիք և ոչ իրական կյանքի պատճեն (4):

## II

Ինը կետ է թվում հ. Ակինյան, ինը ապացույց երկու հեղինակների նույնության: Նրա դիտողությունները ի վիճակի են թերևս ուժ տալու Գրիգոր Խալաթյանցի կարծիքին, բայց անզոր նույնության հարցը լուծելու:

Ասել, թե երկուսն էլ միևնույն նկարագիրն ունին, որովհետև հայ երկրի զավակներ են, Սուրբ Գիրքը սերտած, գործունեության ասպարեզը Հայաստան է, նշանակում է ոչինչ չասել:

Նմանության փաստ չէ, որ երկուսն էլ Բագրատունի իշխանի հրամանով են գրել, քանի որ մեկի հովանավորը Շապուհն է, մյուսի՝ Սահակ:

Ղևոնդ, գիտենք, երեց է, բայց որ Մովսես ևս «անտարակույս» երեց է, այդ չգիտենք:

Ղևոնդ որպես թե Գողթնեցի, ինչպես և Մովսես: Թուելեաց երգերի առթիվ Խորենացին ասում է՝ «զոր պահեցին, որպէս լսեմ, մարդիկ կողմանն գինեւէտ գաւառին Գողթան»: Այստեղից հանում է հ. Ակինյան Խորենացու անձնական ծանոթությունը Գողթնի, այն ինչ «որպէս լսեմ» դարձվածը ճիշտ հակառակն է վկայում: Նույն իմաստով Պատմահայրը գործ է ածում «որպէս ասեն», «որպէս լսեմք» (Ա, 16), իսկ իր անձնական ծանոթությունը արտահայտում է որոշակի՝ «որպէս լուաք ականջօք մերովք»:

Խորենացին գիտե Մաքինեաց վանքը, բայց ի՞նչ կապ ունի Ղևոնդ նույն վանքի հետ, անհայտ է: Մաքինեաց վանքը շատ հեռու է Գողթնից, որպեսզի Գողթնեցին, և այն էլ ենթադրական, ծանոթ համարվի վանքին: Կան հատուկ անուններ, ինչպես Թորգոմ, Ճենրակուր, Հրունիք, Ամատունիք, Խրամ, Խոշակունի, որոնք պատահում են երկու հեղինակների մոտ: Հ[այր] Ակինյան ընտրել է նաև մոտ հարյուր բառ, ընդհանուր երկուսին:

Արդյո՞ք սրանք կարող են փաստ ծառայել երկուսին նույնության: Չէ՞ որ այս անունները և բառերը բացառիկ սեփականություն չեն նրանց: Բառերի խոշորագույն մասը սուրբգրենական է և հետևապես մատչելի բոլոր մատենագիրներին: Առնենք ցուցակի առաջին բառը՝ «ազգապետ», ծանոթ է Ս. Գրքից և Ագաթանգեղոսից. «ուղխ, ամբոխ, արհամարռություն, բարեկարգություն» և այլն սուրբգրենական են: Մյուսները հայտնի են Ագաթանգեղոսից, Փավստոսից, Փարպեցուց, Եվսեբիոսի «Եկեղեցական պատմությունից», երկեր, որոնց քաջածանոթ է Խորենացին: Որպես զի կարելի լինել պնդել թե մի ձեռք

է բանաքաղը և ոչ երկու, պետք է հաշվի առնել երկուսի ամբողջական բառարանը, դարձվածները, քերական մտածողությունը և ոճագիտական բնածին շնորհը:

Հ[այր] Ակինյանի բառացուցակը լրիվ չէ: Օրինակ, չէ հիշված Կորյունի վատակազմ բառը՝ «փարեացապարտ», որ ծանոթ է Ղևոնդին և Մովսեսին: Ուղիղ չէ Ղևոնդի՝ **վարչ** բառը սրբագրել **վառը** և համեմատել Մովսեսի **վառը**-ի հետ: **Վարչ** հին ձև է **զուրգ** բառին և կապ չունի **վառի** հետ:

Որքան էլ ճոխացնենք երկու հեղինակներին հավասարապես հատուկ բառերի ցանկը, կասկած չկա որ երկուսին անջատող բառագանձը անհամեմատ ավելի հարուստ է: Հեռու չգնանք, առնենք Խորենացու առաջին գլուխները. խաղացմունք, անարժանափառ, ծննդաբանել, ազգաբանել, պատկանավոր, հեշտաբար, զակատեալ, նախանձական, փոխարկել, չարած, զրուցատրութիւն, ներբողութիւն, արձանացուցանել, ածու, անսիրելութիւն, անյուսութիւն, մերազնեայ, ուշմագոյն, արդարախօսող, գործառնութիւն, սկզբնատիպ, և այլն, և այլն:

Խորենացու «խրոխտացեալ» բառը հ. Ակինյան տեսել է Ղևոնդի մոտ, բայց անտես է արել, որ նույն բառի կողքին կան՝ գեղապատշաճ, անձնեայ, քաջազանզուր, խայտակն, հաստաբազուկ, վիպական բառերը որ իզուր է որոնել Ղևոնդի մոտ:

Բառերից ավելի կարևոր է, անտարակույս, ոճը, այն արվեստը, որ կերտում է բառերից նախադասություններ: Խիստ մեծ զանազանություն կա երկուսի ոճի մեջ:

Մեր նպատակը չէ քննորոշել ոճը, այլ միայն լուսաբանել մեր միտքը: Առնենք մի օրինակ: Խորենացին գրում է՝ «զանսպառ խաղացմունս ի քեզ աստուածայնոցն շնորհաց(ն) եւ զանդուլ հոգւոյն ի վերայ քոց իմացուածոցդ զշարժմունս ծանեայ ի ձեռն գեղեցիկ խնդրոյս»:

Նման շարված խոսք է Ղևոնդին: Ածականների, բացահայտիչների և խնդիր սեռի նախադաս և հեռակաց կիրառումը հատուկ է Խորենացու գրչին և անհարազատ Ղևոնդի պարզ հայախոսության:

Թե արդարև անզգուշություն է բառերի հիման վրա նույնացնել հեղինակներին, պայծառ օրինակ է Ագաթանգեղոսի և Կորյունի փոխհարաբերության կնճիռը: Ագաթանգեղոսի բանաքաղությունը Կորյունից անվիճելի է, բայց ո՞վ կարող է պնդել, որ Ագաթանգեղոս նույն Կորյունն է:

* * *

Հ[այր] Ակինյան զտել է նաև մտքերի նմանություն երկու հեղինակների մեջ, արժանի ամենայն ուշադրության: Բայց նմանությունը նույնություն չէ: Ղևոնդ ունի. «Լաւ համարեցաք զմահ անձանց քան տեսանել զկորուստ



աշխարհիս... քաջութեամբ մեռցո՛ւք ի վերայ աշխարհիս մեր եւ ի վերայ ազգիս եւ մի տեսցեն աչք մեր կոխան ոտից լեալ պղծալից արանց զսրբարանսն մեր»:

Այս տողերը հիշեցնում են Խորենացու. «Լաւ համարէր զմեռանելն ի վերայ **հայրենեացն** քան թէ տեսանել զորդիս **օտարածնաց** կոխելով զսահմանս **հայրենեացն եւ հարազատից** արեան նորա տիրել արանց»:

Նմանության մեջ կա և մեծ տարբերություն: Խորենացին գործ է ածում **հայրենիք** բառը և հակադրում հարազատը **օտարածնին**: Խորենացին առաջինն է, որ արտասանում է հայրենիք, հայրենասեր բառերը: Այս մի հատիկ բառը, հայտարար նոր աշխարհայացքի, բավական է, որ զատենք Խորենացուն Ղևոնդից և իր բոլոր նախորդներից: Ղևոնդի տողերը բնորոշ են վանականի համար, Խորենացին քաղաքացի է և քաղաքական մտածող:

Համաձայն չենք նաև հ. Ակինյանի այն կարծիքին, որպես թե Ղևոնդ և Մովսես նույնանման վերաբերում ունին դեպի Բագրատունիները: Այստեղ ևս զանազանություն ենք տեսնում:

Հ[այր] Ակինյանի արտահայտությամբ երկուսն էլ Բագրատունիների «կապարճակիրներն» էին: Նախ խորշելի ենք համարում այս բառը: Երկու քաղաքական հոսանքները, որոնց ներկայացուցիչներն էին հնում Բագրատունի և Մամիկոնյան իշխանները, ակոսում են մեր կյանքը նույնիսկ ներկայումս: Նրանց կողմնակիցներին դրոշմել նախատական կամ վիրավորական որակումներով կարիք չկա: Ղևոնդ և մանավանդ Խորենացին գաղափարական հակառակորդներ են Մամիկոնյան մարտական տրամադրության: Քաղաքական ուղղությունները մշակվում են ոչ միայն զենքով, այլ նախ և առաջ խոսքով: Խոսքն է ծնում զենքը:

Հիմ չկա մեկուսացնելու հայ մտավորականությունը կամ չեզոքացնելու նրա նշանակությունը հին կուսակցական խնդիրներում և նվաստացնելու մինչև ծառայական աստիճան: Վարդանակերտի ճակատի նախօրեին հայ զինվորականները դիմեցին մի «սուրբ, ընտրեալ եւ լի հոգեւոր իմաստութեամբ միայնակեացի, հարցանել զորպիսութիւն գործոյն»[1]: Բագրևանդի և Արճեշի կռիվների գաղափարախոսը «ոմն Մոնազոն» էր[2]: Ուրեմն, չվիրավորենք մեր մատենագիրներին: Խորենացին, այդ արտակարգ ինքնասեր հայը, խոսում է Սահակ Բագրատունի իշխանի հետ, ամեն պարագային, ոչ որպես «կապարճակիր», այլ ինչպես ուսուցիչ տղա աշակերտի հետ:

Խորենացին համակիր չէ Մամիկոնյան քաղաքականության և կողմնակից Բագրատունյան գծի այն աստիճան, որ ուրանում է Մամիկոնյան

---

[1] Ղևոնդ, էջ 23:

[2] Անդ, էջ 141:

կտրիճների քաջագործությունները: Ղևոնդի համակրանքը ևս Բագրատունիների կողմն է, բայց տակավին Մովսիսյան ժխտական շեշտը չունի Մամիկոնյանների հանդեպ: Գրիգոր Մամիկոնյանի մասին Ղևոնդ գրում է. «Այր երկիւղած, եղբայրասէր, դարմանիչ աղքատաց կատարեալ ի հաւատս աստուածպաշտութեան, որ յաւուրս իւրոյ իշխանութեան խաղաղացոյց զաշխարհս Հայոց յամենայն հինից եւ յարձակմանց»: Խորենացին չէր ստորագրիլ նման դրվատիք որևէ Մամիկոնյանի հասցեին:

Սրմենի և Արճեշի հերոսները Մամիկոնյաններն էին: Ղևոնդ պատմում է մեզ նրանց անձնազոհ և անվեհեր հայրենասիրությունը, առնաց մոռանալու, հարկավ, արդարացնել Բագրատունի իշխաններին որ անմասն էին մնացել երկրի պաշտպանության այնպիսի մի ճգնաժամին: Երկու Աշոտներն էլ երկդիմի դիրք էին բռնել ապստամբության հանդեպ: Ղևոնդ գրի է առել անցքերը, երբ խիզախ զորականները ընկել էին կռվի դաշտում և հարկավ հետին ժամու իմաստությամբ է, որ քննադատում է ըմբոստացումը և մարգարեական աչք տալիս Բագրատունի իշխանի իրապես տարտամ և երերուն խոհեմության:

Որքան և աչառու է Ղևոնդ, և կուսակցական, բայց և այնպես պետք է խոստովանել, որ նա ատելություն չունի դեպի Մամիկոնյանները: Հ[այր] Ակինյան թվում է, թե սխալ է մեկնում պատմագրի խոսքը՝ «չար սերմանց չար արդիւնաւորութիւն»: Դավիթ Մամիկոնյան մեռավ անպատիվ մահով «ըստ անհաճոյ Աստուծոյ բարուց **ատելութեանն զոր առ ունէին միմեանս**. զի արդարեւ չար սերմանցն չար արդիւնաւորութիւն»[1]:

Չար սերմը Մամիկոնյանները չեն, այլ ատելություն է, որ կար Աշոտ Բագրատունու և Մամիկոնյան Դավթի մեջ և այդ ատելությունն է տվել, ծնել, չար արդյունավորություն:

Ղևոնդ անվանում է Գրիգոր Մամիկոնյանին **չարասեր**[2] և **բարեկրոն**[3], որովհետև իրոք վատ գործ էր կատարել, պատճառ լինելով Աշոտ իշխանի դժբախտության: Սակայն պատմագիրը արդարամիտ չէ: Աշոտի դեմ էին նաև Սմբատ Բագրատունու որդիները: Սրանց անունները չի տալիս և հիշատակում է այնպես երկդիմի ձևով, որ իր տողերի մեջ նրանք իրենց գործով ձուլվում են կարծես թե Մամիկոնյան եղբայրների հետ:

Հ[այր] Ակինյան, հետևելով Ք. Պատկանյանին, կարծում է, որ Սմբատի որդիքը նույն են, ինչ որ Գրիգոր և Դավիթ Մամիկոնյանները: Մենք արդեն առիթ ենք ունեցել խոսելու այս մասին[4]:

[1]**Ղևոնդ**, էջ 120-121:

[2] Անդ, էջ 123:

[3] Անդ, էջ 124:

[4] **Ն. Ադոնց, Բագրատունյաց փառքը, «Հայրենիք»**, 1929, մարտ, էջ 156:



Ղևոնդի բնագիրը բավականին անորոշ է և ընդունակ ծնելու թյուր ըմբռնում: «Վրաց տարեգրք»-ից գիտենք, որ Աշոտի կուրացման հեղինակներն իր եղբորորդիք էին, ամեն պարագային ոչ միայն Մամիկոնյանները: Ո՞վ են եղբորորդիք: Անտարակույս, Սմբատի որդիները: Այս տեղեկությունը հարկադրում է մեզ զատել Սմբատի որդիներին Մամիկոնյան եղբայրներից և ըստ այնմ մեկնել Ղևոնդի երկմիտ տողերը:

Ղևոնդ գրում է. «Իմացեալ **որդւոցն Սմբատայ** զպատիւն Աշոտոյ, զի մեծացաւ անձն նորա յաչս Հեշմայ... եւ փաղփաղակի հրամայէ (Մրվան) ունել **զնոսա** եւ առաքէր առ իշխանն Իսմայէլի **զԳրիգոր** եւ **զԴաւիթ**, որք էին ի տոհմէ **Մամիկոնեան»**[1]:

Կարծես թե Սմբատի որդիք նույն են, ինչ որ Գրիգոր և Դավիթ: Սակայն Սմբատ Մամիկոնյան անուն չէ. և եթե որպես բացառիկ երևույթ Սմբատը Մամիկոնյան տանից էր, ինչո՞ւ պատմագիրը չի անվանում նրան Մամիկոնյան, մինչդեռ ենթադրական որդիների՝ Գրիգորի և Դավթի մասին ասում է որոշակի «ի տոհմէ Մամիկոնեան»: Իրավունք ունինք հետևապես Սմբատին և իր որդիներին զատելու Գրիգորից և Դավթից:

Հետո պատմագիրը գրում է՝ «հրամայէր տանել զնոսա յԵմանն»[2] և ապա՝ «յայնժամ զերծեալ որդիքն Սմբատայ ի կալանաւոր պատանդէն»[3]: Ազատվածները գալիս են «ի կողմանս Վասպուրական աշխարհի», բռնություններ են գործում և հարձակվում Աշոտի վրա կամենալով նրան սպանել: Աշոտ մի կերպ փախչում է, գնում է գանգատվելու Մրվանին: Եվ այս ժամանակ ոստիկանը նշանակում է իշխանաց իշխան Գրիգոր Մամիկոնյանին Աշոտի փոխարեն: Մրվանը տեղեկանալով Աշոտից «զամբաստանութիւնն զորդւոցն Սմբատայ եւ զոր ինչ արար ընդ նա Դաւիթ եղբայր Գրիգորի», հրամայում է պատժել Դավթին:

Արդ՝ հարձակվողները Սմբատա որդիներն էին, մինչդեռ ամբաստանող Աշոտը բռնում է միայն Դավթի օձիքից: Դավիթ մենակ չէր, երբ հարձակվեց Աշոտի վրա, եթե իր հետ էր իր եղբայր Գրիգորը, և ուրեմն երկուսն են Սմբատի որդիք, ինչպե՞ս է որ ոստիկանը նշանակեց ոճրագործին իշխանաց իշխան: Եվ ի՞նչ գործ ունեին Մամիկոնյանները Վասպուրականում, որ իրենց կալվածը չէր: Գիտենք, որ այնտեղ իշխում էին, ըստ Ղևոնդի, Սմբատ, որ զոհ գնաց 705 թվի ողբերգության, և որ էր որդի Աշոտի, որ իշխանաց իշխան էր 685-689 թթ. և բնական է, որ նրա որդիները փախել մտել են Վասպուրական, իրենց հայրենի տունը:

[1]*Ղևոնդ, էջ 112:*

[2] Անդ, էջ 113:

[3] Անդ, էջ 118:

Աշոտ ամբաստանողը որդի էր Վասակի: Սմբատը այս Վասակի եղբայրն էր, ինչպես ընդունել էինք վերև հիշյալ հոդվածում: Հ[այր] Ակինյան, որ անծանոթ է մեր հոդվածին, նույն կարծիքն է հայտնում մեզնից անկախ: Ուրեմն Սմբատի որդիք և ամբաստանող Աշոտ երկու եղբարց որդիներ էին: Աշոտը խնայել է իր հորեղբորորդիներին և իրեն հասցրած զրկանքը բարդել է միմիայն Մամիկոնյան Դավթի վրա:

Իսկ թե ի՞նչ հակառակություն ունեին Սմբատի որդիք Աշոտի հետ, հասկանալի է: Սմբատ ավագ որդին էր Վասակի և իր որդիքը օրինական թեկնածուներ էին իշխանաց իշխանի գահին, որ արաբ իշխանությունը զիջել էր Վասակի որդի Աշոտին:

Շնորհիվ Աշոտի ամբաստանության, Դավիթ սպանվեց արաբական դահիճի ձեռքով: Գրիգոր իր եղբոր վրեժը լուծեց, կուրացնելով Աշոտին:

Մամիկոնյան եղբայրների թշնամությունը Աշոտի դեմ հավանորեն քաղաքական հողի վրա էր, ինչպես ցույց են տալիս վերահաս ապստամբական շարժումները: Նրանք միացել էին Սմբատի որդիներին տապալելու Աշոտին, որ ավելի քան բարեկամ էր արաբներին: Գրիգորը վաղուց էր որոճում ընդվզումի ծրագիրը: Երբ իր եղբոր ողբերգական մահից հետո գործի անցավ, կարծատես Ղևոնդը ուրիշ բան չի ուզում տեսնել նրա ձեռնարկի մեջ, քան «խոռամանկութիւն վասն հանելոյ զիշխանութիւն յԱշոտոյ»:

Գրիգոր անշուշտ իրավունք ուներ աչք ածելու իշխանաց իշխանի գահին: Գրիգոր, Դավիթ և երրորդ եղբայրը Մուշեղ ծագում էին այն Գրիգորից, որ իշխանաց իշխան էր և ընկավ խազարաց դեմ կռվելիս 685 թվին: Սրա որդիներն էին Դավթի վկայության մեջ հիշված՝ Մուշեղ և Արտավազդ Մամիկոնյանները:

Այս Մուշեղի որդիներ ենք համարում Մամիկոնյան երեք եղբայրներին, Գրիգոր, Դավիթ և Մուշեղ: Իսկ Արտավազդի զավակն է հավանորեն Հմայակ Մամիկոնյան, որի որդին Արտավազդ, առաջին ապստամբության հերոսը, ծանոթ Ղևոնդին[1]:

Գրիգոր թեև իրավունք ուներ թեկնածել իշխանական գահին, բայց այդ չէր նրան Աշոտի դեմ լարողը, այլ քաղաքական տարաձայնությունը: Պատմագիր Ղևոնդ խղճի դեմ է խոսում, երբ «խոռամանկութիւն» է որոնում նրա մեջ Աշոտին տապալելու համար: Գրիգոր այնքան խակամիտ չէր, որ կարծեր թե արաբների դեմ խռովտալով, կարելի էր նրանց աչքը մտնել և իշխանության արժանանալ: Դրա համար հարկավոր էր ոչ թե զենք շարժել, այլ երկրպագության գնալ արաբ ամիրապետին, ինչպես արավ Աշոտ:

**[1]Ղևոնդ**, էջ 138:



Այսպես ուրեմն Մամիկոնյան եղբայրները զատ անձինք են, քան Սմբատի որդիները հակառակ Հ[այր] Ակինյանի և համաձայն վրաց ավանդության: Վերջինս պատասխանատու է համարում Աշոտի դժբախտության համար իր եղբորորդիներին, իմա՛ հորեղբորորդիներին, որ են Սմբատի որդիք: Կուսակցական միակողմանիությամբ Ղևոնդ, ինչպես և ինքն Աշոտ, հանցանքը ձգել են միմիայն Դավիթ Մամիկոնյանի վրա:

Չնայելով այս բոլորին, Ղևոնդ չի ուրանում Մամիկոնյանների սխրագործությունը և նկարագրել է մեզ նրանց խիզախումները, այնպես որ ընթերցողին համակրություն է ներշնչում և ոչ ատելություն:

Մինչդեռ Խորենացին բնավին ջնջում է Մամիկոնյան հիշատակը Հայոց պատմությունից, նրանց փայլուն դրվագները վերագրելով Բագրատունի և այլ իրեն հաճելի իշխանական տների:

Այլևս մի անջրպետ է, որ արգելում է նույնացնել Ղևոնդին և Մովսեսին: Եթե պատմագիրների համակրանքը կապ ունի քաղաքական կշիռի հետ, պետք է հետևցնել, որ Բագրատունյան թաքը նվազ ծանր էր Ղևոնդի օրով, քան Խորենացու, այսինքն՝ սա ավելի մոտ է ժամանակով Բագրատունիների վերջնական հաղթանակին և ուրեմն ուշ, քան Ղևոնդ:

* * *

Հ[այր] Ակինյան երբեմն մեղանչում է Խորենացու բնագրի դեմ: Պատմահոր սրտառուչ տողերից լավագույնը առիթ է տվել նրան թյուր մեկնաբանության:

Հասցնելով իր Պատմության թելը մինչև այն կետը, ուր Հայկի զավակներն արժանանում են թագի, Խորենացին չի կարողանում զսպել իր ներքին հաճույքը: Հայրենասիրական վերասլացումով ցանկություն է հայտնում, որ ինքն էլ այն ժամանակ ծնված լիներ, և, որպեսզի այս դեպքում զրկված չմնա քրիստոնեական լույսից, ուզում է, որ Քրիստոսն էլ այն ատեն աշխարհ եկած լիներ: Եվ ապա հառաչում է. «Այլ վաղ ուրեմն փախեաւ ի մէնջ պատահումն այն, թէ արդեօք եւ վիճակ»[1]:

Հ[այր] Ակինյան կարծում է, որ այս տողերը հասկանալի կլինեն, եթե Խորենացու գրչի տակ տեսնենք Ղևոնդի սիրտը, որովհետև որպես թե միայն Ղևոնդ կարող էր գրել թե «թագաւորութեան պատահումը փախաւ, երանի թէ նաեւ արդի չարաշուք վիճակը փախչէր», հույս չունենալով, որ 360 տարի առաջ դադրած թագը պիտի վերանորոգվեր: Սխալ ըմբռնում է:

**[1]Մովսես Խորենացի**, էջ 67:

Խորենացին ափսոսում է, որ «պատահումը փախաւ», ուրեմն չպատահեց կամ չիրագործվեց ոչ թե թագավորությունը որ տեղի ունեցավ, այլ իր երկու իղձերը. ոչ ինքը այն ժամանակ ծնվելու բախտ ունեցավ և ոչ Փրկիչը այն ատեն եկավ: Այսպիսով զրկվեց արենակից հարազատ թագավորների թևի տակ ապրելու երջանկությունից, ազատ օրվան դառնություններից: Ստիպված է ապրել օտար թագավորների լծի տակ, գոնե դառնությունները չլինեին, «այս վիճակը եւս փախած լինէր»:

Խորենացու միտքը պարզ է և նրա զգայուն տողերը ոչ մի հիմ չեն տալիս ո՛չ Ղևոնդի և ո՛չ էլ ժամանակի խնդիր հարուցանելու: Պետք չկա նոր կնճիռ ավելացնելու ծերունու կնճռոտ ճակատին:

Ինչ և լինին մեր քննած դիտողությունները, սխալ կլիներ կարծել, որ նրանք են բերել h. Ակինյանին իր նորալուր տեսության: Այս դիտողություն-ները թարմատար հանգամանք են:

Գայթակղության բուն քարը պետք է որոնել այն հետաքրքրական տեղեկության մեջ, որ գտնում ենք ասորի Դիոնիսիոս Տելմահրեցու մոտ:

Այս մասին արդեն խոսել ենք ամսագրիս էջերում[1]:

IX դարու սկզբում երևան եկավ Խուռամյան պարսիկ աղանդը, որ գործում էր բույն դրած Կորդվաց լեռներում: Աղանդավորները մեծ պար-տություն կրեցին արաբներից 813-816 թվերին արաբական զորքերից, և նրանց առաջնորդը *Մանդի փախավ ապաստանելու Աշոտի որդի* Սահակի երկիրը: Սահակը նրան սպանեց, որից զայրացած աղանդավորները գրոհ տվին Սահակի դղյակի վրա և պաշարեցին: Սահակ բացակա էր: Իր կինը, կնոջ եղբայրը, որ վանական էր և մի ուրիշ վանական դիմադրեցին քաջաբար և պաշտպանեցին ամրոցը, ուր փակված էին:

Այս պատմվածքից երևում է, որ 813-816 տարիներին հայ իշխան կար Սահակ անունով, որդի Աշոտի, և սրա դղյակում ապրում էր մի վանական, որ իր կնոջ եղբայրն էր:

Արդ՝ h. Ակինյան կարծում է, որ այս Սահակ Խորենացու մեկենասն է և վանականը՝ ինքը Խորենացին: Սահակի անձը առեղծված է, որ շատ գլուխներ է հոգնեցրել: Սահակ անունը լսելիս հայ բանասերը բնականորեն միտքն է բերում Խորենացու հովանավորին: Երբ առաջին անգամ ծա-նոթացանք Դիոնիսիոսի շահեկան տեղեկության, մենք ևս հիշեցինք Խորե-նացուն և Սահակին, բայց երկար կանգ չառանք այն պարզ հիմամբ, որ Պատմահայրը անձնապես ծանոթ չէր Սահակին, մինչդեռ վանականը նրա կնոջ եղբայրն է, ուրեմն ոչ միայն քաջածանոթ, այլև ազգական: Այլև

[1]Ն. Ադոնց, Բագրատունյաց փառքը, «Հայրենիք», 1928-1929:



հնարավոր չէ հովանավորին որոնել IX դարում, եթե հովանավորյալը իրեն V դարու մարդ է համարում:

Այլապես է վարվել h. Ակինյան, որ պինդ կառչել է իր առաջին տպավորության և վճռել անորոշ շշունջից նոր երգ հյուսել: Պատմահոր նշանավոր խոսքը՝ «յառաջ քան զմարմնոյդ՝ զհոգւոյդ ընկալեալ զծանօ-թութիւն» ենթադրել է տալիս, ըստ h. Ակինյանի, որ հոգևոր ծանոթության հետևել է և՛ մարմնավորը: Չենք կարծում: Խորենացու խոսքի իմաստն է, թե քեզ չեմ ճանաչում, բայց տեսնում եմ «ի ձեռն գեղեցիկ խնդրոյս», թե որքան խոհական անձ ես:

Այս տողերը գրելիս նա ծանոթ չէր Սահակին, այլապես գեղեցիկ խոսքը կկորցներ իր գեղեցկությունը: Թե հետագայում ծանոթացած լինի, հաստատ փաստ չկա:

Սահակ, անտարակույս, Բագրատունի իշխան էր: Հ[այր] Ակինյան մի հա-ջող միտք է հայտնել, որ Սահակը որդի է ոչ թե Աշոտ Մսակերի, այլ Աշոտ Սա-հակյանի: Սրանով լուծվում է Վարդան պատմիչի բնագրի մի հանգույցը, որ հակասական իմաստ ուներ: Սակայն, ինչ- ինչ առարկություններ դեռ մնում են:

Դիոնիսիոս Սահակին կոչում է որդի Աշոտի, քիչ վերև նույն պատ-մագիրը հիշում է Աշոտ Մսակերին՝ Նանայի և Աբիկուրայի վիճաբանու-թյան առթիվ: Հավանորեն, այդ Աշոտին ունի ի նկատի որպես հայր Սահակի: Մյուս կողմից Դիոնիսիոս գիտե որ Մսակեր ուներ որդիներ. մինչդեռ h. Ակինյանի վարկածը հարկադրում է Մսակերին տալ միմիայն մի որդի՝ Սմբատ Խոստովանող: Դարձյալ, Վարդան պատմիչից[1] երևում է, որ Ջահապի օրով Տարոնը ենթակա էր Աշոտ Մսակերին և ուրեմն այնտեղ իշխում էին իր որդիները և ոչ Աշոտ Սահակյանի:

Մոռանալու չէ նաև, որ Սմբատ Մոկաց իշխեցող հավանորեն նույն Սմբատ Խոստովանողն է[2]: Ոչ միայն Տարոն, այլև հարևան Մոկաց աշ-խարհը Մսակերի որդիների ձեռքին էր: Աշոտ Սահակյանի մասին շատ բան չգիտենք: Ղևոնդ գովում է նրան իր խոհեմության, զգույշ քաղա-քականության համար, բայց արդյո՞ք այդ խոհեմություն զնահատվեց արաբների կողմից և նա ստացա՞վ իշխանաց իշխանի գահը և կամ որքան ապրեց, հայտնի չէ:

Չնայելով այս բոլորին, h. Ակինյանի ենթադրությունը շատ հավա-նական է:

[1]Վարդան, էջ 78:

[2] Թովմա Արծրունի, էջ 127, 137:

Սահակը իշխում էր, ըստ հ. Ակինյանի, Անձևացյաց երկրում: Մենք գերադասել ենք Մոկաց աշխարհը, ուր տեսնում ենք հետագայում Սմբատ Բագրատունուն: Ըստ Մարկվարտի «Սահակ իշխան էր Բեր Քարեիլուի (Բոհտան) շրջակայքը», ուստի հավանորեն և Տարոնի մեջ: **Բեր Քարեիլու** վրիպակ է, ուղղել պետք է՝ **Բեր**-Քարդու: (Միքայելի հատվածի մեջ **prierre աղոթք** բառը շփոթած է հայ թարգմանիչը **pierre քար** բառի հետ) Խորենացին բնակել է տալիս Սմբատ Բյուրատին Տմորիքում, Ալկի ավանում: Հ[այր] Ակինյանի կարծիքով, այս արձագանք է Սահակի օրով տիրող կացության: Անձևացյաց գավառի գլխավոր վայրն է Կանդուստը:

Այստեղ է, որ Սահակի պատվերով Խորենացին գրել է իր Պատմությունը IX դարի սկզբներին, 813-816 թվականներին: Սահակ որպես թե Վաղարշակի նման կամեցել է իմանալ իր բնակության անցյալը: Այդ ժամանակ հրապարակի վրա ուրիշ ավելի կարող մարդ չկար, քան Ղևոնդ, որ արդեն հռչակ էր հանել շնորհիվ իր պատմական մատյանին, գրած մի ուրիշ Բագրատունու իշխանի՝ Շապուհի հրամանով: Ղևոնդն է ուրեմն այն կտրիճ վանականը, որ իր քրոջ հետ պաշտպանել է ամրոցը: Նա է, որ գրել է «Հայոց Պատմութիւնը»:

Իսկ ինչո՞ւ է Խորենացու անունը գրքի ճակատին:

Հ[այր] Ակինյանի պատասխանը կտրուկ է ինչպես միշտ: Նա գտնում է, որ Մովսես Խորենացու անունը անհարազատ է և ամբողջ նախադասությունը՝ «Մովսէս Խորենացի յաղագս մերոյս ի սկզբան յայսմ բանիցս Սահակայ Բագրատունւոյ խնդալ», անքերականական շարադասություն է և փորձում է վերականգնել նախնական հարազատ ձևը ջնջելով Մովսեսի անունը:

Այս արդեն ենթադրություն չէ, այլ աններելի մոլորություն: Բավական է, որ թերթեր Խորենացու երկի Գ գրքի 57-րդ գլուխը, որպեսզի հրաժարվեր անտեղի կասկածամտությունից: Այնտեղ կկարդար. «Սահակ եպիսկոպոս Հայոց քաջի զօրավարի Անատոլեայ խնդալ». «ինքնակալ Թէոդոս Աւգուստոս... Մեծի Սահակայ եպիսկոպոսի Հայոց ի տէր խնդալ»:

Անտեղի է **յայսմ** ուղղել **այսր**, քանի որ **յայսմ** վերաբերում է **ի սկզբան** բառին և ոչ հաջորդ խոսքին. ի սկզբան յայսմ, նշանակում է՝ ի սկզբան աստ, ինչպես ուրիշ տեղ ասում է՝ «աստէն իսկ ի սկզբան մերոյ գործառնութեան» (Գիրք Ա, 3):

Խորագիրը կանոնավոր է և Մովսեսի անունը իր պատկանավոր տեղն է:

Ուրեմն, ինչպե՞ս բացատրել, որ Ղևոնդ, եթե իրոք Հայոց պատմության հեղինակն է, Խորենացու անունն է դրել իր աշխատության ճակատին, և ինչ որ աներևակայելի է, գրելով Սահակի պատվերով IX դարում, չի քաշվել իրեն V դարու մարդ համարել:



Հ[այր] Ակինյան կարծում է, որ Ղևոնդ չէ կեղծողը, այլ մի ուրիշ անծանոթ գրիչ, որ Ղևոնդի մահից հետո կեղծել է, խեղաթյուրել և՛ հեղինակի անունը, և՛ ժամանակը, կամենալով ավելի մեծ հեղինակություն տալ «Հայոց պատմության»: Մովսես Խորենացի անուն անձ, ըստ հ. Ակինյանի, գոյություն չի ունեցել: Կեղծողը ընտրել է Մովսես անունը որպես թե աչքի առաջ ունենալով Հնգամատյանի հեղինակ Մովսեսին. իսկ Խորենացի շինծու բառ է, կերտված «որ ընդ խորս եանց» բառերից:

Այս նշանակում է Մովսես Խորենացու դժվարաքակ հանգույցը [լուծել] Ալեքսանդրյան խիզախությամբ և ողբերգական խնդրի մեջ կատակերգական տարր մտցնել ստուգաբանական խաղերով:

Ո՛չ, Խորենացին Ղևոնդ չէ, և հ. Ակինյանի աշխատության արժեքն այդ անհաջող վարկածի մեջ չենք տեսնում:

Հ[այր] Ակինյանի ուսումնասիրությունը, թեև ձեռնարկած սխալ դրված հարցի շուրջ, չի կորցնում իր արժեքը, այլ բերում է մի կարևոր նպաստ Խորենացու և Ղևոնդի փոխհարաբերության խնդրին, պարզելով որ Խորենացին օգտվել է Ղևոնդից:

Ալևոր Պատմահոր երեսից մի խորշոմ ևս հանվում է, բայց երեսը մնում է տակավին կնճռոտ: Խորենացին ավելի ուշ է, քան Ղևոնդ, Գր. Խալաթյանցի այս թեզը լուսաբանված կարելի է համարել հ. Ակինյանի աշխատությամբ (5): Հայ բանասիրությունը կժխտի նրա հիմնական վարկածը, բայց կմնա երախտապարտ իր բերած նպաստին համար:

# ՓՈՔՐ ՍՈԿՐԱՏԻ ՀԵՂԻՆԱԿԸ

Ինչպես հայտնի է, Սոկրատի «Եկեղեցական պատմությունը» մեզ հասել է կրկնակի խմբագրությամբ՝ ընդարձակ և համառոտ, կամ ինչպես ընդունված է անվանել՝ Մեծ և Փոքր Սոկրատ: Մեծ Սոկրատը թարգմանված է հունարենից Փիլոն Տիրակացու ձեռքով 696 թվին: Իսկ ի՞նչ է Փոքր Սոկրատը:

Փոքր Սոկրատի և Մովսես Խորենացու Պատմության միջև կան անհամար առնչության կետեր, և այնքան զգալի որ մատնում են մեկի կախումը մյուսից: Նորայր [Բյուզանդացի] կամենալով պաշտպանել Պատմահոր ավանդական դարը, այն կարծիքն էր հայտնել, որ Փոքր Սոկրատը նախնյաց հին թարգմանություն է և Խորենացին օգտվել է նրանից: Այնուհետև նախնիք զգալով, որ Փոքր Սոկրատը խիստ համառոտ է, ձեռնարկել են նորեն թարգմանելու 696 թվին: Այսպես էր կարծում նաև Մխիթարյան հայտնի բանասեր, հանգուցյալ հայր Բ. Սարգիսյան: Երկու Սոկրատների փոխադարձ հարաբերության խնդիրը պետք է պարզվեր առաջ, քան կարելի էր պատասխանել դրականորեն ֆրանսիացի գիտնական Կարրիերի կողմեն հարուցած նոր կասկածներին Խորենացու ժամանակի վերաբերյալ:

Էջմիածնի միաբան Մեսրոպ վարդապետը, այժմ արքեպիսկոպոս[1], հրատարակեց երկու Սոկրատները միասին 1897 թվին և ընդարձակ առաջաբանում քննության առավ օրվան հրատապ խնդիրը, ապացուցանելով, որ Նորայր և հ. Բ. Սարգիսյան սխալ են և որ Մեծ Սոկրատն ավելի հին է, քան Փոքրը: Պարզեց մանավանդ, թե ի՞նչ պայմաններում է ծագել Փոքր Սոկրատը: Փիլոն Տիրակացու թարգմանությունը խիստ բառացի էր, ստրկական հետևություն հույն բնագրին ի վնաս հայ լեզվի ողորկության, որով և դժվար ընթեռնելի էր և շատ տեղ անհասկանալի: Ընթերցող հասարակության մատչելի անելու նպատակով հարկ են տեսել հունախոս թարգմանությունը հայացնել, վերածել ավելի կանոնավոր և ավելի

[1] Չենք կարող հիշել մեր բարեկամի անունը առանց ցավ հայտնելու այն անտեղի և անարդար ցույցերի առթիվ, որոնց զոհ դարձրին Հայ եկեղեցու պատկառելի դեմքերից մեկին, և պատճառ եղան կաշկանդելու նրա գործունեությունը մի այնպիսի ժամանակ, երբ տարագիր հայությունը այնքան պետք ունի գիտուն և փորձառու հովիվների (1):



հայկաբան խմբագրության: Եվ այս է Փոքր Սոկրատը: Հետևապես ավելի ուշ է, քան Մեծ Սոկրատը, ուշ քան 696 թիվը: Այս հ. Մեսրոպ Մագիստրոսի խոշոր լուման է հայ բանասիրության: Նրա մյուս դատողությունները Խորենացու հարցի շուրջ՝ մերը չեն և արդեն հնացած են, և մեր նպատակից էլ դուրս նրանց վերա կանգ առնել: Ինչ որ մեզ հետաքրքրում է այն հարցն է, թե ե՞րբ է խմբագրվել Փոքր Սոկրատը: Հայր Մեսրոպի կարծիքով նա խմբագրվել է «շատ չանցած» բուն թարգմանությունից, գրեթե միաժամանակ և խմբագրողը կամ համառոտողը հավանորեն ինքը Տիրակացին է եղել[1]: Վերջին ենթադրությունը ամեն պարագային անընդունելի է: Արդարև ի՞նչ կարիք կար թարգմանել բառ առ բառ և հետո նոր աշխատանք հանձն առնել թարգմանածը հայացնելու, փոխանակ սկզբից և եթ կանոնավոր լեզվով թարգմանելու: Տիրակացին անմասն է Փոքր Սոկրատից:

Մեծ և Փոքր Սոկրատի հարաբերության խնդիրը մնում է ցարդ առկախ: Բանասերները երկար և ջերմ վիճաբանությունից հետո իրենց զենքերը վայր դրին, մոռացության տալով հարցը: Եվ ինչ որ զարմանալի է, նրանցից և ոչ մեկը չէր նկատել, որ մատենագրական ստույգ տեղեկություն կա Փոքր Սոկրատի խմբագրության և՛ ժամանակի և՛ հեղինակի մասին: Մխիթար Այրիվանեցին իր Ժամանակագրության մեջ հաղորդում է 641 թվի տակ (թիվը հարկավ ճիշտ չէ, և այս չէ կարևորը)

**«Փիլոն Տիրակացի, Յակոբ Ուռհայեցի արար զնոր թարգմանութիւն»:**

Հազիվ թե բացատրության պետք կա: Ժամանակագիրը հայտնում է, որ այս ինչ թվին Փիլոն Տիրակացին թարգմանել է Սոկրատը և հիշում ի դեպ, որ Հակոբ Ուռհայեցի արել է երկրորդ թարգմանությունը, այսինքն՝ Փոքր Սոկրատը: Մնում է պարզել թե ո՞վ է Հակոբ Ուռհայեցին:

Հարցնենք Մատթեոս Ուռհայեցուն, որ պետք է ճանաչե իր քաղաքակիցներին: Արդարև նա գիտե մի Հակոբ գիտնական վարդապետ, որ կնքել է իր մահկանացուն խորին ծերության մեջ, Ուռհայում, Հայոց 534 = 1085 թվին: Նույն պատմիչն ավանդում է, որ Հակոբը, որ կոչվում էր Քարափնեցի և Սանահնեցի, մասնակցել է 1065 թվի դավանաբանական վիճաբանության, որ տեղի ունեցավ մայրաքաղաքում, [Կոստանդին X] Դուկաս (կամ Տուկիծ) կայսրի հրամանով: Հակոբը մեծ դիմադրություն ցույց տվեց հայրենի ավանդները պաշտպանելու համար, բայց «սակաւ մի վասն երկրնութեանն Քրիստոսի ի կողմն Հոռոմոց դարձաւ»[2], միաբանության գիր կազմեց և հանձնեց կայսրին: Այն պահուն սլացավ գահազուրկ Գագիկ թագավորը, պատառեց միաբանության թուղթը, պաշտպան հանդիսանալով Հայ եկեղեցու դավանության (2):

[1] Տե՛ս Առաջաբան, էջ 2ա և 3գ:

[2] **Մատթեոս Ուռհայեցի**, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 161-162:

Հակոբը աշակերտել էր Դիոսկորոս Սանահնեցուն, որ 1038 թվին կաթողիկոս ընտրվեց: Անշուշտ, աշակերտել է Սանահնի վանքում և 1038 թվականից առաջ: Ծննդյամբ Քարափնեցի, վանական կյանքով՝ Սանահնեցի, Հակոբը կոչվում է նաև Ուռհայեցի, այնտեղ իր կյանքի վերջին տարիները անցնելու պատճառով: Հավանական է, որ 1065 թվից հետո, երբ կասկածի տակ ընկավ դավանաբանական խնդրում, փոխադրվեց Ուռհա և անդ մեռավ: Մատթեոս գովում է նրա խոր գիտությունը և անվանում «այր հզօր կորովի»: Դատելով Մխիթար Այրիվանցու նրա տված Ուռհայեցի կոչումից պետք է կարծել, որ Սոկրատի համառոտումը կատարել է Ուռհայում 1065-1085 տարիների շրջանում:

Հակոբը գիտուն էր և քաջ հայկաբան, կարդացել և սերտել էր հին մատենագրությունը, ինչպես երևում է իր գործից, որ լի է հներից քաղած ոճերով և դարձվածներով և մասնավորապես շահավետած է Խորենացու բառամթերքը:

Դառնանք այժմ Մեծ Սոկրատին: Երուսաղեմի օրինակը պահել է հետևյալ հիշատակարանը, զետեղված ճառագրի առաջին թղթի վրա:

«Ցամի վեցհազարերորդի երկերորդի չորրորդի կենցաղում անցաւորի որպես ունի ժամանակագրութիւն սուրբ Սոփի աւագ եկեղեցի տիեզերական մայրաքաղաքին Կոստանդնուպաւլսի, եւ ***եւթն հարիւրերորդի չորրորդի Քրիստոսի գալստեանն*** և ի հարիւր քառասուն և ի չորս թուականին, ի յիններորդումն ընտիքտիոնին, յառաջնում ամի թագաւորութեանն երկրորդ Ղեւոնի ինքնակալի Աւգոստոսի թարգմանեաց Փիլոն Տիրակացի ***առաջին ձեռնարկութեամբ*** զգիրս զայս մասնաւոր ծայրաքաղ ի Սոկրատայ եկեղեցական պատմութենէն, թողեալ զինքնախաւսութիւնս և զբուղթս այլոց և զճառս յաղագս նուազութեան քարտի և մագաղաթի եղելոյ յաւատրութեան»:

Մեծ Սոկրատի երկու օրինակներն էլ ունին իրենց վերջը Սեղբեստրոսի վարքը, որի սկզբում կա հետևյալ հիշատակարանը:

«Յառաջ քան զութուտասն ամի թարգմանելոյ Փիլովնի զգիրսդ զայդ Սո(ս)կրատայ զեկեղեցական պատմութիւն թարգմանեալ էր Սրասուն Գրիգորի Չորափորեցւոյ թարգմանի ընդ փառաւորս յիշելոյ Ներսեհ իշխանին փեսային Կամսարականաց զգիրս պատմութեան վարուց սրբոյն Սեղբեստրոսի եպիսկոպոսի Հռովմայ և կայր ի քարտիսի: Այժմ պատշաճ համարեցաք առ զմին զրոց գրել ձեռամբ Թովմա դպրի պատրաստ լինելով մագաղաթին»:

Սոկրատի հրատարակիչ կարծում է, որ երկու հիշատակարաններն էլ պատկանում են Փիլոնի գրչին: Մենք համամիտ չենք: Փիլոնի հարազատ գրությունները չեն, այլ նրանց բովանդակությունը ամփոփած մի ուրիշ և հետին գրչով: Նշանները ակներև են:



Նախ խմբագրված են երրորդ դեմքով, որ հատուկ չէ բուն հեղինակներին:

Հետո՝ «առաջին ձեռնարկությունը» մատնում է անծանոթ գրչի ծանոթությունը երկրորդ ձեռնարկության կամ Հակոբի համառոտ խմբագրության: Եվ վերջապես Քրիստոսի գալստյան թվականը գործածական չէր ոչ միայն Փիլոնի ժամանակ, այլ և հետագա դարերում:

Երկրորդ հիշատակարանը ևս երրորդ դեմքով է խոսում: Միայն վերջին նախադասությունը թերևս մոռացմամբ պահել է առաջին դեմքը՝ «այժմ պատեհ համարեցաք»:

Այս նկատողությունները տանում են այն եզրակացության, որ Փիլոնի բուն հիշատակարանները չեն պահված, այլ հետին գրիչներից մեկը ամփոփել է նրանց բովանդակությունը, և իր կողմեն ավելացրել է Քրիստոսի գալստյան թվականը Ալեքսանդրյան տոմարով, հակառակ Փիլոնի գործածած Կոստանդնուպոլսի տոմարի: Արդարև ըստ վերջինիս աշխարհի սկզբից մինչև 696 թվականը համարվում է 6204 տարի, որ միանգամայն ստույգ է, 6204-5508 = 696: Ալեքսանդրյան տոմարը հաշվում է 5500 տարի և ո՛չ 5508, ուստի անծանոթ գրիչը Քրիստոսի գալստյան թվականը դրել է 704, որ է 6204 - 5000 = 704, առանց նկատելու, որ սա չի համաձայնում մյուս թվերին՝ իններորդ ինդիկտիոնին = 696 և Լեոնտիոս կայսրի առաջին տարվան = 696. նույն անծանոթ գրչին են պատկանում և *ընտիքտիոն* (փոխանակ ինդիկտիոն-ի և ***զութուտասն*** (փոխ զութ և տասն) ուղղագրությունը: ***Քարտ*** և ***քարտեզ*** կրկնակի ձևերը ևս չեն կարող միևնույն գրչեն ելած լինել: Պետք է խոստովանել, որ քարտի և մագաղաթի նվազության պատճառով Սոկրատի Պատմության ինչ ինչ մասերը չթարգմանելը այնքան պարզ չէ, որովհետև նախ՝ մագաղաթ գտնելուն պես, փոխանակ պակասը լրացնելու, Չորափորեցու թարգմանությունն է արտագրում, և երկրորդ՝ դժվար էր նախորոշել, թե արդյոք տրամադրելի քարտը պիտի բավեր: Հակառակ դեպքում սպասելի էր գործը վերջեն կիսատ մնար և ոչ թե զանազան հատվածները զեղչելով: Մեզ թվում է Փիլոնը կատարել է իր թարգմանությունը Կոստանդնուպոլսում: Աստղիկից գիտենք, որ Հուստինիանոս [II] կայսրը իր գահակալության չորրորդ տարին Հայաստան արշավեց, շատ իշխաններ իր հետը տարավ որպես պատանդ և նրանց թվում «զկաթողիկոսն Հայոց զՍահակ հանդերձ և եպիսկոպոսօք արգելեալ առ ինքն»[1], այսինքն՝ տարավ մայրաքաղաք: «De Rebus Armeniis» գրությունը հաստատում է, որ կայսրը կանչեց Սահակ կաթողիկոսին եպիսկոպոսների հետ

[1] Ասողիկ, էջ 101:

միասին մայրաքաղաք, ուր որ կաթողիկոսը ստորագրեց դավանաբանական միության գիրը, բայց մերժեց գիրը Հայաստան վերադառնալուց հետո: Հուստինիանոս գահ բարձրացավ 685 թ. սեպտեմբեր ամսին. չորրորդ տարին կհամապատասխանե 689 թ.: Հիշյալ հույն աղբյուրի համաձայն կայսրը կանչեց կաթողիկոսին իր թագավորության հինգերորդ տարին, ուրեմն 690 թվին: Հավանաբար կաթողիկոսը և հինգ եպիսկոպոսները հրավիրած են եղել մասնակցել Տրուլլի ժողովին 692 թվին: Ժողովի արձանագրությունից երևում է, որ Կարինի և Կեճառիճի եպիսկոպոսները ստորագրել են ժողովի որոշումները: Բայց կաթողիկոսի և այլ հայ եպիսկոպոսների ստորագրություն չկա: Թերևս «De Rebus Armeniis» չափազանցնում է նրանց թեքումը դեպի միաբանությունը: Ժողովի մի քանի որոշումները հայ սովորության դեմ, թերևս, բացատրելու է հայ եկեղեցականների ներկայությամբ:

Հավանական ենք համարում, որ Փիլոն Տիրակացին կաթողիկոսի ուղեկիցներեն մին լինի, որ մնացել է Կ. Պոլսում, հունարեն սովորել և թարգմանել Սոկրատը *«աստարութեան»:* Այս դեպքում հասկանալի կդառնա ոչ միայն *«աստարութեան»*-ը, այլ Պոլսական տոմարի և ինդիկտիոնի կիրարկությունը առաջին անգամ հայ մատենագրության մեջ:

Քարտի նվազությունը, եթե լոկ պատրվակ չէ, պետք է բացատրել նրանով, որ կաթողիկոսի վերադարձից հետո Փիլոն հնարավորություն չի ունեցել քարտ կամ մագաղաթ հայթայթել: Դպիր Թովմայի պատրաստած մագաղաթը Փիլոնի ձեռքն է հասել իր Հայաստան վերադառնալուց հետո, ուր և ընդօրինակել է Սեղբեստրոսի վարքը և կցել Սոկրատի Պատմության:

Սոկրատի հրատարակիչը մի անհասկանալի սխալ է գործել, Գրիգոր Չորափորեցու հիշատակարանի «թարգմանի» բառը փոխարինելով «հրամանավ»-ի[1]: Սխալվել է նաև կարծելով, որ Չորափորեցին թարգմանել է Սեղբեստրոսի վարքը Ներսեհ Կամսարականի հրամանով: Հիշատակարանի Ներսեհը Կամսարական չէ, այլ լոկ «փեսայ Կամսարականաց» և իշխան վրաց. և Գրիգոր Չորափորեցին նորա թարգմանն է: Այս Ներսեհը ծանոթ է այլուստ: Հովհաննես Կաթողիկոսը նրան հիշում է մուսուլման զորավար Բասարայի հետ ունեցած ընդհարումի առթիվ[2]: Իսրայել [Ա] կաթողիկոսի օրով (668-678): Ներսեհը բուն Վրաստանի իշխան չէր, այլ այն մասի որ վրացիք Սոմխեթի = Հայաստան են անվանում, իսկ հայերը՝ վրաց աշխարհ, այսինքն՝ Գուգարքն, որի մեջ մտնում էր և Չորափորը, Գրիգոր Թարգմանի ծննդավայրը: Ասել է թե Գրիգորը աշխատել է իր իշխանի համար թարգմանելով Սեղբեստրոսի վարքը, 678 թվին: Ասողիկ շփոթել է,

1 «Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական պատմութիւն...», էջ ժէ:

2 **Հովհաննես Կաթողիկոս**, հրատ. Մ. Էմինի, էջ 53:



ուշադրության վրիպումով, Չորափորեցու թարգմանության ժամանակը Փիլոնի հետ. որովհետև վերջինիս թարգմանությունը համարում է կատարված Անաստաս կաթողիկոսի օրով և սրա վեցամյա գահակալությունը դնում է (Հ. 120 թ. = ) 671, մինչև 677, այն ինչ Անաստաս աթոռի վերա էր 662-668 թվին[1]. և Փիլոն թարգմանել է Սոկրատ 678 թվին, ուրեմն Իսրայելի ժամանակ: Փոքր Սոկրատի հիշատակարանը պարունակում է մի խոշոր թյուրիմացություն, որ պետք ունի մեկնության: Հրատարակիչը փակագծի մեջ է առել հիշատակարանի մեծագույն մասը, ինչպես և վերջընթեր գլուխը՝ ճհ: Նա չէ նկատել, որ վերջընթեր գլուխն առնված է ամբողջապես «**Գիրք Կայսերաց**» գործից (էջ 60): Այնտեղից է ծագում նաև **Սոկրատ**, էջ 687, ծանոթության մեջ բերած հատվածը, որ գտնվում է Փոքր Սոկրատի օրինակներից մեկում:

Ինչ վերաբերում է հիշատակարանին, փակագծի մեջ նշանակված մեծ հատվածը ոչ այլ ինչ է եթե ոչ մի ամփոփում Մեծ Սոկրատի Զ գրքի Առաջաբանի (էջ 486-487): Ավելորդ ենք համարում դեմ առ դեմ դնել Մեծ Սոկրատի բնագիրը և Փոքրի նույն բնագրի ամփոփումը: Բավական է միայն հիշել սկզբի ու վերջի նախադասությունը:

Մեծ Սոկրատի Առաջաբան, Գիրք Զ, էջ 486.

«Բայց եղիցի մեզ մի փութալ առ պատմութիւնն, զմտաւ ածեալք որպէս զի թէ փութասցուք ***զեղեցկաբանութեան հայել, թերեւս եւ ի բաց անկանիցիմք ի դիտմանէն»***...

Առաջաբանի վերջը, Գիրք Զ, էջ 487.

1 Այս շրջանի կաթողիկոսների ժամանակն որոշելու համար, հավաստի կռվան է Գրիգոր Մամիկոնյանի մահվան տարին: Ըստ «**Կայսերաց գրքի**» Գրիգոր ընկավ Խազարաց արշավանքում Հայոց ՃԼԴ թվին, սահմի 10, այսինքն՝ 685 թ. հուլիսի 5-ին: Ասողիկը տալիս է ՃԼ որ գրչական սխալ է և հրատարակիչը կարող էր ուղղել, քանի որ նույն պատմագիրը Գրիգորի հաջորդի՝ Աշոտ պատրիկի իշխանությունը դնում է ճլե թվին: Գրիգորի մահը տեղի ունեցավ, ըստ Հովհաննես Կաթողիկոսի, Սահակ Չորափորեցու 7-րդ տարին (և ո՛չ 5-րդ, ինչպես Ասողիկի մոտ է), ուրեմն Սահակ գահակալել է 678 թվին: Իր նախորդն էր Իսրայել (ըստ ոմանց Եղիա, սխալ ընթերցման հետևանքով), որ իշխեց 10 տարի, ուրեմն 668-678: Իսկ սրանից առաջ Անաստասն էր, որի վեցամյա իշխանությունը ընկնում է 662-668: Սեբեոս իր Պատմությունը հասցրել է մինչև Մուավիայի հաղթանակը, 661 թվին, և չէ հիշում Ներսես կաթողիկոսի մահը: Հավանական է, որ մեռած լինի 662 թվի սկզբում, թողնելով աթոռը Անաստասին: Մյուս կողմից Սահակ Չորափորեցին իշխել է 25 տարի կամ 26, ինչպես հաշվում է քանիցս հիշած հույն աղբյուրը, հետևապես մինչև 703 կամ 704 թիվը:Վերջինս ավելի հավանական է և համաձայն է Ղևոնդի տեղեկության:

***«Զոր եսն տեսա(!) շարագրելով, զորս ի տեսողացն կարացի ուսանել ընտրելով զճշմարիտն, յորմէ ոչ փոխելն (զճշմարիտն յորմե ոչ փոխելն) ըստ պատմութեանն զպատմողսն զայսոսիկ: Խորհրդաբար ինչ ճշմարիտն ծանուցեալ լինեն բազմաց եւ յոլովից պատմելոց եւ որոց առընթերն գոլով անելոց գործովք, իսկ ոմանց յամենայնէ առաւել արժանաւորելոց գիտել:»***

Համեմատեցեք Փոքր Սոկրատ, էջ 688.

«Բայց *մի ոք մեզ մեղադիր լիցի* (հմմտ. Մեծ Սոկրատ Առաջաբան, գլ. Ե, էջ 399, *մի՛ մեղադրել մեզ եթէ*), եւ աղաչեսցէ թէ զպատմութիւնս սրբոց հարևանցի պատմեցի և ո՛չ գեղեցկաբանութեամբ հպեալ ի գովութիւնս... *թերեւս ի բաց անկանիցիմք ի գիտմանէն*»:

Հատվածի վերջը.

**«Զոր ես տեսի և զոր ի տեսողացն կարացի տեսանել. ընտրելով զճշմարիտն շարագրեցի, զոր ոչ փոխեալ ըստ պատմութեանցն զպատմողսն զայսոսիկ խորհրդաբար ինչ եւ ճշմարիտ ծանուցեալ լինի բազմաց եւ յոլովից պատմելոց եւ յորոց առընթեր գոլով անելոյ գործովք, իսկ ոմանց յամենայնէ առաւել արժանաւորելոցն գիտել»**[1]:

Փոքր Սոկրատի հիշատակարանից այս փոխառությունները հանելուց հետո կմնա իրեն սեփական միայն վերջին մասը, ուր խոսքը ուղղում է Ներսեհ Կամսարականին, անվանելով նորան ապիհյուպատ պատրիկ, գովաբանում է և բարեմաղթում «զի և խաղաղութիւն Քրիստոսի բնակեսցի ի

[1] Փիլոնի թարգմանությունը անհասկանալի է: Երևում է, որ հույն բնագիրը լավ չէ հասկացել և ստիպված է եղել տալ նյութական թարգմանություն: Առաջին բառը՝ **եղիցի** սխալ է հասկացված. հունարեն բառը նշանակում է՝ գիտցի՛ր: Իմաստն է.

«Գիտցիր որ մենք փույթ չունեցանք գեղեցկաբանության (և ո՛չ թե պատմության), մտածելով որ եթե ուշ դարձնեինք գեղեցկաբանության (կամ պերճախոսության) թերևս շեղվեինք մեր դիտավորութենեն»:

«Գրեցի ինչ որ տեսի (տեսա՛, գրչի սխալ չէ, ինչպես կարելի էր կարծել, այդպես էր թարգմանել հեղինակը հունարեն բառը, որ ձևով կրավորական է, բայց իմաստով ներգործական). և ինչ որ կարողացա իմանալ ականատեսներից, ընտրելով ճշմարիտն փոխանակ հետևելու միևնույն բանը զանազանակերպ ավանդողների պատմությանց: Հոգածությամբ (և ո՛չ խորհրդաբար) վեր հանեցի ճշմարտությունը, որովհետև բազումք էին որ պատմում էին այլևայլ ձևով, որոնցից ոմանք ասում են, որ ականատես են եղել իրողությանց, իսկ ուրիշները՝ ամենեն արժանահավատ են»:

Ներելի է որ Հակոբ Ուռհայեցին չի կարողացել հաղթահարել թարգմանության դժվարությունը և ըմբռնել իմաստը:



քեզ առատապէս և ***յեկեղեցիս քո*** և ***յաշխարհի***. զի որոց ***ցանկացար պատմութեանս թարգմանել***, ընդ նոյն ճանապարհ թագաւորաց գնացես» (էջ 689-690):

Փոքր Սոկրատի խմբագիրը նույն սխալն է գործել ինչ որ իր նոր հրատարակիչը՝ Մեսրոպ վարդապետը, և հավանորեն խմբագիրն է, որ մոլորեցրել է հրատարակչին: Սակայն անտարակույս է, որ խմբագիրը անուշադիր է եղել և Կամսարականների փեսային ընդունել է որպես Կամսարական, իրենից ավելցրել ապիհյուպատ պատրիկ տիտղոսը: Թյուրիմացությունը բացատրելու է դրանով, որ Ներսեհը, հայ թարգմանի միջոցով հայ թարգմանություններ պատվիրելուն համար, կարծվել է, որ Ներսեհը Կամսարական տոհմից է: Գուգարքի իշխանը հայտնի չէ, թե ի՞նչ ծագում ունե: Եթե վրացի էր արյունով, թերևս հայերեն ևս գիտեր, ուշադրության արժանի է նաև հիշատակարանի խոսքերը՝ «յեկեղեցիս քո եւ յաշխարհի», որից հետևում է, որ հեղինակը հեռու էր ապրում Ներսեհի իշխանության սահմաններից: Այս պատշաճում է միանգամայն Հակոբ Ուռհայեցուն:

Ներսեհը ներկայանում է որպես «ցանկացող պատմութեանս», որով հասկացվում է ոչ միայն Սեղբեստրոսի վարքը, այլ և Սոկրատի Պատմությունը: Հիշատակարանի հեղինակը, Հակոբ Ուռհայեցին, չի հիշում ո՛չ Գրիգոր Ջորափորեցու և ո՛չ Փիլոնի անունները, և կարծում է, որ երկուսն էլ կատարել են իրենց աշխատանքը միևնույն անձի՝ Ներսեհ Կամսարականի պատվերով: Նա գիտեր Ասողիկից, որ Գրիգոր Արշարունյաց եպիսկոպոսը գրել է «Ընթերցվածոց մեկնությունը» Ներսեհ Կամսարականի հրամանով: Երևում է, որ Գրիգոր Արշարունյաց եպիսկոպոսին և Գրիգոր Ջորափորեցուն նույն անձն է համարել, ուստի և նույնացրել է նմանապես նրանց տերերին՝ Ներսեհ վրաց իշխանին և Ներսեհ Կամսարականին: Ամեն պարագային Ներսեհ Կամսարականը չէր կարող պատվիրել Փիլոնի գործը, քանի որ 696 թվին նա արդեն մեռած էր և երկրի պետը Սմբատ Բագրատունին էր: Մեսրոպ վարդապետի կարծիքով ևս երկու Գրիգորները նույն անձն են:

Այսպիսով Մեծ և Փոքր Սոկրատների փոխադարձ հարաբերությունները պարզված կարելի է համարել:

Մեծը թարգմանված է Կ. Պոլսում 696 թվին Փիլոնի ձեռքով, Փոքրը խմբագրված է Մեծից Հակոբ Ուռհայեցու աշխատությամբ XII դարում (3):

# ՔՆՆՈՒԹՅՈՒՆ ՄՈՎՍԵՍ ԿԱՂԱՆԿԱՏՎԱՑՈՒ

## [«ԱՂՈՒԱՆԻՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ» ԵՐԿՐՈՐԴ ԳԻՐՔԸ]

## Ա

*Վենետիկի [մխիթարյան] բանասեր հայր Վ. Հացունի* **«Բազմավեպ»**-*ի վերջին թվի մեջ հայտարարեց աշխարհին հավակնոտ հոդվածով, որ* **«Կաղանկատվացին կայրեր է դարում»**[1]*: Հոդվածն ու հայտարարությունն ուղղված է մեր նամակի դեմ, որ գրած էինք պ. Ա. Չոպանյանի խնդրով «Անահիտ»-ի մեջ և ուր ամփոփել էինք քանի մը էջի մեջ մեր կարծիքը Կաղանկատվացու գործի մասին*[2]*:*

Հայր Վ. Հացունի դառնացած է, որ համամիտ չենք իրեն և բարեկամի վայել ազատությամբ հեգնում է և՛ մեր տեսակետը և՛ մեր տկար գիտությունը: Հեգնում է նաև, որ քննադատել ենք իրեն առանց ծանոթ լինելու իր հայացքին, առանց կարդալու իր հոդվածը: Սակայն պատվական հայրը, երևում է մոռացել էր, որ ինքն էր ղրկել անցյալ տարի իր գրքույկը՝ «Մովսես Խորենացին կը դառնա ի հինգերորդ դար»[3] *և խնդրել էր հայտնել կարծիքս այս աշխատության մասին: Դժբախտաբար, ուշադրության արժանի բան չգտանք, տեսանք միայն թեթև վերաբերում Խորենացու հարցին և անկատար ծանոթություն Կաղանկատվացու գործին: Լռությունից զուրկ գտանք այն կարծիքը, թե Կաղանկատվացին գրել է իր գործը Ջևանշեր իշխանի հրամանով 668 թվականին: Կաղանկատվացու առաջին հրատարակիչը՝ Կ. վարդապետ Շահնազարյանց կարծում է, որ Աղվանից պատմիչը ապրում էր Վիրո կաթողիկոսի և Ջևանշեր իշխանի ժամանակ*[4]*: Հայր Գ. Զարպհանալյան ընդունել է այս կարծիքը և Կաղանկատվացու գործ համարել միմիայն առաջին և երկրորդ գրքերը, թողնելով Անանուն կամ համանուն շարունակողին երրորդ գիրքը*[5]*:*

---

[1] Տե՛ս «Բազմավեպ», 1938, էջ 268-277:

[2] Ն. Ադոնց, Խորենացիական հարցն ու հայր Վ. Հացունի, տե՛ս «Անահիտ», ամսագիր, Փարիզ, 1938, № 1-3, էջ 85-87 (1):

[3] Հայր Վ. Հացունի, Մովսես Խորենացին կը դառնա ի հինգերորդ դար, Վենետիկ, 1935:

[4] «Պատմութիւն Աղվանից, արարեալ Մովսիսի Կաղանկայտուացւոյ», ի լոյս ընծայեաց հանդերձ ծանօթութեամբք Կ. Վ. Շահնազարեան, հատ. Ա, Փարիզ, 1860, էջ 83:

[5] Գ. Զարպհանալյան, Պատմություն հայ հին դպրության (Դ-ԺԳ դար), Վենետիկ, 1932, էջ 443:



Հայր Վ. Հացունի կուզե սրբագրել վերջին կարծիքը և Կաղանկատվացուն վերագրել ո՛չ թե առաջին երկու գրքերը, այլ միմիայն առաջին գիրքը և երկրորդի մի մասը, մինչև ԻԸ գլուխը: Կ. *վարդապետ Շահնազարյանց Կաղանկատվացու գործ էր համարում գեթ մինչև ԼԲ գլուխը, առանց որոշելու, թե հաջորդ գլուխները ո՞ւմ են պատկանում, Կաղանկատվացուն, թե շարունակողին: Հայր Գ. Զարպհանալյան ավելի հիմ ունի գոնե ձևականորեն Կաղանկատվացուն տալու երկրորդ գիրքն ամբողջովին, իսկ շարունակողին՝ երրորդը:*

Հայր Վ. Հացունու կարծիքը ոչ միայն նորության թարմություն չունի, այլև զուրկ է իր նախորդների խոհեմությունից և, տարրական սրբագրությունից հետո, կհանգե Գ. Զարպհանալյանի տեսության: Այս իմաստով էլ, առանց մանրամասնության մեջ մտնելու, մեր հիշյալ նամակի մեջ կրկնել էինք, որ հայր Վ. *Հացունի կրկնում է Գ. Զարպհանալյանի կարծիքը:*

Մեր նամակից Վենետիկի բանասերը, թերևս զգացել է, որ ոչ թե անծանոթ ենք իր տեսակետին, այլ հայտնապես արժեք չենք տված: Ուստի պետք է տեսնել նորեն «մխրճվելու» Կաղանկատվացու Պատմության մեջ և այս անգամ մի ուրիշ և ավելի զարմանալի գյուտ արել, որպես թե մեր պատմագիրը, ո՛ր հորինած պիտի լիներ իր աշխատությունը Ջևանշերի հրամանով, սկսել է գրել տակավին 628 թվին, երբ Ջևանշեր, նկատենք անցողակի, դեռ հրապարակի վրա չէր, և վերջացրել 668 թվին: Այս մեր հասկացողությունից դուրս է և տողերիս նպատակն է ցրել այս մոլորությունը, ներկայացնելով Աղվանից հեղինակին պատմական և գրական լույսի մեջ:

Նախքան այս, քանի մի խոսք Խորենացու հարցի մասին: Հայր Վ. Հացունու հետաքրքրության բուն նյութը Կաղանկատվացին չէ իսկապես, այլ Խորենացին: Նա կարծում է, որ Կաղանկատվացու մոտ մի զենք է գտել ի նպաստ Խորենացու հնության և այդ զենքն արժեցնելու համար ուխտել է վարկաբեկել այն փաստերը, որ դիզված են Խորենացու դեմ: Ծանր հանձնառություն է: Խորենացու քննադատությունը, մեր կարծիքով, հայագիտության փայլուն հաղթանակներից մեկն է և պատիվ է բերում հայ բանասիրական քնին մտքին: Այս իսկ պատճառով թերահավատ ենք այնպիսի հավակնոտ գրություններին, որպեսին է «Մովսես Խորենացին կը դառնա ի հինգերորդ դար»: Իսկ կարդալուց հետո, խոստովանենք, չեն կարող թաքցնել այն ճնշող տպավորությունը, որ թողնում են վայրիվերո դատողությունները: Ահա քանի մի օրինակ:

*Հայտնի է, որ մեր Պատմահայրը Արամի գործն է համարում Առաջին, Երկրորդ,* Երրորդ և Չորրորդ Հայքերի բաժանումը: Մինչդեռ գիտենք, որ Երրորդ և Չորրորդ Հայք ստեղծված են Հուստինիանոս [I-ի] օրով՝ 536 թվին: Հետևապես Պատմահայրը ուշ է, քան 536 թիվը, և բավականին ուշ, որովհետև

*Խորենացին բառացի ընդօրինակել է Սեղբեստրոսի վարքից: Կասկածից դուրս է: Սակայն հայր Հացունին նկատել է միայն մի քանի բառերի տարբերությունը. «Սեղբեստրոսի վարուց կտորին մեջ Մովսես կգրե* զերազանցեալ, *և թարգմանիչը*՝ քաջեվայելչացեալ. լաւակամ՝ *ու* քաջիակամ, պայծառ՝ *ու* տրամապայծառացեալ *և այլն*[1], *ուր ակներև է, թե երկուքեն ոչ մին հետևող է միւսին. իսկ ավելի հասարակ և ամենուն ծանոթ բառերու մեջ իրարու վրա ազդեցություն փնտռել անտեղի է»*[2]:

*Հայր Վ. Հացունին անարդար է. անտեղին իր դատողությունն է: Բանաքաղությունը փաստ է և ուրանալ փաստը նշանակում է կուրանալ և կուրությամբ չէ, որ պիտի լուծվին բանասիրական կնճիռներ:*

Ուրիշ փոխառություններ ևս ունի Խորենացին նույն Սեղբեստրոսի վարքից: Կոստանդիանոս [Մեծի] վերաբերյալ առասպելական տեղեկությունները այստեղից են քաղված:

Խորենացին օգտվել է նաև Սոկրատի «Եկեղեցական պատմության» հայերեն թարգմանությունից, որ կատարված է 696 թվին: Վրաց առաքելուհու Նունեի պատմությունն այնտեղից է առել մեր Պատմահայրը և ինքն է մոռացությունից հանել հին ավանդությունը և պատվաստել հայ գրականության, որտեղից անցել է և վրաց: Մինչև Խորենացին, հայ և վրացի մատենագրությանը անծանոթ էր Նունեի առաքելությունը: Հետևությունը պարզ է. Խորենացին հետ է, քան ոչ միայն 678, այլև 696 թիվը:

Մի ուրիշ պարագա: Խորենացու մեջ աչքի է զարկում նրա թշնամական դիրքը Մամիկոնյանների հանդեպ և ընդհակառակը՝ արտակարգորեն բարյացակամ է Բագրատունիներին: Հայր Վ. *Հացունին խոժոռում է նաև այս դիտողության դեմ, պնդելով, որ Խորենացու մոտ «կան Մամիկոնյանց երկու խումբ. մին՝ սևերու, ինչպես Գնելա դավաճան Վարդանն և ուրացող հայրենադավ Վահանը, զորս Փավստոսեն առավ նույն գունով և մյուսը՝ լավերու, որոց պատշաճ բաժինը տված է, փայլուն ծագում և մեծ դեր մը անոնց Մամգոն նախահոր, քաջություններ Մուշեղա և Սամուելի, Ս. Սահակա խնդրանոք սպարապետության պատիվն Համազասպա, և ստրատելատության՝ անոր որդվոյն Վարդանա, և քաջեզութ պաշտոն մը վերջնույս կնոջ Դստրկան Ս. Սահակա հուղարկման մեջ: Ավելի փառումն առ Բագրատու-*

---

[1] Չորրորդ օրինակը՝ համբերող և համբերողական՝ զեղչելու է, որովհետև Խորենացու քննական հրատարակության մեջ՝ համբերողական է: Իսկ «և այլն» միանգամայն անտեղի է գեթ հատվածին նկատմամբ, ուրիշ տարբերություն չլինելու պատճառավ:

[2] Հայր Վ. Հացունի, էջ 30:



*նիս՝ յուր մեկենաս Սահակա ընտանյաց՝ այո՛, բայց ո՞ւր է հող թշնամությունը Մամիկոնյանց դեմ»*[1]:

Կարծում ենք, որ թշնամություն կա և կա այնտեղ ուր պատվական հայրը չի տեսել, և չի՛ տեսել, որովհետև հարցը մոտեն չէ սերտած:

Մամիկոնյան տոհմը կոչվում է Փավստոսի մոտ «Տուն սպարապետութեան»: Ժառանգաբար սպարապետներ են՝ Արտավան և Արտավազդ (Ագաթանգեղոսի մոտ), Վաչե, Արտավազդ, Վասակ, Մուշեղ, Մանուել (Փավստոսի մոտ): Խորենացին զլացել է խոստովանել նրանց այդ մեծ պատիվը: Ավելին կա. հանել է նրանց իրենց բարձր աթոռներից և փոխարեն նըստեցրել Բագրատունիներին: Փավստոսի փայլուն աստղերը՝ Վասակ և Մուշեղ, բոլորովին զրկվել են իրենց լույսից. Վասակ սպարապետ չէ, և ոչ Մուշեղ: Վասակ հասարակ «զինակիր» Արշակ թագավորի (Գ, գլ. ԻԵ). «զինակիր» է նաև նրա ավագ եղբայրը՝ Վարդան (Գ, գլ. ԻԲ). իսկ Մուշեղ այդ էլ չէ, այլ հիշվում է որպես «որդի Վասակայ Մամիկոնենի» (Գ, գլ. ԼԷ):

*Սատ Մամիկոնյաններ, և ոչ հասարակ, մնացել են անհիշատակ, ինչպես Արտավան, Արտավազդ և Վաչե սպարապետներ Տրդատի ժամանակ: Արտավանի տեղ երևան է գալիս Արտավազդ Մանդակունի, Վաչեի տեղ՝ Բագարատ Բագրատունի: Տրդատի մահից հետո, որպես թե նրա որդին և հաջորդը Խոսրով նշանակել է մեկի փոխարեն չորս սպարապետ և «առաջին՝ Բագարատ ասպետ»: Մինչդեռ Փավստոսից հայտնի է, որ Խոսրովի սպարապետն էր Վաչե Մամիկոնյան, նա՝ որ հետ մղեց մազքթաց Սանեսան թագավորի արշավանքը: Խորենացին ջնջել է Վաչեին և նրա դերը տվել է Բագարատին, որը, ըստ Փավստոսի, Վաչեի «զինակիցներից» մեկն էր միայն*[2]:

Վասակ զիջել է իր տեղը երկու ուրիշ սպարապետների, Վահան Ամատունի և Վաղինակ Սյունի (Գ, գլ. ԺԸ): Մուշեղը չէ Պապ թագավորի սպարապետը, այլ Սմբատ Բագրատունին, որին և վիճակվում է Չիրավի կռվի հաղթության փառքը (Գ, գլ. ԼԷ): Փավստոսի վերջին հերոսը՝ Մանուել Մամիկոնյան անհետացած է և նրա տեղը գրավել է Սմբատ Բագրատունի: Դավաճան Մեհրուժանի խարանողը Մանուելն էր, բայց Խորենացին դեպքը տեղափոխել է Արշակի ժամանակ և վերագրել Սմբատ Բագրատունուն (Գ, գլ. ԼԷ): Փավստոսից գիտենք, որ Արշակ և Վաղարշակ թագավորները ամուսնացան, առաջինը առավ Մանուելի աղջիկը, իսկ Վաղարշակ՝ Բագրատունի ասպետի: Պատմահայրը զրկել է Մանուել Մամիկոնյանին և այս փոքրիկ պատվից և Արշակին կնության է տալիս Սյունյաց իշխան Բաբիկի դուստրը (Գ, գլ. ԽԱ):

---

[1] Հայր Վ. Հացունի, էջ 31:

[2] «Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց», Վենետիկ, 1832, էջ 17:

Մամիկոնյան հերոսների փավստոսյան հոյակապ պատկերները հյուծվել չքացել են Խորենացու գրչի տակ, թողնելով վտիտ, հազիվ նշմարելի ստվերներ: Ոչ մի ակնարկ Վասակ սպարապետի հաղթական զենքի մասին: Նա մի չնչին արարած է, որ գժտվեց իր եղբոր Վարդանի հետ «վասն աղջկան միոջ հարճի», «և ոչ հեղգացաւ» սպանել նրան «թէպէտ և եղբայր նորա էր» (Գ, գլ. ԻԵ):

Վարդան ևս մաքուր անձ չէ, Տիրիթի «սիրեցեալն» է, քսու և նենգ, որ գրգռեց Արշակին ընդդեմ Գնելի և հրաման ստացավ սպանել նրան: Տիրիթի հետ Վարդան դավաճանեց Արշակին և փախավ Շապուհ պարսից արքայի մոտ: Արշակի հրամանով երկուսն էլ ընկան նույն Վասակի սրից (Գ, գլ. ԻԳ-ԻԵ):

Մուշեղ, Պապի հռչակավոր սպարապետը, ևս անտեսված է Պատմահոր կողմից ու մի անգամ միայն և այն էլ անցողակի, հիշվում է, որ «Ռոնայր Աղուանից արքայ, խոցոտեալ ի Մուշեղայ որդւոյ Վասակայ Մամիկոնենի» (Գ, գլ. ԼԷ): Դյուցազնի անթիվ քաջագործություններից, այնքան ահավոր և հաղթական կռիվներից միմիայն մի չնչին դեպք, մի ո՛չ մահացու հարված է հիշված: Իսկ ուրացող Վահան, որ արժանի էր մոռացության, Պատմահայրը, իհարկե, անհիշատակ չի թողել: Գեթ խնայեր նրա որդուն Սամուելին, որ հայրասպան լինելով մաքրեց Մամիկոնյան անունը դավաճանության արատից: Խորենացին հաստատ է իր հակամամիկոնյան տրամադրության մեջ և անշեղ: Սամուել ապիկար զորավար է. Արշակ թագավորի գանձերը գողացել էին մի քանի իշխաններ և փախչում էին Խոսրով թագավորի մոտ: Սամուել, Արշակի մտերիմ, հրաման ստացավ հետապնդել գողերին: Սամուել չհաջողեց: Նրա դեմ ելավ Սահակ Բագրատունի, Խոսրով թագավորի սպարապետը, և փրկեց փախստականներին, տանելով նրանց Խոսրովի մոտ (Գ, գլ. ԻԵ):

Պատմահոր բեղուն միտքը հերյուրել է այս միջադեպը Սամուելին վարկաբեկելու նպատակով: Սամուել վերջացնում է իր կյանքն անարգ մատնությամբ, և փախչում կայսեր մոտ (Գ, գլ. ԽԸ):

Մամիկոնյանների նախահոր Մամգոնի դեմքի վրա ևս նկատվում է Խորենացու անձնական կնիքը: Փավստոսի մոտ, Մամիկոնյանց «նախնիք լեալ էին թագաւորք աշխարհին Ճենաց», Խորենացին նրանց դարձնում է Ճենաց թագավորի «դայեկորդիք»: Մամգոն փախչում է իր «չարախօս» եղբոր Բղդոխի երեսից պարսից Շապուհի մոտ: Սա չի ուզում նրան պահել իր մոտ, այլ ուղարկում է Տրդատին: Մամգոն «յոչ կամաց եկեալ յաշխարհս մեր», ապրեց մի տարի «փոփոխելով տեղի ի տեղւոջէ զրովանդակ ամս»: Վերջը նենգորեն սպանեց Սլկունյաց Սղուկ իշխանին և տիրացավ Տարոնին (Բ, գլ. ՁԱ և ՁԴ):

Առաջին անգամ Ս. Սահակի օրով է և նրա շնորհիվ, որ մի Մամիկոնյան արժանացավ սպարապետության կոչման, և այս անձը Համազասպն է, Ս. Սահակի փեսան: Բագրատունի «քաջ սպարապետ» Սահակի մահից հետո Ս. Սահակ աղաչեց Խոսրովին, հետո Վռամշապուհին՝ նշանակել Սահակի տեղ Համազասպին: Խնդիրն հասավ մինչև պարսից դուռը և այդքան դժվարությամբ Համազասպ դարձավ սպարապետ, ուրեմն շնորհիվ Ս. Սահակի միջնորդության և ոչ իր անձնական արժանիքի (Գ, գլ. ԾԱ): Մեր Պատմահայրը շատ վերապահ է, անգամ Համազասպի որդի՝ Վարդանի նկատմամբ:

Կորյունի մոտ Վարդան ուսումնասեր է[1], *Խորենացին լուռ է այդ մասին: Վարդան ուղեկցեց Մեսրոպին կայսեր մայրաքաղաքը, ուր ստացավ ստրատելատի պատիվ, հետո ուղեկցեց Սմբատ ասպետին պարսից արքունիքը (Գ, գլ. ԾԷ-ԾԸ):*

Այսպիսով, Խորենացու աչքում Մամիկոնյան տոհմը նորեկ է, գոյություն ունի հազիվ Տրդատի օրերից, և մեծ տեղ չունի Հայոց պատմության մեջ: Բագրատունի տունը ևս եկվոր է, ճիշտ է, բայց շատ հնուց է, Հայկազանց շրջանից, և ծագում է ընտրյալ ազգից: Պատմահոր սիրելի է ուրանալ Մամիկոնյան վաստակները, քարշել վայր Մամիկոնյան կտրիճներին իրենց պատվավոր դիրքերից և բարձրացնել Բագրատունիներին իրենց նվաստությունից: Պատճառը Սահակ ասպետի հովանավորությունը չէ, որին հաճելի տուրք տալ ուզենար երախտագետ գրիչը: Խորենացու տրամադրությունն անձնական հաշիվների շունչ չէ, նա մի նշանաքան է գաղափարական: Երկու նշանավոր տոհմերի, հայ պատմության երկու անիվների, հակադրությունը մեկի նվաստացումով, մյուսի փառաբանությամբ, արտահայտում է «Հայոց պատմության» գաղափարախոսությունը և սա հեղինակի անհատական զգացումը չէ միայն, այլ արտացոլում է այն մտայնությունը, որ ընդհանուր էր և տիրական իր դարում՝ ժամանակակից պատասխանատու շրջանների մեջ: Ինչպես ասել ենք ուրիշ անգամ, կրկնում ենք այժմ, որ մեր Պատմահայրը, բարձր մտավորական, դրոշակակիր է Բագրատունյաց քաղաքականության և անհամակիր Մամիկոնյան արկածախնդիր և ըմբոստ ոգուն:

Այս հանգամանքն ինքնին պատմական մի լույս է, որ առաջնորդում է մեզ դեպի Պատմահոր դարը: Այդպիսի համակրանքով և հակակրանքով նա չէր կարող նստել Փավստոսի, Ղազար Փարպեցու և Սեբեոսի կողքին: Չորրորդից մինչև յոթներորդ դարը Հայոց պատմության մեջ թառած են Մամիկոնյան սպարապետներ, անվիճելի և անմրցելի տնօրեններ երկրի բախտին: Միայն յոթներորդ դարու սկզբից է, որ շնորհիվ Սմբատ Վրկանի, Բագրատունի խոհեմ դեմքերը առաջանում են նոր ուժերով դեպի առաջին դիր-

[1] Կորյուն, Վարք Մաշթոցի, Երուսաղեմ, 1930, էջ 27:

քերը և հաջորդ դարում արդեն վտանգավոր մրցորդներ են Մամիկոնյան մե-նատերերին: Ութերորդ դարի ապստամբական շարժումները վերջացան 775 թվի պարտությամբ և Մամիկոնյան դարավոր վարկը թարշամեց ընդմիշտ: Երկիրը հանեց ծանր դրությունից Աշոտ Մսակեր և հիմք դրեց Բագրատունիների իսկական մեծության:

Տեսանք, որ բանասիրական քննությունները հանգեցին այն կետին, որ Խորենացու գործն ուշ է, քան 696 թիվը: Այդ գործի գաղափարախոսություն̈ը հաստատում է այդ կետը և գծում նրա վերջին եզրը մերձավորապես ութերորդ և իններորդ դարերի սահմանագլխին: Պատմահոր բացասական վերաբերումը Մամիկոնյան անցյալին կգտնե իր բնական բացատրությունը, եթե ենթադրենք, որ նա շարժել է իր գրիչը 775 թվի աղետների, Մամիկոնյան այդ վերջին խելացնոր խոյանքի, ազդեցության տակ:

Ամեն պարագային՝ վիճելին 696 թիվը չէ, որ անդրդվելի է: Վեճը վերջին եզրի շուրջն է. մենք կարծում ենք Գ. Խալաթյանցի և հ. Ն. Ակինյանի հետ[1] *որ այդ եզրը ուշ է, քան 775 թ. և առաջ, քան Մսակերի մահը՝ 826 թ.: Հ. Մանանդյան և Յո. Մարկվարտ առաջանում են մինչև իններորդ դարի երկրորդ կեսը:*

Հայր Վ. Հացունի վազում է դեպի V դար: Այդ իր գործն է: Բայց աններելի է նրա արհամարհոտ դիտողությունը մի շարք բանասերների հասցեին՝ Ա. Գուտշմիդ, Գ. Տեր-Մկրտչյան, Մ. Տեր-Մովսիսյան, Ա. Կարիեր, Պ. Վետտեր (Ֆետտեր), Հ. Գելցեր, Մ. Վ. Լա Կրոզ, Գ. Խալաթյանց, Ն. Ադոնց, հ. Ն. Ակինյան, Յո. Մարկվարտ և Հ. Մանանդյան: Այդ բարգավաճ ու քննադատ մտքերը, գիտուն հայր Հացունու կարծիքով «կրնային ավելի օգտակար խնդրոց նվիրել իրենց ժամանակն ու կարողությունը», և «ոչ թե քաշքշել դարե դար ո՛չ Պատմահայրը, այլ անոր ուրվականը, մինչ նա պիտի ժպտի անոնց, կանգնած յուր պատվանդանին վրա՝ ուր զետեղեցին զայն յուր գործն ու դարերը»[2]:

Ախորժակ չունինք խրատներ տալու, մանավանդ ամբարտավան խրատներ: Ինչ վերաբերում է Խորենացու պատվանդանին, կարծում ենք, որ այդ պատվանդանը V դարում ոչինչ արժեք չունի, բայց կանգնած Աշոտ Մսակերի կողքին՝ ստանում է իսկական արժանի փայլ. այդտեղ **«Հայոց պատմությունը»** *դառնում է հայ մտքի, քաղաքական մտքի և երազների մի կոթող, մի սրբազան գիրք, որ նվիրագործում է Բագրատունիների նորածիլ*

[1] Տե՛ս հայր Ն. Ակինյանի գործի մեր քննությունը՝ «Ղևոնդ և Խորենացի. քննություն հայր Ն. Ակինյանի տեսության»՝ «Հայրենիք», ամսագիր, 1933, № 8, էջ 79-90; № 9, էջ 120-126 (3):

[2] Հայր Վ. Հացունի, էջ 77-78:



*քաղաքականությունը, բարձրացնում է նրանց հեղինակությունը և ապահովում նրանց հաջողությունը: Եթե գաղափարը երբևիցէ գործ է ստեղծում,* **«Հայոց պատմությունն»** *այն գաղափարն է, որ ստեղծեց Բագրատունյաց թագավորությունը և Պատմահայրը՝ այդ թագավորության քաղաքական հիմնադիրը, ավետավոր Առաքյալն է (4):*

## Բ

Սխալը ծնում է սխալ: Հենվելով Խորենացու մասին ունեցած թյուր գաղափարին, հայր Հացունի չէր կարող ճշմարիտ արդյունքի հասնել Կաղանկատվացու խնդրում: Եվ իհարկե, իր նոր գյուտը մի նոր մոլորություն է:

Վենետիկի բանասերը կարդացել է Կաղանկատվացու Ա գիրքը և գտել է, որ նյութերը դասավորված են կարգով, «հատուկ ծրագիրով»: Անցել է Բ գրքին, կարդացել մինչև Թ գլուխը. կարգն այնքան հետևողական չէ գտել, բայց փույթ չէ: Կարևորն այն է, որ Թ գլխի մեջ հեղինակը խոստանում է նկարագրել մի տագնապալից շրջան և այն նկարագրում է հաջորդ Թ-ԺԵ գլուխներում: Տագնապը վերջացել է Վիրո կաթողիկոսի շնորհիվ 628 թվին: Արդ, մեր ուշիմ բանասերը՝ Թ գլուխն այնպես է հասկացել, որ հեղինակը ժամանակակից և ականատես է նկարագրված տագնապին և այս հեղինակն ինքն՝ Կաղանկատվացին է, որ գրել է 628 թվին իր գործին առաջին մասը՝ սկզբից մինչև Բ գրքի ԺԱ գլուխը: Ահա առաջին գյուտը:

Հայր Հացունին նորեն ձեռքն է առել Կաղանկատվացին և շարունակել ընթերցումը մինչև նույն երկրորդ գրքի ԻԸ գլուխը և տեսել է, որ հեղինակը գրել է այս մասը, որ է Ջևանշեր իշխանի պատմությունը, 669 թվին, կամ նոր հոդվածում՝ 665-670 տարիների ընթացքին: Սա էլ երկրորդ գյուտն է: Մնացածը՝ այսինքն երկրորդ գրքի երկրորդ բաժինը, ԻԹ-ԾԲ գլուխները և ամբողջ երրորդ գիրքը, չէ պատկանում Կաղանկատվացուն, այլ մեկեն ավելի ուրիշ շարունակողների: Այս էլ մի երրորդ առեղծված: Այսպես ուրեմն, այս գյուտերի համաձայն, Կաղանկատվացին հեղինակել է իր անունը կրող գործի միմիայն կեսը և այս կեսը գրել է երկու նվագով, 628 թվին և, երեսուն տարի դադար անելուց հետո, նորեն գործի կպել 669 թվին:

Այս բոլորը ծրի ենթադրություններ են: Այն մասը, որ գրված է համարում հայր Հացունի 628 թվին, ունի իր մեջ Բ գրքի ԺԳ գլուխը: Այս գլուխը վերջանում է հետևյալ տողերով. **«Զանզի բառնալոց էր թագաւորութիւնն ի տանէ Սասանականացն և տալոց էր ի ձեռս որդւոց Իսմայէլի»** *(Բ, գլ. ԺԳ):*

Այս տողերը կարող են գրված լինել միմիայն 652 թվից հետո, երբ կործանվեց Սասանյան պետությունը և երկրին տիրացան արաբները: Ահա ու-

րեմն մի և առաջին նետը 628 թվի ճակատին: Կան և ուրիշները, ինչպես պիտի տեսնենք, բայց այս էլ բավ է թաղելու մի անգամ ընդմիշտ 628 թիվը որպես գրության տարի:

Առայժմ անցնենք մյուս տարբերվին: Կաղանկատվացու բուն գործը հայր Հացունին վերջացած է համարում Բ գրքի ԻԸ գլխով, ուր հեղինակը երկար կյանք է մաղթում Ջևանշերին: Ուստի և համաձայն չէ Գ. Զարպհանալյանի հետ, որ նույն գրչին է վերագրել նաև հետևյալ գլուխները՝ երկրորդ գրքի վերջը: Համաձայն չէ, որովհետև այնտեղ պատմվում է նաև Ջևանշերի մահը, մինչդեռ հեղինակը, Հացունու կարծիքով, գիտե Ջևանշերին դեռ կենդանի:

Սակայն Ջևանշերի մահը պատմվում է ԼԴ գլխում, իսկ մինչ այդ, այսինքն՝ ԻԹ-ԻԳ, ուրեմն չորս գլուխների գրիչը ևս Ջևանշերին տակավին կենդանի գիտե: Ուրեմն սա ուրիշ գրիչ է, քան Կաղանկատվացին և երկուսն էլ գրել են Ջևանշերի կենդանության: Իսկ սրանց մահից հետո շարունակել են ուրիշները: Ուրեմն քանի՞ գրիչ եղավ: Կաղանկատվացու բուն գործը վերջացած է կարծում Հացունին ԻԸ գլխով, որովհետև հաջորդ գլուխների նեքաղրյալ նոր գրիչն որպես թե հայտարարում է իր գործի սկզբում, թե իր նախորդի երկը պակասավոր էր և ինքը պիտի լրացնե և բերում է հետևյալը. «զճշմարտախոս դրուագս բանից (**ճախորդին**, *ավելացնում է հայր Հացունի) սակաւ ինչ նուազ գտի» և այլն: Հայր Հացունի լավ կաներ չդներ «և այլն» և շարունակեր նախադասությունը, որպեսզի ընթերցողը տեսներ մեր բանասերի աշխատելու եղանակը:*

ԻԹ գլխի վերնագիրն է՝ «Տեսիլ միանձնացելոյ առն Աստուծոյ Իսրայէլի ի վերայ Մաշտոցի սրբոյ. և նահատակութիւն աշակերտացն. և գիւտ սրբոյ խաչին, որ ի Գիսն էր»: Գլուխն սկսվում է այսպես. «Զճշմարտախօս դրուագս բանից սակաւ ինչ նուազ գտի զմիայնանալոյն Իսրայէլի: Սկիզբն անյայտ իմն էր. այլ զայս և եթ, որ ինչ խորհրդոյս էր իրք, բովանդակեցաք»: Լեզվական մեծ հմտություն չէ հարկավոր այս հասարակ նախադասության իմաստը չթյուրելու համար: Խոսքը նախորդ դրվագի մասին չէ, բնավ, այլ առաջիկա դրվագի, ինչ որ պիտի գրվի Իսրայելի մասին: Գրիչը խոստովանում է, որ շատ բան չգիտե այս միանձնավորի նախկին կյանքի վերաբերյալ: Սա հայտնի էր դարձել շնորհիվ այն «հրաշալի տեսիլ» -ի, որ գրության նյութն է: Իսրայել լեռներում առանձնացած իր ճգնության մեջ, մի օր տեսավ մի տեսիլ, թե այս ինչ տեղ աստվածային գանձ կա թաքնված: Հայտնեց այս մասին իր գավառի՝ Մեծկողմանց եպիսկոպոս Դավթին և հարևան Մեծիրանք գավառի եպիսկոպոս Հովելին: Երեքը միասին շտապեցին տեսիլի ակնարկած տեղը, Չղախյան հովիտը, փորեցին մի փայտաշեն մատուռի մեջ «թիզս տասն, գտին կողոփս երկու արծաթեղէնս՝ կապարեայ կնիք ի վերայ եդեալ. զորմէ տախտակ մի ոսկեձոյլ հաստահեղոյս բևեռեալ. և ի նմա գրեալ ասորերէն և



հայերէն գրով»: Կնիքը հանեցին և մեջը գտան «փրկագործ խաչի մասն»: Ոսկեձույլ տախտակի գիրը ևս կարդաց Հովել. «Եւ էր գիրն այս եթէ՝ Երուսաղէմեան մասնաւորեալ նշխարք սրբոց են»: Տապանակներից, այսինքն՝ կողովներից, մեկը Հովել եպիսկոպոսը տարավ իր մոտ, մյուսը՝ մնաց Իսրայելի ձեռքին՝ եպիսկոպոս Դավթի թույլտվությամբ: Իսրայել դրավ սրբությունը իր վանքի մեջ, որ է Գլխո վանք նույն Մեծկողմանց (կամ Մեծկուենից) գավառում:

Հովել թուղթ գրեց իր և Դավթի կողմից Աղվանից կաթողիկոս Ուխտանեսին և Ջևանշեր իշխանին հայտնելու չքնաղ գյուտը: Թուղթը բերված է Լ գլխում, և հաջորդ ԼԱ գլխում՝ Ուխտանեսի և Ջևանշերի պատասխանը: Սրանց խնդրելով սրբությունը տարան Պերոժ Կավատ, ժողովուրդի հետ Ուխտանես և Ջևանշեր երկրպագություն տվին և ապա վերադարձան նորեն Գլխո վանքը:

Մի տարի անց՝ Իսրայել դարձյալ մի տեսիլ տեսավ, թե Մաշտոցի խաչը ծածկված է Ուտի գավառի Գիս գյուղի մեջ: Մի քահանայի հետ շտապեց Գիս, փորեց հինգ քիլ մի փոս և «յանկարծակի երևեալ տապան մի արծաթի, ժանգառագոյն, հնացեալ, որ և ունէր առհասարակ հայ, հոռոմ և ասորի գիր, և ցուցանէր ի նմա զոլ զմասն կենդանարարատ փայտին» (Բ, գլ. ԼԳ):

Այս գյուտը նկարագրված է երկարորեն և, ինչպես հեղինակն է ասում, «վիպասանման զրուցատրաբար» ԼԳ գլխի մեջ: Կարևոր չեն մանրամասնությունները: Հիշենք միայն, որ լուրը հասավ կաթողիկոսին, Ուխտանեսի հաջորդ Եղիազարին, և Ջևանշեր իշխանին: Կաթողիկոսը գնաց և «առհանեալ զմասն ի սրբոյ Խաչէն Մաշտոցի» օծեց յուղով օրհնության:

Այսպիսով, երազագետ Իսրայել երկու գյուտ արավ. Մաշտոցի խաչը Գիս գյուղում, և Չղախի խաչը, որ Երուսաղեմի խաչի մասն էր:

Արդ, այս երկու խաչերի մասին մեր պատմագիրը ճառում է իր գործի Ա գրքի մեջ ԻԷ-ԻԹ գլուխներում և բացատրում նրանց ծագումը: Մեսրոպի խաչի մասին պատմում է (գլ. ԻԷ) «վիպասանաբար», իսկ Երուսաղեմյան խաչի՝ «զրուցատրաբար» (գլ. ԻԸ): Հայոց, Աղվանից և Վրաց նշանագիր տալուց հետո Մաշտոց գնում է որպես թե Երուսաղեմ ուխտ: Այնտեղից վերադառնում է «աշակերտօքն և ընդ ինքեան ունելով զխաչն արծաթեղէն ոսկի խաչաց տեսակով, յորում ի տէրունեան խաչէն էր մասնաւորեալ», և գալիս բնակվում է Ուտի գավառի Գիս գյուղում: Այնուհետև Մաշտոց իր աշակերտներով քարոզություն է անում մինչև Չողա պահակը և այն կողմ՝ լեռնականների մոտ: Զգալով որ գազան բռնակալները մտադիր են նրանց սպանել, Մաշտոց «փութացեալ փորէր փոս մի ըստ պիտոյից գործոյն և զաստուածային առեալ գանձէն, որ է խաչն տէրունական եդեալ ի տապանի ծածկէր ի գետնափոր կայանի»: Հետո նորահավատներից մին շինում է

«մատուռն մի հողեղէն չորեքկուսի և տապան տախտակամած արարեալ՝ ամփոփէր զնշխարս նոցա ի տապանի անդ»: Նշխարները Մաշտոցի աշակերտներինն էին, որոնք նահատակվեցին նույն հյուսիսականներից: Հետագայում եկեղեցի շինեցին «ի կայարանի խաչին, զոր Հին եկեղեցի տեղւոյն անուանէին որում Գիսն կոչեն»:

Մաշտոցի մահից հետո իր աշակերտները վճռեցին գնալ Երուսաղեմ և խնդրել մի առաջնորդ, քանի որ իրենց առաքյալ Եղիշան Երուսաղեմից էր: Լավ ընդունելություն գտան Երուսաղեմի պատրիարքի կողմից, և վերադարձան «ոսկեղէն և արծաթեղէն սպասիւք և բազում նշխարօք յամենայն սրբութեանցն» և երեք քահանաների ընկերակցությամբ եկան Մեծկուենից գավառը և հաստատվեցին Չղախ հովտում (Ա, գլ. ԻԸ): Հյուսիսական բարբարոս ազգերն արշավեցին և ասպատակեցին Աղվանից, Հայոց և Վրաց աշխարհները: Երբ հրոսակները խուժեցին Մեծկուենից գավառը, «Չղախական գընդին Երուսաղէմեան զահի հարեալ մեծաւ երկիւղիւ աճապարեալ ի մի վայր ժողովէին զմասունս նշխարացն ամենայն և յերկուս ամփոփեալ արծաթեղէն կողովս ծածկէին յերկրի» (Ա, գլ. ԻԹ): Զանց անենք անկարևոր մանրամասնությունները:

Այս պատմությունները հերյուրված են ad hoc մեկնելու Գիսի և Չղախի սրբությունների ծագումը և այդ միջոցով հաստատելու նրանց հայտնության փաստը: Երկրորդ գրքի ԻԹ-ԼԳ գլուխները կապված են սերտորեն առաջին գրքի ԻԷ-Լ գլուխներին, գրված են միևնույն ոգով և շնչով և պատկանում են միևնույն գրչին:

Արդ, մեծապես կարևոր է, որ գրիչը խոստովանում է, թե «սակաւ ինչ նուազ գտի» Իսրայելի վերաբերյալ դրվագը: Իսրայել կենդանի էր տակավին 707 թվին և մասնակցեց այդ թվին կայացած եկեղեցական ժողովին[1]*: Նա է, մյուս կողմից, գլխավոր դերակատարն այն բոլոր անցքերի, որ պատմվում են խաչերի գյուտից հետո, հաջորդ գլուխներում և որ վերաբերում են Իսրայելի առաքելության Հոնաց մոտ: Արդ, մեր պատմագիրը չի կարող ժամանակակից լինել Իսրայելի.* **այլ ապրում էր նրանից, ուրեմն 707 թվից, շատ սերունդներ հետո և այնքան հեռու էր ժամանակով Իսրայելից, որ ուրիշ բան չգիտեր նրա մասին, քան ինչ որ գտել էր գրավոր աղբյուրներում:**

Իսրայելի առաքելության նվիրված գլուխները ևս միևնույն գրչի գործ են: Ուխտանես և Ջևանշեր գրում են Հովել և Դավիթ եպիսկոպոսներին ուղղված Թղթի մեջ ի միջի այլոց. «Եւ մեք թէպէտ հեռի եմք մարմնով, մերձ համարեալ հոգւով յիշեսջիք առաջի նորագիւտ խաչիդ» (Բ, գլ. ԼԱ): Միևնույնը կրկնում են Սահակ կաթողիկոս և Գրիգոր Մամիկոնյան Հոնաց թագավորին ուղղած նամակում. «Եւ արդ՝ մեք և աշխարհս մեր, թէպէտ և մարմնով հեռի եմք, սըր-

[1] Տե՛ս ստորև, էջ 453:



տի սիրով մերով համարիմք թէ յանդիման տեսաք զձեզ» (Բ, գլ. ԽԵ):

Պարզ է, որ միևնույն ձեռքն է գրողը: Ասել է թե Իսրայելի ամբողջ դրվագը պատկանում է նույն գրչին, որ գրել է Ա գիրքը և գրված է 707 թվից շատ հետո: Նույն գրչի գործն են և Բ գրքի այն գլուխները, որ նվիրված են Վիրոյին և Ջևանշերին, ուրեմն և այս մասը չէ կարող գրված լինել ո՛չ 628 և ո՛չ 689 թվին: Հայր Հացունին ո՞րտեղից է հանել այդ տարեթիվերը, պետք կա հատուկ քննության:

## Գ

Մեր հակառակորդի կարծիքով Կաղանկատվացին գրել է Վիրոյի և Ջևանշերի հատվածները, ասենք դրվագները, որպես ականատես 628 և 689 թվին: Քննենք նախ Վիրոյի դրվագը:

Տեսանք, որ Վիրոյի պատմությունը գրված է ամեն պարագային 652 թվականից հետո և ոչ 628 թվին: Բայց մոռանանք այս կետը, ինչպես մոռացել է հայր Հացունին: Ուրիշ կողմեն մոտենանք հարցին:

Նման դեպքերում լավագույն միջոցն է պատմական ստուգումը, այսինքն՝ թե որքա՞ն ճշմարիտ է քննելի պատմությունը. կարելի՞ է վստահել, որ պատմիչն իրոք ականատես ոմն է, թե այնպիսի սխալներ է գործում, այնպիսի շփոթ տեղեկություններ է տալիս, որ մատնում են նրա ոչ ժամանակակից լինելու պարագան:

Արդ, Վիրոյի դրվագը բռնում է Բ գրքի Թ-ից մինչև ԺԶ (ոչ ԺԳ ինչպես հայր Հացունին է հաշվում) գլուխը: Թ գլուխը ներածական է, մի տեսակ նախաբան: Հետևյալ Ժ գլխում պատմվում են Խոսրով Բ Ապրվեզի շահատակությունները և, ի միջի այլոց, հետևյալը.

«Այլ առաւել ևս ոգորէր ընդ ծով և ընդ ցամաք և զգեղեցկաշէն քաղաքս Հռոմայեցւոց բնակչօքն իւրովք հանդերձ խաղացուցանէր ի կողմանս Պարսից վասն տենչանաց իւրոց. նմանապէս ճարտարօք ի նոյն ձև օրինակի նստուցանել և անուանել **զոմն առաւել քան զԱնտիոք քաղաք**, *և զայլն ամենայն յիւր անուն՝* **զառաւելն** *ի վերայ յաւելեալ» (Գիրք Բ, գլ Ժ):*

Այստեղ մի խոշոր անաքրոնիզմ *կա: Գիտենք Սեբեոսից և այլուստ, որ Խոսրով I Անուշիրվան բյուզանդական հողից գաղթեցրեց ժողովուրդ և հիմնեց մի նոր քաղաք և կոչեց Վեհ-Անջատոք*[1]*, այսինքն՝ Veh-az-Antoc, «լավ քան Անտիոք»:*

Մեր պատմագրի **«Առաւել քան զԱնտիոք»** *քաղաքը նույնն է, ինչ որ* **Վեհ-Անջատոք***: Իսկ վերջինս հիմնված է 540 թվականին: Պատմագիրը շփոթել է Խոսրով I Խոսրով II-ի հետ և առաջինի գործը վերագրել երկրորդին:*

[1] Սեբեոս, Պատմութիւն ի Հերակլն, Ս. Պետերբուրգ, 1879, էջ 28:

*Ակներև է, որ այսպիսի շփոթության հեղինակը չէր կարող ժամանակակից լինել Խոսրով II Ապրվեզին և ոչ մանավանդ գրել 628 թվականին: Շփոթությունը կարելի է և պետք է մեկնել նրանով, որ հեղինակը, ընդհակառակն, շատ ուշ է, քան 628 թիվը: ԺԱ գլխում նկարագրում է խազարաց արշավանքը «յամին երեսներորդի ութերորդի, որ ամ էր տագնապի աղէտի սպանման Խոսրովու», այսինքն՝ 628 թվին: Իրականին այս արշավանքը տեղի է ունեցել 626 թվին: 628 թվին գրող հեղինակը այսպիսի սխալ չէր կարող գործել և երկու տարի հնություն ունեցող անցքը տեղափոխել իր գրության տարին: Հետևաբար նա 628 թվի գրիչ չէ:*

ԺԲ գլխի մեջ մի ուրիշ տեղ կոպիտ սխալ: «Յամին երեսներորդի վեցերորդի Խոսրովու», ուրեմն՝ 626 թվին, Հերակլ կայսր խորհում է, «թէ զիարդ արդեօք կարասցէ բուժիլ յանհնարին տրտմութենէն և ի նախատանացն», և հարաբերության մեջ է մտնում խազարների հետ և նրանց կանչում օգնության: Կատարյալ անհեթեթություն է, 626 թվին սրբել տալ 628 թվին կրած նախատինքը: Հեղինակը լավ չէ սերտել իր ձեռքի տակ գտնված նյութերը: Խազարների արշավանքը տեղի ունեցավ 626 թվին, իսկ 628 թվին վերագրած արշավանքը իսկապես մի ուրիշ նկարագրությունն է նույն 626 թվի արշավանքի: Մի դեպքը վերածելով երկուսի, հեղինակը գործել է ակամայից մի ուրիշ սխալ՝ կարծելով որ 626 թվին խազարները «ճանապարհ կալեալ ընդ աշխարհն Վրաց և Եգերացւոց՝ հատին, անցին ընդ ծովն մեծ մինչև ի պալատն արքունի: Եւ յանդիման լեալ մեծի կայսերն, համատեն առ միմեանս զերդմունս» (Բ, գլ. ԺԲ):

Սակայն խազարները երբեք չեն գնացել բյուզանդական մայրաքաղաք բանակցելու կայսեր հետ: Հերակլ կայսրն է, որ եկավ Եգերացվոց աշխարհը և պաշարեց Տփղիսը: Այս քաղաքի առջև տեղի ունեցավ տեսակցություն խազար թագավորի՝ Ջեբու խաքանի հետ, որ է **Զիեբիլ** *Թեոփանես պատմիչի: Կայսրը խոստանում էր տալ իր մատաղահաս հազիվ 17 տարեկան դուստրը, ի տրիտուր զինվորական օգնության, խազար իշխանին: Երե մեր պատմագիրը գրած լիներ 628 թվին, պետք է որ այսքան սխալ տեղեկություն չունենար օրվան եղելության մասին, մանավանդ որ խազարները իջնելով Ճորա կամ Չողա պահակից Աղվանք, այստեղից էին գնացել Տփղիս ներկայանալու կայսեր:*

Ավելորդ չէ հիշել նաև, որ ներածական գլխում (Թ) գործ է ածված Հայկական թվականությունը, որ մեր մատենագրության մեջ առաջին անգամ երևան է գալիս 684 թ. և սովորական է դառնում միմիայն ութերորդ դարու վերջերից հետո[1]:

[1] Հնագույն արձանագրությունն է Թալինի մայր եկեղեցու ՄԼԲ Թ.Հ.= 783: Աբիտողոմ վարդապետի կարճ արձանագրությունը Անի՝ «շինեցի զեկեղեցիս զայս ի թուականութեան ՀԱ.» վիճելի է. արդյոք Հայո՞ց պիտի կարդալ, թե 71=622: Մի դեպքում արձանագրությունը պետք է թերի համարել, մյուս դեպքում խնդրական է մնում, թե ինչու չէ նշանակած (Հայոց) ՀԱ: Մատենագիրներից առաջին անգամ Ղևոնդի մոտ է հանդիպում Հայկական թվականությունը, Արծրունի եղբայրների նահատակության տարին՝ ՄԼԳ =784 (ավելի ճիշտ ՄԼԴ): Մենք կարծում ենք, որ «Կայսերաց պատմութեան» (5) վերջ հիշատակած, ՃԼԴ=685 հնագույն գործածությունն է:



Այս դիտողությունները ինքնին ապացույց են, որ մեր պատմագիրը ժամանակակից չէ անցքերին և ամեն պարագայի Վիրոյի դրվագը չէր կարող գրված լինել 628 թվին, հակառակ հայր Հացունու:

Պատվական հոր մոլորության աղբյուրն է երկրորդ գրքի Թ-*րդ ներածական գլխի սխալ ըմբռնումը: Գլխի վերնագիրն է. «Պատմութիւն յաղագս յարուցման ազգաց բարբարոսաց և պէսպէս տիեզերահեծ տագնապին որ եղև աշխարհաց»: Սա ընդհանուր վերնագիր է, որ վերաբերում է հետևյալ գլուխներին մինչև ԺԳ, թեև սրանցից յուրաքանչյուրն իր հատուկ վերնագիրն ևս ունի, ինչպես որ ԺԴ գլխի վերնագիրն ամփոփում է ոչ միայն ԺԴ, այլև հետևյալ գլուխները մինչև ԺԶ, հակառակ որ իրենց հատուկ վերնագիրն ունին: Թ գլխի վերնագիրը վերաբերում է իսկապես Թ-ից մինչև ԺԶ գլուխների այս երկու հատվածներին: Ճիշտ այդպես Բ գրքի ԻԹ գլխի վերնագիրն ի նկատի ունի ԻԹ-ից մինչև ԼԳ գլուխները, որովհետև այնտեղ նշանակված է «զիտ սրբոյ Խաչին որ ի Գիսն», իսկ այդ գյուղի մասին խոսվում է ԼԳ գլխում:*

Հակառակ վերնագրին, Թ գլուխը տագնապի մասին չէ խոսում, այլ մի տեսակ ներածություն է: Նախքան անցնել տագնապի պատմության, մեր պատմագիրը անձնատուր է լինում տխուր խորհրդածության և գոչում է. «Ո՞վ սքանչելի պատմութեանս, զոր հանդերձեալ եմ հնչեցուցանել ի լսելիս տիեզերաց մօտաւորաց և հեռաւորաց». և շարունակում է արծարծել այս նյութը: Նրան թվում է, որ տիեզերական պատմությունը չգիտե նման տագնապ, որ վիճակվեց Աղվանից աշխարհին, ո՛չ Սուրբ Գիրքը, ո՛չ արտաքին պատմագիրները: Կարծես թե Փրկչի մարգարեությունն էր, որ կատարվեց թե «լսելոց էք պատերազմունս և համբաւս պատերազմաց և լինել սովուց յաճախութիւն և սուրբ և սասանութիւնք»[1]: *Հանկարծ սթափվում է իր անրջանքից. «և արդ քանզի ընկղմեցան միտք իմ և զբաղեցան խորհուրդք իմ ի տիեզերական հարուածոցս և* **մոռացայ զկարգ բանին,** *որ հանդերձեալն էր արկանել հիմն, և սկիզբն առնել ժամանակաց և անցից, որք անցին ընդ աշխարհս Աղվանից, ըստ բանի մարգարէին եթէ՝ «մոռացայ ուտել զհաց իմ ի*

[1] **Մատթ.**, ԻԴ, 2:

*ծայնէ հեծութեան իմոյ*[1]*», սակայն և այժմ առ անգամ մի քողեալ զահ և զեր-կիւղ, որ դեռ զմեղս (կարդա՝* **զմիտս**[2]*) ունի, ի նոյն կարգն դարձցուք»:*

Արդ, հայր Հացունին այնպես է հասկացել այս տողերը, որպես թե հեղինակն ականատես է եղել տագնապին, կրել բոլոր ծանրությունն ու նեղությունը և սկսել գրել իր պատմական գործը սկզբից ևեթ, գրել «այդ նեղության մեջ իսկ, ոչ թե կանխավ»:

Եթե հեղինակի միտքն այդ լիներ, պետք էր սպասել, որ այդ մասին խոսեր իր ձեռնարկության սկզբին և ոչ թե միջին: Հետո, հայր Հացունին անտեսել է **«մոռացայ զկարգ բանին»** *կարևոր խոսքերը, որ բոլորովին այլ իմաստ են տալիս ամբողջ պարբերության: Պատմագիրը գրել, հասցրել է իր գործը մինչև Բ գրքի Ը գլուխը և պիտի անցնի «տիեզերահեծ տագնապի» պատմության հետևյալ Թ գլխից: Սակայն փոխանակ անմիջապես նյութին անցնելու, հեղինակի միտքը տարվում է, ընկնում վհատ մտածմունքների մեջ, թե ի՞նչ ահավոր, չտեսնված ու չլսված, պատմություն է, որ պիտի անե. «միտքը կլանվում է, խոհերը շփոթվում» այս սոսկալի անցքերից և հարվածներից, ո՛չ որպես ականատես, այլ իբրև պատմող, ուստի և պահ մի մոռանում է «զկարգ բանին», այսինքն՝ շեղվում է նյութից: Սակայն որքան և ընկճված ծանր մտքերից, պետք է սթափվել և «ի* նոյն կարգ դառնալ», *այսինքն՝ շարունակել պատմության թելը, որ ընդհատած էր իր խորհրդածության հետևանքով:*

Եվ խոստանում է պատմել ոչ միայն թշնամիների հարվածները, այլև նրանց պարտությունը, թե ինչպես «մարդասէր աջն Աստուծոյ» հաղթեց և թշնամիներն «անկան տապաստ առաջի աչաց մերոց»:

Հաջորդ Ժ գլխից սկսած մինչև ԺԶ, մեր պատմագիրը նկարագրում է տագնապալից շրջան խազարների արշավանքի պատճառով և վերջին գլխում պատմում է թշնամու պարտությունը, թե ինչպես հրաշքով թշնամին իր պատիժը կրեց: Ջեբու խաքանը սպանվեց յուրայիններից այն միջոցին, երբ նրա որդին, Չորպան-Թարխան արյունարբու զորավարի առաջնորդությամբ, ասպատակում էր Աղվանք: Խաքանը, դեռ չսպանված, ընտանեկան գժտությունները ծագելուն պես, հետ կանչեց իր որդուն և զորավարին:

Այս առթիվ մեր հեղինակը նորեն ընկնում է խորհրդածության մեջ. «Եւ յուզին միտք իմ զբազում ճառօք ածել օրինակս. միթէ՞ առաւել իցեն քան զընկղմիլն Փարաւոնի» և կամ Ամաղեկի պարտությունը, Գեդեոնի և Հեսուի հաջողությունները և կամ ասորեստանցիներին հասած պատիժը: Փոքրիկ

1 Սաղմ., ՃԱ, Զ:

2 Այս սրբագրությունը պատկանում է Ս.Պարոնյան վարդապետին (6), իր ձեռքով ճշանակած Կաղանկատվացու իր օրինակի լուսանցքում:



շեղումից հետո վերսկսում է իր պատմությունը, ասելով՝ «Այլ մեք ի նոյն դարձցուք **ի կարգ բանիցն**», *և ավարտում դրվագը արձանագրելով արքայորդու և իր զորավարի քաշվիլը Աղվանքից, համաձայն խաքանից ստացած պատվերին: Հեղինակի «մտքի յուզումը» այստեղ նույն կարգի արտահայտություն է, ինչ որ նախաբանի մեջ «մտքի ընկղմումը», և չեն նշանակում, թե պատմագիրն ականատես է տագնապին և գրել է տագնապի մեջ իսկ, «ոչ թէ կանխաւ», 628 թվին: Նախաբանի ակնարկը «անկան տապաստ առաջի աչաց մերոց» վերաբերում է խաքանի անսպասելի վախճանին, որ տեղի ունեցավ մեր հեղինակի հաշվով Կավատի թագավորությունից երկու տարի հետո՝ «Յերկրորդ ամի Արտաշրի» (Բ, գլ. ԺԶ), 629-630 թվին: Ուրեմն, եթե Հացունու պես մտածենք, պատմագիրը պետք է, որ սկսած լինի իր գործը ամեն պարագային ոչ 628 թվի տագնապի մեջ, այլ առնվազն երկու տարուց հետո, երբ «ահ և երկիւղ» անցել էին: Հեղինակի զգացած «ահ և երկիւղը» գրողի զգացում է և ոչ տագնապն իրապես ապրողի սարսուռ:*

Ա գրքի մեջ գլ. ԺԱ բերված է Գյուտ եպիսկոպոսի նամակը Վաչեին: Անվավեր գրվածք է, բավականին անճաշակ: Գյուտ ուզում է նկարագրել Վաչե թագավորի առաքինությունը, բայց սոսկում է այդ մտքից. «Ահ անկաւ ինձ, - գոչում է նա, - մեծ և ահագին և բարձրագոյն քան զերկինս երկնից և խորամուխ լինել երկնչիմ, եթէ գուցէ ընկղմիցիմ, որպէս Պետրոս Առաքեալ ի ծով անդնդային» վերջապես հաղթահարում է ահն ու երկյուղ. «Արդ՝ ահա յորմէ երկուցեալս էի ի ձեռս սիրոյ մօտիմ և սկսանիմ ուստի արժանն է սկսանել»: Ստորև բացատրում է. «Այս է, որ զահի հարեալ էի ի սկզբանէ պատմութեանս, որ վեր քան զբան գտանի»:

Այդպիսի դրության մեջ է զգում և մեր պատմագիրը, երբ պատրաստվում է գրել ոչ թե մի առաքինի կյանք, այլ «տիեզերական տագնապ»-ը: Սկսում է հուզմունքով և վերջացնում նույն զգացումով, որպես պատմիչ, կրկնում ենք, և ոչ ականատես:

Ներածական Թ գլխի մեջ պատմագիրը խոստանում է գրել մեծ «տագնապը»-ը, բայց հարկավոր է համարում սկսել նախընթաց անցքերից, ասելով. «Եւ զի անցեալ ժամանակն յետս կոյս զիւրն պահանջէ ի մէնջ պատմել, սկսայց յառաջին տասնևուբ նահանջէն յայտնութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, մեհեկանի ամսոյ, յերեսուն և հինգ ամէն Խոսրովու Որմզդեան արքայից արքայի, որ եղև»:

Խոսրովի 35-րդ տարին է (590+35)=625, որին համաձայն է և մյուս թվականը, 18 նահանջ՝ հաշված մեհեկանի ամսի Հայտնությունից: Հայկական թվականը սկսվում է 552 թվից, երբ նավասարդի մեկը =11 հուլիսի, և հետևաբար մեհեկանի 1=556 թ. հունվարի 7: Այս է Հայտնության մեհեկանը, որից հաշվելով 18 նահանջ (4x18=) 72 տարի, կստացվի (553+72) 625 թ.:

Պատմագիրն ուրեմն պիտի սկսե իր պատմությունը 625 թվից: Հաջորդ Ժ գլխի վերնագիրը՝ «Յառաջին ամսեանն նախանշէն սկիզբն պատմողաբար» հաստատում է նույն խոստումը՝ սկսել առաջին <ամե> հետ 72 տարվո, ուրեմն 625 թվից հետո:

Սակայն, հակառակ խոստման, պատմագիրը սկսում է ոչ թե 625 թվից, այլ 614 թվից, հիշատակում է Երուսաղեմի առումը և խաչափայտի գերությունը, որ տեղի ունեցավ 614 թվին, Հերակլ կայսրի առաջին արշավանքը 622 թվին, հարձակումը Ատրպատականի վրա և առաջանալը մինչև Գայշ ավան քաղաքը, պարսից թագավորների ամարանոցը[1]: *Ատրպատական մտավ կայսրը, ըստ Թեոփանեսի, 20 ապրիլի 623 թվին[2] և այնտեղից վերադարձավ ձմեռելու Աղվանք: Կաղանկատվացին հիշում է, որ պարսից զորավար Շահրապաղական եկավ Հերակլի դեմ: Թեոփանեսի ասելով, Սարաբլազան զորավարը, որ նույն Շահրապաղականն է (և ոչ Շահրատպաղական, ինչպես տպված է), հիրավի, եկավ Հերակլի դեմ գարնան 624 թվին: Մեր պատմագիրը գիտե, որ «միւս զօրավար» եկավ «ի Հոռմայ», այսինքն՝ Հոռոմոց երկրից: Այս զորավարը Խոռեանն էր, որը կոչվում էր նաև Շահր-Վարազ և Ռազմիոզան:*

*Հետևյալ ԺԱ գլխում պատմագիրն անցնում է խազարաց արշավին 628 թվին: Խոսրով լսելով, որ խազարները ասպատակում են երկիրը Հերակլի դրդմամբ, մարդ է ղրկում հանդիմանելու, եթե նրանց ոսկի էր պետք, ինքն ավելի մեծ նվերներ կարող էր տալ, քան ստացել են կայսրից և սպառնաց հետ կանչել իր քաջամարտիկ զորավարներին, Շահր-Վարազ, Շահեն և Քըրտարական[3], որ ավերում են կայսերական հողերը և նրանց ուղղել խազարների դեմ: Խազարները իջան Աղվանք, ըստ Թեոփանեսի, հարձակվեցին Ատրպատականի վրա, և վերադարձին գնացին պաշարելու Տփղիս քաղաքը: Կայսրը եկավ զորքով օգնության: Ամեն միջոց գործ դրին քաղաքի դեմ, բայց չկարողացան գրավել: Եկավ Շահր-Վարազ և պաշարողները սարսափված հեռացան:*

[1] Տպագիրն ունի Գայշավան: Պետք է զատ գրել Գայշ ավան: Պարսից արքաների ամարանոց Ատրպատականի Գանձակ քաղաքն էր, որ բնավ Թավրիզ չէ, այլ այժմյան Թախտ-ի-Սուլեյման: Արաբները կոչում են *Շիզ*, և վկայում են, որ հին ձևն է *Ջիս*, որ իբրև թե *Գազնա* (= *Գանձակ*) արաբական արտասանություն է: Մեզ թվում է, որ *Գայշ* նույնն է այս *Ջիս*-ի հետ, որի պարսկական ձևը պետք է լիներ *Գեռ, Գայս*: Այստեղ էր գտնվում Ատրվշնասպ հռչակավոր հրատը, որ *համարվում էր պատերազմական* հովանավոր և թագավորները ուխտ էին գալիս և հաջողություն խնդրում պատերազմ գնալիս:

[2] **Theophanis Chronographia**, ed. Bonn, 1839, p. 474.

[3] Տպագիրն ունի Քրտակարին: Սրբագրելի է Քրտարական՝ համաձայն Թեոփանեսի Kardaragan-ի:



Հերակլ առաջարկեց Ջեբու խաքանին վերադառնալ իր տեղը, քանի որ լեռնականները սովոր չեն հարավային շոգերի, և գալ հետևյալ տարին ավելի հովասուն եղանակի:

Տփղիսի բնակիչները սկսեցին ծաղրել Հոնաց (Խազարաց) թագավորին, ցուցադրեցին պարիսպների վրա նրա ծաղրանկարը՝ գծած մի մեծ դդումի վրա: Անարգեցին նաև«զմիւս թագաւորն», այսինքն՝ Հերակլին, անվանելով նրան «պիղծ և արուագեղծ» (Բ, գլ. ԺԱ)[1]:

Այս բոլորը ճշմարիտ է ընդհանուր առմամբ, սխալ է միայն տարեթիվը: Տեսարանը տեղի ունեցավ 626 թվին և ոչ 628 թվին: Գրչի վրիպակ չէ, որովհետև ասված է՝ «որ ամ էր տազնապի աղետի սպանման Խոսրովու»: Խոսրով սպանվեց 628 թվի փետրվարի 24:

Պատմագիրը ծրագրել էր պատմել 625 թվին հաջորդած անցքերը: Ժ և ԺԱ գլուխները շեղում են ծրագրից: ԺԲ գլխից է սկսվում ծրագրյալը: Այստեղ, 626 թվի տակ, պատմում է, թե ինչպես կայսրը դիմեց խազարների խաքանին, ղրկելով նրա մոտ բանակցության Անդրեաս անունով պաշտոնյային: Խաքանը համաձայնեց և զորքով եկավ կայսեր մոտ:

Անդրեասն հիշել ենք վերև, որ մեր պատմագիրը կարծում է սխալմամբ, որ խաքան գնացել է մայրաքաղաք տեսնելու կայսեր, այնինչ հանդիպումը տեղի է ունեցել Տփղիսի մոտ: Հերակլ կայսրը թողեց Կ. Պոլիս 623 թվին և մնաց պատերազմի դաշտերում մինչև 628 թիվը՝ Խոսրովի խորտակումն և սպանությունը: 625 թվին Հայաստան էր, երբ խույս տվավ պարսիկ զորավարներից և գրեթե փախավ դեպի Ամիդ և այնտեղից Սեբաստիա ուր և ձմեռեց: Գարնան 626 թվի շարժվեց դեպի Վրաստան, պաշարեց Տփղիսը: Այդ միջոցին հասավ խաքանը զորքով: Թեոփանեսի և Նիկեփոր պատրիարքի ասելով, ընդունելությունը մեծ էր. կայսրը շռայլեց ամեն ուշադրություն, հանեց թագն իր գլխից և դրավ խաքանի գլխին, սարքեց մեծ ճաշկերույթ, և ճաշից հետո բոլոր ոսկի սպասները նվիրեց խազար իշխանին: Եվ ինչ որ անսպասելի էր, կայսրը խոստացավ տալ իր դուստրը Եվդոկիա բարբարոս ԵԵբանոսին կնության՝ փոխան զինակցության: Բարեբախտաբար խաքանի

[1] «Վրաց տարեգիրքը» (**M. Brosset**, Histoire de la Géorgie, t. I, SPb., 1842, p. 226) ևս գիտե ծաղրանքի տեսարանը, թեև տարբեր գույնով: Հերակլի հասցեին գոչած են՝ «մորուքդ այծի, վիզդ՝ այծյամի»: Խաքանի ինքնությունը մոռացված է և Ջեբու հանդես է գալիս որպես մի վրացի իշխան, զինակից Հերակլի: Խաքանը կոչվում էր, ըստ Թեոփանեսի, **Ziebel**, ըստ Սեբեոսի՝ Ճեպուխ (էջ 66):

մահը փրկեց մատաղահաս իշխանուհուն անարգ վիճակից: Երևում է, որ Հերակլ չէր կարող պարծենալ իր զենքի հաջողությամբ, և մինչև 626 տարին առավելությունը պարսից կողմն էր:

Խաքանը զորք թողեց Հերակլին և ինքը վերադարձավ: Մեր պատմագրի տեղեկությամբ, խաքանը զորք ղրկեց 627 թվին իր եղբորորդու առաջնորդությամբ, «որոյ ի պատիւ իշխանութեանն իւրեանց Շաթ անուն կարդային»: Շաթ հատուկ անուն չէ, այլ տիտղոս, **ishād** կամ **al-shad**, *ըստ արար հեղինակների:*

Շաթ մտավ Աղվանք և Ատրպատական, պատգամ ղրկեց Խոսրովին, պահանջելով որ հետ քաշե իր զորքերը կայսերական հողերից և վերադարձնե խաչափայտը: Հակառակ դեպքում, սպառնաց մեծամեծ չարիքներ հասցնել: Խոսրով ծաղկելով իր զայրույթը պատասխանեց, ցավ հայտնելով, որ «իր եղբայր Ջեբու խաքան», խախտելով հին բարեկամությունը, խաբվել է «իր ծառա հռովմայեցու» խոստումներից: «Տուրկանն դարձաւ յաշխարհ իւր»: Տուրկան հատուկ անուն չէ, այլ գավառական բառ է և նշանակում է պատգամավոր (հմմտ. ուզնկան):

Խաքանի և Խոսրովի այս բանակցությունը գրեթե նույնն է, ինչ որ նախորդ գլխում տեսանք: Խոսրով ղրկեց խաքանի դեմ Ռոճվեհ զորավարին[1]: *Պարսից զորքը մեծ ջարդ կրեց 627 թվի դեկտեմբեր 12, որից հետո սկսվեցին խլրտումներ պարսից արքունիքում: Խոսրով գահընկեց եղավ ի նպաստ իր որդու Կավատի:*

ԺԳ գլուխը տալիս է Խոսրովի սպանության մանրամասնությունները: Ուշադրության արժանի է հեղինակի համակրությունը հանդեպ Կավատի, «որ էր բարեխոհի, ողորմած առ ամենայն աշխարհս և առ ծառայս իւր»: Նա արձակեց բանտից կալանավորներին: Ազատ արձակեց և Վիրո կաթողիկոսին, որին նվիրված է հետևյալ ԺԴ գլուխը:

Վիրո կաթողիկոսը, Աղվանից իշխանների ապստամբության միջոցին, «փախստեայ անկանէր ի դուռն արքունի» և արժանանալով թագուհու հովանավորության, փրկվեց մահից: Բայց մնաց կալանավոր պարսից դրան, շարունակելով ստանալ անարգել «զհաս իշխանութեան աթոռոյ»:

Ազատվեց արգելարանից շնորհիվ Կավատի, ուրեմն 628 թվի փետրվարի 24-ից հետո, եկավ հայրենիք, կարոտակեզ «համբուրեց եկեղեցիների դռները ու հատակները», և հազիվ սփոփված իր երկարատև վշտից, նոր աղե-

[1] Ռոճվեհ, Սեբեոսի մոտ Ռոճվեհան (էջ 94, ո՛չ Ռոճ Վեհան: Էջ 79՝ Ճոոճ Վեհան, կարդալ Ռոճվեհան), Թեոփանեսի մոտ **Razates**, որ աղավաղված է: Ռոճվեհ պարթև ձևն է պարսկերենի՝ Ռոզբեհ, որ նշանակում է բառացի «լավօրյա», այսինքն՝ բարեբախտ:



տի մեջ ընկավ: Ջեբու խաքանն իր որդու Շաթի հետ նորեն եկավ Աղվանք և գնաց պաշարեց մի անգամ ևս Տփղիսը: Երկու ամիս նեղելով քաղաքը, վերջապես տիրացավ նրան, սպանեց պարսիկ կառավարչին և մի վրացի իշխանի, նախապես հանեց նրանց աչքերը, «փոխանակ զի կոյր նկարեցին զպատկեր նորա»: Ակնարկ է վերև հիշված ծաղանքին:

Խաքանը թողեց երկրում իր որդուն և ինքը վերադարձավ: Սա պատգամ է ղրկում պարսից մարզպանին և Վիրո կաթողիկոսին գալ հնազանդվել իր իշխանության: Վիրո տատանվում էր, մանավանդ որ մարզպանը փախել էր Պարսկաստան, վախենում էր, որ պարսիկները նորեն իրեն պատժեն, եթե Շաթի կողմն անցնի: Ժողովուրդը ապաստանեց ամուր տեղերը: Վիրո ևս քաշվեց Արցախի լեռները: Դրությունը շատ ծանր էր. թշնամու սարսափը և մյուս կողմեն սովը հարկադրում էր մի հնար գտնել դուրս գալու անորոշ վիճակից: Չարաբերդ ամրոցում խորհուրդ արավ երկրի մեծամեծների հետ, ուր որոշվեց, որ կաթողիկոսը գնա անձամբ ներկայանալու խազար իշխանին: Շաթի բանակը Պարտավ քաղաքի մոտ էր: Մեծ նվերներով Վիրո ներկայացավ նրան, հաջողեց ամոքել գազանին և ազատել գերիներին[1]:

ԺԵ գլուխը կրում է Վիրոյի ինքնաձեռն ստորագրությունը, ուր նկարագրում է սովը և սոսկալի ժանտախտը:

ԺԶ գլխում պատմում է, թե խաքանը ղրկեց իր որդուն՝ Շաթին, զորավար Չորպան-Թարխանի առաջնորդությամբ հավաքելու հարկերը, որ տալիս էին աղվանցիք պարսիկներին: Շահր-Վարազ մի գունդ ղրկեց նրանց դեմ, բայց անհաջող: Խազարները հաղթեցին և վճռեցին ձեռք դնել նաև Հայոց երկրի վրա: Այս միջոցին լուր եկավ խաքանից, որ ընտանեկան կռիվներ կան և Շաթը պետք է անմիջապես վերադառնար: Հետաքրքրական է Շահր-Վարազի ճառը կամ հրապարակախոսությունը, ինչպես պատմագիրն է արտահայտվում, ուղղված իր զորքերին, ուր ակնարկում է, թե կարող է կտրել «զշառաւիղս Սասանականին» և ինքը թագավորել: Հիշում է պարծանքով, որ ինքն էր, որ վանեց «զորդին Հռոմելայ», այսինքն՝ կայսեր, և այժմ կարող է փշրել հյուսիսականներին: «Եւ զիա՞րդ ոչ փրկեաց զնոսա դիեցիկն իւրեանց, յոր յուսացեալն էին խաղալիկ ի ձեռին և զգուէին (և ո՛չ թե «զգուեն», ինչպես տպված է) ի գիրկս, որպէս մանուկ ընդոծնի իւրեանց»:

[1] Կաթողիկոսին օգնեցին թաքցրած գերիներին որոնելու խաքանի կողմեն նշանակված մարդիկ՝ «արս յայտնիս զորս **թնդիւնս** անուանեն»: Ընդգծած բառս, որքան մեզ հայտնի է, առանց մեկնության է: Մեզ թվում է, որ խազար բառ է և պաշտոնեության կոչում: Ավարաց խաքանի մի ներկայացուցիչը Խերսոն քաղաքում կոչվում էր **toundounos**, Հուստինիանոս II-ի օրով 710 թվին, ըստ Թեոփանեսի (էջ 579): Մեզ թվում է, որ նույն բառն է, ինչ որ հայացրած թնդյուն, փոխանակ թ(ու)նդուն-ի:

Նիկեփոր պատրիարքը պատմում է, որ Ջեբու խաքանը կայսեր ներկայացրեց, 626 թվի տեսակցության միջոցին, իր որդուն, որ շատ մատաղ էր. և կայսրն առավ նրան իր ծնկների վրա և փայփայեց: Թվում է, թե մեր պատմագիրը գիտե այս դեպքը, որին ակնարկում է Շահր-Վարազի բերանով: Խաքանի որդին Շաթն էր, և նրա հասցեին է ուղղված Շահր-Վարազ խոսքերը, թե ի՞նչ օգուտ տվավ կայսեր իր դիեցիկը (*ծծկեր երեխան - Պ. Հ.), որին զգվում էր որպես իր ընդոծնի մանուկ:*

Մեր պատմագիրը գիտե, որ արքայորդին մանուկ էր, ուստի գրում է՝ «Թողեալ զօրս պատերազմողս ի ձեռս որդւոյն իւրոյ Շաթայ հանդերձ դաստիարակօք» (Բ, գլ. ԺԴ):

Գիտե նաև, որ Շահր-Վարազ թագավորել է: Կավատ մեռավ 5 ամսից հետո (ըստ Սեբեոսի՝ 6)[1], *ուրեմն թագավորեց 628 թվի փետրվարի 24-ից մինչև օգոստոս: Նրա հաջորդ Արտաշիր, ըստ Թեոփանեսի[2], իշխեց միայն յոթ ամիս, բայց Միքայել Ասորի տալիս է նրան մի տարի և տասն ամիս[3]: Մեր պատմագիրն ևս, թվում է, նույն տեղեկությունն ունի: Արտաշրից հետո Շահր-Վարազ գրավեց գահը, թեև երկար չվայելեց և սպանվեց հազիվ երկու ամիս թագավորելուց հետո:*

Շահր-Վարազի «հրապարակախօսութիւնը» Կավատի օրով էր, ուրեմն 628 թվին, երբ նա տակավին չէր որոնում փառասիրական ձգտումներ: Պատմագիրը, անշուշտ, հետին թվով է նրա բերանը դնում, թե կարող է վերջ տալ Սասանյան տան և ինքը թագավորել:

Այսպես, քննած դրվագի, այսինքն՝ երկրորդ գրքի Թ-ԺԶ գլուխների, հիմը միանգամայն պատմական է: Ընտիր տեղեկությունները սակայն ազատ չեն ինչ-ինչ թերություններից: Կան հակաժամանակյա կետեր, կան շփոթություններ: Ակներև է, որ հեղինակը օգտվել է վստահելի աղբյուրներից և թերությունները, թերևս, վերագրելի են իրեն:

Այն կարծիքն էինք հայտնել, որ բուն աղբյուրը հավանորեն Վիրո կաթողիկոսի Հիշատակարանն է: Վենետիկի բանասերը ծառացել է և այս ենթադրության դեմ այն հիմամբ, որ Վիրո չէր կարող իրեն մասին գրել «այր հանճարեղ և իմաստուն»: Առարկությունս պարզամիտ է: Օգտվել չի նշանակում արտագրել և մեր մտքից հեռու էր Վիրոյի գրության պատճեն համարել ինչ որ մեզ ավանդում է Կաղանկատվացին:

[1] Սեբեոս, էջ 20:

[2] Theophanes, p. 504.

[3] Michel le Syrien, Chronique, Editée pour la premiere fois et traduite en français par J.-B. Chabot, t. II, Paris, 1901, p. 410.



Մենք մնում ենք մեր կարծիքին: Վիրոյի մի Հիշատակարանը հասել է մեզ Կաղանկատվացու ընդօրինակությամբ. «Ես Վիրոյ՝ Աղվանից և Լփնաց և Չողայ կաթողիկոս թողում ասել» և այլն (Բ, գլ. ԺԵ): Այստեղ Վիրո նկարագրում է սոսկալի սովը և ժանտ ցավը, որպես հետևանք պատերազմների: Վերնագրի մեջ հիշված է և «գերութիւն», բայց այս մասին ոչինչ չկա բնագրում: Հավանորեն Հիշատակարանը թերի է: Վիրո գլխավոր դերակատարն էր խաքանի արշավանքների միջոցին, անձամբ գնաց նորա մոտ և թեթևացրեց երկրի դրությունը: Հնարավո՞ր է, որ նա գրիչ առնե ձեռը ճառելու սովի և հիվանդության մասին, առանց խոսելու իր առաքելության վրա: Ի՞նչ առթիվ պիտի գրած լիներ երեք զորավարների մասին, ինչպես ինքն է արտահայտում՝ «սովն և սուրն և մահն», եթե ոչ խազարների արշավանքների և իր կատարած փրկարար դերի:

Այս դրվագի մեջ Կավատ ներկայացրած է համակրելի գծերով, մինչդեռ արյունարբու մեկն էլ նա էր, որ սպանեց ոչ միայն հորը, այլև բոլոր եղբայրներին, թվով 40: Սակայն Վիրոյի համար Կավատ մեծ բարերար էր, «ողորմած», որպես պատճառ իր ազատության: Կաղանկատվացու աղբյուրն այս կետում Վիրոյի ենթադրյալ գրությունն է:

Տեսանք, որ մեր պատմագիրը խոստանում է սկսել 625 թվից, բայց սկսում է 614 թվից: Մեզ թվում է, որ խոստումն առնված է Վիրոյի Հիշատակարանից: Վիրոյի նպատակն է եղել պատմել ինչ որ ինքն է կատարել 628 թվին խաքանի մոտ, և բնականորեն պետք է տեսել խոսել խազարների առաջին արշավանքի մասին, և սկսել ուրեմն 626 թվից:

Իսկ մեր պատմագիրն իր կողմից ավելացրել է Ժ և ԺԱ գլուխները, որ ծրագրից դուրս են: Այսպես միայն կարելի է մեկնել խոստումի և գործի մեջ եղած անհետևողականությունը:

Ա գրքի ԺԸ գլուխը քաղված է Եղիշեից, *բայց* մեր պատմագիրն ավելացրել է Վաչեի անունը, որ անծանոթ է Եղիշեին և Ղազարին: Երկրորդ գրքի Գ գլուխը Կորյունից է, բայց վերջին կտորը՝ Խորենացուց: Հետևապես և Վիրոյի Հիշատակարանից քաղած տեղեկություններին կարող էր կցել ուրիշները[1]:

Զարմանալի պիտի չթվե, որ [Կաղանկատվացին] Վիրոյին չէ հիշում որպես աղբյուր: Հիշյալ քաղվածների առթիվ ևս չեն հիշատակվում ո՛չ Եղիշե և ո՛չ Կորյուն: Բ գրքի ԻԹ գլուխը Իսրայելի մասին այլ աղբյուր չունի, քան Հովելի նամակը (գլ. Լ) նույն նյութի վերաբերյալ: Ինքը պատմագիրը՝ այնպես է պատմում, կարծես անկախ է Հովելից, սակայն բավական է համեմատել՝

[1] Կարծում ենք, որ նախարանի մեջ նահանջների հաշիվը և Հայկական թվականը ևս մեր հեղինակի գիտուն կցվածքն է: Հաջորդ գլուխներում ժամանակն որոշվում է Խոսրովի և Արտաշրի թագավորության տարիներով:

համոզվելու, որ փաստացի մասն այնտեղից է առնված, միայն գրական համեմն է իրենը: Հովելի նամակը բռնում է երեք էջ, իսկ պատմագիրը նյութը ընդարձակել է գրական թարմատարներով մինչև կրկնակի ծավալը: Հավանորեն նույն կերպով է վարվել և Վիրոյի Հիշատակարանի հետ: Հայր Հացունի նկատում է, որ որպես Հիշատակարան՝ շատ երկար է: Անշուշտ: Սակայն մեր առաջ Վիրոյի բնագիրը չէ, այլ մի շարադրություն՝ հիմնված Վիրոյի տեղեկությունների վրա:

ԺԵ գլխում, որ կրում է Վիրոյի անունը, ուշագրավ է հետևյալ տեղը. «Այլ օրինակ մերոց փորձութեանցս ոչ կարեմք գտանել, բայց միայն զաւերն Երուսաղէմի ի Վեսպասիանոսէ և ի Տիտոսէ»:

Այս շունչը զգալի է և Թ գլխի բացագանչության մեջ, «ո՞վ սքանչելի պատմութեանս..., որում ո՛չ համեմատէ ո՛չ դարուցն առաջնոց նշանագիրք» և այլն, ինչպես և ԺՁ գլխի համանման համեմատության մեջ. «Մի՞թէ առաւել իցեն քան զընկղմիլն Փարաւոնի» և այլն:

Ուշագրավ են նաև Վիրոյի խոսքերը՝ ուղղված Չարաբերդի ժողովականներին. «Արք եղբարք, դուք ինքնին գիտէք **զհարուածս** *մեծամեծս*, **զսն և զդղումն** *անյազ և անողորմ սրոյն, որ վասն մեղաց մերոց առաքեցաւ մեզ և* **ընկղմեաց** *յանկարծակի զանձինս մեր» (գլ. ԺԴ):*

Այս խոսքերը հիշեցնում են նախաբանի այն տողերը, որ քննեցինք վերև, ցույց և ազդել են տողերի հեղինակի վրա, եթե իրոք Վիրոյի Հիշատակարանից են առնված և ո՛չ թե մեր պատմագրի թելադրություն է:

Խազար իշխանին ներկայանալու տեսարանը նկարագրված է ականատեսի գրչով և կարծում ենք արտագրված է Վիրոյի Հիշատակարանից: Պատմագիրը փոխել է միայն առաջին դեմքը երրորդի, պահելով պատահաբար սկզբի «տեսաք», եթե միայն սրբագրելու չէ «տեսան»: Այնուհետև ամեն տեղ երրորդ դեմքով է պատմում, ինչպես՝ «և իբրև մուծին զնոսա»..., *«և փոխեալ ի* **նոցանէ**»..., *«նստել* **նոցա**»..., *«իջուցին* **զնոսա**» *և այլն: Մի տեղ կարդացվում է՝ «զընծայ... բարձեալ ի բազկաց* **մերոց**»*: Սխալ ընթերցում է և անիմաստ: Վիրո բերել էր ընծաները՝ դարսած «կահավարից և սայլից» վերա, երբ մտնում են իշխանի մոտ, ընծաները առան բազուկների վերա, և հետո «փոխեալ ի նոցանէ զօժիտսն ի բազուկս* **իւրեանց**»*, այսինքն՝ ընդունում են ընծաները և միայն կաթողիկոսին ներկայացնում իշխանին: «Բարձեալ ի բազկաց* **մերոց**» *սխալ է. պետք է կարդալ՝ «բարձեալ ի բազկաց* **վերայ**»*: Կաղանկատվացու այժմյան հրատարակությունը՝ Պարիզի, թե Մոսկվայի (7), վխտում է նման սխալ ընթերցումներով:*

Մեր տպավորությունն է, որ Կաղանկատվացին ինչ որ գիտե Վիրոյի գործունեության մասին՝ պարտական է Վիրոյի ենթադրյալ Հիշատակարանին: Այս է պատճառը, որ նա չգիտե, թե ե՞րբ և ի՞նչ հետագա պայմանների մեջ



մեռավ Վիրո: Նրա դրվատական խոսքերը կաթողիկոսի հասցեին հատուկ աղբյուր ունենալու պետք չունին: Սովորական գովեստ է. «հանճարեղ իմաստուն, զօրաւոր ի բանս» թե՛ թագավորների հետ խոսելու համար և թե՛ ռամիկների: «Մանաւանդ ի թարգմանութեան լեզուին Պարսից վարժեալ ամս քսան և հինգ ի դիպահուշ առ դրանն Խոսրովու». ուզում է ասել, որ պարսկերեն լավ սովորել էր 25 տարի պարսից արքունիքում մնալով: Այս թիվը քննության պետք ունի, գոնե մեզ վստահություն չէ ներշնչում: Կասկածելի ենք համարում նաև, որ Վիրո մասնակցած լիներ Աղվանից իշխանների ապստամբական շարժումներին՝ ընդդեմ Խոսրովի: Թվում է, թե պատմագրի սոսկ ենթադրություն է, թե «յանցական գտաւ ընդ ապստամբողս» աշխարհին Աղվանից, մանավանդ որ *ոչինչ չի հայտնում ապստամբության էության և նպատակի վերաբերյալ:*

Վիրոյից հետո, Կաղանկատվացին հիշում է Ուխտանես, Եղիազար, Ներսես, Սիմեոն և Միքայել: Իսկ գրքի վերջում հայրապետական ցուցակի համաձայն, Վիրոյից հետո մինչև Ուխտանես հաջորդել են Զաքարիա և ապա Հովհան: Այնտեղ նշանակված են նաև կաթողիկոսության տարիները.

1. Վիրո 34 տարի
2. *Զաքարիա 17 կամ 15 տարի*[1]
3. Հովհան 25
4. Ուխտանես 12
5. Եղիազար 6
6. Ներսես 17 1/2
7. Սիմեոն 1 1/2
8. Միքայել 35

*Այս թվերը ստուգելու համար հաստատուն կռվան ունինք Սիմեոնի կաթողիկոսության տարին: Սորա գումարած ժողովը, որի նպատակն էր «Չեռնարկ», այսինքն՝ դավանաբանական երաշխիք տալ, գումարվեց Հիջրի 85 թ.=704 հունվարի 14-705 հունվար 2 (Գ. գլ. Ը)*[2]*: Ժողովը գումարված է հավանորեն Սիմեոնի գահակալության տարին, 704 թվին: Այստեղից մեկնելով կստանանք նախորդ կաթողիկոսների համար հետևյալ տարիները մոտավորապես՝*

*Սիմեոն 704*
Ներսես 686-704
Եղիազար 680-686

[1] Ինչպես ունի Կիրակոս Գանձակեցի («Պատմութիւն Հայոց», Մոսկվա, 1858, էջ 114), որ արտագրում է կաթողիկոսների ցուցակը:
[2] Առընթեր տրված է և Հայկական թվական՝ 148=699, որ սխալ է և հետո ավելցրած է. հարազատ է իրոտից ամսվան հիշատակությունը = մայիս 704 թ.:

Ուխտանես 668-680
Հովհան 643-668
Զաքարիա 626-643, ավելի ճիշտ՝ 628-643
Վիրո 594-628:

*Վիրոյի նախորդն էր Արաս, որ գահակալեց 551 թվին և կառավարեց 44 տարի, ուրեմն 551-596 (Բ, գլ. Դ):*

Կարծես հետևողական են թվերը: Սակայն Վիրոյի նկատմամբ գոնե անընդունելի, քանի որ գիտենք, որ նա գերությունից դարձավ Կավատի օրով 628 թվին, և կենդանի էր տակավին 630 թվին: Հարկավ, կարելի է ուղղել այս անհարթությունը, հաշվելով Վիրոյի գահակալությունը Արասից հետո՝ 596 թվից մինչև 630 թիվը:

Սակայն ուրիշ դժվարություն կա: Զաքարիա կաթողիկոսի մասին ցուցակըն ունի հետևյալ տեղեկությունը. «Սա **յերաշխի** *առ զմեծ քաղաքն* **Պարտաւ, և աղօթիւք խիրովք զերծոյց** *ի գերութենէ զբազում անձինս:* **Եւ ձեռնադրեաց եպիսկոպոս Միննաց զՎրդանէս ոմն** *անուն յանհաւանութեան Հայոց*»[1]:

Արդ, Սյունյաց եպիսկոպոս Վրթանես ապրում էր VI դարու երկրորդ կեսին, ինչպես երևում է Հովհաննես Գաբեղենացի կաթողիկոսի Թղթից՝ ուղղված այս եպիսկոպոսին[2]: *Հովհաննես կաթողիկոս մեռավ Կ. Պոլիս 574 թվին: Հետևաբար Վրթանես 574 թվին արդեն եպիսկոպոս էր և ուրեմն Զաքարիա Աղվանից կաթողիկոսն ևս պետք է գահի վերա լիներ այդ ժամանակները, այն ինչ հայտնի է Գաբեղենացու մի ուրիշ Թղթից, որ այդ ժամանակ Աղվանից կաթողիկոսն էր Արաս*[3]:

Մի ուրիշ անպատեհություն: Կաղանկատվացին Բ գրքի Ժ գլխի մեջ հիշում է «քահանայ ոմն անուն Զաքարիա, այր սուրբ, որ էր վանական Պարտաւայ եկեղեցւոյն, հեզ և հանդարտ, որ եդ զանձն իւր ի վերայ նոցա և երդմամբ, ազգի ազգի հնարիւք զերծոյց զբազում անձինս քրիստոնէից՝ աղօթիւք իւրովք երաշխաւորեալ զնոսա, նաև զՀրէից և զհեթանոսաց: Ուստի յետոյ զովեցաւ գործ նորա և վկայեալ յամենեցուն կարգեցաւ յեպիսկոպոսութիւն աթոռոյն Աղվանից»:

Անտարակույս է, որ խոսքը նույն Զաքարիայի մասին է և ցուցակը, տեղեկությունը քաղված են այստեղից: Սակայն Պարտավի այս քահանան գործում էր 624 թվին, ըստ մեր պատմագրի, և գերիները Հերակլի բերած գերիներն էին: Թեոփանես հավատացնում է, որ Հերակլ՝ Ատրպատականի առաջին արշավանքից, 623 թվին, վերադարձավ ձմերելու Աղվանք, բերելով հետը 50 հազար գերի, որոնց մարդասիրաբար ազատ արձակեց[1]*: Հետևաբար Զաքարիայի կաթողիկոսությունը պետք է ավելի ուշ լիներ, Վիրոյից հետո: Այս դեպքում նա չէր կարող Վրթանեսի ձեռնադրողը լինել: Պետք է հրաժարիլ այս տեղեկությունից:*

Պատմության մեջ Զաքարիա և Հովհան բնավ չեն հիշվում և Ուխտանես գահի վերա է Կոստանդի 19-րդ տարին, 660 թվին, այն ինչ ցուցակի տվյալների համաձայն, միայն 668 թվին կարող էր գահակալած լինել: Փորձեր անել հաշտեցնելու հակասական տեղեկությունները անօգուտ է:

Հավանական է, որ Վիրո վախճանած լինի 630 թվի վերջերը կամ 631 թվին, ամեն պարագային Շաթի հեռանալուց քիչ հետո, որով և կբացատրվի, որ իր Հիշատակարանի մեջ ակնարկ չկա 630 թվից հետո կատարված դեպքերի մասին:

Ինչ վերաբերում է Վիրոյի գերության, 25 տարին չափազանցրած է: Պատմագրի հաշվով գերությունը տեղի պիտի ունեցած լինի (628-25=)603 թվին:

Սակայն քաղաքական ընդհանուր կացությունը հիմ չէ տալիս ենթադրելու որևէ ապստամբական շարժում Աղվանքում, ոչ էլ Հայաստանում: Գիտենք, որ Խոսրով գերեց 611 թվին Հովհան կաթողիկոսին, որ Հունական Հայաստանի հովիվ էր: Ի նկատ առնելով, որ Աղվանք այդ միջոցին քաղկեդոնական հակումներ ունեին, թերևս Վիրո ևս տուժած լինի և վիճակված Հովհանի բախտին:

## Դ

Անցնենք Ջևանշերի պատմության, որ բռնում է նույն երկրորդ գրքի ԺԷ-ԼԵ գլուխները: Հայր Հացունին կարծում է, որ Կաղանկատվացին սկսել է և վերջացրել իր գործը 628 թվին: Բայց «Ջևանշերի փառքը արծարծել է պատմագրի հոգին», և նա վերստին լծվել է աշխատանքի երեսնամյա դադարից հետո, 670 թվականին, գրելու հերոսի քաջագործությունները: Եվ զարմանալի է, որ «ոգևորված» պատմագիրը վայր է դրել գրիչը, երբ դեռ հերոսը կենդանի էր, և ավարտել իր գովքը, երկար կյանք մաղթելով փառավոր իշխանին: Ի՞նչն էր արգելել տանել հերոսին մինչև գերեզման: Արդյո՞ք պատմագրի մահը, հայր Հացունին այս մասին չէ մտածել:

Այս ավելի քան տարօրինակ կարծիքը ջրելու անվրեպ միջոցն է պատ-

[1] Առնված է Մովսես Կաղանկատվացու Գ գրքի ԻԳ գլխից, էջ 73:
[2] «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 78:
[3] Անդ, էջ 81 և որտեղից օրինակել է Կաղանկատվացի, Բ գիրք, գլ. Է:

[1] **Theophanes**, p. 475.

մական քննությունը, որին կենթարկենք պատմագրի հաղորդած տեղեկությունները հերոս Ջևանշերի «փառքի» վերաբերյալ:

Ո՞վ էր Ջևանշերը: Հատվածի սկիզբը, ԺԷ գլխի մեջ, պատմագիրը հայտարարում է, որ գտել է նրա ծագումը «յստոյգ և ի բուն պատմագրաց»: Պատմում է, որ Խոսրով II գահ բարձրանալով կոտորեց իր Բնդո և Վստամ քեռիներին և բոլոր ազգականներին, մոտ 60 հոգի: Միայն մի հոգի, ոմն Միհրան, «առեալ երդս իբրև երեսուն հազար», փախավ Աղվանք, անցնելու Խազրաց աշխարհը: Պարտավ հասած՝ ստացավ թագավորից ներում և թույլտվություն հաստատվելու Աղվանք, փոխանակ գնալու թշնամի խազարների մոտ: Միհրան գնաց Գարդման, շինեց Միհրավան քաղաքը, դավով սպանեց տեղական տասներկու իշխաններին և տիրացավ երկրին: Մեռավ թողնելով մի որդի՝ Արամայել, սրա որդին էր Վարդ, իսկ Վարդի որդին՝ Վարդան Քաջ, շինող Գարդմանա բերդի: Քաջն Վարդան ճաշի կանչեց Եռանշահիկ իշխաններին, սպանեց բոլորին, մոտ 60 հոգի, խնայեց միայն Զարմիհր Եռանշահիկին, որ իր փեսան էր (8): Այս Վարդանի թոռնորդին էր Ջևանշեր.




Խոսրով գահակալեց 590 թվին: Ջևանշեր ծնած պետք է լինի մոտավորապես, ինչպես կտեսնենք, 615 թվին: Մեր պատմագիրը 590-615 թվականներին, ուրեմն 25 տարվան մեջ, հաշվում է յոթն սերունդ, Միհրանից մինչև իր թոռնորդու թոռնորդին Ջևանշեր: Կատարյալ անհեթեթություն:

Առաջին գրքում գլ. ԻՁ կա Աղվանի ժողովի արձանագրությունն, ուր մասնակցողների թվում գտնվում է նաև Գարդմանի տեր՝ Քաջն Վարդան: Ժողովը գումարված է Վաչագան թագավորի հրամանով, իսկ սա գահ էր բարձրա-



ցել, ինչպես պատմագիրն է հայտնում, Վաղարշ թագավորի օրով (484-488): Ասել է թե, 590 թվին Աղվանք ոտ կոխած Միհրան պարսիկի թոռնորդին Քաջն Վարդան ապրում էր գրեթե մի դար առաջ, քան իր նախահայրը: Աներևակայելի անհեթեթություն:

Եկվոր տոհմը գրավում է երկիրը՝ *ոչնչացնելով նախկին տերերին, որոնք սերում էին Առանից և կոչվում Հայկազյանց ազգ Եռանշահիկ* (իմա՝ Առանշահիկ): Հիշելով այս պարագան, պատմագիրն ավելցնում է՝ «**զոր վերագոյն գրեցաք ի մատենիս**», *ակնարկելով Ա գրքի ԺԵ գլուխը, ուր թված են Հայկազյանց սերունդի տասն թագավորները: Հետևաբար կասկած չի կարող լինել, որ* **Միհրանի պատմությունը պատկանում է Կաղանկատվացու գրչին,** *այն հեղինակի, որ գրել է Ա գիրքը:*

Արդ, հնարավո՞ր է, որ այս անհեթեթ պատմության հեղինակը լինի ժամանակակից Միհրանի: Խելք կորելու բա՞ն է, որ 628 թվին ապրող մի հեղինակ այսքան խելար վերաբերում ունենա իր ժամանակակից նորեկ տոհմի ծագման խնդրին: Ուշագրավ է նաև, որ ենթադրյալ ժամանակակից պատմագիրը պետք է ունեցել դիմելու «ստոյգ և՛ բուն» պատմագիրների՝ մեզ հաղորդելու հակատրամաբանական մի առասպել:

Իրավունք ունինք հետևցնելու, որ պատմագիրը ժամանակակից չէ, և չէ գրել իր գործը ո՛չ 628 և ո՛չ 670 թվին: Միայն դարերով հեռու կանգնած գրչին ներելի է մի այդպիսի անգիտակից վերաբերում դեպի անցյալը. մի միջակ հավաքող, որ ընդօրինակել է ձեռքն ընկած նյութերը՝ առանց քննության և քննելու ընդունակության:

ԺԸ գլխի մեջ խոսքը արաբական արշավանքների մասին է: Հազկերտ թագավորին օգնության են վազում հպատակ աշխարհների տերերը: Վարազ-Գրիգոր՝ Ջևանշերի հայրը, ևս պատրաստ է իր նպաստը բերելու, որպես ծնունդ «Արտաշրական տոհմի», այսինքն՝ Սասանյանների նախահոր՝ Արտաշիր Պապականի սերնդի: Հեղինակն ուրեմն նույնն է, որ պատմեց մեզ Միհրանյան ավանդությունը:

Վարազ-Գրիգոր ավելի հարմար է համարում ղրկել իր երկրորդ որդուն՝ Ջևանշերին «խրոխտ և սիգաճեմ, չքնաղագեղ ունելով տիպ»: Երեք հազար զորքով Ջևանշեր գնում է ներկայանում Ռոստոմ զորավարին «նախքան զիշխանսն Սիւնեաց և զսպարապետն Հայոց» և ընդունվում «իբրև զեղբայր կամ զորդի» և «ըղձալի ամենեցուն»:

Ռոստոմ բոլոր ուժերի գլուխն անցած մեկնում է Հազկերտի մոտ՝ Տիզբոն: Մանուկ Ջևանշերին ներկայացնում թագավորին, որ ձեռքը գլխին դնելով գովեց և կոչեց սպարապետ Աղվանից:

Զորքն անցավ Դկղաթ (Տիգրիս) գետը, հասավ Վեհկավատ գավառ և բանակեց «յայնկոյս Մեռեալն ջրոյ»: Թեթև ընդհարումից հետո, մեծական

ամսին, Քրիստոսի ծննդյան օրը, Ռոստոմ 30 հազար հեծյալ և 10 հազար հետևակ զորքով ճակատեց Հագարու որդվոց դեմ, որ «եկեալ ի Կատշանէ» բազմաթիվ հեծյալ և 20 հազար հետևակ զորքով նախահարձակ եղավ պարսից վերա:

Աղվանից սպարապետը երկու հակառակորդ սպանեց, բայց ստացավ երեք վերք և իր ձին՝ չորս խոց, և արյունաշաղախ անցավ գետը և տեսնելով, որ զորքը պարտված է՝ շտապեց արքունի դուռը: Հազկերտ հրամայեց «տալ նմա ապարանս և արքունի բժշկաց կալ առ նմա»: Երբ ողջացավ՝ մտավ թագավորի մոտ. սա ձեռքը դրեց Ջևանշերի գլխին և գովքն արեց բոլորի առաջ և տվավ նրան զորավարական նշանակ և փող, երկու նիզակ ոսկի, երկու վահան ոսկեքանդակ, որ նրա առաջ միշտ ջրջեցնեն, այլ և բարձր դասելով բոլորից, կապեց նրա մեջքին «գոտի ոսկի ընդելուզեալ մարգարտով, և սուսեր ոսկեսարայն, ապարանջանս բազկացն, և պսակ ցանկալի ի գլուխ նորա, ոսկեսարեան եռուն նմա զանկապանս մարգարտով և զումարտակ նոյնգունակ շուրջ զպարանոցաւն, ագուցին նմա արջմաքար ստորս չորիւք դրօշակօք և զրատս սնդոյ, մետաքսառէջս և ոսկեթեզան փարուագով»: Թագավորը նրան շնորհեց նաև «զիւղաստանեայս և գետս ձկանց»:

Ջևանշեր գրավում է Խոռազատ զորավարի ուշադրությունը, երբ քաջ միջամտությամբ վերջ է դնում Ատրպատականի և Մայի զորավարների միջև ծագած ընդհարումներին: Արաբները պաշարում են Տիզբոն՝ «ամիսս վեց», Խոռազատ և Ջևանշեր շարժում են նրանց դեմ: Ջևանշեր երեք հազարով հետ է մղում թշնամուն գետի այն կողմ և թույլ չէ տալիս Դկղաթ գետն անցնելու «զամիսս վեց», մինչև որ Հազկերտ թագավորին փախցնում են Դաստակերտ և այնտեղից Բեկղաղ: Արաբները հետապնդում են, Ջևանշերը քաջությամբ կռվում է և թշնամու գլուխները կտրած՝ բերում ձգում է թագավորի առաջ: Պարսիկները հաղթում են գլխավոր ճակատում: Եվ Ջևանշեր յոթն տարի կռվելուց հետո, «տասն և մի դժնդակ վէրս յանձն առեալ» գալիս է Ատրպատական: Պարսիկ զորավարը առաջարկում է իր դուստրը այնքան հռչակված Ջևանշերին, բայց սա մերժում է «յանօրինացն առնուլ կին» և վերադառնում իր հոր մոտ՝ Աղվանք: Այս առթիվ կռիվ է ծագում իր և պարսիկ զորավարի մեջ, հաղթանակում է Ջևանշեր:

Հազկերտի 20-րդ տարին կործանվում է պարսից պետությունը՝ հազարացվոց տիրապետության երեսուն և մի տարին և Ջևանշերի տասնևհինգ ամ սպարապետության (Բ, գլ. ԺԹ):

Զտենք պատմական հատիկներն այս վիպական որոմներից: Ռոստոմ և *Խոռոխազատ (և ո՛չ Խոռազատ)* անունները հայտնի են Սեբեոսի պատմությունից: Ռոստոմ, Ատրպատականի իշխան, գնաց արաբների դեմ՝ Հազկերտի հրամանով: Նրա հետ էին Մուշեղ Մամիկոնյան երեք հազար և Սյունյաց Գրիգոր իշխանը հազար մարդով: Ճակատամարտը տեղի ունեցավ, ըստ Սեբեոսի, Հերթիճան գյուղի մոտ: Պարսից զորքը պարտվեց և զորավարը սպանվեց, զոհվեցին նաև Մուշեղ և Գրիգոր[1]*: Հույն և արաբ աղբյուրները կոչում են այս ճակատը Կադեսիայի ճակատ: Կադեսիա (**Kadesiya**) գյուղ է այժմյան Կուֆա քաղաքի մոտ և Կադեսիայի հարևան է Հերա գյուղը, որտեղից հետևեցնելու է, որ Հերթիճան նույնն է ինչ որ Հերա և որ կռիվը տեղի է ունեցել երկու գյուղերի սահմանում:*

Կադեսիայի հաջողությունից հետո արաբները խուժեցին Տիզբոնի վերա և առան վեցամսյա պաշարումից հետո: Նահանջող պարսիկ ուժերը մի երկրորդ ընդհարում ունեցան Ջալուլա տեղում հետապնդող արաբների հետ: Վճռական ճակատը խմբվեց Նեհավենդի մոտ, որ որոշեց ընդմիշտ Սասանյան պետության բախտը:

Տարաբախտաբար այս երեք գլխավոր մարտերի ժամանակը ճշտիվ հայտնի չէ: Տարաձայնությունները գալիս են հին մատենագիրներից, և նոր պատմաբանները դժվարանում են հաշտեցնել հակասական տեղեկությունները: Հավանորեն, Կադեսիայի կռիվը վերաբերում է 637 թվին, Տիզբոնի պաշարումը և Ջալուլայի ճակատը ևս նույն տարին, իսկ Նեհավենդի պարտությունը՝ 642 թվին[2]*:*

---

[1] **Սեբեոս**, էջ 107:

[2] Արաբական վկայությամբ, Կադեսիայի կռիվը տեղի ունեցավ Դամասկոսի գրավումից մեկ ամիս հետո: Դամասկոսի գրավումը հետևեց Յարմուկի ճակատին, որի համար տակավին Մասուդի (**Macoudi,** Les prairies d'or, texte et trad. par C.Barbier de Meynard et Pavet de Courteille, t. IV, Paris, 1868, p. 224) երեք տարեթիվ գիտե՝ Հիջրի 14, 15 և անգամ 16: Մենք գերադասում ենք 15 Հիջրի, ահա ինչու: Թեոփանես (էջ 518) պատմում է 635 տարվան տակ, որ Վահան (նկատենք, որ սա հայ էր և ոչ պարսիկ, ինչպես կրկնում են գիտնականները կույր հետևությամբ միմյանց) և Թեոդորոս Սիկելլար ընդհարում ունեցան արաբների հետ և պարտվեցին հուլիսի 23, երեքշաբթի օրը, և նույն տարին քիչ հետո հաղթվեցին Յարմուկի մոտ: Թեոփանեսի 635 տարին սխալ է, փոխանակ 636-ի, որովհետև միմիայն 636 թվին է, որ հուլիսի 23-ն ընկնում է երեքշաբթի օր: Ահա մի հաստատուն կռվան: Հետևաբար Յարմուկի կռիվը ևս նույն 636 թվին էր: Տաբարի ("Chronique de Abou-Djafar-Mohammed-ben-Djarir-ben-Yezid Tabari", par H.Zotenberg, t. III, Paris, 1870, գլ. 29) վկայում է, որ Յարմուկի կռիվն եղավ շաբաթ օր, 28 ջումադա ամիս Հիջրի 13:
Տարեթիվը սխալ է, բայց օրն ու ամսաթիվը ճիշտ: Արդարև, 636 թվին 28 ջումադա=է օգոստոսի 10 և շաբաթ օր (635 թվի նույն ամսաթիվը =21 օգոստոսի, որ էր կիրակի և 634 սեպտեմբեր 2, որ էր ուրբաթ): Յարմուկից հետո, ըստ նույն Տաբարիի (գլ. 33), արաբները գնացին Դամասկոսի վերա և առան վեց (ըստ այլոց երկու) ամիս պաշարելուց հետո, հետևապես 637 թ. փետրվարի 10 (կամ 636 թ. հոկտեմբեր 10): Դամասկոսից օգնական զորք ղրկեցին Կադեսիա. զորքը տեղ հասավ Դամասկոսի առումից մի ամիս հետո, ուրեմն մարտի 12, 637 թ. (կամ նոյեմբեր 10, 636 թ.):

Տաբարիի ասելով, Կադեսիա անկավ մուհառամ ամսին (Հիջրի 14 սխալ է): Արդ, 637 թվին մուհառամ սկսում է փետրվար 2 և վերջանում մարտ 4, որ միանգամայն հաստատում է մարտ 12 թվականը: Տարբերությունը չնչին է և հասկանալի:

Այս կռիվների մասին Կաղանկատվացին ցանցառ և շփոթ ծանոթություն ունի: Սեբեոսից գիտե, որ պարսից զորավարը Ռոստոմն էր և նրան զինակից էին Հայոց սպարապետը՝ Մուշեղ և Սյունյաց իշխանը՝ Գրիգոր: Ջևանշեր չէ հիշված, բայց Աղվանից պատմագիրը կուզե, որ նա էլ մասնակից լինի և անգամ ավելի կանուխ գնացած Ռոստոմի մոտ, քան իշխանները: Պատրաստ է հնարել նրա համար քաջության տեսարաններ: Սեբեոս պատմում է, որ արաբները պաշարել էին Տիզբոն, երբ վերա հասավ Ռոստոմ, և արաբները ստիպված նահանջեցին՝ անցնելով Տիգրիսի մյուս ափը: Ռոստոմ հետապնդեց: Արաբները գնացին Հերթիճան, այսինքն՝ անցան նաև Եփրատ և բանակեցին արևմտյան ափին, Կադեսիայի մոտ: Կռիվն սկսվեց և Ռոստոմ, Մուշեղ և Գրիգոր ընկան պատերազմի դաշտում:

Կաղանկատվացու տեղեկությամբ, Ռոստոմ և Ջևանշեր անցան Դկղաթ, հասան Վեհկավատ գավառ և բանակեցին «յայնկոյս Մեռեալն ջրոյ»: Ծննդյան տոնին ճակատեցին ընդդեմ հագարացվոց, որ «եկեալ ի Կատշանէ» նախահարձակ եղան: Պարսիկները պարտվեցին և Ջևանշեր ստացավ «երիս վէրս», իր ձին՝ «չորս վերք», և փութաց Հազկերտ թագավորի մոտ, որ վարձատրեց նորան մեծամեծ, գրեթե առասպելական պատիվներով:

Կարելի էր ընդունիլ, որ «Մեռեալ ջուր» ասելով պատմագիրն հասկանում է Եփրատի ճահճուտները և ոչ Մեռյալ ծով, և որ Կատշան (=Կատիշան) առրական հնչյուն է Կադեսիայի և ոչ թե Պարսկաստանի՝ Կատաշան կամ Գաղշան գավառն է[1] *(մանավանդ եթե որևէ հիմ լիներ կարդալու՝ Կաշայե որպես ուղղական և ոչ բացառական): Սակայն այս բոլորը կլինեն լոկ ճիգեր պաշտպանելու մեր պատմագրի վարկը: Հունվարի 6 որպես կռվի օր հետաքրքրական ցուցում է, բայց արժեքը նսեմանում է նրանով, որ Ռոստոմ ճակատած համարվում է «ի Կատշանէ եկեալ» զորքի դեմ, որով ենթադրվում է, թե Կադեսիայի ճակատը հունվարի տոնից առաջ է եղել:*

Հազիվ կարիք կա նկատելու, որ Ջևանշերին շռայլած ընծաները վիպական պաճուճանք են՝ զուրկ պատմական ստուգությունից:

Կադեսիայի հաղթությունից հետո զորքը հարձակվեց մայրաքաղաքի՝ Տիզբոնի վերա, և հետապնդեց պարսիկ նահանջող զորքը և բանակը զարկեց Ջալուլա կոչված տեղում (Բաղդադից հյուսիս Դիալա գետի վերա): Տաբարի վկայում է (գլ. 49), որ վճռական բախումը կայացավ վեց ամսից հետո, երբ պարսիկները պարտված փախան դեպի Հոլվան, Հիջրի 16, զուլքադա ամիս՝ նոյեմբերի 23-դեկտեմբերի 23: Վերջին մեծ ճակատի՝ Նեհավենդի տարեթիվը ավելի հաստատ է: Սեբեոս (էջ 112) դնում է Կոստանդի առաջին և Հազկերտի 10-րդ տարին =642 թվականին:

[1] Խորենացու Աշխարհագրության («Աշխարհացոյց Մովսեսի Խորենացւոյ», Վենետիկ, 1881) Կատաշան (էջ 40) և Գաղշան (էջ 42)՝ **Կատիշք** կոչված ժողովրդի անունեն, հավանորեն այժմյան Կաշան:



Խոռոխազատի մասին ևս այլ ասելիք չունի, քան ինչ գիտե Սեբեոսից: Սա ասում է, որ Ռոստոմի մահից հետո «մնացորդք զաւրացն Պարսից յԱտրպատական գումարեալ» ընտրեցին Խոռոխազատ, որ շտապեց գնալ Տիզբոն փրկելու թագավորին, բնակիչներին, նաև պետական գանձը: Սակայն արաբները խուժեցին մայրաքաղաք և հալածեցին պարսիկ զորավարին[1]:

Կաղանկատվացին այլափոխում է դեպքը, Ջևանշերին մի նոր և պատվավոր դեր վերապահելու նպատակով: Որպես թե Ատրպատական երկու պարսիկ զորավար գժտվեցին և Ջևանշեր հաջողեց խռովության վերջ տալ: Խոռոխազատ զոհ՝ առավ հետը Ջևանշերին և գնաց Տիզբոնի վերա, որ պաշարված էր թշնամիներեն[2]*: Ջևանշեր խոյացավ երեք հազար մարդով պաշարողների վերա և վանեց նրանց Տիգրիսի մյուս ափը, թույլ չտվավ նորեն գետն անցնել և հարձակվել քաղաքի վերա, մինչև որ Հազկերտ փախչեր Դաստակերտ և Բեկղաղ:*

*Կադեսիայի կռվից հետո զինվորական խորհուրդ կայացավ Տիզբոնում, որի հետևանքով Հազկերտ հեռացավ Հոլվան, իսկ զորքերը քաշվեցին դեպի հյուսիս և Ջալուլա, փորձեցին կասել թշնամու առաջխաղացությունը: Հետևապես, Տիզբոնի պաշտպանությունը, և այն էլ Ջևանշերի օգնությամբ, չի հաստատվում և թվում է, թե արձագանք է Ռոստոմի և իշխանների վերև հիշած դեպքին: Դաստակերտ և Բեկղաղ տեղերի հիշատակությունը ուշագրավ է, բայց երաշխիք չէ պատմվածի ստուգության: Թեոփանեսից հայտնի է, որ Տիզբոնից հյուսիս կային մի շարք դաստակերտներ, այսինքն՝ արքայական դղյակներ, որոնց թվում Թեոփանես հիշում է* ***Dastagerd և Beklali***[3] (**Դաստակերտ** *հատուկ անուն է, ուրեմն պետք է գրել գլխատառով և ոչ դաստակերտ, ինչպես տպագիրն ունի) և Բեկղաղ: Դաստակերտը Խոսրովի սիրելի նստոցն էր: Մի զուշակության համաձայն, Տիզբոն աղետաբեր էր նրա համար, ուստի արքայից արքան խուսափում էր Տիզբոնից և ապրում էր Դաստակերտ: Հերակլ կայսր 627 թվի արշավանքին մտավ Բեկղաղ և Դաստակերտ. շքեղ պալատներ էին հոյակապ պարտեզներով, լի ամեն տեսակ կենդանիներով՝ փղից մինչև թութակ: Դեկտեմբեր 25 Դաստակերտ էր կայսրը, լուր առավ, որ Խոսրով փախել է Տիզբոն և այնտեղից Սելևկիա: Այս եր-*

[1] **Սեբեոս,** էջ 107:

[2] Ժամանակը մնում է անորոշ՝ բնագիրը աղավաղված լինելով. ձեռագիրն ունի՝ «յութն ամսոջ Յազկերտի», հրատարակիչը ուղղել է «յութերորդ ամի», այսինքն՝ 640 թվին: Եթե սրբագրությունն ընդունելի է, պատմագիրը սխալ է: Տիզբոնի պաշարումը եղավ 637 թվին, Կադեսիայի ճակատից անմիջապես հետո:

[3] **Theophanes,** Chronographia, p. 492- 499.

*կու քաղաքները գտնվում էին Տիգրիսի ձախ և աջ ափերին դեմ առ դեմ, ուստի և արաբները անվանում են Մադային («զույգ քաղաք»): Թեոփանես ասում է, որ Սելևկիայի պարսկերեն անունն է* ***Couedeser****, որ է Սեբեոսի և Կաղանկատվացու Վեհ-Արտաշիր (լավ է կարդալ* ***Bouedeser*** *կամ լավ ևս* ***Bourdeser=Beh-Ardašir****): Խոսրով հավաքել էր իր վերջին ուժերը և դրկել Արբա գետի (որ Տուրնա = Դիալայի մի ճյուղն է հավանորեն) կամուրջները քանդել և չթողնել Հերակլին անցնել գետը: Հերակլ կողոպտեց Դաստակերտի և Բեկղաղի հարստությունները, փչացրեց կենդանանոցները և հառաջացավ դեպի Տիգրոն: Տեսնելով, որ Արբա գետի կամուրջները քանդված են և գետն անցնելու հնար չկա, հետ դարձավ դեպի Շիարզուր:*

Արդ, մեզ թվում է, որ Կաղանկատվացին գիտե Դաստակերտ և Բեկղաղ Հերակլի պատմությունից, թերևս հիշված են եղել մի կերպ Վիրոյի Հիշատակարանում: Մեր պատմագիրը օգտվել է այդ տեղեկությունից և հերյուրել մի նոր տեսարան՝ ի փառս հերոս Ջևանշերի: Ստորև կբերենք և մի ուրիշ կարևոր կետ առնված Հերակլի կյանքից և վերագրած Կոստանդինին: Այս պարագան է, որ թելադրում է մեզ Դաստակերտ-Բեկղաղի նման բացատրությունը:

Ջևանշեր կռվեց յոթն տարի, ստացավ տասնևմեկ վերք և եկավ Ատրպատական և ապա Աղվանք: Ասել է, թե վերադարձավ (637+7=) 644 թվին: Գուցե պետք է կարդալ (փոխ. զամս եօթն) ***Ե*** *տարի, ուրեմն մինչև 642, այսինքն՝ Նեհավենդի վճռական ճակատը, որից հետո պարսիկ ուժերը ցրվեցին և Ջևանշերին այլ բան չէր մնում, քան վերադառնալ իր հայրենիք:*

Լուրջ չէ և այն պատճառը, որ հակադրում է Ջևանշերին բաժանվել Խոռոխազատից: Իրրև թե սա առաջարկում է իր քրոջ Ջևանշերին, որ մերժում է, չկամենալով «զոք յանօրինացն առնուլ կին» (9): Լուրջ չենք համարում այս պարագան, որովհետև հետագայում նույն Ջևանշեր հոժարեց առնել կնության ավելի անօրենի՝ Հոնաց իշխանի դուստրը:

Պարսիկ իշխանը վիրավորված՝ զորք է դրկում «ապստամբ» Ջևանշերի դեմ՝ ոմն Դելմնազգի (ո՛չ Գելմնազգի) զորավարի հրամանատարության ներքո: Ջևանշեր հաղթում է և կողոպուտով վերադառնում պատերազմի դաշտից: Դարձյալ պարսիկները գալիս են, մտնում Պերոզ քաղաքը, այսինքն՝ Պերոզապատ կամ Պարտավ և գերում են Ջևանշերի մորը և եղբորը: Այս անգամ կռիվը տեղի է ունենում Կապիճան (Կամբեճան) գավառում, որ Կուրի ձախ ափին է, մոտ վրաց սահմաններին: Պատմագիրը չի ուզում խոստովանել, որ թշնամին հալածել էր Աղվանից հերոսին մինչև Կամբեճան: Ջևանշեր վերք է ստանում, ապաստանում վրաց Ատրներսեհ իշխանի մոտ և օգնություն ստանալով՝ վերադառնում է Ուտի գավառը, ուր գտնվում էր Պերոզապատ և կոտորում պարսիկներին: Շակաշեն գավառում, արդի



Գանձակի շրջան, ճորեն ջարդ է տալիս թշնամուն: Մյուս ջարդերի մասին «անտեղի է ասել», ուրեմն ավելորդ է համարում պատմել: Վրաց իշխանը և Հայոց նախարարները խորհում էին նրան փեսայացնել, բայց Ջևանշեր գերադասում է առնել Սյունյաց իշխանի դուստրը՝ Արուիճան տոհմեն:

Պարսից զորավարը դիմում է Սյունյաց իշխանի միջնորդության և հաշտվում Ջևանշերի հետ, կնքելով սեր և խաղաղություն: Ջևանշեր հետ է ստանում իր գերված մորն ու եղբորը:

Աղվանից իշխանը տեսնելով, որ պարսից պետությունը քայքայվում է և պարսիկ իշխանները ձգտում են անկախության, ինքն ևս խորհում է «արքայական շուք» տալ իր իշխանության: Պարսից զորագլուխը խեթ է նայում Ջևանշերի այս ձգտումի վերա, և ձերբակալում է ընծորեն նորա հորը: Ջևանշեր հարձակվում է խիզախորեն պարսից վերա Պերոզ-Կավատ քաղաքում, հաղթում և ազատում իր հորը:

Հազկերտի քսաներորդ տարին պարսից պետությունը կործանվում է. հագարացվոց տիրապետության երեսուն և մի տարին էր և Ջևանշերի սպարապետության տասնևինը:

Այնուհետև տաճիկները ասպատակում են հյուսիսային և արևելյան կողմերը: Ջևանշեր անցնում է գետը (Կուր) և պատերազմում, «զի զիւր զհայրն ի նոցանէ ևս քափեսցէ», բայց հայրը «գնայր կամաւորաբար ի թշնամիսն»: Ջևանշեր համաձայն է Հայոց զորավարի հետ՝ անցնելու կայսեր կողմը (Բ, գլ. ԺԹ):

Արաբական ճակատից վերադառնալուց հետո 642 թվին, մինչև Սասանյանների անկումը՝ 652 թիվը, տասն տարվան ընթացքում, Ջևանշերի գործունեությունը ամփոփվում է քանի մի ընդհարումների մեջ Ատրպատականի իշխանի «քաջերի» հետ՝ մի աննշանակ առթիվ: Զորավարների անուն չկա, հիշվում է «Դելմնազգի ոմն հեղինակ», այսինքն՝ Դելումնացի մի զորավար, առանց անունը տալու: Պետք է կարծել, որ սրանք ղրկված են Խոռոխազատի կողմեն: Սակայն այս զորավարը, ինչպես երևում է Սեբեոսից, բաժանվում է Հազկերտից և հնազանդվում է արաբներին. «Եւ իշխանն Մարաց, զորմէ վերագոյն ասացի եթէ գնաց յարևելս առ արքայն իւրեանց, ապստամբեալ ի տեղի մի ամրացաւ և խնդրեաց երդումն յԻսմայէլացւոցն և գնաց յանապատն ի ծառայութիւն Իսմայէլացւոցն[1]»: *Ո՞վ է այս իշխանն մարաց, որի մասին վերագույն խոսել է պատմագիրը, բայց «վերագոյն» այդ մասին հիշատակություն չկա: Նեհավենդի կռիվը Սեբեոսի մոտ այն կռիվն է, որ նա կոչում է «պատերազմ ի Մարսս գաւառի», ինչպես պարզ հետևում է տարեթվից՝ «յառաջնում ամի Կոստանդեայ» (641+11=) 652 և «յամի տասներորդի*

[1] **Սեբեոս**, էջ 137:

*Յազկերտի» (532+10=) 652, և որը նկարագրված է էջ 112, սակայն վերև՝ խոսելով թե ինչպես Խոռոխազատ փորձեց փրկել Տիզբոնի գանձերը, բայց չկարողացավ, թողեց ամեն ինչ և փախավ. «փախեաւ և թագաւորն իւրեաւնց և անկաւ ի զաւրն հարաւոյ»*[1]*: Հազկերտ փախավ, բայց Նեհավենդի կռվից հետո, և փախաւ Ստախր քաղաքը, Սասանյանների օրրանը: Սեբեոս շտապել է հայտնել թագավորի փախուստը նախքան անդրադառնալ Նեհավենդի ճակատին: «Անկաւ ի զաւրն հարաւոյ» ասելով ակնարկում է փախուստը Ստախր: Պարսից պետությունը բաժանված էր չորս մեծ զինվորական շրջանների կամ սպարապետության, որոնցից մեկն էր Քուստի Նեմռոջ, այսինքն՝ կողմն հարավո, ուր գտնվում էր և Ստախր: Հազկերտ ապաստանեց Ստախր, ուրեմն հարավային գնդի մոտ: Այստեղից անցավ արևելք, Խորասան, ուր և սպանվեց: Սեբեոսի խոսքերը՝ «գնաց յարևելս» կարծել են տալիս, որ Խոռոխազատ ուղեկցել է Հազկերտին, հետո փորձել է մի վերջին ընդդիմադրություն և ապա զենքը վայր դրել: Արդյո՞ք վերադարձել է նորեն Ատրպատական և ե՞րբ, մնում է անհայտ:*

Գիտենք, որ 643 թվին Ատրպատականի իշխանն էր հիշվում Վահրամ Բ Փառոխզատ: Վերջին անունս նույն Խոռոխազատն է: Սա եղբայր էր Ռոստոմի և երկուսն՝ որդիք էին Խոռոխ-Որմիզդի, ծանոթ Սեբեոսին[2]*: Խոռոխազատ նշանակում է որդի Խոռոխի: Կարելի է իր բուն անունն Վահրամ էր: Բայց ավելի հավանական է, որ Վահրամ նրա որդին էր: Խոռոխազատ այդ միջոցին պետք է տակավին Հազկերտի հետ լիներ:*

Տաբարին պատմում է, որ Հիջրի 22-ին (=642 թվի նոյեմբեր 30-643 թվի նոյեմբեր 18) արաբական զորքը Բուքայր իբն Աբդալլահ զորավարի առաջնորդությամբ հաղթեց հիշյալ Վահրամին, պարտադրեց Ատրպատականին վճարել հարկը, որ չէր ուզում վճարել, հանձնեց երկիրը իր զինակիցներից մեկին, և ինքը գնաց Դերբենդի դեմ: Նույն պատմագիրը նկատում է, որ Ատրպատականը ընդարձակ երկիր է, Համադանից մինչև Դերբենդ, խազարաց սահմանը: Բուքայրի առաջապահ գնդի պետն էր Աբդ ալ-Ռահման[3] *իբն Ռաբիա: Դերբենդ գնալիս անցան մի երկրով, որի իշխանն էր Շահրիար: Սա խաղաղություն խնդրեց, առանց հարկ տալու հանձնառության, պատճառելով որ մշտական կռիվ ունի խազարների դեմ և միջոցները սուղ են*[4]*:*

[1] Անդ, էջ 108:

[2] Սեբեոս, էջ 107:

[3] Հովհան Մամիկոնյան («Պատմութիւն Տարօնոյ», Վենետիկ, 1832, էջ 57), հիշում է ոմն «Աբդռահիմ քեռորդի Մահմետի», որ հարձակվեց Տարոնի վերա Խոսրովի սպանությունից ութ տարի հետո, ուրեմն 640 թվին: Դժվար թե այս անձը պահած լինի Աբդ ալ-Ռահմանի հիշատակը:

[4] Tarikh at - Tabari (=Zotenberg), t. III, ch. 47



Շահրիար Աղվանից իշխաններից մեկը պիտի լինի: Ջևանշեր չէ հիշվում: Խոռոխազատի ներկայությունն այդ միջոցներին Ատրպատականում երկբայական է: Կաղանկատվացու պատմվածքը այս կետում ևս խախուտ է: Թերևս մեր պատմագիրը չափազանցրել է թեթև ընդհարումները, որ միշտ հնարավոր են և կապել մեծ զորավարի անվան:

Դելմնազգի հեղինակը, այսինքն՝ զորավարը, ևս անհայտություն է: Ավելորդ չէ հիշել այս առթիվ Սեբեոսի մի միջադեպը: Մարք ապստամբում են արաբների դեմ, չուզենալով վճարել հարկ, և ապավինում են իրենց ամրություններին և լեռնական ցեղերին, ինչպես Գել (Գելանցիք) և Դելում: Վերջինս ևս մի ցեղ էր, Գելանցիների հարևան, և որոնց հիշատակը մնացել է Դիլաման և Դիլման տեղանուններին մեջ: Արաբները չեն հաջողում ընկճել ապստամբներին և «դէմ եդին երթալ ի կողմանս հիւսիսոյ, յազգն, որ ըստ Կասպիական դրացն: Չոգան հասին ի կապանս Ճորայ և անցեալ ընդ ներքս ընդ կապանն՝ աւերեցին զամենայն կողմանս աշխարհին, որ առ լեռնոտամբն»[1]:

Այս դեպքը տեղի է ունեցել, մեր հաշվով, մերձավորապես 654 թվին և ուրեմն չի կարող նույնանալ Բուքայրի արշավի հետ, որ 643 թվին էր և ոչ էլ Դելմնազգի հեղինակի ասպատակություններին, որ 642 թվից հետո էր և 652 թվից առաջ: Կաղանկատվացին հիշում է վրաց իշխան Ատրներսեհին, որ այլուստ հայտնի չէ և կփորձենք ստորև որոշել նրա ինքնությունը:

Ամբողջ ԺԹ գլխի մեջ միակ անվիճելի կետն է Սասանյանների անկման տարին՝ «ի քսաներորդի ամի Յազկերտի», համաձայն Սեբեոսի[2] *և 31 ամի հագարացվոց =651 թվի օգոստոսի 24-652 թվի օգոստոսի 11, փոխան Սեբեոսի ԺԹ իսմայելացվոց, որ հաշվում է Արուբաքրի վերջին տարուց և ոչ Հիջրի թվականությունից:*

Մեր պատմագիրը առանց բացատրելու, թե ե՞րբ և ի՞նչ պայմաններում էր Ջևանշեր ընդունել արաբական տիրապետությունը, և թե ինչու՞ իր հայրը կողմնակից էր այդ տիրապետության, պատմում է, թե ինչպես «բազմիմաստ» Ջևանշեր վճռեց անցնել կայսեր հովանավորության տակ՝ Հայոց զորավարի հետ միասին:

Ջևանշեր դիմում է Թղթով կայսր Կոստանդնին և խնդրում իր հնազանդությունը և պարգևել «պսակարարձիկ խոնարհութեանս մերում աստուածաշնորհ քաղցրարութիւն»:

Կայսրը, հարկավ, ուրախ է և հրամայում է «գրել երդմունս և ունիլ համամիտ խաղաղութիւն»: Շնորհում է նաև մեծամեծ պարգևներ «զահոյս արծաթաքանդակակերպ թիկամբ ոսկեզօծ և հանդերձս ոսկեմանեալս և զիւրոյ

[1] Սեբեոս, էջ 147-148:

[2] Անդ, էջ 137:

**անձին մարգարտայեռ** *պատենիւք սուսեր. և առնէ զնա պռոտոն պատրիկ: Եւ տայր բերել պատրկութեան և հիւպատութեան և ապահիւպարքոսութեան և ստրատելութեան և ելիստութեան հազարերկերիւր արանց պատիւ, զի որում ինքն կամեսցի, շնորհեսցէ և նա զայն: Եւ ի կենեղուտ խաչէն Քրիստոսի մասն, զոր միշտ ի ծոց իւր կրէր, հանեալ յիւրմէ առաքէր նմա» (Բ, գլ. Ի):*

Պատմագիրը բերում է կայսերական հրովարտակի պատճենը, ուր սակայն խոսք չկա նվերների մասին, այլ կայսրը հայտնում է իր ուրախությունը և խոստանում, որ ինքը և իր որդիք սիրով և քաղցրությամբ կվարվեն Ջևանշերի և նրա սերունդի հետ «ազգէ յազգ մինչև յաւիտեան» (Բ, գլ. ԻԱ):

Կայսեր հրովարտակն իր ձևով և բովանդակությամբ վավերական չէ կարող համարվել և ոչ Ջևանշերի Թուղթը: Հների մոտ ընդունված սովորություն է հորինել ճառեր և թղթեր և վերագրել գործող անձերի: Այս կարգի հորինվածներ են և՛ Ջևանշերի և՛ կայսեր նամակները: Առասպելական են մանավանդ կայսերական ընծաները՝ արծաթաքանդակ և ոսկեզօծ գահեր, ոսկեհուռ հանդերձներ, կայսեր անձնական մարգարտահեռ սուսերը, տակավին հասկանալի են նույնիսկ իրենց չափազանցության մեջ, բայց ինչ որ ավելի է քան առասպել, այդ 1200 մարդու հատկացնելի զանազան պատիվներն են՝ պատրիկություն, հյուպատություն, ապհյուպարքոսություն (իմա՝ ապոեպարքոսություն), ստրատելություն (իմա՝ ստրատելատություն) և ելիստություն (իմա՝ իլլիուստրություն (illustris): Ասել է, թե կայսրը իրավունք էր տվել Աղվանից իշխանին հանձնարարել 1200 մարդ թված պատիվներ ստանալու համար: Ուրիշ խոսքով, եթե լիովին գործադրվեր այդ իրավունքը, Աղվանքը կունենար 1200 պատրիկ, հյուպատոս, ապոեպարքոս, ստրատելատ և իլլուստր:

Պետք է կարծել, որ պատմագիրը լավ չէ հասկացել այն աղբյուրը, որից օգտվել է, քաղելով բյուզանդական պատվանունները աստիճանական ստույգ կարգով: Կայսերական պատիվների սանդուղը հաշվում էր 18 աստիճան, ամենաբարձրը՝ կեսար և ամենեն ստորը՝ ստրատելատ, որին հավասար էր ապոեպարքոս (**apo eparchon**): Հյուպատոս յոթներորդ աստիճանն էր վայրից վերև, իսկ պատրիկ տասներկուերորդ: Մեր պատմագիրը հիշում է այս աստիճանները վերից վայր կարգով՝ պատրիկ, հյուպատ, ապոեպարքոս և ստրատելատ: Ելիստությունը, այսինքն՝ իլլուստրությունը այս կարգին չէ պատկանում: Բոլոր աստիճանները բաժանվում էին երեք դասի՝ **illustris, spectabilis, clarissimus**. թված չորս պատվաստիճանները կարող էին պատկանել **իլլուստրիս** *դասին:*

Այս տիտղոսը պատահում է յոթներորդ դարու մի արձանագրության մեջ՝ «Քսան և եւթնեմւոյ Հերակղի բարեպաշտ թագաւորի Ներսեհի Շիրակայ և (Ա)րշարունեաց տեառն և Թէոփիլոսի Արշարունեաց եպիսկոպոս(ի) ես



Գրիգոր եղուստր *և Մարիամ իմ կին շինեցաք զսուրբ եկեղեցիս վասն մեր հոգւոց»*[1]*:* Եղուստր *նույն* ***illustris****-ն է:*

Հետաքրքրական է պռոտոն պատրիկ տիտղոս, որ շնորհված էր Ջևանշերին: Հազվագյուտ տիտղոս է. ուղիղ ձևն է պրոտոպատրիկ, **protopatrikios**: Մեզ հայտնի է միայն մի դեպք բյուզանդական պատմության մեջ, ուր երևան է գալիս այս տիտղոսը, և ինչ որ զարմանալի է՝ կրողը մի հայ է՝ Վարազ-Բակուր. **Ba<ra>s Bakourios** ***protopatrikios***[2]*: Նա ապրում էր Հուստինիանոս II-ի օրով, նրա պաշտպանն էր ընդդեմ Վարդան Փիլիպպիկ հայ կայսրի և սպանվեց 711 թվին: Հավանական է, որ Աղվանից իշխաններից լինի, դատելով անունից:*

Ամենեն կարևորը, սակայն, մեր պատմագրի աչքում կենեղուտ *խաչի նվերն էր: Կաթողիկոսը՝ Ուխտանես, եպիսկոպոսների հետ, դուրս է գալիս խաչի առաջ և օրհնում իշխանին: Ուրախությունը մեծ էր, բայց սովորական ուրախություն չէր. «ոչ լինէր գործ անկարգ խօսից կամ արբեցութիւնք կամ կատակերգութիւնք»: Ջևանշեր զրկելով իրեն քնից՝ գիշերը անցուց «խորհելով զաշխարհին իւրոյ զօգուտն»: Եւ առավոտյան հագիվ արուսյակը ծագած, բազմեց գահի վերա և շրջապատված զորականներով, զբաղեց դատական և վարչական գործերով. «Այսպէս ի սահմանացն Վրաց մինչև ի Դրունըս Հոնաց՝ միահեծան ճոխութեամբ եղև տէր և մինչև զգետն Երասխ» (անդ): Այս ևս ներբողեան է և ոչ խսկություն, ինչպես կտեսնենք:*

Կոստանդին կայսրը իր թագավորության 19-րդ տարին գալիս է արևելք, գնում Պարսից աշխարհը և մարդ է ղրկում Ջևանշերի ետևից, որ գա իր տեսության: Ջևանշեր շտապով ուղի է ընկնում, «զորոյ զգալն լսելով ընդ առաջ նմա ինքն ելանէր ի Քունգր գիւղ և ողջամբ ընկալեալ զնա»: Կայսրը հրամայում է նրան հանել «տխրական զգեստը», որ հագել էր իր կնոջ մահվան առթիվ, և հագցրին «զարքունական զգեստն»: Ջևանշեր համարձակություն առնելով «խնդրէր ի կայսերէ զմասն յաւիտենից թագաւորին նշանի»: Կայսրը բերել էր մայրաքաղաքից «զճառագայթաւէտ զլոյս աշխարհաց»[3], *այսինքն՝ խաչափայտը:*

---

[1] Կ. Կոստանյանց, Վիմական տարեգիր, Ս. Պետերբուրգ, 1913, էջ 1, հատուկ անուն է կարծել, մինչդեռ հայր Ղևոնդ Ալիշան, Շիրակ, Վենետիկ, 1881, էջ 125, տվել է ճիշտ նշանակությունը:

[2] **Theophanes**, Chronographia, p. 583. Տե՛ս նաև **G. Schlumberger**, Sigillographie de L'Empiere Byzantin, Paris, 1884, էջ 249 և 627, Վարազ-Բակուրի կնիքը, ուր սակայն նա կոչվում է patrikios և comes Օփսիկյան բանակաթեմի:

[3] Բնագրի «կորզեալ ի պիտանեաց զկողմանս աշխարհին», նշանակում է զրկեց Խաչից արևմտյան կողմերը. առնելով հետը Սուրբ նշան Արևելք: Եթե շիտակ է «պիտանեաց» ընթերցումը, նշանակում է, որ կայսրը զրկեց այն կողմի աշխարհը այն բանից, որ ամենապիտանին էր, այսինքն՝ Խաչը: Իսկ եթե պետք է կարդալ՝ «ի տաճեաց», թերևս ի նկատի ունի Ս. Սոփիա տաճարը: Կայսրը կորզեց Ս. տաճարից այն ինչ որ ներկայացնում է ամբողջ աշխարհը՝ Խաչը: Մեր հեղինակը ճարտասանական մեծ հավակնություններ ունի:

Կայսրը կտրում է մի մասը և տալիս Ջևանշերին: Տեսնելով այս «երկնատր պարգևս», հայ նախարարները և Հայոց զորավար Համազասպ նախանձեցին: Ջևանշեր հրաժեշտ տվավ այնուհետև կայսրին և սա «ոչ իբրև զծառայ ոք, այլ իբրև զեղբայր համազգի՝ յանդիման Պարսից և Արարատեան ազատացն զնա յուղարկեալ»:

Ուխտանես կաթողիկոսը ընդառաջեց ընդունելու իշխանին: Սա հիմն է դնում նոր եկեղեցու Գարդման բերդի մեջ, որպեսզի այնտեղ պահե «տէրունական նշանը»-ը՝ կայսրից ստացած խաչի մասը:

Գարնանը գնաց Վաղարշապատ նորեն հանդիպելու կայսրին: Արտակարգ շքով ընդունվեց: Կայսրի հրամանով մեծամեծ պալատականներ ընդառաջ ելան, և Ջևանշեր «արքունաբար» մտավ «կայսերական մարզարան»:

Կայսրը նրան ընդունեց «խնդամիտ համբուրիւ» և նստեցրեց ամենեն բարձր տեղը և այնքան պատիվներ շռայլեց, որ «տրապէզիտքն անգամ սոսկացան»: Կայսրն արդեն դրկել էր Ջևանշերին իր անձնական սուսերը: Այս անգամ նրան նվիրում է «զքաջ հաւուն իւրոյ Հերակլիոսի և Նիկետայ՝ հանւյն, զարքունական գոտին», և «զիւրն պատմուճան և դրօշս երկուս և զորդիս նորա առնէր պատրկունս զաղայականս»:

Պարսից վերջին թագավորը, տեսանք վերև, շնորհել էր Ջևանշերին «գիւղաստնեայս և գետս ձկանց»: Այժմ կայսրը ևս նրան է զիջանում «որ միանգամ առաջին թագաւորացն Աղվանից գիւղաստանեայք և սահմանք լեալ էին»: Ջևանշերի «հանճարեղ խորհրդականութիւնը» հիացում պատճառեց կայսրին. հրաժեշտին՝ ասաց կայսրը. «անձն քո ընդ անձին իմոյ, և սիրտ իմ որպէս զսիրտ քո. երթ ի խաղաղութիւն»: Ջևանշեր վերադարձավ իր աշխարհը և հրամայեց յուրայիններին՝ «շինել, տնկել, վայելել և կեալ ի խաղաղութեան»: Ջևանշերի հռչակը տարածվեց Աղվանից սահմաններից դուրս, Թուրքաստանեայց թագավորից, Ատրպատականից, Վրաց աշխարհից ընծաներ տեղացին. անգամ հեռավոր Հնդկաստանից «գային առ նա լսել և տեսանել»:

Ի՞նչ էր այս հաջողության պատճառը: Պատմագրի հայացքով, միակ պատճառն էր «փայտն կենաց, նա յայտնի արար զանուն նորա ամենայն տիեզերաց» (Բ, գլ. ԻԲ):

Խոսքն այն կենաց փայտի մասին է, որ Ջևանշեր ստացել էր կայսրից և որի համար եկեղեցի էր հիմնել Գարդմանի բերդում: Ջևանշերի պանծացումը այդ կենաց փայտի՝ Գարդմանի այդ սրբության, պանծացումն է: Բարեբախտաբար հնարավորություն կա ստուգելու Ջևանշերի վերագրած հարաբերությունները կայսեր հետ և համոզվելու, որ այստեղ ևս խոսում է ո՛չ պատմագիրը, այլ՝ վիպասանը, ուժ տալով իր անսանձ երևակայության:



Կոստանդնի 19-րդ տարին կանե (641+19=) 660: Այս թվին Կոստանդին չէ գտնվել ո՛չ Պարսկաստան և ո՛չ ընդհանրապես Արևելք: Նա եկավ Հայաստան իր թագավորության 12-րդ տարին, համաձայն ճշմարտախոս ժամանակակից պատմիչի՝ Սեբեոսի վկայության[1], *այսինքն՝ 653 թվին: Ըստ Սեբեոսի, Մուավիայի հետ կայսրը դաշն էր կնքել երեք տարով*[2], *ըստ Թեոփանեսի՝ երկու տարով*[3]*: 652 թվին լրացավ պայմանաժամը և Մուավիա մերժեց վերանորոգել դաշինքը և սպառնում էր խաղալ մայրաքաղաքի վերա: Այս միջոցին էր, որ Թեոդորոս Ռշտունին անզոր համարելով կայսեր հովանավորությունը անցավ ավելի ուժեղի՝ խալիֆայության կողմը: Կոստանդին կայսրը ժամանեց Դերջան, անցավ Կարին: Նրան ներկայացան բոլոր հայ մեծ նախարարությունները՝ Ներսես Գ կաթողիկոսի հետ: Նրանք տրտունջ հայտնեցին անհեռատեսությամբ Թեոդորոսի դեմ: Սա հրաժարվեց ներկայանալ կայսրին: Նա մենակ չէր իր որդեգրած նոր քաղաքականության մեջ. «ընդ նմա էին,- ասում է Սեբեոս,- միաբան Վրացին և* **Աղուանն** *և Սիւնին, որք ըստ հրամանի նորա գնացին յիւրաքանչիւր աշխարհս և ամրացան ի նմին»*[4]:

Կայսրը փորձեց իր կողմը գրավել Ռշտունյաց իշխանին, բայց չհաջողեց: Կարինից գնաց Դվին և այնտեղ ձմերեց: Մուշեղ Մամիկոնյանին նշանակեց «իշխան Հայոց հեծելոցն և արձակեաց զնա ի կողմն սեփհական զընդին Դ (4) հազարաւք. նոյնպէս արձակեաց ի զաւրաց իւրոց ի Վիրս և **յԱղուանս** *և ի Սիւնիս քակտել զնոսա ի միաբանութենէ բայց* յԱղուանն *և ի Սիւնին և զունդն սեփհական ոչ հնազանդեցան»*[5]*: Պարզ է, որ Աղվանք 652-653 թթ. կայսեր կողմնակից չէր:*

Կայսրը լսելով, որ տաճիկ զորքը, իրավ, ասպատակելով Փոքր Ասիա, հասել է Քաղկեդոն, անմիջապես վերադարձավ մայրաքաղաք, թողնելով Հայաստանում Մավրիանոս զորավարին[6]*: Թեոդորոս Ռշտունին օգնական զորք ստացավ արաբներից, Ջատկի մոտերքը 653 թվի հարձակվեց Հոռոմի վերա և հալածեց մինչև Տայք և այնտեղից Տրապիզոն: Ապա գնաց Մուավիայի մոտ՝ Դամասկոս: «Եւ ետ նմա իշխանն Իսմայէլի,- պատմում է նույն Սեբեոս,- հանդերձս ոսկեղէնս և ոսկեթելս և վառ մի նորին օրինակաւ: Եւ*

---

[1] **Սեբեոս**, էջ 139:

[2] Անդ, էջ 118 և 138:

[3] **Theophanes**, Chronographia, p. 527.

[4] **Սեբեոս**, էջ 139:

[5] Անդ, էջ 140:

[6] Անդ, էջ 143: Հմմտ. **Theophanes**, Chronographia, p. 528:

*իշխանութիւն ետ նմա զՀայս և զՎիրս և* **զԱղուանս** *և զՍիւնիս, մինչև* **ցԿաւկոհ եւ ցՊահակն Ճորայ** *և արձակեաց զնա պատուով»*[1]*:*

Կոստանդին կայսեր հեռանալուց հետո Մուշեղ Մամիկոնյան լքեց հույներին և հարեց Թեոդորոս Ռշտունուն: Թերևս այս միջոցին եկավ արաբ զորավար Հաբիբ իբն Մասլամա: Սեբեոսի ասելով, նա կռիվներ մղեց Մավրիանոսի դեմ, քշեց մինչև «ի Վիրս», պաշարեց և առավ Կարինը: Արդյո՞ք հույն զորավարը նորեն Հայաստան էր եկել Տրապիզոնից, ուր քշել էր նրան Թեոդորոս Ռշտունին, թե Հաբիբին կռիվները նույնն են, ինչ որ վերև ընծայվեց Թեոդորոսին: Հավանական է, որ Հաբիբ լիներ այն արաբ գնդի պետը, որ եկավ Թեոդորոսի օգնության և միասին գործեցին Մավրիանոսի դեմ:

Օթման խալիփայի գահը վտանգի մեջ լինելով, Հաբիբ հետ կոչվեց Հայաստանից, բայց տեղ չհասած, Օթման սպանվեց: Սպանությունը տեղի ունեցավ 656 թվին, հունիսի 17: Հետևաբար, Հաբիբ հեռացած պիտ լիներ Հայաստանից նույն 656 թվին: Գիտենք, որ Թեոդորոս գնաց երկրորդ անգամ Դամասկոս, այնտեղ մեռավ և մարմինը բերին և թաղեցին իր գավառում: Մեզ թվում է, որ նա գնացած պիտի լինի Հաբիբի հետ և նույն նպատակով: Օթմանի մահից հետո սկսվեցին երկու թեկնածուների՝ Մուավիայի և Ալիի միջև կռիվները, որ տևեցին հինգ տարի: Մուավիա պետք ուներ Թեոդորոսի: Անհավանական չէ, որ մնաց այնտեղ՝ մասնակցեց կռիվներին և մեռավ 657 կամ 658 թվին[2]*: Ալիի հակառակությունը հարկադրեց Մուավիային խաղաղություն խնդրել կայսրից, խոստանալով տալ օրական հազար ոսկի, մի ձի և մի ստրուկ: Դաշինքը կնքվեց 659 թվին: Ռշտունին կենդանի չէր, նրան հաջորդել էր իր փեսա Համազասպ Մամիկոնյան:*

Հայերն ապստամբեցին արաբների դեմ և անցան կայսեր կողմը: Թվում է, թե այս քաղաքական փոփոխությունը պետք է բացատրել 659 թվի դաշինքի ազդեցությամբ: Դաշինքը մերկացրեց խալիփայի տկարությունը և հայերը հարմար դատեցին թոթափել նրա լուծը: Համազասպ Մամիկոնյան, որ Թեոդորոս Ռշտունու փեսան էր և գաղափարակից, համակերպվեց նոր կացության, ստացավ կայսրից կյուրապաղատության պատիվ, արծաթե գահույք և երկրի իշխանությունը:

1 **Սեբեոս**, նույն տեղում:

2 Ներսես Գ կաթողիկոս գնաց 653 թվին կայսեր հետ Կ.Պոլիս և դարձին «դադարեաց ի Տայս մինչև մեռաւ Ռշտունեաց տէրն» և ապա վերադարձավ Վաղարշապատ «յետ վեցերորդի ամի հալածանացն»: Վեցերորդ տարին հաշվելով 653 թվից կգա 658 թիվը: Բայց որովհետև Ներսես կաթողիկոս ներկայացավ կայսեր Կարինում «եկեալ ի Տայոց», հավանական է, որ փախել էր Տայք 652 թվին՝ Թեոդորոսի արաբական հպատակություն ընդունելու տարին: Այս դեպքում հալածանքի վեցերորդ տարին կլինի 657 թիվը:



Այս անգամ Հայոց հետ համերաշխ էին Աղվանք և Սյունիք. «հապճեպ երթևեկելով հնազանդեցան ի ծառայութիւն թագաւորին Յունաց՝ հանդերձ միաբանութեամբ իշխանացն և զաւրացն **Աղուանից** *և իշխանացն աշխարհին Սիւնեաց»*[1]*:*

Համազասպ կառավարեց կյուրապաղատություն ստանալուց հետո երեք տարի և մեռավ, ինչպես վկայում է Հովհաննես Կաթողիկոսը[2], *մեռավ, ուրեմն 661 թվին: Այս թվին Մուավիա հաղթանակեց և հռչակվեց միահեծան տեր (661 թվի մայիս): Իր իշխանության երկրորդ տարին Գրիգոր Մամիկոնյան կարգվեց իշխան Հայոց: Ասել է, թե հայերը նորեն ընկան արաբական իշխանության տակ: Այս դրությունը տևեց երեսուն տարի, մինչև 682 թվականը:*

Ահա քաղաքական անցքերի ստույգ ընթացքը. 652-659 թթ. Աղվանք շարունակեց մնալ արաբական տիրապետության տակ: Հերակլի հաղթությամբ պարսիկները զիջան Հայաստանը՝ Մավրիկիոս կայսեր օրով սահմանված գծով, որով պարսից ձեռքն էր մնում Վասպուրական, Սյունիք, Աղվանք և Այրարատից՝ Դվինի դաշտը: Արաբները ժառանգեցին պարսիկներից այս հողամասերը: Թեոդորոս Ռշտունին տեր էր այս բաժնի և իրապես հավատարիմ մնաց հին կացության:

Աղվանք և Սյունիք անբաժան էին Թեոդորոսից: Կոստանդին կայսրի Դվին եղած ժամանակ ո՛չ Աղվանից և ո՛չ Սյունյաց իշխան չներկայացավ նրան: Առաջին անգամ Աղվանք և Սյունիք թեքվեցին կայսեր կողմը 659 թվի ապստամբության ժամանակ: Ո՛չ այդ թվին և ո՛չ հետո Կոստանդին կայսրը Հայաստան չի եղել և ուրեմն չէր կարող Աղվանից իշխանին ընդունել Վաղարշապատի մեջ և օժտել արքայական պատիվներով:

Ուշադրության արժանի է Հերակլ պապի և Նիկետաս տատի արքունական գոտին, որ իբրև թե նվեր տվավ Կոստանդին Ջևանշերին: Կոստանդին կայսրի բուն անունն էր Կոստաս կամ Կոստանդ, բայց անվանվում է նաև Կոստանդին իր հոր՝ Կոստանդինի անունով, որ Հերակլի որդին էր: «Նիկետայ հանւոյն»՝ անգիտության, թե թյուրիմացության արդյունք է: Հերակլի ընտանիքում ծանոթ է մի Նիկետաս, որ Հերակլի հորեղբոր՝ Գրիգորի, որդին էր: Նիկետաս կնոջ անուն չէ և Կոստանդնի հանին չէր կարող այդպես կոչվել և ոչ էլ այնպիսի գոտի ունենալ, որ կարելի լիներ զարդարել Աղվանից իշխանի մեջքը:

Կոստանդին երբեք չէ եղած Մարաց Քունգր գյուղում, ուրեմն և չէր կարող ո՛չ Ջևանշերին անդ ընդունած լինել և ո՛չ էլ նրա համար կենեղուտ խաչեն մասն հանել:

[1] **Սեբեոս**, էջ 152:

[2] **Հովհաննես Դրասխանակերտցի,** Պատմութիւն Հայոց, Մոսկվա, 1853, էջ 51:

Կոստանդին չէր կարող ճանաչել Ջևանշերին իշխան «ի սահմանաց Վրաց մինչև ի դրունս Հոնաց միահեծան ճոխութեամբ»: Տեսանք, որ Մուավիան և ո՛չ Կոստանդին տվավ այդ երկիրները մինչև Ճորա պահակ Թեոդորոս Ռշտունուն և ո՛չ Ջևանշերին:

Աղվանից իշխանի պատիվները որպես թե տեսնելով, Համազասպ Մամիկոնյան «ի նախանձ մեծ բրդեցաւ»: Սրանից հետևում է, որ մեր պատմագիրը ի նկատի ունի 659 թվի քաղաքական փոփոխությունը Համազասպի օրով: Եթե Կոստանդնի առաջին տարին հաշվենք 641 թիվը, երբ գահ բարձրացավ, 19-րդ տարին կգա ուղիղ 659 թիվը: Անտարակույս, պատմագիրը շփոթել է 652 թվին քակտված դաշինքի և 659 թվին կնքված դաշինքի ազդեցության տակ կատարված իրողությունները: Համազասպ անցնելով կայսրի կողմը՝ ստացավ կյուրապաղատություն: Աղվանք նրա հետ էին և հավանական է, որ միաժամանակ կայսրը պատված պիտի լինի Աղվանից իշխանին պրոտոպատրիկ տիտղոսով: Եվ այս կլինի միակ պատմական կորիզը, որի շուրջ դիզել է պատմագրի երևակայությունը այնքան անհեթեթ զրույցներ խառնաշփոթ հիշողությամբ: Ջևանշերի կրկնակի տեսակցությունը Կոստանդին կայսրի հետ 659, թե 660 թվին այլ բան չէ էապես, քան խուլ հիշողություն Կարինի և Դվինի կայսերական դիմավորության 652 և 653 թվերին: Միայն Դվին փոխարինված է Վաղարշապատով և Կարին մոռացված ի նպաստ Մարաց աշխարհի Քունգր գյուղի: Խրատական է մանավանդ վերջինս: Հեղինակի նպատակը չէ միայն վերապահել պատվավոր աթոռ սիրեցյալ իշխանին բոլոր այդ հանդեսների մեջ, այլ փաստարանել նաև կենեղուտ խաչի բարձր ծագումը: Քունգր արդարև գտնվում է Մարաց աշխարհում և է Կանգվար Համադանի մոտ: Հերակլ կայսր, երբ 627 թվին արշավում էր Տիգրոնի վերա, անցավ Համադանից, ինչպես պատմում է Թեոփանես[1], *անվանելով այս քաղաքը Խամաեթա (Chamaetha), ուր կայսրը դադար առավ հոկտեմբերի 9-ին և մնաց մի շաբաթ: Քունգր առաջին մեծ կայարանն էր Համադանից հետո իր ճանապարհի վերա: Կենեղուտ խաչը կապ չունի Կոստանդին կայսրի հետ, այլ հավանորեն ավանդությամբ համարվում էր մաս Հերակլի փրկած Երուսաղեմի խաչափայտի: Հայտնի է Հացունյաց Ս. Խաչի պատմությունը: Կենեղուտ խաչի ավանդությունը լավագույն դեպքում Աղվանից կրկնակն է Հացունյաց խաչի պատմության, ասում ենք՝ լավագույն դեպքում, այսինքն՝ եթե գոյություն է ունեցել որևէ ավանդություն, որից օգտվել է յուրովի մեր պատմագիրը, և չենք ուզում համարել ողջովին պատմագրի անձնական տեսության պտուղ: Մեր հեղինակի հետաքրքրության բուն*

[1] **Theophanes**, Chronographia, p. 488.



*առարկան կենեղուտ խաչն է, Գարդմանի սրբությունը: Նրա արժեքը բարձրացնելու համար ի՞նչ ավելի զորեղ միջոց, քան կայսեր և Աղվանից իշխանի անունները:*

Կայսրից խաչն ստանալուց երկու տարի հետո, խազարներն արշավում են և Ջևանշեր նույն խաչի զորությամբ հետ է մղում մինչև Չողա Դուռը: Անցնում է երկու տարի ևս և Ջևանշեր ավարտում է Գարդմանի տաճարի շինությունը և այնտեղ զետեղում մեծ հանդեսով «կենեղուտ փայտը»: Ծնկաչոք ընկնում է նրա առաջ և աղոթում: «Եթէ ամենայն աշխարհս Աղվանից, - ասում է Ջևանշեր աղոթքի մէջ, -միաբան գայցեն փառաւորել զանուն քո ի տանս յայսմիկ, աստուածընկալ զօրութեամբ խաչիս աղխեսցես զդրունս թշնամեացն և խափանեսցես զմարտիցն հէնս»: Գարդմանի Ս. Խաչը մեծ ապավեն է Աղվանից ապահովության և բարօրության:

Պատմագիրը՝ համակիր քրիստոնյա պետության, բայց գիտե, որ իր հերոսը պիտի դավաճանե և անցնե մուսուլման արաբների կողմը: Այդ ծանր քայլը մի կերպ արդարացնելու համար, Ջևանշերի բերան է դնում մաղթանք՝ «հնազանդ կալ առ ի քէն պսակելոյ կայսերն Յունաց աներկբայաբար», կամենալով ցույց տալ, որ Ջևանշեր երեսը դարձրեց կայսրից հանգամանքների ուժով և ոչ իր բուն ցանկությամբ:

Աղոթքից հետո իջնում է Պերոզ-Կավատ քաղաքը «և զամն ողջոյն յընծայլի և ի խաղաղաւէտն անցուցանէ հանգիստ» (Բ, գլ. ԻԵ): Հաջորդ տարին, «ի միւսումն լինէր ժմերնային եղանակի հասարակութիւն», ուրեմն կայսեր տեսակցության վեցերորդ տարին, հոները հարձակվում են Աղվանքի վերա, հասնում մինչև Երասխ և քշում տանում են «Արարատեան» գավառից և «Սիւնաստանեաց» աշխարհեն բազմաթիվ հոտեր: Հոնաց թագավորը ցանկություն է հայտնում տեսնել Ջևանշերին: Սա գնում է ներկայանում առանց երկյուղի, մինչդեռ պարսից թագավորներից և ոչ մինը նման խիզախություն չէ ունեցել: Սեր և խաղաղություն են կնքում: Ջևանշեր առնում է հոնաց թագավորի դուստրը կնության: «Կնքեալ զդաւելն», բաժանվում են: Ջևանշերի սպարապետության 28-րդ տարին էր:

Այս հաջողության պատճառը նորեն Գարդմանի Ս. Խաչն էր. նախ քան հոնաց մոտ գնալը, իշխանը «աներկիւղաբար անկեալ առաջի փրկչական խաչին ասէ. Թէպէտ և գնացից ի մէջ ստուերաց մահու, ոչ երկեայց ի չարէ, զի դու Տէր, ընդ իս ես»:

Տեսանք, որ Ջևանշեր սպարապետ ճանաչվեց Կաղեսիայի կռվի տարին՝ 637 թվին: Պարսից թագավորության անկման տարին՝ 652 թվին նրա սպարապետության 15-րդ տարին էր, ինչպես հաշվում է պատմագիրը (Գիրք Բ, գլ. ԺԹ), որ միանգամայն ճիշտ է, 637+15=652: Այժմ հաշվում է 28 տարի, 637+28=665: Այս ևս հաստատվում է հեղինակի մյուս հաշվով. կայս-

րին ներկայացավ 659 թվին և այն օրեն անցել էր վեց տարի, ուրեմն 665 թիվ:

Ժամանակագրական այս հաշիվը խիստ կարևոր է այն մտքով, որ վկայում է **հաստատորեն**, *որ Կոստանդնի 19-րդ տարին հասարակ վրիպակ չէ գրչի, այլ պատկանում է հեղինակին*[1]:

Այնուհետև պատմագիրը ձգտում է բացատրել, թե ի՞նչպես Ջևանշեր վճռեց անցնել արաբական ծառայության, թե «որպէս կամ զինչ պատճառ շնորհատուն այն խաչ ծագեաց նմա ի խաւարէ լոյս կամ քաղել ծաղիկ ի հրոյ»:

Պատճառը բարդ չէ: Կար ժամանակ, որ հռոմեց բազավորներն այնքան զորավոր էին, որ սարսափ էին ազդում աշխարհին: Այժմ տկարացել են, «մինչ զի որ միանգամ ընդ ձեռամբ նորա էին մարդկային անտառք, գնացեալ յարեցան ընդ հովանեաւ» արաբների: «Արևմտեան քօշը» զրկվեց Աստուծո օգնականությունից և «կինճ վայրենի» գազանացավ փշրելու նորա եղջյուրները: Հռոմեց կայսրը թողեց իր մայրաքաղաքը և գնաց «ի սահմանս հեռաւոր կղզեացն արևմտից»: Իսկ արաբները վեցերորդ տարին է, որ հաստատվել էին նոր մայրաքաղաքում՝ Դամասկոս: Պատմագիրը հնարավոր է գտնում գովելու արաբական տիրապետությունը. «տուաւ նմա անընդդիմակաց զօրութիւն, աշխարհավար իմաստ, երկրավոր քաղցրութիւն և հեզութիւն մարդկային»: Շնորհիվ այս չորս հատկության, արաբները տիրեցին աշխարհին:

Ջևանշեր զգում է, որ արաբները գուցե ասպատակեն իր երկիրը: Թեպետ կարող էր իր խնամի «Թուրքաստանեաց» աշխարհեն զորք հանել թշնամու դեմ, բայց բարվոք համարեց խոնարհիլ արաբների առաջ:

«Հարաւոյ բռնակալն» լսելով իշխանի լավ հարաբերությունը կայսրի հետ և այն, թե ինքն է «երասանակալ Թուրքաստանեացն ազգաց հանել և արգելուլ», պատգամավոր ղրկեց և խնդրեց գալ իր մոտ: Ջևանշեր գնաց նախ Գարդմանի տաճարը, ուր իր սիրելի խաչն էր, աղոթեց և ապա ուղի ընկավ: Հայոց զորավարը դիմավորեց նրան մեծապատիվ շքով, դիմավորեցին նաև Ասորեստանի գավառապետները և քաղաքների պետերը, բազավորի հրամանով, հայթայթելով ճանապարհին ձիեր և օթևաններ և հասավ բազավորի դուռը: Սա հրամայեց իր մերձավոր մեծամեծներին ընդառաջել Աղվանից իշխանին, «ածելով նմա զերիվարս, յորս ինքն բազաւորն հեծանէր»: Ամբոխը թափվում էր ամեն կողմից նրան տեսնելու: Թագավորն վաղ առավոտյան, վեր կենալով սովորական ժամից առաջ, ընդունեց հրճվանքով

---

[1] **M. Brosset,** Additions et Eclaircissements à L'Histoire de la Géorgie, SPb., 1851, էջ 476, ի թիվս բազմաթիվ սխալների գրում է՝ Կոստանդ եկավ Աղվանք Քունգր գյուղը, dans la 13e anée de son règne, որ իր սրբագրությունն է, համաձայն Սեբեոսի և խորք՝ Կաղանկատվացուն:



թանկագին հյուրն: Շատ ազգերի պետեր կային նրան հնազանդված: Ոչ մեկը չէր արժանացել այն մեծ ուշադրության, որ վիճակվեց Ջևանշերին: Սերտ սիրո երդում կնքեցին և հրաժեշտին բազավորը «տայր նմա և զաջ իւր, որ չէր երբէք լեալ սովորութիւն տիեզերապետ զոռոզին օտարազգւոյ առնել զայս»:

Վերադառնալիս Ջևանշեր հանդիպեց Գրիգոր Մամիկոնյանին՝ Արուճ գյուղաքաղաքում, եկավ նրա տեսության նաև Անաստաս կաթողիկոսը: Հասավ վերջապես իշխանը Գարդման և «իսկ և իսկ մտանէր ի յարկ ապաւինին իւրոյ»: «Գեղազեղիչներ», այսինքն՝ նկարիչներ, գործի լծեց նկարազարդելու շինած տաճարը: Երեք տարի անցավ և բազավորը նորեն հրավիրեց նրան իր մոտ (Բ, գլ. ԻԷ):

Այստեղ էլ ճարտասանությունը խեղդել է պատմությունը: Ջևանշերի Դամասկոս գնալու նկարագրությունը պատմական չէ: Գնալը հավանորեն փաստ է, բայց տարին՝ սխալ է: Պատմագիրը ուզում է հավատացնել, որ Աղվանից իշխանը գնաց խալիփայի մոտ, երբ Դամասկոս վեցերորդ տարին էր, որ մայրաքաղաք էր ճանաչվել: Մուավիա հռչակեց Դամասկոս մայրաքաղաք 662 թվին, վեցերորդ տարին, հաշվելով 662, կլինի 667 թիվը: Պատմագրի ակնարկը, թե նույն տարին հռոմեց կայսրը անապարեց հեռավոր կղզիներ, ստույգ չէ: Ակնարկը վերաբերում է Կոստանդ կայսրին, որ արդարև իր աթոռը տեղափոխեց Սիկիլիա, բայց այս եղավ 662 թվին և ոչ 667: Երկու թվերից նախընտրելին է պատմագրի տեսակետից 667 թիվը, որովհետև Դամասկոս գնաց Ջևանշեր հռնաց բազավորի հետ 665 թվին խաղաղություն կնքելուց հետո: 667 թիվը ցույց է տալիս, որ անմիջապես հետո չէ գնացել, այլ երկու տարի անց՝ 665 թվին: Գրիգոր Մամիկոնյան այդ միջոցին իշխան էր Հայոց (662-685), ինչպես և Անաստաս՝ կաթողիկոս (661-668) և ուրեմն նրանց հիշողությունը գեթ ժամանակագրական անպատեհություն չունի:

Չենք կարծում, որ Ջևանշեր Դամասկոս գնացած լինի 667 թվին: Ավելի հավանական ենք համարում պատմագրի մյուս ցուցումը՝ կայսրի Սիկիլիա տեղափոխության տարին, միայն պատմագիրը սխալվել է կարծելով, որ այս դեպքը տեղի ունեցավ Դամասկոսի աթոռանիստ դառնալու վեցերորդ տարին: Դեպքը վերաբերում է 662 թվին և կարծում ենք Աղվանից իշխանը Դամասկոս գնաց սույն՝ այս տարին:

*Պատմագրի նկատողությունը, թե կայսրությունը տկարացել էր և խալիփայությունը զորացել, ուստի և Ջևանշեր ընտրեց խալիփայի կողմը, անընդունելի է 667 թվի նկատմամբ: Ոչինչ չէր փոխվել նրանց վիճակի մեջ, որ առիթ տար այդպիսի դատողության: Մինչդեռ 662 տարին ավելի է պատշաճում պատմագրի հայացքին, երբ Մուավիա վերջ տալով քաղաքացիական կռիվներին, և Կոստանդ լքելով մայրաքաղաքը, կարող էին այն տպավորությունը թողնել հանրության վրա, թե ուժի կշիռը հակվում էր արաբների կող-*

մը: Հայաստանը անցավ արաբներին 652 թվին և այդպես մնաց մինչև 682 թիվը: Համազասպի ապստամբությունը ժամանակավոր երևույթ էր: Նույն վիճակն ունեցան և Վիրք ու Աղվանք: Մուավիայից, ավելի ճիշտ նրա որդու Եզիդի մահից հետո [683 թ.] նորից սկսվեցին զահակալական կռիվներ: Հայերն օգտվելով այս հանգամանքից փորձեցին թոթափել արաբական լուծը: Այս առթիվ Ղևոնդ պատմագիրն ասում է. «Դադարեցին ի հարկատրութենէ նոցա Հայք, Վիրք, Աղուանք, ծառայեալ նոցա ամս Լ»[1]: Ապստամբությունը տևեց երեք տարի, չորրորդ տարին Գիրգոր Մամիկոնյան, շարժման ղեկավարը, ընկավ խազարաց ճակատում 685 թվին: Երեսնամյա ծառայությունը պետք է համարել 652 թվից մինչև 682 թիվը: Պատմագիրը մեծ կշիռ չէ տալիս Համազասպի ապստամբության: Ամեն պարագային Մուավիա վերականգնեց 662 թվին խախտված դրությունը Հայաստանում: Աղվանք և Վիրք Հայոց հետ համերաշխ էին և հավանորեն նրանք ևս հպատակեցին արաբներին 662 թվին: Երբ Կաղանկատվացին հիմն ունի այդ քաղաքական փոփոխությունը վերագրելու Ջևանշերի նախաձեռնության, այդ պետք է կատարված լինի միաժամանակ հայերի հետ 662 թվին և ոչ թե տարիներ հետո՝ 667 թվին: Դամասկոսի աթոռանիստ լինելու վեցերորդ տարին ճշտիվ պահել է, հակառակ պատմագրի սխալ հաշվին, փոփոխության իսկական թվականը:

Երեք տարուց հետո, ուրեմն 670 թվին, խալիփան նորից հրավիրեց Ջևանշերին ավելի մեծ պատիվներ տալու համար: «Ճոխք քաղաքին Բիւզանդեայ եկեալ էին յանձն առնուլ զլուծ հարկատրութեան որդւոցն Հագարու», կարծում է մեր պատմագիրը, հիշելով որ Կոստանդին կայսրը սպանվել էր իր թագավորության 30րդ տարին, ուրեմն 670 թվին, նույն տարին, երբ Ջևանշեր գնաց Դամասկոս: Մեծամեծ պատիվների արժանացավ Աղվանից իշխանը. խալիփան «զհարազատ եղբօր իւրոյ ապարանս ի հանգիստ նմա յօրինել հրամայէր և յընթրիս միշտ ընդ իւր նստել ի սեղանն»: Կայսերական պատգամավորները, տեսնելով նրա մերձավորությունը արաբական պետին, դիմեցին նրա բարեխոսության: Խալիփան շնորհեց Ջևանշերին հնդկական մի փիղ և մի պապկա (թութակ): Ընորհեց նաև «սուսեր պողովատիկ, ոսկեպատեան, մարգարտահոծ գեղաշարեալ, պատմուճանս ոսկեհուռս ստաւրակս և դիպակ ազիրերան և զուարճատեսիլ ծիրանիս», «յիսուն և երկուս ձիս երազաքայլս, յորս ինքն թագաւորն նստէր»: Խալիփան հրամայեց «տիկնաց դժխոյին», այսինքն՝ իր առաջին կնոջ, պատրաստել Ջևանշերի կնոջ համար «զթագուհեաց հրաշապանոյն գեղազարդութեան մետաքսաէջ և ոսկեհիւսեակ զգեստ»: Իշխանի հետևորդներին ևս, որ մոտ 50 հոգի էին, ընծայեց «դիպակս և ճեղենակս»: Ավելին կա: Թագավորը

[1] «Պատմութիւն Ղևոնդեայ Մեծի վարդապետի Հայոց», Ս.Պետերբուրգ, 1887, էջ 15:



նրան տվեց «Սիւնաստանեաց իշխանութիւնը» և թախանձեց, որ հանձն առնէ իշխել նաև «յայնկոյս գետոյն Ատրպատականացն»: Բայց Ջևանշեր համեստությամբ հրաժարվեց, չուզենալով «տիեզերական կողմանցն միահեծան իշխանությամբ ճոխանալ» և լավ համարելով «զընտանին խորհել օգուտ»:

Ջևանշեր խնդրեց և ստացավ հարկերի թեթևություն: Հրաժեշտին՝ թագավորը «տայր նմա զաջ իւր» որպես նշան բացառիկ մեծարանքի: Իշխանը դարձավ իր աշխարհը և փութաց գնալ «ի տուն Տեառն», այսինքն՝ Գարդմանի եկեղեցին, և գոհանալ «զանպատում պարգևացն Աստուծոյ»: Հետո իջավ իր ձմեռոցը՝ Պերոզ-Կավատ: Անդ եղավ «համաշխարհական ժողով», շարունակում է պատմագիրը, «և տեսանէաք» թագավորական հավը, «տեսանէաք» և վիմահասակ փիղը, «տեսանէաք» և «զերիվարս ածեալս» (Բ, գլ. ԻԸ)*:

... (10) դաշտը, իսկույն երևան է բերում թյուր և շփոթ տեղեկություններ: Այսպես օրինակ, Ջևանշերի երկրորդ այցը Դամասկոս դնում է Կոստանդինի 30-րդ տարին, այսինքն՝ 670 թվին. այդ միջոցին բոլորում էր իշխանի սպարապետության 33 տարին (637+33)=670: Հաշիվը հետևողական է, բայց սխալ հիմնովին: Կոստանդին կայսրը 670 թվին կենդանի չէր: Նա թագավորեց 27 տարի և ոչ 30, և սպանվեց 668 թվի հուլիս ամսին՝ Սիկիլիա[1]: Այցի պատմականությունն իսկ կասկածելի է դառնում: Որևէ պետքի համար չէ, որ Աղվանից իշխանը հանձն է առնում հեռավոր ճանապարհորդության և ոչ իր հոժարությամբ, այլ հարավի թագավորն է կանչում «պարգևախոստ հրաւիրանաւ»: Կարծես թե այցը հնարված է այն նպատակով, որ միանգամ ևս ցուցադրվին այն մեծարանքն ու պարգևները, որոնց արժանացավ Աղվանից իշխանը արաբ վեհապետի կողմից: Այստեղ ևս ամեն ինչ այն աստիճան արտառոց չափերի է հասցված, որ իրողությունն անգամ հավատ չի ներշնչում: Թագավորի և թագուհու նվերները Ջևանշերին, իր կնոջը, իր 50 ընկերներին՝ սուսեր ոսկեպատյան, մարգարտահոծ պատմուճաններ, ոսկեհուռ ստավրակներ, 52 ձի, փիղ, պապկա, ոսկեհյուսակ զգեստներ, դիպակ ու ճե-

* Մնացյալը [«Անտիխո»-ի] հաջորդ թվով (11):

[1] «Գիրք կայսերաց», էջ 77՝ Կոստանդին տալիս է «ամս քսանևինն»: Գրիգոր Մամիկոնյանի արձանագրությունը Արուճի Ս. Գրիգոր եկեղեցու պատի վրա գրված է. «Ի և Թ ամի Կոստանդնի»: Հ. Օրբելի («Надпись 670 г. о построении Аручской церкви», տե՛ս «Христианский Восток», т. II, вып. 1, СПб., 1913, стр. 138-142) իրավունք ունի թերևս կասկածելու սրա վավերականության, որին համամիտ չէ Գարեգին Սրբազանը (տե՛ս Գ. Հովսեփյան, Գրչության արվեստը հին Հայոց մեջ, մասն Գ, Վաղարշապատ, 1913, էջ 9): Կոստանդին թագավորել է միայն 27 տարի (641-668):

*դենակներ և այլն, չափազանցություններ են պարզամիտ ներբողաբանի: Փիղը՝ անարի կենդանի է, վիմախասակ, գերանաձև սռունքներով, «որպէս լեառն ինչ», ահա մեր հեղինակի տեսողության չափողը:*

Կարելի՞ է վստահել, որ Պերոզապատի փիղն ու պապկան իրոք արաբական ընծա լինեն Ջևանշերին: Վերհիշենք, որ Տիզբոնի մոտ՝ Բեկղադ և Դաստակերտ արքայական դղյակներն ունեին կենդանական պարտեզներ լի ամեն տեսակի անասուններով՝ փասիանից սկսած մինչև ջայլամն ու փիղը: Հերակլ կայսրը կործանեց դղյակները, կողոպտեց պալատների գույքը և ոչնչացրեց կենդանոցները, բաժանելով անասուններին իր զինվորներին: Չորս փիղ էլ ինքը՝ կայսրը, տարավ Կ. Պոլիս, մեծ զվարճություն պատճառելով քաղաքի ամբոխին: Ակամայից միտք է ծագում, արդյո՞ք Պերոզապատի փիղն ու պապկան Բեկղադի նախկին բնակիչները չէին, որ բաժին էին ընկել Հերակլի բանակի հայ-աղվան զինվորներին և սրանք բերել էին Աղվանք:

Պատմագրի ասելով «համաշխարհական ժողով» է եղել Պերոզապատ հազվագյուտ կենդանիները և ձիերը տեսնելու համար: Ուզում է ասել ժողովրդի բազմությունը գալիս էր նայելու: Փղի և պապկայի նկարագրությունըն և «տեսանէաք» առաջին դեմքը կարող են կարծել տալ, որ հեղինակը ներկա է եղել ցուցահանդեսին և ուրեմն ժամանակակից մարդ է, մանավանդ որ դիմում է Ջևանշերին և բարեմաղթում երկյուղած երկար կյանք: Այսպես են հասկացել Կ. վ. Շահնազարյանց, Գ. Զարպհանալյան և հայր Վ. Հացունի: Իսկ վերջինս կարծում է, թե Կաղանկատվացին գրել է ճիշտ այդ թվին, որ է 670 և վայր դրել իր գրիչը:

Հարկավ, եթե միայն այս տեղիքը կարդանք, կգանք նույն եզրակացության: Բայց երբ քննում ենք ինչ որ պատմում է մեր հեղինակը Ջևանշերի մասին, համոզվում ենք, որ նա ժամանակակից չէ Ջևանշերին, քանի որ իր տեղեկությունները թերի և թյուր են և այնպիսի սխալներ կան, որ ժամանակակից գրողը չէր կարող գործել: Հետևաբար «տեսանէաք» ասելով հեղինակն ինքն իրեն չի հասկանում, այլ թե մենք ընդհանրապես, մեր երկիրը տեսավ առաջին անգամ մինչև այն մեզ անծանոթ փիղն ու պապկան: Ինչ վերաբերում է վերջաբան խոսքերին՝ ուղղված Ջևանշերին, այդ ևս ապացույց չէ հեղինակի անձնական ծանոթության, այլ գրական ձև է: Ջևանշերի դրվագը վեպ է, քան պատմություն և հեղինակը մի դյուցազներգու, որ երգել է իր հերոսի գործերը արտաքին ճակատում, հաջողությունները չորս աշխարհակալների մոտ, փառավորել անունը ինչպես մի նոր Կոստանդին Մեծ: «Այլևս ի՞նչ է մնում քեզ անելու, ո՛վ տեր իմ Թեոդորոս, - գոչում է նա, - եթե ոչ Աստծուն ծառայել»: Թեոդորոս Ջևանշերի անունը չէ, ինչպես հայր Հացունի է սխալ հասկացել, այլ բառախաղ է, որով ճարտասան հեղինակը ուզում է ասել, թե իր տերն Աստվածատուր է կամ **Աստվածաշնորհ**, *ինչպես ասված է կայսրին ուղղված նամակում (Բ, գլ. Ի), բառի ստուգաբանական իմաստով, և միևնույն ժամանակ մի ակնարկ է, թե իր տերը՝ մի նոր մեծն Թեոդորոս է: Հեղինակի բարեմաղթությունը՝ «Սիրել զԱստուած, երկնչել ի նմանէ և գնալ ի ճանապարհս նորա», միայն վերջաբան խոսք չէ, որով փակում է մինչև այն պատմածը, այլ և նախաբան է այն դրվագի, որ պիտի պատմե, մի նախադուռն հետևյալ գլուխների, ուր նկարագրվում է Աղվանից աշխարհի մեծագույն սրբությունների հայտնաբերությունը՝ Մաշտոցի և իր աշակերտների սրբազան ժառանգությունը, Գիսի և Չղախի խաչերը, որ գետնի տակ դարեր մնալով անհայտնության մեջ, երևան են գալիս հրաշքով Ջևանշերի օրով: Եվ շնորհիվ Ջևանշերի եկեղեցիներ են շինում նրանց վերա:*

Երկու հատվածները (Բ գրքի ԺԷ-ԻԸ և ԻԹ-ԼԴ) սերտորեն կապված են միմյանց. առաջինը վերաբերում է Ջևանշերի արտաքին գործունեության և նրա հաջողության բարոյական հիմը Գարդմանա «կենեղուտ խաչն» է. երկրորդը՝ ամփոփում է նրա սրբակյաց կյանքը, որի արտահայտությունն է Գիսի և Չղախի սրբավայրերի հովանավորությունը: Սխալ է ուրեմն, թե պատմագրի գրիչը կանգ է առած ԻԸ գլխի վերջ և թե հետևյալ գլուխները պատկանում են ուրիշ գրչի: Լեզուն իր հատկանշանական բառամթերքով, ոճն իր դարձվածներով և հորդաբանությամբ մնում են նույնը երկու հատվածների մեջ:

Ջևանշերի մահը նկարագրող գլուխը ևս մեր պատմագրինն է: Գրելու եղանակը չի փոխվում: Բառերի և նախադասությունների կուտակների միջից հազիվ կարելի է հասկանալ բուն եղելությունը: Ջևանշեր հանգստանում էր բարձր լեռների հովտում, երբ ոմն ոճրագործ սուսերահարում է նենգորեն իշխանին և փախչում դեպի «վերնակողմն Արճախունեաց»: Չնայելով, որ իշխանը մենակ չէր, այլ իր մոտն էր «նամեսական գունդը». և իր քեռորդին՝ ոմն պատրիկ «զիւր ամեսական (կարդա՛ նամեսական[1]) *առեալ լեզէոն գնդի յիսնեկան» մահապարտի հետևից է ընկնում, բայց չի հաջողում բռնել: Ո՞վ էր մահապարտը, որոշ չէ. իշխանի մերձավորներիցն էր. «ո՛չ զսէր նորա և ո՛չ զպատիւն հօրն իւրոյ, զօր զտեալ էր ի նմանէ մեծաւ պարգեօք, յիշեալ, այլ մահ խորհեալ ի վերայ նորա»: Թվում է, թե իշխանը զոհ է գնացել դավադրության՝ «Առեալ չարաբարոյն* **Ենեբայ**՝ *դաւաճանողին Վարազոյի, զվաղրն արքունական» ուղեկցում է Ջևանշերին, բայց ինքը չէ մահապարտը, մի ուրիշն է, որ «յետոյս կողմանէ հարկանէր զիշխանն արի»: Ենեբա*

[1] Նամեսական և <ն>ամեսական՝ թվում է, թե հունական **Nemesis** բառն է, և նշանակում է վրեժ, արդարություն խնդրող գունդ, թե **andenemsa**.

*անունն անծանոթ է: Մեզ թվում է, որ պետք է կարդալ* **Եմակա**. *այսպես է կոչում հայտնի Անակ [Պարթևին] մեր պատմագիրը Ա գրքի ԺԴ գլխում: Դավաճանողը Վարազն է, որին նմանեցնում է հեղինակը չարագործ Անակին: Վարազը՝ փաղաքշական ձևը Վարազմանի, Ջևանշերի ազգականն է, և սա է դավադիրը, սպանողը սրա գործիքն է:*

Դավթակ անունով մի քերթող, որ «յոլովիւք աւուրբք ժամանեալ յամէր ի դրան արքունի», մի Ողբ է շարադրում իշխանի մահվան առթիվ: Ողբը բերված է ամբողջովին Բ գրքի ԼԵ գլխում: Առաջին տունը սկսում է Այբ-ով, երկրորդը՝ Բեն-ով և այսպես կարգով մինչև Քէ՝ ընդամենը ուրեմն 36 տուն: Մ. Բրոսսեի օրինակը և Մոսկվայի հրատարակությունը վերջանում են Ճէ տառով, ուր հիշվում է Ջևանշերի անունը: Կարծես, իրոք, մինչև Ճէ է եղել սկզբում և շարունակել է ուրիշը: Թեև անհավանական է, ի նկատի ունենալով, որ այբուբենի վերա է և ուրեմն մինչև վերջին Քէ տառը պիտի հասցրած լիներ հեղինակը: Եթե Ջևանշերի անվան հիշողությունը չլիներ Ճէ տան մեջ, ոչինչից չէր կարելի գուշակել, որ Ողբի առարկան Աղվանից իշխանն է: Փաստացի ակնարկներ չկան: Բայցևայնպես այն տպավորություն է թողնում, համեմատելով ինչ-որ պատմագիրն է պատմում մահվան վերաբերյալ, որ Ողբը միակ աղբյուրն է պատմագրի տեղեկության: Պատմագրի ասելով, սպանությունը կատարվել է «ի ժամանել բարձրութեան տօնին մեծի Նաւակատեաց խաչին»: Ողբի մեջ ասված է. «զի զօր աւուրս տօնի տէրունեան նշանին դարձուցին մեզ ի սուգ» (Ե տունը): Խէ տան մեջ քերթողը հայտնում է. «Խարդաւանող խորհրդօք տարեալ մեկուսի. և անողորմ խոցոտմամբ վիրաւորեաց զվեհազնն»: Այս խուլ տեղեկությունը մեր պատմագիրն արծարծել է քանի մի էջի վերա: Պատմագրի տեսակետին մոտ է նաև Թ տունը. «Թագաւորն Յունաց և իշխանքն հարաւոյ տենչանօք խնդրէին տեսանել զտէրն. և հոգնամեծար ողջունիւ ընդունէին. և փառօք պսակեալ պատուէին մեծապէս»: Հետաքրքրական է Տյուն տունը. «Տիերական ծոցք Լիբանոս լերամբք յագուրդ առնուին քև ի տես միակի ակամբ կալեալ զօճիսն հողմոյն հիւսիսոյ զքեզ միշտ խնդրեն. առ ոչ երևելդ **տապալեալ Հոնաց զկոտորումն նռնեննեաց առնեն**»: *Ընդգծվածս ցույց է տալիս, որ Ողբը հյուսված է ոչ Ջևանշերի մահից անմիջապես հետո, այլ ուշ, քան մահից հետո տեղի ունեցած Հոնաց, այսինքն՝ խազարաց, մի արշավանք: Ակնարկ կարող է վերաբերել միմիայն 685 թվի արշավանքին, Ջևանշերի հաջորդի՝ Վարազ-Տրդատի և Հայոց իշխան Գրիգոր Մամիկոնյանի օրով: Պատմագիրն ուրեմն օգտվել է Ողբից ավելի ուշ, քան 685 թիվը: Կարևոր կետ, որ նորապես հաստատում է մեր տեսակետը, թե խաչերի գյուտի պատմությունը, որ առաջ են Ջևանշերի մահից և Իսրայելի քարոզությունը Հոնաց մոտ Ջևանշերի մահից հետո՝ նրա հաջորդ Վարազ-Տրդատի օրով, գրված են ուշ, քան 707 թիվը:*



Ամփոփենք մեր քննության արդյունքները: Ջևանշերի պատմությունը, մի կողմ թողած վիպական զարդերը՝ անարժեք պատմության համար, հանգում է հետևյալ կետերի.

1. Ջևանշեր ութերորդ սերունդն է 590 թվին Աղվանք գաղթած Միհրան Սասանյանի: Անհեթեթություն:

2. Ջևանշեր օգնել է Ռոստոմ և Խոռազատ պարսիկ զորավարներին արաբական ճակատում 637-642 թվերին, ինչպես Մուշեղ Մամիկոնյան և Գրիգոր Սյունի:

3. Ջևանշեր մերժում է Խոռազատի խնամության առաջարկը և խույս տալիս Աղվանք և հետ մղում պարսից հարձակումները:

4. 652 թվին անցնում է կայսեր կողմը, որ բացարձակ սխալ է, իրականին Աղվանք դաշնակից էր Թեոդորոս Ռշտունուն մինչև սրա մահը:

5. 659 թվի տեսակցությունը Կոստանդին կայսեր հետ Քունգր գյուղում, առասպել է: Ուխտանես այդ միջոցին կաթողիկոս չէր:

6. 665 թվին առնում է խազարաց խաքանի աղջիկը:

7. 667 թվին անցնում է արաբների կողմը: Սխալ է, Աղվանք արաբների հետ էր արդեն 662 թվից, ինչպես Գրիգոր Մամիկոնյան:

8. Ջևանշերի երկրորդ այցը Դամասկոս Կոստանդին կայսրի 30-րդ տարին, ավելի քան կասկածելի է: Կայսրը մեռած էր իր 27*–րդ տարին՝ 668 թվին:*

9. Պատմագիրը չգիտե իր հերոսի մահվան տարին: Սպարապետության 33-րդ տարին Ջևանշեր վայր է դնում զենքը: Աղեքսանդր Մակեդոնացին ևս 33 տարեկան վերջացրեց իր աշխարհակալությունը:

Որքա՛ն աղոտ են ստույգ տեղեկությունները վիպական տարրերով, այնքան ճոխացած պատմության մեջ: Հերոսի իրական պատկերը մնում է մթնշաղի մեջ՝ հակառակ իր ներբողիչի ճարտասանական ճիգերին: Հարևան վրացին նման մի դեմք է ստեղծել Վախտանգ թագավորից: Վառ երևակայությունը այնպիսի առասպելական դրվագներ է շարել նրա անվան շուրջ, որ գրեթե անճանաչելի է դարձել Ղազար Փարպեցու ծանոթ պատմական Վախտանգը:

Ջևանշեր սերում է Խոսրով Ապրվեզի ազգական Միհրանից: Ծննդաբանական շղթան այնքան անհեթեթ է, որ կարծել է տալիս, թե պատմագիրը մի բան շփոթել է: Վախթանգ թագավորը ևս Սասանյան ծագումն ունի՝ համաձայն վրաց ազգային ավանդության: Նրա նախահայրն է Միրիան պարսիկը: Սա Կասրե-Արդաշիրի որդին էր: Վրաց արքայական տիրող տունը հանգած լինելով, պարսից թագավորը ղրկում է իր որդուն՝ Միրիանին, բայց որովհետև Միրիան հազիվ յոթ տարեկան էր, թագավորը նշանակում է նրան դայակ ոմն **Միրվանոսի**: *Միրվանոս Կասրե-Արդաշիրի ազգայիններիցն էր*

*և պետք է կառավարեր երկիրը մինչև Միրիանի հասունանալը: Միրվանոսի առաջին գործն եղավ՝ կռվել խազարների դեմ*[1]*:*

Կասրե-Արդաշիր միևնույն անձի զույգանուն չէ. այդպիսի թագավոր ծանոթ չէ: Կասրե արաբական ձևն է՝ ընդունված վրացերենում Խոսրով անվան: Արդաշիր է Արտաշիր՝ Սասանյան հարստության հիմնադիրը: Միրիան վրացի ձևն է Միհրան-ի, իսկ Միրվանոս արաբական Մրվան անունը չէ, այլ հին Միրիքրանես պարթևական անունն է: Այսպես էր կոչվում՝ *Meriban-es այն անձը, որ պարսիկները թագավոր կարգեցին Վրաստանի՝ մոտ 361 թվականին, [Հայոց] Արշակ II թագավորի օրով, ինչպես հաղորդում է Ամմիանոս լատին պատմիչը*[2]*:* **Միրիքրան** *սասանյան ձևն է պարթև* **Միհրպան**-*ի և* **Միրվան** *հետնագույն հնչյունը Միրիքրանի (ինչպես Արտավան և Արտաբան) և նշանակում է «Միհրի պաշտպանյալ»: Ավանդությունը պահել է հին Միրիքրանի հիշատակը: Միրիան անչափահաս թագավորը, որի հետ գործում է [Միրվանոս] խազարաց դեմ, բերում է մեզ յոթներորդ դար, հասկացնելով, որ Արդաշիրի հետ զուգորդված Կասրե նույն ինքն Խոսրով Ապրվեզ կամ Փարվեզ պարսից թագավորն է: Արդաշիր ձուլվել է Խոսրովի հետ և կազմել մի դեմք: Արդաշիրի ժամանակակից Միրիքրան=Միրվան ընկերակցել է Միրիանի, որ պետք է ժամանակակից լինի Խոսրովի: Պատմական դեպքերի խաչաձևման մի հետաքրքրական օրինակ:*

*Արդ, այս ավանդության արձագանքը գտնում ենք Կաղանկատվացու մոտ: Ջևանշերի նախահայրն է Միհրան (մի այլ անգամ Միհրեան, ինչպես վրաց Միրիան), որ ազգական է Խոսրով Ապրվեզի: Տոհմը կոչվում է այս պատճառով Միհրական: Պատմագիրը հակադրում է Միհրական տոհմը նախնի Հայկազյանց տան, որ իշխել է հնում: Այս տունը տվել է տասն թագավոր.*

1. Վաչագան
2. Վաչէ
3. Ուռնայր
4. Վաչագան[3]
5. **Միրհավան**
6. Սատոյ
7. Ասայ
8. Եսուաղէն
9. Վաչէ
10. Վաչագան

[1] **M. Brosset**, Historic de la Géorgie, t. I, p. 83. «Համառօտ պատմութիւն Վրաց ընծայեալ Ջուանշէրի պատմչի», Վենետիկ, 1884, էջ 40-41:

[2] **Ammiani Marcellini** Rerum gestarum libri qui supersunt, recensuit notisque selectis instruxit V. Gardthausen, v.2, Lpz., 1875, XXI, 6.

[3] Տպագիրն ունի Ցաւչագան (էջ 130), որ սխալագրություն է՝ փոխանակ Վաչագան-ի: Արդարև, Ա գրքի ԺԳ գլխի «Մինչև ցթագաւորութիւնն երրորդ Բարեպաշտ Վաչագանայ» խոսքերից երևում է, որ հեղինակը հաշվում է երեք Վաչագան:



*Անտարակույս է, որ ընդգծված անունը՝* **Միրհավան** *ճիշտ վրաց ավանդության* **Միրվան**-*ոսն է, հին Միրիքրանը: Մեր պատմագրի ասելով Միհրական տան հիմնադիրը շինում է Գարդմանում մի քաղաք և կոչում իր անունով՝ Միհրավան: Չենք կարծում, որ այդպիսի քաղաք եղած լինի: Միհրական նույն անունն է, ինչ որ Միրհավան, այսինքն՝ Հայկազյանց թագավորը: Պատմագիրը հասկացել է որպես* Միհր *և* ավան *և այս ստուգաբանությունն է թելադրել համանուն քաղաքի գոյությունը:*

Հինավուրց Միրվան կամ Միրհավան և Միհրան կամ Միրիան Սասանյան շառավիղ են համարված այն իմաստով, որ Սասանյան թագավորների պաշտոնյաներ են եղած, բայց արյունով Սասանյան չեն բնավ: Միհրան, ինչպես և Սուրեն, Կարեն, Սպահապետ, Զիկ՝ պարթևական նշանավոր տոհմեր էին, որոնք պահեցին իրենց առաջնակարգ դիրքը նաև Սասանյանների շրջանում: Միրվան և Միրիան պատկանում են Միհրան մեծ գերդաստանին: Խոսրովի ազգային *կարծված Միհրանը այլ ոք չէ, քան հռչակավոր Վահրամ Չուբին Միհրանյան: Սասանյան պետության վերև հիշված չորս քուստակներից մեկի՝ Կապկոհի մեծ սպարապետն էր: Այս քուստակը կոչվում էր նաև Ատրպատական լայն իմաստով՝ ամփոփելով իր մեջ ո՛չ միայն բուն Ատրպատականը, այլև Հայաստան, Վրաստան,* **Աղվանք** *և Կասպյան ծովեզրյա սահմանակից երկրները: Վրաց ավանդության Միրիանի և իր դայակի՝ Միրվանի իշխանությունը ևս տարածվում էր ոչ միայն Վրաստանի, այլև Հայաստանի,* **Ռանի** *(Առանի=Աղվանքի), Մովականի և Հերեթի վերա:*

Միրիան բերել է տալիս Պարսկաստանից իր մի ազգականի՝ Փերոզ անունով, ամուսնացնում իր դստեր հետ և նշանակում Ռանի՝ Խունանից մինչև Բարդա, տիրակալ[1]*: Հարց է, արդյո՞ք Պարտավի Պերոզապատ կոչումը կապ չունի այս Պերոզի հետ ավելի, քան Պերոզ թագավորի: Ուրեմն, Փերոժ անունը ընդունված էր Միհրական տոհմի մեջ և կարող էր հին հիշատակ լինել: Պարսկական աղբյուրները Կավատին են վերագրում Բարդայի (=Պարտավի) շինությունը, որտեղից և Փերոժ կամ Պերոզ-Կավատ անունը: Կավատ շինող չէ, այլ վերաշինող և հավանորեն իր նշանավոր զորավարի՝ Զարմիհրի ձեռքով: Սա մեր պատմագիրների Զարմիհր Հազարավուխտն է, որ Աղվանքում կռվում էր լեռնականների դեմ, երբ հրաման ստացավ Պերոզից գնալ զսպել Վահանի ապստամբությունը 482 թվին*[2]*: Պերոզի որդու և*

[1] **M.Brosset**, Histoire de la Géorgie, t. I, p. 87 և 133. «Համառօտ պատմութիւն Վրաց ընծայեալ Ջուանշէրի պատմչի», էջ 42 և 63:

[2] **Ղազար Փարպեցի**, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1904, էջ 118: **Th. Nöldeke**, Geschichte der Perser und Araber zur Zeit der Sassaniden aus der arabischen Chronik des Tabari, Leyden, 1879, p. 120-121.

*հաջորդի՝ Կավատի օրով Զարմիհր ավելի ազդեցիկ դիրք ստացավ, բայց հետագայում շնորհազուրկ եղավ և սպանվեց:*

Զարմիհր անունն այնքան հազվագյուտ է, որ ենթադրել է տալիս մի ազգակցական կապ պարսից դրանիկի և Աղվանից իշխան Զառմիհրի մեջ: Կաղանկատվացին ասում է, որ Վարդան Միհրականը բնաջինջ արավ հին Հայկազյանց տոհմը, խնայելով միայն Զառմիհրին, որ «իր ցեղի փեսա էր»: Սրանով Զառմիհր նմանում է վրաց ավանդության Փերոզին, որ փեսա էր Միրիան թագավորի: Աղվանից Զառմիհր Միհրական չէր, ուստի և Կաղանկատվացին նրան դասում է Հայկազյանց շարքը: Պարսիկ Զարմիհր Հազարավուխտը ևս Միհրան տոհմից չէր, այլ Կարեն: Աղվանից իշխաններից մեկը կոչվում էր Զարմիհր Վարազ-Քուրդակյան՝ «յազգէ թագաւորաց», 704 թվին: Թագավորական ծագումը նշանակում է, թե պատկանում էր Հայկազյանց ցեղին: Արդյո՞ք Զարմիհր անունը հասարակ հիշատակ է Զարմիհր Հազարվուխտի որպես Աղվանքի երբեմնի կուսակալի, թե նշան է արենակցական առնչության Հազարվուխտի և Աղվանից իշխանական տան մեջ:

Վրաց ավանդությամբ, Վախտանգ Գորգասալի (Գուրգասարի) դարում Ռանի (Առանի) իշխանն էր ոմն Բարզաբոդ[1], *որին հաջորդեց որդին՝ Վարազ-Բակուր: Վախտանգ ամուսնացած էր Բարզաբոդի դստեր, ուրեմն Վարազ-Բակուրի քրոջ հետ: Իր սպարապետը և դայակը կոչվում էր Ջվանշեր և սրա եղբայրը՝ Վարազ-Միհր[2]: Այն հանգամանքը, որ Ջվանշեր դայակ էր Վախտանգի՝ Աղվանից իշխանուհու զավակի, այլև իր և իր եղբորը անունները, գրավական են, որ [նրանք] Աղվանական տանից են:*

Նույն վրացի աղբյուրից տեղեկանում ենք, որ Հերակլ կայսրը Տփղիս գրավելուց հետո գնացել է Գարդաբանի իշխանի՝ Վարազ-Գագելի դեմ, հաղթել Խոզաշեն գյուղի մոտ և մկրտել իր ժողովրդի հետ և հիմնել նույն գյուղում մի հոյակապ եկեղեցի: Անցել է Բերդուջ և իր մոտ՝ Լալ [բնակավայր] կանչել Մեծեկվնելի իշխաններին, նրանց ևս մկրտել և հեռացել դեպի Բաղդադ[3]:

Գարդաբան՝ Գարդման գավառն է և Վարազ-Գագել պետք է կարդալ Վարազ-Գիգոլ, ինչպես դիտել է արդեն Մ. Բրոսսե և նույնացրել Վարազ-Գրիգորի հետ, Ջևանշերի հայրը: Մեծեկվնել՝ Արցախի Մեծկուենից գավառն է և կապ չունի Լալ-ի հետ: Այս ժամանակները վրաց իշխան է հիշվում Ադարնասե, հավանորեն Մծխեթի արձանագրության Ադարնասե հյուպատը, որի իշխանության տարիները հաշվում են 619-639 թվերին: Կաղանկատվացու Ատրներսե վրաց իշխանը, որի օգնությամբ Ջևանշեր վանեց պարսից հարձակումները՝ 642 թվի մոտերքը, կարելի է և պետք է համարել նույնը Ադարնասե հյուպատի հետ, երկարելով նորա իշխանությունը:

Այս Ադարնասեի թոռն՝ Միր (=Միհր, 663-668) յոթ աղջիկ ուներ: Իր մահից հետո եղբայրը՝ Արչիլ, ամուսնացրեց բոլորին: Փեսաների թվում էին Վարազման, որ ծագում էր Բարդայի (=Պարտավի) պարսիկ իշխանից, այսինքն՝ Վախտանգի քեռի Վարազ-Բակուրից և Ջևանշեր Ջևանշերյան, որ Միրիան թագավորի Ռև որդու սերնդից էր[1]:

Աղջիկների թիվը, անշուշտ, առասպելական է, բայց իր պատմական արժեքն ունի այն իմաստով, որ Արչիլ բաժանում է փեսաներին իր եղբոր հողերը: Ներկայացնելով մեզ այս կերպով ժամանակի յոթ իշխանությունները՝ իրենց հողային սահմաններով: Վարազման ստանում է որպես բաժին Կոտմանից մինչև Քուրդիս-խև, իսկ Ջևանշեր՝ Խերկ և Մթեուլեթ: Կոտման ապահովապես Գարդմանն է և Վարազման՝ Կաղանկատվացու համանուն իշխանը, Ջևանշերի եղբայրը: Վերջինիս որդին կոչվում էր Վախտանգ[2], *որ նշան է մոր վրացի ծագման:*

Ջևանշեր Ջևանշերյան, թեև ասված է, թե Ռևի սերնդից էր, բայց անունը կարծել է տալիս, որ արյունակից էր Վախտանգ Գորգասալի դայակ և զորավար Ջևանշերին:

Այս հատուկտոր տեղեկությունները, ինչ և լինեն իրենց արժեքը, որ տրամադիր չենք չափազանցնելու, ցույց են տալիս, որ մի շարք անձեր, ինչպես Փերոզ (հմմտ. Կաղանկատվացու Վարազ-Պերոժ), Բարզաբոդ (աղավաղված ձևը Վարազ-Վարդ), Վարազ-Բակուր, Վարազ-Միհր, մի քանի Ջևանշերներ՝ իշխել են Աղվանքում ամեն պարագային հառաջ, քան Խոսրով Ապրվեզ: Կաղանկատվացին թվում է ութ սերունդ՝ Միհրական տան հիմնադրից մինչև Ջևանշեր: Հաշվենք սերունդը քսանական տարի, մերձավորապես յոթ սերունդի համար հարկավոր է 140 տարի: Հետևաբար Ջևանշերի նախահայրը պետք է ապրած լինի հինգերորդ դարի կեսերին, այսինքն՝ Վախտանգի ժամանակ:

Մի կարևոր պարագա: Խոսրով Ապրվեզի անկումից հետո, մի շարք անձեր հաջորդեցին կարճատև իշխանությամբ: Նրանցից մեկը, որ գահ բարձրացավ Շահրվարազից (629) հետո կոչվում է Ջևանշեր-Կասրե (= Խոսրով): Արդ, այս Ջևանշեր համարվում էր Վահրամ Չուբինի քեռորդի[3]: *Արդյո՞ք Վահրամ Չուբին իր պաշտոնավարության ատեն խնամացել է Աղվանքում*

[1] Զուանշեր, էջ 73:

[2] M. Brosset, Histore de la Géorgie, t. I, p. 146, 149, 170.

[3] Անդ, էջ 228:

[1] M. Brosset, էջ 248.

[2] Մովսես Կաղանկատվացի, Գիրք Գ, էջ 21, 26, 38:

[3] Mirhond, Histoire des rois de Perse de la dynastie des Sassanides, trad. par Silvestre de Sacy, Paris, 1893, p. 411.

*տեղական իշխող տան հետ և Միհրական տան նախահայրը՝ Միհրան, որ Չուրինի տոհմական անունն է, չէ՞ անդրադարձնում խնամության կապը:*

Խազարները 728 թվին արշավեցին Ատրպատական և պաշարեցին Վարդան(ակերտ) քաղաքը՝ Երասխի աջ ափին: Ցազդակ անունով մի իշխան, որ տիրում էր Բայլականի, պաշտպանեց քաղաքը և վանեց թշնամուն: Արդ, Ցազդակն իրեն համարում էր Սասանյան ցեղի շառավիղ[1]: *Բայլական Հայոց Փայտակարանն է, Դաշտային Աղվանքի գավառներից մեկը: Թերևս Սասանյան այս տոհմի ազդեցությունն է, որ Պարտավի Միհրական տունը ևս թյուրիմացությամբ Սասանյան է կարծվել, ինչպես տեսնում ենք Կաղանկատվացու մոտ[2]: Պարսկական ծագումով ուրիշ տներ էլ են եղել Աղվանքում, որոնց կանդրադառնանք ստորև (12):*

## [Ե (13)]

*Ջևանշերին հաջորդում է Վարազ-Տրդատ: Սրա իշխանության նվիրված հատվածը բռնում է տաս գլուխ, երկրորդ գրքի ԼԶ-ԽԶ: Ոճը և ոգին նույնն է, ինչ որ Ջևանշերի պատմության մեջ տեսանք: Ճշգրիտ եղելություններ շատ չեն և եղածները կասկածելի են ու ծավալուն մանրամասնությունները, եթե վստահություն ներշնչելու համարին, չեն հասնում նպատակին:*

Ջևանշերի մահվան սուգը հազիվ փարատած, Եղիազար կաթողիկոսը և իշխանները խորհրդակցում են և ընտրում «զնախարար ոմն աւագ, որ մեծարեալ էր կայսերական պատուով զապուհիւպատ պատրկութեան ստացեալ պատւի. որոյ անուն էր Վարազ-Տրդատ՝ որդի Վարազ-Փերոժի՝ եղբօր Ջևանշէրի» (Բ, գլ. ԼԶ):

Նորընտիր իշխանը հակառակորդներ ուներ հանձին «մախայորդոր տոհմակցացն»: Ակնարկը խուլ է և թվում է, թե վերաբերում է Շերոյին, որ Վարազ-Տրդատի մահից հետո խլում է գահը նրա կնոջից, ինչպես կտեսնենք: Զարմանալի է, որ պատմագիրը ոչինչ չունի ասելու Ջևանշերի զավակների մասին, ի՞նչ եղան նրա պատրիկ որդիները և ինչո՞ւ չհաջորդեցին հորը:

Վարազ-Տրդատ, ընտրությունից հետո, աճապարում է Պարտավ, երևի Գարդմանից, որի տոհմական իշխանն էր: Այդ միջոցին Հոնաց մեծ իշխան Ալփ Իլիթվեր գալիս է մեծ զորքով «Աժխուժազնեանն յաշխարհէն Գովգայ»՝ վրեժխնդիր լինելու «արեան Ջևանշէրի»: Հոնաց իշխանը բազմությունը թող-

[1] Tabari, Chronique, traduite sur la version persane par H. Zotenberg, t. IV, Paris, 1874, p. 278.

[2] **Մովսես Կաղանկատվացի**, հատ. Ա, էջ *286*; հատ. Բ, էջ *26, 54, 67:*



նում է Կապաղակ գավառում և ինքն իր գնդով անցնում Կուր գետը, ասպատակում *Ուտի գավառը և մեծ ավարով հեռանում* Լփնաց աշխարհը: Վարազ-Տրդատ ղրկում է նրա մոտ Եղիազար կաթողիկոսին բացատրելու, թե «չէաք մեք հաղորդ սպանմանն Ջևանշէրի. այլ ի ձեռն վատանշան առն միոյ նուազագունի եղեն ոճիրք»: Բանակցությունը հաջողում է: Հոնաց իշխանը մեղմանում է և հավանում «օգնական և թիկունք» լինել Վարազ-Տրդատի իշխանության և քաշվում իր երկիրը (Բ, գլ. ԼԶ):

Աղվանից իշխանն ու կաթողիկոսը տեսնելով, որ ծանր է...*:

Այս անցքերի ժամանակը պատմագիրը չէ տալիս, բայց դժվար չէ որոշել իր իսկ տվյալների հիման վրա: Վարազ-Տրդատ և Եղիազար, «հարաւայնոյն իշխանութեան», այսինքն՝ Հիջրի 62-րդ տարին, խորհում են մի եպիսկոպոս ղրկել Հոնաց իշխանի մոտ սեր և խաղաղություն հաստատելու համար: Եպիսկոպոսը ուղի է ընկնում 682 թվի հունվարին: Հետևապես 681 թվականին Վարազ-Տրդատ արդեն իշխան էր: Իր ընտրությանը մասնակից էր Եղիազար: Սա կաթողիկոս էր 680-686 թվականներին: Հետևապես Վարազ-Տրդատ ընտրված պետք է լինի 680 թվականի վերջերը կամ 681 թվականի սկզբները: Հոնաց իշխանի արշավանքը նույն 681 թվին էր, որից հետո Աղվանից իշխանն ու կաթողիկոսը խորհում են միջոց գտնել վերջ տալու կարևոր ասպատակություններին: Եվ որովհետև Հոնաց իշխանի հարձակումը նպատակ ուներ պատժելու իր փեսա *Ջևանշերի սպանողներին*, ուստի և վերջինիս սպանությունը չէր կարող շատ առաջ կատարված լինել, այլ հավանորեն 680 թվականի վերջերին կամ 681 թվականի սկզբներին:

Պատմագիրս չգիտե կարևոր քաղաքական անցքերը, որ տեղի ունեցան Վարազ-Տրդատի իշխանության շրջանում:

Աղվանքը թոթափեց արաբական լուծը 682 թվին՝ հայոց և վրաց հետ: Երեք տարի անկախ մնացին: Չորրորդ տարին խազարները խուժեցին Աղվանք: Նրանց դեմ ելան երեք երկրները՝ Գրիգոր Մամիկոնյան, վրաց և աղվանից իշխանները և ընկան կռվի մեջ 685 թվի հուլիսի 5-ին[1]:

* Մի քանի բառ ջնջված է (Պ. Հ.):

[1] «Անանուն ժամանակագրութիւն» (=«Գիրք կայսերաց»), էջ 80՝ Հուստինիանոս II-ի առաջին տարին «**տիրեցին հիւսիսային ազգն, որ ասին խազիրք** (Հազիրք) Հայոց, Վրաց և Աղուանից, յամսեանն սահմի, որ աւր տասն էր ամսոյն ի ՃԼԴ թուականին Հայոց»: Հմմտ. **Ղևոնդ**, էջ 15-16՝ «Եւ ի ժամանակի պատերազմին որ ի մէջ Տաճկաց՝ դադարեցին ի հարկատուութենէ նոցա Հայք, Վիրք, Աղուանք, ծառայեալ նոցա ամս Լ: Եւ եղեն աւուրք ապստամբութեան նոցա ամք Գ: Եւ ի չորրորդում ամին **տիրեցին ի վերայ աշխարհիս Հայոց հիւսիսային ազգն, որ ասին Խազիրք**, և սպանին ի պատերազմին զիշխանն Գրիգոր և զբազումս ի նախարարացն և զիշխանսն Վրաց և Աղուանից»: Ընդգծված բառերը ցույց են տալիս, որ կամ մեկը մյուսին կախում ունի կամ երկուսն էլ օգտվել են միևնույն աղբյուրից: Տե. Մարկվարտ «Բագրատունյաց ծագու-

Սինևնույն տարին Աբդ ալ-Մալիք [խալիփան] խաղաղության դաշն կնքեց Հուստինիանոս II-ի հետ նախկին պայմաններով, այսինքն՝ վճարել հոժարելով օրական հազար ոսկի, մի ձի և մի ստրուկ: Թեոփանեսի վկայությամբ, երկու կողմերը համաձայնել էին նաև իրենց մեջ կիսել Կիպրոսի, Հայաստանի և Վրաստանի հարկերը[1]*: Սակայն Հակոբ Եդեսացին, անցքերին ժամանակակից գրող, ուրիշ բան է ասում. Կիպրոսն անցնում էր տաճիկներին, բայց պիտի հարկ վճարեր նաև կայսրին, իսկ Հայաստան, Զուրզան (=Վիրք), Արզոն (կարդա՝ Առան) և Ատրպատական պատկանելու էին կայսրությանը[2]:*

Հուստինիանոսի երկրորդ տարին կայսերական զորքը մտավ Հայաստան, ավերեց երկիրը և ավարառությամբ վերադարձավ, ըստ Ղևոնդի[3]:

Թեոփանես հաղորդում է, որ զորքի հրամանատարն էր Լևոնտիոս, որ ջարդեց արաբներին և կայսերական իշխանության տակ առավ Հայաստան, Վիրք, **Աղվանք**, ***Boulkakis***, *որ Սովականն է և Մարք, այսինքն՝ Ատրպատական, այլև հավաքեց հարկերը և առաքեց կայսրին[4]:*

Գրիգոր Մամիկոնյանի մահից հետո և կնքված դաշինքի զորությամբ Հուստինիանոս նշանակել էր Հայոց իշխան Աշոտ պատրիկին՝ նույն 685 թվին: Իր իշխանության չորրորդ տարին՝ 688-689 թվականին, Աշոտ կռիվ ունեցավ արաբների դեմ, և մեռավ ստացած վերքից: Երևում է, որ կնքած դաշինքը տարածայնության տեղիք էր տալիս հողային խնդիրների վերաբերյալ կետում: Լևոնտիոս զորավարի և Աշոտ իշխանի ընդհարումները արաբ զորքերի հետ հետևանք էին այդ տարածայնության:

մը» (Վիեննա, 1913) աշխատության մեջ սխալ է հասկացել և հակասություններ գտել Ղևոնդի ժամանակագրության մեջ (էջ 53): Սակայն խոսքը տաճիկների մասին չէ, այլ հայոց, վրաց և աղվանից ապստամբության. երեք տարի հարկ չեն տալիս, իսկ չորրորդ տարին խազարները ընկճում են նրանց: Ասողիկը («Պատմութիւն տիեզերական», Ս.Պետերբուրգ, 1885, էջ 100) երկու անգամ է հիշում խազարաց արշավանքը: Մի անգամ առնելով Հովհաննես Կաթողիկոսից (**Հովհաննես Դրասխանակերտցի**, էջ 93), մյուս անգամ՝ Անանուն ժամանակագրությունից, որտեղից և գիտե ՃԼԴ թվականը: Առաջին անգամ նշանակում է ՃԼ, որ բացարձակ սխալ է, փոխանակ ՃԼԴ: Յո. Մարկվարտ կարծում է, որ Ասողիկ ի նկատի ունի ՃԼ թվականին՝ հոնաց արշավանքը, իսկ ՃԼԴ՝ խազարաց (էջ 12): Սակայն, երկու դեպքում էլ հիշատակվում է Գրիգոր Մամիկոնյանի սպանությունը և ուրեմն միևնույն կռվի մասին է իր խոսքը, և այն կռվի, որ եղավ ՃԼԴ=685 թվին, իսկ ՃԼ՝ գրչագրի վրիպակ է:

[1] **Theophanes**, p. 555.

[2] **Michel le Syrien**, t. II, p. 469.

[3] **Ղևոնդ**, էջ 17:

[4] **Theophanes**, p. 556. Ըստ Ասողիկի (էջ 100), կայսերական զորքը «երրորդ ամի (=կարդալ՝ երկրորդ) քանդեց 25 գավառ և գերեց ութ հազար մարդ (**ընագրում երդ է - Պ. Հ.**) և նորեն եկավ «ի միւս ամին» (ուրեմն երրորդ), ապա «ի գալ չորրորդ ամի», ինքն՝ կայսրը, եկավ:



Կայսրն ինքը եկավ Հայաստան իր չորրորդ տարին՝ «եկն ի կողմն մի Հայոց, ի լեառն, որ կոչի Արարտակ, և յերիս բաժանեալ զզօրս իւր՝ առաքէ ի Հայս, ի Վիրս և յԱղուանս», կոչեց իր մոտ երեք աշխարհների իշխաններին և Սահակ կաթողիկոսին հինգ եպիսկոպոսների հետ և «կացոյց իշխանս աշխարհացն, զՆերսեհ Շիրակայ տէր, կոմս Կապոյտիրոց՝ Հայոց իշխան, և զՎարազդատ (կարդալ՝ Վարազ-Տրդատ) պատրիկ էքսարխոս, որ էր երկրորդ թագաւորին՝ **Աղուանից** *իշխան, և ԼԲ զօր օգնական իշխանացն»[1]: Ասողիկի այս բանկագին տողերը հաստատվում են Թեոփանեսի վկայությամբ, որ կայսր Հուստինիանոսն իրոք Հայաստան գնաց 6179= 687-688 թվական[2]: Ասողիկի տված տարեթիվը գերադասելի է:*

Կաղանկատվացին անգետ է այդ քաղաքական կարևոր անցուդարձին: Նա, որ այնքան մեծ տեղ է տվել հոնաց արշավանքին, չգիտե ոչինչ խազարաց ճակատի մասին 685 թվի: Չգիտե, որ այդ ճակատում ընկել է, մյուս զոհերի թվում, նաև Աղվանից իշխանը: Նրան անծանոթ է, որ Հուստինիանոս Հայաստան է եկել, զորքի մի գունդ մտել Աղվանք, և որ Վարազ-Տրդատը արժանացել է էքսարխոսի մեծ պատվին և կարգվել Աղվանից իշխան՝ 688-689 թվականներին: Աղվանից պատմիչի հավաստիացումը, թե Վարազ-Տրդատ իշխան ընտրվեց 680-681 թվականներին, չի հաստատվում: Հարկավ, այս հակասությունը հարթելու համար, կարելի է ենթադրել, որ կայսրը միայն վերահաստատել է Վարազ-Տրդատին և ոչ նոր կարգել: Սակայն Ասողիկ ասում է որոշակի՝ «կացոյց իշխանս աշխարհացն» և ինչպես կարգեց Ներսեհ Կամսարականին հաջորդելու Աշոտ Բագրատունուն, որ սպանվել էր նույն տարին, նույնպես և Վարազ-Տրդատ հաջորդ էր իր նախորդի, որ մնում է անհայտ, մի նախորդ, որ իշխել էր Ջևանշերի մահից հետո մինչև 689 թվականը:

Կաղանկատվացին մի ուրիշ տեղեկություն ևս ունի Վարազ-Տրդատի մասին: Երրորդ գրքի ԺԲ գլխում պատմում է, որ Վարազ-Տրդատ հարկ էր տալիս միաժամանակ խազարաց, տաճկաց և հոռոմոց: Խիստ էր հոռոմների վարմունքը: Չերբակալեցին իրեն և իր երկու որդիներին և տարան մայրաքաղաք որպես պատանդ: Վարազ-Տրդատ խոհեմությամբ փախավ հինգ տարուց հետո և անցավ արաբների կողմը և նրանց էր միայն հարկատու: Այս իսկ պատճառով որդիները մնացին բանտարկված տասներկու տարի և ազատ արձակվեցին Վարդան Փիլիպպիկոսի գահակալությամբ:

[1] **Ասողիկ**, էջ 100-101:

[2] **Theophanes**, p. 557. Արարչության տարին ճիշտ չէ. ինչպես նկատել են քննադատները մի տարով ավելի է նշվում, այնպես որ 6179=686-687 թվական:

Վարդան Փիլիպպիկոս գահ բարձրացավ 711 թվին։ Վարազ-Տրդատի որդիները, ուրեմն, պատանդ էին (712-12=) 699 թվականից, իսկ ինքը Վարազ-Տրդատը ազատված՝ (699+5=) 704 թվին։ Այս ժամանակագրությունը սխալ է և հակառակ իր իսկ պատմիչի բերած վավերագրին՝ 704 թվի ժողովի արձանագրության, ուր ներկաների թվում կային նաև Վարազ-Տրդատի որդիները՝ Վարդան և Գագիկ։ Թողնենք ուրեմն սխալ ժամանակագրությունը և քննենք իրողությունը։

Ասողիկի վերոհիշյալ հատվածի մեջ ասված է, որ Հուստինիանոս կայսրը «զոմանս յիշխանացն ընդ իւր առեալ, և զոմանց զորդիսն պատանդս խնդրեալ, ընդ որս և զկաթողիկոսն Հայոց զՍահակ հանդերձ Ե եպիսկոպոսօք արգելեալ առ ինքն»[1]։ *Սրանց բոլորին կայսր տանում է Կ. Պոլիս, ինչպես հայտնի է և հույն Diegesis փոքրիկ գրվածքից (14), թե Հուստինիանոս կայսրը իր հինգերորդ տարին = 689-690 կանչեց Սահակ կաթողիկոսին մայրաքաղաք դավանաբանական խնդրի առթիվ։*

Հուստինիանոս II կայսրը, որ 685 թվին դաշինք էր կնքել արաբների հետ տասն տարվան ժամանակով, լուծեց ուխտը յոթներորդ տարին՝ 691-692 թվին։ Արաբները պատասխանեցին զենքով և Կեսարիայի մոտ ջարդեցին կայսերական զորքը։ Հայաստանում Ներսեհ Կամսարականից հետո իշխանության գլուխ էր անցնել Սմբատ Բագրատունին։ Արաբական հաղթության լուրն ստանալով նա երկիրը հանձնեց արաբներին՝ թողնելով կայսեր ծառայությունը, 692-693 թվին[2]։ *Աբդ ալ-Մալիք խալիֆան նշանակեց իր եղբոր Մահմեդին ոստիկան Հայաստանի Հիջրի 73 թվին=692 մայիս 23-693 մայիս 13, ճիշտ Սմբատի արաբներին անցած տարին և այս հետևանքով*[3]։

Երկար չտևեց նոր դրությունը։ Սմբատ ըմբոստացավ արաբների դեմ կայսրի դրդմամբ և օգնությամբ։ Ապստամբությունը պայթեց, ըստ Թեոփանեսի, 701-702 թվին։ Նույն տարին ունի և Ղևոնդ՝ «յետ ԺԶ ամի իշխանութեան Աբդլ-Մելիքի» (685+16=) 701-702 թվին[4]։ *Շարժումը շարունակվեց մի քանի տարի և վախճան գտավ Նախճվանի և Խրամի մեծ աղետի մեջ՝ 705 թվին։ Սմբատ վարձատրվեց կյուրապաղատության պատվով, բայց ստիպվեց թողնել հայրենիք, ապաստանել Փոթի, որտեղից վերադարձավ միայն վեց տարի հետո՝ 712 թվին։*

---

[1] **Ասողիկ**, էջ 101։

[2] **Theophanes**, p. 561. Արարչագործության 6188 թիվը = 692-693։ Դաշինքի լուծման տարին տալիս է Միքայել Ասորին (Chabot, II, ըստ հայերեն թարգմանության՝ **Միքայել Ասորի**, Ժամանակագրութիւն, Երուսաղեմ, 1870, էջ 470)։

[3] **Abul-Faradj**, Chronicum, 116. Ibn al-Athir, Kemel-at-Towarikh, ed. C. J. Tornberg, t. IV, Lugduni Batavorum, 1863, p. 294.

[4] **Theophanes**, p. 561՝ Արարչության տարի 6185, հմմտ. **Ղևոնդ**, էջ 19։



Աղվանից իշխանները զատ քաղաքական գիծ չունեին, այլ հետևում էին հայերին։ Վարազ-Տրդատի քայլը մայրաքաղաքից փախչելուց հետո՝ «ետ զաշխարհս Արևելից ի տաճիկս» (Գ, գլ. ԺԲ), այլ բան չէ նշանակում քան, որ հարել է Սմբատի ապստամբության և անցել արաբական ծառայության 693 թվին։ Կ. Պոլսում մնացել էր հինգ տարի, ուրեմն գնացել էր (693-5=) 688-689 թվին։ Իսկ և իսկ այն տարին, երբ կայսր Հուստինիանոս II Հայաստան էր և հայ իշխանների և կաթողիկոսի հետ վերադարձավ մայրաքաղաք։ Բնական է մտածել, որ այս իշխանների թվում էր նաև Վարազ-Տրդատ, և պատանդների մեջ՝ իր որդիները։ Նրանք վերադարձան տասներկու տարուց հետո, ուրեմն (688/689+12=) 700-701 թվին։ Խորհրդավոր տարի, Սմբատի հակաարաբական ապստամբության տարին։ Ինչպե՞ս չխորհել, որ պատանդները արձակված էին այն նպատակով, որ գնան, խրախուսեն ըմբոստական շարժումը, խաղան կայսեր խաղը։ Չմոռանանք, որ Վարազ-Տրդատի որդիներից գոնե Վարդանը օժտված էր պատրկության պատվով։

*Հուստինիանոս II գահընկեց եղավ և աքսորվեց 695 թվին և նորեն գրավեց գահը 705 թվին։ Օժանդակողներից մեկն էր Վարազ-Բակուր պրոտոպատրիկ, որ հավատարիմ մնաց Հուստինիանոսին մինչև վերջ և նրա հետ սպանվեց 711 թվին՝ Վարդան Փիլիպպիկոսի հաղթությամբ։ Անունը և տիտղոսը իրավունք են տալիս կարծելու, որ սա Աղվանից իշխաններից էր, Վարազ-Տրդատի ուղեկիցներից, որ մնացել էր բյուզանդական ծառայության մեջ։*

Վարազ-Տրդատի կյանքի այս կարևոր դեպքը հիշատակվում է պատահաբար մի զրուցախառն պատմության մեջ՝ երրորդ գրքում։ Իսկ նրան նվիրված հատվածում՝ Բ գրքի ԼԶ-ԽԶ գլուխներում՝ այս մասին ոչինչ չկա։ Գըլխավոր նյութը հոնաց քարոզությունն է։ Աղվանից իշխանի քաղաքական դիրքը որոշում է անցողակի դիտողությամբ և ընդհանուր խոսքերով, թե «ընդունէր զգերագոյն գահն ի հզօր և յարքայակերպ իշխանէն Տաճկաց սահմանակալ լինել կողմանն արևելեաց, և իշխել ամենայն թագաւորութեանն Աղվանից և Ուտէացւոց գաւառին նուաճեալ ընդ ինքեամբ զամենեսին» (Բ, գլ. ԼԷ)։ Այդ միջոցին մեռնում է Մեծկուենից եպիսկոպոս Դավիթ և հաջորդ է ընտրվում մեզ արդեն քաջածանոթ Իսրայել վանականը։ Անսահման է պատմագրի համակրանքը այս անձի հանդեպ։ Ս. Սահակ Պարթևի նման հրաժարվել է ուզում առաջարկված պաշտոնից, բայց վերջը հոժարում է հիշելով «զտեսիլ ցուցակութեան նմա ի սուրբ եկեղեցւոջն ի Վաղարշապատ քաղաքի» (Բ, գլ. ԼԷ)։ Իրա՞վ է, որ Իսրայել տեսիլ էր ունեցել, թե պատմագրի գյուտն է դրվատելու համար ընտրյալ վանականին, մնում է պատմագրի գաղտնիք։

Իսրայելի անունը սերտորեն կապված է նշխարների գյուտին։ Այս ան-

գամ նս նա խավատարիմ է իր այդ անխուսափելի կոչմանը: Վարազ-Տրդատ նրան ղրկում է Հայոց կաթողիկոս Սահակի մոտ՝ «վասն սիրոյ», բայց նոր եպիսկոպոսի բախտը բերում է. «ի ժամանակս յայնոսիկ բերեալ էր իշխանին՝ մեծ զօրավարին Հայոց ի Թորդանայ, ի Դարանաղեաց գաւառէն, զպատուական նշխարս խոստովանողին Քրիստոսի՝ սրբոյն Գրիգորի բոլորովին ամենայն ոսկերօքն հանդերձ յաշխարհին Հայոց՝ յԱյրարատեան գաւառն ի Վաղարշապատ քաղաք՝ հանգուցեալ ի նորաշէն յարկս եկեղեցւոյն, զոր մեծին Ներսեսի շինեալ է յանուն սրբոյն Գրիգորի» (Բ, գլ. ԼԸ): Իսրայել խնդրում է նշխարների մի մասը: Կաթողիկոսը դժվարանում է տալ, բայց մեջ են մտնում Գրիգոր Մամիկոնյան և իր կինը՝ Հեղինե, որ «Աղվանից նահանգէն էր» և հաջողում շնորհել եպիսկոպոսին «մասն յօրէնուսոյց ծնօտէն» Գրիգորի: Իսրայել բերում է փափագելի գանձ և դնում «յիւրում մենաստանին ի Գլխոյ վանսն» (Բ, գլ. ԼԸ):

Հեղինե, իրոք Գրիգորի կինն էր, ինչպես հայտնի է Արուճի արձանագրությունից: Բայց այս դեռ փաստ չէ Իսրայելի զրույցի ճշմարտության: Եթե Գրիգոր Մամիկոնյան բերած լիներ Թորդանից նշխարները, մի մասը կպահեր հավանորեն իր նորաշեն եկեղեցում: Ղևոնդ գովասանքով է խոսում Գրիգոր իշխանի մասին Արուճի եկեղեցու շինության առթիվ[1] *և, անշուշտ, պատեհ առիթ էր հիշելու նաև նշխարներ բերելը, եթե իրավ Գրիգոր այդ բարեպաշտական գործը կատարած լիներ: Զրույցը ուշ է, քան Ղևոնդ, որ գրում էր 800 թվականի շուրջը: Ներսես շինեց Վաղարշապատի եկեղեցին «յանուն երկնաւոր Զուարթնոցն» և ոչ Գրիգորի: Ճշմարիտ է, հանուն այն զվարթնոցների էր, որ երևացել էին Գրիգորի տեսլյանն, բայց և այնպես սրբավայրը կրում է Զվարթնոց անունը և ոչ Գրիգորի:*

Հովհաննես Կաթողիկոսն է, որ կարծում է, թե տաճարը շինված էր «ըստ անուանակրութեան Սրբոյն Գրիգորի»[2]*: Նույնը կրկնվում է և Իսրայելի զրույցում՝ «յանուն Սրբոյն Գրիգորի» (Բ, գլ. ԼԸ): Այս կետը ևս նպաստավոր չէ զրույցի հնության: Հովհաննես Կաթողիկոսի մոտ, Ներսես բաժանում է նշխարները և զետեղում «ի ներքոյ չորից սեանցն հաստահեղուսից», որպեսզի երկնավոր գանձը գերիչների ձեռքը չընկնի, միայն «զպատուական գլուխն ոչ ի խորոջ, այլ արտաքոյ ի գզրոցի եդեալ դնէ» ասավածապաշտ ժողովրդի համար*[3]*: Այս պարագան նույնպես ծանոթ է Իսրայելին, ուստի ստանում է «մասն յօրէնուսոյց ծնօտէն», այսինքն՝ գզրոցում պահված գլխից և ոչ թե սյուների տակ թաքնված մարմնից: Վարդան արտագրում է կաթողիկոսի տողերը և ավելացնում Իսրայելի զրույցը մի նոր խմբագրությամբ. «զՍուրբ Գրիգորի նշխարն, - ասեն, - ի Հայս բերել Գրիգորոյ Մամիկոնոյ, ի գնալ նորա դեսպան ի Կոստանդնուպօլիս, տուեալ ցնա կին ումն յաւագաց՝ որ ունէր առ իւր: Եւ նորա գաղտ հանեալ ի ծով և անցեալ զայ բերէ անգիտելի քաղաքին՝ զգանձն անանց մեծութեան և զծնօտն տայ Աղուանից ի խնդրոյ Ջուանշիրի և քեռ իւրոյ, որ էր կին Գրիգորի»*[1]*:*

Իսրայելի զրույցը կերպարանափոխված է: Վարազ-Տրդատի փոխարեն Ջևանշեր, Գրիգորի կինը՝ Ջևանշերի քույրն է: Նշխարները Թորդանից չէ, որ Գրիգոր բերել է տվել, այլ Կ. Պոլսից և բերողն ինքը՝ Գրիգորն է, որ ստացել է ազնվական մի կնոջից: Ուշագրավ է հատկապես վերջին կետը, որ մատնում է մի ուրիշ զրույցի ազդեցություն, որ գիտե Վարդան և հիշում է մի ուրիշ առթիվ: Հայոց 325 թվին =876 թ. Աշոտ Բագրատունու մոտ է գալիս դեսպանությամբ Նիկիտ ներքինին Վասիլ կայսեր կողմից: Նիկիտ հայտնում է, ի միջի այլոց, որ Ս. Գրիգորի նշխարները գտնվել են Կ. Պոլսում մեծ պասի հինգերորդ շաբաթում[2]:

Այս գյուտի պատմությունը պահված է շատ ձեռագիրներում, որտեղից և օգտվել է Վարդանը: Այնտեղ ասված է, որ գյուտը տեղի է ունեցել Միքայել կայսրի († 867) և իր մոր՝ Թեոդորա թագուհու օրոք և որ երկուսն էլ տեսել և երկրպագել են նշխարներին[3]:

*Իսրայելի, Հովհաննես Կաթողիկոսի*, Վարդանի և Նիկիտի տեղեկությունների փոխադարձ հարաբերությունը դյուրին չէ որոշել: Մեզ այնպես է թվում, որ առաջնությունը պատկանում է Նիկիտին և մյուս զրույցները հույնի՝ հայ հակակշիռներն են, որոնց նպատակն է հայ հողի վրա տեղափոխել ազգային մեծ սրբության գյուտը: Նախ նշխարները բերվում են Հայաստան Գրիգոր Մամիկոնյանի ձեռքով: Ազնվական կինը, որի մոտ նշխարները պահված էին, անտարակույս, աղոտացած պատկերն է Թեոդորա թագուհու, որ հայուհի էր և հասկանալի, որ ինքը և որդին բարեպաշտական զգացում ունեին հանդեպ սրբության: Հովհաննես Կաթողիկոս խոհեմաբար լռում է, թե Ներսես որտեղից հայթայթեց Ս. Գրիգորի նշխարները, բայց գիտե, որ նշխարները տարված են եղել Կ. Պոլիս, գիտե Նիկիտի զրույցից, ուստի և թաքցնել է տալիս նշխարները չորս սյուների տակ՝ նորանոր կողոպուտից փրկելու համար: Պահում է միայն գլուխը և ցուցադրում «գզրոցի» մեջ, ինչպես որ Կ. Պոլսում գտել էին «պահարանի» մեջ:

[1] Ղևոնդ, էջ 15:

[2] Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 48:

[3] Անդ:

[1] «Հաւաքումն Պատմութեան Վարդանայ Վարդապետի լուսաբանեալ», Վենետիկ, 1862, էջ 67:

[2] Անդ, էջ 85:

[3] Զրույցը հրատարակել է Ղ. Ալիշանը «Հայապատումի» մեջ (մասն Բ, Վենետիկ, 1901, էջ 42-48): Տե՛ս և մեր աշխատությունը «Les fêtes et les saints de L'Eglise Arménienne», «Revue de L'Orient chrétien», t. VI (XXVI), Paris, 1927-1928, № 3 et 4, p. 239.

Իսրայելի մոտ ճշխարները Թորդան են և այնտեղից է Գրիգոր Մամիկոնյան փոխադրում Վաղարշապատ: Իսրայել կարծես գիտե Հովհաննես Կաթողիկոսի մոտ պահպանված տեղեկությունը. գիտե, որ ճշխարները փոխադրված են «քոլորովին ամենայն ոսկեօքն հանդերձ» և խնդրում է ծնոտի մասը, կարծես գիտենալով, որ միայն գլուխն է մատչելի՝ պահված լինելով զգրոցի մեջ, այնինչ մյուս մասերը թաղված էին սյուների տակ:

Պոլսական զրույցը չի բարգավաճում հայ հողի վրա, այլ առաջ է բերում հակազդեցություն այն ուղղությամբ, թե Ս. Գրիգորի ճշխարները հանգչում են տակավին, Գրիգոր Մամիկոնյանի օրերից, Վաղարշապատի մեծ տաճարի սյուների ներքո և ուրեմն անհիմն է Պոլսի զրույցը[1]:

Մեր այս վերլուծությամբ Իսրայելի պատմածը պետք է ավելի ուշ լինի, քան 876 թիվը: Հովհաննես Կաթողիկոսի տեղեկությունը, չենք կարծում, որ իր գյուտը համարվի: Նա բարեխիղճ պատմագիր է և սովոր չէ մտացածին գյուտերի: Հավանական է, որ իր տեղեկությունը ճշխարների մասին արդեն կային հրապարակի վրա իրենից առաջ ուստի և Իսրայելի ավանդածը պետք է ծնունդ առած լինի 875 թվից հետո և 930 թվից առաջ[2]:

Հարկավ, Իսրայելի միտքը բեղուն է ճշխարներ հայտնաբերելու գործում: Կարելի էր իր մտքի պտուղ համարել ինչ որ պատմում է Թորդանի ճշխարների մասին, եթե միայն այս դեպքում ևս իր ուղեցույցը տեսիլը լիներ: Բայց չէ ասված, որ տեսիլ է տեսել: Ամեն պարագային, եթե անգամ ընդունենք, որ Իսրայելի զրույցը անկախ է 876 թվի լուրից, այդ զրույցը հորինված է Ղևոնդից հետո, որի Պատմությունը հասցված է գրեթե մինչև 800 թվականը:

Իսրայել ասելով հասկանում ենք Կաղանկատվացին: Նորա գործի երկրորդ գրքի ԼԸ գլուխը 800 թվից առաջ չէ, այլ հետո: Այս էլ նրանց համար, որոնք համարում են նրան Է դարու հեղինակ (15): Ս. Գրիգորի ծնոտի հիշատակությունը բարեպաշտական հասարակ ցույց չէ միայն: Կենեղուտ խաչը՝ Գարդմանի սրբությունը, Ջևանշերի թիկունքն էր: Նույնը պիտի լինի Ս. *Գրիգորի ճշխարը Վարազ-Տրդատի և իր գործակցի՝ Իսրայելի համար:*

Հոնաց մեծ իշխան Ալփ Իլիթվեր, ինչպես երևում է, հակառակ Եղիազար կաթողիկոսի միջնորդությամբ կռած հաշտության, սպառնում էր ապստա-

[1] Փարպեցուց հայտնի է, որ Գրիգորի ճշխարները Վահանի օրերում պահվում էին Վաղարշապատում (տե՛ս Ղազար Փարպեցի, էջ 176):

[2] 830 թվի անցքերը պատմելիս Կաղանկատվացին հիշում է, որ Սերոբ եպիսկոպոս Ամարասից գնացել է Հռոմ և կայսրից ճշխար խնդրել: Գրիգորի ճշխարների մի մասն իրեն տրվեց, որի համար ասում են, թե Գրիգորի բազուկն է, որով օրհնության յուղն են խնկարկում (Գ, գլ. Ի): «Ջարմանք և սոսկալի իրք», ինչ որ պատմում է Գրիգորի մասին... (այստեղ շարադրանքն ընդհատվում է - Պ. Հ.):



կությամբ: Վարազ-Տրդատը փորձում է մշտական բարեկամություն հաստատել նրա հետ և այս պաշտոնը հանձնում է Իսրայել եպիսկոպոսին:

Արաբական 62 տարին, որ է 681 թ. սեպտեմբերի 20-682 թ. սեպտեմբերի 9՝ մեհեկան ամսի 18-ին, Իսրայել ելավ Պերոզ-Կավատից: Հայոց տոմարական մեհեկան 18-ը հավասար է դեկտեմբերի 23-ին[1]:

Տասներկու օրեն Իսրայել հասավ լփնաց քաղաք, ուրեմն մեհեկանի 30-ին=հաջորդ տարի հունվարի 4: Հետևապես մեկնել է 681 թվի դեկտեմբերի 18-ին և հասել լփնաց մոտ 682 թվի հունվարի 4-ին: Աստվածհայտնության տոնը կատարեց և ապա անցավ Ճղբաց աշխարհը: Մեծ դժվարությամբ և միայն շնորհիվ Ս. *Խաչի նշանին, որ եպիսկոպոսի ձեռին էր, բևակոխեցին, ձյունախառն փոքրիկների միջով, Վարդեգրվակ լեռները և Ս. Գրիգորիսի նահատակության դաշտով ժամանեցին Չողայ ՝ Դարբանդի մոտ: Այստեղից անցան Վարաչան «հոյակապ քաղաքը» «ի մուտս քառասներորդացն»: Հոնաց մեծ իշխանը ընդառաջեց և ընդունեց Իսրայելին «մեծաւ ուրախութեամբ» (Բ, գլ. ԼԹ):*

Պերոզ-Կավատ, մեր պատմագրի վկայությամբ, Պարտավն է, արդի Բարդա: Հայտնի է նաև Դարբանդը: Պետք է կարծել, որ Իսրայել հետևել է Աղդաշ կամ Նիժ և Խաչմաս ուղին և ճեղքելով Կովկասի շղթան իջել է Կուբայի դաշտավայրը[2] *և ծովափով հասել Դարբանդ: Հոնաց մայրաքաղաքը՝ Վարաչան ավելի հյուսիս է, Սուլակ գետի մոտերքը ինչպես կտեսնենք քիչ հետո:*

Իսրայել հասավ Վարաչան մեծ պասի մուտքին: Զատիկը նույն տարին մարտի 30-ին էր, ուրեմն մեծ պասի մուտքը՝ փետրվարի 9-ը: Իսրայել ավելի քան կատարեց, քան հանձն էր առել: Բարեկամություն հաստատելու լավագույն միջոցն էր հեթանոս իշխանին դարձնել քրիստոնյա: Իսրայել դժվարությամբ կատարեց այդ առաքելությունը: Կարճ միջոցում, գրեթե քանի մի օրվան մեջ հաջողեց Ալփ Իլիթվերին ընդունել տալ քրիստոնեություն, իհարկե, իր ժողովրդի հետ միասին, այնպես որ «զարդարէին զանձինս ի պահս քառասներորդացն պահօք և աղօթիւք զգայգ և զցերեկ» (Բ, գլ. ԽԱ):

Ի՞նչ էր հոնաց կրոնը, որ այդպես հեշտությամբ թողին գրեթե Իսրայելի մի քարոզի ազդեցության տակ: Տարաբախտաբար հեղինակի ոճը՝ հավակ-

[1] 680-684 քառամյակին, նավասարդի 1-ը, շարժական տոմարով, հավասար էր հունիսի 9-ին, մեհեկանի կամ յոթներորդ ամսի 18-ը կգա դեկտեմբերի 23-ը:

[2] Ս. Գրիգորիսի վկայության տեղը՝ Վատնեան դաշտը, ըստ Փավստոսի (էջ 14) և ըստ Կեղծ Խորենացու («Աշխարհացոյց Մովսեսի Խորենացւոյ», էջ 27)՝ Վարդանյան դաշտ: Այս նկարագրությամբ այն նույնանում է Կուբայի դաշտի հետ, կամ մի մասն է կազմում:

նոտ, ինչպես նախորդ հատվածներում, ավելի բառեր է թավալում, քան մտքեր արտահայտում: Մանվածապատ դարձվածների, ընդհանուր խոսքերի մեջից հազիվ կարելի է հանել քանի մի էական կետեր: Հոնաց «հեթանոսական պղտոր պաշտամունքը» կազմում են.

1) *Չառագրքի (ո՛չ ծառագոքի)* մոլորություն, 2) կայծակի զոհերին Քվար աստծուն համարել, 3) ձիեր զոհաբերել Թանգրի խանին՝ նման պարսիկ Ասպանդիատին, 4) թմբուկ և շռինչ հնչեցնել մեռյալների վրա և սրերով ու դանակներով այտերը և մարմնի մյուս մասերը վիրավորել, 5) մրցություն և ձիարշավներ՝ սուգ, կոծ և ուրախության պարեր, 6) կրակների և ջրերի զոհեր մատուցել, 7) երկրպագել լուսնի և նման արարածների: Այլև սովորություն կար՝ 8) հորակին առնել, կամ երկու եղբայր մի կին ունենալ և կամ բազմակին լինել (Բ, գլ. Խ):

Իսրայել եպիսկոպոսը քարոզ կարդաց: Պատմագիրը բերում է քարոզը ամբողջապես: Աստծո, Աստվածորդու և Երրորդության մասին նախ հասկացողություն է տալիս, ուր հիշատակում է Գրիգոր Լուսավորիչի խոսքերը Ագաթանգեղոսից՝ «հայր յանձնէ որդի ի հօրէ, հոգին սուրբ ի նոցունց էութենէ»[1]*: Ապա հերքում է հոնաց հիշած պաշտամունքը կետ առ կետ. «Զի՞ հարկաւորիք մահացու* **թուչնոյն** *մօտ առնել ողջախոհ և ծաղկազարդ ձերոց մտաց անդաստան. ո՞չ գիտէք եթէ նախահայրն մեր Աղամ, սակս սորա ելեալ ի դրախտէն» (Բ, գլ. Խ):* **Թուչնոյն** *սխալ ընթերցված է ակնհայտի:*

Խոսքը օձի մասին է և թերևս ուղղելի է **թունոյն** *(եթե ոչ աւձոյն): Ստորև նախատում է վիշապ օձի ոսկեղեն կամ արծաթեղեն պատկերը կրելուն համար: Թմբուկ և ամեն կարգի երաժշտական գործիք՝ քնար, փող, տավիղ և դաշնակավոր նվագներ սատանայական գործ է համարում քարոզիչը և «յորդորիչ իգամոլ ախտից»: Երկու կին առնելն ևս՝ սատանայից է: Ասպանդիատ եսկային զոհել ձիեր՝ պիղծ և գարշելի արարք է, ինչպես գարշելի էր հնում Նեբրովդին երկրպագելը: Կայծակ և փայլատակ աստված համարել՝ անմիտ է: Չմեռված ցուրտ ամիսները նրանք անհետանում են, չեն համարձակվում երևալ, որովհետև Աստված չեն, այլ արարած Աստծո: Պետք չէ երկրպագել արեգակին և լուսնին, այդպիսիների «բաժինն է հուրն անշեջ», պետք չէ զոհել ջրերին, թե չէ քարի պես ջուրը կընկնին, իսկ ով պաշտե վարսավոր ծառեր, կայրվի փայտի պես (Բ, գլ. Խ):*

Իսրայելի քարոզը զինաթափ արավ: Ալփ Իլիթվերին իր բանակով ընդունեց նոր վարդապետությունը և եղավ մի նոր Տրդատ՝ «ասպնջական ցանկա-

[1] Ագաթանգեղոս, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1909, § 362, էջ 181: Հմմտ. Կաղանկատվացի, Բ, գլ. Խ:



լի սուրբ հաւատոցն լինելով. յաշխարհածնունդ հայրենեացն որդի գտանելով շնորհացն Աստուծոյ՝ մերձաւոր կենարար կենացն լինելով» (Բ, գլ. ԽԱ)[1]: *Հոնաց իշխանը նոր ուժ զգաց իր մեջ, ինչպես հույները Օլիմպիական խաղերին, մեծ քաջություններ ցույց տվավ «անդ ի Թուրքաստանսն առ Խազրականին»: Սա իր դուստրը տվեց նորահավատին կնության: Այնուհետև իշխանը ջանաց խափանել մեռելների վրա լացն ու սրակոծությունները և չաստվածներին նվիրատվությունները: Սատ տեղեր եկեղեցիներ շինեց: Կտրել տվեց Ասպանդիատին ձոնված ծառերը: Ասպանդիատին զոհած ձիերի կաշին «արկանէին զստոովք ծառոցն»: Երբ ուզեց կտրել մեծագույն ծառը, քրմապետները և վհուկները ընդդիմացան: Նորահավատ իշխանը և Իսրայել պապանձել տվին նրանց: Քահանաները կտրեցին ծառը փայտատներով, և նրանից պատրաստեցին խաչակերպ պահարան, ուր դրին «խաչ մի արծաթեղէն՝* **մասնաւորեալ ի տէրունական խաչէն***»:*

Այս բոլորը կատարվեց մեծ պասի ընթացքին: Պասեքին իշխանն իր ժողովրդով պատրաստ էր տոնելու մեծ տոնը: Քրմերը վերջին փորձն արին խանգարելու, բայց Իսրայել հաղթեց տերունական խաչով «զոր միշտ ի ձենին ունէր»: Քրմերից և կախարդներից շատերը եկան ճշմարիտ հավատի: Մեծ քրմապետին ստիպեցին իր ձեռքով այրել «չոփայիցդ շիրիմք արքունական կոչեցեալ»: Իսրայելի ընկեր՝ Մովսես քանդեց և այրեց մեհյաններ և «զչոփայսն զազիր մորթովն հանդերձ զոհարանացն» (Բ, գլ. ԽԱ):

Հոնաց իշխան խորհուրդ արավ իր մեծամեծների հետ, բացատրեց նրանց, որ Կոստանդին Մեծը ընդունելով քրիստոնեությունը, նոր զորություն ստացավ և հաղթեց թշնամիներին: Հետևապես, ինչո՞ւ չհավատան քրիստոնեից Աստծուն, եթե նրանով կարելի է «փառաւոր և յաղթող լինել»: Խորհուրդը վճռեց՝ խնդրել Իսրայելին մնալ իրենց մոտ որպես մշտական հովիվ: Այս մասին երկու պատգամավոր՝ Ավչի թարխան և Չաթկասար սենեկապետը խոսեցին Իսրայելի հետ և հայտնեցին իշխանի ցանկությունը, որ նա մնա Վարաչան: Իսրայել բացատրեց, որ առանց Եղիազար հայրապետի հաճության չէ կարող լքել սեպհական վիճակը (Բ, գլ. ԽԲ): Ալփ Իլիթվեր երկու մարդ ղրկեց Եղիազար կաթողիկոսի մոտ՝ Ձիթզին Խուրսանին և Չաթ Խազրին, հատուկ նամակով և նույն նպատակով: Նամակի պատճենը բերված է Բ գրքի ԽԳ գլխում: Մի ուրիշ նամակ գրեց Հայոց կաթողիկոսին՝ Սահակին և Հայոց զորապետին՝ Գրիգոր Մամիկոնյանին նույն խնդրի առթիվ (Բ, գլ. ԽԴ): Սրանք պատասխանեցին, որ այդ իրենց գործը չէ, այլ պետք է դիմել Եղիազարին: Ձիթզին Խուրսանը և Չաթ Խազրը վերադարձան Եղիազարի և Վարազ-Տրդատի մոտ և կրկնեցին իրենց խնդիրը: Սրանք գտան, որ

[1] Կաղանկատվացին քաղում է Ագաթանգեղոսի Ցառաջաբանից, § 13, էջ 10-11:

Իսրայել իր հոտն ունի և թողնելն այն, ներելի չէ: Բայց թույլատրում են, որ Իսրայել ժամանակ առ ժամանակ այցելե Հոնաց աշխարհը՝ մխիթարելու նորահավատ ժողովրդին (Բ, գլ. ԽԲ):

Մենք ներկայացրինք Իսրայելի քարոզչության կմախքը, հանելով ճարտասանության ոլոր մոլոր բավիղներից, ուզենալով չափել պատմվածքի իրական կշիռը (16):

Աշխարհագրական միջավայրին վերաբերող տեղեկություններըստույգ են: Պարտավից մեկնելով Իսրայել անցավ Լփնաց, Ճղբաց երկրները, Վա<ր>դեզրվակ լեռը, Գրիգորիսի նահատակության տեղը, Չողա դուռը Դարբանդի մոտ և հասավ Վարաչան Հոնաց քաղաքը:

Լփինք և Ճիղբք ծանոթ են Պլինիոսին՝ Lupeni, Silvi[1], *որոնք ապրում էին Կովկասյան շղթայի հարավային ճակատի վրա, նախ Silvi և ավելի հարավ Lupeni: Իսրայել, մեկնելով Պարտավից, հետևապես պիտի անցներ նախ Լփնաց, ապա Ճղբաց աշխարհը, համաձայն Պլինիոսի: Վարդեզրվակ հայտնի չէ այլուստ: Դարբանդից հյուսիս Հոնաց աշխարհն էր, իսկ հարավ՝ Մազքթաց, ուր և գտնվում էր Գրիգորիսի վկայության դաշտը՝ Վատնեայ, ըստ Փավստոսի, Վատնեան, ըստ Խորենացու Պատմության և Վաղանեն (և ո՛չ Վարդանեան, ինչպես ունի տպագիր), ըստ Խորենացու Աշխարհագրության: Չողա, ավելի հին ձևը՝ Ճորա, Դերբենդի պահակն է, որ կոչվում է նաև Հոնաց դուռն:*

Կաղանկատվացու հետ համերաշխ են Խորենացու Աշխարհագրությունը և Ղևոնդ: Ըստ «Աշխարհացոյց»-ի, «ի հիւսիսոյ պահակի թագաւորութիւն Հոնաց հուպ ի ծով. և ի մտից նորա առ Կաւկասով Վարաչան քաղաք նոցին Հոնաց և Չունգարս և Մսընդըռ»[2]*: Իսկ Հոնաց հյուսիսային հարևաններն են «Սաւիրք մինչև ցԱթլղ (և ոչ ցԹալղ, ինչպես տպագիրն ունի) գետ», որ է Վոլգա, ուրեմն մինչև արդի Աստրախան քաղաքը: Իսկ Դարբանդից հարավ, ըստ «Աշխարհացոյց»-ի, «Մասքութեան ազգն բնակեալ են ի Վա<ր>դանեան դաշտին»*[3]*:*

Ղևոնդ ևս գիտե Դարբանդի մոտ հոներին, միայն նրանցից հյուսիս Սավիրք չեն, այլ Խազիրք: Արաբ զորավար Մսլիմ կռվեց 716 թվին «ընդ զօրս Հոնաց, որ ի Դարբանդ քաղաքի», հալածեց և անցավ «ընդ պահակն Ճորայ, ասպատակ սփռեալ յաշխարհն Հոնաց և երթեալ բանակէր մերձ առ Թարգու քաղաք Հոնաց»: Իսկ բնակիչները տեսնելով արաբական խուժումը «ազդ առնէին արքային Խազրաց, որ անուանեալ կոչէր Խաքան»[4]*: Խազ-*

[1] Plinii Secundi G., Naturalis historiae, vol., VI, Lipsiae, 1909, 29.

[2] «Աշխարհացոյց Մովսեսի Խորենացւոյ», էջ 27:

[3] Անդ:

[4] Ղևոնդ, էջ 40-41:



*րաց թագավորի մահից հետո մայրը, «որոյ անունն էր Փարսբիթ՝ հրաման տայր զօրավարին, որ Թարմաչ կոչէր» գնալ Հայոց աշխարհի վրա: Թարմաչի զորքերը «ելանէին ընդ աշխարհն Հոնաց և ընդ պահակն Ճորայ, ընդ երկիրն Մազքթաց» ասպատակելու Փայտակարան և Ատրպատական: Արաբ զորավար Ջառահ դեմ ելավ, բայց պարտվեց և ընկավ կռվում 722 թվին*[1]*: Ավելի ուշ, 785 թվին, Օթման, Հայոց ոստիկանը, հայ իշխանների հետ գնաց «ի դրունս Կասպից ի Դարբանդն կոչեցեալ քաղաք, որ է պարիսպ և պատուար ամրութեան շինեալ ընդդէմ զօրացն Հոնաց և Խազրաց»: Կռիվը տեղի ունեցավ Քերան դաշտում, ուր ընկան Տաճատ, Բագրատ և Ներսեհ «ի հնոցաձև ապառաժին դաշտի: ...Ի տապախառն օդոյն»*[2]*:*

Թարգու քաղաք, որ մինչև այժմ գոյություն ունի Պետրովսկ քաղաքի մոտ, որոշում է Հոնաց աշխարհի հյուսիսային սահմանները: Տարաբախտաբար Հոնաց մյուս քաղաքների՝ Վարաչանի, Չունգարսի և Մսնդռի դիրքը հայտնի չէ: Վարաչան չէ արաբ հեղինակների Բալանջար, և ո՛չ էլ Չունգարս Ջունդառն է: Մսնդռ (կարդալ Սմնդռ) է Սամանդար, հավանորեն Հոնաց և Խազրաց սահմանագլխին, Սուլակի գետի ստորին հովտում: Վարաչան, մեր կարծիքով, Կոստանդին Ծիրանածինի[3] *ծանոթ* Վրեզան *է, իսկ Չունդարս սրբագրում ենք Չուղան և համեմատում նույն Կոստանդին Ծիրանածինի Կեդոնիա կոչված երկրի հետ*[4]*: Երկուսն էլ փոքր իշխանություններ էին*

[1] Ղևոնդ, էջ 101-102:

[2] Անդ, էջ 160-161:

[3] Constantini Porphyrogeniti Imperatoris de Cerimoniis aulae Byzantinae, Bonnae, 1829, p. 688.

[4] Յո. Մարկվարտ («Osteuropäische und Ostasiatische Streifzüge», Lpz., 1903, p. 17) այն միտքն է պաշտպանում, թե Վարաչան=Բալանջար և Չունգար(ս)=Ջունդառ, բայց հետո հրաժարվեց և նույն աշխատության մեջ (էջ 492) ի նկատի առնելով, որ արաբական Ջունդառ կարդալու է խկապես Չայդար, փորձում է Չունդարսի մեջ տեսնել Բալանջար, սրբագրելով Չունգարսը Բղունգար=Բալանգար, արար<երեն> հնչմամբ՝ Բալանջար: Իսկ Վարաչան մնում է զատ քաղաք: Մարկվարտ կարծում է, որ Սամանդար գտնվում էր Թարգուի մոտերքը, Լավես՝ Սուլակի ստորին հոսանքում: Ֆ. Վեստբերգ ռուս գիտնականը ավելի հավանական է համարում, որ Սամանդար Թերեք գետի մոտ էր, իսկ Բալանջար՝ Սուլակի («Журналь Министерства народного просвещения», 1908, март): Մրվան իբն Մուհամմադը 737 թվին գնաց ալանաց դեմ, այստեղից մտավ Խազրաց երկիրը և անցնելով Բալանջար և Սամանդար քաղաքները հասավ խաքանի մայրաքաղաքը՝ Բայդա Աթլ գետի վրա (Streifzüge, էջ 12): Նույն արշավանքի նկատմամբ Ղևոնդ (գլ. Ի) հաղորդում է, որ Մրվան, Աշոտ իշխանի հետ, ասպատակեցին Հոնաց աշխարհը և «առին զքաղաքն» և ավարով վերադարձան Պարտավ: Անորոշ է, թե ո՞ր քաղաքի մասին է խոսքը, արդյո՞ք խաքանի մայրաքաղաքի: Եթե իրոք Մրվան անցավ Բալանջար և Սամանդար պետք է կարծել, որ Բալանջար ավելի հարավ էր, քան Սամանդար, համաձայն Վեստբերգի և «Աշխարհացոյց»-ի, եթե Չունգարս սրբագրելու լինենք Բղանգար: Այս դեպքում Հոնաց աշխարհի հյուսիսային սահմանները կհասնին մինչև Թերեքի գետաբերանը:

*X դարում և հարաբերության մեջ բյուզանդական դրան հետ: Ծիրանածին կայսրը հիշում է նաև Սարվան և Խրյուսա («Աշխարհագրության»՝ Շրվան և Խսրվան), ինչպես և քաջածանոթ է Ծանարք և Մոկան =Մովական՝ մի շարք փոքր իշխանությունների հետ, Կովկասյան շղթայի հյուսիսային և հարավային լանջերում, Ալանաց դռան (=Դարյալի) և Շամախու միջև*[1]:

Բալանջար և Սամանդար խազարական ցեղեր էին, որոնց անունով և կոչվում էին հիշյալ քաղաքները: Խազիրք գրավել էին այս տեղերը հոներից և գուցե այդ է պատճառը, որ «Աշխարհագրությունը» համարում է Հոնաց աշխարհ[2], *մինչդեռ Իբն ալ-Աթիր անվանում է Խազրաց քաղաքներ՝ Մրվանի 737 թվի արշավանքի պատմության մեջ*[3]:

Ամեն պարզագային Հոնաց աշխարհը Դերբենդից վերև էր, ինչ և լինի նրա հյուսիսային սահմանը, իսկ Դերբենդից ցած՝ մազքութներն էին: Փավստոսից գիտենք, որ Մազքթաց Սանեսան թագավորը ասպատակեց Հայաստան «Հոնաց բազմութեան» հետ[4]*: Ասել է, թե դեռևս չորրորդ դարում հոներն ու մազքութները հաստատված էին հոչակավոր պահակի երկու կողմերը:*

Սակայն դժվար է ասել, թե «Աշխարհագրութեան», Կաղանկատվացու և Ղևոնդի հոներն ու մազքութներն արդյո՞ք նույն ցեղերն էին, ինչ որ հիշում է Փավստոս, թե հին անունների տակ ծածկված էին նոր ցեղեր: Ամենայն հավանականությամբ գոնե Հոնաց իշխանական տունը խազարական ծագում ուներ և թերևս սերում էին խաքանի տոհմից, այսինքն՝ վասալական երկիր էր և կառավարվում էր խաքանի կողմեն նշանակված և իր ազգական անձերից: Վարաչանի մեծ իշխանի անունն այս իմաստով խիստ ցուցական է: Ալփ Իլիթվեր, կամ Իլութվել խազարական անուն է: Ալբ կամ Ալփ (ինչպես Ղևոնդի մոտ՝ Ալփ Թարխան, հետագայում՝ Ալփ Արսլան) նշանակում է «քաջ»: Իլութվել-ի առաջին մասը՝ իլու, նշանակում է «ժողովուրդ», իսկ թվել, երևի՝ «պետ», միասին՝ «ցեղապետ»: Կոստանդին Ծիրանածին[1] *պատմում է, որ հունգարական բազմաթիվ ցեղեր միացան ոմն Արպադի իշխանության տակ և, որ Արպադ հունգար չէր, այլ խազար էր և պատկանում էր խազարական կաբար ցեղին: Ըմբոստության հետևանքով կաբար ցեղը հեռացավ և ապաստան գտավ հունգարների մոտ: Արդ, այս Արպադի որդին կոչվում էր* ***Tabel-es****, այսինքն՝ Թեվել, որ կարծում ենք նույն ինքն է ինչ որ մեր Թվել կամ Թվեր:* ***Tabel****-ի որդու անունն էր* **Termatzou-s**՝ *Թերմազու: Ղևոնդի մոտ Խազրաց թագուհու զորավարը, որ հաղթեց Ջառահին 722 թվին, կրում էր ճիշտ այս Թարմաչ անունը*[2]*:*

Վոլգայի բուլղարների թագավոր Ալմըշ 921 թվին դիմեց Բաղդադ, ցանկություն հայտնելով ընդունել իսլամ: Խալիփան դրկեց Ահմատ Ֆադլանին, որը իր ուղևորության նկարագրության մեջ պատմում է ի միջի այլոց, որ Ալմըշ կոչվում էր՝ **mlk blthvar**: Մարկվարտի սուր աչքից չի խուսափել, հարկավ, որ **blthvar** հիշեցնում է Կաղանկատվացու Ալփ Իլիթվեր և ավելի մոտեցնելու համար առաջարկում է կարդալ **al-*blthvar*,** *այսինքն՝* **alb-*blthvar*,** *ենթադրելով, որ արաբ գրիչները al-ը ձգել են, արաբական մասնիկ կարծելով*[3]*: Համամիտ չենք այս կետում և ավելի հավանական ենք համարում կարդալ* ***ilthvar*** *փոխանակ* ***blthwar****-ի, որ հասարակ կետադրության խնդիր է՝* ***ilthvar*** *իլըթվեր, իլութվել*[4]*:*

Նկատենք, որ Ալմըշ կամ Ալմուշ խազարական անուն է: Արպադի հայրը կոչվում էր **Salmoutres**՝ Սալմուչ, որ հունգարագետների կարծիքով նույն Ալմուշ անունն է:

Վերև հիշեցինք խազրաց զորավար «Թաժ Թարխան ի գնդէն Խաթիրլիթբրայ»: Խաթիր, կարծես ցեղի անուն է, իսկ Լիթբեր, *թերևս նույն* ***ilthver*** *գավառն է*[5]*:*

Խազարների դարձի պատմության մեջ ասված է, որ քրիստոնեություն

---

[1] **Constantini Porphyrogeniti**, Imperatoris de Cerimoniis, p. 688, հիշում են՝ Albania, Krebatas (?), Kidonia, Tzanaria, Sarvan, Xursan, Vrezan, Mokan, նաև Azia: Կոստանդին Ծիրանածինի ժամանակակից արաբ Մասուդի (Macoudi, Les prairies d'or, t. II, Paris, 1864, p. 69) պատմում է՝ Սուհամմադ իբն Եզիդ անուն մի իշխան, որ տեր էր Շիրվանի (Շիրվանշահ էր), հետզհետե գրավեց հարևան Խուրսան, Մուկան և Ջադան իշխանությունները: Մարկվարտ առաջարկում է վերջին անունը կարդալ Վաղան, առանց բացատրելու, թե ի՞նչ է հասկանում այդ սրբագրությամբ («Die Entstehung und Wiederherstellung der Armenischen nation», Berlin, 1919, p.73): Թվում է, որ սրբագրությունը իրավացի է և խոսքը Վա(ր)դանեան կամ Վատնեան դաշտի մասին է, որ IV դարում կազմում էր առանձին իշխանություն:

[2] «Աշխարհացոյց Մովսեսի Խորենացւոյ», էջ 27:

[3] **Ibn al-Athir**, Chronicon, Ed. C.J. Tornberg, t.IV, p. 301.

[4] **Փավստոս Բուզանդ**, էջ 14:

[1] **Constantine Porphyrogeniti**, De Administrando Imperio, Bonnae, 1840, p. 169-175.

[2] **Ղևոնդ**, էջ 101:

[3] **J. Markwart**, Osteuropäische und Ostasiatische Streifzüge, p. 114.

[4] Միևնույն անվան, թե տիտղոսի գործածությունը խազարների և բուլղարների մոտ բնական է, ըստ Միքայել Ասորու (կամ ավելի ստույգ ըստ իր աղբյուրի՝ Դիոնիսիոս Տելլմահրեցու), Բուլղար և Խազրիկ հարազատ եղբայրներ էին (**Michel le Syrien**, II, p. 363-364):

[5] Կոստանդին Ծիրանածնի մոտ հունգարական ցեղերից մեկը կոչվում է erthi, erthim՝ ուրեմն harthi, որ հիշեցնում է Խաթիր, Խարթի:

ընդունենցին նրանց «Գերագույն իշխան» (=թագավորը)՝ **Իշադ** և զորականները ու մեծամեծները[1]: Մարկվարտ սրբագրում է **ալ-շադ**:

Թեև մենք տեսնում ենք այստեղ Կաղանկատվացու **Շադ**, որ Ջեբու խաքանի որդու անուն կամ պատվանունն էր, որ Մարկվարտ անտեսել է, բայց և այնպես կողմնակից չենք սրբագրության, այլ գտնում ենք, որ **Իշադ** ավելի հին և ստույգ ձևն է: Խազրական բառ չէ, այլ իրանական: Ֆերգանի կամ Կոկանդի իշխանը արաբական աշխարհակալության շրջանում կոչվում էր **իշ-խադ**, ինչպես և Սոգդի կամ Բուխարայի իշխանը: Իսկ իշխադ տեղական իրանական բարբառի ձևն է հին **խշայաթիա**՝ «թագավոր» բառի, որտեղից պահլավ **շահր** և պարսիկ **շահ**: Իշադ, շաթ տիտղոս է և ոչ հատուկ անուն, բայց կարող է և կիրարկվել որպես հատուկ անուն, ինչպես հաճախ պատահում է (հմմտ. **շահապ**= սատրապ, իշխան, թագավոր և այլն):

Ալչի Թարխան և Կաթ Խասար (և ո՛չ Կասար), Երթգին Խուրսանա և Կաթ Խազր անուններից առաջինը հասկանալի է. Ալչի-ն նշանակում է «որսորդ», Թարխան՝ տիտղոս է: Երթգին=եր-Թիգին՝ «երկրի կամ ժողովրդի պետ»: Խուրսանք = Խուրսան, պարսիկ հոգնակի է **խուրս-ի** (ինչպես Մազքութ-ան, փոխանակ հայ Մազկութ-ք), բյուզանդական **Khursa**, կովկասյան ցեղի անուն՝ վերև հիշված: Կաթ Խասար, կարծես թե կարդալու է Կաթ Խուսր (= Խուրս), նման կաթ խազր, այսինքն՝ խուրսական և խազրական կաթ, իսկ վերջինս հավանորեն սրբագրելու է շաթ: Ուշագրավ է նաև **չոփայ** բառը՝ «չոփայիցդ շիրիմք արքունական կոչեցեալ», «վառէր զայրեցումն բարձու մեհենիցն և զչոփայսն զազիր մորթովն հանդերձ զոհարանացն» (Բ, գլ. ԽԱ): Չոփայ-ք տիտղոսավոր անձեր էին և պաշտելի: Հավանորեն թագավորներ կամ հերոսներ դյուցազնացրած: Այս բառը նույնն ենք համարում ինչ որ բյուզանդական հեղինակների մոտ քաջահայտ **ժուպան**՝ **zoupan**, ցայժմ էլ գործածական բալկանյան ժողովուրդների մեջ: Հին հունգարական արձանագրությանց մեջ **zoupan** նշանակում է «ցեղապետ»[2]: Ավելի հարազատ, քան չոփա պետք է համարել Չորպան Թարխան զորականի անվան մեջ պահված չորպան, կարդա՛ չոպան = **zoupan**:

Երբ կայծակ «մարդոյ դիպեսցի, թէ այլ ինչ նիւթեղինաց, ձօնեալ իմն զնա նուիրեալ **Քուար** Աստուծոյ համարէին» (Բ, գլ. Խ), այսինքն՝ մոտավորապես այն սնոտի հավատն էր, որ մեր ժողովրդի մեջ էլ կա, թե կայծակնահար ան-

---

[1] J. **Markwart**, Osteuropäische und Ostasiatische Streifzüge, p. 24.

[2] J. B. **Bury**, A History of the Eastern Roman Empire, London, 1912, p. 334, note 3. Zupan-ի ծագումը անհայտ է, հնարավոր է, որ այլ բան չէ, քան իրանական čopan հին փոխառությունը հովիվ pastor-ի:



ձը սուրբ է: «**Քուար**», ուրեմն, խազարական թե հոնական բառ է, նույնանիշ «նվիրեալ»-ի: Հունգարական ցեղերից մեկը կոչվում էր **Koubiares**, այսինքն՝ քու(վի)ար, որ գրեթե համահնչյուն է քուար-ին[1]: Թեոփիլակտոս Սիմոկատա[2] հաղորդում է, որ սկյութական, այսինքն՝ թուրքական (=ավարական) **Boukolabra** հատուկ անունը նշանակում է **magos, hiereus**, այսինքն՝ «մոգ», «նվիրակ» (= քահանա): Երբ կարելի է կարդալ **Boulo-klabra**, ապա երկրորդ մասի մեջ կունենանք քավրա (= նվիրյալ), նման՝ քուար-ի:

Թանգրիխան, հոմանիշ է իրանական Սպանդիատին, մեր պատմագրի տեղեկությամբ: Թանգրի նշանակում է «երկինք» և խան, կոչումն է խաքան-ի, ուրեմն՝ «երկնքի տեր»: Այժմ էլ Թանգրի գործածական է կովկասյան թուրքերի մոտ՝ երկինք=Աստված նշանակությամբ (տունդ Աստված քանդի=տունդ Թանգրի-ն քանդի):

## [Ձ]

Երկրորդ գրքի վերջին ԽՁ-ԾԲ գլուխները շոշափում են Աղվանից եկեղեցուն հայող խնդիրներ: Ուշագրավ է առանձնապես Աղվանից եկեղեցու դերը պատկերամարտության և քաղկեդոնականության հարցում: Մեր պատմագիրը հայտնում է, որ Ուխտանես և Եղիազար կաթողիկոսների օրով վեճեր կային հունաց և հայոց մեջ և «աշխարհն Աղվանից անվրդով յայսցանէ մնայր»: Լսեցին, թե «ոմանք պատկերս ոչ ընդունին, ոմանք մկրտութիւն ոչ առնեն, ոչ աղ օրհնեն, ոչ պսակ դնեն հարսանեաց. այս պատճառաւ, եթէ քահանայութիւն բարձեալ է յերկրէս» (Բ, գլ. ԽՁ): Այս առիթով Մեծկողմանց եպիսկոպոս Դավիթ հարցում արավ գրով Հովհան վարդապետին և ստացավ պատասխան:

Հիշված անձերը մեզ ծանոթ են: Ուխտանես կաթողիկոս էր 668-680 և Եղիազար իր հաջորդը՝ 680-686: Դավիթ եպիսկոպոսը քաջածանոթ Իսրայել եպիսկոպոսի նախորդն էր Մեծկողմանց աթոռի վերա և մեռավ 680 թվի շուրջ: Հովհան վարդապետը հռչակավոր Մայրագոմեցին է, ինչպես բացահայտ է գլխի վերնագրեն: Սրա մահվան տարին հայտնի չէ: Երե հավատանք **Diegesis**-ի վրացի թարգմանության (17), Հովհան մեռած է ՃԼԳ=684 թվին:

Ժամանակագրական տեսակետից արգելք չկա, որ Դավիթ Մեծկողմանց եպիսկոպոսը դիմում անե Հովհան Մայրագոմեցուն այն խռովությունների

---

[1] Անդ:

[2] **Theophylacti Symocattae** Historiarum libri octo, Bonnae, 1838, p. 47.

առթիվ, որ վրդովել են հայ-հոռոմ հարաբերությունները Ուխտանեսի և Եղիազարի ժամանակ: Դավթին հետաքրքրում են հատկապես այն աղանդավորները, որ չեն ընդունում պատկերներ, մկրտություն, մատաղ (աղ օրհնել), պսակ և անգամ քահանայություն: Սակայն Հովհան Մայրագոմեցին պատասխանում է միայն մի կետին՝ պատկերների խնդրին: Նրա մեկնությամբ, պատկերամարտությունը երևացել է նախապես հոռոմց մոտ, ժողով է գումարվել Կեսարիայում և ընդունվել՝ պատկերներ նկարել եկեղեցիներում: Այս առիթ է տվել նկարիչներին մեծամտել և իրենց արվեստը ամենից բարձրը համարել, ասելով «մեր արուեստս լոյս է, զի ծերք և տղայք առհասարակ վերծանեն, և զԳիրս սուրբս սակաւք ընթեռնուն» (անդ): Նորից ժողով է գումարվել և այս անգամ որոշել են, թե գրիչները, վերծանողները և մեկնիչները գերադաս են նկարիչներից:

Ամեն պարագային հայերը տեղեկություն չեն ունեցել այս վեճերից մինչև Մովսես [Բ Եղիվարդեցի] կաթողիկոսը: Կարինի Թեոդորոս եպիսկոպոսի հետ, քաղկեդոնական հողի վրա, ընդհարվելուց հետո, Մովսես պատվիրել է՝ «Մի՛ գիրս, մի՛ պատկերս, մի՛ նշխարս ի նոցանէ ընդունիլ» (անդ): Թեոդորոս իր համախոհներով ընտրել է տալիս կաթողիկոս Հովհաննեսին:

Մայրագոմեցին շարունակում է իր պատմությունը հաղորդելով, որ Մովսեսի կողմնակիցներից երեք հոգի՝ Հեսու, Թադեոս և Գրիգոր, գնացել են Սոթից գավառը և քարոզել, թե «զպատկերս, որ յեկեղեցիս են նկարեալ, ի բաց ջնջեցէք և ընդ աշխարհական քահանայս մի՛ հաղորդիք» (անդ): Մովսես կաթողիկոսը կանչել է դրանց իր մոտ խրատելու, բայց նրանք չեն եկել և հեռացել են Արցախ գավառը: Գիտուններն բացատրում են Մովսեսին, թե նրանց մոլորությունը եկած է Հոռոմց աշխարհից և կաթողիկոսը հրահանգում է, թե «մի՛ ոք իշխեսցէ խոտել զնկարս, որ յեկեղեցիս է»: Մովսեսի մահից հետո, երբ Աբրահամ [Ա Աղբաթանեցի] գահ բարձրացավ, «պատկերամարտքն, որ իջին յԱղվանս՝ պղտորեցին զերկիրդ ձեր»,- շարունակում է իր խոսքը Մայրագոմեցին, և Գարդմանից իշխանը ձերբակալեց երեք անձերին և ղրկեց իրենց՝ Մայրագոմեցուն: Սա նրանց հարցրեց, թե «յոր պատճառս չընդունիք **զմարմնացելոյ Աստուծոյ զպատկերն**»: *Պատասխան եղավ, թե չեն ընդունում պատկերը, որովհետև հակառակ է Ս. Գրքին: Հովհան Մայրագոմեցին նրանց հիշեցրեց Մովսիսական խորանի և Սողոմոնյան տաճարի նկարագրությունները և ուղղեց նրանց մոլորությունը (Բ, գլ. ԽԶ):*

*Դավիթ եպիսկոպոսի հարցասիրությունը դժվար թե գոհանար Հովհան վարդապետի պատասխանով: Մեծկողմանց եպիսկոպոսը կուզեր հասկանալ, թե ի՞նչ պատճառով մարդիկ չեն ընդունում ոչ միայն պատկերները, այլև մկրտության և պսակի խորհուրդները, նաև մատաղն ու քահանայությունը, եկեղեցական նվիրապետությունը: Իսկ Հովհան խոսում է միմիայն*



*պատկերների մասին, և այս խնդիրն ևս մասնավորելով, պաշտպանության է առնում «մարմնացելոյ Աստուծոյ զպատկերն»: Դավիթ եպիսկոպոսը հետաքրքրվում էր իր ժամանակվան աղանդավոր խլրտումներով, ինչ Հովհան ճառում է պատկերամարտության անցյալի մասին: Թվում է, թե Թուղթը լրիվ չէ և Կաղանկատվացին կրճատել է այն, ինչպես նույնն արել է և մի քանի ուրիշ վավերագիրների նկատմամբ: «Մարմնացեալ Աստուծոյ պատկերը» պաշտպանելու դերը ևս խորթ է Մայրագոմեցուն: Հայտնի է, որ պատկերամարտ շարժումը համակրանք էր վայելում հակաքաղկեդոնական շրջաններում: Թեոփանես պատրաստ է «սատանայի արբանյակ» համարելու պատկերների խնդրում նշանավոր Փիլոքսենոս Մաբուկացուն: Իսկ Փիլոքսենոս մեծ հեղինակություն է ճանաչված և՛ մեր եկեղեցական հայրերի կողմից: Մայրագոմեցին առավելն կարող էր չընդդիմանալ պատկերապաշտության, բայց ջանք թափել տապալելու պատկերամարտությունը, այդ արդեն չէր ներել իր դավանաբանական տեսակետը: Մայրագոմեցուն վերագրված Թուղթը չէ կարող իր գործը համարվել գեթ այն վիճակում, որ ներկայացնում է Կաղանկատվացին: Թուղթն, անտարակույս, աղճատված է: Դավիթ եպիսկոպոսի հարցումը նախորոշում է պատասխանը, որ իզուր է որոնել այժմյան Թղթի մեջ: Նրա հարցումը կերևա իր բուն լույսի մեջ, եթե վերհիշենք Հովհան Օձնեցու «**Ընդդէմ պաւղիկեանց**», ճառի հետևյալ կարևոր տողերը. «Նախկին մծղնէութեան **պաւղակենութեան** (տպ. **պայղակենութեան** -Ն.Ա.) խեշերանք. որք խրատեալք, և ոչ իմաստնացեալք, ի **Ներսիսէ կաթողիկոսէ**, զկնի նորուն մահուանն խուսեալք չոգան ղօղեցին յոլորտս ուրեք աշխարհիս մերոյ: Եւ ի նոսա հատուածեալք եկին յարեցան կշտամբեալքն ի կաթողիկոսացն **Աղուանից պատկերամարտք** ոմանք. զի սիրէ առ համանմանիսն իւր հասանել վրիպեալն ի ճշմարտութենէն: Եւ մինչ չև էր նոցա զօրավիգն գտեալ **զկարապետս** դերաքրիստոսին, երկուցեալք և սարսեալք կային յուղիղ և ի գերապանձ կրօնից քրիստոսականաց. մանաւանդ թէ և ինքն զինքն դատապարտէ անզգամն, յիւրոց տանջեալ խորհրդոց: Իսկ յորժամ **այսմիկ** որպէս մեծագունի ինչ և նորոյ՝ հնացելոյս և աղօտացելոյ՝ հասանել կարծեցին, յայժամ ի դարանամտութեան իւրեանց սողեալ յորջից՝ յաշխարհամէջս և ի ժողովրդաբնակս համարձակեցան յարձակել տեղիս»[1]:*

Ո՞վ էր այս Ներսեսը, որ խրատել է պավլիկյաններին, բայց հաջողություն չէ ունեցել: Ամենայն հավանականությամբ Ներսես Բ կաթողիկոսը, այն որ գումարեց Դվինի ժողովը 21 մարտի 555 թվին: Պավլիկյանների հնագույն հիշատակությունը գտնում ենք այս ժողովի արձանագրության մեջ: Այստեղ ասվում է, որ նեստորականները բույն գրած Դվինում, որսում էին

[1] «Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ մատենագրութիւնք», Վենետիկ, 1833, էջ 39:

հետևորդներ և «պատրեցին ի ժողովրդականաց տգիտաց զարս և զկանայս, հաղորդել հաւատոյ յաղտեղութեան աղաւթից նոցա, տանել հաց ընծայի ի տեղի անաւրէնութեան նոցա. ընդունել ի ձեռաց նոցա հաղորդութիւն՝ իբրև յուխտէ նուիրաց պատիկենաց, *յանդգնեցան տալ զիւրեանց ջնջագիր կնիք անկնիք մանկաց ժողովրդեան մերոյ»*[1]:

Պավլիկյանների հիշատակությունը դիպվածական չէ: Ներսես կաթողիկոս հալածել է նրանց և թեև չէ կարողացել խելքի բերել, բայց հարվածն այնքան զորեղ է եղել, որ աղանդավորները քաշվել են ասպարեզից և պահվել լռելյայն մինչև դերաքրիստոսի կարապետի երևալը, երբ նորեն հայտնվում են իրենց որջերից և դարաններից: Ո՞վ է այս կարապետը դերաքրիստոսի: Կարծում են, որ ակնարկում է արաբներին[2]: *Պավլիկյան շարժումը նոր և շատ հզոր թափ ստացավ 660 թվականից, երբ Մանանաղի գավառում Կոստանդին Հայը շարժման գլուխն անցավ և հիմք դրեց պավլիկյանների քաղաքական զորության այն աստիճան, որ նրա մերձավոր հաջորդները ի վիճակի էին չափել իրենց ուժերը ահավոր Բյուզանդիայի հետ: Երբ դերաքրիստոսի առաջնորդները արաբներն են, նրանցից օգտվողը Կոստանդինն է: Անհավանական չէ դերաքրիստոսի կարապետի անվան տակ հասկանալ իրեն՝ Կոստանդինին, որի գործունեությունն անխուսափորեն պիտի անդրադառնար իր «դարանամուտ» կրոնակիցների վրա և նրանց հրապարակ նետել նոր խանդավառությամբ:*

Ահա աղանդավորական այս զարթոնքի լուրն է, որ խռովել էր Մեծկողմանց Դավիթ եպիսկոպոսին և ստիպել հարցում անել գիտուն Հովհան վարդապետին: Դավիթ ժամանակակից էր Կոստանդնի: Հովհան վարդապետի Թղթի մեջ կարևոր կետ է երեք աղանդավորների անունները՝ Թադեոս, Հեսու և Գրիգոր: *Սրանք ծանոթ են թվում և՛ Վրթանես Քերթողին, որի «Յաղագս պատկերամարտից» գրության մեջ ասված է, թե Սահակ, Մեսրոպ և իրենց աշակերտներից «ոչ ոք վասն պատկերաց և նկարողաց եկեղեցւոյ բանս ինչ ոչ արար, բայց միայն պիղծն մոլին Թադէոս և Եսայի և ընկերք նոցին, որք և զյոլովս ընդ իւրեանս ի հետ կացուցին որպէս զՑեզն»*[3]:

1 «Գիրք թղթոց», էջ 73:

2 Կ. Տեր-Մկրտչյան, Die Paulikianer im Byzantinischen Kaiserreiche und verwandte ketzerische Erscheinungen in Armenien, Leipzig, 1893. Հայերեն թարգմանություն Ա. Աբեղյանի՝ «Պավլիկյանք Բյուզանդական կայսրության մեջ և մերձավոր հերձվածային երևույթներ Հայաստանի մեջ», Երուսաղեմ, 1938, էջ 77:

3 Տե՛ս վերջին հրատարակություն հայր Ն. Դուրյանի՝ «Վրթանես Քերթողի Յաղագս պատկերամարտից», «Սիոն», 1927, փետրվար, էջ 62:



Վրթանեսի այս գործի ընդօրինակությունը ունենք Էջմիածնի [Մատենադարանում]՝ համար 58 և 102 ձեռագրերից, ուր կարդացվում են՝ Շմուէլ, Թադէոս և Եսաւ: *Սակայն Շմուէլ կարծես թյուր ընթերցում է պիղծն մոլին բառերի, որոնք պակասում են հիշյալ ձեռագրերում:*

Թադեոս և Եսայի կամ Եսավ նույն անձերն են, անտարակույս, ինչ որ Թադեոս և Հեսու: Խնդիր է, ե՞րբ էին ապրում սրանք: Հովհան վարդապետը Կաղանկատվացու մոտ համարվում է նրանց ժամանակակից, և՛ Մովսես կաթողիկոսի († 604) և՛ իրեն († 684), որ հնարավոր չէ: Երկուսից մեկը միայն կարող է ստույգ լինել: Եթե վստահ լինեինք, որ Վրթանես իրոք իր գործի տերն է, խնդիրը կլուծվեր ի նպաստ Մովսես կաթողիկոսի: Գոնե մենք վստահ չենք: Մյուս կողմից Հովհան Օձնեցու վկայությամբ, Ներսեսի մահից հետո († 556) պավլիկյանները լռության են եղել մատնված մինչև Նեռի երևումը, այսինքն՝ կամ արաբների հաստատվելը Հայաստանում 652 թվին, կամ Կոստանդին Մանանաղցու քարոզությունը 660 թ., և կամ երկուսը միասին: Այս դեպքում երեք հայ աղանդավորները չէին կարող Մովսեսի ժամանակակից համարվել կամ հետը բախում ունենալ: Մեր պատմագիրներից շատերը շփոթել են, անհասկանալի թյուրիմացությամբ, Ներսեսը Մովսեսի հետ և սրան վերագրել առաջինի գործերը, ինչպես Դվինի ժողովը և Հայկական թվականի հաստատումը: Հնարավոր է, որ նույն կարգի սխալ է Մովսեսի հիշատակությունը երեք աղանդավորների խնդրում, փոխանակ Ներսեսի: Արդարև, Վրթանես որ տեղապահ էր (603-607), երեքին հիշում է որպես անցյալի և ոչ ներկայի անձեր և հանդիմանում նրանց հետևորդներին: Սակայն Հովհան Մայրագոմեցին վկայում է, որ ինքը տեսել և խրատել է երեք աղանդավորներին: Հետևապես նրանք չէին կարող ժամանակակից լինել Ներսես Բ կաթողիկոսին: Մայրագոմեցու Թղթից չի հասկացվում, թե ինչ աղերս կար պատկերամարտության և Կարինի Թեոդոր փիլիսոփայապետի ու Մովսես կաթողիկոսի քաղկեդոնական վեճերի միջև: Պակաս բան կա: Կասկած է ծագում, արդյոք հիշատակություն չի՞ եղել, թե աղանդավորական շարժումը ծագում է Կարինի շրջանից, և չարիքի հայրը Կոստանդին Մանանաղցին է, և Թադեոս, Հեսու և Գրիգոր խռովարարները եկել են այնտեղից՝ «Հոռմոց» աշխարհից, այսինքն՝ Բյուզանդական Հայաստանից, և հավանորեն նրանք Կոստանդինի աշակերտներն են: Սրանով կպարզվեր և շոշափելի իմաստ կստանար Կաղանկատվացու խոսքը, թե Ուխտանեսի և Եղիազարի հայրապետության օրով, *«խռովութիւնք և հերձուածք բազում», «մարտ և մրցումն լինէր» Հունաց և Հայոց մեջ:*

Այս բոլորը բնական են: Մայրագոմեցին, այս գիտուն և բարեպաշտ վանականը, քավության նոխազ է դարձել իր հակառակորդների և բարեկամների համար: Ամեն ինչ նրան վերագրել, նրա անունով խոսել, գովաբանել թե

ամբաստանել մի տեսակ սովորություն է դարձել հների մոտ: Մայրագոմեցի, թե Մայրավանեցի մի կատարյալ առասպելական պատկեր է: Ոչ ոք կարե երաշխավորել, թե Կաղանկատվացու մոտ նրան անվան Թուղթը որքան վավերական է: Ամեն պարագային Թուղթը հարազատ վիճակի մեջ չէ, այս անտարակույս է[1]:

Դավանաբանական ճառերը հաճախ ենթարկվում են փոփոխության ժամանակի, տեղի և գրչի տրամադրության համաձայն: Խրատական է այս տեսակետեն հաջորդ գլուխը (Բ, գլ. ԽԷ):

Կաղանկատվացին բերում է Աբրահամ կաթողիկոսի **«Շրջագայական թղթից**[2] *մի հատված, բայց բյուրում է մասամբ իմաստը: Աբրահամ [կաթողիկոսը] գրում էր, որ քաղկեդոնական «քաղցկեղը» ճարակել է «մեր սահմանակից և միևնույն վարդապետությամբ լուսավորված վրացիներին և աղվաններին», ուստի և հարկավոր է համարում գրել.* **«Յառաջագոյն քան զմեզ կացեալքն յառաջնմանի կաթուղիկոսութեան՝ յԱղուանս**. *իսկ մեք ի Վիրս առ Կիւրովն»*[3], *այսինքն՝ մեր նախորդ կաթողիկոսներն արդեն գրած են աղվաններին, մենք էլ գրում ենք վրացիներին:*

Կաղանկատվացին այլ կերպ է հասկացել այս խոսքերը: Նրան թվում է, թե Աբրահամ շրջաբերական թղթով **«յառաջագոյն քան զՀայոց աթոռակալութիւն կացեալ Աղվանից աթոռակալութեանն Աղվանից**՝ *ընդ մեզ համաձայն գոլով, և նոցա կամակցութեամբ նզովեցաք, ընկեցաք զԿիւրիոն ըստ հրամանի հարցն մեր և Աղվանք» (Բ, գլ. ԽԷ):*

Կաղանկատվացին սխալվել է թերևս **bona fide,** անուշադիր ընթերցումի հետևանքով, կարծելով թե ընդգծված նախադասություն նշանակում է, թե մեզնից ավելի հին Աղվանից աթոռակալները և մենք գրեցինք վրացիներին: Սխալը ներելի չէ, մանավանդ որ Աբրահամ հայտարարում է, թե Աղվանք վրացիների հետ էին: Մեր պատմագիրը սակայն հավանել է այն միտքը, որ աղվանները ավելի վաղ են քրիստոնեություն ընդունել, քան հայերը, և աշխատել է փաստել համապատասխան ժամանակագրական հաշվով: Հայերը ընդունել են քրիստոնեությունը հռոմեց 43-րդ տարին, իսկ Աղվանք՝ 270

[1] Ծայրահեղ կասկածամտություն չի լինել հայտնել մեր անվստահությունը նաև Վրթանեսի **«Յաղագս պատկերամարտից»** գրության հանդեպ: Ս. Էջմիածնի ձեռագիրներից քաղած էինք, շատ ժամանակից ի վեր, քանի մի հիշատակարաններ պատկերամարտության վերաբերյալ և մտադրություն ունինք պատեհ առթիվ լույս ընծայելու՝ անդրադառնալով պատկերամարտության մեջ Հայոց եկեղեցու դիրքի խնդրին (18):

[2] «Թուղթ շրջագայական Տեառն Աբրահամու Հայոց կաթողիկոսի», տե՛ս «Գիրք թղթոց», էջ 189-195:

[3] Անդ, էջ 193-194:



տարի առաջ: Հռոմեց թվականը սկսվում է Հռոմի շինության երկրորդ հազարամյակից, որ է (752 թ. ն. Ք.-1000=) 248 թ. հ. Ք., ուրեմն Հայոց [դարձը] տեղի է ունեցել (248+43=) 291 թվին, իսկ Աղվանիցը՝ (291-270=) 21 թվին: «Յետ 180 անցանելոյ հաւատալոյն Հայոց», գումարվել է Բարգենի ժողովը ընդդեմ քաղկեդոնականների, ուրեմն (291+180=) 471 թվին: Վրացիք բաժանվել են մեզնից «յետ 87 ամի անցելոյ», այսինքն՝ (471+87=) 558 թվին:

Ուխտանես արտագրել է Կաղանկատվացու այս հատվածը առանց մեկնության[1]: *Սամուել Երեց ևս ընդունել է իր ժամանակագրության մեջ 291 թիվը՝ որպես Ս. Գրիգորի Վիրապ իջնելու տարի, 471 թիվը (տպագրված է 473) «ժողովն Քաղկեդոնի» սխալ հասկացած լինելով Կաղանկատվացուն և 558 թիվը՝ (տպագրված է 557, ՇԾԷ փոխան ՇԾԸ), «աստ է գրեալ զվրաց բաժանումն»*[2]*: Սակայն, այս թվերից միայն 291 թիվն է արժանի ուշադրության, մյուս երկուսը բացարձակապես սխալ են (19):*

Մեր պատմագիրն Աղվանից եկեղեցու հիմնադիր է համարում Եղիշա առաքյալին, որ Քրիստոսի համբարձումից հետո գալիս է Աղվանք և կատարում իր առաքելությունը (Ա, գլ. Զ; Գ, գլ. ԽԸ): Եղիշան չէր կարող գալ Աղվանք 21 թվին: Կաղանկատվացին գիտեր, անտարակույս, որ Քրիստոս համբարձավ 31 թվին և ուրեմն դժվար է նրան վերագրել նման կոպիտ սխալ: Մյուս կողմից, նա գիտե Մովսես Խորենացուց[3], *որ Տրդատ [Մեծ] գահակալեց Դիոկղետիանոսի երրորդ տարին՝ 286 թվին: Նույն տարին, ըստ Ագաթանգեղոսի, Լուսավորիչ մտավ Վիրապ և ելավ 15 տարուց հետո, ուրեմն (286+15=) 301 թվին, երբ և տեղի ունեցավ Տրդատի և Հայոց դարձը: Աղվանից ենթադրյալ դարձը 270 տարի առաջ կգա (301-270=) ուղիղ 31 թիվը՝ Քրիստոսի համբարձման տարին: Երբ անգամ անտեսեր Խորենացի և Ագաթանգեղոս, 31 թիվը բավական է Կաղանկատվացուն որոշելու համար Հայոց դարձը (31+270=) 301 թվին: Եվ այս թվականն է, որ համարում է Հռոմեց 43-րդ տարի, որից հետևում է, որ Հռոմեց թվականը հաշվում է (301-43=) 258 թվեն և ոչ 248, որ է ստույգ: Այս տասնամյա տարբերությունը նկատվում է նաև ուրիշ հիշատակարաններում և նման բնավորություն ունին: Ուշագրավ են հետևյալ երկու դեպքը: Բյուզանդական գործիչ Թոռնիկ Վա-*

[1] **Ուխտանես Եպիսկոպոս,** Պատմութիւն բաժանման վրաց և հայոց, Վաղարշապատ, 1871, էջ 136:

[2] «Սամուէլի քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», Վաղարշապատ, 1893, էջ 75:

[3] **Մովսես Խորենացի**, Պատմութիւն Հայոց, էջ 224:

*նակացի պատվիրած ձեռագրերից մեկը գրված Կարին գավառում, կրում է Արարչության 6500 և Քրոնիկոնի 201 թիվը*[1]*: Արարչության 6500 տարին հավասար է (6500-5508=) 991 սեպ[տեմբեր]-992 սեպ[տեմբեր]: Իսկ Քրոնիկոն այլ բան չէ քան Հոռոմոց թվականը: Ինչպես Զատկական մեծ շրջանի, այսպես կոչված 532 ամաց բոլորակի, անունն է: Հետին թվով հաշված 532-ամյա շրջանը սկսվում է 248 թվից և ուրեմն վերջանում (532+248=) 780 թիվ: Վրաց ազգային թվականը հաշվում է 780 թվից, ինչպես մերը՝ 551 թվից: Հետևապես Քրոնիկոնի 201 թիվը կգա (780+201=) 981 թիվը, այսինքն՝ տասն տարով պակաս, քան իր զուգակշիռ արարչության տարին:*

Անվո Մայր տաճարի հայտնի արձանագրությունը, որ պատկանում է Կատրամիդե թագուհուն՝ դրոշմված է Հ[այոց] թ[վականության] 459 և Հոռոմոց 219 թիվը: Առաջինը հավասար է (459+551=) 1010, երկրորդը՝ (219+780=) 999, դարձյալ տասն, կամ տասնմեկ տարվա տարբերություն: Սրանք, hարկավ, սխալագրություններ չեն, այլ նշանակում են, որ Քրոնիկոն հաշվում է, ոչ թե սովորական 780, այլ 790 թվականից և հետևապես 532 թվի բոլորակի սկիզբը 258 թիվն է և ոչ թե 248 թիվը: Այսպիսով, կրացատրվի Կաղանկատվացու 291 թիվը, համազոր 301 թվի[2]:

1 N. Adontz, Tornik le Moine, ''Byzantion'', t. XIII, 1938, p. 157.

2 Տասն կամ ավելի ճիշտ տասնմեկ տարվան տարբերությունը կարելի է բացատրել հետևյալ կերպով: «532 ամաց բոլորակը» կամ հինգհարյուրակը բաղկացած է 28 տասնևիննամյակներից՝ 28x19=532: Դրանից առաջ կար կանոն երկհարյուրակի կամ Անդրեասի կանոն կոչված Զատկացույցը. սա կազմում էր 10 տասնևիննյակ և տասն տարի (10x19+10=250), այսինքն՝ պակաս էր 9 օր տասնևիննյակը լրացնելու համար: Հայոց եկեղեցին ընդունել էր Անդրեասի կանոնը 353 թվին: Կանոնը լրացավ 552 թվին և այնուհետև հաջորդեց հինգհարյուրակը: Արդ, նկատելու է այս պարագան. Անդրեասի կանոնը սկսել էր 353 թվին, տասնևիննյակի 12-րդ տարուց: Նոր տոմարի մեկնակետը կարելի էր որոշել երկու կերպ. կամ շարունակել հինը ևս տասն տարի մինչև տասնևիննյակի 12-ը, այսինքն՝ մինչև այն կետը, որտեղից սկսվել էր, ուրեմն հասցնել մինչև 552+10=562 թիվը, և այս համարել նոր տոմարի՝ հինգհարյուրակի սկզբնավորությունը, կամ սկսել 551 թվից, այսինքն՝ իննևտասնյակի առաջին տարվանից, և ոչ 552, որ երկրորդ տարին էր: Այսպիսով, կունենանք երկու սկիզբ նոր տոմարի համար՝ 551 և 562, տասնմեկ տարվան անջատով: Վրաց քրոնիկոն, որ սկսվում է 780 թվից, ոչ այն ինչ է, եթե ոչ 12 անգամ իննևտասնյակ (12x19=) 228, որ հաշված 551 թվից կտա (551+228=) 779՝ իննևտասնյակի առաջին տարին, իսկ եթե հաշվենք 562 թվից կստանանք (562+228=) 790՝ իննևտասնյակի 12-րդ տարին: Նոր տոմարը՝ հինգհարյուրակը կսկսվի ուրեմն հետևյալ 780 թվից և կամ 791 թվից: Կատրամիդե թագուհին և Թոռնիկ Վանական, անշուշտ, հետևել են այս կիրարկության մեջ հայտնի ավանդության, ընդունված թերևս հայ քաղկեդոնական շրջաններում:



Բարգենի ժողովի և վրաց անջատման թվականները, ինչպես հիշեցինք, սխալ են: Բարգենի ժողովը կայացել է 505-506 թվին, համաձայն ժողովի արձանագրության, պահպանված «Գիրք թղթոց»-ի մեջ[1]: *Կաղանկատվացու 471 թիվը, մեր սրբագրությամբ՝ 481 թվականը, հասկանալի կդառնա, եթե հիշենք, որ Զենոն կայսրը իր հռչակավոր հակաքաղկեդոնական հենոտիկոնը հրատարակել է 482 թվին, իսկ իր հաջորդ Անաստաս կայսրը, որ նույնպես շեշտված հակաքաղկեդոնական էր, նման գրություն էր հռչակել 506 թվին, գրեթե Բարգենի ժողովի տարին: Թվում է, որ թե մեր պատմագիրը, զուգորդության շեղումով, շփոթվել է և Բարգենի ժողովը տեղափոխել 506 թվից 482 (=481):*

Վրաց բաժանման թվականը ևս արհամարհելի չէ, եթե 87 տարվան անջատը հաշվենք Բարգենի ժողովի ստույգ թվականից (505/506+87=) կհանգինք 592-593 թվին: Վրաց պաշտոնական խզումը կատարվեց 609 թվին, բայց շարժումը սկսվել էր 583 թվականից՝ շնորհիվ Մորիկ կայսեր ծախորդ քաղաքականության: Կաղանկատվացին հետևյալ գլխում (Բ, գլ. ԽԸ) պատմում է, թե ինչպես հույները ջանացին գրով և խոսքով մոլորցնել հայերին և ժողովներ գումարեցին մի անգամ՝ Կ.Պոլիս, երկու անգամ՝ Թեոդոսուպոլիս (Կարին): Պարսկա-բյուզանդական կռիվները վերջացան 591 թվի դաշնագրությամբ, որով Պարսկական Հայաստանի մի խոշոր մասն կցվեց Բյուզանդական Հայաստանին: Մուշեղ Մամիկոնյան այդ միջոցին մայրաքաղաք գնաց, բայց փոխան սպասելիք շնորհների, կայսերական դուռը դավանաբանական խնդիրներ դրեց նշանավոր զորավարի առաջ: Այս առթիվ խորհրդակցություններ տեղի ունեցան ապսպրված հայ եկեղեցականների հետ, հավանորեն 592-593 թվին: Իսկ Թեոդոսուպոլսի ժողովներն են՝ Թեոդորոս փիլիսոփայապետի գումարածը, երևի 595 թվին և Հերակլ կայսեր 23-րդ տարվանը՝ 633 թվին:

Մորիկի ժողովը և նրան կապակից Կարինի ժողովը նշանակում ենք 593-595 թվականներին, համաձայն Diegesis-ի տեղեկության, թե քաղկեդոնական վեճերը տևեցին 14 տարի՝ մինչև Աբրահամի կաթողիկոսանալը, ուրեմն 607-14=593: Բացի սրանից, Անաստաս կայսեր Թղթի վերջը կա մի կարևոր ծանոթություն, թե Թղթի գրելուց մինչև Մորիկի 13-րդ տարին անցել է 89 տարի[2]: *Մորիկի 13-րդ տարին կլինի 595 թիվը (582+13=595): Հետևաբար, Թուղթը գրված է (595-89=) 506 թվին: Կարծում ենք, որ Անաստասի Թուղթը, ինչպես և Զենոնի հենոտիկոնը թարգմանված են հայերեն 595 թվին՝ սույն տարվան մեջ գումարված ժողովի առթիվ:*

1 «Գիրք թղթոց», էջ 42, հմմտ. էջ 220-221:

2 Անդ., էջ 278:

Ինչ վերաբերում է Հերակլի ժողովին, որ գումարվեց Կարինում, տեղեկությունները [թե՛ւ] խառնակ են, բայց դյուրին է կարգի բերել: Diegesis տալիս է Հերակլի 23-րդ (610+23=) 633 և Խոսրովի մահվան 4-րդ (628+4=) 632 տարին: «Կայսերաց գիրքը» ժողովը կայացած է համարում Հերակլի ԺԷ-րդ[1], և *կամ ԺԹ (համաձայն ուրիշ օրինակ) տարին, ուրեմն 627-629 թվին: Հերակլ կայսրը Վրաստան և Հայաստան էր 622-628 թթ.:* Կայսրը կուզեր հայ և հույն *եկեղեցու միջև եղած խտրոցը վերացնել ու երկրի համակրությունը ձեռք բերել պարսկական պատերազմների առթիվ: Հաշտությունը դժվար չէր: Ինքը՝ կայսրը, միակամության և մի ներգործության դավանանքի ջերմ պաշտպան էր, համաձայն Հայոց եկեղեցու և հակառակ հույն եկեղեցու վարդապետության: 622 թվից սկսած կայսրը այդ ուղղությամբ փորձեր արեց՝ խոսեց Կարինի Պողոս Միականի կոչված եպիսկոպոսի հետ, 626 թվին համոզեց Փասիսի եպիսկոպոս Կյուրոսին և 631 թվին նրան նշանակեց պատրիարք Աղեքսանդրիո: 633 թվին համաձայնություն արդեն կայացած էր Աղեքսանդրիայում: Կարծում ենք, որ Հայաստանում ևս խնդիրը միանգամից չէ դրվել և լուծվել: Հավանական է, որ 628 թվին Քրիստափոր կաթողիկոսի անկումը կապ է ունեցել օրվան խնդրի հետ, և որ վերջնական վճիռը կայացած է 633 թվին:* **«Սակս ժողովոց»** *հիշատակարանի տեղեկությամբ[2], Հերակլ (Հերակլիոս) I իր թագավորության 12-րդ տարում սպանեց պարսից Խոսրով թագավորին և 18 տարի հետո ժողով արավ Կարին քաղաքում: Սակայն Խոսրով սպանվեց, և ո՛չ Հերակլի ձեռքով, 628 թվին: Եվ ուրեմն, ժողով պիտի կայացած լինեը (628+18=) 646 թվին: Հիշատակարանը շփոթել է հայտնապես Հերակլի ժողովը այն ժողովի հետ, որ գումարեց Կոստանդ [II կայսրը] Դվինում: Այս վերջինիս ստույգ թվականն է 649 (չորս տարի առաջ նախքան Կոստանդ կայսեր ժամանումը ի Դվին= 653 թվին), և գումարված է Կոստանդի նշանավոր Տիպոսի (Typos) հետևանքով: Ո՛չ Հերակլ, որ կարինցի հայ ծագում ուներ և ո՛չ իր թոռն Կոստանդ, ոչինչ չեն գործել Հայոց եկեղեցու դեմ, և ո՛չ Եզր Ա կաթողիկոս և անգամ Ներսես Գ Իշխանեցի չեն դրժել իրենց ուխտին: Կայսրերն են համակերպվել և ընդունել Հայոց եկեղեցու տեսակետը և ոչ թե հայերն են զիջել: Հայի խորշանքը և անվստահությունն այնքան մեծ էր հույների հանդեպ, որ ամեն մի հաղորդակցություն, նույնիսկ նպաստավոր, կասկածելի են համարվել: Միակամության և մի ներգործության հողի վրա հաշտություն կնքել, նշանակում է Քաղկեդոնի դեմ գործել և ոչ ի նպաստ: Սեբեոսի մոտ հայոց պատասխան Թուղթը հարազատ չէ[3], այս մասին տեղը չէ երկարել:*

1 «Գիրք կայսերաց», էջ 76:
2 «Գիրք թղթոց», էջ 221:
3 **Սեբեոս**, էջ 120-134:



Հունաց «յորդաբանութիւն»-ը չօգնեց իրենց հաղթելու հայերին: «Այլ Հայք համբաւէին զՅովհաննու, շարունակում է մեր պատմագիրը,- եթէ ի Յունաց կողմն լեալ, հակառակ բերէր Հայոց. զորոյ զրպարտութեան պատճառ Սողոմոն ոմն միայնակեաց, <որ> յետոյ եղև կաթողիկոս, նորա հարցեալ զվարդապետն իւր Սողոմոն, որ Մաքենոցացն էր հայր, և նա գրով ուսոյց զայս՝ եթէ ոչ պարտեցան Հայք ի հաւատոյ մասին», այլ հաղթվեցան նվիրապետության խնդրում (Բ, գլ. ԽԸ): Ո՞վ է այս Հովհանը:

Ուխտանես բաց է թողել այս տեղիքը: Իսկ Ստեփանոս Օրբելյան հասկացել է այնպես, թե «ոմանք զրպարտեն զսուրբ հայրն Յովհան Մայրագոմեցի, եթէ նա ասաց, եթէ Հայք պարտաւորեցան ի հաւատոյ մասին. որ և քա՛ւ և մի՛ լիցի»[1]:

Մեզ թվում է, որ ամբաստանության մեջ հոլովված են երկու անձ՝ Հովհան Բագավանցին, որ արդարև «ի Յունաց կողմ էր» և հակաթոռ կաթողիկոս ընտրվեց Մովսես [Բ կաթողիկոսի] ժամանակ՝ 595 թվին, իսկ մյուսը՝ Հովհան Մայրագոմեցին, որ ասել էր, թե «Հայք պարտեցան»՝ 633 թվի ժողովի համար: Ստեփանոս Օրբելյան պատմում է, որ Եզր [կաթողիկոսը] չէր տարել ժողովին ժամանակակից երկու նշանավոր գիտնական վարդապետներին՝ Մաթուսաղա Սյունեցուն և Հովհան Մայրագոմեցուն, այլ բավական էր համարել Մաթուսաղայի աշակերտ՝ Թեոդորոսի ներկայությունը: Սակայն, Թեոդորոս չէր արդարացրել իր վրա դրած հույսերն ու վստահությունը և պաշտպանել էր հունաց տեսակետը: Այս Թեոդորոսը՝ Կոմիտասի եղբորորդին, շփոթված է անտարակույս Կարնո Թեոդոր փիլիսոփայապետի հետ, որ [կաթողիկոս] ընտրել տվեց Հովհան Բագավանցուն:

Diegesis ևս գիտե, որ Մաթուսաղա Սյունեցին և նրա հետ Գարդմանի եպիսկոպոս Ստեփանը բացակա են եղել Եզրի ժողովին և Հովհան Մայրագոմեցին աշխատել է հեռու պահել նրանց Եզրի միությունից, բայց չի հաջողել և երկու եպիսկոպոսները հավանություն են տվել Եզրի քաղաքականության: Հերակլի և Կոստանդ [II]-ի ջանքերը՝ հարթել հայ և հույն եկեղեցիների հարաբերությունները միակամության վարդապետության գետնի վրա և այս խնդրին նվիրված ժողովների բնավորությունը, շատ շուտով մոռացվել և այլափոխվել է, թերևս 680-681 թվի [Կ.Պոլսի] վեցերորդ տիեզերական ժողովի հետադարձ ստվերի տակ: Այս ժողովը ջնջեց Հերակլի և Կոստանդի միակամ վարդապետության վերա կանգնած քաղաքականությունը և վերադարձավ քաղկեդոնության երկուկամ տեսակետին: Տաս տարի հետո՝ 691 թվին, տեղի ունեցավ Տրուլլոսի *ժողովը, ուր հավանորեն ներկա էին և հայ*

1 **«Պատմութիւն նահանգին Սիսական արարեալ Ստեփաննոսի Օրբէլեան արքեպիսկոպոսի Սիւնեաց», հտ. Ա, Փարիզ, 1859, էջ 144:**

*եպիսկոպոսներ: Diegesis հաղորդում է, որ Սահակ Գ Ձորափորեցի [կաթողիկոսը] համակերպվել է ժողովին, բայց վերադառնալով Հայաստան՝ հրաժարվել է և մնացել իր նախկին դավանանքի մեջ: Գուցե այս դեպքերի ազդեցությամբ է, որ **«Սակս ժողովոց»** աններևելի մոլորության մեջ է ընկել, հավատացնելով, թե Եզրից մինչև Հովհան Օձնեցին, հայ կաթողիկոսները հետևորդ են եղել քաղկեդոնականության:*

Սողոմոն վարդապետի Թուղթը, գրած իր աշակերտ՝ հետագայում (792 թվին) Հայոց կաթողիկոս Սողոմոն [Ա Գառնեցուն], պահել է մեզ ճշմարիտ հիշողություն 633 թվի Եզրի ժողովի էության «Հայք ոչ պարտեցան ի հաւատոյ» մասին: Արդարև, ընդունել Հերակլի և Կոստանդի՝ առաջնի **էկթեզիս** *և երկրորդի* **տիպոս** *դավանաբանական հրահանգները, նշանակում է հավատարիմ մնալ հակաքաղկեդոնական քրիստոսաբանության:*

Սողոմոն վարդապետի տեղեկությամբ հայերը պարտվել են նվիրապետության հարցում: Հույները գտել են, որ Հայոց եկեղեցին չունի բոլոր իննը աստիճանները եկեղեցական դասի: «Ո՞վ է պատրիարքն ձեր», - հարց են տվել հույները, - «Չի չորք միայն կացին ի վերայ երկրի», այն է՝ Աղեքսանդրիայի, Անտիոքի, Հռովմի և Եփեսոսի պատրիարքական աթոռները, որոնց հիմնադիրները են Մարկոս, Մատթեոս, Ղուկաս և Հովհաննես առաքյալները: Եփեսոսի աթոռը փոխադրվեց Կ. Պոլիս Հուստինիանոսի ժամանակ, իսկ Մատթեոսի աթոռը՝ Երուսաղեմ: Ենթադրվում է, որ միմիայն առաքելադիր եկեղեցիներին է վերապահված ինքնուրույն և անկախ վարչության իրավունք և ուրեմն հայերն իրենց ինքնուրույնությունն արդարացնելու համար պետք է ցույց տային իրենց եկեղեցու առաքելական ծագումը: Հույներն ասում էին, որ Լուսավորիչ ձեռնադրվեց Կեսարիա և եթե այժմ անկախ եք համարվում «ցուցէ՛ք զպատրիարքն, ընդ որով դասի արքեպիսկոպոսապետն ձեր, որ մինչև ցայսօր (!) ընդ մեօք էր»: Հույներն իրենց մեծարանությամբ «փոքրկացուցանել ջանային զկայս հանգստեան Թադէոսի առաքելոյ՝ չունել եպիսկոպոսապետ և մետրապօլիտ» (Բ, գլ. ԽԸ): Հայերին դժվար չէր զինաթափ անել հակառակորդին՝ հիշելով որ Հայոց եկեղեցու բուն հիմնադիրն է Թադեոս առաքյալը: Հետևապես և [Հայոց] կաթողիկոսն է նրա աթոռի պատրիարքը, բայց որ արքեպիսկոպոս կամ եպիսկոպոսապետ, և մետրոպոլիտ չունեին, այդ պետք է խոստովանեին: Իրենց պարտությունը, ուրեմն, այս կետումն է:

Բյուզանդական և հայ եկեղեցիների տարբերությունը վարչական կազմի տեսակետից բացատրել ենք պատմական լույսով մեր ռուսերեն աշխատության մեջ[1]*: Բյուզանդականը համակերպվել էր պետական վարչական բաժանումներին, իսկ Հայ եկեղեցին՝ իր երկրի նախարարական պատկերին: Առաջինն ուներ մի շարք մետրոպոլիտներ՝ ստորադաս եպիսկոպոսներով: Կային և բազմաթիվ քաղաքներ, որոնց եպիսկոպոսը կոչվում էր սկզբում ավտոկեփալ՝ «ինքնագլուխ», իսկ հետագայում՝ արքեպիսկոպոս: Սրանք չունեին ստորադաս եպիսկոպոսներ: Հայ եկեղեցու պետը չուներ ո՛չ մետրոպոլիտներ և ո՛չ արքեպիսկոպոսներ, այլ միայն բազմաթիվ եպիսկոպոսներ:*

Ինչ որ Մովսես Կաղանկատվացին պատմում է այս բացառը լրացնելու խնդրի մասին, հետաքրքրական է: Որպես թե հայերը հայտարարել են, թե իրենց արքեպիսկոպոսը Աղվանից կաթողիկոսն է և մետրոպոլիտը՝ վրացը: [Վրաց] Կյուրիոն [կաթողիկոսը] չի ընդունել, ըմբոստացել է և անցել քաղկեդոնականության: Հունական զորավարները պաշտպանել են վրաց գահերեցությունը հանդեպ Աղվանից, բայց սրանք չեն հոժարել, ցույց տալով որ Եղիշա առաքյալը քարոզել է և հիմնել Գիսի եկեղեցին՝ «նախկին քան զՀայք»: Ուստի և չեն ուզեցել անգամ հնազանդվել Հայոց եկեղեցուն:

Այս պատմությունն երկրայելի է[1], *բայց եթե անգամ հնարված է, լավ արտացոլում է պատմական մի իսկություն: Վրաց և աղվանից անջատումը ներշնչված էր ամենեն առաջ ազգային ուրույն եկեղեցի ունենալու ձգտումից: Դավանաբանական խզումը լոկ գաղափարական շղարշ էր արդարացնելու համար վարչական անկախությունը: Նույն հողի վերա է ծագել և Ուխտանեսի մոտ պահված պարզամիտ ավանդությունը: [Հայոց] Աբրահամ [կաթողիկոսի] առաջին տարին վրաց և աղվանից արքեպիսկոպոսները գալիս են ընդունիր կաթողիկոսին տեսության: Աբրահամը «Ընկալեալ զնոսա մեծաւ պատուով և սիրով Հոգւոյն որպէս օրէն է, և նստուցեալ զնոսա յիւրաքանչիւր գահի, որպէս սովորութիւն էր նոցա նստել»: Սեղանի վերա «օրհնեցին և կերան մինչև ի ժամ գինոյ», երբ Աբրահամ կաթողիկոսն առաջարկեց գինու բաժակը նախ Աղվանից արքեպիսկոպոսին և ապա՝ Վրաց: Կյուրիոն նեղացավ, ասելով որ ինքն էր արժանի առաջին բաժակի, քանզի «վիճակաւ վերագոյն եմ քան զդա, և եպիսկոպոսօք ևս առաւել, իսկ հաւատով նախ քան զդա ի սրբոյն Գրիգորէ և այսր»: Աբրահամ չկարողացավ համոզել Կյուրիոնին, որ Աղվանից արքեպիսկոպոսը հասակով ավելի ծեր էր, ուստի և «պատիւ արարի զայն նորա ծերութեանն»: Ահա թե ինչու «փառասէր, մարդադաւան», Կյուրիոնը բաժանվեց «սակս միոյ բաժակի»*[2]*:*

Վրաց և աղվանից բաժանումից հետո հայերը առաջարկում են մետրոպոլիտության պատիվը Մարդպետական եպիսկոպոսին: Սա պահանջում է

[1] **Н. Адонц**, Армения в эпоху Юстиниана, гл. XII—Нахарарство и иерократия.

[1] Հովհ[աննես] Կաթ[ողիկոս] [Դրասխանակերտցի] գիտե այս պատմությունը (տե՛ս **Հովհաննես Դրասխանակերտցի**, Պատմութիւն Հայոց, էջ 41-42):

[2] **Ուխտանես**, գլ. ԿԲ, էջ 118:

ունենալ երկու կամ երեք ստորադաս եպիսկոպոս: Այս հավակնությունը վտանգավոր է համարվում և մետրոպոլիտության տիտղոսը հատկացնում են Սյունյաց եպիսկոպոսին: Սյունեցիք որպես մետրոպոլիտ պարտավոր չէին հիշելու կաթողիկոսին եկեղեցում և իրենց պաշտոնական տիտղոսն էր «հոգևոր տէր»: [Հայոց] Եղիա կաթողիկոս Աղվանք գնալիս (704 թվին), թույլ է տվել իրեն Երիցս վանքում *«խակագործութիւն», որով և ընդունված հարաբերությունները կաթողիկոսարանի և Սյունյաց աթոռի միջև խանգարվել են: Կաղանկատվացին ասում է, թե «Այսպէս զետեղեցին զինն դասս»: Սակայն առանց արքեպիսկոպոսի, իննը դասը չի լինի, այլ միայն ութ: Պետք է կարծել, որ Մարդպետականը մնում է հաշվի մեջ:*

Այս պատմության մեջ արտահայտվում են Սյունյաց անջատական տրամադրությունները: Պատմությանը հետևում է Հայոց Աբրահամ կաթողիկոսի Թուղթը Ամարասա Մխիթար եպիսկոպոսին (Բ, գլ. ԽԹ), ուր, կաթողիկոսի անունից հետո, առաջին տեղը բռնում է Թեոդորոս Մարդպետական եպիսկոպոսը և երկրորդ՝ Դավիթ Սյունյաց եպիսկոպոս[1]*: Թվում է, թե այստեղից է ծագել այս երկու եպիսկոպոսության մետրոպոլիտության արժանի համարվելու միտքը:*

Աբրահամ [կաթողիկոսի] Թուղթը կարևոր վավերագիր է և շատ ավելի ընդարձակ, քան բերում է Կաղանկատվացին, ինչպես երևում է նրա պատճենից՝ «**Գիրք թղթոց**»*-ում: Այստեղ պակաս է միայն վերջին մասը՝ ձեռագրից թերթ ընկած լինելու հետևանքով: Կաղանկատվացին բերում է Թղթի սկիզբը և վերջին մի հատված, որ մասամբ լրացնում է «***Գիրք թղթոց**»*-ի պակասը:*

Կաղանկատվացու Պատմության Ծ գլուխը նշխարների պատմությունն է: Գեղամա գավառի Բրտի այրք անապատից Հովսեփ վանականը տեղափոխվում է Արցախի Ցղերկք գյուղը: Տեղի Միհր եպիսկոպոս ապաստան է տալիս նրան, եկեղեցի են շինում: Միհր մահանում է 12 տարուց հետո և նրան հաջորդում է Անդրեաս [եպիսկոպոսը]: Հովսեփ մտահոգ է, որ նորաշեն եկեղեցին նշխարներ չունի:

Լսում է, որ Մխիթար անունով մի անապատական բերել է Երուսաղեմից Արցախ Ս. Ստեփանոսի և Ս. Գևորգի նշխարներից, նույնպես և Տավրոս լեռներից անցնելիս Ս. Անդրեասի վկայարանից հայթայթել այս առաքյալի նշխարներից մի մաս: Հովսեփ հաջողում է համոզել Մխիթար անապատականին զետեղել բոլոր մասունքները Ցղերկաց եկեղեցում: Հովսեփ ցանկանում է ձեռք բերել նաև Ս. Հովհաննես Մկրտչի նշխարները, ուստի ուղի է

[1] Կաղանկատվացու մոտ Դավիթ եպիսկոպոսը բռնում է երրորդ տեղ, որ գրչի սխալ է: «**Գիրք թղթոց**»-ում երկրորդ տեղն է (էջ 196):



ընկնում դեպի Երուսաղեմ: Սակայն նա ձեռնունայն վերադառնում է Գեղամա իր հայրենի գավառը և Պուհավանքի մեջ պահված [Հովհաննես] Մկրտչի, Թովմաս առաքյալի և Ստեփանոս Նախավկայի նշխարները փոխադրում է Ցղերկք: Այս պատմության մեջ մի կարևոր ակնարկ կա. «Եւ չոգայ,- պատմում է Հովսեփը,- հասի ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, և զերկրպագութիւն անդ կատարեալ, մեծաւ տրտմութեամբ դարձայ, **վասն զի ամենեքեան էին ներկեալ և հալածեալ աշխարհակործան ժողովոյն**. *որոց ողջոյն անգամ ոչ տուեալ՝ եկի ի գաւառն իմ Գեղարքունի» (Բ, գլ. Ծ): Ի՞նչ ժողովի մասին է ակնարկը: Հովսեփ հաստատվել է Ցղերկք գյուղում Հերակլ կայսրի (610-640) և Հազկերտ III արքայի (632-652), Հայոց կաթողիկոս Եզր Ա Փառաժնակերտցու (630-640), Հայոց սպարապետ Մուշեղ Մամիկոնյանի († 637), Սյունյաց Գրիգոր իշխանի († 637), Մաքուսաղայի ուսուցչապետության, Գարդմանի իշխան Վարազ-Գրիգորի օրով, ուրեմն 630-637 թվերի միջոցին: Մնացել է 12 տարի, հետո գնացել է Երուսաղեմ, ուրեմն 642-649 թվերի մոտերքը: Մի կամքի և մի ներգործության վեճերի ժամանակ էր և գիտենք, որ Երուսաղեմի պատրիարք Սոփրոնիոս (634-638) ժողով գումարեց Երուսաղեմ ընդդեմ մի ներգործության դավանանքի: Կարծում ենք այս ժողովն է, որ Հովսեփ որակում է որպես «աշխարհակործան», հայ դավանության հակառակ լինելու պատճառով:*

Երկրորդ գրքի վերջին երկու գլուխները՝ ԾԱ («Վասն որ ի սուրբն Երուսաղէմ եկեղեցւոյ շինուածք թուով և հիմնադրելով. ստոյգն գտցես անդանօր») և ԾԲ («Անուանք վանօրէից, որ յԵրուսաղէմ են շինեալ յԱղվանից անուն, զոր երանելոյն Անաստասայ առ Վահան Մամիկոնեան՝ ուսաք, այս են») նվիրված են Երուսաղեմ գտնված Աղվանից վանքերին[1]:

[1] Քաղված Անաստաս Վանականի գրություններից, տե՛ս «Անաստասայ վարդապետի վասն վանօրէից Հայոց, որ ի Ս. քաղաքն յԵրուսաղէմ», Վենետիկ, 1896:

## [«ԱՂՈՒԱՆԻՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ» ԵՐՐՈՐԴ ԳԻՐՔԸ]

## [Է]

Եկեղեցական գործերը մեծ տեղ են բռնում նաև «Աղուանից պատմութեան» երրորդ գրքում: Այս գիրքը բովանդակում է 23 գլուխ, որոնցից 12-ը՝ Գ-ԺԴ, վերաբերում են եկեղեցական անցուդարձին:

Աղուանից Եղիազար կաթողիկոսին հաջորդեց Գարդմանի եպիսկոպոս Բակուր կամ Ներսես: Աղվանից իշխան Վարազ-Տրդատի մահից հետո, սրա Շերո գրավեց իշխանությունը, ինչպես երևում է, բռնանալով նրա որդիների վրա: Իսկ կինը՝ Սպրամ, շարունակեց պահել իր բարձր դիրքը և նրա շնորհիվ էր, որ Բակուր արժանացավ հայրապետական աթոռին: Տիկնոջ հովանավորության պատճառն էր Բակուրի քաղկեդոնական հակումը, ինքը՝ տիկինը, լինելով հետևորդ Քաղկեդոնի: Գժտություններ ծագեցին: Մեզ ծանոթ երկու եպիսկոպոսները՝ Հովել և Իսրայել, հրապարակի վրա էին և պատվավոր դերի մեջ: Հովելն է, որ, ուրիշ եպիսկոպոսների հետ, պահանջել էր Ներսես-Բակուրից նզովել Քաղկեդոնի ժողովն ու Լևոնի տոմարը՝ նախքան կրազմեր աթոռի վերա: Հովել ստացել էր «Նզովից գիրը» և դրել պահեստի: *Ներսես պահեց հավատարմությամբ իր ուխտը մինչև որ Հովել կենդանի էր: Երբ սա մեռավ 14 տարուց հետո, Ներսես շտապեց Հովելի եպիսկոպոսարանը Մեծիրանց գավառում, և Զաքարիա անուն մի վանականի ձեռնադրեց եպիսկոպոս և նշանակեց հաջորդ Հովելի, և այդ գնով կորզեց նրանից «Նզովից գիրը»: Այնուհետև սկսեց Սպրամ տիկնոջ գործակցությամբ հայտնապես քարոզել քաղկեդոնական հավատը, անգամ բռնություններ գործելով: Առաջին զոհը եղավ «նշանագործ» Իսրայել [եպիսկոպոսը], որին հալածեց երկրից: Շերո իշխանը և մյուս եպիսկոպոսները ժողով գումարեցին, նզովեցին Ներսեսին և այս մասին հայտնեցին [Հայոց] Եղիա կաթողիկոսին, որ դիմեց Աբդ ալ-Մալիք խալիֆային և հրաման հանեց Աղուանից հանցապարտ կաթողիկոսին և Տիկնոջ Սպրամին դրկել շղթայակապ արքունի դուռը: Հայոց Եղիա կաթողիկոս գնաց անձամբ Պարտավ, ժողով գումարեց, գահընկեց արավ Ներսեսին և ընտրել տվեց հաջորդ Սամուել եպիսկոպոսին:*

Ժողովը կայացավ «85-րդ ամի տաճկաց և ի հայ թուականին 148, յամսեան Հրոտից»: Տաճկաց թվականն է Հիջրի, որի 85 թիվը=է 704 հունվարի:



Հայկական թվականը՝ 148(+551=) 699 թվի հունիս 5-700 թվի հունիս 4, չի համապատասխանում տաճկականին, եթե միայն գրչական վրիպակ չկա: Պետք է կարծել, որ Հայկական թվականը հետո է ավելցրած, բացի, հարկավ, հրոտից ամսից, որ հարազատ ենք համարում: Ժողովը գումարված է ուրեմն 704 թվի հրոտից=մայիս ամսին: Ներսես «կալաւ զաթոռն ուղղափառութեամբ ամս 14 և ի չարափառութեանն՝ ամս 3», ուրեմն 686-700 թվերին՝ ուղղափառ և 700-704 թվի մայիս՝ չարափառ:

*Ներսես-Բակուրի ձայնը խեղդված էր, այնինչ նա ինքնապաշտպանության հիմքեր ուներ իր խստաբարո դատավորների առաջ: Հիշեցինք վերև, որ Հուստինիանոս II կայսրը Հայաստան էր 689 թվին: Տիկին Սպրամի ամուսնուն՝ Վարազ-Տրդատին նա շնորհեց էքսարքոսության բարձր տիտղոսը, Սահակ Ձորոփորեցի Հայոց կաթողիկոսին, հինգ եպիսկոսների հետ, տարավ իր հետ Կ.Պոլիս, ուր կաթողիկոսը գեթ առերես կատարեց կայսերական պահանջը՝ ընդունելով քաղկեդոնականություն: Ասում ենք «առերես», ավելի ճիշտ կլիներ ասել թեարար: Կայսրն առիթ էր որոնում լուծելու 686 թվի դաշինքը արաբների հետ և լավագույն առիթը միշտ եղել է Հայոց ապստամբությունը: Սահակ կաթողիկոս զիջել է պայմանով՝ ստանալ կայսերական օգնություն անհավատների լուծը թոթափելու: Հուստինիանոս II կայսրը գահընկեց եղավ, բայց նրա հաջորդը (**Լեոնտիոսը - Պ. Հ.**) շարունակեց նույն քաղաքական խաղերը հայոց հետ: 700 թվին պայթեց պատրաստված ապստամբությունը: Աբդ ալ-Մալիք խալիֆայի եղբայրը՝ Մուհամմադ եկավ ապստամբ հայ իշխանների դեմ՝ Աբդ ալ-Մալիքի 16-րդ տարին՝ 700-701 թվին և վերականգնեց խաղաղությունը: Ճիշտ է, կայսերական օգնությունն հասավ, բայց այնքան չնչին էր, որ շոշափելի արդյունքը միայն պարտությունն եղավ: Մուհամմադ նորեն եկավ 702-703 թվին (=Աբդ ալ-Մալիքի 18-րդ տարին): Հայոց Սահակ կաթողիկոս հուսախաբ դիմեց խալիֆայի ներողամտության և մեռավ Խառանում: Նրա հետ մեռավ և միության խնդիրը, մեռավ կայսերական խաբուսիկ խոստումների աղետաբեր հետևանքով: Սահակին հաջորդեց Եղիա [Ա Արճիշեցի], որի անձն ու գործը մարմնացած բողոք էր կայսերական ճնշող քաղաքականության դեմ և խորշանք կայսերական դավանաբանություններ: Վշտացած Հայրապետը իրավունք ուներ գանգատելու Աբդ ալ-Մալիքին, թե «Աղվանից կաթողիկոս նստեալ ի Պարտավ, խորհուրդ արարեալ ընդ կայսերն Յունաց, զնա քարոզէ յաղօթս» (Գ, գլ. Ե): Այս ամբաստանության մեջ զայրույթի սլաքն ուղղված է ճնշամիտ կայսեր դեմ ավելի մեծ չափով, քան Աղվանից թշվառ Ներսես կաթողիկոսի:*

Ներսեսի 14 տարի ուղղափառ, այսինքն՝ հայերի հետ, լինելը և 3 1/2 տարի չարափառ, այսինքն՝ հայերից զատվելը, էապես այլ բան չէ նշանակում, քան որ Ներսեսը մնացել էր հավատարիմ Հուստինիանոս II-ի օրեն ծագած

տրամադրություններին: Եվ որովհետև Աղվանք անմասն էին 700-704 թվերի ապստամբական շարժումներին, Ներսես չընդգրկեց հակաքաղկեդոնական խիստ հակադարձ քարոզը, որ սաստկացավ Հայոց մեջ՝ շարժումների ճախորդության հետևանքով:

Ներսեսի «Նզովից գիր» տալը և Հովելի մահից հետո այդ գրի գողանալը եպիսկոպոսությամբ կաշառված Զաքարիա վանականի միջոցով՝ ծրի հերյուրանք են հետին ժամու: Նման գիր չէին տված Ներսեսի նախորդները՝ Եղիազար, Ուխտանես, Վիրո, և հավանական չէ, որ Ներսես տված լիներ: Աղվանից հայրապետների անջատական ձգտումը հայտնի է, ինչպես և անժխտելի նրանց քաղկեդոնական հակումները, Ներսես քավեց բոլորի մեղքերը: Հայոց Եղիա կաթողիկոս հասավ իր գլխավոր նպատակին՝ ներքարկել Աղվանից հայրապետությունը իր աթոռին, վերապահելով ձեռնադրության արտոնությունը:

Ներսեսին հաջորդ ընտրվեց Սիմեոն, նախապես գրով նզովելով Քաղկեդոնի ժողովը, Լևոնի տոմարը և Մաքսիմոսի վարդապետությունը: Սա *հայտնի եկեղեցական էր, որ դեմ ելավ միակամության ուսման և մեռավ աքսորի մեջ՝ 662 թվին: Պարտավի ժողովը, ուր [կաթողիկոս] ընտրվեց Սիմեոն, արձանագրեց, թե «ի սուտ ինչ ժամանակս կաթողիկոսքս մեր զկարգն յեպիսկոպոսացս մերոց առին, իսկ այժմ զի անփորձ և անընտրող գործով եղև, և հերձուածեցաւ աշխարհս, վասն այդորիկ պայմանեցաք առաջի Աստուծոյ և ձերոյ (Եղիայի) հայրութեանդ, եթէ ձեռնադրութիւն հայրապետութեանս Աղվանից ի սուրբ Գրիգորի աթոռէն լիցի միաբանութեամբ աշխարհիս» (Գ, գլ. Ը):*

Շերո իշխանն իր ստորադրյալ աշխարհիկ տերերով նմանապես [Թուղթ] գրեցին և Թուղթը տարան Արդ ալ-Մալիքին, որտեղ իշխանների անունները ցուցագրեցին սպառնալով՝ «եթէ զոքս ի սոցանէ գտանեն երկարնակ եղեալ, սրով և գերութեամբ սպառեսցեն» (Գ, գլ. Ծ):

Սիմեոն հայրապետական իշխանությունը վարեց մեկուկես տարի, ուրեմն 704-706 թվերին: Աթոռը ժառանգեց Միքայել, որ իր նախորդի նման հավատարմության գիր է տվել ընտրական ժողովին, որ գումարվեց Շամքորի Բերդո վանքում: Իշխանները ևս Շերոյի գլխավորությամբ մի Թուղթ են ստորագրել, որ պակասում է Կաղանկատվացու հրատարակության մեջ, բայց պահված է Էջմիածնի ձեռագրում թիվ 58: Հարկավոր ենք համարում բերել այստեղ այդ հետաքրքրական վավերագիրը՝

«Այլ ի նոյն գրոց տեառն Վիրոյի Աղուանից կաթուղիկոսի. յառաջաբան պատմութեան աշխարհին Աղուանից: Կանոնք և սահմանադրութիւն ժողովոյն Աղուանից, որ եղև ի ժամանակս Եղիայի Հայոց կաթուղիկոսի, որ էր ԼԱ. աթոռակալ ի սրբոյն Գրիգորէ:

Ի ժամանակին յորում կարգեցաւ ի քահանայապետութիւն Աղուանից Միքայէլ քահանայ խօսեցաւ աթոռակցօքն իւրովք, որք էին.

(1) *Յովհաննէս Կապաղակու եպիսկոպոս,*
(2) Սահակ Ամարասու եպիսկոպոս,
(3) Եղիազար Հոշոյ եպիսկոպոս,
(4) Իսրայէլ Մեծկուանից եպիսկոպոս,
(5) Զաքարիա Մեծիրանց եպիսկոպոս,
(6) Յովակիմ Գարդմանայ եպիսկոպոս, յաղագս բարեկարգութեան աշխարհիս և ուղղափառութեան հաւատոյս:

(1) Արդ ես Շերոյ ապիհի<պատ> պատրիկ Գարդմանայ տէր և Աղուանից իշխան,
(2) Վարազ-Գրիգոր պատրիկ Աղուանից սպարապետ,
(3) Բար ի Շահր Փերոզեան,
(4) Զառմիհր ի Վարազ-Քուրդաքեան,
(5) Թէոդորոս Վստամ Յարևմանեան,
(6) Ռոստոմ ի Վաչագան ի Վարազաք<ոյ>եան Յունսատահեան,
(7) Վահան ի Վարազվահանեան,
(8) Սմբատ ի Քարոյեան,
(9) Մահումատ ի Ղանքարեան,
(10) Գրիգոր ի Ռահատեան,
*(11) Պատրիկ ի Քամղիտան,*
(12) Արևքո<յ> ի Վարոքեան (=Վար<ազ>ք<ոյ>եան?),
(13) Շերոյ ի Սերդանշահեան,
(14) Վարդիշ ի Թամդիկան հիւպատոս.

*ԶԸ բուականութեանս Հայոց այսպէս կանոնեցաք, թե յորժամ դուք ձեռնարկէք յաղագս քաղկեդոնական աղանդոյն և կամ Մայրագոմեց<ւ>ոյն, եթէ վասն պայլիկեանց և թէ վասն խառն ամուսնութեան և թէ զի՞նչ և իցէ, ոչ ոք կարէ ելանել ըստ ձեր հրամանէ. և եթէ ոք ելանէ յԱստուծոյ դատապարտեալ եղիցի, և դուք իշխան լիջիք ըստ կամաց ձերոց դատել և ոք յիշխանաց չունի իշխանութիւն օգնել և ի պայմանիս զոր կարգեցաք հաստատուն կացցուք:*

Եւ կնքեցի զգիրս ես Շերոյ ապահի<պատ> պատրիկ, Գարդմանից տէր և Աղուանից իշխան, հանդերձ ամենայն ազատօք»[1]:

Ուշադրության արժանի է, որ «Աղուանից պատմութիւն»-ը կոչված է այս-

[1] Սամուել Անեցի, էջ 286, ծան. 28:

տեղ «Գիրք Վիրոյի Աղուանից կաթողիկոսի յառաջաբան պատմութեան»: Հարկավ, այս չէ նշանակում, թե գիրքը Վիրոյի հեղինակությունն է, այլ որ պատմում է Վիրոյի մասին: Ժողովի արձանագրությունն առնված է [Կաղանկատվացու] Գ *գրքից, իսկ Վիրոյի պատմությունը Բ գրքում է: Ասել է, թե Գ գիրքը կազմում է մասն Բ գրքի և ոչ թե անջատ կամ հավելածո գործ է:*

Ժողովի թվականի մեջ «Հայոց» բառը գրչի վրիպակ է՝ փոխան «Տաճկաց»: Տաճկաց 88 թվականը = է 706 թ. դեկ[տեմբերի] 12-707 թ. նոյ[եմբերի] 30: Ժողովի կանոնք և սահմանադրություն չկան, ընդօրինակողը բաց է թողած: Ինչպես 704 թվի ժողովի առթիվ, այս անգամ ևս Շերո մյուս իշխանների հետ վստահության և համերաշխության Թուղթ է ստորագրել նորընտիր կաթողիկոսին: Շատ տարօրինակ է Մայրագոմեցու անունը քաղկեդոնական աղանդի և պավլիկյանների կողքին: Երևի ժողովն ի նկատի է ունեցել Մայրագոմեցու մի քանի աշակերտներին, որոնց գործունեությունը պախարակելի էր, ինչպես վկայում է Հովհաննես Կաթողիկոսը[1]*: Թերևս Մայրագոմեցու բարի հուշակը խնայելու և անտեղյակներին գայթակղություն չպատճառելու դիտավորությամբ է, որ ժողովի արձանագրությունը հանել են Կաղանկատվացու Պատմության էջերից:*

Աղվանից աթոռը ուներ վեց եպիսկոպոսություն՝ Կապաղակ, Հաշ (Ցաշ), Ամարաս, Գարդման, Մեծկողմանք, Մեծիրանք: Նախորդ՝ 704 թվի ժողովին ներկա էին միայն չորս եպիսկոպոս, Մեծկողմանց Իսրայել եպիսկոպոսն աքսորված և Մեծիրանց աթոռը թափուր լինելով: Վեցերորդ դարում, Աղվանից Աբաս հայրապետի օրով Աղվանք հաշվում էր յոթն եպիսկոպոսական աթոռ, ինչպես թված են Հովհաննես Բ Գաբեղենացու Թղթի մեջ[2], *բերված նաև Կաղանկատվացու մոտ (Բ, գլ. Է)՝ Բաղաhատ (?), Կապաղակ, Ամարաս, Բաղասական, Շաքի, Գարդման և Մեծկողմանք: Շաքի հետագայում անցել է հավանորեն վրաց եկեղեցուն, իսկ Բաղաhատ խանգարված անունը և Բաղասական զուգակշիռ են Հաշո և Մեծիրանց: Հետաքրքրական է, որ* ***Diegesis****-ի վրաց թարգմանության մեջ ասված է, թե Կոմիտաս կաթողիկոսը յոթն եպիսկոպոսություն զիջավ աղվաններին, որով նրանց իր կողմը քաշեց և մերժել տվավ Քաղկեդոնի ժողովը*[3]*:*

704 թվի ժողովին ներկա էին, ուրիշների թվում, նաև Ներս-Միհրի վանաց տանուտեր, Գտո վանաց տանուտեր, Կատարո վանաց տանուտեր և Հով-

¹ Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 46:

² «Գիրք թղթոց», էջ 81:

³ Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա (Ե-ԺԲ դար), Երևան, 1934, էջ 37-38:



սեփա վանաց տանուտեր: Նախարարական իրավակարգին հատուկ տանուտեր բառը գործ է ածված այստեղ այն իմաստով, որ ընդունված է եղել հայ քաղկեդոնական միջավայրում, որտեղից և անցել է վրաց մոտ: Հռչակավոր բյուզանդական զորավար Գրիգոր Բակուրյան, որ ծագումով աներկբայ հայ էր, բայց դավանանքով քաղկեդոնական, կառուցել է Բուլղարիա նշանավոր Պետրիցոս վանքը, այժմ Բաչկովո, 1083 թվին: Վանքի կանոնադրությունը հասել է մեզ և այնտեղ Բակուրյան ասում է, որ **kellarites** կոչվում է վրացերեն տանուտեր[1]*:* ***Kellarites*** *կազմված է լատին* ***cella*** *(«շտեմարան»),* ***cellarius*** *(«շտեմարանապետ») բառից՝ հունական ածանցով և վանական կյանքի մեջ նշանակում է «տնտեսապետ», որ կարող է լինել երբեմն ինքը՝ վանահայրը: Մի նոր ապացույց, թե որքան հայ եկեղեցին համակերպվել է տիրող իրավակարգին, որի հետևանքով վանական տնտեսությունը այլ բան չէր նկատվում, քան մի նախարարական տանուտերություն:*

Միքայել կաթողիկոսին է պատկանում Գ գրքի ԺԴ գլուխը, որ մի ճառ կամ քննություն է, թե երբ պետք է տոնել Քրիստոսի ծնունդն ու հայտնությունը: Երկաբնակները տոնում են ծնունդը դեկտեմբերի 25 և հայտնությունը՝ հունվարի 6: Մինչդեռ հայոց և աղվանից եկեղեցին երկու տոնը կատարում է միասին՝ հունվարի 6-ին: Երկու կողմի մեկնակետը Եղիսաբեթի հղիության օրն է: Երկաբնակների հաշվով Զաքարիա կատարեց քավության տոնը, որ [հրեաների] թշրի ամսի *10-ին էր և գնաց տուն և հետևյալ թշրի 11-ին Եղիսաբեթ հղիացավ: Հակառակորդներն առարկում էին, որ Զաքարիա քավության օրը տոնեց թշրի 10-ին, այլև տաղավարահարաց տոնը՝ թշրի 22-ին և ապա մերձեցավ իր կնոջ, ուրեմն հղիությունը պետք է հաշվել ամսի 23-ից, այսինքն՝ 12 օր ուշ, քան երկաբնակներն են հաշվում: Վեց ամսից հետո երեշտակն ավետեց Մարիամին: Երկաբնակները համարում են, որ դա մարտի 25-ն էր, իսկ հակառակորդները՝ 12 օր ուշ, այսինքն՝ ապրիլի 6-ը: Այս հաշվով երկաբնակների ծնունդը կգա 9-ը ամիս հետո՝ դեկտեմբերի 25-ին, իսկ հակառակորդների հաշվով 12 օր ուշ՝ հունվարի 6-ին: Աղվանից Միքայել հայրապետ հիշում է, որ* ***«Մարկոս*** *՝ հայրապետն Երուսաղէմի, որ մի էր ի Նիկիական հարցն, որ յիւրում խրատական Թղթին գրեաց ի Հայս յաղագս մկրտութեանն, եթէ ի միում աւուր տօնեմք զԾնունդն և զՄկրտութիւնն» (Գ, գլ. ԺԴ): Մարկոս վրիպակ է, փոխան Մակարի, որ իրավամբ Թուղթ է գրել ի հայս*[2]*: Բայց այս Թղթի մեջ խոսք չկա ծննդյան մասին: Աղվանից կաթողի-*

¹ L. Petit, Typicon de Grégoire Pacourianos pour le monastére de Pétritzos, (Bačkovo) en Bulgarie. Texte original publié par le R. P. Louis Petit, տե՛ս «Византийский временник», 1904, т. XI, прил. I, гл. IV (20).

² «Գիրք թղթոց», էջ 407:

*կոս Աբասին ուղղված Թղթում Մակարի հաջորդ Հովհաննես հիշատակում է, որ Մակար և Եվտիքոս երկու Թուղթ են գրել՝ «Գիր հաւատոյ» և «<Գիր> կարգաց եկեղեցւոյ»[1]: Հավանորեն «Գիր հաւատոյ»-ի մեջ է եղել ծննդյան մասին քննությունը: Ամեն պարագային Միքայել [կաթողիկոս] պարտական է այս տեղեկությունը Գրիգոր Արշարունու, որի «Մեկնութիւն ընթերցուածոց» գործի մեջ գտնում ենք նույնը. «Որպէս և Մակար Երուսաղէմի հայրապետն յիւրում խրատական Թղթին ի Հայս յաղագս մկրտութեանն, թե ի միում աւուր տանիմք զծնունդն և զմկրտութիւն»[2]:*

Միքայելի վկայությունը, թե «Ծնունդն և Յայտնութիւն և Աւետիքն մին տօն կատարէ եկեղեցի» կարող է տարօրինակ թվել շատերին, բայց ճշմարիտ է: Ավետյաց տոնը մարտի 25, թե ապրիլի 6, հայտնի չէ նախ քան 692 թվի ժողովը: Մեր եկեղեցին գոնե տոնում էր հունվարի 6-ին: Պարիսի Ազգային Մատենադարանի ձեռագիր Տոնապատճառի մեջ ասված է. «Արդ նախ քան զհայտնութիւն Տեառն յունուարի ի Ե(=5-ին) սկսանի եկեղեցի ուղղափառաց ի մէջ գիշերի զերգս աւրհնութեան Աստուածամաւր Կուսին և յայտ առնէ զաւետիս գալստեան Քրիստոսի»[3]: *Կեղծ-կաթողիկոս Սահակ իր ամբաստանագրի մեջ իրավունք ուներ ասել, որ «Հայերը տոնում են Ավետիքը հունվարի 5-ին»[4]:*

Միքայել կաթողիկոս գրում է. **«յընթերցուածին** *ասէ վասն Դաւթի և Յակոբու եթէ յայլ քաղաքս առնեն զԾնունդն Քրիստոսի»: **«Ընթերցուած»**-ը այն եկեղեցական գիրքն է, որ կոչվում էր «Տոնական» և ուր դեկտեմբերի 25 նշանակված է Դավթի և Հակոբու հիշատակը և հետևյալ նկատողությունը՝ «յայլ քաղաքս առնեն զԾնունդն»: Այս նկատողության առթիվ է Միքայելի մեկնությունը, թե Ծնունդ տոնում էին 25 դեկտեմբեր հեթանոսությունից և ո՛չ հրեությունից դարձած քրիստոնյաները, որովհետև «ի հեթանոսութեանն սովոր էին ծնունդ արեգական կատարել յայնմ աւուր»: Արդարև, դեկտեմբերի 25-ը*

[1] Հովհաննես եպիսկոպոսի Թուղթը հրատարակել է Կ. Տեր-Մկրտչյան՝ «Այս Թուղթ Յովհաննու Երուսաղեմի եպիսկոպոսի է առ Աբաս Աղուանից կաթուղիկոս», տե՛ս «Արարատ», 1896, մայիս, էջ 252-256:

[2] Վենետիկի Մխիթարյան ձեռագրատանց, ձեռագիր թիվ 475, Թուղթ ԻԲ: Կաղանկատվացու մոտ Մակար դարձել է Մարկոս և ավելացրած սխալ տեղեկություն, «որ մի էր ի Նիկիական հարցն»: Հայր Ն. Ակինյանի («Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի Հայրապետի առ Վրթանես Եպիսկոպոսապետ Սիւնեաց Յաղագս կարգաց եկեղեցւոյ», Վիեննա, 1930) ուշադրությունից սպրդել է Միքայելի Թղթի այս տեղիքը:

[3] Պարիս, Ազգային Մատենադարան, ձեռագիր, թիվ 114, թուղթ 38:

[4] **Migne**, P. G., 132, col. 1228, 1230.



*հայտնի էր որպես* **dies natalis Invicti**՝ *«Օր ծննդեան Անհաղթի», այսինքն՝ Միհրի, որի պաշտամունքը մուտք էր գործել Հռոմի Հելիոգաբալոս կայսրի օրով (218-222): Միհր տեղի էր տվել պարզորեն Քրիստոսին: Այս է դեկտեմբերի 25-ին ծնունդը տոնելու սովորության ծագումը: Սուրբգրենական և կամ լուսնի և արևի տարվան տարբերության վերա հիմնված հաշիվները սքոլաստիկ պատճառաբանություններ են, որոնց միակ արժեքն իրենց սրամտությունն է:*

## [Ը]

Կաղանկատվացու Պատմության երրորդ գիրքը սկսվում է Մահմեդի *հակիրճ կենսագրությամբ, որին հետևում է նրա հաջորդների ցանկը և գահակալության տարիները: Ցանկը կանոնավոր է ընդհանուր առմամբ[1]: Խալիփաների իշխանության տարեթվերը խանգարված են գլխավորապես ընդօրինակողների գրչի տակ: Օրինակ, Աբուբաքր Աբուհիֆյան* **ամս Թ**, *պետք է կարդալ՝* **ամս Բ**: *Մուավիա* **ամս Թ**, *ուղղելի է՝* **ամս ԺԹ** *և այլն: Զբաղելու չենք ցանկի քննությամբ: Մեզ հետաքրքրում է մասնավորապես ցանկի վերջին անունները:*

Աբրեհիմ՝ ամս Ժ,

Հարուն Երկրորդ՝ «նստաւ ի Մահմէտայ ամիրմունմնի և հայ թուականն էր ԲՃՀ» (Գ, գլ. Բ): Աբրեհիմ (Աբրահամ) այն խալիփան է, որ հիշվում է Ի գլխում. «Այլ յԲՃՁԷ թուականին Հայոց Աբրահամ ամիրմումնի գնա զօրու մեծաւ յաշխարհն Հոռմոց և էառ զմեծ քաղաքն զԵմորիայ սրով և գերութեամբ, և անտի դարձաւ ի բնակութիւն իւր: Սա է Աբու Սահակն»[2]:

Աբրեհիմն է ուրեմն Աբուսահակ Մուհամմադ ալ-Մութասիմ, որ թագավորեց 833-842 թվերին՝ և Հ[այոց] թ[վականության] 287 թվին =838 թվին, առավ Ամորիա քաղաքը:

Աբրեհիմի հաջորդ Հարունն է՝ Աբուջաֆար Հարուն ալ-Վասիկ, որ գահ բարձրացավ 842 թվին: Կաղանկատվացու բնագիրը՝ **Հարուն Երկրորդ** *«նըստաւ ի Մահմետայ ամիրմունմնի», պետք է կարդալ ոչ* **երկրորդ**, *այլ <քսաներորդ> երկրորդ (թերևս, ավելի ճիշտ <քսաներորդ> երրորդ): Արդարև, պատմագրի ներկայացրած ցանկից արդեն երևում է, որ Հարուն 23-րդ գահակալն էր Մահմեդից հետո: Սխալ է նաև Հայոց թվականը՝ 270=821, փոխան ԲՃՂ=290, այսինքն՝ 842 թիվը, Հարունի գահակալության տարին: Հարունի*

[1] **Ուրման իրն Ռան** կարդալ՝ իրն Ափան. **Affan**:

[2] Ինչպես կտեսնենք ստորև, այս կտորը պակաս է ներկա երկու հրատարակությանց մեջ:

*իշխանության տարիները չեն ճշանակված, որ կարող է կարծել տալ, թե հեղինակը գրել է Հարունի օրով (842-847): Ամեն պարագային այդ հեղինակը մեր պատմագիրը չէ այն պարզ պատճառով, որ միևնույն գլխի մեջ (Ի) պատմում է ոչ միայն Հարունի օրով կատարված անցքերը, այլև նրա հաջորդների՝ Ջաֆրի, այսինքն՝ Մութավաքիլի, այլև հետևյալ տարիների անցուդարձը: Մեր պատմագիրը ցանկն առել է ուրիշ տեղից: Մտորև կվերադառնանք այս խնդրին:*

Ցանկից հետո պատմագիրը տալիս է Աբդ ալ-Մալիքի օրով պատահած եկեղեցական գործերի պատմությունը մինչև Գ-ԺԴ գլուխները: Հետևյալ ԺԵ գլ[ուխը] ամփոփում է քանի մի տողի մեջ արաբական առաջին արշավանքները: Հերակլին հաջորդեց Կոստանդին և թագավորեց «ամս Գ: Ի սորա աւուրս տիրեցին Ասորւոց Տաճիկք և արկին ընդ հարկաւ զեկեղեցիս սրբոյ քաղաքին Երուսաղէմի. <և հայ թուականն Չ լինէր>: Իսկ Կոստաս՝ սորին որդի, ամս ԲԹ: Ի սորա **հինգ** *ամին Արաբիոյ կռիւն եղև. և ի* **վեցն** *Տաճիկք եկին ի Հայս. և առաւ Դուին ի Տաճկաց և որք գերեցան ԼԵՌ»:*

Այս տողերն առնված են **«Անանուն ժամանակագրութիւնից»**, *ուր կարդում ենք. «Կոստանդին՝ ամս երիս: Ի սորա աւուրս տիրեցին Տաճիկք Ասորւոց, և արկին ընդ հարկաւք զեկեղեցիս սրբոյ քաղաքին Երուսաղէմի:*

Կոստանդին՝ որդի Կոստանդնի, թոռն Հերակղի, ամս քսանևինն: Ի սորա երկրորդ ամին առաւ Դուին ի Տաճկաց <ի Ղ թուականին> և եղև համար գերելոցն ԼԵՌ»[1]*:*

Կաղանկատվացին ընդօրինակել է իր աղբյուրի, նաև թերևս գրչի, սխալները: Հերակլի որդի Կոստանդին թագավորեց ոչ թե երեք տարի, այլ՝ երեք ամիս: Ըստ Թեոփանեսի, Կոստանդին թագավորեց իսկապես չորս ամիս[2]*: Հավանական է, որ Անանունի* ամս Գ *գրչական վրիպակ է՝ փոխան սկզբնական* **ամիսս** Դ:

Արաբները գրավեցին Երուսաղեմ և Ասորիք 637-638 թվերին[3]*, Հերակլի օրով և ոչ նրա որդու, ուստի և Հայկական թվականը՝ 80=631, որ անծանոթ է Անանունին, պատկանում է Կաղանկատվացուն և իր սխալ հաշվի արդյունք է: Հերակլի թոռի անունն իսկապես Կոստաս էր, բայց կոչվեց իր հոր անունով Կոստանդին*[4]*: Կաղանկատվացին ունի Կոստաս, այնինչ Անանունի մոտ Կոստանդին է: Չենք կարծում, որ մեր պատմագիրն այլ աղբյուր ունի*

[1] «Անանուն Ժամանակագրութիւն. խմբագիր յօրինեալ յԷ դարու», էջ 77:

[2] **Theophanes**, p. 522.

[3] Անդ, էջ 520:

[4] **Սեբեոս**, էջ 112՝ «զԿոստաս...անուանէ յանուն հաւրն իւրոյ»:



*նույն այս անվան համար, քան Անանուն: Թերևս Անանունի իր օրինակի մեջ եղել է Կոստաս՝ փոխանակ Կոստանդնի: Կաղանկատվացին Անանունից գիտե, որ Կոստաս թագավորել է 29 տարի: Սակայն Կոստաս թագավորել է 27 տարի և ոչ թե 29-ը: Կաղանկատվացին պահել է հավատարմորեն Անանունի սխալը, հակառակ որ Ջևանշերի պատմության մեջ Կոստասին տալիս է 30 տարի:*

Սխալ է նաև Կաղանկատվացու տեղեկությունը, թե Արաբիո կռիվ եղավ Կոստասի հինգերորդ տարին և Դվինի առումը՝ վեցերորդ տարին: Անանուն չունի առաջին կռվի հիշատակության, իսկ Դվինի առումը դնում է Կոստասի երկրորդ տարին, համաձայն Ղևոնդի[1]: *Արաբիո կռիվը այն կռիվն է, որ տեղի ունեցավ ի Մարս «յառաջնումն ամի Կոստանդեայ թագաւորին Յունաց»*[2]*: Հետևապես Կաղանկատվացու՝ «ի սորա Ե ամին» վրիպակ է, սխալ ընթերցում՝ փոխանակ «ի սորա Ա ամին»: Այս հասարակ վրիպակի հետևանքով Դվինի առման տարին, որ է Կոստասի երկրորդ տարին, դարձել է Կոստասի* **վեցերորդ** *տարի (Գ, գլ. ԺԵ): Մեզ թվում է, որ Արաբիո կռվի հիշատակությունը ևս առնված է Անանունից, որ Կաղանկատվացու ձեռքի տակ եղած Անանունի մեջ եղել է այդ հիշատակությունը:*

Անանունը և նրան հետևելով Կաղանկատվացին, շփոթել են արաբական երկու արշավանքները, կամ ավելի ճիշտ՝ ձուլել են: Առաջին արշավն ուղղված էր Դվինի դեմ, երկրորդը՝ Արծափի դեմ: Վերջինս տեղի ունեցավ Կոստասի երկրորդ տարին, հոռի 23՝ կիրակի, որ համապատասխանում է ճիշտ 643 թվի օգոստոսի 10-ին: Իսկ առաջին կամ Դվինի արշավն եղավ Եզր [կաթողիկոսի] վերջին տարին՝ տրե 20, ուրբաթ օրը: Եզրը աթոռակալեց տաս տարի, 630-640 թվերին: Դվինի առումը պետք է տեղի ունեցած լինի 640 և 643 տարիների ընթացքին: Արդ, միմիայն 640 թվին է, որ տրե ամսի 20-ը, որ հավասար է հոկտեմբերի 6-ին, գալիս է ուրբաթ օր, որով և որոշվում է, թե՛ Դվինի առման տարին և թե՛ Եզրի մահվան[3]*:*

Ո՛չ Անանուն և ո՛չ Կաղանկատվացի չեն հիշում Արծափը և Արծափի առումը, այլ միմիայն Դվինի առումը, որի ժամանակ գերվեցին 35 հազար մարդ և Դվինի առումը դնում են այն տարին, երբ տեղի ունեցավ Արծափի առումը, այն է՝ 643 թվին: Ղևոնդ պատմագիրը ևս Դվինի առումն և 35 հազա-

[1] **Ղևոնդ**, էջ 9:

[2] **Սեբեոս**, էջ 112:

[3] Անդ, էջ 108 և 117: **E. Dulaurier**, Recherches sur la Chronologie Arménienne technique et historique, Paris, 1859, pp. 227-232՝ ճիշտ է որոշել Արծափի կռվի տարին, բայց սխալ Դվինի: 642 թվի տրե 20=է 6 հոկտեմբեր, որը չորեքշաբթի է և ոչ ուրբաթ, ուստի անընդունելի է:

րի գերումը նշանակում է Կոստանդնի երկրորդ տարին՝ 643 թվին, իսկ Արծափի կռիվը *10 տարի ուշ՝ 653 թվին, որ բացարձակապես սխալ է*[1]:

Ասողիկի մոտ կրկին հիշատակություն կա Դվինի կռվի մասին, մի անգամ ըստ Ղևոնդի[2], *մյուս անգամ համեմատաբար ճիշտ հաշվել է, որ Դվին առին «ի Ղ ամի թուականութեան <Հայոց>», այսինքն՝ 90+551=641 թվին*[3]*: Այսպես, Կաղանկատվացու Երրորդ գրքի ԺԵ գլ[ուխը] հարուցանում է մի շարք բանասիրական հարցեր, որոնց վերջնական լուծումը կախում ունի Անանունի կամ «Կայսերաց գրքի» քննական վերահրատարակությունից:*

Նույն՝ ԺԵ գլխում ասված է, որ Կոստասի ԺԹ տարին «ննջեաց կաթողիկոս Հայոց Տէր Ներսէս ամս Ի և հայ թուականն ՃԺԱ»: Կոստասի ԺԹ=(641+19=) 660, իսկ Հայկական թվականը՝ 111 (+551)=662-663: Ինչպես երևում է մեր հեղինակը Կոստանդնին տալիս է իրոք երեք տարի՝ 641, 642 և 643 տարիները և կամ 641-644 և Կոստասի գահակալությունը հաշվում է 643 թվից, որով 19-րդ տարին կլինի 662-663 թիվը: Տեսանք, որ Եզր կաթողիկոս մեռավ 640 թվին և նույն տարին ընտրվեց Ներսես[4] *և ուրեմն նրա իշխանության 20-րդ տարին կվերջանա 660 թվին: Կոստասի 19-րդ տարին է ստույգապես 660 թիվը և սա է Ներսեսի մահվան և ոչ թե գահակալության տարին: Ներսես կաթողիկոս 654 թվին կայսեր հետ հեռացավ և թերևս մնաց Տայք և վերադարձավ միայն վեց տարի հետո, երբ մեռավ իր հակառակորդ Թեոդորոս Ռշտունին, այն է 660 թվին: Գուցե այստեղից է ծագում շփոթությունը, որի մեջ ընկել է մեր պատմագիրը:*

Այլուստ հայտնի չէ, որ Քաղաքուղաշտի Սուրբ Գրիգոր, այսինքն՝ հռչակավոր Զվարթնոց շինված է Կոստանդին կայսրի նյութական օժանդակությամբ: Շատ հավանական է: Իսկ թե կայսր ներկա է եղել տաճարի նավակատիքին, այսինքն՝ օրհնության, և թե շինարարները հրաման են ստացել գնալ Կ. Պոլիս՝ նույնպիսի տաճար կառուցանելու, սակայն ճարտարապետը ճանապարհին մեռել է՝ զրույցներ են, առանց որևէ հավաստիության: Կոստանդին կայսրը 654 թվից հետո Հայաստան չէ եղել, իսկ 654 թվին եկեղեցու շենքը տակավին ավարտված չէր և Ներսես [կաթողիկոս] իր վերա-

[1] Ղևոնդ հավանորեն օգտվել է Անանունից: Դվինի առումը 643 թվին և խազարաց արշավանքը 685 թվին հայող տողերը հար և նման են Անանունին:

[2] Ղևոնդ, էջ 9:

[3] Ասողիկ, էջ 98, 120: Պատմագիրը երրորդ անգամ հիշում է Դվինի առումը (էջ 142), ըստ Անանունի: Ասողիկի հրատարակության մեջ՝ ի ՂԵ, հակառակ ձեռագրական ի Ղ (էջ 98): Ասողիկ հիշում է նաև «առաջին ելք Տաճկաց ի Հայս յՉՁ թուականին», ուրեմն 637 թվին: Հովհան Մամիկոնյանի տեղեկությամբ, արաբական առաջին արշավը տեղի ունեցավ պարսից Խոսրով թագավորի մահվանից ութ տարի անց (էջ 57), որ է 628+8=636: Այստեղից է և Ասողիկի հաշիվը:

[4] Սեբեոս, էջ 109:



դարձին՝ 660 թվին «փութայր կատարել զշինուած եկեղեցւոյն», ըստ վկայության *ժամանակակից ճշմարտապատում պատմագրի*[1]*:*

Հաջորդ՝ ԺՁ գլխի վերնագիրը՝ «Ապստամբութիւն Հայոց. և Մահմէտին գալ ի Հայս. և առումն Սևանայ. և մահն Մահմէտի», չէ ընդգրկում ամբողջ գլուխը, այլ միայն առաջին մասը: Այստեղ պատմվում է համառոտակի, որ Հ[այոց] թ[վականության] 146 թվին Մուհամմադ եկավ Հայաստան, անցավ Չողա: Հայերն ապստամբեցին, պաշարեցին արաբներին Դվին քաղաքում, կոտորեցին երկու հազար հոգի՝ հոռոմ զորքի օգնությամբ: «Ի նմին ամի, - գրում է մեր պատմագիրը, - եղև զրաւ զարմից սրբոյն Գրիգորի»: Մուհամմադ դարձավ Չողայից, պաշարեց Սևանա բերդը երեք տարի, առավ [բերդը] և գնաց ջարդեց հայ և հոռոմ զորքերը, խաբեությամբ բռնեց հայ նախարարներին և այրեց Նախճավանի եկեղեցում 800 հոգի և Խրամի՝ 400: Այս կորստի պատճառն այն էր, նկատում է պատմագիրը, որ «արհամարհանօք այպն առնէին զհայրապետս և զքահանայս և զկրաւնաւորս ծանծրացուցանէին»: Մուհամմադ ևս իր պատիժը կրեց, յոթն ամիս չարաչար հիվանդությամբ տանջվեց և երբ գերեզման իջավ, «երկիր ոչ ընդունէր զնորա գարշելի մարմինն: Ապա կալեալ շուն մի, շամփրեցին ընդ Մահմէտն և այնպէս ծածկեաց երկիր զչարն զայն»:

Մուհամմադ զորավարը Մրվանի որդին է[2] *և Աբդ ալ-Մալիքի եղբայրը, և նրա գործունեությունը Հայաստանում հայտնի է Ղևոնդ պատմագրից*[3]*: Ըստ Կաղանկատվացու, Մուհամմադ եկավ Հ[այկական] թ[վականության] 146 թվին (=697 թվի հունիս 5-698 թվի հունիսի 5) և նրա երեքամյա (կամ ըստ Հովհաննես Կաթողիկոսի երկամյա*[4]*) գործերը բռնում են 697/698-700/701 տարիները: Այս ժամանակագրությունը չի արդարանում Ղևոնդի վկայությամբ:*

Ըստ Ղևոնդի, Մուհամմադ եկավ Հայք «յետ ԺՁ ամի իշխանութեան Աբդլ-Մելիքի»[5]*: Սա գահ բարձրացավ Հիջրի 65 թվին, ռամազան ամսին, որ է 685 թվի մայիս, և 16-րդ տարին համապատասխանում է 700-701 թվի մայիսին: «Ձկնի Բ ամաց», ուրեմն 701 և 702 տարիներից հետո Մուհամմադ «նիւթէր ի վերայ ուխտին սրբոյն Գրիգորի զմահ», ապա գնաց Ասորիք: Ս. Գրիգորի ավերումը Կաղանկատվացին նշանակում է Մուհամմադի եկած*

[1] Անդ, էջ 150-151:

[2] Մուհամմադ իբն Մրվան: Հովհաննես Դրասխանակերտցի (էջ 53)՝ Մրվան=Մուհամմադ իբն Մրվան:

[3] Ղևոնդ, էջ 20-23, 28-32, 35, 37-40, 42:

[4] Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 53՝ «զկնի երկեամ մի ամաց»:

[5] Ղևոնդ, էջ *19*:

*տարին՝ 697 թվին: Ուրեմն, բոլորովին հակառակ Ղևոնդի տեղեկության, որով Մուհամմադի գալն ընկնում է 701 թվի սկզբները, իսկ Ս. Գրիգորի ավերումը՝ երկու տարի անց, ուրեմն 703 թվի սկզբները:*

Երբ Մուհամմադ հեռացավ Հայաստանից, հայերը զենք առին նորա փոխանորդի դեմ և երկու հաղթություն տարան: Վարազ-Տիրոցի որդի Սմբատ ջարդեց արաբական մի գունդ Վարդանակերտի մոտ և Սմբատ՝ որդի Աշոտ պատրիկի, կոտորեց մի ուրիշ գունդ Ռշտունյաց Գուկանք (այժմ՝ Գյուգանց) գյուղի մոտ:

Մուհամմադ նորեն եկավ մեծ զորքով «յութուտասաներորդ ամի Աբդլ-Մելիք իշխանի և զամս Գ հանդարտեալ դադարէր»[1]*: Աբդ ալ-Մալիք մեռավ 705 թվի հոկտեմբերի 8-ին և նրան հաջորդեց իր որդի Վլիթ: Սորա առաջին տարին, Սմբատ Վարազ-Տիրոցյան, որ Վարդանակերտի հաղթությունից հետո քաշվել էր Տայք և կայսեր կողմեն կյուրապաղատության պատիվ ստացել, հարձակում գործեց, կայսերական օժանդակ գնդի հետ, արաբների վերա՝ Վանանդ գավառում, բայց պարտվեց և հեռացավ Փոյթ (այժմ՝ Փոթի): Վլիթ զայրացած խիստ հրաման դրկեց Մուհամմադին և սա իր օգնականի միջոցով հայ նախարարներին այրել տվեց Նախճվանի և Խրամի եկեղեցիներում, Վլիթի առաջին տարին՝ 705 թվի հոկտեմբերի 8-706 թվի հոկտեմբերի 8, հավանորեն 706 թվին*[2]*:*

Այստեղ ժամանակագրական մի անհարթություն կա, եթե չասենք հակասություն: Առաջին անգամ Մուհամմադ եկավ Աբդ ալ-Մալիքի 16-րդ տարուց հետո և մնաց երկու տարի, ուրեմն՝ 17-րդ և 18-րդ տարիները Հայաստան էր, մինչդեռ երկրորդ գալը նշանակում է նույն 18-րդ տարին: Այս կերպ ժամանակ չի մնում Վարդանակերտի և Գուկանքի պատերազմական գործողությունների համար, ինչպես նաև Սահակ կաթողիկոսի ճանապարհորդության Խառան՝ ամոքելու բռնավորի կատաղությունը:

Ակներև է, որ թվական մի սխալ կա: Յո. Մարկվարտ նկատել է այս պարագան և կարծում է, որ Մուհամմադի առաջին գալստյան տարին պետք է լինի ԺԳ և ոչ ԺԶ, ինչպես Ղևոնդի մոտ է, իսկ համաձայն Կաղանկատվացու, 697 թվին: Սակայն Հայկական թվականի այնքան շփոթ գործածությունը Կաղանկատվացու մոտ, վստահելի նեցուկ չէ Ղևոնդին սրբագրելու համար, թող որ սրբագրությունն ինքը նոր դժվարություն է հարուցանում: Շատ ավելի հիմ կա կարծելու, որ սխալը Մուհամմադի երկրորդ գալստյան տարեթիվն է: Այս երևում է Ղևոնդի՝ իրեն, բնագրից: Իր իսկ խոսքով, Մուհամմադ եկավ և «զամս Գ հանդարտեալ դադարէր», այսինքն՝ ոչինչ չարություն չգործեց մինչև նախարարների այրումը: Այս աղետը տեղի ունեցավ Վլիթի առաջին տարին: Հետևապես, երեք տարի դադարը հաշվելու է Աբդ ալ-Մալիքի վերջին երկու տարիները՝ 20 և 21-րդ և Վլիթի առաջին տարին[1]*: Ուրիշ խոսքով, Մուհամմադ եկած է Աբդ ալ-Մալիքի 19-րդ տարվա վերջերը և ոչ թե 18-րդ տարին: Նույն այս տարին էին հայոց ապստամբական շարժումն ու կրկնակի հաղթությունը: Աբդ ալ-Մալիքի 19-րդ տարին է 703 թիվը: Արտաքին մի կարևոր աղբյուրից*[2] *գիտենք, որ հայերն ապստամբեցին արաբների դեմ Արարչության 6195 թվին, որ Ալեքսանդրյան ոճով հավասար է (6195-5492)=703 թվին: Գիտենք նաև, որ Մուհամմադ ընդառաջեց Սահակ կաթողիկոս, որ և մեռավ Խառանում: Նրա հաջորդ Եղիա կաթողիկոսն աղեն աթոռի վերա էր 704 թվի մայիս՝ Պարտավի ժողովին: Սահակ կաթողիկոս մեռած պետք է լինեի 703 թվի վերջերը կամ 704 թվի սկիզբները, ըստ Ասողիկի: ՃԾԲ=703 թվին (ոչ ՃԾԹ, ինչպես ունի Ասողիկի տպագրությունը): Այս ևս հաստատում է Մուհամմադի գալը 703 թվի վերջերը*[3]*: Պետք չէ շփոթել*

[1] Ղևոնդ, էջ 31:

[2] Անդ, գլ. Է և Ը:

[1] Յո. Մարկվարտի առաջարկը՝ սրբագրել Ղևոնդի ԺԶ տարին ԺԳ, բավարար չէ, որովհետև Աբդ ալ-Մալիքի ԺԳ տարուց մինչև Վլիթի առաջին տարին կանե 9 տարի: Այնինչ Մուհամմադ մնաց Հայաստանում առաջին գալստյան երկու (և ոչ երեք, ինչպես ունի Կաղանկատվացին հակառակ Հովհաննես Կաթողիկոսի և Ղևոնդի) և երկրորդ գալստյան, մինչև Վլիթի առաջին տարին, երեք տարի, ընդամենը՝ հինգ տարի:

[2] **Theophanes,** p. 570.

[3] **Ասողիկ**, էջ 124-125, Նախճվանի և Խրամի աղետը դնում է ՃԾԳ թվին=704, թվում է, թե ավելի Վահան Գողթնեցու վկայաբանությունից, ուր սկզբում ասված է, որ նախարարներին այրեցին «ԶԵ ամի յուրյանց», հետո հիշում է, որ չար խորհուրդը ծրագրվել էր Աբդ ալ-Մալիքի ԺԶ տարին, բայց գլուխ բերեց Մուհամմադ «յառաջնումն ամի իշխանութեան Վլթի որդւոյ նորա որ էր թուականին Հայոց ՃԾԲ, յաւուրս աւանի Զատկին. ապա առեալ ածին զբազմութիւն գերւոյն ի մայրաքաղաքն Դուին և զջերմ աւուրս զամենայն յարգելանի պահէին», հետո դրկեցին Դամասկոս: Այս ժամանակագրությունը սխալ է: Վլիթի առաջին տարին չի համապատասխանում Հ[այոց] թ[վականի] 152 թվին: Արաբ 85 թիվը=704 թվի հունվարի 14-705 թվի հունվարի 2, Հայոց 152 թիվը=703 թվի հունիս 4-704 թվի հունիս 4: Քանի որ Զատկին էր, ուրեմն 704 թվի մարտ 30: Հետևապես այստեղ ևս համաձայնությունը լոկ առերևույթ է. իրապես մի տարվան զանազանություն կա: Ասողիկ անտեսել է Զատկի պարագան և 704 թիվը փոխարկել ճիշտ Հայոց (704-551=) 153 թվով:

Վարդան (էջ 72), քաղել է Ասողիկից նույն ՃԾԵ թիվը: Կիրակոս Գանձակեցի (էջ 36) հաղորդում է, որ Սմբատ Բյուրատյանի 13-րդ տարին Մուհամմադ առավ Սևան և 16-րդ տարին Կասմ կոտորեց Վասպուրականի իշխաններին: Սմբատ Բյուրատյան է Սմբատ Կյուրապաղատ, որդի Վարազ-Տիրոցի, որ իշխան եղավ, ըստ Ասողիկի (էջ 101) «ի ՃԽ թուականին»: Կիրակոս, այս հիմամբ, հաշվել է 140+13=153: Ասել է, թե Կիրակոս Գանձակեցի նույն Ասողիկից գիտե 153 թիվը: Միայն հանել է և արտահայտել այլ կերպ: Հետաքրքրական է, որ 153=704 թիվը համարում է Սևանի առումը, իսկ Վասպուրականի, իմա՛ Նախճվանի և Խրամի աղետը՝ Սմբատի 16-րդ, այսինքն՝ 156 թվին, երեք տարի ուշ: Արդյո՞ք Կաղանկատվացու «պաշարէ զՍևան ամս 3» խոսքերի թյուր մեկնությամբ, թե քաղած է անհայտ աղբյուրից, թերևս Վահան Գողթնեցու ավելի վավերական վկայաբանությունից: Այժմյան վկայաբանությունը իր բուն հեղինակի՝ Աբրահամ-Արտավազդի (21), հարազատ գործը ներկայացնելու երևույթը չունի (տե՛ս «Վկայաբանութիւն սրբոյն Վահանայ որդւոյ Խոսրովի Գողթան տեառն», «Սոփերք Հայկականք», ԺԳ, Վենետիկ, 1854, էջ 61-91):

*ապստամբության տարին Նախճվանի և Խրամի աղետի տարվան հետ: Իսկապես ապստամբությունը սկսվել էր Աբդ ալ-Մալիքի 16-րդ տարուց, որի համար ղրկված էր Մուհամմադ: Սևանի պաշարումը ցույց է տալիս, որ շարժումն ծայր էր տվել Սյունյաց իշխանության մեջ: Խաղաղությունը հազիվ վերահաստատված, նորեն ապստամբություն պայթեց 703 թվին և տվավ արյունահեղ ճակատներ Վարդանակերտ և Գուկանք: Մուհամմադ վերստին եկավ: Այս անգամ կայսերական օժանդակ գունդ եկավ հայերին օգնելու, բայց պարտվեց Վանանդ գավառի Դրաշպետ գյուղում: Այս միջամտությունը ավելի ևս գրգռեց արաբ իշխանությանը և հետևանքը եղավ Նախճվանի և Խրամի սոսկալի խարույկ 706 թվին:*

Զարմանալի է, որ Սևանի պաշարման մասին ոչինչ չի հայտնում Ղևոնդ, մինչդեռ դեպքը ծանոթ է Հովհաննես Կաթողիկոսին: Խարույկի զոհերի թիվը՝ 800 և 400 հոգի, ևս ծանոթ չէ Ղևոնդին: Կաղանկատվացին և Հովհաննես Կաթողիկոս հավանորեն օգտված են Վահան Գողթնեցու և Դավիթ Դվնեցու վկայաբանություններից՝ նախնական և առավել ընդարձակ խմբագրությամբ:

Նախճվանի և Խրամի եղեռնով չբավականացան արաբները: Մեծ գերություն հանեցին և ղրկեցին Դամասկոս: Կաղանկատվացին ԺԶ գլխի երկրորդ մասում հայտնում է, որ գերիների թվումն էր նաև Աղվանից իշխան Շերո և «*թէ հայ թիւն* ՃԾԳ *էր*», *այսինքն՝ 704-705 թիվը: Սակայն գիտենք, որ* Շերո ներկա էր Պարտավի ժողովին 704 թվին և Սամքորի ժողովին՝ 707 թվին: Շերոյի գերությունը պարզ է, որ չէր կարող առաջ լինել, քան 707 թիվը: Ուրեմն, ՃԾԳ թիվը անպայման սխալ է և չենք կարծում, որ որևէ հարաբերություն ունենա Ասողիկի 153 թվի հետ: Թերևս կարդալու է ՃԾԶ=707 թիվ, կամ ՃԾԵ=706-707 թիվ:

Երկու տարուց հետո Մրվան փորձեց մտնել Գիլան, բայց չկարեցավ: Մրվան նույնն է, ինչ որ մեզ ծանոթ Մուհամմադ որդի Մրվանի: Մրվան է անվանում նրան նաև Հովհաննես Կաթողիկոս, ինչպես հիշեցինք վերև: Նախընթաց տողերում մեր պատմագիրը շտապել էր հայտարարել Մուհամմադի մահը, ուստի և Գիլանի արշավանքը վերագրել է Մրվանին, թերևս անգիտանալով, որ իր աղբյուրի մեջ խոսքը նույն Մուհամմադի մասին է: Ղևոնդից հայտնի է, որ Մուհամմադ գնաց Խորասան և այնտեղից Ճենաց Ճենբակուր թագավորի դեմ և ամոթահար հետ դարձավ: Այս պարտության հիշողությունն է հավանորեն, որ արտացոլում է Գիլանի ձախորդ արշավանքը:

Խազրաց թագավորը 80 հազար զորքով եկավ և առավ Աղվանք ՃԾԸ թվին: Եթե Գիլանի արշավանքը տեղի ունեցավ նույն տարին, Շերոյի գերությունը կգա երկու տարի առաջ՝ ՃԾԶ=707 թիվ, ինչպես ենթադրեցինք:

Խազրաց արշավանքից երկու տարի անց, ուրեմն ՃԿ թվին, եկավ Աղվանք Աբդ ալ-Ազիզ և նստավ Պարտավ, 711-712 թվին: Սա Մուհամմադի հաջորդն էր, որ եկավ խաղաղացնելու երկիրը: Սմբատ Կյուրապաղատ, որ Վարդանակերտի կռվից հետո՝ 706 թվին ապաստանել էր Փոյթ քաղաքը, վերադարձավ հայրենիք Աբդ ալ-Ազիզի հրավերով, վեց տարի բացակայությունից հետո[1]*: Այս հաշվով Սմբատի վերադարձը կգա (706+6=) 712 թիվը, որով հաստատվում է Աբդ ալ-Ազիզի գալստյան տարին: Աբդ ալ-Ազիզ նույն տարին «անցավ զԿուր գետով յայն կողմ»: Պետք է կարծել, որ խազրաց դեմ գնաց և հաջողություն չունեցավ: Ուստի «զկնի Գ ամաց եկն Մսլիման, աւերեաց զԴարբանդ և եմուտ ի Խազիրս» (գլ. ԺԵ): Այլուստ գիտենք, որ արդարև Մսլիմ զորավարը գրավեց Դարբանդ, բայց պարտություն կրեց խազարաց խաքանից և կորագլուխ փախավ: Մսլիմ, Մսլիման, արաբական Մասլամա՝ Աբդ-ալ Մալիքի որդին է և եղբայր Սուլեյման խալիֆայի, և սրա երկրորդ տարին էր Մսլիմի արշավանքը խազարների դեմ*[2]*: Սուլեյման գահ բարձրացավ 715 թվի փետրվարի 23, ուրեմն երկրորդ տարին է 716 թվի փետ[րվարի] 23-717 թվի փետրվար: Կաղանկատվացու «զկնի Գ ամաց» պետք է ուղղել՝ «զկնի Դ ամաց», 712+4=716:*

Մսլիմ փախավ թողնելով իր բանակը Աղվանից իշխան Եռանշահիկ Վաչագան ի Պատրիկյանին, որ կարողացավ դեմ դնել խազարներին և հարկադրել նահանջել: Վաչագան ի Պատրիկյան, այսինքն՝ Պատրիկի որդի, երևում է հաջորդել էր Շերոյին, երբ սրան Դամասկոս գերեցին:

Այնուհետև մեր պատմագիրը հիշում է Հերթ աշխարհագրի գալը ՃՀԴ թվին, ձմեռը, այսինքն՝ 725-726 տարին: Հերթ եկավ արդարև Հեշմ (Հիշամ) խալիֆայի առաջին տարին[3]*: Հիշամ գահ բարձրացավ 724 թվին, հունվար 25՝ ուրեմն Հերթ եկավ 725 թվի ձմեռը:*

Հաջորդ ՃՀԵ թվին =726 տարին «Ամեթդուքն սպանին զՋևանշէր իշխան Աղվանից և մեռաւ Սմբատ, Հայոց իշխան» (22): «Ամեթդուք» առեղծվածային անունն ոչ այլ ինչ է, բայց եթե վրացի «մթեուլի» բառը, որ նշանակում է լեռնական: Պետք է կարդալ «Ամեթդու»-ք՝ հեղհեղված «ամթեուղ»-ք ձևից:

Ջևանշեր իշխանն արդյո՞ք Վաչագան Պատրիկյանի հաջորդն էր, թե Շաքիի իշխանը, թվում է մնում է անորոշ: Երեք տարի անց, ուրեմն 178 թվին, արաբ զորավար Ջառահ գնաց խազարների դեմ և հաջորդ տարին՝ 179 թվին, խազրաց տեր **Աստրղին** *սպանեց Ջառահին և ձերբակալվեց Չագիկ իշխանին: Հիշամի օրով, արդարև խազրաց զորավար Թարմաչ ասպատա-*

[1] Ղևոնդ, էջ 35:

[2] Անդ, էջ 40:

[3] Անդ, էջ 100:

*կեց Աղվանք և Ատրպատական՝ մինչև Արտավետ (այժմ Արդաբիլ) և արաբ Ջառահ դեմ ելավ, բայց պարտվեց և սպանվեց*[1]*: Արաբական տեղեկությամբ, այս դեպքը տեղի ունեցավ Հիջրի 112 թվին =730 թվի մարտ 26-731 թվի մարտ 15*[2]*, որին համապատասխանում է Հայկական թվականության 179 թիվը =730-731 թիվը: Խազրաց իշխանի Աստղին անունը անծանոթ է այլուստ և հավանորեն աղավաղված, արդյո՞ք չի նշանակում «Խազրաց տան որդին»: Թարմաչի արշավանքին խազրաց խաքանը մեռած էր և իր մայրն էր, որի հրամանով Թարմաչ արշավեց: Մոր անունն էր Փարսբիթ:*

Հավանական է, որ Չազիկ հաջորդել էր Ջևանշերին, և սա՝ Շերոյին: Հ[այկական] թ[վականության] 180 թվին =731-732, Մսլիման, այսինքն՝ նույն Մասլաման վերանորոգեց Դարբանդ և Աղվանից կաթողիկոսարանը չավերեց, այլ «դեռևս կայ ի նմա»: Ջառահից հետո եկավ Սեթ-Հարաշի, որ քշեց խազարներին և ապա եկավ Մսլիմը[3]:

## [Թ]

*«Յայսոսիկ ժամանակս», պատմում է Կաղանկատվացին ԺԷ գլխում, Ստեփանոս Սյունեցի վեճ ունեցավ երկարնակ Սմբատ ասպետի հետ, դըժգոհ թողեց նրան և հեռացավ Հռոմոց երկիր մի ուղղափառ միայնակյացի մոտ: Սմբատ հայտնեց կայսեր, որ Ստեփանոս հերձվածող է: Սակայն Ստեփանոս կայսերական զրատանը մի ոսկետուփ մատյան գտավ՝ ի նպաստ իր դավանության: Կայսրը ղրկեց նրան Հռոմ բերելու այնտեղից «երիս գիրս համաբարբառս այնմ գրոց», այսինքն՝ նման ոսկետուփ մատյանի, խոստանալով դարձնել իր երկիրը նույն դավանության: Ստեփանոս Հռոմից, սակայն, գրքերն առնելով չգնաց կայսեր մոտ, այլ վերադարձավ Դվին, ձեռնադրվեց եպիսկոպոս և մի տարուց հետո սպանվեց մի պիղծ կնոջից՝ Մոզան գավառում և թաղվեց Թանահատից վանքում: Նույն միայնակյացը տեսավ երազում Ստեփանոսին՝ «զօձն արեամբ լի», և Աստված պատժեց երկիրը սոսկալի շարժով, որ 40 օր տևեց և 10 հազար հոգի լափեց, «վասն այնորիկ Վայոց ձոր անուանեցաւ»:*

Այստեղ պատմական մեծ բան չկա: Հասարակ զրույց է, շինված այն վավերական կետի շուրջ, որ Ստեփանոս գնացել է Կ. *Պոլիս և գնացել է անկախ Սմբատ ասպետից: [Ստեփանոս] գործ է ունեցել ոչ թե կայսեր, այլ Գերման(ոս) պատրիարքի հետ, որից դավանաբանական Թուղթ է բերել Դվին և պատասխանը գրել ինքը: Երկու թղթերն էլ հասել են մեզ: Առաջինն է՝ «Թուղթ Հռոմոց ի Հայս, ձայնակից և համախոհ ժողովոյն Քաղկեդոնի և Տոմարի հայհոյութեան Լևոնի, զոր երեր աստուածապատիւ Տէր Ստեփաննոս Սիւնեաց եպիսկոպոս յառաջ քան զեպիսկոպոսութիւնն իւր, որ վասն* **Թարգմանութեան** *հասեալ ի թագաւորական քաղաքն ի Կոստանդնուպալիս. Իսկ նորին Յաղագս միաբանութեան հաւատոյ՝ ընդ ձեռն նորա գրեալ, և առաքեալ Հայրապետին կապարեայ կնքով, զոր ոչ ընկալեալ զնոցայն հայհոյութիւն մերոյ աշխարհիս, այլ արձանացեալ ի հաւատս Սուրբ Առաքելոցն, և ի խոստովանութիւն երիցս երանելոյ Սրբոյն Գրիգորի, ամենևին աներկիւղ ...*

*շարժ մնացեալք ոչ ետուն տեղի դրդուելով ի շաւղաց ուղղափառութեան»*[1]*: Սմբատի և ոչ էլ միայնակյացի մասին խոսք չկա: Ստեփանոս գնացել է լոկ թարգմանության համար: Բարեբախտաբար նրա թարգմանական գործերը հասել են մեզ. պահվել են նաև սրանց հիշատակարանները, որտեղից իմանում ենք, որ Ստեփանոս աշխատել է ոմն Դավիթ Հյուպատոս անունով պաշտոնյայի աջակցությամբ, որ կոչվում է Թագավորական սեղանի կինառ*[2]*:*

[Ստեփանոս] թարգմանած է՝

**Դիոնիսիոս Արիսպագացին**[3], *Արարչության 6220 տարին, 14 ինդիկտիոնի՝ Փիլիպպոս թագավորի երկրորդ տարին, 6220-5508=712: Փիլիպպոս է Վարդան Փիլիպպիկոս կայսրը, որ գահ նստեց 711 թվին, ուրեմն՝ երկրորդ տարին կլինի 712 թիվը: Ինդիկտիոնի 14 սխալ է, ուղղելի է 10:*

**Կյուրեղ Աղեքսանդրացու Պարապմանց գիրքը**՝ *6224 թվին, ինդիկտիոն 14, Անաստասիոս կայսեր* **երկրորդ** *տարին. 6224-5508=716, ինդիկտիոն 14: Անաստասիոս հաջորդեց Վարդանին 713 թվին և վարեց մինչև 715 թիվը, ստիպված լինելով զիջանել գահը Թեոդոսին, որի դեմ ծառացավ Լևոն [Իսավրացին] և գրավեց իշխանությունը՝ թագ կապելով 717 թվի մարտ 25-ին: Ինչպես երևում է, հիշատակարանը ևս չէ ընդունում Թեոդոսի թագավորությունը և Անաստասիոսին է համարում կայսր 716 թվին ևս: Այս դեպքում երկրորդ տարին պետք է կարդալ երրորդ, և սա համարել սխալ ընթերցում՝ Գ փոխարեն Դ-ի, որովհետև 716 թիվը է չորրորդ տարին Անաստասիոսի:*

[1] Ղևոնդ, էջ 102:

[2] J. Markwart, Osteuropäische und Ostasiatische Streifzüge, s. 11. Garrah E. Abdallah el Hanami.

[3] Ղևոնդ, էջ 102:

[1] «Գիրք թղթոց», էջ 358:

[2] Անտարակույս լատին **cena**, այսինքն՝ «սեղան» բառն է հունական վերջավորությամբ (հմմտ. **bucella, buccelarios**):

[3] Արիսպագացի, հավանորեն սխալ ընթերցում է, փոխանակ Արիոպագացի. **Areipagites** հունարեն ծագում է **Areos pagos**՝ «Արեսի բլուր» բառից և, գուցե, հայերեն ձևը հետևություն է և ոչ սխալ:

**Մյուս թարգմանությունն է Նյուսացու «Յաղագս բնութեան մարդոյ»** *(=Նեմեսիոսի)՝ 6227 թվին, ինդիկտիոն 14, «(ըստ հայումս թուի ՄԻԱ) և յառաջին ամի թագաւորութեան Լէոնի»: 6227-5508=719, Լևոնի առաջին տարին է 717 թիվը, 6227 թիվը=է ՋՌԻԷ, կարդալ՝ ՋՌԻԵ= 6225 թվին, ուղիղ 717 թիվը: Ինդիկտիոն պետք է լինի 15 (և ոչ 14): Հայոց թիվը՝ 221=է 772 թվին, օտար ձեռք է ավելացրել, շփոթելով Լևոն [III] Իսավրացուն (717-741) իր թոռան՝ Լևոն [IV] Խազարի (775-780) հետ:*

Ստեփանոս, ուրեմն, գտնվել է բյուզանդական մայրաքաղաքում 712-717 տարիները: Ե՞րբ է գնացել և ե՞րբ վերադարձել, մնում է անհայտ: Կարելի է կարծել, որ Ստեփանոս գնաց մայրաքաղաք նույն՝ 712 թվին, երբ Սմբատ [Բագրատունին] վերադարձավ Փոյթ քաղաքից, եթե միայն սորա երկարնակ լինելը և Ստեփանոսի հետ վիճաբանությունը որևէ պատմական հիմ ունենար: Սմբատ Փոյթից հեռանալիս, կողոպտեց քաղաքը և հափշտակեց տեղի եկեղեցիների գույքը: Կայսրը, վշտացած այս ապերախտ վարմունքի համար, կանչեց «զառաջնորդս եկեղեցեաց, զմետրապօլիտն և զարքեպիսկոպոսունս՝ և հրամայէր նոցա նզովս գրել ի մատենի, և ի կատարման տօնին Զատկաց հրամայէր ընթեռնուլ ի վերայ գործողաց ապիրատութեանն: ...Եւ ի նոյն տօնի կարգաւորեցին ամի ամի զնոյն նզովս ընթեռնուլ մինչև ցայսօր. որ և տիրեաց իսկ ի վերայ նոցա, և եղև պատճառ կորստեան նոցա»[1]:

Այս առասպելանման պատմությունը չէ արտոնում ամեն պարագային Սմբատ [Բագրատունուն] երկարնակ վկայական տալ, ուստի և նորա դավանաբանական ընդհարումը Ստեփանոսի հետ, ավելի քան երկբայելի է[2]:

Կաղանկատվացին չի հիշում Ստեփանոսի թարգմանական գործերը, թեև ծանոթ է երևում նրանց և նորա մի գրքից [հատված] է բերել ԺԸ գլխում, որին կդառնանք քիչ հետո: Նա չի հիշում նաև Ստեփանոսի մահվան տարին: Նրան հետաքրքրում են գլխավորապես մահվան հարակից տեսիլն ու հրաշագործությունը:

[1] Ղևոնդ, էջ 36:

[2] **J. Markwart**, Streifzüge, p. 449, կարծում է, որ Սմբատի և Ստեփանոսի վիճաբանությունը տեղի է ունեցել Մանազկերտի *ժողովին*՝ 726 թվին: Սակայն Ստեփանոս ներկա չէր ժողովին: Միքայել Ասորին բերում է ներկաների ցանկը, ուր կա Սողոմոն Մաքենյաց վանահոր անունը, բայց չկա Ստեփանոսինը: Ստեփանոս մայրաքաղաք էր 712-717 տարիներին, ուրեմն, ենթադրյալ վիճաբանությունից տարիներ առաջ: Հետևապես ճիշտ չէ, թե Ստեփանոս գնաց վիճաբանությունից հետո և այդ պատճառով: Ստեփանոսի ընդհարումը Սմբատ [Բագրատունու] հետ, հորինված է բացատրելու համար, թե ի՞նչպես և ի՞նչու Ստեփանոս գնաց Բյուզանդիա: Քանի որ պարզ է, որ նա գնացել էր գրական նպատակներով, ապա և վիճաբանությունը կորցնում է իր գոյության իրավունքը:



Կաղանկատվացու պատմածը Ստեփանոսի մասին անցել է **«Յայսմավուրք»**-*ի և լրացվել գրական գործերի հիշատակությամբ: Հայսմավուրքը չորս խմբագրությամբ է հայտնի՝ Տեր Իսրայելի (թերևս Եղիայի), 1247-1249 թիվ. Տեր Կիրակոսի, 1269 թիվ. Անավարզեցու, 1307 թիվ և Ծերենցի († 1425 թիվ): Բոլորի մեջ գտնվում է Ստեփանոսի վարքը, նույն խմբագրությամբ՝ հրոտից 17, հուլիսի 23-րդ օրը: Հաստատ չէ միայն, թե Տեր Իսրայելի ժամանակից է, թե Տեր Կիրակոսի: Ստեփանոսի մահվան առթիվ եղած երկրաշարժի մասին ասված է. «և երկիրն առհասարակ ճչեաց մարդկարար և ասէ վա՜յ. և կոչի մինչև ցայսօր Վայոց ձոր», որ մի փորձ է ավելի հաջող բացատրություն տալու անվան ծագման, մի փորձ, որ զուրկ է որևէ արժեքից:*

Հայսմավուրք հայտնում է, որ «Բաբգէն կաթողիկոս Հայոց ձեռնադրեաց զնա արքեպիսկոպոս մեծ աթոռոյն Սիւնեաց հրամանաւ Քուրդոյի»[1]: *Այս տեղեկությունը թյուրիմացության արդյունք է: Կաղանկատվացին ունի. «Եվ ի Բաբգենէ և ի Քուրդոյէ խնդրոյ լինի ձեռնադրեալ յեպիսկոպոսութիւն Սիւնեաց»: Իմաստն է՝ «Ի խնդրոյ Բաբգենի և Քուրդոյ (կամ Քուրդոյ-ի) լինի ձեռնադրեալ»: Սակայն Հայսմավուրքի հորինիչը հասկացել է այնպես, իբրև թե «ի Բաբգենէ և ի Քրդոյի»: Այստեղից և Բաբգենը նույնացրել է համանուն կաթողիկոսի հետ:*

Կիրակոս Գանձակեցին, որ իր տեղեկությունները Ստեփանոս Սյունեցու մասին պարտական է Կաղանկատվացուն, ուղիղ է ըմբռնել այս տեղիքը. «Եւ ձեռնադրէ զնա տէր Դաւիթ Սիւնեաց եպիսկոպոս ի խնդրոյ Քուրթոյի և Բաբգենի իշխանաց»[2]: *Իշխանի անունն Քրդո՞յ էր, թե Քուրդիկ (սեռական Քրդկոյ, սխալագիր Քուղքոյ) կամ Քուրդ, որոշ չէ: Ձեռնադրողը Բաբգենը չէ, այլ Դավիթ: Ո՞վ է այս անձը: Կաղանկատվացու գոնե այժմյան հրատարակության մեջ չկա Դավթի հիշատակությունը: Բայց իր բնագիրը թելադրում է ուշադիր ընթերցողին այդ անունը: Սյունեցու մասին խոսում է Կաղանկատվացին՝ Դարբանդի վերաշինությունը Հ[այոց] թ[վականության] 180 թվին=731 թվին, հիշելուց հետո: Այդ թվին հայրապետական աթոռի վերա էր Դավիթ [Ա] Արամոնեցին, որ հաջորդեց Հովհան Օձնեցուն 728 թվին: Կիրակոս ուրիշ աղբյուր չունի Ստեփանոս Սյունեցու վարքի համար, քան Կաղանկատվացին և չնչին տարբերությունը, որ նկատվում է, ավելի շուտով գրչական վրիպակներ են*[3]:

[1] Հրոտից 17, հուլիսի 23. Պարիսի ձեռագրից, որ վերջերս հրատարակվեց «Patrologia Orientalis», t. XXI, p. 767:

[2] **Կիրակոս Գանձակեցի**, էջ 41:

[3] Այսպես, «գնայ ի Հռովմ», փոխանակ՝ «ի Հոռոմս», «ոսկետիպ», փոխանակ՝ ոսկետուփ, «կազեան», փոխանակ՝ «Արկազան» և այլն:

Կիրակոս սկսել է գրել իր պատմությունը Հ[այկական] թ[վականության] 690 թվին =1241 թվին և նույն տարին է գրել Օձնեցու և Ստեփանոս Սյունեցու նայող էջերը: Նա ծանոթ չէ և չէր կարող լինել **«Ցայսմաւուրք»**-*ին, որի առաջին խմբագրությունը մի քանի տարով ուշ է, քան 1241 թիվը:*

Ստեփանոս Օրբելյան ավելի բան չգիտե Ստեփանոս Սյունեցու մասին, քան տալիս են մեզ ծանոթ աղբյուրները: Ինչ որ նոր է Օրբելյանի մոտ, գրեթե բոլորը, սակավ բացառությամբ, երկբայելի են: Ասում է, որ Սյունեցին Դվինի ավագերեցի որդին էր և աշակերտել էր ոչ միայն Մովսես Սյունեցուն, որ հայտնի է Սյունեցու թարգմանությանց հիշատակարանից, այլ Մաքենոցաց հարանց հայր Սողոմոնին, կամ ինչպես ինքն է կոչում՝ Սաղոմի, նա, որ հորինեց «զՏօնականն ի ՃԾ թ[ուին] Հ[այոց]»: Հայտնում է նաև, որ Ստեփանոս սպանվեց «ամ մի, զոր ոմանք ութ ամ ասին» եպիսկոպոս ձեռնադրվելուց հետո ՃՁԴ թվին «ի հրոտից ի ԺԵ և յուլիսի ԻԱ, յաւուր յիշատակի սրբուհւոյն Մարգարտայ և Սիմէոնի աղուաշին»[1]:

Վերջերս հայտնի եղավ, որ Օրբելյան այս տեղեկությունները քաղել է Մխիթար Այրիվանեցու «Ստորագրութիւն պատմութեան Ստեփանոսի Սիւնեաց» գրությունից[2]: *Տոնականը հորինված է ոչ թե 150=701 թվին, այլ Հ[այկական] թ[վականության] 196 թվին=747 թվին, ինչպես հայտնի է Աշո մեծ Տոնականի հիշատակարանից*[3]: *Օրբելյան սխալ է հասկացել Մխիթար Այրիվանեցու խոսքը, թե Ստեփանոս Սյունեցի «առաւ ի սուրբ ուխտն Մաքենոց յաշակերտութիւն մեծ հաւրն Սողոմովնի, որ կարգեալ էր զՏաւնականն և յետոյ աշակերտացաւ տեառն Մովսեսի Սիւնեցւոյ ի ՃԾ թուին»*[4]: *Հ[այկական] թ[վականության] 150 թիվը=701 թվին, Տոնականի հորինման տարին չէ, այլ Սյունեցու աշակերտության: Այրիվանեցու հիմնական աղբյուրն նույն Կաղանկատվացին է: Սա Ստեփանոսի ժամանակը որոշում է «յայսմիկ ժամանակս» ընդհանուր խոսքով, որ վերաբերում է նախընթաց գլխի մեջ պատմած անցքերի շրջանին, Հ[այկական] թ[վականության] 146-180=797-831 թվականներին: Մխիթար Այրիվանեցի Ստեփանոսի երևումը դնում է Հայոց 180 թվին, երբ կաթողիկոս էր Դավիթ Արամոնեցի, կայսր էր*

[1] **Ստեփանոս Օրբելյան**, էջ 186:

[2] **Գարեգին արքեպիսկոպոս Հովսեփյան**, Մխիթար Այրիվանեցի. նորագյուտ արձանագրություն և երկեր, Երուսաղեմ, 1931: Նկատենք, որ էջ 18՝ «ստոյգ ուզի» աղավաղ բառը կարդալու է «ստողոզին», համաձայն Ստեփանոս Օրբելյանի, հատ. Ա, էջ 182 (այսուհետև՝ Մխիթար Այրիվանեցի):

[3] **Բ. Սարգիսյան**, Մայր ցուցակ հայերեն ձեռագրաց մատենադարանին Մխիթարյանց ի Վենետիկ, հատ. Բ, Վենետիկ, 1924, էջ 437:

[4] **Մխիթար Այրիվանեցի**, էջ 17:



*Լևոն, պատրիարք՝ Փլաբիանոս, ամիրմոմին<ին> Սլեման և ապա՝ Ծալահեշմ*[1]*, և Բաքան պարսիկ՝ ավերիչ Գեղարքունո*[2]*: Փլաբիանոս պատրիարք չկար այդ ժամանակ: Այրիվանեցի կարդացել է Ղևոնդի մոտ «Փլաբիոն Լևոն կայսր»*[3] *և կարծել է, որ առաջին բառը պատրիարքի անունն է: Բաքանի հիշատակումը մեծ անաքրոնիզմ է, սա մի դար ուշ էր և Գեղարքունիք ավերեց Հ[այկական] թ[վականության] 276 թվին =827 թիվ*[4]:

Ինչ որ Մխիթար Այրիվանեցին գիտե Սյունեցու մասին Կաղանկատվացուց դուրս, վերաբերում են գլխավորապես նրա գրական գործունեության, Գրիգոր Գռզիկ ընկերոջ և Սահակադուխտ քրոջ: Նրանից է հայտնի նաև, որ Սյունեցին աշակերտել է Մովսես Սյունեցուն 150 թվին =701 թվին և մեռել է 184 թվին =735 թվին, հրոտից ամսի 17-ին[5]: *Որտե՞ղից է առել Այրիվանեցին այս թվերը, դժվար է ստուգել: Սմբատ [Բագրատունու] հետ Ստեփանոս Սյունեցին հակաճառեց «տիովք դեռևս մանուկ», դրա համար պարտվեց և գնաց կատարելագործելու իր կրթությունը Հոռոմոց աշխարհում: Եվ որովհետև 712 թվին արդեն Կ. Պոլիս էր, ուրեմն ավելի քան հավանական է, որ իրոք 702 թվին աշակերտության էր Մովսես Սյունեցու մոտ: Մահվան տարին հավաստի կարելի է համարել, քանի մի հակասական կետեր հարթելուց հետո: Երբ սպանվեց «զմի ամ կալեալ զեպիսկոպոսութիւն», նշանակում է եպիսկոպոս եղավ 734 թվին: Սակայն [Կ. Պոլսի] Գերմանոս [պատրիարքի] Թղթի պատասխան «գրեաց տէր Ստեփանոս Սյունեաց* **եպիսկոպոս»**: *Գերմանոս գահընկեց եղավ 730 թվի հունվարի 7-ին: Պատասխանը գրված պիտի լինի այս թվից առաջ և այդ ժամանակ գրողն արդեն եպիսկոպոս էր, ինչ որ*

[1] Ծալահեշմ, կարդա՛ Ծամահեշմ (=**Կիրակոս Գանձակեցի**՝ «շահի Հէշմայ», էջ 37), **Ղևոնդ**, էջ 100՝ «Ծամ որ է Հեշմ» (=**Թովմա Արծրունի**, Պատմութիւն Տանն Արծրունեաց, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 105):

[2] **Մխիթար Այրիվանեցի**, էջ 17:

[3] **Ղևոնդ**, էջ 45:

[4] Երևի, Այրիվանեցու այս սխալ ազդեցությամբ է, որ Ստեփանոս Օրբելյան Բաքանի ապստամբությունը պատմում է 176 թվի տակ (տե՛ս **Ստեփանոս Օրբելյան**, հատ. Ա, էջ 201):

[5] Այրիվանեցու տեղեկությամբ, Սյունեցին մեռավ «ի վերացման Եղիայի Մարգարէի, ի հրոտից ԺԷ և յուլիս ԻԱ, յաւուր յիշատակի սրբուհւոյ Մարգարտայ և Սիմէոնի աղուաշին» (**Գ. Հովսեփյան**, էջ 22): Հայսմավուրքի մեջ Սյունեցու մահվան օրն է ԺԷ հրոտից, հուլիսի 23, Փոկաս եպիսկոպոսի օրը: Կարելի էր կարծել, որ Այրիվանեցու ԺԷ ստույգ է, սակայն հուլիսի 21 և Օրբելյանի ԺԵ ցույց են տալիս, որ ԺԷ սխալագրություն է՝ փոխանակ ԺԵ, Սիմեոն աղվաշի օրը: Եղիայի տոնը հրոտից 14 և հուլիսի 20 է և ոչ հրոտից 15: Այրիվանեցին օգտվել է Հայսմավուրքից: Հրոտից ԺԷ Ստեփանոսի մահվան տարին 735 թիվը հավասար է շարժական տոմարով, մայիսի 8-ին: Հրոտից ԺԷ =հուլիսի 23, ըստ հաստատուն տոմարի է:

*հերքում է 734 թվին եպիսկոպոս ձեռնադրվելու տեղեկությունը: Թերևս, Սյունեցին հետին հաշվով է եպիսկոպոս կոչված, ինչպես Գերմանոս պատրիարքի Թղթի մասին ասված է՝ «երեր Ստեփանոս Սիւնեաց եպիսկոպոս», ավելացնելով՝ «յառաջ քան եպիսկոպոսութիւնն իւր»: Այս ավելածո նկատողությունը զույգ բաց է թողված պատասխան-Թղթի վերնագրի մեջ:*

Հիմնավոր չէ թվում նաև մյուս կարծիքը, թե Ստեփանոս Սյունեցին ութ տարի էր եպիսկոպոս, երբ մեռավ: Այն պարագան, որ Գերմանոս [պատրիարքի] պատասխանը գրել է Սյունեցին և ոչ ժամանակակից մեծ եկեղեցական, կաթողիկոս Հովհան Օձնեցին, տեղիք է տվել հեներին ենթադրելու, որ Օձնեցին մեռած էր արդեն, երբ Ստեփանոս վերադարձավ, և հաջորդ չէր ընտրված: Ասել է, թե վերադարձավ 727 թվին և եպիսկոպոս ձեռնադրվեց: Ուրեմն, եպիսկոպոսական աթոռի վրա մնաց ութ տարի՝ 727-735 թվերին: Մեր կարծիքով, Սյունեցու վերադարձը առաջ էր, քան 726 թիվը: Այս թվին Լևոն [III Իսավրացի] կայսրը հրատարակեց իր հրամանը պատկերապաշտության դեմ, պաշտոնական կերպարանք տալով իր պատկերամարտ քաղաքականության: Գերմանոս պատրիարքը ընդդիմացավ և պայքար սկսվեց կայսեր և իր մեջ, որ վերջացավ իր գահընկեցությամբ: Դրությունն այնպես չէր, որ Գերմանոս մտածեր հայերի մոլորության մասին: Եվ եթե մտածած լիներ 726-729 թվերի միջոցին, կհիշեր իր Թղթի մեջ անպատճառ նաև պատկերների մասին, որպիսի հիշատակության հետքն անգամ չկա Թղթի մեջ: Այս կետը խիստ կարևոր է, թեև մի խոչընդոտ ունի: Եթե Սյունեցին 726 թվից առաջ արդեն Հայաստան էր, ինչո՞ւ չկա իր անունը Մանազկերտի ժողովին մասնակցող հայրերի մեջ: Արդյո՞ք չկա: Նորեն քննենք Միքայել Ասորու մոտ պահված ցանկը, ուր հայ անունները այնպես են խաթարված, որ դըժվար է վերականգնել ստույգ ընթերցումը: Մեզ թվում է, որ ցանկի իններորդ անունը՝ Nwzwn Asibw թաքցնում է թերևս Ստեփանոս Սյունեցու անունը: Սյունեցին չէր կարող տասնյակ տարիներ բացակայել, մնալ քաղկեդոնականների մայրաքաղաքում և ներկայանալ ջատագով հակաքաղկեդոնականության: Հավանական է, որ նա 720 թվի մոտերքն արդեն հայրենիք էր:

Մխիթար Այրիվանեցին պահել է այն պապի անունն, որի մոտ գնաց Սյունեցին կայսեր պատվերով՝ ուղղափառ գրքեր բերելու. «երբ ի Հռոմ հրովարտակաւք հրամանաց մերոց առ պապն Ագաքոս և բե՛ր ինձ երիս գիրս»[1]: *Ագաքոս, անտարակույս ուղղելու է Ագաթոս կամ Ագաթոն: Այն հռչակավոր պապն է Ագաթոն, որ դեմ ելավ միակամության՝ ընդդեմ Կոստանդին IV Պոգոնատ կայսեր (668-685): Նա մեռավ 681 թվին, օգոստոսին: Նրա շնորհիվ էր, որ գումարվեց 680-681 թվի ժողովը, որը դատապարտեց մի կամքի և մի ներգործության վարդապետությունը: Մխիթար Այրիվանեցի շատ լավ աղբյուր է ունեցել իր ձեռքին. հավանաբար նույն Ստեփանոս Սյունեցու գործերին կցած տեղեկություններից է քաղել Ագաթոնի անունը: Այս միակ անունը բավ է, որ Հռոմ գնալու առասպելական պատմությունը գտնե իր պատմական աստառը: Սյունեցին գնաց Բյուզանդիա Վարդան Փիլիպպիկ կայսրի օրով, ոչ ուշ, քան իր առաջին տարին: Վարդանը հայ էր և ջերմ պաշտպան միակամ վարդապետության: Անտարակույս, սա է այն կայսրը, որ համակրում է Սյունեցու դավանությանը, և որ առաջարկում է Հռոմից նույնիմաստ գրքեր բերել: Այս ուրիշ բան չէ նշանակում, քան որ միակամության թշնամին նստած էր Հռովմ Ագաթոնի օրերից և եթե սրա դիմադրությունը չլիներ, Վարդան կայսրը միակամությունը կդարձներ իր աշխարհի դավանանքը: Հիշենք, որ Գերմանոս պատրիարքը՝ ինքը սկզբում համակիր էր Վարդանին, այսինքն՝ հետևորդ էր միակամության, հետո փոխեց իր գույնը: Սյունեցին ծանոթացավ [պատրիարքի] հետ, երբ սա միակամության գետնի վրա էր: Երբ Գերմանոս փոխեց իր համոզումը, փորձեց համոզել նաև Ստեփանոս Սյունեցուն և նրա միջոցով նաև Հայոց եկեղեցին: Ահա և Գերմանոսի Թղթի ծագումը:*

Ագաթոն պապի հիշատակությունը Ստեփանոս Սյունեցու գրքերի մեջ զարմանալի պիտի չերևա: Բավական է հիշել, որ «ի գրենւոյն Ստեփաննոսի» Կաղանկատվացին գտել է Դիոն քաղաքի ավերման և Հռոմի շինության պատմությունը: ԺԸ գլխի մեջ Կաղանկատվացին պատմում է, որ Աբդոն դատավորի ժամանակ Դիոն, այսինքն՝ Տրոյա քաղաքը, սասանվեց: Դիոն է Իլիոն, Տրոյա կամ Տրովա քաղաքի հնագույն անունը և գտնվում է ոչ թե Փոքր Ասիայում, այլ «Աքայեցւոց երկրին էր հուպ յաշխարհն Պեղոպանէս յարևմուտս Մակեդոնացւոց, յերկրին Եւրոպիոյ» (Գ, գլ. ԺԸ): Պարիսի դերում Թեսաղոնիկե քաղաքից մի երիտասարդ է և Մենելաոսի կնոջ՝ «դուստր առն միոյ մեծի»: Աղջկան ծնողները պահանջում են իրենց զավակին և մերժման վերա սկսվում է պատերազմ, որը տևում է 15 տարի (ուրեմն՝ փոխան Տրոյայի 10 տարվան): Իլիոնի դեմ կռվողները շինում են երկու հազար փայտե ձի և...*, *նրանց փորում թաքցնում 40 հազար մարդ և իբրև թե նվեր Իլիոնի աստվածներին՝ մտցնում քաղաք: Պահված զինվորները հարձակվում են բնակիչների վերա, այր մարդկանց կոտորում և կանանց գերում: Այնուհետև ճանապարհ են ընկնում դեպի հայրենիք: Սաստիկ հողմերը ձգում են նրանց Իտալիա: Էնեասի անունը չկա, բայց խոսքը նրա մասին է: Շատ ժամանակ է անցնում և նրանց առաջնորդ Հռոմուլոս շինում է Հռոմ քաղաքը՝ Իլիոնի առումից 441 տարի հետո: Երբ Փիլիպպոս թագավորեց <2>44 թվին, հազար*

[1] Մխիթար Այրիվանեցի, էջ 19:

* Մի բառ անընթեռնելի է (Պ. Հ.):

*տարին լրացավ Հռովմի շինության: Կոստանդիանոս [Մեծ] փոխեց աթոռը Հռոմից Բյուզանդիա, որ կոչվում է Կոստանդնուպոլիս:*

Մակեդոնիայից արևմուտք, Էպիրոսում, Կորփու կղզու հանդեպ հնում կար մի քաղաք, որ արդարև կոչվում էր Իլիոն կամ Տրովա, որ գրույցիս մեջ շփոթված է հռչակավոր Իլիոնի՝ Պրիամոսի քաղաքի հետ: Արդոն (և ոչ Ապդան) դատավորը հայտնի է Ս.Գ*րքից*[1]: *Ասողիկ ևս գիտե Եվսեբիոսի Քրոնիկոնից, որ Արդոնի օրով «Իղիոն քաղաքն առաւ», միայն անունը սխալմամբ տպված է Ղարդոն*[2]: *Ասողիկ, հետևելով Եվսեբիոսին, համարում է Արդոն դատավորից մինչև Սողոմոնյան տաճարի շինությունը 140 տարի, իսկ տաճարի շինությունից մինչև Քրիստոսի խաչելությունը՝ 1012 տարի: Ուրեմն, Արդոն ապրում էր երկոտասաներորդ դարու կեսերին, ինչ-որ համաձայն է Լակեդեմոնական հաշվին, որով Տրոյական պատերազմը տեղի ունեցավ 1183 թվին, իսկ ըստ աթենացիների՝ 1209 թվին*[3]:

Հռովմ հիմնվեց 753 թվին և Հռոմի Փիլիպպոս կայսեր օրով (244-249) լրացավ հազարամյակը՝ 247 թվին: Պատմագրի հաշիվը միանգամայն ճիշտ է, միայն պետք է տպագրի 44 ամն կարդալ 244, ՄԽԴ:

## [Ծ]

*ԾԹ* գլխի վերնագիրն է «Որ ինչ յերկերիւր թուականութենէ Հայոց և այսր գործք լեալ ի սահմանս Աղվանից»: Կարելի էր կարծել, թե պատմագրի գործը վերջացած է և այստեղից սկսած մի Անանուն շարունակող է պատմողը: Սակայն, տեսանք, որ երրորդ գրքի առաջին գլխում արաբ խալիփաների հաջորդությունը հասցրած է մինչև Հարուն Բ ալ-Վաթիկ (842-847): Հետևապես *ԾԹ* գլուխը, ուր պիտի ճառե Հ[այկական] թ[վականության] 200 թվից =751 թվից հետո անցած դեպքերի մասին, պատկանում է նույն հեղինակին: Վերնագիրը չի վերաբերում միայն *ԾԹ* գլխին, այլ և հետևյալ Ի, ԻԱ գլուխներին, թեև սրանք իրենց հատուկ վերնագիրներն ունեն: Մեր պատմագրի սովորությունն է տալ ընդհանուր վերնագիր մի շարք գլուխների և սրանցից յուրաքանչյուրին որոշել զատզատ վերնագիրներով, ինչպես առիթ ունեցանք տեսնելու վերև:

«Ընդ ժամանակս ընդ այնոսիկ», ուրեմն 750 թվի մոտերքը, զորացավ արաբական պետությունը, ընդլայնեց իր սահմանները: Գրավեցին Պարտավ քաղաքը և դարձրին իշխանության կենտրոն, ինչպես երբեմն Դամասկոս: Պատմագրի խուլ ակնարկները շոշափում են Աբբասյան հարստության երևալը 750 թվին և նրա դաժան քաղաքականությունը, մանավանդ Աբու Ջաֆար ալ-Մանսուրի (754-775) երկարատև իշխանության ընթացքին: Հարուն ալ-Ռաշիդ նշանակեց Հայաստանի և հարևան երկրների պետ իր եղբորը՝ Ովբեդլա, որ է Ուբայիդալլահ, 788 թվին և սա եկավ Պարտավ և նշանակեց փոխանորդ ոմն Սուլեյման չարաբարո անձն, որի մոտ եկավ Հայոց Եսայի կաթողիկոսը՝ խնդրելու հարկերի թեթևություն: Խալիփայի եղբոր Պարտավ գալն է առիթ տվել, անտարակույս, մեր պատմագրին ասել «նստուցին ի Պարտաւ կալ արքունեացն»:

Եսայի Ա Եղիպատրուշեցի կաթողիկոս Պարտավում իջավ Վարդանուհի տիկնոջ մոտ, որ Վարազը իշխանի կինն էր և որի ամուսնությունը չհասության *աղագավ նզովքի տակ էր: Եսայի կաթողիկոս ներեց տիկնոջ: Այս խնդրի առթիվ է, որ Կաղանկատվացին հիշում է Եսայի կաթողիկոսին: Քաղաքական կացությունն ավելի քիչ է հետաքրքրում նրան, քան եկեղեցական խնդիրները և հրաշագործությունները:*

Պատմագիրն անցնում է Մամուն խալիփայի (813-833) օրով կատարված անցքերին՝ սկսված Հ[այկական] թ[վականության] 270 թվից =821 թվին: Չէ հիշում Ամինի և Մամունի գահակալական կռիվները, որոնք արձագանք տվին և Պարտավ, և ստիպեցին Աղվանից Ներսիկ և Արդռահման իշխաններին որոշ դիրք բռնել:

821 թվին Պարտավի արաբները ասպատակեցին Ամարաս գավառը և ավարով ու գերիներով ամրացան Մեծիրանցի սահմանի Շիկաքար տեղում: Սահլ Սմբատյան Եռանշահիկ իր եղբայրների հետ հարձակվեց ավազակների վերա և ազատեց գերիներին: Դժբախտաբար որոշ չէ, թե Սահլ Սմբատյան Ամարասի իշխանն էր, թե Մեծիրանց գավառի. թերևս իր իշխանության մեջ էին և՛ մեկը և՛ մյուսը:

Նույն 821 թվին Սևադա արաբ իշխան մտավ Սյունիք և ամրացավ Շաղատ բերդում: Վասակ Սյունի իշխանը կանչեց Բաբանին և նրա օգնությամբ քշեց «աւառանշան» ասպատակողին: Սևադան հայտնի է մյուս մեր մատենագիրներից: Մանազկերտ հաստատված կայսիկ արաբական ցեղի պետն էր, որդի Աբդլմելիքի որդվո Ջահափի: Ի տրիտուր օգնության, Վասակ Սյունի ստիպված էր տալ իր դուստրը Բաբանին կնության: Ինքը մեռավ նույն տարին: Ո՞վ էր այս Վասակը, արդյո՞ք 768 թվի Պարտավի ժողո-

[1] Դատ., ԺԲ, 13, 15, հմմտ. Ա Մնաց., Ը, 25; Թ, 36:

[2] Ասողիկ, Ա, գլ. Ա, էջ 9: Զարմանալի է հայր Կ. Շահնազարյանցի նկատողությունը, թե «Արդոն» դատավոր ոչ ոք հիշատակի առ նախնի մատենագիրս (տե՛ս Մովսես Կաղանկատվացու ծանոթագրությունները, Գ, էջ 111):

[3] E. Curtius, Histoire Greque, t. I, Berlin, 1857, p. 179.

վին ներկա Ատրներսեհ Սյունյաց իշխանի որդին էր: Ամեն պարագային Վասակով սկսվում է Սյունյաց մի նոր և փայլուն իշխանական տուն:

Գարդմանի իշխան Վարազ-Տրդատ Ստեփանոսյան սպանվեց Ներսեհ Փիլիպպյանի կողմեն: Ներսեհն թվում է, թե Բաղքի իշխաններից էր: Սպանության հետևանքով է, որ թերևս Բաղաց գավառը[1] *չընդունեց Բաբանի լուծը: Բաբան ավերեց Բաղք և մտավ Գեղարքունիք և այրեց Մաքենոցաց վանքը Հայոց 276 թվին =827 թվին: Բաբան հաղթեց արաբ կուսակալներին՝ Տավուսին 278=829 թվին և Աբրահիմ որդի Ղեթա՝ 830 թվին: Առաջինը հայտնի է արաբական աղբյուրներից՝ Մուհամմադ իբն Հումայիդ ալ-Տուսի*[2]*, երկրորդը մնում է դեռ անծանոթ:*

Ստեփանոս Աբլասադ, որ Բաբանի օգնությամբ հարվածել էր Բաղակացիներին, ընկավ Դավոն և Շապուհ իշխանների թրից: Մահապարտները ըմբոստացան Բաբանի դեմ և ամրացան Գորոզու բերդում: Աբլասադի մերձավորները սպանեցին Դավոնին և Շապուհին և ինչպես երևում է ո՛չ առանց աջակցության, եթե ոչ ձեռքով Եսայի Աբումուսեի, որ Աբլասադի քեռորդին էր: Բաղակացի՝ կարծեմ, նույնը պիտի լինի ինչ որ Բաղացի: Աբումուսեն Բայլականի, այսինքն՝ Փայտակարանի, իշխանն էր: Թշնամությունն, ուրեմն, Բաղաց գավառի և Բայլականի իշխանների մեջ է: Բաբան եկավ Ամարաս, թողեց իր զորավար Ռոստոմին խաղաղացնելու, իսկ ինքը հեռացավ Ատրպատական: Ռոստոմ «ել տալ պատերազմ ընդ ամրացելոցն ի բերդին», հավանորեն Գորոզու, ուր սպանված իշխանների մարդիկ շարունակում էին դիմադրել Բաբանին և իր կողմնակից Աբումուսին: Պաշարվածները «զխաչս և սրբոց նշխարս ընդդէմ բերեալ» հետ մղեցին Ռոստոմի գունդը: Այս առթիվ պատմագիրը հիշում է, որ Ամարասի եպիսկոպոս Սերոբը կայսրից խնդրել է «մասն ի նշխարաց սրբոց» և ստացել, կարծում են, որ դա Ս. Լուսավորչի աջ բազուկն է[3]:

Մամունի թագավորության վերջին գործն է իր իսկ արշավանքը ընդդեմ Բյուզանդիայի Հայոց 280 թվին =831 թիվ: Պատմագիրը չափազանցնում է այս արշավանքի արժեքը, կարծելով որ Մամուն նպատակ ուներ պաշարել Կ. Պոլիս և իբրև թե «կենեղուտ խաչի զօրութեամբ» պարտվեց և իր ուժերը ծովակուլ եղան, ինքն էլ մեռավ: Մամունի արշավանքը, ընդհակառակը, հաջող էր: Նա մտավ Կիլիկիա, հասավ մինչև Պոդոնտա (այժմ՝ Բոզանտի) և

1 **Ստեփանոս Օրբելյանը**, էջ 202՝ կարդում է «Բաղասականայ»:

2 J. **Markwart**, Osteuropäische und Ostasiatische Streifzüge, p.459.

3 Գ գրքի ԺԹ գլխի վերջին այս հատվածը Մկրտիչ Էմինը դուրս է թողել իր հրատարակությունից (Մոսկվա, 1860,էջ 264. հմմտ. նաև Ղուկասյան հրատարակությունը, Թիֆլիս, 1912, էջ 377):



հանկարծամահ եղավ 833 թվի օգոստոսին: Կաղանկատվացին Մամունի արշավանքի մասին խոսում է Ի գլխում, որի վերնագիրն է՝ «Երթն Մամունայ՝ իշխանին Տաճկաց, ի Հոռոմս և ի նմին սատակումն. ընդ նմին **զրուցատրութիւնք պէսպէս կարճառօտ բանիւք**»: *Այդ զրուցատրությունների մեջ են մտնում նախ ինչ որ կատարվել է Աբրահամ Աբուսահակ Մութասիմի օրով (833-842): Հայոց 283 թվին =834 թվին եկավ ամիր մումինի հրամանով, այսինքն՝ Մութասիմի, ոմն ամիրա Բադոսի, որ է Հասան իբն Ալի ալ-Բադղիսի, հայտնի ալ-Մամունի անունով*[1]*: Բադոսի կարդալու է Բադսդի կամ Բադղսի, որ երևան է գալիս Ասողիկի մոտ Մամունիկ կոչումով*[2]*: Բադղսի մտավ Նախճըվան, ուր նահատակել տվեց Հռհան մանուկ մի, Ձատկի մոտերքը՝ 835 թվի ապրիլի 18-ին: Նրա նշխարները «լուսաճաճանչ փայլմամբ ահացուցանէր զթշնամիսն», ուստի և անհետացրին գիշեր ժամանակ: Արաբ կուսակալ հիշվում է շնորհիվ Հռհանի նշխարների հրաշագործություն, որ այնքան մոտ է մեր պատմագրի սրտին:*

Այստեղ տպագրության մեջ պակաս կա: «Պսակողին իւրում միայն մնայ յայտնութեան» բառերից հետո Էջմիածնի ձեռագիրն ունի հետևյալ կարևոր տեղեկությունները, որ պետք է ի նկատի ունենալ բնագրի ապագա հրատարակությանց ժամանակ:

«Իսկ ի միւսում ամին զավուրս Խ եղելոյ սաստիկ անձրևաց, լցաւ ծայրալիր հոսմամբ գետն Կուր, մինչև ԺԵ, Երասխ արտաքս ծաւանալ ընդ եղեալն իւր սահման. և անդուստ յաշխարհական ծովէն Կասբից ելանէ վիշապձուկն մի անարի նման լերին, և զորսորդաց ձկունս յորովայն իւր ամայէր և սնավաստակ մնալ որսորդացն լինէր: Ատ իմն հնարեալ նաւորդացն, գումարեալք ի մի վայր՝ յօշէն զնա ի տանոյն կողմանէ սրով, մինչև սատակել նմա, և Կուրայ տանել զնա, ուստի եկն: Եւ ապա դիւրաւ լինէր որսորդացըն զիւտ ձկանցն, զի իբրև ի կապարանէ արձակեալ գային:

Ի նոյն ամի տէր Դաւիթ Հայոց կաթողիկոս վախճանեցաւ, և անէծ զյափշտակողսն ի սրբոյն Գրիգորի հողոյն, որք էին այսոքիկ: Աբդլմելք Զահաքայ որդի սրով սատակիւր, և Աբդլա Սուրհարճոյ որդի, և Աբուջափր Արածացի, ածան ի Պարտաւ և կենդան<ւ>ոյն տիկ հանին զերկոսեանն:

Եւ զիտութիւն իմն զայս ուսաք զԱմիրմումնայ դարաքասին, թէ յաջակողմն դռանն նստի շուրտայաց աւագն, որ է մեծ քան զայլսն դահճապե-

1 **Ասողիկ**, էջ 106, «Մամունիկ ամիրայ»:

2 J. **Markwart**, Streifzüge, p. 462, սխալվել է՝ աշխատելով նույնացնել Բադսդի Սուլեյման ալ-Ազդի հետ, բայց իր գործի հայերեն թարգմանության մեջ՝ («Բագրատունյաց ծագումը», էջ 54), ուղղել է իր սխալը:

տաց աւագ: Եւ ձախոյ կողմանն դատաւորն և զանձու ամիրայն, որք առնէին իրաւունս և զտիեզերաց հարկաց վճարմունս: Եւ յինն ժամ աւուրն մտանեն առաջի, և զվաղորդայն աւուրն հրաման առնուն և զմարդկան մատակարարեն զօգտակարսն:

Իսկ յերկու ՃՁՁ թուոյն Հայոց ԲԺՌ հեծելոց հանկարծահաս ելեալ ի Բախտաատա արշաւէին երկիրս Աղուանից: Անդ ակն ի վերայ հարեալ Սահլի Սմբատեան, որ յարքայից Զառմիհրական տոհմէն էր, գործակից իւր կալեալ զմեծ նահատակն Գէորքիոս, դիմէ ի վերայ որպէս արծուի խոյացեալ ի տկար թռչունս, այսր անդր ցրուեալ տապաստ դաշտացն արկեալ վանէր:

Եւ ի նոյն ամի նոյն տէրն Սահլի Սմբատեան, ձերբակալ արարեալ զապստամբն Բաբան զմարդախողխող, աշխարհաւեր, արիւնարբու գազանըն և ետ ի ձեռս Ամիրմումնայ, և ընդ վաստակոցն առնու յարքունեացն վարձս բարիս, զի առնու իշխանութիւն ի վերայ Հայոց, Վրաց և Աղուանից տիրել իշխանութեամբ ամենեցուն արքայաբար:

Այլ յԲՃՁԷ թուականին Հայոց Աբրահամ Ամիրմումնի գնա զօրու մեծաւ յաշխարհն Հոռմոց և էառ զմեծ քաղաքն զԵմորիայ սրով և գերութեամբ: Եւ անտի դարձաւ ի բնակութիւն իւր: Սա է Աբուսահակն:

Ի սոյն ամի տէրանց տէրն Յովաննէս, որ Հայոց, Վրաց և Աղուանից եղև տէր, խնդրեաց յարքունեացն կրկին անգամ զԲուլխար, Խոյտա, Փատգոս, երիցս այսոցիկ աշխարհաց:

Եւ<յ>այնմ ամի ել մարախ ի Խազրաց կուսէ, զարմանալի մեծ, քան զճնճղուկ և եկեր զմասն ինչ Աղուանից աշխարհիս:

Եւ յետ երկուց ամաց դժնդակ եղեալ կարի ձմեռն կիզեալ հասոյց մահ անասնոց և հովուաց բազմաց:

Եւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ եկին հասին **Քաղաքականացիքն**[1] *և արարին վնաս Սիսանձորւոյ և Ամարաս գաւառաց: Եւ ել Եսայի անուանեալն Աբումուսէ ի վերայ նոցա և կոտորեաց զնոսա»*[2] (23):

Սկզբնագրի շարունակությունն է տպագրի «Յետ այսորիկ անցանելոյ ևս երկուց ամաց եկն Խազր (կարդա՝ Խալթ) պատգոս՝ այր շամբշոտ և աններդրմ. և ի նմին ամի սատակեցաւ» նախադասությունը: Խոսքը Խալթ կամ Խալիդ իբն Եզիդ իբն Մազիադ ալ-Շայբանի կուսակալի մասին է, որ եկավ, ըստ Կաղանկատվացու, Հայոց 291 թվին= 842 թվին, իսկ ըստ Ասողիկի՝ 290 թվին =841-842 թվին և մեռավ Ջավախքի Խոզաբեր գյուղում[3]: *Պատգոս կամ փատգոս Կաղանկատվացու մոտ նույն նշանակությունն ունի, ինչ որ ոստիկան, ամիրա:*

[1] Կարդա՝ Քաղակացիք: Ստեփանոս Օրբելյան, գլ. ԼԳ, ունի՝ Քաղաստականայ:

[2]«Արարատ», 1897, ապրիլ, էջ 161-163, աշխատասիրությամբ Խաչիկ վարդապետի:



Խալդից հետո եկավ նորա տեղ իր որդին՝ Մահմեդ, որ վերաշինեց Գանձակ քաղաքը: Գնաց Սյունիք, ավերեց Բաղաց աշխարհը և երբ ուզեց Աղահեջ գավառի Արքուգետ ավանի Ս. Գրիգոր եկեղեցին այրել, եկեղեցուց դուրս ելավ «հեծեալ մի ի ձի ճերմակ», մտավ թշնամու բանակ, շփոթություն ձգեց և փախցրեց դեպի Եղջերիս սարը: Այս ասպատակությունը, ինչպես երևում է, նույնն է, ինչ որ պատմում է Վարդան, առնելով, անշուշտ, Շապուհ Բագրատունուց, որ Ամորիա քաղաքի առման տարիները, ուրեմն 838 թվի մոտերքը, Աբլհերթ ոմն՝ Ջահապի տանից, չորս հազար մարդով խուժեց Սյունիք, բայց Բաբգեն երկուհարյուր մարդով ջարդեց նրան և քշեց[1]: *Թվում է, թե Աբլհերթի միջոցով Մահմեդ իբն Խալիդն էր, որ կազմակերպել էր այս ասպատակությունը:*

Մովսես Կաղանկատվացու «զրուցատրութիւնների» մեջ կարևոր է մանավանդ Սահլի մասին տված տեղեկությունը: Սահլ Սմբատյան Զառմիհրական տոհմից էր, ուրեմն Աղվանից կամ ճիշտ ևս Գարդմանի իշխանական տանից, թեև ընավ հայտնի չէ, թե ո՞վ էր նորա հայր Սմբատ և ի՞նչ տեղ էր բռնում իր տոհմի ճյուղագրության մեջ (24): Սահլ հայտնի դարձավ առավելապես նրանով, որ ապստամբ Բաբանին բռնեց և իր որդու՝ Մուավիայի միջոցով հանձնեց Աֆշինին՝ 837 թվին: Ի տրիտուր ստացավ հարյուր հազար դրամ, ըստ Վարդանի[2] *և նշանակվեց իշխան Հայոց, Վրաց և Աղվանից: Զարմանալի է, որ մեր պատմագիրը չգիտե, որ Եսայի Աբումուսեն ձերբակալեց իր կողմից Բաբանի եղբոր Աբդալլահին և ղրկեց խալիփային: Եսայի ներկայանում է Թովմա Արծրունու մոտ մարտիկ զորականի անվեհեր նկարագրով*[3]*, մինչդեռ Աղվանից պատմագիրը լուռ է այդ մասին:*

Բուլխար Խոյտա, որին փատգոս (**կուսակալ** - *Պ. Հ.) կուզեր տեսնել Հովհաննես իշխանը, մասնակցած էր Բաբանի դեմ վարած կռիվներին Աֆշինի բանակում: Անունն է իսկապես Մուհամմադ իբն Խալիդ Բուխարա-խուդա*[4]*: Հովհաննես տեր-տերանց, կարծում են, որ Սահլի որդին է, որ կրում էր նաև արաբ Մուավիա անունը: Սեծիրանց վանքի մի արձանագրության մեջ հիշվում է այս իշխանի անունը.*

«ՅԲ թուականութեան Հայոց ի ժամանակս Յովհաննիսի Աղվան<ից> իշխանի ես Սողոմ<ոն> Մեծարանց եպիսկոպոս կանգնեցի զ<այս>...»[5]*: Աբ-*

[1] Վարդան, էջ 80: Բաբգեն նույն անձն է, որ սպանեց Գրիգոր Սուփանին (տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 66) և էր որդի Վասակ († 821) Սյունյաց իշխանի, ըստ Ստեփանոս Օրբելյանի, գլ. ԼԷ, էջ 212:

[2] Վարդան, էջ 79:

[3] Թովմա Արծրունի, էջ 177, 180, 184-185:

[4] J. Markwart, Osteuropäishe Ostasiatische Streifzüge, p. 461.

[5] «Արարատ», 1897, ապրիլ, էջ 163:

*ձանագրության ժամանակը՝ 302 թիվ=853 թվի, թելադրում է նույնացնել այս անձը Հովհաննես տերանց-տիրոջ հետ: Բուխարա-խուդա նշանակվեց կուսակալ Հայաստանի Աֆշինի կողմեն Մութասիմի օրով՝ 838 թվին: Բոլոր հիշյալ «զրուցատրութիւնք» վերաբերում են Աբուսահակ Մութասիմի կառավարության 834-842 թվերին: Միայն Խալիդ իբն Եզիդ կուսակալ եկավ Հարուն Վասիկի (842-847) առաջին տարին, եկավ զսպելու Հայաստանում պայթած ապստամբությունը և նրան նույն տարին հաջորդեց իր որդին:*

Հիշենք, որ առաջին գլխի մեջ ամիրամումինների հաջորդական տախտակը հասցրած է մինչև Հարուն II, այսինքն՝ Վասիկի գահակալությունը, առանց նշանակելու, թե քանի տարի իշխեց:

Արդ, հասանք այդ սահմանած կետին և ուրեմն պատմության թելը պիտի կանգ առներ այստեղ, Վասիկի առաջին տարին: Սակայն մեր հեղինակը շարունակում է իր «զրուցատրութիւնքը» և հիշատակում Հայոց 300 թվի =851 թվի անցքերը, երբ Հայոց և Աղվանից իշխանները տարագրվեցին Բաղդադ: Հաջորդ տարին՝ 852 թվին, եկավ Բուղա զորավարը և «զամս երիս կալաւ զՀայս» և *չորրորդ տարին նշանակվեց* նրա տեղ վերև հիշված Մահմեդ որդի Խալթի (և ոչ Խողթի, ինչպես ունի տպագիրը): Շատերն տկարացան հավատի մեջ, իսկ այնքան նահատակներից հիշվում է միայն «ոմն Շապուհ Արծրունի և միւս այլ այր ընտիր յազատացն Հայոց»: Սրանց ձգեցին Եփրատ գետը, բայց որովհետև երկար ժամանակ «ջահք լուսոյ ի վերայ գետոյն», երևեին, ամիրմումնի հրամայեց հանել [ոսկորները] գետից և այրել: Չհաջողեց: Ամեն անգամ, որ «խորէջք» ջուրն էին մտնում, լույսն աներևութանում էր, և երբ դուրս էին գալիս ջրից, լույսը նորեն երևում էր: Ամիրմումնինի հրամանով Ասորաց եպիսկոպոս Ջափր ջրասուզակներ է իջեցնում Եփրատ՝ երանելիների ոսկորները գտնելու: Ասորաց եպիսկոպոսը հանեց գետից նշխարները և տարավ իր եկեղեցին:

Այս հրաշագործ պատմությունն արդեն ապացույց է, որ գրողը մեր նման պատմությունների անչափ սիրահար հեղինակն է: Թովմա Արծրունուց հայտնի է Շապուհ Երեց և «ոմն ի հայ ազատանւոյն» Ապուսահակ, Նախճվանի եպիսկոպոսի եղբայրը[1]: *Բայց սրանք Բաղդադ չեն տարվել: Հավանորեն Հովհաննես Արծրունի եպիսկոպոս և Գրիգոր Արծրունի, որ նահատակվեցին[2] Բաղդադ 855 թվին, հոռի 5 (=մայիս 31), շփոթված են Շապուհի և Ապուսահակի հետ[3]:*

«Ապա կոչէ ամիր **ամիրմումնին զՋափր՝ Ասորեաց եպիսկոպոս»**, *պետք է կարդալ «Ամիրմումնի* **Ջափր զԱսորեաց** *եպիսկոպոս»: Ջափր ամիրմում-*

1 Թովմա Արծրունի, էջ 128:

2 Անդ, էջ 162:

3 Շապուհի նահատակության պատմությունը մտել է Հայսմավուրքի մեջ, հուլիս 22:



*նի, այսինքն՝ խալիֆայի, անուն է և ոչ ասորի եպիսկոպոսի: Իսկ Ջափր՝ Մութավաքիլ խալիֆան է (847-861):*

*Երրորդ գրքի Ի գլուխ վերջանում է երկրաշարժի հիշատակությամբ, որ մեր պատմագիրը դնում է Հայոց 318 թվին =869 թվին, իսկ Ասողիկ[1] դնում է Հայոց 312 թվին =863 թվին: Կ.Պոլսում երկրաշարժ եղավ, 869 թվի հունվար ամսին[2]:*

«Զրուցատրութիւնք» շարունակվում են հետևյալ ԻԱ գլխում, որի վերնագիրը ընդգրկում է միայն գլխի առաջին մասը: Նույն երևույթը, ինչ որ տեսանք վերև՝ ԺԶ գլխի նկատմամբ: Եսայի որդի Շեխա կռվի բռնվեց իր գործակալի հետ, որ ապստամբել էր Պարտավում և կոչվում էր Մահմեդ որդի Արլմեհղի Եմենիկ (և ոչ՛ թե Եմեմիկ, ինչպես ունի տպագիրն): Այդ միջոցին Աղվանից կաթողիկոս Հովսեփ վախճանվեց և օգտվելով խառն ժամանակից Մեծկողմանց Սամուել եպիսկոպոսը կաթողիկոսական աթոռը գրավեց առանց Հայոց Գևորգ կաթողիկոսի գիտության: Իշխանաց իշխան Աշոտի միջնորդությամբ, Սամուել գնաց Հայոց Գևորգ [Բ Գառնեցի] կաթողիկոսի մոտ՝ ստանալու օրինավոր ձեռնադրություն, Հ[այկական] թ[վականության] 326 թվին =877 թվին:

Եսայի նույն Շայբանի տոհմիցն էր, Հիսե կամ Իսա իբն շեյխ իբն Խալիդ, եղբորորդի նախորդ կուսակալի՝ Խալիթի (=Խալիդի), նշանակվեց Հայաստան Հիջրի 257 թվի ջումադա Բ ամսին, որ է 871 թվի մայիս[3]: *Սորա գործունեությունը հայտնի է Թովմա Արծրունուց: Կաղանկատվացու Պատմության վերջին՝ ԻԳ գլխի մեջ Հովսեփ Աղվանից կաթողիկոսի մասին ասված է, որ «Ի սորա Գ ամին լցաւ թիւ Հայոց Յ (300)»[4], ուրեմն կաթողիկոս էր ընտրվել Հայոց 298 թվին =849 թիվը: Կաթողիկոսական իշխանությունը վարել է 25 տարի, ուրեմն մինչև 873 թիվը: Սամուելի ապօրինի կաթողիկոսությունն ընկնում է 873-876 տարիների մեջ: Սյունյաց Սողոմոն եպիսկոպոսը[5] և Հայոց Գևորգ կաթողիկոսը վերահաստատեցին հինավուրց կապը շնորհիվ իշխանաց իշխան Աշոտի:*

1 Ասողիկ, էջ 110:

2 **Georgii Monachi Chronicon,** ed. C. de Boor, t. II, Lipsiae, 1904, p. 840; Symeonis Magistri ac Logothetae Annales, In: „Theophanes Continuatus„ Bonnae, 1838, p. 688.

3 **Ibn Wadhih al-Jaqubi,** Tarikh, ed. M. Th. Houtsma, Lugduni-Batavorom, 1883, p. 621.

4 Այս կարևոր տողը պակասում է տպագրի մեջ, լրացնում ենք ըստ Կիրակոսի՝ «լցաւ թիւ Հայոց Յ», էջ 115:

5 Սողոմոն, Ստեփանոս Օրբելյանի տվյալներով (էջ 206) Սյունյաց եպիսկոպոս եղավ Ստեփանոս Սյունեցուց հետո 129 տարի անց, ուրեմն 735+136=871, մինչդեռ իր իսկ՝ Օրբելյանի հիշատակած արձանագրությանց մեջ Սողոմոն եպիսկոպոս էր 867 թվին (էջ 264):

Միևնույն ԻԱ գլխում, արձանագրված են մի շարք դեպքեր, որոնք չեն նախատեսված գլխի վերնագրի մեջ, Աշոտ Բագրատունին թագ կապեց Հայաստանում, Համամ՝ Աղվանքում: Տաճիկը (իմա՛ Ափշին Սաջիկը) հարձակվեց Հայաստանի վրա, ձերբակալեց Գևորգ Բ Գառնեցի կաթողիկոսին, և ապա ազատ արձակեց Համամի բարեխոսությամբ Հայոց 346 թվին =893-894 թիվը:

Չորս տարուց հետո, նոր տարվան, Զատիկ օրը =16 ապրիլի 898 թվի, Ապու Ալի Աղվանից իշխան Հայկազունին սպանվեց «յիւրմէ հարազատէն Սմբատայ»: Նույն տարին Հայոց Սմբատ թագավորը պարտվեց «Ասորեստանում», կռվում ընկավ Աշոտ իշխան Հայկազունի: Քիչ հետո յուրայիններից սպանվեց Վասպուրականի իշխան Ապումրվան: Ափշին նորեն հարձակվեց: Գևորգ Գառնեցի կաթողիկոս մեռավ 346 թվին = 897-898 թիվը: Հայոց Սմբատ Ա թագավոր սպանվեց 363 թվին = 914-915 թիվը: Այս բոլորը հայտնի են Թովմա Արծրունու[1] *և Հովհաննես Կաթողիկոսի[2] երկերից և պետք չենք տեսնում կանգ առնել նրանց քննության վերա, մանավանդ որ այդ արել ենք արդեն Աշոտ Բ Երկաթին նվիրված գործում[3]: Անծանոթ է այլուստ Ապու Ալի և Սմբատ եղբայրների աղետալի ընդհարումը: Արաբական իշխանությունը «սպառի» այդ միջոցները և առաջ է գալիս Դեյլիմիկ (ոչ Գիլիմիկ) ազգը, որի պետը՝ Սալար, տարածում է իր բազուկը Ատրպատականի, Հայոց և Աղվանից վերա:*

Վերջին պատմական դեպքը, որ նկարագրում է մեր պատմագիրը ռուզիկ ժողովրդի, այսինքն՝ ռուսաց, արշավանքն է: Ռուզիկները Կասպից ծովով եկան հյուսիսից և խուժեցին Պարտավ քաղաքը: Սալարը անզոր գտնվեց նրանց հանդեպ: Շնորհիվ Պարտավ քաղաքի կանանց, որոնք «բաժակ մահու արբուցանէին ռուզացն», քաղաքն ազատվեց այս անսպասելի թշնամուց՝ վեց ամիս նրանց ձեռքին մնալուց հետո:

Սալարի բուն անունն է Մուհամմադ իբն Մուսափիր ալ-Մարզպան, որ իրոք տեր դարձավ Ատրպատականի, Հայաստանի և Աղվանքի (941-957): Աբուլ ալ-Կասիմ իբն Հավկալ Հիջրի 336 թվի շավալ ամսի 2-ին=16 ապրիլի 948 թվի, ղրկվեց Բաղդադի իշխանության կողմեն խազարաց խաքանի մոտ դեսպանությամբ: Նա անցավ Հայաստանից, Աղվանքից և պատմում է, որ չորս տարի առաջ, ուրեմն Հիջրի 332 թվին =943-944 թիվը, ռուսները ասպատակեցին Աղվանք և մնացին մի տարի Պարտավ: Սալար Մուհամմադ իբն Մուսափիր ալ-Մարզպանը չկարողացավ դեմ առնել: Հետ քաշվեց, նոր զորք հավաքեց թշնամու դեմ, բայց այս միջոցին Միջագետքի Համդանյանները բանակ ղրկեցին գրավելու Ատրպատականը և Սալարստիպված էր պաշտպանվել այս նոր հակառակորդի դեմ: Սրան հետ մղելուց հետո միայն հաջողեց քշել ռուսներին: Իբն Հաուկալ պատմում է եղելությունը, ինչպես անձամբ լսել է Սալարի բերանից[1]: *Սալարը, անտարակույս, չափազանցրել է իր իշխանության սահմանները, հավատացրել արաբ ճանապարհորդին, որ ինքը տեր է ոչ միայն Ատրպատականի և Աղվանքի, այլև Հայքի: Ցիրականի այդ երկրների միայն մի մասի վերա էր իշխում* (25):

[1] Թովմա Արծրունի, Պատմություն Գ, գլ. ԻԲ, ԻԳ և այլն:

[2] Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 131:

[3] N. Adontz, Ašot Erkat' ou de fer, roi d'Arménie de 913 a 929. „Annauaire de L'Institut de philologie et d'Histoire orientales", t. I (1932-1933), Bruxelles, 1935, p. 13-35.



[1] M. D'Ohsson, Des peuples do Caucase, pp. 108-115, 249-253.

# ՓՂՈՍԿՐՅԱ ԱՎԵՏԱՐԱՆԻ ԱՐՎԵՍՏԸ

Գեղեցիկ աշխատություն՝ նվիրված հայ արվեստի պատմության: Պրոֆ. Ստրժեգովսկին մեծապես գնահատել է Էջմիածնի հռչակավոր Ավետարանի գեղարվեստական արժեքը: Սակայն ինչպես փղոսկրե կազմը, այնպես էլ սկզբի սքանչելի խորաններն և նկարները համարում է ոչ հայ արվեստի ծնունդ, այլ ասորական ժառանգություն, հնուց մնացած (1): Պրոֆ. Մակլերը մոտեն քննելով նկարների թուղթը և համեմատելով ձեռագրի թղթի հետ՝ չվարանեց հայտարարելու, որ նկարները կազմում են ձեռագրի հարազատ մասը և ուրեմն հայ ծաղկողի գործ (2):

Օր[իորդ] Տեր-Ներսեսյան, որ արվեստի պատմության մեջ արդեն մասնագետի հռչակ ունի (3), մանրակրկիտ և ուշիմ ուսումնասիրության նյութ է շինել վիճելի նկարները: Համեմատել է մյուս հին Ավետարանների նկարչության հետ, զուգակշռել հին ասորական և հունական համանման գործերի հետ և հանգել այն եզրակացության, որ Էջմիածնի Ավետարանի նկարչությունը բացառիկ երևույթ չէ, այլ ներկայացնում է մի ոճ, որ հատուկ էր հայ արվեստին IX, X և XI դարերում: Ապա ուրեմն ոչ մի հիմք չկա կասկածելու, որ հայ գործ է և ո՛չ ասորական VI դարից հասած պատահական մի ավանդ:

Արդյո՞ք նկարները ժամանակակից են ձեռագրին. հեղինակը, ճշմարիտ է, ուղիղ պատասխան չունի, բայց իր դատողության թելը տանում է այդ կետին, որ նկարները ևս 989 թվից են և հարազատ մասը ձեռագրի: Ահա այստեղ է, որ համամիտ չենք շնորհալի օրիորդին կամ ավելի ճիշտ, որոշ վերապահումի պետք ենք տեսնում:

Ավետարանի հիշատակարանը պահված է (4): Գրքի ստացողը Ստեփանոս քահանան հավակնոտ ոճով պատմում է իր հորեղբոր՝ Ստեփանոս եպիսկոպոսի մասին: Նա էր շինել Նորավանքի եկեղեցին, որին ընծայաբերում է իր պատվիրած Ավետարանը Ստեփանոս քահանան: Հիշում է, որ Ավետարանը գրված է «ստոյգ օրինակէ». կարծե՛ս, պատեհ առիթ էր, որ հասկացնել տար թե Ավետարանը սովորական ձեռագիր չէ, այլ և ծաղկած: Ո՛չ մի ակնարկ: Այս լռությունը արդյո՞ք նշան չէ որ Ավետարանը այդ առավելությունը չուներ:

Բացի սրանից, Եվսեբիոսի առ Կարպիանոս ուղղած թղթի գիրը տարբեր է, քան ձեռագրինը և չէ կարող պատկանել միևնույն գրչին: Հետևապես և խորանը, որի մեջ ամփոփված է թուղթը, ևս խորթ է ձեռագրին:



Ավելի կարևոր հանգամանք: Բուն ձեռագրի մեջ Ավետարանների բնագիրը բաժանված չէ եղել ո՛չ գլուխների, ո՛չ ընթերցվածների և ո՛չ իսկ համարբարբառյան հատվածների: Հետագայում մի օտար ձեռք նշանակել է լուսանցքում բաժանմունքներ և մանավանդ համաբարբառի կանոններ ստորին լուսանցքում և բնագրում համապատասխան տեղը: Պարզ երևում է, որ բնագրի մեջ հետո է ավելացրած տողերի կողքին և երբեմն անհաջող: Մյուս կողմից Եվսեբյան համաբարբառի տախտակները կամ կանոնները գտնվում են ձեռագրի սկզբում, զետեղված վեց երկկամար և մի եռակամար խորանների մեջ: Արդ եթե այս կանոնները և խորանները ձեռագրի բուն գրչով են գրված, ինչպես բացատրել, որ նույն գրիչը անփույթ է գտնվել նշանակել նույն կանոնները և ձեռագրի մեջ, առանց որի կանոնների տախտակները ո՛չ մի իմաստ չունեն: Բնական է ենթադրել, որ տախտակները և նրանց հետ մյուս նկարները, որ նույն ոճի գործեր են, գրչին անծանոթ են եղել և ավելցրած են հետագայում: Ինչպես երևում է, նրանք անծանոթ են եղել նմանապես այն հին գրչին, որ մտցրել է համաբարբառյան կանոնները ձեռագրի մեջ, եթե դատելու լինենք այն հանգամանքից, որ նրանք երբեմն շեղվում են խորանների տախտակներից և ուրեմն ուրիշ օրինակից են վերցրած և ոչ խորանից: Այսպես՝

Խորանում նշանակված է՝

| Մատ. | Մար. | Ղուկ. |
| --- | --- | --- |
| ճղթ | ճժա | ճիգ. |

Իսկ ձեռագրի մեջ ստորին լուսանցքում՝

Մատ. Մար. Ղուկ.

ճղը / ճղթ ճժա ճիգ.

Այս դիտողությունները հարկադրում են որոշ խոհեմություն. ընդունելով հանդերձ որ Ավետարանի նկարները հայ արվեստի արդյունք է՝ համաձայն օր[իորդ] Սիրարփի Տեր-Ներսեսյանի հետազոտության, պետք է առայժմ առկախ թողնել ժամանակի խնդիրը: Մեր կարծիքով նրանք ժամանակակից չեն ձեռագրին, ավելի ճիշտ ասած, նրա մասը չեն կազմած սկզբից ևեթ: Կարելի է հին են, գուցե և ավելի նոր, քան ձեռագիրը, թեև ավելի մեծ հավանականություն կա ավելի հին համարելու, նկատի առնելով գեղարվեստական խոշոր արժեքը: Ով գիտե, գուցե նրանց բախտը կապված է եղել փղոսկրե կազմի հետ: Այդ հրաշալի կազմը արդյո՞ք առաջ, քան ընդգրկելու Էջմիածնի Ավետարանը չէ ամփոփած իր մեջ մի ավելի հին և թերևս ավելի

զմայլելի ծաղկյալ Ավետարան և սրա մնացորդները չեն արդյոք այն խորանները և նկարները, կազմի հետ անցած 989 թվի Ավետարանին:

Օրհորդի գործը մեզ առիթ տվեց զբաղվել Մլքեի Ավետարանի խնդրով: Թվում է թե կարելի է լուծված համարել նորա գրության ժամանակի կնճռոտ հանգույցը հարցին նվիրված մեր հոդվածին մեջ (5):



## ՄԼՔԵԻ ԱՎԵՏԱՐԱՆԻ ԳՐՈՒԹՅԱՆ ՏԱՐԻՆ

Վենետիկի Մխիթարյանների գրատան զարդը, Մլքե թագուհու հռչակավոր Ավետարանը (1), թե ե՞րբ է գրված, վեճի նյութ է:

Մխիթարյան հայրերը համակարծիք չեն այս խնդրում: Հայր Ալիշան և հայր Հացունի կարծում են, որ Ավետարանը գրված է 902 թվին, հայր Բարսեղ Սարգիսյան պնդում է, որ ձեռագիրն ավելի հին է, գրված 851 թվին և նվիրված Վարազավանքին Մլքե թագուհու կողմեն 922 թվին: Որտեղի՞ց է ծագում այս տարաձայնությունը:

Ավետարանի՝ հիշատակարանում կարդացվում է՝

**ՑԾԱ Թ. Արաց իը, բ**
**Արեգ զ, ե:**

Բոլորն էլ համաձայն են վերագրելու այս հիշատակությունը ձեռագրի գրչին: Միայն թե մինչ հ. Ալիշան և հ. Հացունի կարդում են ՑԾԱ = 351, ուրեմն 351+551 =902, հ. Բարսեղ Սարգիսյան տեսնում է՝ ՑՀԱ= 371, ուրեմն 922 և որովհետև ձեռագրի լուսանցքում նկատվում է խաշորաձև մի տառ նման Ց-ի = 300, եզրակացնում է, որ այս է գրության տարին 300 + 551 = 851, իսկ 922-ը թագուհու ընծայաբերության տարին է: Ահա խնդրի էությունը:

Որքան մեզ հայտնի է զբաղվողներից և ոչ մեկը ուշ չէ դարձրել և հաշվի չի առել վիճելի տարեթվին հետևող վկայությունը, որ գրիչը սկսել է գրել Արաց ամսի 28-ին, երկուշաբթի օր և վերջացրել Արեգ 6-ին հինգշաբթի օր: Ֆ. Մակլերը Ասողիկի թարգմանության առաջաբանում անդրադարձել է մեզ զբաղեցնող խնդրին և հարցական նշան դրել ամսաթվերից հետո նշանակված բ. և ե. տառերի առաջ: Կարելի է վստահորեն ջնջել հարցականը, քանի որ անտարակույս է, որ բ̅ նշանակում է երկուշաբթի և ե̅ հինգշաբթի: Գրիչը իրեն գովելի է արել տալով մեզ այդ այլապես աննշան, բայց այս դեպքում արտակարգորեն կարևոր պարագան: Այստեղ է թաքնված վիճելի հարցի ճշմարիտ բանալին:

Նախ ստուգենք գրչի վկայությունը: Արդյո՞ք ճշմարիտ է, որ եթե Արաց 28-ը երկուշաբթի է, Արեգի 6 կլինի հինգշաբթի: Արաց 28-ից մինչև Արեգ 6 կանե 38 օր (Արաց 2+Մեհեկան 30+ Արեգ 6) կամ հինգ լրիվ շաբաթ և երեք օր: Հաշվելով երկուշաբթիից՝ երեք օրերը կգան՝ երեքշաբթի, չորեքշաբթի և

***հինգշաբթի:*** Ուրեմն միանգամայն ճիշտ է, որ եթե Արաց 28-ը երկուշաբթի է Արեգի 6 կընկնի հինգշաբթի: Այժմ հարց է, ո՞րն է այն տարին, որի ընթացքին Արաց 28 երկուշաբթի է և Արեգի 6 հինգշաբթի: Ահա մի հաստատուն միջոց կշռելու առարկելի տարեթվին արժեքը: Առնենք 902 թիվը:

Նավասարդի մեկը համապատասխանում է 902 թվին, ապրիլ 15-ին, և Արաց 28-ը՝ հոկտեմբերի 9-ին: Հաշիվը պարզ է. Նավասարդի 1-ից մինչև Արաց 28-ը կանե 178 օր. հաշվելով ապրիլ 15-ից 178 օր կգանք հոկտեմբերի 9-ը: Շաբաթվան ո՞ր օրն է հոկտեմբերի 9-ը նույն 902 տարին սկսում է ուրբաթով. հունվարի 1-ից մինչև հոկտեմբեր 9-ը = 281 օր է, կամ 40 լրիվ շաբաթ և մի օր: Ուրբաթով սկսված շաբաթները կվերջանան ուրբաթով և հաջորդող մի օր կգա՝ ***շաբաթ:*** Հետևանքը վճռական է, ձեռագիրը չէ գրված 902 թվին, որովհետև այս թվին հոկտեմբերի 9-ը = Արաց 28 շաբաթ էր և ոչ ***երկուշաբթի:*** *Մնում է խոնարհել թվականն անսուտ լեզվի առաջ և հրաժարել 902 թվից:*

Փորձենք այժմ մյուս տարեթիվը *851* թվականը նույն եղանակով:

851 թվին Նավասարդը սկսում է ապրիլ 28-ին և հետևաբար Արաց 28 ընկնում է հոկտեմբեր 22: Նույն տարին բացվում է հինգշաբթիով. հունվարի մեկից մինչև հոկտեմբեր 22 = 294 օր, կամ 42 շաբաթ, ուրեմն վերջին օրը 22 հոկտեմբերը նույնպես հինգշաբթի է, մինչդեռ սպասելի էր երկուշաբթի: Ապա ուրեմն 851 տարին ևս գրության տարին չէ: Դարձյալ անառարկելի փաստ[1]:

Հայր Բ. Սարգիսյան, տեսանք, որ հնարավոր է համարում ՅԾԱ կարդալ ՅՀԱ = 922: Թերևս կարծողներ լինին, թե այս է գրության տարեթիվը: Բարվոք է ստուգել և այս: Նավասարդ մեկ = ապրիլ 10, և Արաց 28 = հոկտեմբեր 4: Տարին սկսվում է երեքշաբթիով և հոկտեմբեր 4 = ուրբաթ: Հունվարի մեկից մինչև հոկտեմբեր 4= 276 օր, կամ 39 շաբաթ և 3 օր: Հաշված երեքշաբթիից՝ երրորդ օրը, որ է հոկտեմբեր 4 = Արաց 28 կնե ***ուրբաթ:*** Որոնելի տարին Արաց 28 երկուշաբթի էր և ոչ՝ ուրբաթ: Հետևաբար 922 թիվը նմանապես խոտելի է առանց որևէ հակառակության:

Ե՞րբ է իսկապես գրված Մլքեի Ավետարանը:

Տեսանք, որ հ. Ալիշան և հ. Հացունի կարդում են ՅԾԱ, իսկ հայր Բ. Սարգիսյան, ՅՀԱ: Երեքն էլ հավասարապես քաջավարժ են հայ հնագրության,

[1] Ավելորդ չենք համարում հիշել, որ տարվան առաջին օրը մենք անվանում ենք Prof. Hans Lietzmannի գրքից («Zeitrechnung»): Ավելի դյուրին և բոլորին մատչելի միջոց է, գտնել թե զատիկը ե՞րբ է գալիս տվյալ տարին և որովհետև զատիկը միշտ կիրակի օր է ընկնում, ըստ այնմ հաշվել և խնդրելի օրը տարվա մեջ: Այսպես, 851 թ. զատիկ = մարտի 22 կիրակի: Այստեղից մինչև հոկտեմբեր 22 = 214 օր, կամ 30 շաբաթ և 4 օր: Հաշվելով կիրակիից՝ չորրորդ օրը, որ է հոկտեմբեր 22 կգա **հինգշաբթի**:



որպես երկարամյա մատենադարանապետներ այնքան ճոխ ձեռագրատան: Եվ եթե այնուամենայնիվ տարաձայն են միջին տառի նկատմամբ, նշանակում է, որ տառը իրոք վիճելի կերպարանք ունի ազատորեն գծված լինելու պատճառով, և քանի որ ո՛չ ***Ծ*** է և ո՛չ ***Հ,*** անշուշտ մի ուրիշ տառ է, որ նմանություն ունի երկուսի հետ: Այդպիսին է հարկավ ***Ժ*** տառը: Փորձենք կարդալ յԺա = 311, ուրեմն 862 թ. և տեսնենք հետևանքը ցայժմ կիրարկված մեթոդով:

Նավասարդի մեկ 862 թվին = ապրիլ 25 և Արաց 28 = հոկտեմբերի 19: Տարին սկսվում է հինգշաբթիով և հոկտեմբերի 19 գալիս է ***երկուշաբթի*** օր (հունվարի մեկից մինչև հոկտեմբեր 19 գումարվում է 291 օր, որ կանե 41 շաբաթ և չորս օր. հետևապես վերջին՝ այն է չորրորդ օրը, կգա երկուշաբթի՝ հաշված հինգշաբթիից): Արեգի 6 կհամապատասխանե նոյեմբեր 26, ***հինգշաբթի:***

Այս համաձայն է Ավետարանի հիշատակարանին: ***Մլքե թագուհու Ավետարանը գրված է ո՛չ 851 և ո՛չ 902 կամ 922, այլ 862 թվին, հոկտեմբեր 19 -ից մինչև նոյեմբեր 26-ը, սկսված երկուշաբթի և վերջացրած հինգշաբթի օր:***

Մխիթարյան հայրերին է մնում վերստին քննել և զննել հիշատակարանը և իրենց հավանությունը բերել, հաստատելու համար, որ հայ հնագույն ձեռագրի պատիվը այսուհետև անցնում է Լազարյան Ճեմարանի Ավետարանից (2) Մլքե թագուհու Ավետարանին, 25 տարով ավելի ծեր, քան առաջինը:

# ՇԱՀՆԱՄԵԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՎԱՆԴԸ

Ֆիրդուսիի ծնունդը Շահնամեի ծնունդն է (1): Լոկ գրական տոն չէ: Մի հանգած, խոշոր քաղաքակրթության հիշատակի պանծացումն է ճիշտ այն ժամանակ, երբ Իրանն ուզում է վերջապես թոթափել աջեմական մեղկությունը և իր անցյալին վայել տեղ բռնել լուսավոր երկիրների շարքին:

Կան երկեր, որ ծնվում են աղմուկով, ապրում վայելչության մեջ, բայց ի վերջո գնում են հանգչելու մոռացության փոշու տակ: Քչերին է վիճակված դեմ տալ ժամանակի քմայքին և մնալ կանգուն որպես մշտնջենական արժեք: Պարսիկ մեծանուն բանաստեղծի գործը երջանիկներից է. ճշմարիտ է, որ իբրև պատմություն նա տկար է. իբրև գրականություն՝ տարտամ և միալար, բայց և այնպես հազար տարի է, որ պահել է իր հմայքն ու այժմ փառաբանվում է տոնական հանդիսավորությամբ:

Ֆիրդուսիի գործը ստվար և ծավալուն է. բազմաբովանդակ և բազմերանգ. պատմականն ու առասպելականը, իրականն ու երևակայականը, քնարական հոսուն մրմունջներ, խոր և թախծոտ խորհրդածություններ ամեն առթիվ, դյուցազնական ուրույն դրվագներ, և վերջապես մայրենի հարազատ բարբառ, որ հոսում է մերթ հառաչելով, մերթ քրքջալով, երբեմն զվարթ, երբեմն մելամաղձոտ ալիքներով, մի խոսքով մի անսպառ գանձարան, որ պարունակում է ամեն հասակի և ամեն ճաշակի պատշաճ գոհարներ:

Իր ամբողջության մեջ Շահնամեն կրում է Իրանի, նախամուսուլման Իրանի փառքը, հոշոտված, բայց հարության շունչը պահած:

Արաբական տիրապետությունը կտրել էր պարսից պետական կյանքի թելը՝ բայց ոչ ընդմիշտ: Պարսիկները հավատացած էին, որ արաբական լուծը պիտի տևե ոչ ավելի, քան չորս հարյուր տարի: Ժամանակը լրանում էր XI դարի կեսերին: Ասել է, թե Ֆիրդուսիի մահից մի քանի տասնյակ տարուց հետո Իրանը պիտի վերածնվեր քաղաքականապես: Շահնամեն, լայն ըմբռնումով, ոչ այնքան անհատական ներշնչման և կամ անհատական նախաձեռնության արդյունք էր, որքան ծնունդ մոտալուտ ազատության երազներով խանդավառված հանրային գիտակցության: Եվ միանգամայն գաղափարական տարած էր նոր կանգնելի պետական շենքի:

Ազատագրական ակնկալությունները սին երազներ չէին: Երկրի զանազան մասերում կային արդեն քաղաքական հենցներ: Արաբական բռնակալությունն այլևս ահարկու չէր: Մի ուժգին թափ և երկիրն ազատված էր:



Սակայն մի բան չէր նախատեսվել, թուրանական արշավանքը, ի դեմս սելջուկների, որ փշրեց վերածնության բոլոր հույսերը: Ֆիրդուսին սպանել էր տվել Աֆրասիաբին. ասել է թե վտանգ չէր սպասում Թուրանից: Այլև արաբական ծագում էր տվել հրեշավոր Զոհակին, որի ուսերից իժեր էին ելնում և մարդկային ուղեղով կերակրվում, այնինչ սկզբնական վեպում Զոհակը ևս Թուրանի զավակն է, այն Թուրանի, որի կոչումն էր լափել քաղաքակրթություն կոչված ուղեղները...:

Համենայն դեպս Ֆիրդուսիի դարում Իրանի վերածնության հավատը կենդանի էր: Նա գաղափարախոս եղավ գալիք ազատության և վերակենդանացրեց անցյալը ի սպաս մոտիկ ապագայի: «Ես Հիսուսն եմ», - բացականչում է հանդգնորեն բանաստեղծը, որովհետև Ղազարոսյան հարություն տվավ մեռյալ Իրանին: Իհարկե, Ֆիրդուսին ներկայացնում է անցյալը ոչ հնագետի ստուգությամբ, այլ ինչպես ժողովրդական հիշողությունը պահել է իր գրավոր և անգիր ավանդություններում: Շատ բան մոռացված է: Բավական է հիշել, որ Աքեմենյան և մասամբ Պարթևյան շրջանները անտես են առնված: Սակայն ինչ որ զարմանալի է, պատմության ոգին մանավանդ երկու հիշյալ շրջանների նկատմամբ պատկերացած է հարազատորեն: **Էրաջը**, այսինքն՝ Իրանը, երկու եղբայր ուներ, **Սալմ** և **Թուր**. երկուսն էլ թշնամի **Էրաջին**: Նրանց նենգության զոհ գնաց **Էրաջը**: Սրա սերունդը ի դեմս Մանուչարների և Ռոստոմների կատաղի կռիվ մղեց **Սալմի** և **Թուրի** ժառանգների դեմ: **Սալմ** և **Թուր** անվանակետեր են (էպոնիմ) սարմատական և թուրանական ցեղերի (**Սալմի** հին ձևը **Սարմ** է): Արդարև, Աքեմենյան շրջանում սարմատներ, իսկ պարթևյան և հետագա դարերում Թուրանի կամ թուրանյան ցեղերն ահավոր սպառնալիք են եղել պարսկական պետության: Իրանի պատմական երախտիքն է, որ հետ ժառանգելով Միջագետքի մեծ քաղաքակրթությունը ոչ միայն պահեց և ուռճացրեց իր ստացածը, այլև դարեր շարունակ պաշտպանեց իր և Առաջավոր Ասիայի խաղաղ աշխարհաշինությունը Հեռավոր Արևելքից պարբերաբար խուժող վայրենի ցեղերի ավերածությունների դեմ: Ինչ արժանիք և ունենան արաբները, անպայման պատասխանատու են, որ տապալելով պարսից պետությունը, չկարողացան փոխարինել նրա պահապանի դերը և փրկել քաղաքակիրթ Արևելքը թուրանական Արևելքի վայրենությունից: Այն խորհրդավոր Գայլը՝ թե գայլանման Գազանը, որ առաջնորդում էր իրենց իսկ ավանդությամբ թուրքական ցեղերին՝ դարերե ի վեր ռռնում էր Իրանի սահմանագծի վրա, սովալլուկ և արյունռուշտ, պատրաստ լափելու շեն աշխարհները, բայց չէր հանդգնում անցնել պարսիկ նիզակների պատնեշը: Ակներև է, որ եթե իրանական կազմ պետականությունը չքայքայվեր արաբական աշխարհակալությամբ, նա ի

վիճակի պիտի լիներ վանել սելջուկ, մոնղոլ և թաթար հեղեղները դեպի հյուսիսային հեռաստանները, ինչպես վանեց իր ժամանակին հոների ոչ նվազ կործանարար արշավանքը:

Ֆիրդուսին գիտե Իրանի այս դերը, գիտե որ Թուրանը զսպված է եղել դարերի ընթացքում. ուստի և թաթարական վտանգ չէր սպասում: Այս է թերևս պատճառը, որ Սալմին տալիս է բաժին Արևմուտքը, և Զոհակը կամ հոչակավոր Աժդահակը կերպարանափոխվում է արաբի: Սակայն Արևմուտքի ներկայացուցիչ կամ արևմտյան մեծ պետության մարմնացումը Աղեքսանդրն է: Նա քրիստոնյա է ըստ Ֆիրդուսիի, այսինքն՝ բյուզանդական քրիստոնյա պետության դիմառնությունն է: Զարմանալի է, որ Իրանի զավակը և իսլամի հոգևոր ծնունդը ատելություն չունի դեպի Իրանի դարավոր ախոյանը, այլ ընդհակառակը, համակրանք է տածում. արդյո՞ք նրա համար, որ Բյուզանդիան հակառակորդ է ատելի արաբներին: Թերևս: Բայց թվում է, թե այս վերաբերումը մասամբ արձագանք է Իրանի հին ավանդության, Պարթևյան շրջանի արևմտասիրության: Պարթևյան պետությունը կանգնած էր հելլենիստական քաղաքակրթության գետնի վրա: Կռվելով հանդերձ Հռոմի հետ, բնավ չէին խորթանում հելլենիստ լուսավորությունից, պարթև թագակալները պատիվ էին համարում կրել **հելլենասեր** և նման տիտղոսներ: Այս տեսակետով պարթև հարստությունը առաջադեմ, լուսամիտ և մարդասեր էր ավելի, քան Աքեմենյանը և Սասանյանը:

Սիրել քրիստոնյա արևմուտքը՝ նշանակում է հաղթահարել դարու կրոնական մոլեռանդությունը: Ֆիրդուսին սիրում է իր կրոնը, բայց մոլեռանդ չէ: Հարգանք ունի բոլոր կրոնների հանդեպ, որովհետև այն հայացքը ունի պատմության վերա, որ ղեկավար ուժը բանականությունն է և ոչ հավատը, որի նյութը, աստվածությունը, անհաս է և անմատչելի մեր քննության: Շահնամեն խիստ խոշոր գործ է, որպեսզի գաղափարական ներդաշնակություն պահպանված լինի ամենուրեք: Բանաստեղծը, որովհետև բանաստեղծ է, գերի է իր տրամադրության և հաճախակի օրորվում է զգացումների ալեկոծության մեջ, երբեմն սավառնում է դեպի բարձունք, երբեմն շրջում ժամանակի նախապաշարումների և ընդհանրացած հասկացողությունների տափաստաններում: Անհետևողականությունը, որ նկատելի է ներհակ հայացքների տարօրինակ ելևէջների մեջ, մասամբ վերագրելի է այն աղբյուրներին, որոնցից օգտվել է: Այլևայլ ժամանակի և այլազան շնչով և ոգով գրված հիշատակարաններ են եղել իր տրամադրության տակ: Բանաստեղծի գործը չէր հարթել հակասությունները և շարել գաղափարական թելի վրա: Այն բարձր թռիչքները, որոնցով նա վերանում է երբեմնակի իր դարու մտավոր մակարդակից շատ վերև քավում



են նորա թուլությունները: Այսպես կրոնական համբերատարությունը Ֆիրդուսիի թանկ զարդերիցն է, «թագավորը պետք է հավատ ունենա, բայց հպատակների կրոնական տարբերությունը բնավ վատ բան չէ»: Նման մի միտք արտահայտված այնպիսի մի դարում, երբ մարդկային խղճի և մտքի վերա ծանր շղթաներ էին կախված, երբ բարեպաշտ կայսրերը չէին հանդուրժում անգամ եկեղեցու այլադավան զավակներին, անտարակույս մեծության շուք է բերում հեղինակին: Հարգել կրոնը, նշանակում է հարգել ազգությունը, որովհետև կրոնն էր այն ժամանակ դրոշակակիր ազգության և ազգային արժեքների, գիտության, արվեստի, հոգևոր հարստության:

Այս ազատամիտ հայացքը ևս կապում է Ֆիրդուսիին գաղափարապես Պարթևյան շրջանին: Պարթևների ժամանակ էր, որ իրանյան և հելլենական աստվածները համարվում էին համազոր և վայլում հավասար պաշտամունք:

Շահնամեի հարուստ գանձարանը պրպտելու նպատակ չունեմ: Շատանանք երկու հիշյալ թանկագին մարգարիտով՝ սեր արևմտյան քաղաքակրթության և հարգանք ազգային սկզբունքի:

Երկու հասարակ ճշմարտություն, որին Արևելքը վաղուց ծարավի է, և որը մեծ բանաստեղծը թողել է սրբազան ավանդ նույն Արևելքին, որպես անհրաժեշտ պայման առաջադիմության և ճշմարիտ երաշխիք ազգերի հավաք և համերաշխ գործակցության: Այս և միայն այս բավական է, որ արևելյան ժողովուրդները, որ ապրել են և ապրում են Առաջավոր Ասիայի երկնքի տակ, երջանիկ, թե բախտազուրկ, գլուխ խոնարհեն պաշտամունքով հազարամյա դամբարանի առաջ, լի հավատով, որ Իրանը և հարևան երկրները պիտի հիմնեն իրենց վերածնունդը այդ սկզբունքների վրա:

Օրվան տոնակատարությունն արդեն գրավական է, որ հույսերը ապարդյուն չեն: Պատահական երևույթ չէ, որ Ֆիրդուսիի հիշատակը տոնված է այժմ և միմիայն այժմ, երբ Իրանի վերածնունդը առաջանում է **պահլավ** դրոշի տակ (2): Ֆիրդուսին ունեցել է ուրիշ տարեդարձեր և ոչ-ոք չէ մտածել վերհիշելու նրա անունը: Բնական է, որ պիտի հիշեր հազարամյա ծերունին նա, որ այնքան թանկ էր Ֆիրդուսիին: **Պահլավ** և **Պարթև** միևնույն բառերն են, մեկը նոր ձև, մյուսը՝ հին: Պարթև հայերենում հասարակ անուն է դարձել լավագույն իմաստով, իսկ **պահլավ** տվել է Իրանում **փահլևան** բառը, որ նշանակում էր նախապես հերոս: Այդպես են կոչվում Շահնամեի հերոսները: Մի պերճ ապացույց, թե որքան բարձր է գնահատել ժողովուրդը Պարթև տիրապետության ոգին և ազնվացրել իր հիշողության մեջ:

**Պահլավի** անվան ընտրությունը թվում է, թե գիտակցական է և

խորհրդավոր: Հասարակ տիտղոսի հանգամանք չունի, այլ նշանաքան է, որոշ ծրագիր: Ասել է, թե Պարսկաստանի վերածնությունը խոստանում է պահլավյան ոգի, պարթևյան լավագույն ավանդությունների վերակենդանություն: Եվ այս կլինեն մեծագույն հարգանքը փահլևանների երգչի անմահ հիշատակին:

Ֆիրդուսիի տոնը, որպես քաղաքակրթական հայտնություն, մոտ է հայերիս սրտին (3), որովհետև քաղաքակրթության և լույսի անունով է, որ այնքան արյուն ենք թափել: Բարեկամ ենք և նպաստող ոչ միայն Իրանի, այլև Առաջավոր Ասիայի մյուս երկրների վերածնության: Դարեր շարունակ հալածվել ենք խավարամիտ բռնությունից միմիայն նորա համար, որ երեսներս դարձրել էինք դեպի լուսավոր Արևմուտքը, դեպի քաղաքակրթության լույսը: Այժմ այդ լույսն է, որ գալիս է փարատելու Արևելքի ոճրագործ խավարը: Այստեղ է մեր պայքարի և մարտիրոսության հաղթանակը:

Ֆիրդուսիի տոնը առաջին ցոլքն է այն լուսավոր իրականության, որի մասին երազել ենք մեր կյանքի խավարչտին քանտերից և որը պիտի շաղկապե արևելյան ժողովուրդները ազգային անհատականության և միասնական աշխատակցության և հանուր քաղաքակրթության հողին վերա:



# ՔՆՆԱԿԱՆ ՏԵՂԵԿԱԳԻՐ ՊՐՈՖ. Ն. ԱԴՈՆՑԻ

**Ի մասին Գարեգին արքեպիսկ. Հովսեփյանի «Հոգևոր կենտրոններ և Գլաձորի բարձր դպրոցը» ուսումնասիրության**

***Գերապատիվ և սրբազան Հա՛յր (1),***

Գարեգին արքեպիսկոպոսի աշխատությունը, որ հաճել էիք ղրկել ինձ, ստացած եմ իր ժամանակին և մեղապարտ եմ, որ անմիջապես Ձեզ ոչինչ չգրեցի այս մասին, չգրեցի, որովհետև հույս ունեի, թե շուտով և հաճույքով պիտի կարողանայի կատարել Սրբազնությանդ պարտավորիչ պատվերը, մանավանդ որ հայր Գարեգինի գործերն իրենց ինքնահատուկ դրոշմով ինձ մոտեն ծանոթ լինելով՝ դժվար չէր բնավ առաջին ակնարկից ևեթ գաղափար կազմել յուր այս նոր աշխատության մասին և արդյունքը Ձեզ հաղորդել: Սակայն ընթացիկ հոգսերը արգիլեցին և միայն այժմ հնարավորություն տվին աչքի անցնել. և ահա՛ ստորև հայտնում եմ Ձեզ տպավորություններս, որոնք Ձեզ համար նորություն չպիտի լինին, քանի որ հորդ հմուտ աչքը արդեն դատած և կշռած է անշուշտ գործի ակնհայտնի արժանիքները:

Հայ մշակույթի պատմության համար մի խոշոր նպաստ է Գարեգին սրբազանի «Թարգմանչաց -Դուրյան» մրցանակին ներկայացրած գործը՝ **«Հոգևոր կենտրոններ և Գլաձորի Բարձր դպրոցը»**: Այս գործը «Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ» աշխատության շարունակություն լինելով հանդերձ (2), ինքն իրեն մի ամբողջություն է: Սովորական կարծիք է, որ Բագրատունյաց անկումից հետո հայ կյանքը գահավիժում է և մտնում մի խավար շրջան, գրեթե կանգ է առնում դարեր շարունակ կաշկանդված իր գործունեության մեջ՝ շնորհիվ իր շուրջը բռնացող օտարոտի կարգերի: Սակայն, հակառակ այն ծանր կացության, որ ստեղծվել էր Հայաստանում և ամբողջ Առաջավոր Ասիայում հեռվեն խուժած նոր և բարբարոս ժողովուրդների հեղեղումով, անուրանալի է, որ հայ կյանքը չէ մահացել: Հայ հեզ աշխատասիրությունը, շինարար ոգին և արթուն միտքը շարունակել են փայփայել զանազան կենտրոններում, ինչպես մշտավառ ճրագներ, և հավետ կենսունակության ապացույցներ տվել քաղաքակրթական նորանոր ճիգերով և ստեղծագործությամբ:

Արդ Գարեգին սրբազանը նպատակ է դրել ժողովել և ներկայացնել այն գանձերը, որոնք սփռված են անլույս համարված դարերում, հայ արվեստի

և գիտության գանձերը՝ թաղված փլատակների տակ և ձեռագրերի խորքերում: Զաքարյանների շրջանում և նրանց շնորհիվ երևան են գալիս մի քանի իշխանական գերդաստաններ, որոնք հաջողում են խոհուն քաղաքականությամբ մեղմել ահարկու բռնակալության թափերը և ստեղծել տանելի պայմաններ խաղաղ աշխատանքի համար: Պռոշյան, Օրբելյան, Դոփյան, Ջալալյան, Վաչուտյան և այլն տոհմերը լուսաշող աստղեր են հայ մթին երկնակամարում, որ առաջնորդում են աշխարհաշեն և մտացի ուժերը: Հայր Գարեգինը ծրագրել է պանծացնել նրանց հիշատակը հատկացնելով յուրաքանչյուրին առանձին հատոր, սկսելով Պռոշյաններից: Արցախի Խաղբակյան տոհմի մի շառավիղն են Պռոշյանք, որ տիրացան XII դարի սկզբին Վայոց Ձորին և այն տեղ իշխեցին սերնդե սերունդ մինչև XIV դարը, ի դեմս Վասակի (†1224), Պռոշի († 1284), Պապաքի (†1298), Էաչի († 1317), Ամիր Հասանի († 1351), Արղութի († 1385): Այնուհետև հաջորդական գիծը բեկվում է, բայց տունը չէ մարում, այլ առկայծելով հասնում է մինչև Իսրայել Օրին (†1711)՝ Պռոշյան քաջարի տան վերջին զավակը, և մեր նոր հայրենասիրության վերջին երազուն դեմքը: Ժամանակակիցները գնահատել են արժանապես Պռոշյան տան նշանակությունը, անվանելով Պռոշին «զարդ հեծելի, որ զերկաթի դուռն առնէր փոշի, աջու բազուկ Նոր Սիոնի, հիմն հաստատ հայոց հաւատի» (3):

Պռոշյանց գործունեությունը քաղաքական և հասարակական ասպարեզում, նրանց շինարարությունը, կառուցած վանքերն ու բերդերը լուսաբանված են ամեն կողմից այն հատորում, որ Գարեգին սրբազանը լույս է ընծայել 1928 թվին[1]: Ներկա հատորը նվիրված է բացառապես նույն տոհմի հովանավորության ներքո ծաղկած հոգևոր կյանքի, մտավոր հոսանքների, որոնց կենտրոններ հանդիսացան Կեչառիսի, Այրիվանքի և Գլաձորի գիտական մենաստանները:

Այս հատորի և թե արդեն լույս տեսածի ատաղձը, հիմք կազմող փաստացի նյութերը գումարված են առանձին հատորում, կցած աշխատության որպես երրորդ մաս կամ հատոր: Սա բաղկացած է երեք բաժնից. առաջինը պարունակում է մերձավորապես երկու հարյուր արձանագրություն, երկրորդը մոտ հարյուր ձեռագրական հիշատակարան, և երրորդը՝ մի տասնյակ և ավելի մատենագրական նշխարներ: Հատուկ ուշադրության և գնահատանքի արժանի է մանավանդ այս ժողովածուն, որ հեղինակը հավելածական է համարում, բայց գործի ամենից կարևոր և

[1] Գ. Հովսեփյան, Խաղբակյանք կամ Պռոշյանք հայոց պատմության մեջ. Պատմահնագիտական ուսումնասիրություն, Վաղարշապատ, 1928:



մնայուն մասն է: Ճշմարիտ է, որ արձանագրությունների և հիշատակարանական քաղվածքների մեծագույն մասը նախապես հայտնի էր հայ բանասիրությանը, շնորհիվ Հ. Շահխաթունյանի և Ս. Ջալալյանցի և Ա. Մխիթարյանի գործերին, որոնց լիակատար ամփոփումը տվել է հ. Ալիշան «Սիսական» և «Այրարատ» երկերում, բայց և այնպես հ. Գարեգինի ժողովածուն ունի նորության բոլոր առավելությունները: Անձամբ և տեղի վրա ստուգել է գրեթե բոլոր արձանագրությունները, որ իր նախորդները արտագրել են և ավելացրել նորերը: Շրջել է բազմաթիվ վայրեր և վանքեր շեն թե ավերակ, Բջնիից սկսած մինչև Վայոց Ձոր և Ջահուկ, դիտել և նկարագրել և երբեմն լուսանկարել այցելած վայրերը, շենքերի դիրքը, ներկա վիճակը, նշանակել է հավատարմորեն արձանագրությունների տեղը պատերի վրա, և ո՞ր մասում, թե փլատակների մեջ, մի խոսքով նախատեսել է բոլոր պարագաները, որոնք կարող են որևէ նկատումով պիտանի լինել հետազոտության ժամանակ: Համեմատել է տեղն ու տեղը առաջուց ծանոթ արձանագրությունների պատճենները և սրբագրել ամենայն բարեխղճությամբ և մասնագետի սուր և գիտակ աչքով: Չկա համարյա մի արձանագրություն, ուրիշներից արտագրած, ուր որևէ ուղղում կատարած չլինի, բառ թե տառ, թե ամբողջ նախադասություն և մանավանդ տեղի և անձանց անուններ:

Նույն վերաբերումը նկատելի է և ձեռագրական քաղվածքների վերաբերյալ: Նշանակել է ձեռագիրները, նրանց թվականները, եթե հայտնի են, գրության տեղը, գրիչը և մանր հանգամանքներ, որոնք կարող են նպաստել հիշատակության պատմական, թե գրական արժեքը որոշելու:

Ահա այս եղանակով հավաքել է մի կողմից ձեռագրական հիշատակարանների մեջ թաքնված տեղեկությունները, զուգել, դասավորել և կազմել ամբողջական պատկեր այնպիսի խնամքով, այնպիսի սիրով, որ հազվագյուտ է մեր ամեն ինչ ուրացող դարում: «Հոգևոր կեդրոնները» հառնում են իրենց տխուր ավերակներից, քարերը՝ ծանրաբեռնված գրությամբ և պես-պես հիշատակներով սկսում են խոսել: Չեր առջևն են շեն մենաստաններ, որ ծաղկում են վանահայրերի հսկողության տակ, լի վանականներով, որոնք միայն աղոթողներ չեն, այլ վարդապետներ, ուսուցիչներ են, որ «դաս են ասում», ճարտար գրիչներ են, որ արտագրում են հնացած ձեռագիրները կորստից ազատելու համար նախնյաց ժառանգությունը, շնորհալի ծաղկողներ են, որ նկարազարդում են ձեռագիրները, և հմուտ ճարտարապետներ, որ վերականգնում են ավեր շենքերը և կառուցում նորերը: Բարեպաշտ մարդիկ այր թե կին, իշխանավոր թե համեստ աշխատավոր, չեն զլանում իրենց նվերները մեծ հաստատությանց, գիտնալով, որ այնտեղ են կռվում հայ ժողովրդի գոյության հիմ՝ բարոյական հիմքերը:

Շնորհիվ Պոռշյան տան հովանավորության սկսում է մի մտավոր շարժում, մի իրական վերածնունդ, որ շուտով տալիս է պանծալի դեմքեր՝ Խաչատուր Կեչառեցի, Հովհաննես Գառնեցի, Մխիթար Այրիվանեցի և վերջապես Գլաձորի Գիտուն Կաճառը բոլորված մեծ վարդապետի՝ Եսայի Նչեցու շուրջը:

Հայր Գարեգինը նկարագրել է խանդավառ ոգով այս նոր հոսանքը և նորա բարերար ազդեցությունը հայ արվեստի, գիտության և եկեղեցական քաղաքականության վերա: Առանց խախտելու հին գրականության և լեզվի իրավունքները, այլ ընդհակառակն մշակելով հին հեղինակների վերա իրենց միտքն ու աշխարհայացքը, նրանք սկիզբն դրին նոր և աշխարհիկ բանաստեղծության: Խաչատուր Կեչառեցին, Ֆրիկ, Հովհաննես Երզնկացին միջնադարյան հայ քնարերգության կարապետներն են:

***Հանցգուն զինչ աշնան քամին, որ բափէ զտերեւն***
***ի ծառէն,***
***Հողմով մեղանաց հոգս զրկեցայ յանանց պտղակէն*** *(4):*

Ահա մի նմուշ, որ նոր է և՛ լեզվով, և՛ տրամաբանությամբ և մինչև իսկ չափով, որ հետևողություն է բյուզանդական *πολιτικὸς στίχος* կոչված չափածո գրության: Ուշագրավ երևույթ է:

Գառնեցու խրատներն ևս նորություն են իրենց աշխարհային բնավորությամբ. «Մի՛ լինիր կոշտ եւ կոպիտ, անհաննճար եւ անիմաստ». «Մի՛ մնասցեն առ քեզ վարձք վարձականաց եւ աշխատութիւնք մշակաց». ***«Մի՛ քակեսցես զցանգ հայրենի եւ կամ արհամարհեսցես զեզեալ կարգս եւ զկանոնս նախահարցն»*** (5): Այս վերջին հրահանգը բնորոշում է լիովին նոր հոսանքի ոգին: Գարեգին Սրբազանը չէ մոռացել հիշել այն խոշոր դերը, որ կատարեցին Գլաձորի մթնոլորտում սնած գիտուն վանականները առնաբար ճակատ դնելով Կիլիկիայի եկեղեցականության թուլամորթ քաղաքականության հանդեպ օտար դավանությունների հավակնալից պահանջների: Պետք էր ավելի շեշտել, քանի որ ամբողջ հոսանքն ինքնին այլ բան չէր, քան հակազդեցություն «արևմտյան վարդապետների» տարտամ և սայթաքուն քաղաքականության: Ներսես Լամբրոնացին, որ կոչված էր նոր Շնորհալի լինելու Հայոց եկեղեցու համար, գերադասեց «մետաքսազգեստ» լինել օտարի նման, քան «խարազանազգեստ» իր նախնիքների հետևությամբ. և հիմը դրեց օտարամոլության. մի ախտավոր երևույթ, որ ավելի թեթևամտություն էր, քան ազատամտություն, և պիտի քայքայեր հայ եկեղեցու դարավոր կանգուն շենքը, եթե չլինեին արևելյան ախոյանների ընդդիմությունը: Գլաձորի դպրոցականների գիտական թե ազգայնական ոգին մի թանկագին ժառանգություն է ավանդած սերնդե սերունդ, ուսուցչից աշակերտ՝ Լամբրոնացու հակառակորդ Չորագետցիներից - Գրիգոր



Տուտեորդի և Մխիթար Գոշ - Վանական - Վարդան Պատմիչ - Ներսես Տարոնացի - Եսայի Նչեցի: Գառնեցու խրատը՝ «մի՛ քակեսցես զցանգ հայրենի», ուղղված է տկարամիտ օտարամոլների դեմ: Պետք է ունենալ Ստեփանոս Օրբելյանի գաղափարական քաջությունը հայտարարելու՝ թե «հաւանիմք մեք ընդ հարսն ի դժոխս իջանել եւ ո՛չ ընդ հռոմոց յերկինս ելանել». ասել է թե անտեղի և աննպատակ համարել վիճաբանությունները: Գլաձորի դպրոցի շարունակությունն է Տաթևի դպրոցը, Հոհան Որոտնեցի և Գրիգոր Տաթևացի մեծ հայրերով: Առանց այս դպրոցի՝ Միաբանողների քարոզչությունը շատ ավելի աղետաբեր հետևանքներ պիտի ունենար: Պոռշյանների օրով ստեղծված հաստատությունները պահեցին իրենց բարոյական ազդեցությունը մինչև հայրապետական աթոռի փոխադրությունը Էջմիածին 1441 թվին: Ահա՛ որպիսի նոր և ծավալուն լույս է սփռում Գարեգին Սրբազանի գործը մեր անցյալի մի խոշոր շրջանի վերա: Որպիսի ջանքով հավաքել է ցրված նյութերը, նույնպիսի սիրով մշակել է և սպառել հիմնովին իր հավաքածուն: ***Արձանագրությունների ժողովածուն, կրկնում ենք, մեծ գանձ է հայ բանասիրության՝ համար և անհրաժեշտ է որ հրատարակվի խնամքով. թերևս հիմ ծառայի ապագա*** **Corpus**-ի: Արձանագրությունները եղծվում և կորչում են և պետք է շտապել փրկել ինչ որ դեռ հնարավոր է անել: Հայր Գարեգինը նշանակել է ստորև իր կատարած սրբագրությունները. ցանկալի էր կցել նաև քննական դիտողություններ կամ մեկնություններ, լուսաբանելու համար մութ և շատ անգամ անհասկանալի կետեր: Պետք չէ կարծել, որ ինչ որ քարի վրա գրած է անպատճառ հարազատ է. քարը ևս թղթի նման անճարակ է կեղծիքի դեմ: Օրինակ Կեչառիս վանքի հիմնարկության վերաբերյալ արձանագրական վկայությունները հակասական են և կասկածելի: Սիմեոն կաթողիկոսին ծանոթ է եղել մի արձանագրություն ՆԽԴ = 995 թվից, որի համաձայն վանքի հիմնադիրը Ապիրատ իշխանն է (6): Մի այլ արձանագրություն ՆՁԲ = 1033 թ. այդպիսին համարում է «Գրիգոր Մագիստրոս որդի Հասանայ»՝ Գագիկ [I] թագաւորի և Սարգիս Ա կաթողիկոսի օրով: Մի երրորդ արձանագրական վկայությամբ եկեղեցին շինել է Գրիգոր Մագիստրոսը Կոստանդին [IX] Մոնոմախոս կայսրի հրամանով Շ = 1051 թվին: Վերջապես սույն թվից մի վերջին երկար արձանագրություն հայտնում է, որ Գրիգոր Մագիստրոսը Կոստանդին [IX] կայսրից ոսկի մատանի է բերել, ուրեմն մի քրիսոբուլ, և ազատել եկեղեցին և խնդրել որ «ամենեայն շաբաթ ար զժամն Հասանա արացեն» և նրա մահից հետո «մագիստրոսին արացեն»:

Արդ 1033 թվին ո՛չ Գագիկ թագավորը և ո՛չ Սարգիս կաթողիկոս կենդանի չէին, ինչպես նկատել է արդեն հ. Գարեգինը: Գրիգոր Մագիստրոս որդի Հասանա ծանոթ չէ պատմության: Հասանի որդին կոչվում էր Ապիրատ:

Հայր Գարեգինը կարծում է, որ Գրիգոր և Ապիրատ կրկնակի անուններ են միևնույն անձի և որ ՆՁԲ ուղղելու է ՆԾԲ = 1003, բայց Ապիրատ մագիստրոսության պատիվ չուներ: Մեր կարծիքն է, որ արձանագրությունը հարազատ չէ: Պատրոն բառն արդեն մատնում է, որ գիրը Զաքարյան շրջանից հետո է: Մյուս երկու արձանագրությունները ևս վավերական չեն: Կատարյալ անհեթեթություն է ասել, թե եկեղեցին շինված է կայսերական հրամանով և այն էլ Մոնոմախոսի պես մոլեռանդ կայսրի հրամանով: Վերջին արձանագրությունները ոճի գրության տեսակետից չեն կարող ոչ մի կերպ պատկանել Մագիստրոսին: Միակ հարազատ գրությունը պետք է համարվի Սիմեոն կաթողիկոսի հիշատակածը: Վարդան պատմիչը հաստատում է, որ եկեղեցու հիմնադիրը արդարև Ապիրատ իշխանն էր. իսկ Ուռհայեցուց գիտենք, որ նա որդի էր Հասանա և հայր Վասակի: Անհարազատ արձանագրությունների հեղինակները թվում է թե ծանոթ են եղել Ապիրատի գրին, ուր ասված է եղել, թե նա որդի է Հասանա և թե եկեղեցին շինել է Գագիկի և Սարգսի օրով և խնդրում է աղոթել իր հոր «Հասանի համար» և նրա մահից հետո Ապիրատի համար: Գրիգոր Մագիստրոս հիշում է Մարմաշենի վանահոր Սոսթենեսին գրած նամակում, որ ի նպաստ Մարմաշենի ոսկի մատանի է հայթայթել[1]: Այս հասկանալի է, որովհետև Մարմաշեն կառուցել էր իր հորեղբայր Վահրամը: Մագիստրոս անշուշտ կհիշատակեր, եթե նույն արտոնությունը վերապահված լիներ նաև Կեչառիսի վանքին: Կեղծյալ արձանագրություններն ուշ են, քան Վարդան պատմիչը. սա եղել է Կեչառիսում և հարևան վանքերում, և չէր զլանալ հիշել Գրիգոր Մագիստրոսի անունը, որպես վանքի շինող, եթե որևէ արձանագրություն տեսած լիներ: Բջնո Բարսեղ եպիսկոպոսը, որ հիշվում է 1051 թվի արձանագրության մեջ, հավանորեն, այն անձն է, որ մասնակցեց 1295 թվի ժողովին, գումարված Ստեփանոս Օրբելյանի նախաձեռնությամբ ընդդեմ Գրիգոր Անավարզեցու: Վանքերն ևս իրենց գործելակերպն ունեին, երբ խնդիրը հասնում էր վանքի արտոնությունները պաշտպանելուն: Ամեն պարագայի քարերի լեզուն ևս պետք ունի քննության նախ քան ականջ կախել նրանց թելադրությանց:

**Թանատի վանքի մի արձանագրություն կարդացվում է այսպես.**

***Յանուն Այ. ես Բուրայիս թոռնս Սամադալին որդի***
***Այնասունայ ես Սարգիս որ տվի Թանատի Վանից Սր.***
***Ստեփանոսի զՋարի հայ վարին հողն նացան հայրենիք***

[1] Կ. Կոստանյանց, Վիմական տարեգիր, Ս. Պետերբուրգ, 1913, էջ 103:



***Նաքան տվին ինձ զայտնութե. ե. ար. թ. խր. անով, ով***
***Խափանէ յժր. Հայրապետացն նզովեալ եղիցի***[1]:

Հայր Գարեգինը կարևոր սրբագրություններ է արել իր նախորդների արտագրության մեջ: Հիշենք միայն՝ «ջարնավարին հողնացան հայրենիք անքակ» անիմաստ ընթերցվածը, կամ «զՋատինաց վարին հողենացանի հայրենիքն»: Սամադոլե, Սամադդոլե արաբ[երեն նշանակում է] անուշ, [իսկ] Այնասուն՝ կամ Այնասունա՝ հավանորեն պարսիկ Այնասիմա, «մաքուր երես ունեցող»: Սակայն մնում են տակավին մութ կետեր: Ի՞նչ է նշանակում «զջարի նայ վարին հողն». արդյո՞ք ճամփի (ճանապարհի) այն վարի հողը: Հայր Գարեգինը հնարավոր է գտնում կարդալ նաև ջատի. գուցե **ջափի** (ճամփի): «Յայտնութեան Ե. ար» թվում է, թե պետք է կարդալ Ա. ար: Տարօրինակ է, որ արձանագրությունը սկսում է Բուրայիս, բայց շարունակում է Սարգիս խոսելով միայն իր անունով, (տվի, նաք (= նոքա) տվին **ինձ**): Հայր Գարեգինը չի նշանակել թե դրան որ կողմն է գտնվում այս արձանագրությունը: Բայց հաջորդ արձանագրության համար ասված է, որ դրան աջ կողմն է զետեղված և կարդացվում է այսպես.

***Կամաւ Այ. ես Բարինայ միաբանեցայ Սր. ուխտիս ետու յիմ հալալ ընչից ընծայ ի Սր. Ստեփանոս միաբանքս սահմանեցին ք. ար պատարագ Սր. խաչին. կատարիչքն աւրհնին յԱյ.***[2] (7):

Անտարակույս է, որ այս Բորինա նույն անձն է ինչ որ նախորդ արձանագրության մեջ կոչված է Բուրայիս և որի նվիրաբերությունը չէր հիշված, այստեղ պակասը լրացվում է: Արդյո՞ք գրիչն է պատասխանատու այս անկարգ գրության համար: Անձի անունն է իսկապես Բուրա և ոչ Բուրայիս, որ է փոխան ես Բուրայ-ս: Բորինա պետք է կարդալ՝ **Բարի նայ միաբանեցայ**, ուր **նայ** ժողովրդական լեզվի մեջ **ահա**-ի իմաստ ունի և կարծես թե ակնարկ է թե լրացնում է ինչ որ բաց է թողած նախընթաց արձանագրության մեջ: Առաջին արտագրողները կարդացել են **Բարինա**, որ իրավունք է տալիս համարել իսկական ձևը **Բարի** և ո՞չ Բորի: Բուրայ անունը հայտնի է Հայր Օհաննավանքի (Նոր-Բայազետի մոտ) մի արձանագրությունից: Բուրա կարող է աղվել Բուրե (հիշենք հին Դատարա և Դատարե), որից և Բուրի՞: Կեչառիսի մի արձանագրության մեջ[3] ոմն Հայրաձայն գնել է «յԱռինչք յիմ պատրոն Բուպալէն»: Իսկ Բուրայի արձանագրության մեջ ասված է որ նա «ետ առու ինչք զայգին Ոսկերակայ»

[1] Տե՛ս Գարեգին սրբազանի սույն աշխատության հավելված Ա, № 167:

[2] Անդ, № 168:

[3] Անդ, № 42:

և այլն: Առուինչք, հավանորեն, նույն Առինչի գյուղն է: Եթե այս ճիշտ է, այն ժամանակ **Բու պ - ալ** սրբագրելու է թերևս **Բուպա յ էն**, նույն Բուքայ անվան մի այլ հնչյունը: Հարկավ անձերը կարող են տարբեր լինել. կա և Բոքա(յ) և Բոքէ, որ կնոջ անուն է: Քիչ չեն արձանագրությունները, որ նման դիտողության առիթ են տալիս:

Հատուկ անունները ուղղելիս՝ լավ կլիներ հիշատակել այլ վկայություններ, եթե կան ի նպաստ նոր ընթերցումի: Օրինակ՝ Թեկղի անվան փոխարեն հ. Գարեգին կարդում է Թէիկ (Հավել., Ա, 163, տե՛ս Աստ, եր. 339): Ի հաստատություն, պետք էր հիշել նույն անունը Թայիկ և Թաիկ գրությամբ պատահում են այլուր (Բագնայր, Հոռոմոս և Հովհաննավանք):

Կան դեպքեր, ուր հնարավոր է ճշտել ընթերցումը: Օրինակ՝ զկաւանոցի նորքն ավելի լավ է կարդալ՝ զկաւանոց ի նորքն: Անծանոթ և անսովոր բառեր պետք է նկատողության առնվին մինչև անգամ, երբ դժվար է մեկնել: Օրինակ՝ **Շինակնատուն**, անշուշտ շինական ա տուն, թեև իրական իմաստը մնում է մութ: **Նավայոար** = Նաւասարդ, **ասարանոց**, որ հ. Գարեգին կարծում է ուղղել՝ ամարանոց: Թվում է թե պարսիկ hasar = սառույց բառից է և նշանակում է սառցատուն: Քրդերենում ծանոթ է այդ բառը, թեև հեղաշրջված՝ sahar, և ուրեմն հավանական է, որ մեր ժողովրդի մեջ էլ գործածական լիներ:

Նվիրատուների տալիքը և պայմանները ավելի կարևոր են, քան կարծվում է և պետք է ուշադիր լինել ստույգ ընթերցանությամբ: Օրինակ՝ Մամքուն նվիրում է Ի = 20 դահեկան և պարտավորում երկու ժամ (Հավել., Ա, 83): Սխալ է, պետք է կարդալ Խ = 40 դահեկան: Նկատելի է, որ տարվան մեջ մի ժամ (այսինքն, պատարագ կամ եկեղեցական պաշտոն արժե 20 դահեկան, երկու ժամը՝ 40 դահեկան, երեք ժամը՝ 60, վեց ժամը՝ 120 և այլն), երբ մի այգի նվիրաբերողը պահանջում է 2 ժամ, նշանակում է նորա այգին արժե 2×20 = 40 դահեկան: Եվ ուշագրավ է, որ այգիների խոշոր մասը գնահատված է 2 ժամ, այսինքն՝ 40 դահեկան: Երբ մի խորանի շինության համար պարտադրում է չորս ժամ, նշանակում է շինությունը նստել է 4×20 = 80 դահեկան: Այսպիսով ստանում ենք մի որոշ պատկեր տնտեսական կյանքի վերաբերյալ երևույթների: Ոմն (Հավել., Ա, 33) տալիս է 1000 սպիտակ և խնդրում հինգ ժամ: Հինգ ժամը արժե 5×20 = 100 դահեկան. որի հակաշիռն է հազար սպիտակ, ասել է, թե 10 սպիտակը մի դահեկան է: Մի ուրիշ անգամ տասն հազար սպիտակի դեմ համաձայնում են տալ քառասուն ժամ, ուրեմն 40 × 20 = 800 դահեկան: Տասն հազար սպիտակ = ութ հարյուր դահեկան. հետևաբար՝ մի դահեկան կարժե $12\frac{1}{2}$ սպիտակ: Դահեկանն՝ ոսկի դրամ է, սպիտակը՝ արծաթ: Ոսկե և արծաթե դրամների այս հարաբերությունը (1= 10 կամ $12\frac{1}{2}$) հաստատվում է ուրիշ աղբյուրներից: Հիշենք նաև, որ 40 դուկատը պարտադրում է 2 ժամ, այսինքն՝ 40 դահեկան,



որից երևում է, որ դուկատը ոսկի դրամ է հավասար դահեկանի: Այս և նման անսպասելի և կարևոր հետևությունները պահանջում են, որ արձանագրությունները որքան հնարավոր է խնամքով հրատարակվեն: Հ[այր] Գարեգինը սովորություն ունի երբեմն նկատողություններ դնել արձանագրությունների բնագրում հարցական նշաններով և կամ մեկնություններ տալով: Կարծում եմ, որ հրատարակության միջոցին, ձեռնպահ պետք է մնա այս ձևից և իր ասելիքը զետեղե բնագրից դուրս ստորև նկատողության և ուղղումների բաժնում: Կասկած չունինք, որ հրատարակությունը կպատասխանե ժամանակակից պահանջներին և կդասվի որպես մնայուն գործ հ. Գարեգինի մյուս աշխատությունների շարքին: Պետք է խոստովանիլ, որ սրբազանի գրեթե բոլոր բանասիրական և պատմական վաստակները հարատև լինելու բացառիկ բախտ ունին, սկսած, իր անդրանիկ գործից՝ **«Սասմայ ծռեր»**[1], մինչև **Խաղբակյանք**-ներին նվիրած վերջին աշխատությունը: Գարեգին սրբազանը չէ սիրում շրջել կոխտած տափերի վերա և ո՛չ եռանդ թափել անլուծելի խնդիրների շուրջը, այլ հետամուտ է եղել միշտ նորություններ բերել հայ բանասիրության: Առաջին երկերն արդեն բնորոշել և նախագծել են նրա հետաքրքրության և նախասիրության դաշտերը ու առավելապես հայ ժողովրդի ստեղծագործության գեղեցիկ արվեստների աշխարհում: Կես դար շարունակ հետևել է միանգամ գծած ուղիին անվրեպ և անշեղ, հետևել է զեղուն սիրով և անընկճելի եռանդով, առանց երբեք թերանալու իր եկեղեցականի ծանր պարտականությանց մեջ: Գլաձորի դպրոցի այսօրվա ուսումնասիրողը, կարելի է ասել առանց չափազանցության, ավելի իրավունք ունի, քան որևէ ուրիշը, համարվել նույն դպրոցի հայրենաշունչ ոգու և նորա շուրջը դեգերող սրբակրոն վանականների հեռավոր ավանդապահը ո՛չ միայն իր գիտական պատրաստությամբ, այլև կրոնավորի անաղարտ վարքով: «Վարդապետ կոչեմ ոչ զայն,-ասում է Գլաձորի իմաստությունը,- որ բազում բանս ի բերան առնու, այլ որ մաքուր վարս ստացեալ ունի»: Այս կրկնակի նկատումով «Թարգմանչաց-Դուրեան մրցանակ»-ը ավելի արժանավոր թեկնածու չի կարող ունենալ, քա՛ն ներկայացված աշխատության հեղինակ Գարեգին արքեպիսկոպոսը, հայ եկեղեցու և գիտության անձնուն սպասավորը (8):

Խոսքս երկարեցավ, թեև երկարաբանություն պետք չէր, թո՛ղ ներող լինի Ձերդ Սրբազնությունը և ընդունե հարգալիր ողջույններիս հետ բարեկամությանս և պատրաստակամությանս հավաստիքը:

Օրհնությունդ հայցող և միշտ անձնվեր:

Ն. ԱԴՈՆՑ

[1] «Սասմայ ծռեր. Սասունցի Դավիթ», Թիֆլիս, 1892:

# «ԴԱՎԻԹ ԲԵԿ» ՎԵՊԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԻՄԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՐԺԵՔԸ

Պատմական վեպը պատվավոր տեղ է բռնում Րաֆֆու գրականության մեջ: Նրա համար անցյալն իր հիշատակներով լավագույն միջոցն է սքանչելու ազգային ինքնագիտակցություն, վառելու հայրենասիրության ոգին. «Քրքրի՛ր մի ազգի հնությունները,- ասում է նա, և մի գիշերվա մեջ կզարթնեն նրա թմրած հոգին»: Այս համոզումով է, որ հորեկյարը (1) մեկեն ավելի գործեր է նվիրել պատմական անցյալին:

**«Դավիթ Բեկը»** նրա պատմական վեպերից լավագույնը չէ արվեստի կողմից, բայց կարևորագույնն է հրապարակախոսի խրոխտ ձայնով: Նյութը՝ մոտիկ անցյալից է, ուստի և ավելի հուզիչ: Դեմքերը ևս մեզ հարազատ են՝ խոսում են, դատում հարցեր, որ այժմեական են, տառապում են ցավերով, որ մերն են, գործում են մեր սրտով: Լեզուն՝ առօրյա, հասարակ, ոճը՝ պարզ, մերկ գրական սեթևեթանքից, շեշտը՝ ազդու և անկեղծ, մտքերը՝ վեհ, քաջության, հայրենասիրության, ազատության գաղափարները՝ հասցրած պաշտամունքի բարձրության. հատկություններ են, որ գրավիչ են, ընդունակ տպավորելու, լարելու պատանի սրտերը վսեմ զգացումներով[1]: Ահա ինչու **«Դավիթ Բեկը»** դեռ չէ փոշոտել և մնում է ընթերցանության սեղանի վրա:

Կես դարուց ավելի է, որ հնչում է փողի նման ազատությո՛ւն, ազատությո՛ւն, որն ազդել է սերունդների վրա: «Դավիթ Բեկի» երեսը դարձած է դեպի անցյալը, բայց խոսում է ներկայի, ապագայի համար:

Տեսնենք ի՞նչ է տեսել անցյալում և ի՞նչ է խոսում մեզ:

«Դավիթ Բեկ» վեպը հիմնված է ամբողջովին մի գրքույկի վրա, որ լույս տեսավ Ս. Էջմիածնի տպարանից 1871 թվին **Արզար Գուլամիրյանի** ջանքով: Գրքույկի վերնագիրն է՝ **«Դաւիթ Բէկ, պատմութիւն Դաւիթ Բէկին**

1 Թե ի՛նչ տպավորություն է թողել «Դավիթ Բեկը» իր անդրանիկ ընթերցողների վրա, կարելի է դատել հետևյալ օրինակից: Հիշում եմ մի գիրք (կարծեմ, նույն իսկ «Դավիթ Բեկ» վեպն էր), որի վրա Ատրպատականի այժմյան առաջնորդ Ներսես արքեպիսկոպոս գրել էր իր պատանեկության օրերին, երբ տակավին սան էր ճեմարանում «Նիկողայոս Մելիք - Թանգյան՝ Դավիթ Բեկ Երկրորդ» (2):



**եւ պատերազմացն Հայոց Խափանու որք եղեն ընդդէմ Թուրքաց ի մերում ժամանակի, այն է յամի տեառն 1722 եւ Հայոց 1171»** (3):

Այս հրատարակության առթիվ Րաֆֆին նկատում է, որ «նրա հեղինակը մինչև այսօր մնում է անհայտ, ձեռքից ձեռք անցնելով հեղինակի անունը եղծվել է: Ես անտեղի եմ համարում խոսել այդ մասին, միայն կհիշեցնեմ հայկական առածը՝ «գողը գողից գողացավ, Աստված տեսավ՝ զարմացավ» (**«Խամսայի մելիքությունները»**[1]:

Ափսոս, որ Րաֆֆին գաղտնիք է պահել իր կասկածները: Արդյոք կարծո՞ւմ էր, որ Գուլամիրյանի հրատարակությունը պատկանում է Հասան-Ջալալյանի (4) գրչին: Կարապետ վարդապետ Շահնազարյանցը ևս գրի է առել Դավիթ Բեկի պատմությունը 1840 թվին, երբ Տաթևի վանքի առաջնորդ էր: «Ո՞ր հայը չէ լսել, - գրում է նա, - Դավիթ Բեկ Սյունեցու գովանի գործերը, որ իր ազգի ազատության սիրով վառված՝ փորձեց թոթափել մեր երկիրը օտար լծից: Ես թշվառականս, որ 16 տարի առաջ կոխում էի քաջերի արյունով ոռոգված երկիրը և աչքիս առաջ էին Հալիձորի, Կապանի, Բաղաբերդի ավերակները, որպես ցավագին հիշատակներ մեր նախնյաց աշխարհաշեն ջանքերի և նրանց հանգած փառքի, սիրում էի նստել Պեխ գյուղի ալևոր բնակիչների հովանու տակ և լսել հարյուրամյա Ստեփաննոս ավագ քահանայի պատմածները: Ստեփաննոսը թոռն էր Պալի, Դավթի կտրիճներեն մեկի: Դավթի քաջագործությանց ստույգ պատմությունը գրի առի և դրի Ս. Էջմիածնի Մատենադարանը Հովհաննես եպսկ. Շահխաթունյանի ձեռքով»: Կարապետ վարդապետը ցավ է հայտնում, որ իր գործը անհետ կորավ Էջմիածնում. «Ահագին զերօ մի եկուլ զայն եւ անհետ արար առ յաւիտեան»[2]:

Րաֆֆու խորհրդավոր ակնարկը գուցե վերաբերում է Կարապետ վարդապետի կորած աշխատության: Եթե այս է նրա կասկածը, անհիմն է: Րաֆֆին ուշադիր չէ եղել Գուլամիրյանի հրատարակության խորագրին՝ ուր ասված է. «Զորս եւտուն գրել, որք ի սկզբանէ մինչև ցվախճան յառաջադէմ լեալք էին յամենայն պատերազմունս և ականատես իրացն եղելոց, այսինքն Ստեփաննոս Վրդանիսեան, որ ի տանէն էր Շահումեան, ի գաւառէն **Փոքր Սիւնեաց**, և յաւանէն Եկտաստանաց, և այլ ոմանք ընդ նմա,... **վարդապետի**...»:

Հավանորեն ընդգծած վարդապետ բառն է, որ տեղիք է տվել մեր վիպագրի կասկածանքին: Հայտնի է, որ ծածկանուն վարդապետը հայր

1 **Րաֆֆի**, *Խամսայի մելիքությունները*, էջ 305-306:

2 **Ստեփանոս Օրբելյան**, Պատմութիւն նահանգին Սիսական, հատ. 1, Փարիզ, 1859: Առաջաբան, էջ 7-8:

Ղուկաս Ստեփանեան Սեբաստացին է, Մխիթարի աշակերտը (5): Նա է, որ գրի է առել ինչ որ պատմել է Ստեփաննոս Վրդանիսյան Շահումյանը, Դավիթ Բեկի գործակիցներից մեկը, այն անձը, որին Րաֆֆին խիստ հարգի տեղ է հատկացրել իր վեպի մեջ: Շահումյան ընտանիքը մելիքական ծագում չուներ, հակառակ Րաֆֆու կարծիքին: Առևտրական տուն էր: Ստեփաննոսի հորեղբայրները՝ Ոսկան և Հայրապետ հաստատված էին Վենետիկ 1650 թվականներից ի վեր: Դավիթ Բեկի շարժումից հետո Ստեփաննոսը տեղափոխվում է Վենետիկ և պարապում առևտրով: Վենետիկի Ս. Խաչ եկեղեցու երեսփոխան է եղած 1743 թվին: Ամուսնացել է Ռոզալդա անունով օրիորդի հետ, որ Պոլսի հայ ընտանիքից էր և ունեցել է զավակներ (6), որոնցից վերջինը մեռած է 1783 թվականին: Ստեփաննոսը Վենետիկ է եկել 1734 թվից առաջ: Այս թվին նա արդեն Վենետիկ էր և մասնակցել է մի հանգանակության, ինչպես երևում է Ս. Խաչի դիվանի մի գրությունից: 1757 թվին սնանկացել է և մեռել կարոտության մեջ: Ստեփաննոս իր երկու ազգականների հետ մի խորան է կառուցել Վենետիկ Ս. Ղազարի վանքում և սեղանի առաջ՝ մի դամբարան իրենց տոհմի համար, ուր արձանագրության մեջ կարդացվում է նաև Ստեփաննոս Շահումյանի անունը, ինչպես հայտնում է հայր Ղ. Ալիշան **«Սիսականի»** մեջ:

Ղուկաս վարդապետը վախճանվել է 1751 թվին (7), ուրեմն պատմությունը գրված է այս թվից առաջ: Ստեփաննոսն արդեն Վենետիկ էր 1734 թվին և հավանորեն թողել էր պատերազմի դաշտը 1730 թվին՝ Մխիթար սպարապետի սպանության տարին, որով վերջացավ շարժումը: Մեզ հասած պատմությունը թելադրված և գրված է հետևապես 1730-1751 տարեշրջանին (8), և առավել սկիզբը, քան վերջը: Այս տեղեկությունները պետք են, քանի որ Ստեփաննոսից է ծագում վեպի պատմական նյութը և սրա արժեքը որոշելու համար կարևոր է ունենալ պատմողի ինքնության վկայագիրը: Շահումյանը հավատացնում է, որ Դավիթ Բեկին մոտիկ և սիրելի անձ էր և ինքն էր՝ Ստեփաննոսը, գործի նախաձեռնողը: Գուլամիրյանի գրքույկը ներկայումս շատ հազվագյուտ է և անմատչելի լայն հասարակության, ուստի ավելորդ չենք համարում տալ նրա ամփոփ բովանդակությունը նախքան նրա քննության անցնելը:

Շահումյանի պատմելով, 1721 թվին լեռնականները ասպատակում են Շամախի և Գանձակ քաղաքները և մեծ վնաս հասցնում ժողովրդին: Լուրը հասնում է Ղափան և շփոթում ազգաբնակչությունը. հայ և պարսիկ (իմա՛ թուրք) կորցնում են փոխադարձ վստահություն, դադարում է երթևեկություն: Ստեփան Շահումյան թողնում է հայրենի Վանք գյուղը և անցնում Սիսական (իմա՛ Սիսիան), մտածելով գնալ Մծխեթ՝ վրաց իշխանաց իշխան Շահնավազի (9) մոտ և խնդրել մի առաջնորդ Ղափանի համար: Այս



նպատակով նա հորինում է մի թուղթ, ստորև շարում Ղափանի 50 տանուտերների անունները և կնքում կեղծ կնիքներով:

Ինչո՞ւ էր պետք այս դիմումը: Ստեփան պատասխանում է, որ շարժման գլուխը եթե տեղացի մեկը լիներ, ապստամբ կնկատվեր պարսից կողմից, մինչդեռ Շահնավազ զորավար էր և կարող էր զորագլուխ նշանակել: Շահնավազ հանձնարարում է Սյունեցի Դավիթ Բեկին: Դավիթը գալիս է Ուչքեփե, ուր առաջին բախումն է ունենում դարաչոռլու կոչված թուրքերի հետ և ապա օթուզիքի, այսինքն՝ 32 անունով թուրք ցեղի հետ:

Ուչքեփե մի սարահարթ է Գորիսից արևմուտք, Հալիձորի վերևը, հայտնի սոսկալի փոթորիկներով: Աբրահամ Կրետացին[1] քրդական ցեղ է կարծում դարաչոռլուն: Բայց իսկապես ո՛չ թուրք են և ո՛չ քուրդ, այլ այն ինչ այժմ է կոչվում՝ թարաքյամա, այսինքն՝ թուրքմեն (թարաքյամա արաբական հոգնակի ձևն է թուրքմեն բառի): Դարաչոռլու և օթուզիքի ցեղերի ձմեռոցն է Կուրի դաշտերը, որտեղից ամառը չվում են իրենց հոտերով դեպի Զանգեզուրի և Սիսիանի լեռները և հասնում մինչև Դարալագյազ:

Առաջին հարվածը ուրեմն Դավիթ Բեկ հասցնում է **քոչվորներին**: Հետևյալ տարի նույնպիսի ընդհարում է ունենում այն թարաքյամաների հետ, կամ ինչպես ճիշտ անվանված է մեր աղբյուրներում՝ թուրքմենների հետ, որոնք Բարկուշատի կողմերից բարձրանում են Ղազանգյոլ և Գազբել լեռները անցնելու ամառը:

Այս լեռները պատում են Տաթևը հարավից և որպես հսկայական պատնեշ բաժանում Տաթևի շրջանը Ղափանից: Ուրեմն երկրորդ հարվածը ևս ուղղված էր քոչվորների դեմ, առաջինը՝ Զանգեզուրի, երկրորդը՝ Ղափանի, խաշնարած քոչվորների դեմ, որոնք մինչև այժմ էլ մեծ պատուհաս են հայ ժողովրդի և երկրի համար, քայքայում են տնտեսությունը, վտանգում ապահովությունը որպես ավազակության և ավերածության ահավոր բուծարան:

Ուչքեփեից Դավիթը իջնում է Ընհեր, որ Որոտան գետի ափին է, Տաթևի դեմուդեմ:

Տաթև չի գնում, որովհետև տեղի մելիքը, որ նույնպես Դավիթ էր կոչվում, համակիր չէր Դավիթ Բեկին: Տաթևում հնուց ի վեր միայն մի ազնվական տոհմ կա, այդ հռչակավոր Օրբելյան տունն է: Մելիք Դավիթը անտարակույս Օրբելյաններից էր: Դավիթ Բեկին համամիտ չէին նաև Հալիձորի մելիք Փարսադանը, Երիցվանիկի մելիք Ֆռանգյուլը, Ագուլիսի մելիք Մուսին և ուրիշները, որոնց անունները չեն հիշված:

Մելիք Դավիթն ընկնում է Դավիթ Բեկի ձեռքը և գլխատվում Ընհերում: Մելիք Փարսադանը ևս բռնվում է իր փեսա Տեր Ավետիքի հետ և բանտ

[1] Աբրահամ Կրետացի, Պատմագրութիւն անցիցն իւրոց եւ Նատր-շահին պարսից, Վաղարշապատ, 1870, էջ 75:

նետվում: Ազատվում է մի դիպվածով, որ արժանի է հիշատակության ուրիշ նկատումով: Սղնախից գալիս է Գուգարացվոց պետ Հովհաննեսը 56 հազար զորքով, գալիս է պաշարում Որոտն բերդը, բայց չի կարողանում առնել, թողնում մեկնում է Շնհեր, ուր ազատում է բանտարկյալ մելիք Փարսադանին և Տեր Ավետիքին ու ղրկում Դավթի մոտ: Ինքը մտնում է Տաթև, հափշտակում Դավիթ Բեկի գանձերը (?) և հեռանում:

Դժվար է հասկանալ այս անհեթեթ զրույցի ծագումը: Վրաց աղբյուրները Խամսայի մելիքներին կոչում են սովորաբար Սղնախի մելիքներ: Խամսա անունը նրանց անծանոթ է: **Գուգարացի**` Ղուկաս վարդապետի ենթադրությունն է, որ ներել կարելի էր, եթե **Գարգարացի ասեր**, համաձայն Խոնթնացու գործածության: Թվում է, թե Հովհաննեսն այն Ավանն է, մինը չորս կտրիճ երիտասարդներեն, որ զենքով դիմադրեցին լեռնականներին Ջրաբերդում: Հավանական է, որ Ավանը ուղեկցած լինի Դավիթ Բեկին կամ լուրեր տարածված լինեին, թե Խամսայի երկրից օգնություն պիտի գար նրան: Ստեփան Շահումյանը թեթևամիտ է գտնվել հավատալով, որ հայերը 56 հազար զորք կարող էին ունենալ այդ ժամանակները: Րաֆֆին ևս անզգուշությամբ այստեղից այն կլորիկ թիվն է հանել, թե հայերը Գանձակի մոտ 60 հազար մարդ ունեին զենքի տակ, ավելացնելով որ հրամանատարն էր Դավիթ Բեկը: Հայտնի չէ, թե ինչո՞ւ համար է գալիս Հովհաննեսը և ինչո՞ւ է պաշարում Որոտնը և ոչ մի ուրիշ ամրոց, ավելի կարևոր և մոտ Դավիթ Բեկին: Զարմանալի է, որ Հովհաննեսը 56 հազարով չի զորում գրավել Որոտն, իսկ հաջորդ տարին Դավիթ Բեկը մի քանի հարյուրակով դյուրավ տիրանում է նույն բերդին:

Վստահելի տեղեկություն չէ, մանավանդ երբ պատմողն ավելացնում է, որ Նախճվանի խանը, լսելով Որոտն բերդի անկումը, արշավում է Դավիթ Բեկի դեմ մեծաքանակ զորքով: Դավիթ Բեկը որպես թե առաջանում է աներկյուղ նրա դեմ, ճակատում Նախճվան գետի ափին, բայց պարտվում է, կորցնում հազար մարդ: Իսկ հաղթող խանը դառնում է իր տեղը առանց օգտվելու իր հաջողությունից և կործանելու ընդմիշտ ըմբոստին: Ստեփան Շահումյանն այս կետում ևս, լավագույն դեպքում, զոհ է անհիմն լուրերի:

Կովի դաշտը տեղափոխվում է Չավնդուր և Գենուազ: Դավիթ Բեկի զինակիցներից մեկը` Թորոսը, հարձակվում է Չավնդուրի մի թուրք իշխողի հոտի վրա, քերփում երկու հազար ոչխար և սպանում հովիվներին: Չավնդուրի տերը` ոմն Փաթալի սուլթան, իր եղբոր` Աղասի խանի, հետ ուզում են վրեժ առնել և թեև ձեռքի տակ ունեն 12 հազար մարդ, նախքան հարձակվելը, դիմում են հարևան Գենուազի Լեվազ գյուղի տեր Սափի ղուլի թուրքին և առաջարկում միասին գործելու: Սա խոհեմությամբ մերժում է: Երկու եղբայրները գնում են Թորոսի վրա: Թորոսը Հիշկիտից 150 հոգի է



առնում, ճանապարհը կտրում և ջարդում 12 հազար զորքը և քշում: Հաջորդ օրը լեվազցի Սափի ղուլին գալիս է 300 հոգով Չափնիս գյուղ (որ ակնհայտնի սխալ է փոխանակ երևի Ափկիսի, որովհետև Չափնիս Գենուազում չէ, այլ Ղափանում` Ագարակ գյուղի մոտ) և իր կողմից առաջարկ է անում հարևան Կաց գյուղի թուրք տիրոջ` Միրզա Սայիլին, որ միասին ավերեն հայ Մանլև գյուղը: Սայիլը չի հոժարում, և Սափի ղուլին պարտվում է Թորոսից: Սայիլ լսելով, որ Թորոսը ավերել է երեք թուրք գյուղ, հարձակվում է Մանլևի վրա, բայց Թորոսը սրան ևս փախցնում է: Այս կրկնակի հաղթությունից հետո Թորոսը թողնում է Պապ զորավարին Գենուազ և ինքը գնում է Չավնդուր:

Պարտված Սափի ղուլին իր թուրքերի հետ փախչում է Օրդուար (Օրդուբադ) և այնտեղից 500 հոգով գալիս է մի հայ գյուղի վրա և գերիներով դառնում Օրդուար: Փոխարենը Պապը ոչնչացնում է Լեվազի թուրքերին, ավարը ղրկում Ջվար գյուղ և ինքը քաշվում Վահրավարա: Դավիթ Բեկը այն միջոցին վերջացնելով Հալիձորի բերդի շինությունը, լսում է, որ Ասլամազ ղուլի թուրքը զորք է հավաքում իր դեմ Բուխուրութա լեռների կողմը, ուր Զեվու բերդն է: Դավիթը սլանում է այնտեղ, կանչում Թորոսին և միահամուռ ուժերով, շնորհիվ Տեր Ավետիքի քաջասրտության, գրավում են բերդը, կոտորում չորս հազար թուրք: Բուխուրութ` Ստեփաննոս Օրբելյանի պատմությանը կցված հին ցուցակի Բեխորոտ ավանի անունն է` Չորք գավառում, որն է բուն Կապանը: Այս լեռը բաժանում է Կապանը (բուն Ղափանը) Մեղրիի շրջանից: Այստեղ է Օխչի գետի ափին Զեվու բերդը:

Մնում էր հարվածել գլխավոր թշնամուն, Չավնդուրի երկու եղբայրներին` Փաթալի սուլթանին և Աղասի խանին, որոնք քաշվել էին Բարկուշատ: Դավիթ Բեկին ընկերանում է Երիցվանիկի մելիք Ֆրանգյուլը: Ճակատը տեղի է ունենում Եղվարդ գյուղի մոտ Բարկուշատի գավառում: Դավիթ Բեկը հաղթելու վրա էր, երբ մելիք Ֆրանգյուլը նետեց պատրվակը և անցավ թշնամու կողմը: Հայերը` պարտվեցին, Թորոսը ընկավ պատերազմում: Նրան հաջորդում է Նուբարը: Հաղթողները ուզում են մտնել Չավնդուր, բայց չեն հաջողում, հանդիպելով Նուբարի և Պապի դիմադրությանը` հեռանում են իրենց տեղերը:

Այնուհետև Օրդուար փախած մեզ հայտնի Սափի ղուլին, հետն առնելով օրդուարցի Ղազիօղլի Շահիսլամօղլի թուրքերին (10), մտնում է Ալանգյազ լեռների կողմից Գենուազ` ուրեմն Մեղրի ձորը: Ութ հազար մարդ ունեին: Պապն ուներ միայն երկու հազար, սիրտ չի անում ճակատելու, նահանջում է: Դավիթ Բեկը զայրացած գալիս է Դաշտուն, 2800 մարդով, հալածում թուրքերին և գլխատում Պապին, որը չէր եկել ներկայանալու իրեն` Հիշկիտ գյուղի մոտ: Երբ Դավիթը հեռանում է, նույն թուրքերը մեծ ուժերով, մոտ 12

հազար, նորեն հարձակում են գործում, նույն Ալանգյազի ճանապարհով մտնում Մեղրու ձորը: Ալանգյազը այն լեռնաշղթան է, որ բաժանում է Մեղրին հարևան Գողթանից կամ Օրդուարի (Օրդուբադի) գավառից: Դավիթ Բեկը վերադառնում է 4000 մարդով, բայց կռվում է առանց հաջողության և հեռանում Հալիձոր: Թուրքերը սիրտ առած ասպատակում են գյուղերը: Գալիս են ուրիշ թուրքեր մինչև անգամ Ղարադաղից մոտ 18 հազար մարդ: Մեղրիցիք քաջապես պաշտպանվում են, և ազատարար է հանդիսանում Ստեփան Շահումյանը, որը սպանված Պապի հաջորդ էր նշանակված: Թուրքերը 11 հազար զոհ են տալիս, մնացածները փախչում են:

Մի տարի անցած (11), երբ Երևանի խանի եղբայրը զորքով գնում էր օգնելու իր եղբորը, որ պաշարված էր Երևանում օսմանցիներից, հասնում է Օրդուար քաղաքը, ուր տեղացի մահմեդականները գանգատվում են մեղրեցիների դեմ: Խանը լսելով, որ օրդուարցիք են եղել նախահարձակ, պատժում է Սափի դուլի թուրքին իր ընկերներով և անպարտ արձակում հայերին:

Վերջին դրվագն է Խոտանան գյուղի կռիվը Փաթալի սուլթանի դեմ: Մխիթար սպարապետը գժտված լինելով Դավիթ Բեկի հետ, չի մասնակցում կռվին, և հայերը հաղթվում են: Շահումյանը գերի է ընկնում և փրկվում է մի բարեսիրտ թուրքի օգնությամբ: Վիրավորվում է մելիք Փարսադանի որդին՝ Բալին և դժվարությամբ հասնում է Հալիձոր:

Սրանով վերջանում է Դավիթ Բեկի պատմության այն մասը, որը նյութ է ծառայել «**Դավիթ Բեկ**» վեպին: Պատմության երկրորդ մասը վերաբերում է օսմանցիների դեմ վարած կռիվներին, որը մեր խնդրից դուրս է: Րաֆֆին թարգմանել է գրաբարից այդ մասը և դրել իր վեպի վերջը, որպես հավաստի պատմություն: Սրա քննությունը մեր նյութին չի վերաբերում: Շահումյանի պատմածին կցված է մի ցուցակ, որ պարունակում է Դավիթ Բեկի զինակիցների անունները և որը ավելորդ չենք համարում բերել ամբողջապես:

Դավիթ Բեկի զորավարներ՝ Մխիթար, Մեծ Գեորգի, Հովհաննես, Բանդուր, Զաքարիա իշխան, Պայինդուր իշխան, Ավթանդիլ, Փոքր Գեորգի, Ծատուր, Ղարագյոզ, Թադեոս, Եղիազար, Հարություն:

Շնհեր՝ Պայինդուր զորապետ, Պալի զորապետ, Մինաս, Ստեփաննոս և 550 զինվոր:

Տաթև՝ Ղիջի, Այտեմին, Եսայի, Տիրացու, Սիմեոն և 400 զինվոր:

Հալիձոր՝ մելիք Փարսադան՝ 250 զինվոր և Տեր Ավետիք՝ 468 զինվոր:

Չավնդուր՝ Թորոս, Պայինդուր, Նուբար, Վարդան, Փարսադան, Թովմաս, Թուրինջ, Հովհաննես և 2000 զինվոր:



Կալեր՝ Պապ, 700 մարդով, հաջորդը՝ Շահումյան:

Մեղրի՝ Կոստանդին, Հովհաննես, Սարին, Առաքել և 400 (ո՛չ 4000) մարդ:

Որդիք Մաղա Ջուղին Տիլենչի մականվանյալ՝ 400 մարդ:

Սիսականի զորավարը՝ 500: Մելիք Ղուջու և 200 զինվոր:

Ավշարերեց, որ կոչի Գասպար, 250 մարդով:

Պաղաքերդ՝ Աղամ զորավար, 150 մարդով:

Կուլբերդ՝ Ղազար, 110 մարդով:

Շիվանիձոր՝ Սարգիս զորավար, 250 մարդով:

Ստեփանի ավանդած պատմությունը բավականին խառնակ է: Ինքը՝ անվարժ պատմող, Ղուկաս վարդապետը՝ վարժ գրող, միասին աշխատելով շատ բան շփոթել են, չափազանցրել և երբեմն գայլվահանյան գույն տվել՝ խախտելով ընթերցողի վստահությունը:

Ստեփանը Եկղաստա գյուղից էր, որ գտնվում էր Կալեր և Վանք գյուղերի մոտ՝ Մեղրի գետի վերին հովտում: Ուրեմն Ստեփանը մեղրեցի էր, այնինչ իրեն ղափանցի էր համարում: Նա լավ տեղյակ է ինչ որ անցել են իրեն հայրենի Մեղրու շրջանում, բայց բավականին ծանոթ չէ այդ շրջանից դուրս կատարված դեպքերին: Դավթի գործունեության տեղեկագրությունը պետք է գիտենալ, որպեսզի կարելի լինի չափել նրա վարած կռիվների կշիռը: Մեղրու շրջանը կամ մահալը, ինչպես ժողովուրդն է ասում, հին Արևիքն է համանուն գետի հովտում, որի արևելյան լեռնոտ մասը և երբեմն ամբողջ գավառը կոչվում է Գենուազ: Սրան կից է Չավնդուր՝ Օխչի գետի միջին հովտում հին Կովսական գավառի մի մասը: Նույն Օխչի գետի վերին հովիտը կազմում է բուն Ղափան, հին Կապան, ավելի հին՝ Չորք: Եճամսան գետակից, որ Օխչիի ճյուղն է, մինչև Բարկուշատ գետը հնում կոչվում էր Բաղք, իսկ այժմ այս ևս կրում է Ղափան անունը և հայտնի է հոչակավոր պղնձահանքերով: Բարկուշատ է կոչվում Որոտն գետի ստորին հոսանքը: Ինչ վերաբերում է Զանգեզուր գավառին, այդ Գորիսի շրջանն է, Հալիձոր, Շնհեր, Խնձորեսկ գյուղերով: Անունը հին Չագեձորի թուրքական արտասանությունն է: Սիսիանը՝ Ղափանից արևմուտք, կենտրոն ունենալով այժմյան Սիսիան անունով թուրք գյուղը, Բռնակոթ, Ախլաթիան, Ղարաքիլիսե, բոլորը Որոտն գետի ավազանում: Ռուսները միացրին հիշածս գավառները և մի վարչություն կազմեցին: Եվ որովհետև այս վարչական միության կենտրոնը Չագեձորի Գորիսն է, ուստի և Զանգեզուր կոչեցին ամբողջ միությունը: Սակայն տեղացիները զանազանում են հին

սովորությամբ և չեն շփոթում միմյանց հետ Զանգեզուր, Ղափան, Սիսիան, Մեղրի, Ագուլիս (տե՛ս կից քարտեզը, ուր նշանակված են գլխավոր կետերը կռվի դաշտի)։

Գործի նախաձեռնությունը Ստեփանը վերագրում է իրեն։ Այս կետը ավելի քան կասկածելի է։ Ստեփանը իրեն հանձնարարում է որպես մի անձն, «որ էր սիրելի յաչս Դաւթի վասն ազնուականութեան եւ քաջութեան»։ Բայց մեծ դեր չունի պատերազմների մեջ և չէ հաշվում նշանավոր զորավարների թվում։ Դավիթ Բեկը զորագլուխ է նշանակում Կալեր գյուղի շրջանում, որ Ստեփանի հայրենիքն էր, ոչ թե Ստեփանին, այլ տեղացի մի ուրիշին՝ Պապ անունով։ Վերջինս ինչ-ինչ գաղտնի որոգայթների զոհ է գնում, մահվան դատապարտվելով Դավիթ Բեկի կողմից, միայն այն ժամանակ հաջորդ է նշանակվում Ստեփանը։ Եթե Ստեփանը լիներ մեծ խորհուրդի հղացողը, Դավիթ Բեկը նրան իր մոտ կպահեր իբրև մերձավոր գործակից։






Ո՞վ էր Շահնավազ իշխանը և ի՞նչ գործ ուներ նրա մոտ Դավիթ Բեկը։ Շահնավազ վերանունով հայտնի են երեք թագավոր. Վախթանգ V (1658-1676), իր որդին՝ Գեորգի XI (մեռած 1709 թվին), և Բակար, որդի Վախթանգ VI-ի։ Վախթանգ ընդունեց իսլամը և նշանակվեց թագավոր Վրաստանի 1716 թվին, ըստ վկայության ժամանակակից պատմագիրների՝ Ս. Չխեիձեի, և Վախուշտի[1]։ Բայց շահը նրան կոչեց այլ ծառայության Խորասանի կողմերը և իշխանությունը տվեց Բակարին, որ նույնպես կրոնափոխ եղավ և ընդունեց շահից Շահնավազ անունը նույն 1716 թվին։ Բակարը իշխեց միմիայն երկու տարի (1716-1718)։ Հայրը՝ Վախթանգը վերադարձավ Պարսկաստանից և ստանձնեց իշխանությունը 1719 թվին և մնաց գահի վրա մինչև 1724 թիվը։

Արդ այս երեք շահնավազներից և ոչ մեկը կարող է լինել այն համանուն իշխանը, որին դիմած լիներ Ստեփան Շահումյանը։ Դիմումը կատարված է լեզգիների արշավանքից հետո, որը տեղի ունեցավ 1721 թվի օգոստոսի 15-ին և տևեց մինչև աշուն, և նորեն կրկնվեց 1722 թվի գարնան մարտ և ապրիլ ամիսները, և այս անգամ ավերեցին նաև մելիքների հողերը։ Նույն 1722 թվականին Դավիթ Բեկն արդեն գործի էր։ Հետևապես Ստեփան Շահումյանը պետք է վրաց թագավորին ներկայացած լինի 1721 թ. վերջերը կամ 1722 թ. սկիզբները։ Այս պահին Վրաստանի թագավորն էր Վախթանգը, որով Շահումյանի հիշած Շահնավազը չի կարող լինել ո՛չ Գեորգի Շահնավազը, մեռած 1709 թվին, ինչպես սխալմամբ նույնացրել է Րաֆֆին[2] և ո՛չ էլ Բակար Շահնավազը։ Րաֆֆին մի ուրիշ տեղ[3] հայտնում է, որ Վախթանգ թագավորը ևս կրում էր Շահնավազ տիտղոսը, որ ճրի ենթադրություն է, Շահումյանի սխալ վկայությունն արդարացնելու համար։

Հարկավ, Բակար Շահնավազը կարող էր Շահումյանին ընդունած լիներ որպես իշխանազն (12)։ Սակայն ճիշտ 1722 թվին Բակարը ավելի հակամետ էր դեպի պարսիկները, քան իր հայր Վախթանգը՝ իր ռուսական թեքումով։ 1722 թվին ավղանները ջարդեցին պարսիկներին Գյուլնաբադի ճակատում և պաշարեցին Սպահանը։ Շահի որդին՝ Թահմասպը հազիվ ճողոպրեց և շահ հռչակեց իրեն Ատրպատականում իր հոր սպանությունից հետո։ Պարսից շահը պաշարված Սպահանում դիմեց Վախթանգին և Բակարին, մեծ պաշտոններ առաջարկելով, որպեսզի գան օգնության ընդդեմ ավղանների։ Բակարը պատրաստ էր հարգելու շահի խնդիրը, բայց Վախթանգը արգելեց, որովհետև հույս ուներ, որ ռուսները շուտով պիտի

[1] Մ. Բրոսե, Պատմություն վրաց, Բ, էջ 112-114 (ֆրանսերեն)։

[2] Րաֆֆի, Խամսայի մելիքությունները, էջ 28։

[3] Րաֆֆի, Դավիթ Բեկ, էջ 359։

զան և քոքափեն պարսկական լուծը: Վախթանգը գաղտնի հարաբերության մեջ էր Պետերբուրգի արքունիքի հետ: Վերջին թղթով (13) Պետրոս Մեծը խոստացել էր լինել Շամախի 1722 թվի հոկտեմբեր ամսին: Վախթանգը հրաման էր ստացել շահից, ելնել ընդդեմ լեզգիների: 1722 թվի մայիս ամսին լեզգիներն առանց դիմադրության քաշվեցին, և Վախթանգը վերադարձավ Թիփլիս: Սեպտեմբեր ամսին նորեն եկավ Գանձակ, որպես թե լեռնականների ասպատակությանը վերջ դնելու համար, բայց իրականում գաղտնի հարաբերության մեջ էր Պետերբուրգի արքունիքի հետ և Պետրոս Մեծից հրահանգ էր ստացել պատրաստ լինել դիմավորելու նրան Շամախում հոկտեմբերի սկզբներին: Գանձասարի Եսայի կաթողիկոսը Վախթանգի բանակում էր և տեղյակ նրա ծրագրերին: Ահա ինչ է պատմում Եսային: Վախթանգը պատվիրում է կաթողիկոսին գնալ «յերկիրն մեր Ղարաբաղ, և զհայազուն զօրսն՝ որ գումարեալ կային անդ ի ձեռն մելիքներաց, և չորս գլխաւորք եղեալ երիտասարդացն, որոց անուանքն են Աւան, Շրուան, Շահնի և Սարուխան, որ և սոքա հարիւրապետք և խզպաշիք կոչէին: Սոքա ընդ մելիքներացն Ղարաբաղու, զկնի առաջին դառնալոյն Վախտանկին և խախտելոյ իշխանութեան Պարսից, միաբանեալ ընդ ինքեանս զամենայն քաջասիրտ և արիական եւ զօրեղ մանկունս եւ երիտասարդս տանս Աղուանից, ըստ ինքեանց կազմեալ էին զօրս բազումս աւելի քան զերկոտասան հազար, եւ ամրացեալք յամուր վայրսն Արցախու: Եւ այսպէս բազում արիութիւնս ցուցեալ յերկրիս մերում:...

Այժմս լուեալ սմա զաղգանէ՝ շեշտակի ճեպով յղեաց զմեզ վասն առ ինքն ածելոյ զնոսա կազմ զօրօք: Եւ ըստ հրամանին եկեալ մեր յարդարեցաք զնոսա ըստ օրինի զօրաց իշխանաց, վասն զի անվարժք էին զինւորական սպասաւորութեանց եւ այսպէս բովանդակեալ զամենայն եւ իբրեւ տասն հազար արս ընտիրս եւ սպառազէնս»:

Նույն 1722 թվին գարնանը լեռնականները մտան Մուղանի կողմից Դիզակ գավառը, կողոպուտով անցան Վարանդ, ուր մելիք Բաղիրը ընծաներով ընդառաջեց և ազատ պահեց իր երկիրը ավերումից: Մինչդեռ Խաչենը Դիզակի վիճակն ունեցավ, իսկ Ջրաբերդում՝ ժողովուրդը քաշվեց լեռները և «երիտասարդք ոմանք ընդդիմանային եւս եւ զբաղումս հարին ի թշնամեաց»: Ահա այս երիտասարդների կազմակերպած ընդդիմադրության մասին է Եսայիի ակնարկը, եւ նախաձեռնողները, անտարակույս, նույն չորս երիտասարդներն էին՝ Ավան, Շրվան, Շահին և Սարուխան: Հայ տասն

[1] Եսայի Կաթողիկոս Հասան-Ջալալեան, Պատմութիւն համառօտ Աղուանից երկրի, Երուսաղէմ, 1868, էջ 47-48:



հազարանոց բանակը ներկայանում է Վախթանգին, որ ընդունում է մեծ սիրով և խրախուսական խոսքերով՝ «Այսուհետեւ զօրասջի՛ք եւ քաջ լերո՛ւք իբրեւ յորդիս զօրութեան. եւ յուսաբէք եւ յումեքէ մի՛ երկնչիցիք, զի ահա հասեալ է ժամանակ փրկութեան քրիստոնէից»:

Ականատես Եսայի կաթողիկոսը վկայում է, որ Վախթանգը բնական սեր ուներ դեպի հայ ազգը «եւ ոչ այնքան հաւատայր ազգին իւրոյ Վրաց, որք միշտ նենգաւորք եւ խորամանկք են, վասն այն կամէր զայս զօրս՝ մանաւանդ ազգս Հայոց իւրն սեփհականեցուցանել որպէս Տփխիսեցիք», այսինքն՝ որպես Թիփլիսի հայերը: Բացի դրանից, Վախթանգը, որովհետև սպասում էր Պետրոս Մեծի գալստյան, «կամէր հայ եւ վրաց զօրօք ճոխ եւ շքեղ ընդ առաջ ելանել նմա»: Վրաց թագավորը, իր կշիռը բարձրացնելու համար, ուզում էր ներկայանալ կայսրին որպես տեր երկրի քրիստոնյա տարրին, հայ և վրացի:

Րաֆֆին, որ քաջածանոթ է Եսայի կաթողիկոսի պատմությանը և իր ձեռքին ունեցել է մինչև անգամ ավելի ընդարձակ օրինակը, հնարավոր է գտնում ասել, որ Ղարաբաղի մելիքների խնդրանքով է, որ Գեորգի Շահնավազը ուղարկեց իր ծառայության մեջ գտնվող Դավիթ Բեկին և թե Դավիթ Բեկը եկավ Ղարաբաղ 1722 թվին, ժողովեց 60 հազար զորք, զորապետներ նշանակեց մելիք Ավան խանին և Ավան միրզային և ինքը գնաց Ղափան՝ Չավնդուր կոչված տեղը, որ իր հայրենիքն էր: Քիչ առաջ հայտարարում է, որ հայերը և վրացիները սպասում էին Պետրոս Մեծի գալստյանը, բանակ զարկած Գանձակի մոտ և որ վրաց զորքերի հրամանատարն էր Վախթանգը, իսկ հայոց զորքերի՝ Դավիթ Բեկը[1]: Այս բոլորը հեռու են ստուգությունից: Դավիթ Բեկը Չավնդուրից չէր, և ո՛չ էլ Ստեփան Շահումյանը նրան բերավ Ղարաբաղ, առանց մելիքների որևէ մասնակցության: 60 հազար թիվը առասպել է: Տեսանք, որ հայ զորքը հաշվում էր 10 հազար մարդ և կազմակերպված էր Եսայի կաթողիկոսի միջնորդությամբ և ո՛չ թե Դավիթ Բեկի: Ավանը ո՛չ խան էր և ո՛չ միրզա, այլ այն չորս կտրիճ երիտասարդներից մեկը, որ զենքով լեզգիների դեմ ելան: Ո՞րտեղից է հանել Րաֆֆին 60 հազար թիվը, կտեսնենք առաջ:

Մեր նպատակն է պարզել, հասկանալ Դավիթ Բեկի ապստամբության մերձավոր շարժառիթը: Շահումյանի տված բացատրությունը լուրջ չէ: Լեզգիների արշավը չդիպավ Սյունիքին և չէր կարող որևէ անդրադարձ ունենալ նրա վիճակի վրա:

Դավիթ Բեկի գալուստը հետևանք էր Գանձակի մոտ կանգնած վրացի և հայ զորքերի ակնկալությունների: Ինչպես Եսայի կաթողիկոսն էր

[1] Րաֆֆի, Խամսայի մելիքությունները, էջ 28-29:

ուղարկված մելիքների մոտ, նույն առաքելությամբ էլ եկել էր Դավիթ Բեկը Սյունիք՝ Վախթանգի հրահանգով: Վրաց արքան հավատում էր անվերապահորեն կայսերական խոստումներին և պատրաստություն էր տեսնում պատշաճ գործակցություն բերելու ռուսական զենքին: Նա վայելում էր հայերի կատարյալ վստահությունը: Րաֆֆին արդար չէ, երբ Դավիթ Բեկի բերանով շեշտում է հայի և վրացու մեջ բուն դրած դարավոր ատելությունը և անհնար է գտնում երկու ազգերի համերաշխ գործակցությունը, որի հետևանքով Դավիթ Բեկը *բաժանվում է Վախթանգից, առանց հայտնելու* իր դիտավորությունը[1]:

Վիպագիրը գտնվում է իր ատենի հայ-վրացի հարաբերության լարված դրության ազդեցության տակ: Այդպես չէր մոտիկ անցյալում: Հայ և ռուս հարաբերության պատմության վերաբերյալ աշխատության մեջ բավականին չէ շեշտված և երբեմն անտես է արված այն դերը, որ կատարել են վրացիները: Սրանք մեզնից դարեր առաջ են սկսել կոխոտել ռուսական դռները, իսկական ջատագովներ հանդիսանալով հյուսիսի միջամտությանը և մեզ էլ *քաշելով իրենց հետևից* բարի հարևանությամբ: Մեր օրերի վրաց հայրենասերները, որ երազում են անջատվել Ռուսիայից և կշտամբում են հայերիս «ռուսասիրությունը», մոռանում են, որ երեկվան իրենց հայրերն են եղել մեր ռուսասեր ուսուցիչները: Եթե այժմ էլ գտնվեին ազնվամիտ վախթանգներ, դժվար չէր լինի գտնել բարի հարևանության համերաշխ ուղիներ:

Դավիթ Բեկի շարժումը գաղտնի թելերով կապված էր Վախթանգի քաղաքականությանը: Շահումյանը տեղյակ չէ այս թելերին: Դավիթ Բեկը եկել էր շոշափելու հողը, նախապատրաստելու տեղական ուժերը ի նպաստ և ի սպաս ռուսական հույսերի, եկել էր թվում է թե պաշտոնական ձևով և ոչ որպես ապստամբության ղեկավար: Շահումյանը գիտե, լսել է, որ Դավիթը ապստամբ չէ, որովհետև կարգված է «զօրաւոր Շահնաւազի» կողմից: Այս «զօրաւոր» բառը խուլ արձագանք է այն պատմական իրողության, որ Վախթանգը նշանակվեց 1722 թվին շահի հրամանով ընդհանուր պետ Ատրպատականի , Վրաստանի և Հայաստանի: Շահումյանի տարօրինակ մեկնությունը այլ իմաստ չունի, քան այն, որ վրաց թագավորը իրավունք ուներ Սյունիքի վրա և կարող էր ղրկել այնտեղ հայտնապես մի պաշտոնյա որևէ հանձնարարությամբ՝ առանց կասկածի տեղիք տալու: Այս բանը հաստատվում է մի ուրիշ վկայությամբ: Րաֆֆին հրատարակել է **«Վկայագիր Ուռպելեանց»** վերնագրով մի թուղթ 1835 թվակիր, բազմաթիվ ստորագրություններով, որոնց մեջ կան պատկառելի անուններ՝ Սիմեոն

[1]Րաֆֆի, Դավիթ Բեկ, էջ 363:



արքեպիսկոպոս Տաթևի, Բաղդասար մետրոպոլիտ, Սարգիս արքեպիսկոպոս Հասան-Ջալալյան, մելիք Մանուչար Ուռպելյանց Տաթևացի: Դավիթ Բեկի մասին այս թղթի մեջ ասված է. «Բնակիչք Սիւնեաց ի 1722 ամին գրեցին զթուղթ աղաչանց առ Շահնաւազ իշխանն՝ **առաքել զօրաւոր ոք, զի իշխեսցէ ի վերայ գաւառին եւ յանդորրու պահեսցէ զՀայս որք ի նմին**»: Ապստամբության մասին խոսք չկա: Թուղթը վկայում է ինչ-ինչ անձերի սերումը Դավիթ Բեկից, երևի, Ռուսաց կառավարությանը ներկայացնելու և այդ անձերի ազնվական ծագումը հաստատելու համար: Ուրեմն տեղն էր հիշել, որ Դավիթ Բեկը արյուն է թափել ռուսների համար կռվելով պարսիկների դեմ: Սակայն, ստորագրողները այդ չեն ասում, որովհետև նրանց գիտությամբ Դավիթ Բեկը եկած էր որպես պաշտոնյա կառավարիչ: Բաղդասար մետրոպոլիտը և Սարգիս արքեպիսկոպոս Հասան-Ջալալյանը քաջ տեղյակ էին Դավիթ Բեկի գործերին, և նրանց ստորագրությունը ուշադրության արժանի է գոնե այս կետում[1]:

Վախթանգը սպասում էր ռուսներին Գանձակում, աշնանը: Եթե ճիշտ է մեր ենթադրությունը, որ Դավիթ Բեկը Գանձակից է եկել Սյունիք, գալուստը պիտի տեղի ունեցած լինի մոտավորապես նույն ժամանակները, և հավանորեն քոչվորները ենթարկվել են նրա հարձակմանը աշնանը՝ սարից իջնելիս: Երևանը ընկավ օսմանցիների ձեռքը 1724 թվի հոկտեմբերի 1-ին (14): Երևանի խանի եղբայրը անցած պետք է լինի Օրդուարից հետևապես այդ միջոցները: Այսպիսով, Դավիթ Բեկի կռիվները տևել են 1722 թվի աշնանից մինչև 1724 թվի աշունը, ուրեմն ուղիղ երկու տարի: Նա կռվել է երկու կարգի թշնամիների դեմ, նախ՝ քոչվոր թարաքյամայի և երկրորդ՝ Չավնդուրի և Գենուազի շրջանում ապրող մի քանի թուրք պետերի: Սրանցից Ասլամազ Ղուլին և երկու եղբայրներ՝ Փաթալի սուլթանը և Աղասին, նմանապես ցեղապետներ են, այսինքն՝ քոչվորների գլուխ: Ասլամազը զարկվում է Բուխուրտութ լերան վրա, ապաստանում է Ձեվու բերդը և պարտվում: Երկու եղբայրները 12 հովիվ ունեին և անհամար հոտ: Նախահարձակը Դավթի զինակիցն է, որ թալանում է սրանց ոչխարները: Պարզ է, որ գործ ունեն խաշնարած ժողովուրդի հետ: Մեր աղբյուրը նրանց անվանում է մերթ Չավնդուրի, մերթ Բարկուշատի իշխեցողներ: Այս նշանակում է, որ նրանք Բարկուշատի դաշտերից, որ իրենց ձմեռոցն էր, բարձրանում էին Չավնդուրի լեռները ամառ ժամանակ: Գալով լեվազցի Սափի դուլիին և Գաց (Կաց) գյուղի Սայիլին՝ դրանք տեղական բեկեր են, թերևս, մեր մելիքների նման մի քանի գյուղի սեփականատեր: Ամեն պարագայի սրանք պետական պատասխանատու պաշտոնյաներ չեն: Երկիրը ենթակա էր

1 «Ուռպելեանց վկայագիրի» և հարակից խնդիրների մասին կխոսենք ուրիշ անգամ (15):

Նախճվանի խանի իրավասության: Սրա անցողակի միջամտությունը անստույգ ենք համարում: Արդարև, եթե նա Դավիթ Բեկի դեմ ելած լիներ և հաղթած, քնավ չէր նահանջի կռվի դաշտից՝ առանց զսպելու խռովությունը: Նրա միջամտությունը չենք տեսնում նաև հետագա տարիներին: Երկրի տերն էր և պատասխանատուն և պետք է, որ հետապնդեր խռովարարներին, եթե նրանք իրոք պետության թշնամիներ լինեին: Հաջորդ 1724-1726 տարիները չգիտենք ի՞նչ էր Դավիթ Բեկի վիճակը: Ստեփաննոսն այս մասին լուռ է: Հավանորեն տեղյակ չէ գործին: Երևանի խանի եղբոր դատաստանը, որով պատժում է զանգատավոր թուրքերին և ոչ հայերին, թվում է, թե վերջ է դնում թշնամական ընդհարումներին: Դավիթ Բեկը ևս ստիպված է լինում զենքը վայր դնել և ահա ինչու: Նա եկել էր Վախթանգի և Եսայիի կողմից, պաշտոնապես թե անպաշտոն կերպով: Վերև բացատրեցինք մեր ենթադրությունները այս առթիվ: Եկել էր նախապատրաստելու երկիրը ռուսներին ընդառաջելու ծրագրի ոգով: 1722 թվի վերջերը Վախթանգի և Եսայի կաթողիկոսի հույսերը ի դերև ելան: Պետրոս Մեծը ճզճզում է իր խոստումը, հայտնելով, որ մինչև չտիրանա Կասպից ծովի եզերքին, չի կարող օգնության գալ և խնդրում է Վախթանգին միջնորդել պարսից շահի առաջ՝ զիջանել հիշյալ ծովեզերքը ռուսներին: Վախթանգը հուսահատ վերադառնում է Թիփլիս, որ գրավված էր իր հակառակորդ վրաց իշխանի կողմից, որ բարեկամ էր պարսից տիրապետությանը (16): Օսմանցիների հարձակումով դրությունը բարդանում է: Ռուսները մի թեթև գունդ են ղրկում պաշտպանելու Վախթանգին ընդդեմ օսմանցիների՝ 1723 թվին: Վախթանգը պարտվում է և հարկադրվում թողնել հայրենիքը և ապաստանել Ռուսիա: 1724 թվի օգոստոս ամսին արդեն հայրենիքից դուրս էր: Հույսերի և ծրագրի խորտակումը կատարյալ էր: Լուրը անտարակույս հասնում է Դավիթ Բեկին և սանձում նրա եռանդը: Ահա ինչու այնուհետև 1724-1726 թթ. նա անգործության է մատնված: Հավանական է, որ լրաբերը նույն Հովհաննես Գուգարացին էր (իմա՛ Ավան Ջրաբերդցին): Ստեփան Շահումյանը տեղյակ չէ Դավիթ Բեկի գաղտնի հարաբերությանը Վախթանգի և Եսայի կաթողիկոսի հետ: Այս է պատճառը, որ Հովհաննեսի գալն ու գնալը առասպելական ձև է ստացել նրան հասած լուրերի մեջ:

Այսպիսով, Դավիթ Բեկը ձեռնամուխ եղավ կատարելու միմիայն նախապատրաստական աշխատություն և առանց ապստամբական ցույցերի: Այդ աշխատությունն էր տնտղել տեղական մելիքների, եկեղեցականների և ազդեցիկ ուժերի տրամադրությունները, այժմեն մեկուսացնել վտանգավոր կամ անվստահելի իշխաններին և մանավանդ մաքրել ռազմագիտական դիրքերը այնտեղ բուն դրած թուրք խաշնարած ցեղերից:



Այս աշխատանքը կատարվեց մի բուռն քաջերով առանց երկրի բարձր իշխանության՝ Նախճվանի խանի ուշադրությունը գրավելու, այնպիսի հմտությամբ, որ Երևանի խանի եղբայրը մեղավոր ճանաչեց թուրք գանգատողներին, առանց խոժոռելու հայերի դեմ:

Քոչվորների հետ ընդհարվելը քաղաքական կասկած չէր կարող հարուցանել: Սովորական երևույթ էր հնուց ի վեր: Կար ժամանակ, երբ հայերն իրենց հոտը տանում էին ձմերելու Կուրի և Երասխի դաշտերում և փոխարենը թույլ էին տալիս տեղացիներին անցնելու ամառը Հայոց սարահարթերում: Լեռնականները ասպատակեցին 670-ական թվականներին Կուրի և Երասխի ափերում ճարակող հոտերը, ոչ միայն քնիկների, այլ և որ «յԱյրարատեան գաւառացն եւ ի Սիւնեաստանեայց աշխարհէն հօտք եւ անդեայք ի ձմեռնաճաշակ դաշտն եկեալ էին յարօտ»[1]: Իսկ 851 թվին տեղատարափ անձրևը «ութ հարիւր վրան խաշնարածաց տարաւ, որք եկեալ էին ի Կաւկասայ յապուր՝ յաւուրս ամարայնոյ» Մեծիրանց գավառ, որ գտնվում էր Խաչենի շրջանում[2]:

Ներկայումս թարաքյամա քոչվորները Կուրի ափերից բարձրանում են Արցախի և Սյունիքի վրայից մինչև Նախճվանի և Դարալագյազի լեռները և շատ հաճախ տեղի են տալիս բախումների, երբեմն արյունահեղ: Սար բարձրանալիս կոխոտում են ու փչացնում կանաչ արտերը և իջնելիս՝ քշում տանում են խառնելով իրենց հոտերին հայ գյուղերի անասունները[3]:

Անցնինք **«Դավիթ Բեկ»** վեպին: Թեև մեր նյութից դուրս է գտնվում գրական քննությունը, բայց նկատելու ենք, որ վեպի շենքը համաչափ չէ և հորինված է, կարծես, առանց մշակված ծրագրի: Գրիչն ընթացել է ոչ մտքի հետևեն, այլ նրա հետ միասին և ստեղծել է հերոսների համար երբեմն դժվար կացություններ, որտեղից հանելու համար ստիպված է եղել շեղվել պատմության թելից, նոր օժանդակ դեմքեր հանդես բերել, անբնական տեսարաններ կերտել: Այս բոլորը խանգարել են երկի ներդաշնակությունը: Վերջին գիրքը ավելի տկար է, քան առաջին երկուսը: Հեղինակը առանձին փույթ չունի գեղարվեստականի մասին. նրա համար ավելի թանկ է երկի գաղափարախոսությունը, որ արտահայտում է ոչ միայն գործող անձերի բերանը դրած ճառերով, այլև նրանց հերոսական նկարագրով: Առաջին երկու գրքերը նվիրված են ամբողջովին Դավիթ Բեկին և Ստեփաննոս Շահումյանին:

---

[1] Մովսես Կաղանկատվացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, Գիրք Բ, գլ. 26:

[2] Անդ, Գիրք Գ, գլ. 21:

[3] Ուչբեփեն հայտնի է այժմ ևս հայ-քոչվոր կռիվներով, որի մասին խոսք կլինի վերև խոստացած հոդվածումս:

Դավիթ Բեկը փրկվում է մահից, փախչում Վրաստան և այնտեղ «առաջին պետական մարդ դառնում»: Ճիշտ ինչպես հնում Տրդատը փախավ Հռոմ և հռչակ ստացավ իր քաջությամբ: Ստեփաննոս էլ գերությունից է ազատվում շնորհիվ իր քեռի Թորոսի: Պատմական քիչ բան կա այս երկարաձիգ պատմության մեջ: Բացի մի քանի անուններից, մնացածը՝ դեմքեր թե տեսարաններ, երևակայության արդյունք են: Ավելի պատմական է երրորդ գիրքը՝ Դավիթ Բեկի գործունեությունը: Հիմք կազմում է Ստեփաննոսի՝ վերևը քննած պատմությունը: Աշխարհագրական քարտեզը և անձերը նույնն են, բացի մի քանի թարմատար դեմքերից: Հարկավ պատմության համեստ գործիչները դարձել են վեպի մեջ հայտնի մեծություններ:

Գործողության դաշտը Սյունիքի յոթն գավառներն են, ուր տիրում են՝

Գողթան, մելիք Մուսին,
Գենուազ, **իշխան** Ստեփան Շահումյան,
Ղափան, մելիք Փարսադան,
Չավնդուր, Թորոս **իշխան**,
Բարկուշատ, մելիք Ֆրանգյուլ,
Սիսիան, **իշխան** Բայինդուր,
Զանգեզուր, Մխիթար սպարապետ[1]:

Այս անձերից ոչ ոք գավառատեր չէր, և ոչ էլ Ստեփանը, Թորոսը, Բայինդուրը իշխաններ էին:

Մելիք Փարսադանը «երկաթե սիրտ ունի եւ գայլի խիղճ», Ստեփանը՝ «սատանայի խելք և Ռուստեմի քաջություն», Թորոս իշխանը՝ «փղի ուժ եւ առյուծի սիրտ», Բայինդուրը՝ «սարսափելի հսկա է», Ներսես եպիսկոպոսը՝ «Օմարի եւ Եազիդի նման արյունարբու է, իսկ Հարուն ալ Ռաշիդի նման անողոքելի»[2]: Այս նկարագիրները պատմական չեն և ոչ վիպական, այլ դյուզացներգական, եթե կուզեք: Վիպագրի ցանկությունն է տեսնել նրանց այդպիսի հատկություններով:

Վեպի գլխավոր գործողները վարում են գնդեր՝ գնդապետներ են: Կան և խմբապետներ, որոնք փոքր խմբերի գլուխ անցած շփոթություն են ձգում թշնամու բանակում՝ հեղակարծ հարձակումներով և ավազակային հափշտակություններով: Սրանց գործերը չեն ներկայացրած, հիշված են միայն խմբապետների անունները՝ Վաղարշապատցի Հարություն տանուտեր, Գանձակեցի Եղիազար աղա և Թադեոս բեկ, Շուշեցի Զաքարիա

1 **Րաֆֆի**, Դավիթ Բեկ, էջ 371:

2 Անդ, էջ 518, 521:



իշխան (Շուշին գոյություն չուներ այն ժամանակ), Լոռեցի Ավքանդիլ, Երևանցի Օհաննես, Մեղրեցի մելիք Կոստանդին և այլն[1]: Այս անունները պատմական են, առնված են վերևը հիշված ցուցակից, գնդերի թիվը և քանակը ևս այստեղից է[2], բայց տիտղոսները և նրանց գործունեության վայրերը պատկանում են վիպագրին: Կռիվների դաշտը հասցրել է մինչև Դարալագյազ և Սևանա լճի ափերը:

Թշնամի բանակի գլխավոր դեմքերը ևս պատմական են, ինչպես Փաթալի և Աղասի եղբայրները, Ասլամազ ղուլին և ուրիշները: Հարկավ սրանք էլ են արժանացել ավելի բարձր աստիճանի, քան ունեին: Փաթալին, հասարակ ցեղապետ, դարձել է **խան** և բռնապետ Փայտակարանի և ձգտում է ձեռք ձգել ամբողջ Ղափանը: Փայտակարանը՝ Ղարադաղը չէ, ինչպես սխալմամբ նույնացրել է Րաֆֆին: Ասլամազ ղուլին նմանապես խանի դիրք ունի և տեր է Զեվլու բերդին:

Դավիթ Բեկի կռիվներից մեծ տեղ են բռնում վեպի մեջ Զեվլու բերդի պաշարումը և Եղվարդի ճակատը[3]: Պաշարումի երկարաշունչ մանրամասնությունները վառ երևակայության արդյունք են: Ստույգ է միայն, որ Տեր Ավետիքը վճռական դեր է կատարել:

Եղվարդի կռիվը մղված էր ընդդեմ Փաթալի և Աղասի եղբայրների: Թորոսն ընկավ կռվում, բայց Շահումյան զերվեց ոչ այս կռվում, այլ Խոտանանի արշավանքին: Սրա առաջին գերությունը և դարձը շնորհիվ Թորոսի՝ պատմական չեն: Ստեփանոսը Թորոսի քեռորդին չէր:

Երկու հայ մելիքները՝ Դավիթ և Ֆրանգյուլ, հանված են խիստ թանձր գույներով, քան իրավունք է տալիս պատմությունը: Նրանք պետք չունեին սողալու թուրք եղբայրների առաջ: Երկրի խանը նստում էր Նախճվան, որի իրավասության տակ էին հայ մելիքները և թուրք եղբայրները: Սրանք Ղափանի տերերը չէին, ուրեմն և չէին կարող խոստանալ Ղափանը զիջանել փառասեր մելիքին որևէ գնով:

1 **Րաֆֆի**, Դավիթ Բեկ, էջ 308, 404, 519 և այլուր::

2 Անդ, էջ 422

3 Զեվլու բերդը գտնվում է Օխչի գետի վերա, հին Բաղաբերդի և Աչաղուի մոտ: Րաֆֆին գիտե այս, բայց շփոթմամբ դնում է Զեվլուն Հալիձոր բերդի մոտ, որ սխալ է: Հալիձորը Որոտան գետի ափին է Տաթևի մոտերքը և բավականին հեռու Զեվլուից: Աշխարհագրական անճշտություններ պակաս չեն վեպի մեջ: Այսպես Աջբեջ Սիսիանում չէ, այլ հին Աջարան է (Ստ. Օրբելյանի ցուցակում տպված է՝ Աջարաջ) Չորք, այսինքն՝ Կապան գավառում: Հիշկիտ գյուղ, ուր գլխատվեց Պապ, թվում է, թե հին Շաշիկետն է, որ ընկնում է Կովսական գավառում, Շիկահող գյուղի շրջանում: Շաշիկետը դարձել է Շիկետ և Իշկետ: Ափկիս՝ հին Ափկավանք, Արևիքում:

Ընդհանուր առմամբ վեպը հավատարիմ է մնացել իր պատմական վերև քննված աղբյուրին: Սակայն այս միայն վեպի կմախքն է: Արդյո՞ք նրա մարմինը, ամբողջությունը ևս պատմական է: Անգամ պատմությունից առած դեմքերի նկարագիրը հեռու են պատմական իրականությունից: Պատմական լինելու համար անհրաժեշտ չէ ամենևին, որ վեպի դեմքերը և նյութը քաղված լինեն պատմությունից: Գործող անձինք կարող են լինել շինծու, անծանոթ պատմությանը, բայց երբ նրանց նկարագիրը, նրանց ոգին, աշխարհայացքը համապատասխան են ընտրած պատմական միջավայրին, կլինեն պատմական:

**«Դավիթ Բեկ»** վեպը, չհաշված կմախքը, մյուս մասերով խորթ է Դավիթ Բեկի ժամանակակից իրականությանը: Հեղինակն իսկապես նպատակ էլ չի ունեցել վերակենդանացնել գեղարվեստական պատկերների և տիպար դեմքերի միջոցով անցյալի մի էջը: Անցյալը նրան հետաքրքրել է ոչ անցյալի համար, այլ որպես մի «դասարան» քաղաքական կրթության: Եվ դասարանի մեջ ինքն է նստել և ինքն է խոսում, քարոզում: Հին ռազմիկներին հանել է դարավոր մեռելությունից, բայց նրանց մեջ դրել է իր հոգին, իր միտքը, իր լեզուն: Նրանք սոսկ դիմակներ են, որոնց ետևը կանգնած է հեղինակը և թելադրում է ոչ միայն նրանց ճառերը, խորհուրդները, հուզումները, այլ անգամ գործելու կերպերը: Բոլորեքյան խոսում են հեղինակի բերանով, չէ թե միայն հերոսները՝ Դավիթ Բեկ, Մխիթար, Բայինդուր, Ներսես եպիսկոպոս, Շահումյան, այլ անգամ Փաթալի խանի հարեմի բնակիչները՝ Սյուրին և ներքինապետ Ահմեդը, երկուսն էլ կրոնափոխ հայեր են, բայց մնացել են մաքուր, գաղափարական հայրենասերներ, ապրելով հանդերձ տասնյակ տարիներ հարեմական մթնոլորտի մեջ: **«Դավիթ Բեկ»** վեպը մի կենդանի հիշատակարան է հեղինակի անձնական հայացքների, հասարակական և քաղաքական գաղափարների և տրամադրության, մանավանդ նրա տեսությունները՝ բռնության դեմ պայքարելու եղանակների, ստրկության լուծը թոթափելու միջոցների վերաբերյալ:

Դավիթ Բեկի ծնողները մի խումբ ուրիշ հայերի հետ իրենց այրել էին խանի դատարանի առաջ, «կամենալով ինքնակամ մահով բողոքել տիրող անարդարության դեմ. իրանք մեռան, բայց անարդարությունը մնաց...»[1]: Դավիթը փրկվել էր բարեսիրտ ներքինապետի ջանքով, խնամվել: Պատանու կյանքը հնարավոր փորձանքից զերծ պահելու համար, ներքինապետը խորհուրդ է տալիս գնալ Վրաստան: Նախքան հեռանալը պատանին այցելում է իր անբախտ ծնողների գերեզմանը, ողբում

¹ **Րաֆֆի**, Դավիթ Բեկ, էջ 157:



արտասուքով նրանց կորուստը և լսում է մի ձայն, թե «դառնության բաժակը լցված է» և ուխտում է «մինչեւ մահ կռվել անարդարության դէմ»[1]: Հրաժեշտի ժամին խանի կինը, որ տեղյակ է պատանու ընտանեկան դժբախտության, և նրա հովանավորը, ողջերթ է մաղթում խրախուսական խոսքերով, որ ինքը «հավատում է Աստծո արդարադատությանը և հույս ունի, որ բոլոր չարիքների հատուցում կլինի, նեղյալները կվայելեն ազատություն, իսկ նեղիչները սոսկալի դատապարտություն» (էջ 160): Ներքինապետն իր կողմից հանձնում է պատանուն Սյունյաց աշխարհի մի հզոր թագավորի **թուրը**, որ հանել է խանի գանձարանից, մի թուր, որ *միաժամանակ հայ թագավորի հզոր ձեռքում պաշտպանում էր մեր* հայրենիքը. «Թո՛ղ այսուհետեւ այս թուրը հիշեցնե քեզ նրա ցավալի անկումը, թող ոգևորե քեզ նրա վերականգնման համար գործել»: Ներքինապետն ավելացնում է, որ հորդորիչ խոսքերը «իր գլխից չի ասում, այլ Աստված ինքն է հայտնել նրան մի **տեսիլքի մեջ**, ուստի ինքը հավատում է պատանու **ճակատագրին»** (էջ 165):

Դավիթ Բեկը Վրաստան է: Օտար ծառայության մեջ մոռացել է իր ուխտը: Ահա հասնում են նրան երկու նամակ, մեկը կրում է Սյունյաց աշխարհի հոգևորական և աշխարհիկ մեծամեծների ստորագրությունն ու կնիքը, մյուսը՝ Ստեփան Շահումյանից է: Առաջին նամակի մեջ հայրենիքի վիճակը նկարագրված է շատ մխուր և հուսահատ գույներով՝ կնիկներ, աղջիկներ բռնաբարվում են, վանքերն ու եկեղեցիները ապականվում, խաչերը շների վզից կախված, երեխաներին խլում վաճառում են օտար երկիրներ, մի խոսքով ստրկության լուծը, կյանքի դառնությունը այնքան սաստկացել է, որ ժողովուրդն ուխտել է «**կամ միանգամով կոտորվել և բնաջինջ լինել, կամ բոլորովին ազատվել մահմեդական բռնակալությունից**»: Երկիրն աղերսում է, որ Դավիթը վերադառնա և առաջնորդե ժողովրդին» (էջ 174):

Իսկ Ստեփան Շահումյանը հիշեցնում է իր նամակում Դավիթ Բեկին, թե միասին Հայոց պատմության դասեր են առել Տաթևի վանքում և գիտե, որ հնուց ի վեր հայերը նշանավոր մարդիկ են տվել, որոնք սպասարկել են իրենց հանճարը դրացի ազգերին և մեծ անուն վաստակել, փառքի արժանացել, սակայն նամակագիրը կգերադասեր, որ այդ մարդիկ աշխատեին հայրենի հողի վերա և հայրենիքի համար: Այնուհետև դառնալով Դավիթ Բեկին, գրում է. «Ես գիտեմ քո մեծահոգությունը, դու այն տեսակ մարդիկներից ես, որոնց համար հայրենիք և ազգություն չկա, որոնց հայրենիքը

¹ **Րաֆֆի**, Դավիթ Բեկ, էջ 161 (այսուհետև համապատասխան հղումների էջերը կարվեն տեքստում):

լայնածավալ աշխարհն է, իսկ ազգությունը՝ ընդհանուր մարդկությունը, սակայն օտարներին կերակրել, երբ մեր զավակները քաղցած են, մեծ առաքինություն չէ» (էջ 179)։ Դավիթի օգնությունն անհրաժեշտ է համարում Շահումյանը և ուրիշ նկատումով՝ «Մեր ազնվական դասը փչացած է,- գրում է նա,- նրանց վրա հույս դնել չի կարելի։ Դարերի ընթացքում, պարսից ազդեցության ներքո, ազնիվ արյունը նրանց երակներում խարդախվեցավ։ Այժմ ժողովրդին պետք է փրկե ժողովրդի մարդը, նրա միջից դուրս եկած, նրա հարազատ որդին։ Ո՞վ կարող է լինել այդ մարդը բացի քեզանից, Դավի՛թ» (էջ 180)։

Պակաս չեն հակազդեցությունները հախուռն տեսությունների մեջ։ Շահումյանի բերանով կոսմոպոլիտ է անվանում Դավթին, մի մարդու, որ պատանեկությունից ուխտել էր կռվել հայրենիքի ազատության համար։ Այլև ապականված է համարում ազնվական դասը, մոռանալով, որ Դավիթը ազնվական էր, բեկ էր, և, իր իսկ կարծիքով, Տաթևի մելիքների՝ Օրբելյան հռչակավոր տոհմից էր (էջ 287)։ Դավթի զինակիցների մեծագույն և կարևոր մասը ևս կրում են բեկ, մելիք, յուզբշի, տանուտեր տիտղոսները, որոնցով վիպագիրն ինքն է մեծարել հակառակ պատմական աղբյուրի լռության։

Գուցե ժողովուրդը իրոք ավելի մաքո՞ւր է մնացել, քան իր բարձր դասակարգը։ Բայց ահա ի՛նչ ահավոր վկայական է տալիս հայ ժողովրդին Սյունեցի Բայինդուրը, ազատության այդ զինվորը, «և՛ սիրում է հայերին, և՛ ատում»։ Ատելությունից բխած սերը չի կարողանում բացատրել. «Սիրում եմ այդ ազգը որպես մի սիրահար սիրում է մի ցած, բարոյապես ընկած, պոռնիկ կնոջ», թաթախված բարոյական ցեխի մեջ. «մի մեծ պոռնիկ, որի երեսին ամոթի և պատվի մի կաթիլ չի մնացել։ Չորս հազար տարի նա պոռնկություն է անում, բայց տակավին չկշտացավ»։ Հազարավոր տարիներ անձնատուր է եղել այդ պոռնիկը հույն, պարսիկ, հռոմայեցի, արաբ, մոնղոլ հոմանիներին, «իր մարմինը վարակված է հազարավոր հիվանդություններով, մահվան հոտ է փչում», և այլն (էջ 428)։ Պետք կա՞ ասելու, որ հայ անցյալն ու ժողովուրդը արժանի չեն այսպիսի մի անվայել և անիրավ համեմատության։

Դավիթ Բեկը իր զինակիցներով մտնում է Տաթև։ Վարդանանց տոնն էր։ Ներսես եպիսկոպոսը հոգեհանգիստ էր կատարում Ավարայրի նահատակների հիշատակին։ Սեղանի առաջ դրված էր «մի դագաղ ծածկված սուկեհուռ դիպակներով՝ վրան մի խաչ, մի Ավետարան և մի քանի հատ սուր»։ «Դա Վարդանի դագաղն է», - կոչում է քարոզիչ եպիսկոպոսը, «Վարդանը ժողովրդի մարմնացած բողոքն էր։ Բողոք՝ բռնության դեմ, բողոք՝ անարդարության դեմ, բողոք՝ անազատության դեմ»։ Մեր պատմության նշանավոր մարդիկ՝ Հայկ, Արամ, Տիգրան չեն կարող համեմատվել Վար-



դանի հետ։ Ինչո՞ւ։ Եպիսկոպոսի կարծիքով, «այդ քաջերի հետ մնացած էր զորքը, այսինքն՝ վարձկանների մի դասակարգ, որոնց գործ էին ածում աննպատակ աշխարհակալությունների մեջ», միայն իրենց փառքի համար։ «Զորքն արյուն էր թափում, իսկ նրանք փառք էին վայելում։ Զորքը հողեր էր տիրում, բայց նրա որդիքը քաղցած էին մնում, արդյունքը շռայլում էր զորքի տերը»։ Մինչդեռ Վարդանը՝ ինքը ժողովուրդն էր. նրա հետ էր «կղերը՝ մի ձեռքում խաչ, մյուսում՝ սուր։ Նրա հետ էր շինականը, մի ձեռքում բահ, մյուսում՝ նիզակ։ Նրա հետ էր ազնվականը, քաղաքացին և, որ ամենազգլխավորն է, հայ կինը»։ Մի քանի օրվա մեջ Արտաշատում հավաքվում է 60 հազարից բաղկացած մի բանակ, որ կատարեց Ավարայրում «այն փառավոր հաղթությունը, որը մեր պատմության մեջ մինչև դարերի վերջը կփայլի որպես մի պայծառ աստղ»։ «Այժմ ես այս դագաղից դուրս կկոչեմ Վարդանի հոգին, թող նա խոսե ձեզ», թե ի՞նչ էինք մենք առաջ և ի՞նչ ենք այժմ. համեմատության կետ չկա, մեր ներկան նման չէ անցյալին։ Ո՞ւր են այն քաջերը, որ սարսափեցնում էին պարսիկներին, հռոմեացիներին, արաբներին, թաթարներին։ Մեր հայրերի անհարազատ սերունդն ենք. այն հայրերի, որ հարգանք ու պատկառանք էին ազդում օտարներին։ Արդ, ինչո՞ւ ենք մենք այս օրին հասել։ Քարոզիչը մոռանալով, որ ինքը եկեղեցական է, հայտարարում է, որ մեր խղճության առաջին պատասխանատուն մեր եկեղեցականներն են, որ «թուլացրին ժողովրդի սիրտը, խլեցին նրա քաջությունը, մեռցրին նրա կենսական ուժերը և քրիստոնեության, խոնարհության և համբերության անունով սովորեցրին նրան ստրուկ լինել»։ Եկեղեցականները չեն հասկացել, որ «մեր կրոնը անձնապաշտպանության դեմ չէ», որ «սեփականության իրավունքը սուրբ է Աստծո համար», որ «հայրենասիրությունը, ազգասիրությունը ամեն մի անհատի սուրբ պարտավորությունն է, որ Աստված ինքը հրամայեց Իսրայելին կոտորել ոչնչացնել իր թշնամիին»։ Քարոզիչը ցավում է, որ «մեր կույր, տգետ, անկիրթ եկեղեցականները» չեն բացատրել, չեն քարոզել, թե Աստծո ընտրյալները՝ Մովսես, Հեսու, Դավիթ որքան միլիոնավոր մարդիկ են կոտորել, որքան ազգեր ոչնչացրել, մինչեւ կարողացել են իրենց ազգը հաստատել իր հայրենական երկրում»։ Շատ քչերն են ըմբռնել, որ պետք է (!) «խաչի հետ սուր», որ եկեղեցու շահերը պետք է հաշտեցնել պետության շահերի հետ։ Քչերի թվում են Ներսես, Սահակ, Հովսեփ և Ղևոնդ։ Քարոզիչը վերջացնում է իր խոսքը հայտնելով, որ մի նոր Վարդան է հանդես եկել, որ կամենում է հայրենիքը փրկել։ Այդ Դավիթ Բեկն է, և հրավիրում է ներկաներին մոտենալ և Վարդանի դագաղի վրա երդվել հավատարիմ մնալ նոր Վարդանին (էջ 389-401)։

Օրվա հերոսը, Դավիթ Բեկ, խոսք է առնում և հայտնում, որ հայրենիքը

կարոտ էր այս շարժման, որի գլուխն է անցել ինքը, հավատացած լինելով, որ Հայաստանի Աստվածը կօգնե իրենց, ինչպես օգնել է մեր նախնիքներին. «Մենք պիտի կռվենք բռնության, անարդարության և ստրկության դեմ»: Հավատքը, անկեղծությունը և անձնազոհությունը գլխավոր պայմաններն են հաջողության: Մխիթար սպարապետը, թեև չի հավատում բախտին, բայց հավատում է «Հայաստանի **աստղին»**, հավատում է, որ «կա երկնքում մի **արդար դատավոր,** որը վերջապես կլսե թշվառի ձայնը և նրան ուժ ու զորություն կտա փշրելու ամբարտավան բռնակալի եղջյուրները (էջ 313):

Մեր վիպագիրը՝ նոր Եղիշե, իր հերոսը՝ նոր Վարդան, պետք է որ լինեն և՛ նոր Վասակներ: Եվ կան մելիք Դավիթն է Տաթևացի և մելիք Ֆրանգյուլ Երիցվանեկցի: Սակայն, սրանք մենակ չէին որպես շարժման հակառակորդներ: Բազմաթիվ մելիքներից միայն մելիք Փարսադանն է հարել Դավիթ Բեկին և այն էլ ո՛չ անմիջապես: Շահումյանը խորհուրդ է տալիս կոչ անել տեղական մելիքներին: Դավիթ Բեկը գտնում է, որ «զգույշ, մտածող և, իրենց կարծիքով, խոհեմ պարոններն են, որ իրանց մելիքներ, տանուտերներ ու բեկեր են կոչում, և որոնց յուրաքանչյուրը մի-մի վիճակի տեր է, լոկ խոսքերով չի կարելի համոզել: Նրանք դարձյալ կմնան իրենց **խոհեմության մեջ**, որ մի տեսակ խոհեմ անտարբերություն, խոհեմ մեռելություն է: Նրանց պետք է ցույց տալ շոշափելի փաստ, պետք է ցույց տալ, որ փոքրաթիվ մարդիկներով ևս կարելի է մեծ գործ սկսել» (էջ 369-370):

Գործը սկսվեց: Բայց միայն մելիք Փարսադանն եկավ, մյուսները մնացին իրենց խոհեմության մեջ: Նրանցից երկուսը ժառանգեցին ուրացողի և դավաճանի անուն: Ի՞նչ էր նրանց դավաճանությունը մեր վիպագրի հայացքով: Մելիք Ֆրանգյուլը «բնավորությամբ բարի մարդ էր, բայց սաստիկ **փառասեր**: Իր փառասիրությանը զոհեց նա հայրենական կրոնը և մինչև անգամ իր հարազատ աղջիկը», ուզում էր ամեն գնով «պահպանել իր տոհմային ժառանգությունը»: «Իբրև հայ, նա ցանկանում էր Հայաստանի բարիքը, ցանկանում էր, որ այդ երկիրը ազատ լինի, ցանկանում էր, որ նա ունենա իր հայ իշխանը, բայց այդ իշխողը լինի ոչ այլ ոք բայց միայն **ինքը»** (էջ 680): Բայց մի՞թե հանցանք է, երբ մի բարի և հայրենիքին բարիք ցանկացող անձն ուզում է իշխող լինել: Տեսե՛ք, որ ինքը մելիքը, այլ կերպ է բացատրում իր վարմունքը: «Ես միշտ ծածկված եմ եղել մի կեղծ, խաբուսիկ կեղևով,- մենախոսում է ուրացող մելիքը,- դրսից ներկայացել եմ որպես պաշտոնյա, որպես գործիք օտարի, իսկ ներսից պաշտպանել եմ իմ ազգիս շահերը: Ես հայտնապես վնաս եմ տվել իմ ազգին, բայց գաղտնապես օգնել եմ նրան... ի՞նչ պիտի անես, երբ օտարի, երբ թշնամու ծառայության մեջ ես: Մի պատառ պետք է ձգես նրա բերանը, որ կարողանաս ամբողջը ազատել:



Ես տվեցի Փաթալի խանին մի վանք և դրանով ազատեցի մեր բոլոր վանքերը: Ես տվեցի նրա եղբորը իմ հարազատ աղջիկը և դրանով ազատեցի հազարավոր աղջիկներ մահմեդականի կին լինելուց: Ես ուրացա իմ կրոնը, որ դրանով գրավեմ թշնամու մտերմությունը... և նրան իմ ձեռքում պահեմ» և ցավում է, որ չկարողացավ գլուխ բերել ինչ որ նախասահմանել էր (էջ 682-683): Ուրեմն Ֆրանգյուլն իր կրոնը և աղջիկը զոհել էր ոչ թե ունայն փառասիրության, այլ երկրի բարօրության համար:

Վիպագիրը հավատարիմ չէ մնացել այս տեսակետին: Տեղական մելիքները չեն հարել Դավիթ Բեկին, որովհետև չեն համակրել: Դավաճաններ չէին, այլ «հայրենիքին բարիք ցանկացող» մարդիկ, որ իրենց գիծն ունեին: «Քիչ ուժերով մեծ գործ կատարելու» ինքնավստահությունը հակառակ էր նրանց փորձառությանը, որ թելադրում էր «քիչ զոհողությամբ» խուսափել մեծ վտանգներից: Վեպը անտարակույս շահած պիտի լիներ, եթե հեղինակը լրջորեն վերաբերեր հակառակորդների տեսակետին և տար երկու հայացքների ներհակ ուղղությունը, նրանց բախումը և համերաշխության միջին ճանապարհը: Բայց նա տարվել է Եղիշեի շունչով, և նրանից փոխ է առել դավաճանի պատրաստ մտացածին պատկերը: Մելիք Ֆրանգյուլ նենգում է Եղիշեի Վասակի նման:

Թողնենք հերոսների թերի պատմագիտությունը, թյուր են մակերեսային դատողությունները հայ անցյալի մասին, անգզույշ՝ հարձակումները հայ եկեղեցու և եկեղեցականության վրա: Առնենք միայն նրանց սեփական և շինիչ հայացքները, որոնց էությունը հետևյալն է. «Հայերի սրտում բոլորովին չի հանգած հայրենասիրության կայծը, բավական է փչել նրա վրա եւ իսկույն կբորբոքվի: Իսկ բոցավառել, բորբոքել հայրենասիրության սրբազան հուրը կարելի է: Այդ կլինի գործի հաջողակ **սկիզբը**, իսկ **վախճանը Աստծո ձեռքումն է**: Պետք է հավատալ Հայաստանի աստղին, պետք է հավատալ երկնքի արդար դատավորին, որ կլսե թշվառներիս ձայնը և ուժ կտա փշրելու թշնամու եղջյուրները» (էջ 313): Ուխտենք ազգովին ծառայելու այս գործին, ուխտենք կամ բնաջինջ լինել կամ փշրել ստրկության շղթաները: Ո՛վ չգա մեզ հետ դավաճան է, մեր սուրը պետք չէ խնայե այդպիսիներին (էջ 403):

Այս հավատամքը պատշաճ է ավելի մի եկեղեցականի, քան քաղաքական գործիչի և հիշեցնում է Եղիշեի ուխտը, որ տանում է դեպի մարտիրոսական թագը: Եղիշեի համար անտարբեր էր հաղթել, թե հաղթվել, երկու դեպքում էլ Աստծո արքայությունը պատրաստ էր: Իսկ լուրջ քաղաքական գլխում հաշվից դուրս պիտի մնան Աստված, ճակատագիր և արդարություն: Սրանք անտես, աներևույթ և անկշռելի ուժեր են, կարող են գալ և չգալ: Հայրենասիրություն, հույս, հավատ՝ հոգեկան կարևոր ազդակներ են, բայց

բավական չեն քաղաքական հեղաշրջումներ առաջ բերելու համար: Հարկավոր է ամենից առաջ զինվորական կարողություն: Դավիթ Բեկը այնքան միամիտ չէր, որ կարծեր թե մի բուռ քաջերով հնարավոր է պարսից պետությունը խորտակել: Նրան թևավորողը ռուսական օգնության հույսերն էին, որին ակնապիշ սպասում էին Վախթանգ և Եսայի՝ նստած Գանձակում: Երբ հասավ բոթաբերը, թե կայսերական խոստումներն արդյունք չտվին, Դավիթ Բեկը սուրը դրավ պատյանի մեջ: Նա Թամարին խոստացել էր, թե նպատակս է «ազատել հայրենիքս, ազատել իմ ազգը և Հայաստանի **թագուհու թագը քո գլխին դնել**» (էջ 329): Այս է վեպի նախնական հանգույցը, որ պիտի լուծվեր Դավթի հաղթանակով՝ պսակված արքայական թագով: Վիպասանը գիտե, որ Դավիթ Բեկը հույս ուներ դրսի օգնության. տեսանք, որ Գանձակում բանակած հայ 60 հազար երևակայական զորքի հրամանատարը, իր կարծիքով, Դավիթ Բեկն էր: Նա անտես է արել վեպի մեջ արտաքին նեցուկը և ակամայից թողել է հերոսին կես ճանապարհին, առանց թագի: Այս զանցառությունը խորհրդավոր է:

**«Դավիթ Բեկ»** վեպը այսօր մեզ համար պատմական է կրկնակի իմաստով: Նրա հերոսը 1722 թվականի մարդ է, բայց խոսում է 1881 թվի լեզվով: Այդ լեզուն չի պատկանում միմիայն հեղինակին՝ Րաֆֆուն: Այդ այն լեզուն է, որ սեփական էր իր ժամանակակից հայ մտավորականության կամ այն հասարակության մի զորավոր հոսանքի, որ սկսվել էր վաղուց, բայց մի նոր երանգ էր ստացել 1878 թվից հետո: Ազատամիտ հոսանք էր ընդդեմ պահպանողականի: Նա ճոխացրեց իր ազատական գաղափարաբանությունը քաղաքական նոր տրամադրություններով՝ Հայկական հարցի միջազգային փուլի շուրջ ճառագայթած լույսի և հույսի ազդեցության տակ: **«Դավիթ Բեկ»** վեպը հասունացել է այդ մթնոլորտում, ուր այն ժամանակ աշխատում էր հեղինակը: Վեպի մեջ պակաս չեն էջեր և հայացքներ, որոնք հիշեցնում են «Մշակ»-ի հրապարակախոսությունը: Րաֆֆին հաղորդ է նոր տրամադրություններին և հավատարմորեն վերարտադրել է նրանց ոգին իր վեպի մեջ: Սուր աչքով նկատել է և սևեռել է մի մտայնություն, որ հազիվ ծայր էր տվել և միմիայն տասը տարուց հետո պիտի ձևավորվեր և մարմնանար գրեթե այնպես, ինչպես ինքը նախատեսել էր (17): Հարկավ, ազատագրական շարժումը շատ բան է պարտական Րաֆֆուն, բայց սխալ կլիներ կարծել, թե շարժումը նրա զավակն է: Իրապես երկուսն էլ ծնունդ են այն հովերի, որ գալիս էին 16-րդ հոդվածի խոստումներից: Շարժումի կարապետները եղել են նույն միջավայրից, ուր աշխատել է Րաֆֆին: Նրանք չէին որոնում ապստամբական լայն շարժումներ, գիտեին, որ հնար չէ ոտքի հանել մի ժողովուրդ, որի հարյուրից իննսունը հրացան չէ տեսել և դեռ ծանոթ չէ զինվորագրության և ուրեմն չունի զինավարժության և



զինվորական կարգապահության ընտել շարքեր: Նրանք հավատացած էին, որ մեծ պետություններն իրենց հետ են, որ իրենց թիկունք կլինեն նաև ճնշված զանգվածների «պաշտպան» Ընկերվարական Միջազգայնականը և ուրեմն բավական է բողոքել տրտունջի ցույցերով, ըմբոստական պայթյուններով, և խոստացված բարենորոգումները կիրագործվեն: Այսպես էր մտածում և Րաֆֆին: Երբ իր հերոսի բերանով ասում է թե՝ «Սկսենք գործը, մնացածը Աստծո ձեռքին է, Հայաստանը աստղ ունի, երկնքում արդար դատավոր կա», իսկապես այլ բան չէ հասկանում, քան լուսավոր մարդկության պաշտպանությունը: Բայց և այնպես Րաֆֆին մերժել է հատուկ տեղ տալ իր վեպի մեջ արտաքին գործոնին: Հերոսները գործում են անկախ իրենց հաշվին և՛ պատասխանատվության, և՛ գործում են զենքով: Վիպագիրը նախընտրել է ստեղծել, տալ հայրենասիրության մի տիպ, որ լինի բացարձակ արժեք և պահե իր նշանակությունը բոլոր պայմաններում, կլինի արտաքին օգնություն, թե չէ, կգա դրսեն արդարությունը, թե չի գա: Հայ միջավայրի և դարերով ահաբեկված և զինաթափ մտայնության համար, նրա հայրենասիրությունը նորություն է, անվանենք մի բառով զինյալ հայրենասիրություն: Դավիթ Բեկն իր զինակիցներով մարմնացնում է այդ հայրենասիրության գաղափարը: Վիպագրի տառապող մտքի հորձանքները, զգայուն սրտի անհավասար գալարումները, մերթ խանդավառ, մերթ հուսահատ, գումարվել և քանդակել են զինված հայրենասերի տիպար Դավիթ Բեկին:

Այսօր այդ մեծ քանդակագործի հիշատակն է, որ տոնում է վարատական հայությունը: Նայում ենք մեր շուրջ և ամեն կողմից ճնշող մթության մեջ տեսնում ենք միայն Դավիթ Բեկի ասպետական ուրվականը: Մեծ և փոքր ազգեր միաբերան խոսում են սպառազինված հայրենասիրության մասին, ամեն տեղ միայն զենքի շաչյուն է լսվում: Բոլորը զինվում են, որպես թե խաղաղության համար: Մենք կռվազան չենք և զենք էլ չունենք կռվելու: Բայց սովորենք գոնե զինավարժություն, ծանոթանանք ժամանակակից ահավոր զենքերին, զինվորագրվենք և ոչ թե խուսափենք օտար շարքերում: Օգտվենք պատեհությունից, խոհուն ճակատով և համր բերանով: Ոչ ոք չգիտե, անցքերի թավալգլոր անիվը ո՞ւր է տանում: Պատրաստ և զգաստ լինենք, որպեսզի չկորչենք անփառունակ, կռվողների ոտքերի տակ կոխան: Մեր զգաստությունը կլինի մեծագույն հարգանքը մեծ հայրենասերի հիշատակին:

# ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎՅԱՆԻ ՎԱԽՃԱՆԸ

Այն մարդը, որ պետք է խաղաղ հանգչեր փառքի թավշյա բարձերի վերա, կորավ անհայտության մեջ: Շատերը փորձեցին լուծել այս խորհրդավոր անհետացումի կնճիռը: Իզուր: Ահա մի նոր փորձ ևս. **«Խաչատուր Աբովյանի անհայտ բացակայումը», Ա. Բակունց**[1](1):

Արդյո՞ք հաջողել է Ա. Բակունց պատռել անհայտության քողը: Տարաբախտաբար, ո՛չ: Կարելի է ասել, որ եղած քողի վրա պարզել է մի նոր և բանաստեղծական շղարշ:

Երիտասարդ հեղինակը տրամադրել է նոր և մինչև այժմ անծանոթ նյութեր և եկել է այն օտարոտի եզրակացության, թե Աբովյանի չքացումը գաղտնի կապ է ունեցել 1848 թվի փետրվարյան հեղափոխության հետ (2), այսինքն՝ մեծ ընդվզումի ձայնը հրապուրել է Աբովյանին և ստիպել թողնել տուն-տեղ, ընտանիք և անցնել անխլորեն Երասխը դեպի Տաճկահայաստան և այնտեղից էլ թերևս մի ուրիշ(՞) տեղ:

Այս անհեթեթ գաղափարը կաշկանդել է հեղինակի մտածողությունը և թյուր ու կամայական ուղղություն տվել ամբողջ հետազոտության:

Արտասովոր ներողամտությամբ անպարտ է արձակել պ. Բակունց այն անձերին, որոնք անպայման համարատու են տխուր իրողության, եթե ոչ իսկական մեղավորներ:

Նա անզգույշ է, երբ պնդում է, որ գավառապետն ու ոստիկանապետը (3) այդ երկու ոխերիմներն անբախտ Աբովյանի, կատարել են իրենց պարտականությունը խղճմտորեն, ամիսներ շարունակ, որպես թե որոնել են, և ընավ հանցապարտ չեն, եթե արդյունքի չեն հասել:

Սակայն, փաստերը այլ բան են ասում, այն փաստերը, որ բերում է ինքը՝ Բակունցը:

Աբովյանը դուրս է եկել տանից 1848 թվին, ապրիլի 2-ին և այլևս չի վերադարձել:

Մարտ 9-ից նա արդեն արձակված էր տեսչական պաշտոնից, և մնացել էր դպրոցում որպես պաշտոնակատար տեսչի մինչև նույն ամսի 31-ը: Նոր

[1] **Ակսել Բակունց**, Խաչատուր Աբովյանի անհայտ բացակայումը, Երևան, 1932:



տեսուչը, նրա փոխանորդը, ոմն Տուրկեստանով (4) ժամանել էր մարտի 30-ին և նույն օրն ևեթ շտապել էր ստանալ դպրոցի դիվանը: Բայց հազիվ կարողացել էր ստուգել նախորդ տարվա գործերը: Զարմանալի է, որ այդքան անհամբեր նոր տեսուչը չէ շարունակել հաշվառությունը հետևյալ՝ մարտի 31-ի և ապրիլի 1-ի օրերը: Այն ինչ մարտի 31-ին Աբովյանը թվում է թե եղել է դպրոցում, քանի որ իր ձեռքով կազմած ցուցակը ուսուցչական ռոճիկների վերաբերում է այդ օրվան: Ափսոս, որ Բակունց տվել է միայն Աբովյանի ստացականը. արժեր բերել ամբողջ ցուցակը: Հին տեսուչը թեև արդեն պաշտոնաթող էր մարտի 9-ից, բայց շարունակել է վարել դպրոցի գործերը մինչև մարտի 31-ը, և չնայելով այս հանգամանքին, նրա ռոճիկը հաշված է միմիայն մինչև մարտի 9-ը, որ է 9 ռուբլի 33 կոպեկ: Պաշտոնակատարության համար վարձատրություն չեն տվել, մի բան, որ բնորոշում է իշխանության անարդար վերաբերումը դեպի երեկվա տեսուչը:

Միանգամայն բնական է հարցնել, ինչո՞ւ Աբովյանի հաջորդը, որ այնպես հապճեպով, իր գալստյան օրն ևեթ ձեռքը դրել էր դպրոցի գործերի վերա, հանկարծ զսպում է իր աշխույժը և չի հետաքրքրվում դպրոցական գործով ո՛չ մարտի 31-ին, ո՛չ ապրիլի մեկին, և ո՛չ երկուսին: Ապրիլի 3-ին լսում է, որ Աբովյանը նախորդ օրը տանից դուրս եկել և դեռ չի վերադարձել և հարկ է տեսնում անհապաղ հայտնել գավառապետին: Այլև խնդրում է նրան դրկել մի պաշտոնական անձ ներկա լինելու դպրոցական հաշիվների քննության, կարծես վստահ էր, որ Աբովյանի կորուստը անդառնալի է:

Զարմանալի չէ՞ նոր տեսչի այս նոր փութկոտությունը և այն էլ երեքօրյա քնածությունից հետո: Աբովյան կարող էր գիշերած լինել բարեկամի մոտ, գուցե իր հայրենի գյուղն էր գնացել կամ գործով մնացել մի այլ տեղ: Բնական էր սպասել մինչև խնդիրը պարզվեր, արդյոք չքացումը ժամանակավոր է, թե՝ ընդմիշտ: Նոր տեսչի բռնած դիրքը ինքնին կասկած է հարուցանում, կարծես նա գիտեր որ վերադարձը անհույս էր:

Նոր տեսչի երեքօրյա հանգիստը հասկանալու համար, ենթադրեցինք, որ թերևս տոնական օրերն են եղել, որ արգելել են գործը շարունակելու: Մարտի 31-ը արդարև կիրակի օր էր 1848 թվին, մեծ պասի կիրակիներից մեկը, և հետևապես հասկանալի է Տուրկեստանովի դադարը միայն այդ օրվան համար: Հաջորդ երկու օրը, ապրիլի 1-ին և 2-ին տոն չկար և ուրեմն անհասկանալի, որ նա չէր շտապել ստանձնելու դպրոցը:

Մի այլ կնճիռ: Տեսանք, որ Բակունցի հրատարակած վավերագրերից երևում է, որ Աբովյան մարտի 31-ին կազմել է ուսուցիչների ռոճիկացուցակը, որի հիմամբ նույն Բակունց ասում է, որ մարտի 31-ին Աբովյան վերջին անգամ դուրս է գալիս դպրոցից, առանձնանում իր սենյակում և անհետ կորչում: Սակայն, մարտի 31-ին կիրակի էր, դպրոցը փակ, և Աբովյան չէր

կարող ո՛չ դպրոցում լինել, ո՛չ ռոճիկների ցուցակը կազմել ու իր բաժինը 9 ռուբլին ստանալ: Ապա ուրեմն Աբովյանի ստացականը[1], եթե վավերական է, չէ կարող գրված լինել մարտի 31-ին:

Աբովյան ուսուցիչների ռոճիկը պատվիրել էր, բայց մարտ ամսվա արձանագրությունը չէր կազմել և որովհետև, ըստ Բակունցի, առանց այդ արձանագրության չէր կարելի նոր «դրամական գրանցումներ անել մայր մատյանում», ուստի նոր տեսուչը կեղծում է Աբովյանի ստորագրությունը և ուսուցիչներին ստորագրել տալիս, այսինքն՝ կազմում է արձանագրությունը և ստորև դնում Աբովյանի ձեռքը:

Պետք է խոստովանեմ, որ ո՛չ այս ձևակերպության իմաստը և ո՛չ էլ կեղծարարության անհրաժեշտությունը չեմ հասկանում: Նոր տեսուչը, այլև գավառապետը, որ դպրոցի պատվավոր տեսուչն էր, իրավազոր էին ամեն ինչ գործել դպրոցի նկատմամբ, քննել հաշիվներ, բաշխել ռոճիկներ, կազմել արձանագրություն, առանց պետք ունենալու արձակված տեսչին, թող թե կեղծելու նրա ստորագրությունը:

Կեղծարարությունն ավելի դատապարտելի է, քան արձանագրության վերաբերյալ ձևականությունը: Այս ևս մի տխուր վկայական այն դպրոցական մթնոլորտի բարոյագիտության, որից հեռացավ Աբովյան:

Նոր տեսուչը ամսի 3-ին խնդրել էր գավառապետին, որ մի լիազոր նշանակի դպրոցական գործերը քննելու համար: Գավառապետը նշանակել էր ոստիկանապետին: Սրա ներկայության ստուգել էին դրամարկղը, քննել հաշվեմատյանները և ոչ մի զեղծում չէին գտել: Այս քննությունը կատարվել էր ամսի 6-ին: Իսկ սրանից առաջ, հարկ էին տեսել կեղծել Աբովյանի ստորագրությունը, երևի առանց ոստիկանապետի մասնակցության: Անհասկանալի վարմունք:

Գավառապետը ապրիլի 8-ին պատվիրում է վերջապես ոստիկանապետին սկսել Աբովյանի գործի քննությունը: Ապրիլի 20-ին նույն գավառապետը հաղորդում է փոխարքային (5): Պետք է կարծել, որ 12 օրվա ապարդյուն որոնումներով գավառապետը գործը փակված է համարել և այս մասին հայտնել բարձրագույն իշխանության: Հավանորեն փոխարքայի դիվանեն նոր հրահանգ է գալիս գավառապետին: Մայիսի 17-ին ոստիկանապետը դիմում է դպրոցի տեսչին և հարցնում, արդյոք Աբովյան դրամական զեղծումներ չի արել և հարկադրվել փախչել: Ոստիկանապետը ինքը անձամբ ներկա էր եղել դրամարկղի և մատյանների քննության, գիտեր որ ամեն ինչ իր տեղն էր և ուրեմն իր դիմումը միանգամայն ավելորդ էր: Թվում է, որ բարձրագույն իշխանության առաջ արդարանալու համար

[1] Ակսել Բակունց, Խաչատուր Աբովյանի անհայտ բացակայումը, էջ 51:



գավառապետը և ոստիկանապետը փորձ են անում դրամական փաստում գտնել և տեսչի անհետացման մի հիմ գտնել, արատավոր հիմ: Ի՞նչ միջոցներ է ձեռք առնում այնուհետև ոստիկանապետը, ի՞նչ խուզումներ կատարում, հայտնի չէ: Հավաստի է միայն, որ այս անգամ ևս գործը փակված է համարվում հունիսի 24-ից առաջ: Նոր տեսչի փոխանորդ Վեքիլովը (6) իր հունիսի 24-ի հաղորդագրության մեջ, հայտնում է Անդրկովկասի դպրոցների վերատեսչին, որ ոստիկանությունը ավարտել է Աբովյանի գործի քննությունը և ներկայացրել ուր հարկն է:

Հուլիսի 31-ին Երասխի ափին գտնում են մի կմախք: Ոստիկանությունը գոհ կլիներ, եթե կարելի լիներ ապացուցանել, որ Աբովյանի կմախքն է: Սակայն, բժշկական քննությունը ցույց է տալիս, որ մատաղահաս աղջկա ոսկորներ են: Խոր Վիրապի մոտերքը գտնված կոշիկը ևս նույն նպատակին է ծառայում, բայց դարձյալ անհաջող: Վերջին երկու պարագաները իսկապես կապ չունին Աբովյանի գործի հետ, գոնե անմիջական կապ, այսինքն՝ ոստիկանության որոնումների արդյունք չեն, այլ պատահական հայտնություններ քրեական բնավորությամբ:

Աբովյանի գործը երկու շրջան է ունեցել, ապրիլի 6-ից մինչև ապրիլի 20-ը և մայիսի 17-ից մինչև նախքան հունիսի 24-ը: Հակառակ Ա. Բակունցի հաստատության, թե ոստիկանապետը և գավառապետը ամեն ջանք գործ են դրել գտնելու Աբովյանին, տեսնում ենք, որ ընդհակառակը, այդ երկու պաշտոնյաները շատ անփույթ վերաբերում են ունեցել, ոչ մի լուրջ քայլ չեն արել, ո՛չ մի հարցափորձ, ո՛չ մի հետախուզություն տեղի չի ունեցել. զլացել են անգամ սուրհանդակներ ղրկել Երևանից դեպի դուրս տանող գլխավոր ուղիները: Ընտանեկան հարցաքննությունն անգամ շատ պակասավոր է: Ընտանիքին վերագրած այն հայտարարությունը, որ վերջին երեք օրը Աբովյան անքուն գիշերներ է ունեցել, նույնն է, ինչ որ ասել է ծառան և այս տեղեկությունն ևս չի հաստատվում, եթե մարտի 31-ի թվակիր ստացականը գրված է ապրիլի մեկին, ինչպես հավանական է թվում: Քննությունը չի աշխատել պարզել, թե ինը ռուբլին հանձնե՞լ է Աբովյան իր կնոջը, կամ ի՞նչ վիճակի մեջ է թողել իր գրքերը, ձեռագիրները, ինչպե՞ս է բաժանվել իր կնոջից և զավակներից, արդյո՞ք նկատելի էր որևէ նշան հեռագնացության: Եթե Աբովյանի անհետանալը նախավճիռ ծրագրի ծնունդ լիներ, անկարելի է, որ այն զգայուն մարդը որևէ կերպով չմատներ իր հոգեկան վիճակը վերջին հրաժեշտին:

Ա. Բակունց երկու նամակ է հրատարակել. երկուսն էլ գրված են Երևանից Թիֆլիս Գեորգ Ակիմյանին: Սա Աբովյանի աշակերտն էր և բարեկամը: Իր ուսուցչի կորստյան լուրը առնելուց հետո չի դադարել նամակներ գրել իր մերձավորներին և տեղեկություններ խնդրել: Նամակա-

գիրները անգրագետ մարդիկ են: Առաջին նամակագիրը Արովյանի հեռանալը վերագրում է մի հանցագործության: Մի երկու տարի առաջ Արովյան մի գերմանացու հետ պետք է բարձրանար Մասիսի գագաթը: Նրանց փորձը ձախողել էր, բայց և այնպես, թուղթ էին գրել և հավատացրել իրենց ղրկողներին, որպես թե հաջող ելք են ունեցել: Վերջը քննությունը պարզել էր, որ նրանք իսկապես չեն կարողացել բարձրանալ: Նամակ գրողն այն գաղափարն ունի, որ Մասիսի կատարը ելնելը մի հանձնարարություն էր, որ եթե չկատարեին, պետք է պատժվեին: Նամակագիրը կարծում է, որ գերմանացին գրել էր Արովյանին հետևյալ նախազգուշացումը. «մէկ էլ որ էն նէմէցն մէկ գիր էր գրել Արովեանի վրէն, թէ ես էս գիրն քեզ գրեցի ես **տեղ գրաց**(?) **ես էսպէս**(՞) մեռա դու ինք քոյ գլխի չարէն տես, բայց որ էն գիրըն երկար չի քաշեց որ նայ զորաւ»:

Ընդգծած բառերը սխալ են կարդացվում: Նեմեցը չէր կարող գրել թե ես մեռա և մեռած տեղը նամակ գրել: Տեղ գրաց(?) ոչինչ չէ նշանակում, պետք է կարդալ **դէզգէրայ**, օտար բառ է գործածական ժողովրդի բերանում և նշանակում է վկայաթուղթ: Գերմանացին գրում է, թե նամակս թող ծառայե քեզ վկայաթուղթ, որ ասածս ճշմարիտ է: Եվ ի՞նչ է ասում: Փոխանակ՝ ես **էսպէս** մեռայ, առաջարկում ենք կարդալ՝ ես **եայ** մեռայ կամ ես **էսայ** մեռայ: Գերմանացու տողերի իմաստն այն է, թե իրեն արդեն սպառնում է պատիժ և Արովյանին զգուշացնում է, որ իր գլխի ճարը տեսնի: Հայ նամակագրի կարծիքով Արովյան փախել է այս նամակի հետևանքով, վերահաս պատժի երկյուղից, որովհետև որպես թե նամակն ստանալուց քիչ հետո է, որ անհետանում է Արովյան:

Անտարակույս է, որ գերմանացին հայտնի երկրաբան Հ. Աբիխն է, որ իիրավի փորձել է բարձրանալ Մասիս՝ ընկերակցությամբ Արովյանի և այս առթիվ գժտություն էր ծագել նրանց մեջ (7): Ա. Բակունց երկու սխալ է գործում, երկու անհիմն ենթադրությամբ: Նախ՝ կարծում է, որ Արովյանի են-թադրական թղթակիցը Աբիխը չէ, այլ մի ուրիշ անհայտ գերմանացի: Հետո ենթադրում է, որ նրա նամակի այն տողերը, որ ինքը, ինչպես տեսանք, ուղիղ չէ կարդացել, խուլ ակնարկ են որպես թե փետրվարյան հեղափոխության: Երկու կամայական ենթադրությունից ծագում է մի երրորդը. գերմանացու խորհրդավոր ակնարկը, որպես թե Արովյան հասկացել է և հափշտակված հեղափոխության ավետիսից, թողել է տուն-տեղ և հեռացել, ուղղելով իր քայլերը դեպի կախարդիչ ձայնը:

Գեորգ Ակիմյանի Երևանի անգրագետ թղթակիցը գրում է, ի միջի այլոց, որ Արովյանի ձայնը Ղարսից է գալիս, «որ շատ մարդ քոմակ ունի եւ **շատ էլ չալիշ են գալիս**, Գէորգ ջան, դարդ չի անես նորա մասին Աստւած ողորմած է»: Ա. Բակունց կարծում է, որ «չալիշ եկողները» ռստիկանություն է և



Արովյանի ազգականները, այսինքն՝ այն անձինք, որ որոնում էին նրան: Այն ինչ խոսքը նշանց մասին է, որոնք «քոմակ» են անում Արովյանին: Նամակագիրը հայտնում է շրջող լուրերից մեկը, որի համաձայն Արովյան անցել է Կարս և այնտեղ շրջապատված «շատ մարդերով» ինչ-ինչ պատրաստություն է տեսնում գաղտնի նպատակով:

Այս միտքը կրկնվում է նաև երկրորդ նամակում՝ գրված մի ուրիշ անձի կողմից, բայց միևնույն շրջանից: Զանազան լուրեր կային ժողովրդի մեջ Արովյանի կորուստի առթիվ: Ասում էին, որ այս տարի ևս պիտի սարը բարձրանար, վախեցավ թե չկարենա և փախավ, կամ թե տեսել են Զանգվի ափին, ուր հրել ձգել են գետը, տեսել են՝ Գանձակ հնամաշ շորերով, տեսել են՝ Կարս, տեսել են՝ Ակոռի մեկ քարի վրա նստած լալիս:

Այս լուրերը, մեկը մյուսեն անհավանական, պարապ երևակայության արդյունք են: Ա. Բակունց ընդունելի է համարել, որ Արովյան անցած լինի տաճկական սահմանը, ուրեմն մերձավորապես Կարսի լուրը:

Ֆ. Բոդենշտեդտի (8) ասելով, Արովյան իր վերջին նամակում գրած է եղել, թե՝ վճռել է թողնել ռուսական ծառայությունը, գնալ Հայաստանի ներքին մասը և այնտեղ պարապել երկրագործությամբ, որովհետև իր չնչին եկա-մուտները չեն գոհացնում քաղաքի պահանջներին:

Բակունցի աչքում Արովյանի հայտարարությունը մի ապացույց է ի նպաստ իր ենթադրության, որ նա կարող էր անցած լինել Երասխը: Սակայն, թվում է, թե Բոդենշտեդի ուղղած տողերը այլ բան չեն, քան դառնացած սրտի վայրկենական զեղմունք և սխալ կլիներ այնտեղ ծրագրային խորհուրդ տեսնել: Արովյան այնքան միամիտ չէր և ոչ անտեղյակ հայ գեղջկական կյանքին, որ լրջորեն կարծեր թե հնարավոր էր ավելի ապահով ապրուստ գտնել գյուղում:

Հայաստանի ներքին մասը, ըստ Բակունցի, Տաճկահայաստանն է: Արովյան որպես թե հիասթափված էր ռուսներից և նաև հայ մթնոլորտից, սկսած Ներսես Աշտարակեցուց, ուստի և բարոյապես պատրաստ էր թողնելու Ռուսահայաստանը: Բակունց Արովյանին վերագրում է տաճ-կական համակրանք, որպես հակազդեցություն ռուսական հուսախա-բության: Այստեղ թվում է թե մեղանչում է ճշմարտության դեմ, կամենալով տուրք տալ իր շրջապատում տիրող տրամադրության: Արովյան հոգեկան տարտամ դրության մեջ էր, երբ հասավ փետրվարյան հեղափոխության համբավը, որ կայծակի նման ճեղքեց խավարը և լուսավոր ուղի բաց արեց նրա առաջ: Այսպես է մտածում Ա. Բակունց: Բայց չէ պարզում, թե ի՞նչն է իսկապես քաշում Արովյանին, թրքական լավատեսությո՞ւնը, թե՞ ֆրան-սական հեղափոխությունը: Թվում է, թե զկայսերն կայսեր տալու ցանկությամբ աշխատել է լծել խորհրդային արտաքին քաղաքականության

երկու սրավար նժույգները՝ հեղափոխություն և տանկական բարեկամություն, Աբովյանի՝ հայ վերածնունդի հոր, կառքին, այն կառքին, որ պիտի տաներ նրան դեպի խորհրդավոր անհայտություն...

Աբովյանի ընկեր Ս. Նազարյանը այն միտքն էր հայտնել, որ Աբովյան հուսահատության տխուր ժամին թերևս ինքնասպան է եղել: Արևմտահայ Ստեփան Ոսկանը հավանական է համարում, որ աքսորված լինի Սիբիր: Կան մարդիկ, որոնց վոխտ միտքը ուրիշ պատճառ չէ գտել, քան այն, որ տրտավոր սիրո զոհ է եղել: Կարելի է բնավին արհամարհել այս ենթադրությունը, ինչպես վարվել է պ. Բակունց և որ նրան պատիվ է բերում: Աբովյանի վերջին ժամերը այնքան տագնապալից են, որ սիրո մարմանջ տեղ չէր կարող ունենալ նրա հուզումնալից հոգու մեջ: Երևանի լոթիների վայել ենթադրություն է, ինչպես որ վերջերս գրչի մի ստահակ անվարժ մտրուկի սանձարձակությամբ փորձեց սմբակահարել նշանավոր հայի հիշատակը, իր հոգեկան հիվանդությունից բաժին հանելով պաշտելի անձին (9):

Ա. Բակունց իրավունք ունի, երբ հետ է մղում սիրային արկածի ենթադրությունը, բայց սխալվում է, կարծելով, որ հայ քաղքենության դեպի խեղճ թուրքերն ունեցած ատելությունից է ծագել այդ վարկածը: Այս պատճառաբանության համեմը ևս ավելորդ է: Բնականն այն է, որ վատ ենթադրությունը բխում է վատ մարդկանցից: Ցայժմ հայտնած բոլոր ենթադրություններից այն, որ պատկանում է Ա. Բակունցին, ամենքեն ավելի է համապատասխանում Աբովյանի հոգեկան դրության: Աբովյան այն անձերիցն էր, որ աշխարհ են գալիս խորհուրդը ճակատին և երազները հոգում: Բնության այդպիսի ընտրանիների համար իրականությունը թանկ է այն չափով, որչափ նա հնարավոր դաշտ է ներկայացնում երազների համար: Հակառակ դեպքում, իրականությունը կորցնում է իր արժեքը և երազներն են դառնում տիրական և քաշում դեպի այլ դաշտեր: Ա. Բակունց բանաստեղծ է և ըմբռնել է Աբովյանի հոգեբանությունը: Եթե կարողանար հիմնավորել իր ենթադրությունը, մի նոր ծաղիկ ձգած կլիներ անհայտ շիրիմի վրա: Տաճկահայաստան անցնելը, եթե հաստատվեր, մի նոր դափնի կբերեր Աբովյանին, որպես նախակարապետի այն գործունեության, որին հետագա սերունդները պետք է կապեին հայության քաղաքական անուրջները:

Սակայն, Ա. Բակունցի ենթադրությունը հեռու է իսկությունից, բանաստեղծական տեսություն է:

Աբովյանի կորուստը որոնելու է Երևանում, ո՛չ Երևանից դուրս: Ապրիլ ամսին, երբ անհետացավ Աբովյան, Այրարատյան դաշտը, եթե ոչ ամբողջ Հայ երկիրը, փայլում էր գարնան բոլոր պճրանքով: Գարնանացանի ժամանակ է, դաշտերը լի աշխատավոր ձեռքերի հոծ բազմությամբ: Ան-



կարելի է, որ եվրոպական զգեստով մի մարդ անցներ Երևանից դեպի Երասխ, առանց ուշադրություն գրավելու: Հայ գյուղացին դիտող և զննող է: Մեզնից ամեն ոք գիտե անձնական փորձով: Երևանից տանող ճանապարհները անբնակ և խոպան վայրերով չեն անցնում: Միթե հնարավոր է, որ ոչ մի աչք տեսած չլիներ օտարական ուղևորին: Երևանում Աբովյան երկու աշկարա թշնամի ուներ. այդ գավառապետն էր և ոստիկանապետը, երկրի զույգ զորավորները: Երկու տարի առաջ, 1846 թվին, հաջողել էին Աբովյանին երեքօրյա բանտարկության ենթարկել: Անզգուշություն կլիներ սրանց օձիքը բաց թողնել և պետք է մշտապես կասկածի տակ պահել մինչև խնդրի վերջնական լուծումը: Ստեփան Ոսկանի երկյուղն այնքան էլ անհիմն չէ. հարկավ ոչ աքսորի իմաստով: Աբովյան վտանգավոր անձ չէր ճանաչված բարձրագույն իշխանության աչքում, որպեսզի խոսք լիներ Սիբիրի մասին: Սակայն, այլ է բարձրագույն իշխանությունը և ա՛յլ գավառականը: Կովկասյան գավառապետությունն ու ոստիկանությունը երբեք իր բարձրության վրա չեն եղել կանգնած: Հայ-թրքական կոտորածների ժամանակ երևաց նրանց էությունը: Ի՞նչ էին ներկայացնում, որպես մարդ և պաշտոնյա, գավառապետ Բլավացկի և մանավանդ ոստիկանապետ Մորոխովեց: Անշուշտ, ավելի վստահելի տիպեր չէին, քան նրանց հաջորդները մեր օրերում: Աբովյան աննշան ոմն չէր. քաղաքի առաջին մտավորականը, տեղական հասարակության աչքը, եվրոպական գիտնական ուղևորների առաջնորդը, օր ցերեկով անհետանում է և ոստիկանությունը չէ կարողանում գտնել: Այս ապիկարությունն ավելի քան կասկածելի է: Երբ ոստիկանապետը, որ անձամբ ներկա էր եղել դրամական հաշիվների քննության և ոչ մի զեղծում չէր գտել, մի ամիս հետո դիմում է դպրոցի տեսչին և հարցնում, արդյոք դրամական վատնում չէ՞ գործել Աբովյան, սրանով արդեն մատնում է իր դերասանությունը: Իսկ դերասանությունը գործի մեջ մի վարագույր է, որ սքողում է որոնելի իսկությունը:

Այսպես, Աբովյանի դատը մնում է առ այժմ բաց և երկու պաշտոնյաները, որպես միակ մեղադրյալներ, պիտի կրեն պատասխանատվության ծանրությունը՝ մինչև որ նոր փաստեր անպարտ արձակեն կամ դատապարտեն (10):

Ա. Բակունցի աշխատությունը, ամեն պարագային, մի կարևոր նպաստ է գործին շնորհիվ նոր նյութերի և նոր մեկնաբանության: Չենք կարող չնկատել, որ գիրքն ավելի պիտի շահեր, եթե լեզուն և ոճը խնամված լինեին, ինչ որ սպասելի էր մի վիպագրից:

# ՊԵՇԻԿԹԱՇԼՅԱՆ ԵՎ ԿՑՈՐԴ ԽՆԴԻՐՆԵՐ

Փարիզում մի քանի տարի է, որ գոյություն ունի **Գրական Միությունը իր Ակումբով**, որ մի ժամադրավայր է գրական մտավորականության համար (1): Պարբերական դասախոսությունները և հավաքական զրույցները, որ այնտեղ տեղի ունին գրեթե ամեն շաբաթ (2), այլ նպատակ չեն հետապնդում, քան ստեղծել գաղափարական ներդաշնակություն հայ ցրիվ մտավոր ուժերի մեջ գրական, գիտական, հասարակական և նման հարցերի շուրջը:

Ամեն ազգ ունի իրեն հատուկ հոգեբանություն, մտայնություն: Մերը քայքայված է և շարունակվում է եղծվել օտար ազդեցությունների տակ: Վերմշակել ազգային ուրույն մտայնություն առաջին հոգը պիտի լինի մեր մտավորականության: Մշտական շփումը ակումբների մեջ՝ առ ի չգոյե ուրիշ հաստատությանց, մեծապես նպաստում է այլասեռ մտքերի հարթման: Բաղձալի է, որ բազմանան նման ժողովարանները գաղութահայության մեջ և մինչիսկ կապվեն միմյանց հետ սերտության օղակներով:

Փարիզի Ակումբը աղանդավոր չէ. նա բաց է բոլորի համար, որոնք հետաքրքրվում են գրական և հասարակական խնդիրների տեսությամբ: Կան գրագետներ, ծեր և երիտասարդ, որ ամենից առաջ այնտեղ պիտի վազեին, բայց գերադասում են դիտել հեռվից և՛ լրատուների, և՛ միջնորդ ականջների միջոցով հետևել թե ի՞նչ է կատարվում այնտեղ: Պետք էր կարծել, որ գոնե այն դեպքում, երբ ասելիք ունին Ակումբի մեջ հայտնված տեսությանց թե մտքերի առթիվ, պատշաճ կհամարեին փարատել իրենց տարակուսանքները հենց նույն Ակումբի ծոցում: Սակայն, այս կարգի հեռակաց գրագետները ավելի լավ են համարում, գավազանակիր վարդապետների նման, քարոզել ի հրապարակս և ոչ խոսել դեմ հանդիման յուրայինների շրջանում և այս կերպ լուծում որոնել վիճելի խնդիրներին: Այստեղից ծագում են անպատեհություններ, որոնք շաղկապված են բնականորեն բանակռվի հետ, և որոնց համար պատասխանատու մենք չենք:

Փարիզի Ակումբը բարի հիշողություն ունեցավ արձանագրելու մեր մոտիկ անցյալի երեք նշանավոր դեմքերի՝ Միք. Նալբանդյանցի, Ռափ. Պատկանյանի և Մկ. Պեշիկթաշլյանի ծննդյան հարյուրամյա տարեդարձը և առանձին դասախոսություններ նվիրեց նրանց կյանքին և գործունեության: Մի համեստ հարգանք նրանց հիշատակին (3):



Նալբանդյանցին և Պատկանյանին նվիրած խոսքը խաղաղ անցավ, Պեշիկթաշլյանինը՝ աղմուկ հանեց:

Պեշիկթաշլյանի մասին խոսողը պ. Օհան Կարոն էր, մի ուշիմ երիտասարդ, որ սովոր է մտածել նախքան խոսելը: Հակիրճ և խոհուն դասախոսությամբ մը վեր հանեց Պեշիկթաշլյանի քնարի և հասարակական գործունեության հիմնական գծերը, ինչպես և նրա անհատական բարեմասնությունները: Դիտողություններ եղան գլխավորապես թժ. Ամատյանի կողմից պատմական միջավայրի վերաբերյալ, որ ուրվագծել էր դասախոսը:

Մի կարևոր բաց կար դասախոսության մեջ, որը փորձեցի լրացնել փակման ամփոփ խոսքիս մեջ: Այն հարցն էր, թե Պեշիկթաշլյան ի՞նչ տեղ է բռնում հայ նորագույն գրականության պատմության մեջ:

Դասախոսության հաշվետվությունը երևաց Փարիզի «Յառաջ» թերթում, ուր իմ խոսքերս աղավաղված էին (4): Ուշադրության պարզ սայթաքումն էր տեղեկատուի կողմից: «Յառաջ»-ի անանուն աշխատակիցը, որ դժվարացել էր սեռ սպիտակից ջոկելու, հարկ էր համարել նախատինք կարդալ իմ հասցեիս, որ աշակերտության կարծիքներ եմ հայտնում գրական խնդիրներում: Վշտացել էր մանավանդ, որ Պեշիկթաշլյանը որպես թե ստոր էր դասված Նալբանդյանցից: Մոլորության առաջն առնելու համար, պարզեցի խնդրի էությունը խմբագրության ուղղված մի նամակի մեջ, ուր առաջարկում էի անանուն գրչին, ի դեպ եթե դժգոհ մնաց մեկնությունիցս, շնորհ բերե Ակումբ և իր հայեցակետը մեզ պարզե: Նամակս տպվեց ոչ այն ձևով, ինչպես ընդունված է (5):

Ամեն պարագային գիծը գլորել էր գայթակղության քարը: Քարը հասավ մինչև պ. Ա. Չոպանյան: «Ապագա» թերթի մեջ խիստ հոդված գրեց իմ «անհեթեթ» կարծիքիս դեմ (6): Հոդվածը թեև երկու անգամ ավելի երկար էր քան իմ նամակը, բայց և այնպես չգոհացավ դրանով: Խոստանում էր նորեն վերադառնալ նույն խնդրին: Սպասեցի, կարծում էի, որ «Անահիտ»-ը պիտի բերեր նոր հոդվածը: Դիպվածով միայն իմացա, որ սպասելի գրությունը արդեն տպված է Ամերիկայի «Պայքար» թերթում: Շնորհակալ եմ, որ մի բարեկամ անձ բարի եղավ տրամադրելու ինձ, միանգամայն ինքնաբերաբար, հիշյալ թերթի համարները (7):

* * *

Վեճի նյութը Պեշիկթաշլյանի շուրջն է: Բայց հարցելի հակառակորդս սկսում է Ռ. Զարդարյանից, որպես նախերգանք: Նա լսել է, որ մենք որպես թե ասել ենք, որ Զարդարյանի լեզուն **ծանր** է և գրականությունը **հայկական** չէ (8):

Խորհուրդ կտայինք, որ պ. Չոպանյան ավելի խելահաս ականջներ ղրկե Ակումբ: Երկու բառն էլ արտասանված է, բայց ոչ այն կապակցությամբ, ինչ որ դատափետվում է:

Ասել ենք, որ Զարդարյանի լեզուն փարթամ է և գունագեղ: Բառերը ընտրված են խնամքով և ընդելուզված, որպես մի մոզայիկ: Նախադասությունները հղկված, սահում են անարգել: Ոճը հասցրած է այնպիսի արվեստակյալ կատարելության, որ կարդալիս ավելի լեզվին ես հետևում, քան բովանդակության: Վերջինս նիհար է, պատմության նյութը ծավալուն չէ, դիտողությունները խոր չեն, բանաստեղծի աչքը և միտքը կարծես սահում են առարկաների վրայից, խուսափելով ներս մտնել. մի ժրաջան մեղու, որ թփից թուփ է ցատկում, առնում՝ ինչ որ պետք է համարում և շտապով հեռանում: Երբեմն թվում է, որ լեզուն, որպես եկեղեցական կերպասյա ծանր շուրջառ, **ծանր** է գալիս պատմվածքի վտիտ մարմնին:

Զարդարյանը համարվում է գավառական գրականության ներկայացուցիչ Թլկատինցու հետ: **Հայկական** գյուղից քիչ բան է մնացել նրա մոտ, այնքան տաշվել և զտվել է: Եթե թարգմանենք օտար լեզվով, ոչ ոք կարող է գուշակել նրա հայկական ծագումը ըստ էության:

Երկու բառն էլ գործ ենք ածել, **ծանր** և **հայկական**, բայց առանց կամենալու թերություն համարել հայկականի նսեմությունը: Արձանագրել ենք՝ ինչ որ դիտել ենք:

Ապա ուրեմն իզուր է պ. Չոպանյանը ինձ վերագրում այն միտքը, թե «Հայկական հարցը նյութ առնելը կամ հայ գյուղացու մտայնությամբ ու ոճով գրելը անհրաժեշտ պայման չեն որպեսզի գործ մը հայկական չեշտ ունենա»:

Մեր ասածներից իսպառ այս չէ հետևում, այլ այն, որ Զարդարյանի քննելի հատորը (9) մեզ չէ բերում գյուղական գրականություն, որի մասին այնքան խոսում են, որովհետև գյուղը ներկայացված է բավականին մակերեսային:

Գանք հիմա Պեշիկթաշլյանին:

Արևմտահայ հայրենասիրությունը հուզվել է (10), ենթադրելով որ Պեշիկթաշլյանին համեմատել ենք Արովյանի և Նալբանդյանցի հետ և իր պատվանդանից վայր ձգել: Ասում են, որ իզուր ենք համեմատել, պետք չէ և չի էլ կարելի միմյանց մոտ բերել, որովհետև **տարբեր** մեծություններ են:

Սակայն, ի՞նչ է մեր համեմատությունը: Թողնենք առայժմ Նալբանդյանցին: Ի՞նչ ենք համեմատել Պեշիկթաշլյանի և Արովյանի մեջ և ի՞նչ ենք գտել: Ուրիշ ոչինչ, քան այն, որ «Պեշիկթաշլյանի գրականությունը **ետ** է Արովյանից»: Այս՝ ժամանակագրական հարաբերություն է և անվիճելի:

Չոպանյանը, թեև բերում է սույն խոսքերս, բայց հետո աղավաղում է որոշ տրամադրության ազդեցության տակ, **ժամանակը** փոխելով **որակի** և մեզ վերագրելով այն, ինչ որ չենք ասել, այսինքն՝ որ «Պեշիկթաշլյան **վար** է Արովյանեն որպես բանաստեղծ»: Այս մասին մենք չենք խոսել, նոր պիտի անդրադառնանք ստորև:



Զարմանալին այն է, որ մեզ արգելում են համեմատության դնել, բայց ինքը, Չոպանյանը համեմատում է հայտարարելով, թե «Արովյան, անշուշտ, **ավելի բարդ** և **հզոր գործ մը** արտադրած է քան Պեշիկթաշլյան»:

Մեր ասածը մի պարզ ճշմարտություն էր, որ Պեշիկթաշլյանը կեղծ-դասական է և հազիվ մոտենում է ռոմանտիկ գրականության:

Մեր արգո հակառակորդը կարծում է, որ կեղծ-դասական տիտղոսը վիրավորական է բանաստեղծի համար և հայտարարում է, որ նա «իսկական դասական է և ոչ կեղծ»: Այսպիսով պ. Չոպանյանի ըմբռնողությունից խուսափում է կեղծ-դասական կոչված խոշոր գրական դպրոցը: Դասականի և ռոմանտիկի մասին այն ընտանի հասկացողությունն ունի, ինչ որ սալոնական մի տիկին, որ իր հյուրերից մեկի քիթն է գտնում դասական, մյուսի խառնվածքը՝ ռոմանտիկ:

Այս առօրյա ըմբռնումով հազիվ թե կարելի է գրական լուրջ քննադատության ձեռնամխել: Մասնագիտական մտածումի նեղ կածանները խորթ են մեր պատվական ընդդիմախոսին, նրան սիրելի և բազմիցս հաճելի են ազատ մտքի պողոտաները, թերևս իր մեջ խոսում է բանաստեղծն առավել, քան քննադատը: Փոխանակ մեկնելու դասականությունն ու ռոմանտիզմը իրենց պատմական օրրանի մեջ, պ. Չոպանյանը մի ծանր ճանապարհորդություն է հանձն առել դեպի հին և նոր աշխարհների և ազգերի գրականությունները, որպեսզի աջ և ձախ սփռե դասականության և ռոմանտիզմի վկայականները ըստ իր բարի հայեցողության և առանց որևէ շահի ընդհանուր գրականության պատմության համար: Այսպես մեր բանաստեղծը գտնում է, որ գոթական ռոմանտիզմը կա և սա կպարտի Արևելքին իր հիմնական տարրերը. անգլիական, գերմանական, իտալական ռոմանտիզմը որպես թե կրում է հնդիկ, պարսիկ, արաբ, եբրայեցի ազդեցություն: Հառաջ գալով դեպի Արևելք, չափում է պարսիկ հին արվեստը՝ քանդակագործություն ու ճարտարապետություն, և տեսնում է որ այն՝ դասական է, իսկ հնդիկ և ասորի արվեստը, ընդհակառակը, ռոմանտիկ: Անհատներին դառնալով՝ Նարեկացին, Ջալալեդին Ռումի, Ֆիզուլի, արաբ և հնդիկ բանաստեղծներն ամենքյան ռոմանտիկ են նույն Չոպանյանի կարծիքով: Եվրոպայում՝ Անդրե Շենիե դասական է, իսկ Գյոթեն իր մեջ ունի ռոմանտիկ մը, և՛ դասական մը, Լեոպարդի ռոմանտիկ՝ մտայնությամբ, ձևով՝ դասական, Հյուգո, Լամարթին, Վինիե, Մյուսե՝ ռոմանտիկ են, իսկ Ժերար դը Ներվալ, Մորիս դը Գերեն զգայնությամբ՝ ռոմանտիկ, ձևով՝ դասական, վերջապես Միստրալը՝ նոր հելլեն:

Ճանապարհորդությունը դեռ չէ վերջացած: Պարոն Չոպանյանը այցելում է նաև Բյուզանդիան, որի գրականությունը «ռոմանտիկ է խորապես»: Եզնիկ Կողբացին, թեև այստեղ է սնված, բայց իր ձևով՝

ատտիկյան է, Մովսես Խորենացին՝ ձևով և ոգով ատտիկյան է, Նահապետ Քուչակը ևս՝ ատտիկյան է: Իսկ Պեշիկթաշլյանը իսկական նոր հելլեն մըն է, պատգամում է մեր ուղևորը, հասնելով իր հանգրվանին: «Նոր ժամանակների հայ գրականության լավագույն դասականն է»,- շեշտում է նույնը, - ավելի քան Ալիշան, Նարպեյ, նույնիսկ Թերզյան: Պետրոս Դուրյան և Մեթյան ռոմանտիկ են, Արովյանի մեջ կա քիչ մը ռոմանտիզմ, Գամառ-Քաթիպան փարսախներով հեռու է քերթողական ճշմարիտ ռոմանտիզմեն, Շահազիզի մեջ կա Բայրոնի ռոմանտիզմի ցոլքը, Հովհաննիսյան, Թումանյան, Իսահակյան և Տերյան ունին ռոմանտիզմի խոր և գեղեցիկ տարրը: Րաֆֆի և Ահարոնյան մեծագույն ռոմանտիկներն են:

Այս պտույտներեն հետո պ. Չոպանյան կրկին մոտենում է Պեշիկթաշլյանին և սխալ է գտնում նրա գործը բաժանել գրաբարի և աշխարհաբարի, երկուսն էլ համարում է ձևով դասական, խորքով՝ ռոմանտիկ: Նրա կարծիքով հայր Բագրատունու **«Հայկ դյուցազնից»** նվազ զորեղ և մեծաշունչ է Պեշիկթաշլյան, նույնքան ներդաշնակ է, որքան Հյուրմյուզի **«Բուրաստանը»**, և «երկուքեն ալ ավելի ավելի խորազգաց է, ավելի շնորհալի և հանկուցիչ»:

Եվ երբ հիշենք, որ Պեշիկթաշլյան ինքը համարում էր **«Հայկ դյուցազնը»** «հավասար Վիրգիլիոսի, կամ «զուգակշիռ Հոմերոսի»», ապա ուրեմն պետք է ընդունել, որ Պեշիկթաշլյան «ավելի շնորհալի է, քան Հայկ դյուցազնը», մի բանով ավելի էր Վիրգիլիոսից և Հոմերոսից:

Այս զվարճալի զրոսանքը, որ հանձն է առել մեր բարեկամը, գրական տեսություն չէ իսպառ, այլ կատարյալ բաբելոնական խառնակություն: Ցավը միայն այն չէ, որ ուր հասնում է մեր բանաստեղծը, մորթում է բանաստեղծությունը, ինչպես մի ոչխար, և երբեմն մորթն է հայտարարում դասական և միսը՝ ռոմանտիկ, և երբեմն հակառակը: Խորապես ցավալի է, որ դասական և ռոմանտիկ բառերը, որ պատմագրական որոշակի հասկացողություններ են, լողում են ձկների պես անորոշության և շփոթ ըմբռնումների ճապաղ ջրերի մեջ: Գիտեի, որ պ. Չոպանյան իր գրական քննադատության մեջ հետևորդ է իր անհատական տպավորության: Սակայն քննադատության այս եղանակը, ներելի թերևս, ընթացիկ գրախոսականների համար, անընդունելի է գրական վիճաբանության մեջ, ուր պահանջվում են ավելի բանավոր հիմքեր և առարկայական չափոցներ:

* * *

Գրականությունը, որքան էլ ազատ մտքի և զգացումի անկաշկանդ զեղումն լինի, բայց և այնպես չորս հովերին տված երևույթ չէ, այլ ունի իր բարձրադեզ ամբարտակները, որոնց մեջ հոսում են խոշոր գրական գետերը՝



դասական, ռոմանական, կեղծ-դասական և ռոմանտիկ: Սրանք բաժանված են միմյանցից քարերի պատնեշներով և պետք չէ շփոթել, ոտի տալով ժամանակական հեռանկարները, և կամ ցրել քմահաճարար Սենայի ափերից մինչև Եփրատ, մինչև Գանգես:

Կեղծ-դասական է կոչվում եվրոպական վերածննդի մեծ շրջանը, որ *ծայր տվեց*, որպես հակազդեցություն միջնադարյան սքոլաստիկայի, նպատակ ունենալով վերակենդանացնել հին հույն-հռովմեական քաղաքակրթության թաղված ավանդները: Հետևանքը փայլուն էր և ամենատարած:

Ֆրանսական մեծ հեղափոխությամբ վերջ տրվեց կեղծ-դասականության և սկիզբն առավ նոր շարժում, որ հայտնի է ռոմանտիզմ անունով: Սա նայում էր ոչ հույն-հռովմեական աշխարհին այլ ռոմանական միջին դարերին, և ձգտում էր սնվել նույն դարերին հարազատ աշխարհայացքի ոգով: Կեղծ-դասականությունը, ուրեմն, նմանություն էր հին և իսկական դասականության, իսկ ռոմանտիկ ուղղությունը իր հերթին նմանություն էր միջնադարյան ռոմանականության: Կաղապարները խորապես տարբեր էին, ուստի և նմանությունները տարբեր են: Այն արվեստը, որ հատուկ էր հույն-հռովմ աշխարհին, և որը կոչում ենք դասական, արտացոլք էր մի որոշ աշխարհայեցողության, որի մեկնակետն էր բնությունը, բնապաշտությունը: Հին հույնը իրեն նկատում էր որպես բնության մի մասնիկ, մարդը տակավին չէր հակադրում իրեն արտաքին աշխարհին: Նույնն էին և նրա աստվածները, տեսիլների ծնողները: Հույնի համար երկինքը բաժանված չէր երկրից: Երկինքն ամփոփվում էր Օլիմպոս լերան վրա, որտեղից գերագույն էակները իջնում էին և Աթենքի փողոցներում անձնատուր լինում այնպիսի գործերի, որոնց համար այժմ ոստիկանություն կտանեին: Այս ծայրահեղ և հետևողական իրապաշտությունը պետք է ծներ համապատասխան արվեստ, իրական արվեստ, հար և նման բնության ներշնչումներին և ձևերին, այն ինչ որ կոչվում է բնականություն: Գործոնը աչքն է, երևակայությունը անելիք չունի ավելի, քան սոսկ հիշողությունը: Հասկանալի է, որ արվեստն իր գերագույն արտահայտությունը գտնում է ամենից առաջ տեսանելի և շոշափելի քանդակագործության մեջ:

Բոլորովին այլ դռներ են բացվում հաջորդ՝ քրիստոնյա միջնադարում: Նոր և հիմնովին տարբեր աշխարհատեսություն: Մարդը բնության հլու ունկնդիրը չէ: Նա իր ներքին մեծ աշխարհն ունի, որ գերի վերո է համարում արտաքին աշխարհից: Մեծ և բարձր երկինք ունի, լի հրաշազան տեսիլներով և անուրջներով: Այժմ ինքն է ձգտում բարձրանալ այդ անհասանելի Օլիմպոսը և ոչ թե աստվածներն են այնտեղից իջնում երկիր: Երևակայության և երազների անվերջ տեսլարաններ, ուր հրաշքները

մրցում են իրական երևույթների հետ և միտքը ընկճվում է ցնորքների թափի տակ։ Բնականից վերև սավառնում է գերբնականը՝ ստեղծելով հրաշակերտ զրույցներ և պատմություններ։ Գրականությունը այն օրին է հասնում, որ սրբերի կյանքը գերադասելի են համարվում, քան դասական ողբերգությունները, շնագլուխ Քրիստափորի (11) և կամ Ս. Գեորգ զորավարի վարքը ավելի է կարդացվում, քան Հոմերոսն ու Վիրգիլիոսը։

Նման պայմաններում, բնական է, որ ժողովրդական բանահյուսությունը պետք է հարկադրեր իր իրավունքները։ Եվ ահա ժողովրդական ստեղծագործության անկաշկանդ թերթերը՝ քնարերգություն, դյուցազներգություն, պատմական լեգենդաներ և մտացածին զրույցներ և պատմվածներ խուժում, խռնվում են արվեստի աշխարհում։

Սակայն մարդկային տրամադրությունները չեն ընթանում ուղիղ գծով դեպի առաջ։ Ուղևորի նման մարդկությունը մերթ մերթ սիրում է ետ նայել, ափսոսալ կարոտով, ինչ որ թողել անցել է, և հրաժարել, տաղտուկ զգալ ունեցածից։ Երևակայությունը հոգնելուց հետո մարդ դառնում է ակամայից դեպի միտքը։ Միջնադարյան զառանցական գրականությունը պետք է տեղի տար հակազդեցիկ ուղղության, շրջելով ուշադրությունը դեպի հին դարերի բնականությունը։ Թողնենք ուրիշ երևույթները, գրական միտքը դարձավ և կանգնեց հին դասականության վրա, աշխատելով ընդօրինակել վաղուց մեռած աշխարհայացքի մեծ վարպետներին։ Ծագեց կեղծ-դասականության մեծ դպրոցը։ Հիասթափումը անխուսափելի էր վաղ թե ուշ։ Դասականությունը ձևի և բովանդակության ներդաշնակություն էր և ներդաշնակությունը պայմանավորված է աշխարհայացքի կենդանությամբ։ Հին արվեստը մեռել էր, որովհետև նրա հիմը կազմող հոգեբանությունը չքացել էր։ Միջին դարերի մեծ խրամատը կար, որ բաժանում էր նոր աշխարհը Զևսի տիրապետությունից։ Կարելի էր, հարկավ, կաղապարել հին ողբերգակ արվեստավորներին, բայց առանց իրենց բնական շնչի։

Մարդկությունը շուտով ձանձրացավ հավակնոտ դասականության մարմարյա սառն երկերից, առանց հոգու և ջերմության, և աչքը սևեռեց հետ դեպի միջնադարյան ռոմանականությունը, որ համապատասխանում էր նոր մարդու քրիստոնեական երազականության։ Ահա ինչո՞ւ Շատոբրիանը գրում է Genie du Christianisme և կամ Martyrs, որով ծնվում է ռոմանտիզմը և ավետվում աշխարհին։

Գերման ռոմանտիզմը մերձ երեսուն տարով ավելի հասակավոր է։ Նա երևան եկավ XVIII դարու վերջերին և նախապատրաստեց **Sturme und Drang**-ի շրջանը։ Նույն դարու վերջերն էր հռչակավոր **Հերդեր** գիտնականը, որ առաջին անգամ ուրվագծեց այն հիմերը, որոնց վրա պիտի հանգչի գրականության պատմությունը որպես գիտական մարզ։ Նա էր, որ ցույց



տվեց, որ բոլոր կիրթ ազգերը անցնում են միևնույն և կամ նման գրական հանգրվաններ, ունեն իրենց դասական, ռոմանական, կեղծ-դասական և ռոմանտիկ շրջանները։ Թողնենք պարսիկ, ասորի, հնդիկ, արաբ գրականությունները, որ մեր խնդրին չեն վերաբերում և առնենք հայ գրականությունը։

* * *

Չնայելով հայ պատմական կյանքի խեցբեկ վիճակին, մեր գրականությունը պահել է որոշ չափի կանոնավորություն կամ հաջորդականություն իր զարգացման ընթացքին։ Կարելի է ասել, եվրոպականին համընթաց է։ Ունի հին շրջան, միջին տաղասացիկ շրջան, կեղծ-դասականություն և ռոմանտիզմ։

Հայ միջնադարը զարմանալի ընդհանուր գծեր ունի եվրոպականի հետ։ Ամենեն առաջ ընդգծելու է նոր լեզուների ծնունդը։ Արևմուտքը նետեց լատին լեզվի բեռը և սկսեց մշակել ազգային լեզուներ։ Գրեթե միաժամանակ և մեր գրաբարը տեղի տվեց աշխարհիկ լեզվին, որ գրական իրավունքներ ձեռք բերեց Կիլիկյան արքունիքում և աշխարհային տաղասացության մեջ։ Մոռանալու չէ, որ հայ անդրանիկ տաղասացները ժամանակակից էին Դանթեի և Պետրարկայի։ Գրաբարը մնաց, լատիներենի նման, եկեղեցականության գանձ առավելապես։

Եվրոպական կեղծ-դասականությունն այն մեծ արժանիքն ունի, որ նա չխոնարհեց հույն կամ լատին լեզվի առաջ, այլ պահեց, սնեց և աճեցրեց մայրենի լեզուները և հասցրեց գրական բարձր կատարելության։ Ֆրանսերենը, իտալերենը, անգլերեն և գերմաներեն, որ խանձարուրքի մեջ էին XII-XIII դարերում, XVII-XVIII դարերում հանգեցին դասական բարձրության։ Այս է պատճառը, որ ֆրանսացիք, երբեմն և մյուսները, դասական են անվանում կեղծ-դասական շրջանը, ի նկատի ունենալով լեզվի կատարելությունը։

Հայ կեղծ-դասականությունը այս կետում զանազանվում է եվրոպականից, որովհետև իր լեզուն գրաբարն է և ոչ աշխարհաբարը։ Մխիթար Աբբահայրը 1724 թվին կազմել է աշխարհաբար քերականություն (12)։ Եթե այդ վայրկյանին, մի գերագույն ներշնչումով, ընդունեն աշխարհաբարը որպես գրական լեզու, այսօր մենք չէինք տառապիլ լեզվական երկվությունից և կունենայինք մի և հառաջացած լեզու և ճոխ գրականություն։

Սակայն, դասական լեզվի ավանդական հրապույրը դեռ զորեղ էր և անպարտելի։ Մխիթարյանները կոչված չէին գրականություն մշակելու։ Նրանց անմիջական նպատակն էր՝ կենդանացնել հնության հիշատակները և նրանց հետ միասին շունչ տալ հին լեզվին։ Երբ հետագայում Վենետիկը

դարձավ կեղծ-դասական գրականության հենց, բնական է, որ հարմարազույն լեզուն **«Հայկ դյուցազնի»** և նման գրությանց պիտի համարվեր գրաբարը: Այսպես թե այնպես աշխարհաբարը մնաց իրավազուրկ:

Հաջորդ մեծ գրական դպրոցին, ռոմանտիզմին, էր վերապահված կատարել այն մեծ հեղաշրջումը, որ է աշխարհաբարի հաղթանակը: Այդ խոշոր և խիզախ երևույթը պարտական ենք Խ. Աբովյանին, իսկ Աբովյանը իր հղացումը պարտավոր է գերման կրթության, գերման ռոմանտիզմի շնչին: Թե որքան գիտակցական էր նորա խիզախ քայլը, և որպիսի ծանր մտորումների արդյունք էր, կարելի է դատել այն հուզիչ և խորիմաստ համեմատությունից, ուր աշխարհաբարը նմանեցնում է Կրեսոս թագավորի համր որդուն, որի լեզվի կապանքները արձակվում են, երբ տեսնում է թշնամու սուրը շողշողալիս իր հոր գլխին: Աշխարհաբարի նկատմամբ գերման ռոմանտիզմն է այն փայլուն սուրը, որ կտրում է նրա կապերը: Նոր լեզուն աղաղակում է հայի «Վերք»-երը, թափվում է հայ միտքը ռոմանտիզմի ավազանում և ստեղծում նոր գրականություն:

Քիչ հետո նույն բանը կատարում է արևմտյան հայության մեջ հ. Ալիշանը: Այս մասին ևս խոսել եմ Ակումբում, բայց «Յառաջ»-ին ուղղած նամակումս չեմ հիշած, որովհետև վեճին չէր վերաբերում:

Նահապետի **«Նվագների»** երևումը կարծես մի փայլատակում է խավարած երկնքում, *մի երկնառաք հրաշք*, մանավանդ այնպիսի մի ժամանակ, երբ պաշտամունքի սեղանի վրա էին **«Հայկ դյուցազն»**-ի նման քերթվածներ: Արդյո՞ք հակազդեցության բնական թելադրանքն էր: Տակավին երեսուն տարի առաջ ինձ զբաղեցնում էր այս հրաշքը և ուզում էի իմանալ պատճառը իր իսկ Նահապետի բերանից (13): Պատասխանը հակիրճ էր և ոչ անթերի: Որպես թե դպրոցական տղաներին ընթերցանության նյութ տալու համար էր, որ գրել էր աշխարհիկ **«Նուագներ»-ը**: Աբովյանի լեզուն բացել էր ժողովուրդը, Ալիշանինը՝ այդ ժողովրդի մի բեկորը Մուրատյան և Ռափայելյան դպրոցներում:

Սակայն թվում է, որ Ալիշան ուրիշ հիմք էլ ուներ, ինչպես ցույց են տալիս նույն **«Նուագներ»**-ը: Նահապետի երգերը ի՞նչ են, եթե ոչ փունջ ծաղիկներ, հավաքված մեր միջնադարյան քնարերգության դաշտերից, և ուռճացրած, փարթամացրած իր հոգու վեհ ջերմանոցում: Ասել է, թե Նահապետը ընթացել է նույն չափով, ինչ որ եվրոպական ռոմանտիզմի հիմնադիրները: Սրանք քաղել են իրենց հույզերը միջնադարյան ռոմանականությունից. Ճիշտ այդպես է վարվել և մեր Նահապետը, դիմելով հայրենի միջին դարերին, և այնտեղի ծաղիկներից է քամել իր հյութը: Այսպես է վարվել միանգամայն անկախ եվրոպացիներից, հանճարի հատուկ ինքնաբուխ թափով: Աբովյանի ռոմանտիզմը նորաստեղծ է օտար ազդեցության տակ,



Ալիշանինը՝ բուն հայացի է, իջած պատմության խորքից: Առաջինը երկունքն է տեսել, ծանր երկունք, երկրորդը՝ բնական ծնունդ է: Տարբեր են ծագումով, բայց էությամբ՝ նույն, միմյանց լրացնում են. մեկը բաց է անում հայ երկրի **«Վերքերը»**, մյուսը՝ արցունք է թափում նրանց վրա, հայ երկնքի բարձունքից:

Այս հանգամանքը, այսինքն՝ մեր գրականության երկճեղ սկզբնավորությունը, կանխորոշել է այն տարբեր ուղիները, որով պիտի ընթանար գրական ստեղծագործությունը արևելյան և արևմտյան հատվածներում: Քննորոշել այդ ուղիները դուրս է մեր նպատակից: Չմոռանանք, որ մեզ հետաքրքրողը Պեշիկթաշլյանն է:

**«Վերք Հայաստանի»** և **«Նուագք»** հիմնաքարերից հետո գալիս են Պեշիկթաշլյանի **«Տաղեր»**-ը: Ի՞նչ են բերում սրանք հայ նորածին գրականության: Աբովյան և Ալիշան անպայման մեծություններ են: Արդյո՞ք Պեշիկթաշլյանն ևս մեծություն է որևէ նկատումով: Մեր պատասխանը հայտնի է: Պեշիկթաշլյանը մեծություն չէ, այլ միջակ անվան բանաստեղծ է, համեստ հասարակական գործիչ և բարեկիրթ, և բարեհամբավ, առաքինի անձը: Մեզ առարկում են, որ մենք ստորագնահատում ենք, բայց զլանում են ցույց տալ, թե ո՞վ է և երբ անվանել նրան մեծ բանաստեղծ:

Եթե մեզ առարկեին, որ մեծ, միջակ, և նման որակումները գիտական չափեր չեն, ուստի և *անհանձնարարելի քննադատության* մեջ, մենք կհասկանայինք: Եթե հարցնեին, թե ո՞րն է մեր չափոցը՝ մեծություններ կշռելու, դարձյալ կհասկանայինք, մանավանդ, երբ մեր հակառակորդները իրենց չափերը հրապարակեին: Առարկայական չափեր, և ոչ հոռի տեսակի տպավորականության աղաղակներ և կամ ճարտասանական վարկպարազի ճիչեր:

Պետք է թողնել, վանել, լուրջ քննադատությունից «զմայլելի, սքանչելի, հանկուցիչ, վսեմ, նրբին, խորին» և նման անհյութ և անգայտ որակումները անորոշ և խուսափուկ ճաշակի: Պետք է որոնել ավելի հաստատուն դիտանոցներ գեղարվեստական երևույթները զննելու համար:

Պեշիկթաշլյանի գրական անունը հանգչում է այն փոքր հատորի վրա, որ հրատարակվել է իր մահից հետո 1870 թվին, և այնուհետև երկու հրատարակություն է տեսել, 1902 թվին Թիֆլիսում, և 1904 թվին՝ Փարիզում:

Հատորը հաստափոր չէ: Ով ուզում է ծանոթանալ և ուսումնասիրել բանաստեղծին, իր տրամադրության տակ ունի հիմնական աղբյուրը: Կարող է անթերի և անկաշկանդ կարծիք կազմել նրա ստեղծագործության մասին:

Քննելի հատորը ամփոփում է ոչ ավելի քան 60 կտոր բան, չհաշված այլևայլ մանրուք: Սրանից միայն մի քառորդն է գրված աշխարհաբարով,

մյուսները գրաբար են: Հետևապես մեր բանաստեղծը ներկայանում է հայ նոր գրականության սեղանին գրեթե մի տասնյակ ոտանավորով:

Արդ, ինչ և լինի այդ ոտանավորների արժանիքը, հասկանալի է, որ այդքան քիչև քիչ բռով չի կարելի հավակնել մեծության: Մեծությունը, վերջապես, միայն որակ չէ, այլև քանակ է:

Գրաբար քերթվածները պատկանում են նախորդ շրջանին, այն է կեղծ-դասականության: Իրավունք ունինք ասելու, որ մեր բանաստեղծը հետ է ոչ միայն Աբովյանից, այլև Ալիշանից, քանի որ մշակում է հին ոճի գրականություն, երբ նորի հիմն է դրված:

Գուցե գրաբար քերթվածները մեծ տեղ են ապահովում հեղինակին նախորդ շրջանում, կհարցնե ընթերցողը: Պարոն Չոպանյան գտնում է, որ այս քերթվածները ավելի շնորհալի են, քան **«Հայկ դյուցազն»**-ը, կեղծ-դասականության կոթողը: Իրողությունն այն է, որ Պեշիկթաշլյանի գրաբար բանաստեղծությունների մեջ ևս ընտրելի են հազիվ 10-15 և ներկայանալի գրական առյանին: Մնացած հոծ մեծամասնությունը անճանաչելի պտուղներ են, ուղերձներ և ներբողներ և կամ ողբեր, նվիրված մասնավոր անձերի թե պատմական դեմքերի: Մի մասը աշակերտական երախտագիտության տուրք են հոգևոր ծնողներին և կամ բարեկամներին, մի տեսակ փորձեր, ուր պատրաստում է բանաստեղծն իր գրիչն ու թանաքը իսկական ստեղծագործության համար:

Այսպես՝ նրա քնարի նյութ են դարձել՝ Գեորգ վարդապետի ընտրությունը արքահայր, Երվանդ Հյուրմուզի ձեռնադրությունը եպիսկոպոս, հայր Ա. Բագրատունի երկիցս անգամ, հայր Ալիշան, Չեքյան, ողբեր՝ ի մահ Ոսկյան պատանվո, ի մահ Գաբրիելի Երամյան, ի նահատակություն Վարդանանց, ի մահ Խոսրովու Մեծի, ի մահ Հիսուսի, ողբ մանկան ի բոչնիկն վաղամեռիկ. այլև՝ հրավեր ի մարտ Խոսրովու, Զրուանք Արտաշեսի, քերթողական ոգի Հայաստանի և նման դյուցազներգություններ: Մերձ երկու տասնյակ ոտանավորներ նվիրված են նման նյութերի, ոճը բարձրաբոչիչ, բովանդակությունը աղքատ, ծանրաբեռնված կեղծ-դասական ճարտասանության հատուկ բոլոր արդուզարդով: Հյուրմուզի ընտրության առթիվ, օր. բանաստեղծը հնարավոր է գտնում գոչելու. օ՜ Հայրենիք, առ քո ձեռը ուրախության երգի ոսկի քնարը, և դուք, ծնունդք պերճ դյուցազանց, ելեք պար բռնեցեք, և դո՛ւ, մուսայդ անմահ, դուրս եկ և երգե՛ թե ինչպես Ոգի Հայաստանեայց որ մինչև այդ նստած դառն արցունք էր ցողում, այժմ հրաժարվեց սուգից, երբ լսեց Գեորգի փառաց պերճ համբավը և այլն:

Այսպիսի քերթվածներից դուրս՝ համարելու է մոտ 10-15 ոտանավորներ, որոնք կազմում են մեր բանաստեղծի գրաբարյան պաշարը. ինչպես՝ **Գիշեր, Քնար եւ շիրիմ, Արտասուք կուսին, Վերադարձ, Ցնծին հառաչք, Գնացէք իմ տաղք, Յիշեա՛ զիս կոյս, Ներեա՛ ինձ կոյս, Թող տար, Մերձ ի մահուն եղերերգեալ, Մերձ ի մահ գրուած, Ուստի՞ ծագէ այս լոյս**:



Գրեթե նույնչափ և աշխարհաբար ոտանավորներ, որոնք միասին բոլորում են Պեշիկթաշլյանի գրական պսակը:

Որ այդ ոտանավորները փոխանցական են կեղծ-դասականությունից դեպի ռոմանտիզմ, երևում է ոչ միայն լեզվական խառնուրդից, այլև այն ներքին հատկանիշներից, որոնց վերլուծման կուզենք դառնալ:

* * *

Ի՞նչ է Պեշիկթաշլյանի քնարը և ի՞նչ են նրա լարերը:

Քնարը բնավ բազմալարի չէ: Զարմանալի է, որ պ. Չոպանյան կարծում է, որ Աբովյանը գյուղական մտայնություն ունի, իսկ Պեշիկթաշլյանը՝ մեծ քաղաքի մարդու հոգեբանություն, և բերել է որպես թե «բարձր քաղաքակրթական արվեստ», «տիեզերական կյանքն արտահայտող գործեր»:

Կատարյալ մոլորություն: Չոպանյան, ինչպես և պոլսահայ գրագետները միշտ տեսել են գրաբարագետի մեջ մեծ իմաստություն, և սովորական է լսել, թե այսինչ մարդը զարգացած ոմն է, որովհետև հրաշալի գրաբար գիտե: Պեշիկթաշլյանը վարպետ է գրաբար լեզվի և այս բավական է, որ պ. Չոպանյան նրան վերագրե բարձր մտավոր կարողություններ կամ համարե նրան տիեզերական կյանքի արտահայտիչ:

Որքան որ կարելի է դատել նրա երկերից, մեր բանաստեղծն իրականին շատ անձուկ հորիզոն ունի մտավոր: Ոչնչից չի երևում, որ մեծ քաղաքի բնակչի տեսություն ունի: Քաղաքի բարդ կյանքը և իր պատճառած հուզումները իսպառ անծանոթ են մեր բանաստեղծին: Նա ավելի Ալեմդաղի բնակիչ է, քան քաղաքի (14): Այնտեղից է նա դիտում աշխարհն ու բնությունը և այնտեղ է հավաքում իր քնարի հիմնական տարրերը: Սրանք ևս բարդ չեն: Զեփյուռը կամ հովիկը, ծաղիկն ու վարդը, թիթեռնիկը, վտակը, տխակը և հեռվեն ծածանող կույսի խոպոպքը, ահա այն բանաստեղծի սրտին ընտանի թավշյա թելերը, որից սիրում է հյուսել իր քնարերգական բանվածքները: Հովվերգական տեսարան է և ոչ քաղաքային: Բանաստեղծի ընտրողությունը գիտակցական է և համաձայն կեղծ-դասական ոճին:

Խնդիրը միայն քնարի նյութը չէ, այլև բանաստեղծի մերձեցումը նյութին: Կեղծ-դասականը այդ կետում լիովին զանազանվում է ռոմանտիկից: Մեկի մերձեցումը, այսպես ասենք, լուսանկարչական է, մյուսինը՝ նկարչական: Կեղծ-դասականը տալիս է բնությունը ինչպես կա, ինչպես տեսնում ենք բոլորեքյանս: Ապա լուսակարկաչ առվակը, փափկաթև զեփյուռը, ոսկեթև

թիթեռնիկը, գոհար վարդը, սիրակեզ սոխակը, ոսկեհունձ մարգերը, վարսագեղ ծառերը, երկնաձեմ աստղերը, ամպերը, արծաթափայլ լուսին և այլն, ամեն մեկը պատկերավոր շրջանակի մեջ:

Այլ է ռոմանտիզմի աչքը: Բնության հրաշալիքների մեջ նա որոնում է և տեսնում իր հոգեկան ներքին հույզերը, նկարագրում է և զբաղվում նրանցով որքան որ նրանք թվում են թե մարմնացնում են իր ներքուն ապրումներն ու տրամադրությունները: Գերման նշանավոր բանաստեղծի մի նախադասությունը՝ **«Ինչո՞ւ ծաղիկները այդպես տխուր են այսօր»** (Heine), արդեն մատնում է նրա ռոմանտիկ ոգին: Նույնը մեր Ա. Իսահակյանի երգը.

*Աշնան ծաղիկնե՜ր,*
*Դալո՛ւկ ու տխո՛ւր,*
*Դողդողում եք հեզ*
*Դաշտերում թափուր:*
*Ձեր աչքերի մեջ*
*Արցունք կա տրտում,*
*Ուշացած երազ*
*Ձեր քնքուշ սրտում...*

Այսպես չէ Պեշիկթաշլյանի վերաբերումը: Հիմը կեղծ-դասական է, ռոմանտիկ պատահական շերտերով և շեղումներով: Բանաստեղծը, չնայած իր ժամանակի հառաչներին և ողբերին, իրապես հետաքրքրվում է ավելի արտաքին աշխարհով, քան իր ներքին ապրումներով: Լուսանկարչի անկողմնապահությամբ շարում է մեր առաջ պատկերներ, նկարագրություններ բնությունից թե պատմությունից, առանց թաքավելու նախապես այդ պատկերներն իր հոգու ջրերում, առանց հոգեպես ձուլվելու նրանց հետ:

Այսպես են իր գրքի բոլոր հայրենասիրական երգերը, որ պատմական ներբողներ են: Ահա Վարդանանց երգը.

*«Դըժոխք ի մարտ արշաւեն*
*Գոռ բանակաւ սեւագունդ»* և այլն:

Ահավասիկ Խոսրով Մեծի երգը.

*«Ի գահոյս Արամեան,*
*Պերճ առիւծ սիգախրոխտ»* և այլն:

Ահա և Զրուանք Արտաշեսի.



*«Ելէ՛ք ի դաշտ, սէ՛գ իմ կորիւնիք դոոյթ տո՛ւք*
*խաղից յասպարէզ,*
*Գոռ հըսկայից գոչէր հրաւէր հըսկայազօրն*
*Արտաշէս»* ... և այլն:

Համեմատենք այժմ այս կեղծ-դասական ստեղծագործությունը միջնադարյան հետևյալ ջերմ տաղի հետ (15), որ նույնպես հայրենասիրական է և կտեսնենք մերձեցման տարբերությունը.

*«Սուտ եւ անցաւոր աշխարհ, ո՞ւր են մեր*
*իշխանքն ամենայն,*
*Հզօր մեծ Տրդատ արքայն, պարոնայքն եւ իւր*
*գօվական.*
*Զարթի՛ք եւ տեսէք զմեզ, խեղճ եւ ողորմն*
*կսկծական.*
*Ամենայն ազգ իւրեանց վիճակն եւ եղեալ եմք*
*մեք ցիրուցան,*
*Գերի եմք ողորմելի եւ ամենայն ազգաց եմք*
*կոխան.*
*Ոչ ունիմք մեք թագաւոր, ո՛չ հզօր զինուոր*
*զօրական,*
*Ո՞ւր են առաջին իշխանքն, քաջ Մուշեղ և Գայլ*
*Վահան»* և այլն:

Միջնադարյան տաղի հետ երբ համեմատում, որովհետև, ինչպես բացատրեցինք վերև, արդի ռոմանտիզմի պատմական ենթահողն է:

Նկատելի է նմանապես, որ Պեշիկթաշլյանը երբեմն կարծես սայթաքում է իր շավղից, և իր երգերին կցում է հավելվածական խոհեր և խորհրդածություններ, որոնք անջատ են երգերից՝ մի շեղում, որ կարծես ծառայում է կամուրջ լինելու դեպի ռոմանտիկ տրամադրությունը:

Այսպես, **«Գիշեր»** ընտիր նկարագրությունը վերջանում է անսպասելի շեղումով.

*«Ո՜վ իմ Հայոց չքնաղ երկիր դրախտավայր,*
*Տես զի՛ որդւոցըդ դիւցազանց վեհից պար*
*Երկնապարիկ յեթերս աստեղք բազմահոյլ,*
*Ոսկեծըղի փայլեն յաւէժ ՚ի նըշոյլ»:*

Այս շեղումը խիստ բնորոշ է: Լուսանկարիչը դնե է ձգում իր գործիքը և առնում է ձեռքը արվեստավորի վրձինը իր ես-ի այս կամ այն գիծը դնելու լուսանկարի մեջ:

Այս փոխանցումն է դեպի ռոմանտիկ ըմբռնումը և վերաբերումը:

**«Ո՜հ, ի՜նչ անուշ»** չքնաղ մեղեդին մի քայլ հառաջանում է նույն ըմբռնումի մեջ: Ճշմարիտ է, երգիչը չի ուզում իր մրմունջով վրդովել հովիկը, որ ծաղկանց վրա գուրգուրում է, բռչնիկը, որ երգում է ծառերի մեջ, և ոչ ականակիտ վտակի խոխոջը: Բայց նա հանում է իր սրտից ուրիշ հովիկ, որ ավերակների վրա է շրջում, ուրիշ վտակ, որ պղտոր է և նոճիների մեջ է սողում, և նրանց հետ է ձուլում իր սրտի հառաչքը:

**«Ծերն Վանայ»** երգի մեջ բանաստեղծի քնարը հասնում է ռոմանտիկ բարձրության: Գիշերը հանդիսանում է որպես մի մասն նրա սրտի մթու-թյան, որ թխացնում է անգամ ծովի մշտափրփուր ալիքները և լցնում տխուր հառաչանքով: Հույսի արշալույսը նույնանում է աստղերի արշալույսի հետ: Սիրո երգը փարում է Թորգոմա աղետներին: Նոճիները հեծում են փոքրիկի գոռոցից, հեծում են մեռած ոգիների փոխան: Վանա կոհակները ողբում են հին ցավեր...

Ահա քնարական մի գոհար, հուզիչ հղացումով և վսեմ պարզությամբ:

Այսպիսի մրմունջներ բացառիկ երևույթ են: Բանաստեղծը ձգտում չունի մերկանալու իր ներքինը: **«Մերձ ի մահ»** երգերի մեջ փորձում է ամփոփվել իր մեջ, լսվում են շշունջներ նրանից, թե այնտեղ անդունդ կա լի երազոք, հույսեր կան թաղված, ոսկյակ անուրջք, լուռ ցավեր, սոսկադեմ թշվա-ռություն, բայց բոլորը խեղդվում են լռության մեջ, չեն հայտնաբերվում: Թվում է, թե փափկաթև հույզեր են, նման մեղմ զեփյուռի, անընդունակ կամ անուժ հողմ դառնալու, փոթորկելու զգացողությունը: Ցավի և կսկիծի պալարներ են, որոնք սակայն չեն պայթում, որ վերքեր գոյացնեն և տոչորեն քնարը ներքին հրայրքով...

Մերն անգամ, որ **«ծագել է որպես լույս»** նորա սրտի խավարում ներս է սողոսկում ոսկեթև թիթեռնիկի մեղմությամբ, ներս է մտնում ինչպես մի հրեշտակ-կույս, գեղաշնորհ մանուկ, ճակատը՝ պարկեշտ, այտերը՝ մանկունի, գեղահույլ խոպոպներով, հրաշատեսիկ մի երևույթ, որ լցնում է բանաստեղծի ողջ էությունը և մոռանալ տալիս բնության հրաշալիքները. «Ոչ ևս սիրէ զծաղիկ, ոչ զզեփիւռ, ոչ ցօղատարափ պարտէզք, ոչ երկինք նշուլազարդ, ոչ աղաւնեակ, ոչ սոխակ»: Մթության մեջ կարկառում են դողդոջ բազուկները, հազիվ շշնջում է **բաղ տո՛ւր**, բայց զգում է իրեն «աղեր-սահայց ուխտավոր, ցրտահար և փետրաթափ ճնճղուկ», որ գթության պետք ունի, «աննշան միջատ», որ չի կարող թևել դեպի երկինք: Աղերսում է **Նեթեա՛ ինձ, կո՛յս**, արկ զբեհեզ զթութեանդ, որ ծածկեսցէ զյանցանս իմ,



ուղղում է նրան **Ցեռին հառաչքը**, խնդրում՝ **Ցիշեա՛ զի՜ս, կո՛յս**, երբ կտեսնես վայրի ծաղիկ մենավոր գերեզմանիս եսկից:

Մեր բանաստեղծի ներքին ջերմոցն այն հատկությունն ունի, որ սերն իսկ չի անում, որ կիրք դառնա, խռովահույզ կիրք, սերը մնում է կոկոնի մեջ, չի բացվում վարդի նման: Ընդհանրապես բուռն խռովք, մրրիկ չունի սրտում: Անծանոթ է նրան ընդվզող տրտունջը, որ ծառանում է բախտի դեմ, երկրի դեմ, անծանոթ անեծը, որ սլանում է դեպի երկինք, ընդդեմ «տխերիմ աստուծու»: Մի մեղմություն, որ մոտ է թուլության և որ չէ պրկում քնարը մեծ լարվածքով: Մեր բանաստեղծը այն չէ, ինչ որ ասում է միջնադարյան երգիչը աննման տողերով.

*«Գըլուխս ամպերն ի վեր իջեր ի սըրտիս լեռներուն*
*վըրայ,*
*Մաղձըն սըրտիս մըշուշ կապեր, արեան արցունքս*
*կու ցօղայ» (16):*

Այո՛, նրա գլխում ամպեր չկան, սրտում լեռներ, ո՛չ մաղձի մշուշ և ո՛չ արյան արցունք: Նրա քնարը հեզ ու խոնարհ է, քնքուշ է հեքաքար, թրթռում պատանեկան աշխույժով և ողջախոհությամբ: Կարծես թե կանգ է առել նորափթիթ արբունքի մեջ, չի ճաշակել երիտասարդական և առնական հասակների վայելքը, անգետ մնալով մեկի թավալգլոր ճախրանքի, մյուսի կազդուրիչ կորովի: Արդ՝ ուր չկա հասունություն, չկա և մեծություն: Պեշիկթաշլյանի մուզան մեծ չէ, այլ սիրելի, հաճելի, ինչպես անուշ է մի դեռատի արարած, որ անմեղ է և միամիտ, ողջախոհ և պարկեշտ:

Նրա ստեղծագործության ո՛չ քանակը և ո՛չ որակը հիմ չեն տալիս դա-սելու մեծությունների շարքը, եթե միայն չենք ուզում փոքրացնել մեծության գաղափարը: Ինչ որ հանում է նրան փոքրերի թվից և դնում ավելի բարձր պատվանդանի վրա. **միջինների չարքում**, այդ իր նվագների անուշությունն ու մաստաղ թարմությունն է:

Հարկավ, բացարձակ մեծություններ չկան և ոչ միջակություններ: Ամեն ինչ հարաբերական է տեղի և ժամանակի պայմաններում: Յուրաքանչյուր գրականություն իր չափն ունի: Ո՞րն է մեր չափը մեծն ու փոքրը որոշելու համար մեր գրականության մեջ: Այս դեպքում մեր չափը Աբովյան և Ալիշան են, ոչ միայն որ նորածին գրականության հայրերն են, այլև որ ավագ ժամանակակիցներն են քննելի բանաստեղծին: Հետնորդին չափել նախոր-դով պետք է և կարելի է: Ի՞նչ է Պեշիկթաշլյանը նրանց համեմատությամբ: Աբովյանը ներկայանում է մեզ որպես ռոմանտիզմի մի հրաբուխ, որ Մասիսի նման և միաժամանակ, ժայթքում է ահեղ որոտումով և թնդյունով Արարատյան դաշտի մեջ և կրակ ու բոց ցրում շուրջը, հրակեզ լավայով մաքրում գրաբարի ազազուն քարուտները նոր մշակության համար...

Պեշիկթաշլյանը հին և նոր գրականության սահմանագլխում վառվող մի խարույկ է, որ ծխում է, բայց չի հրդեհում, տաքացնում է, բայց չի այրում, երբեմն կայծկլտում է և լուսապայծառ շողեր արձակում...

Ալիշանի հետ ուրիշներն են համեմատել՝ Մ. Չերազ և Վարուժան: Երկուսի աչքում էլ Ալիշանը **արծիվ** է բանաստեղծության, Պեշիկթաշլյանը՝ **աղավնի**:

«Ալիշանի երգը գոռում, Պեշիկթաշլյանինը՝ ճլուըլյուն է,- ասում է Չերազ,- մի **ջրվեժ** է Ալիշան, որ ոռնալով ժայռեն վար կնետվի, փրփուր և կոհակ կժայթքե դեպի երկին, և քարերը ծեծելով, խութերու վրայե ցատկելով կվազե անհղամռունչ, կարծես մի հավիտենական խոչընդոտի դեմ կռվելով. հայհոյելով բարձրեն վար կ'ոստնու, ավելի վեր թռչելու համար... Պեշիկթաշլյան մի **առվակ** է, որ խոտին տակ գալարելով կսահի, չի հոսիր՝ կծավալի մերթ հոս, մերթ հոն, մի արևու ճաճանչ կհավքե իր ծոցին մեջ և դարձյալ մարգերու տակ կթաքչի աննշան, և մի ոլորուն սավերի պես՝ հեզաշարժ բեկբեկներ հորինելով՝ ինքն իր մեջ կխայտա»:

Այս հրաշալի և ճշգրիտ համեմատությունը պետք է բանա կույր և կանխակալ մտքերը: Եթե **արծիվը** մեծություն է, աղավնին գոնե միջակություն է, որովհետև ավելի փոքր թռչուններ կան: Եթե **ջրվեժը** մեծություն է, **առվակը** մինչև իսկ միջակություն չէ, որովհետև հոսուն ջուր չէ, այլ միայն սահող:

Արդ՝ ինչո՞վ է տարբերվում այս կարծիքը մերից: Թերևս նրանով, որ **աղավնի** և **առվակ** հնչում են աղվոր, իսկ **միջակը** դուրեկան չէ հայրենասեր ականջներին:

Պարոն Չոպանյանը իր ժամանակին չի բողոքել Չերազի դեմ իր բարեկամների հորդորով: Ինչո՞ւ: Որովհետև Չերազը թրքահայ է, իսկ մենք՝ կովկասահայ: Արգո գրագետը մեծ համարում չունի կովկասահայերի մասին: «Սրանք,- նրա կարծիքով,- ընդունակ են միայն գաղջ և սխալ բաների», մի միտք, որ պատիվ չէ բերում ոչ մի գրագետի:

* * *

Վեճը դեռ չէ վերջացել: Պեշիկթաշլյանը միայն բանաստեղծ չէր, այլև հասարակական գործիչ, այլև առաքինի անհատ: Մեր դասախոսը պ. Օհան Կարոն ուշադրության էր առել թե՛ մեկը թե՛ մյուսը: Անհատական բարեմասնությունները կասկածի նյութ չեն և պետք չենք զգում կանգ առնել նրանց վրա: Մի դիտողություն անենք միայն մասնավոր բնավորության:

Պարոն դասախոսի կարծիքով Պեշիկթաշլյանը «մեղմ և ամաչկոտ» էր այնքան, որ համարձակություն չգտավ իր մեջ բանալ իր սիրած աղջկան: Պարոն Չոպանյան հակառակ կարծիքն ունի: Մենք ավելի համամիտ ենք, պ. դասախոսին: Բայց կարևորը այդ չէ:



Դասախոսի ներքաղրության առթիվ դիտել էինք, որ ամոթխածությունը կարելի է վերագրել մասամբ Մխիթարյան կրթության: Ս. Էջմիածնի ճեմարանի աշակերտները ևս հայտնի էին, գոնե առաջինները, այդ հատկությամբ: Որոշ չափով գիշերօթիկ փակ դպրոցների պայմանների արդյունք է:

«Յառաջ» թերթի մեջ մի հողմավար գլուխ մեր անմեղ դիտողությունը շտապել էր համարել՝ մի քար որ նետում ենք մխիթարյաններին ոխակալությունից: Ծանծաղամտության այդ «քարը» այս անգամ սակայն մուտք է գտել և պ. Չոպանյանի մոտ: Զայրացել է, որ Պեշիկթաշլյանին համարում եմ ամաչկոտ և Մխիթարյաններին ամաչկոտության դաստիարակ: Օ՜, զարմանք: Կարծեմ, ամոթխածության զգացումը երբեք ախտավոր բան չի նկատվել: Տակավին հռչակավոր Թեոփրաստեսը երեսուն գովելի հատկությունների մեջ հիշում է նաև ամոթխածությունը: Նույն տեսակետն ունի և այժմյան մարդկությունը: Ոչ ոքի համար վիրավորական չէ ամաչկոտ լինել և կամ ամաչկոտություն պատվաստել: Պեշիկթաշլյանը և Մխիթարյանները, ուրեմն, կարող են հանգիստ մնալ, որ խոցված չեն:

Սակայն պ. Չոպանյանի մեջ միշտ արթուն է բարեսիրտ փաստաբանը: Առիթ է որոնում պաշտպանելու Մխիթարյաններին: Զարմանում է, որ մենք անտեղյակ ենք, որ այն վարժարանը, ուր սովորել է Պեշիկթաշլյան, վանական հաստատություն չէ, այլ աշխարհիկ է և վարդապետների կից և օտար ուսուցիչներ ունի, և դաստիարակությունը «ճգնավորական» չէ կամ «թուլացուցիչ», և որ վարժարանը մինչև անգամ հեղափոխականներ է տվել:

Ցավալի է, որ պ. Չոպանյանը շփոթում է ամոթխածությունը ճգնավորական և թուլացուցիչ ոգու հետ: Կարծեք, զանազանություն կա: Մխիթարյան վարժարանի մասին մենք ևս հասկացողություն ունենք: Ի՞նչպես են դաստիարակում ներկայումս սաներին պ. Չոպանյանի գաղափարակից հայրերը, ինչպես հայր Փեչիկյան, չգիտեմ, բայց կարող եմ վստահեցնել, որ Պեշիկթաշլյանի օրով հայր Ալիշանի պես ուսուցիչներ, որ մինչև ծերությունը մնաց ամոթխածության տիպար, ներշնչում էին նույն բարեմասնությունն աշակերտներին:

Անցնենք բուն նյութին, Պեշիկթաշլյանի գործունեության:

Մենք դժբախտություն էինք ունեցել համեմատելու Պեշիկթաշլյանին իր հասակակից Նալբանդյանցի հետ: Սա ռուսահայ է, ուստի թրքահայ Չոպանյանը գրգռվել է և ուզում է ցույց տալ, մեկ սալին խփելով մեկ մուրճին, որ Պեշիկթաշլյանն իբրև գործիչ ոչնչով պակաս չէ Նալբանդյանցից, այլև քաղաքական առավելություններ ունի:

Նախ՝ տալիս է Պեշիկթաշլյանի հասարակական ծառայության ցուցակը: 1846 թվին, երբ նա 17 տարեկան պատանի էր, մասնակցել է

**Համազգեաց** անուն ընկերության, որ հիմնվել է Մխիթարյան մի վարդապետի նախաձեռնությամբ: Մասնակցել է նաև **Բարեգործական** ընկերության, երաժշտական ընկերության, դերասանություն է արել սիրողների բեմի վրա, *ուսուցչություն է արել, կրոնական համբերաշխություն է քարոզել:*

Տարաբախտաբար այս ընկերությունների մեծ մասը դեռ չծնված արդեն մեռած էր: Կարելի է ասել՝ անունը կար, ամանումը չկար: Քայլեր են, որ վկայում են Պեշիկթաշլյանի և իր ընկերների քաղաքացիական գիտակցությունը, բայց գործեր չեն, հաշվեկշիռ ունեցող գործեր չեն:

Ուսուցչությունը մանկավարժական գործունեություն է և ոչ բուն հասարակական: Նալբանդյանցը պատրաստվում էր հայագիտական ամբիոնը ստանձնելու Պետերբուրգի համալսարանում, հարկավոր քննությունները տվել էր: Մեր համեմատությունը չի շոշափել այս կետը:

Ինչ վերաբերում է կրոնական համբերաշխության, թվում է թե պ. Չոպանյան, ուրիշների նման, գերագնահատում է Պեշիկթաշլյանի դերն այս խնդրում: Պատճառը **«Եղբայր ենք մեք»** գրությունն է: Գրի մարդիկ սովորություն ունին չափազանցնելու գրության ազդեցությունը իրական կյանքի վրա:

Պարոն Չոպանյանի խանդավառությունը այնքան հեռուն է գնում, որ հիշյալ գրությունը համեմատում է «Մարսելիեզի» հետ, ազգային «Մարսելիեզ» է համարում: Այս համեմատությունից, հարկավ, տուժում է ֆրանսական հռչակավոր երգը: Կրոնական խրամատը կար Պեշիկթաշլյանից առաջ և մնաց նրանից հետո: Նրա հետ էին Մխիթարյան սաները, որոնք քարոզի առանձին պետք չունեին: Մյուս տարրերից ոչ ոք գլուխ չխոնարհեց համբերաշխության առաջ: Ոչնչից չի երևում, որ Պեշիկթաշլյան «տսկի օղակ է հանդիսացել կաթոլիկների և լուսավորչականների մեջ»: Բավական է հիշել, որ կաթոլիկ քահանաները չէին ուզում մահամերձ հիվանդին հաղորդել և վերջին օծումը տալ: Ո՞ւր է համբերաշխությունն ու եղբայրությունը:

Կարևորն այս խնդրում պ. Չոպանյանի դատողություններն են, որոնց մասին կուզեի երկու խոսք ասել: Ոչինչ այնքան տաղտկալի չէ, քան այն տափակ ճշմարտության քարոզը, թե կրոն ու ազգ տարբեր բաներ են: Ներկա պայմաններում ուղղակի հանցանք է: Ամեն կողմից շրջապատված ենք հավատորսակներով, որոնք ձգտում են քայքայել հայության կրոնական-եկեղեցական շղթան: Երբ գայլերը մտնում են հոտի մեջ, եղբայրության աղերսներն անիմաստ են գայլի բերանում և եղկելի՝ ոչխարի բերանում, որ ուրիշ կերպ չէ հասկացվում, քան «ե՛կ և կե՛ր ինձ»:

Պետք է վերջապես թոթափել արժան ազատամտության հրապույրը և *արհամարհել հետադեմ երևալու երկյուղը:* Պետք է ուժգին դիմագրավում բոլոր նրանց դեմ, որոնք հոշոտում են մեր ազգային միությունն որևէ կողմից, որևէ մտքով: Մեր ժողովրդի գիտակցության մեջ ազգն ու կրոնն ոչ միայն



տարբեր չեն, այլ սերտիվ կապված են: Եվ այդ գիտակցությունը հանել է իր պատմական անցյալից և ոչ թե տեսական հաշիվներից: Մտավորականն է, որ անջատում է կրոնն ու ազգը և անջատում է տեսականորեն, պաշտպանելով լեզուն և հայրենիքը, որպես ազգության գործոններ: Սակայն, եթե ճշմարիտ է, որ տարակրոն հայը կարող է հայ մնալ և հայրենասեր, նույնը կարելի է ասել և տարալեզու հայի համար, այլև՝ տարաշխարհիկ հայի համար: Ուրեմն, լեզուն և հայրենիքը նույն վիճակի մեջ են, ինչ որ կրոնը: Հարվածը ուղղվում է միմիայն կրոնի դեմ այն թերի դատումով, թե կրոնը անհատական խղճի գործ է: Թերի ենք անվանում, որովհետև հասարակությունը, խմբական կյանքը ծագում է այն օրից, երբ անհատականը համայնանում է: Բոլոր հասարակական գործոնները ելած են անհատի ներքին աշխարհից: Պատմական հիշողությունները՝ գրականություն, արվեստ, բոլորը անհատական զգացողություններ են ընդհանրացած: Երբ որևէ երևույթ մարդու ներսից դուրս է գալիս տեսանելի հրապարակը, շոշափելի և բոլորովին մատչելի ձև և մարմին ստանում, այն դառնում է հասարակական գործոն: Կրոնական զգացումը, երբ մարմին է ստանում եկեղեցու ձևով, այլևս կորցնում է անհատական բնավորությունը և դառնում է ընդհանրական ինչք, հանրությունը շաղկապող օղակ:

Հարկավ, եկեղեցին այսօր այն չէ ինչ որ երեկ էր, բոլոր ազգերի մոտ: Ամենուրեք նա ոչ միայն խղճի սրբարան էր, այլև և՛ հովանավոր, և՛ գանձարան գիտության և արվեստի: Ներկայումս եկեղեցին զրկվել է իր նախկին շատ կարողություններից: Ազատ միտքը դադարեցրել է կրոնական բռնությունը, բայց չի կարելի ասել, որ վերացրել է կրոնական պատնեշները: Եվրոպական պետությունները, չնայելով ոսկայական կարելիություններին պահպանելու իրենց ժողովրդի ուրույն գոյությունը, մնում են կառչած ազգային եկեղեցիներին: Ռուսիան ուղղափառ է, Գերմանիան՝ բողոքական, Անգլիան՝ անգլիկական, Ֆրանսիա՝ կաթոլիկ, Իտալիա նաև կաթոլիկ: Ֆրանսիայի հակակրոն ճիգերը ուրիշ բան չեն եթե ոչ արտահայտություն ազգային բնազդի՝ ազատագրվելու Հռոմի պապականությունից, նման Գերմանիայի և Անգլիայի:

Արդ՝ եթե մեծ ազգերը դեռևս ավելորդ բեռ չեն համարում սեփական կրոն ունենալ, որքան ավելի նա կարևոր է փոքր և անուժ ժողովուրդների համար: Ոչ մի բանավոր հիմ չկա կարծելու, որ Հայ եկեղեցին այլևս ազգային գործոն չէ: Նա եղել է և մնում է ամրակուռ գոտի հայության մեջքին: Եթե հայ ժողովուրդը այդ համոզումը չունենար, չէր ներկել եկեղեցու ամեն մի քարը արյունով, մարտիրոսական սուրբ արյունով:

Նրանք, որ հեռանում են այդ կարմիր փարախից, մի բանով ավելի են վտանգում իրենց ազգային գոյությունը, ավելի են մոտենում գիշատիչ

գայլերին: Նրանց պարտքն է քարոզել, որ կրոն ու ազգ տարբեր բաներ են, որպեսզի տարակրոնությունը ազգության խնդրոց չծառայե և թույլ տա կորուստը փոխարինել, ուժ տալով մյուս գործոններին: Պեշիկթաշլյանը այլակրոն էր և համերաշխության երգերն ու քարոզները նրա բերանում իր տեղն են և պատվաբեր: Բայց՝ երբ նույն քարոզը, թե կրոնն ու ազգը տարբեր են, կրկնում են Չոպանյանները, իմաստը փոխվում է: Պեշիկթաշլյանի գործը շինարար է, Չոպանյաններինը՝ քայքայիչ. նա անջատվածներին է բերում, սա կարող է նոր պառակտումներ առաջ բերել: Տարակրոն հայը նման է մի մարդու, որ կտրել է մի մատը և ստիպված է աշխատել չորս մատով: Նրան վայել է և հասկանալի ասել, որ հնարավոր է բավականանալ չորս մատով: Բայց անպատշաճ է նույնը կրկնել հինգմատ ունեցող Չոպանյանին. վա՛յ թե միամիտ մեկը ավելորդ ծանրություն համարե հինգերորդ մատը և կտրե, և, թերևս, վաճառելու համար...

Այս հարցը սերտորեն կապված է վիճաբանությանս նյութի հետ: Տարակրոն հայությունը, հայ կաթոլիկությունը, արդեն ճեղք է բացել հայ քաղաքական գիտակցության մեջ, փարելով տարաշխարհիկ հայրենասիրության Կիլիկիայում և ոչ Մայր հայրենիքում: Սրա ետևից է գնում և Չոպանյանի «լուսավորչական» հայրենասիրությունը...

Նալբանդյանցը թանկ է հայության համար երկու մեծ գաղափարով՝ համազգային քաղաքացիական (իմա՛ գրական) լեզու, և համայն հայրենիք, գաղափարներ, որ ցայժմ էլ մնում են մեր նվիրական ձգտումների այնքան փափագելի հեռակետերը: Այս տեսակետից Նալբանդյանցին բարձր էինք դասել Պեշիկթաշլյանից:

* * *

Պարոն Չոպանյանը ուզում է ցույց տալ, որ Պեշիկթաշլյանը ևս մեծ քաղաքական ծրագրեր է ունեցել Կիլիկիայի նկատմամբ և թե «ապագան պիտի ցույց տա», որ այս ծրագրերը ավելի կենսունակ են: Լսենք նախ այս նոր քարոզը:

Նալբանդյանցը, Չոպանյանի կարծիքով, ըմբոստ ոգի ուներ, տարված էր համամարդկային հեղափոխական երազներով, ընկերական հարցը տիրում էր նրա մտքին մեջ ազգային հարցերին, և սրանց լուծումը ենթարկում էր առաջնի լուծումին: Պարոն Չոպանյանը վիճելի է համարում այս տեսությունը, ուզում է կարծես Նալբանդյանցին նախահայր համարել հետագա հեղափոխական գործունեության, բայց կանգ է առնում և ենթադրում, որ եթե նա կենդանի մնար, չպիտի հավաներ ինչ որ կովկասահայ մարքսիստների ղեկավարությամբ կատարվեց թուրքական հայ նահանգներում: Եթե մի քիչ ավելի ապրեր Նալբանդյանց և տեսներ



Խորհրդային իշխանության հաստատվելը, իբր ընկերվարական ազգասեր հայ որպես թե պիտի վարվեր Մյասնիկյանների նման և ոչ թե ինչպես վարվում են «Ահարոնյան մը և Աղոնց մը»:

Եթե բարեկամիս գրությունը չափածո լիներ, պետք է կարծեի, որ անունս հիշված է ոտի թե չափի համար: Ինչպես երևում է, այդ հիշատակությունը մի ընծայաբերություն է Խորհրդային իր ենթադրյալ բարեկամներին, որպես վկայական իր հավատարմության:

Նալբանդյանցի քաղաքական հայացքների և համոզումների մասին շատ խառնակ և անճիշտ տեղեկություն ունի պ. Չոպանյանը: «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» երկասիրության հեղինակի հայացքները բոլորովին տարբերվում են գործարանական ծխի մեջ մշակված ընկերավարական վարդապետությունից: Նալբանդյանց գործնական ուղեգիծ չէ թողել և ոչ մի բանից չի երևում, որ ազգային հարցը դներ համաշխարհային հեղափոխության անիվների վրա:

Արդյոք ի՞նչ դիրք կբռներ Նալբանդյանցը Խորհրդային իշխանության հանդեպ, ճրի ենթադրություններ են: Չեմ կարծում, որ նա Չոպանյանի հետ թևանցուկ պար բռներ Մյասնիկյանների շուրջը: Ավելի հավանական է, որ լռեր, ինչպես հրամայում է արժանապատվության զգացումը, և չխոսեր այն մարդկանց հետ, որոնք լսելու ցանկություն չունին: Մեր կողմից բարեկամական խորհուրդ կտայինք պ. Չոպանյանին, որ նա ևս հրաժարի վերջապես առաջարկելու իր ծառայությունը նրանց, որոնք մերժում են ընդունել:

Պեշիկթաշլյանը ուրիշ և Նալբանդյանցին հակառակ հայացք ուներ, ըստ Չոպանյանի: Նա հայրենասեր էր «դասական ըմբռնումով», որ եվրոպական առաջացած ժողովուրդների ըմբռնումն է: Համամարդկային ընկերական հարցում «չափավոր ազատամիտ ռամկավարականների» հայացքն է ունեցել և նրա հետ չի կապել ազգի հարության խնդիրը: Պեշիկթաշլյանի մտասևեռումն է եղել՝ հաստատել ինքնավար հայրենիք Կիլիկիայում, Նապոլեոն III-ի օգնությամբ, որովհետև հույս չուներ ո՛չ կովկասյան և ո՛չ թրքական Հայաստանի քաղաքական ապագայի վրա: Միակ կարելիությունը գտել էր Կիլիկիայում: Միջերկրական ազգ դառնալ՝ «փոքր, բայց ամուր և տևական ազգային տուն» ապահովել: Այս ծրագիրը որպես թե կատարվելու վրա էր մեծ պատերազմից հետո, բայց արգելք եղավ Երևանի կառավարությունը, որ ավելի մեծ Հայաստան ստեղծելու երազներ ուներ Ամերիկայի հովանու տակ: Ֆրանսիան վշտացավ և ծրագիրը ջուրն ընկավ:

Որքա՛ն պարզունակ միամտություն կա պատմվածքի մեջ: Չոպանյանին, երևում է, դեռ հայտնի չէ 1916 թվի գաղտնի դաշինքն իր քստմնելի մանրամասնությամբ (17): Բանաստեղծական մեծ ջանք է անում պ. Չոպանյանը տեսնելու իր պատկերը Պեշիկթաշլյանի մեջ: Ջեյթունի խեղճ Մովսես

քահանան (18), որ եկել էր մայրաքաղաք յուրայինների գլխի ճարը տեսնելու, դժվար թե օրորվեր ինքնավար Կիլիկիայի երազով: Իսկ Կ. Պոլսի ազգասերների դեսպանությունը Փարիզ մի օդային թռիչք էր. և երևակայություն է հարկավոր պնդելու, որ Նապոլեոնը մտադիր էր Նոր Լիբանան ստեղծելու այն ժամանակ, թե ապագայում «պատեհ առթիվ»...

* * *

Պետք է ասել, որ Կիլիկիայի հարցը քաղաքական մի մշուշ է, մի կարգ լևանտացի հայերի գլխում, ուր դյուրությամբ զետեղվում է 300-ամյա մի գաղութ, բայց ոչ 3000-ամյա մի հայրենիք: Կիլիկիա եղել է և է հայի համար գաղութ, և ոչ հայրենիք, և եթե այնտեղ ծածանվել է հայ դրոշակը, ծածանվել է այնպիսի ծանր պայմանների հետևանքով, որոնց կրկնությունը ցանկալի չէ: Թո՛ղ չզարմանան և չվրդովվին կիլիկյան հայրենասերները:

Տարածված կարծիք է, որ Ռուսիան ուզում էր ունենալ «Հայաստանը առանց հայերի»: Չգիտեմ, որքան ստույգ է այս չարաշուք խոսքը: Բայց հաստատ է, որ հնում, Ռուսիայի դերը կատարող Բյուզանդիան բոլորովին հակառակ և նույնչափ չարաղետ ձգտում ուներ՝ ունենալ «հայերը առանց Հայաստանի»:

Երբ սելջուկները կոխեցին Հայաստանի սահմանները, քրիստոնյա կայսրերը, ի տես վերահաս վտանգի, լավ համարեցին զոհել Հայաստանը, հուսալով այդ գնով փրկել կայսրությունը: Հայ արքայական տները բռնի տեղափոխեցին Եփրատի այն կողմը, նոր պատվար կանգնելու պետության երկու մեծ և բաց դռների առաջ, Մալաթիա-Սեբաստիա և Մարաշ-Կեսարիա գծերի վրա, որտեղից թշնամին խուժում էր ներս: Հանգան հայ քաղաքական ջահերը, որ այնպիսի ջանքերով վառվել էին: Արքայազուն իշխաններին հետևեցին ուրիշները: Հայերը զորացան և Մարաշի ուղղությամբ զենքի հաջողություն ունեցան, շուտով անկախության դրոշակ պարզեցին Կիլիկիայում: «Ազգային տունը» կազմվեց և քաշեց դեպի իրեն մայր հայրենիքի կենսատու հյութերը: Կաթողիկոսությունն անգամ, անսպասելի կարճատեսությամբ, լքեց անտեր անտիրական ժողովուրդը և փութաց Կիլիկիա:

Մնացին հավատարիմ հայ հողին հյուսիսային Հայաստանի մի քանի իշխանական տներ: Անցան սելջուկների, մոնղոլների սարսափները, փոթորիկը դադարեց, գորշ ամպերը քաշվեցին: Սույն այս իշխանները իջան իրենց ամրոցներից, տիրանալու իրենց կալվածներին և եռանդ եղան դարմանելու երկրի վերքերը: Զաքարյանների առաջնորդությամբ, նեցուկ ունենալով հարևան Վրաստանը, մաքրեցին Երասխի ամբողջ հովիտը օտար պետերից Կարինից մինչև Մուղան:

Կիլիկիայում Լևոն II նոր էր զարդարել իր գլուխը արևմուտքից ստացած



թագով, երբ Զաքարյաններն իջան դեպի հարավ, հասան Վանա ծովի եզերքը, հասան Մշո դաշտը: Վանում նստած էր մի քյուրտ իշխան, Խլաթում՝ Արմենշահ մուսուլման տունը: Ազգային զորության և ոչ մի կռվան: Հյուսիսից եկած զորքերը պարտվեցին և հետ դարձան: Կիլիկիայի խողովակը քամել տարել էր եղած ուժերը:

Վրաստանը, որ անհամեմատ փոքր էր, քան Հայաստանը, և որ նույն արհավիրքները տեսավ, սելջուկ մոնղոլ-թաթար հարվածները կրեց, կարողացավ ի վերջո հառնել ավերակների միջից, պաշտպանել իր անկախությունը, և պահել պահպանել մինչև XIX դար: Պատճառն այն էր, որ իշխանական ղեկավար ուժերը մնացել էին երկրում: Մինչդեռ մեզանում Երասխից հարավ ոչ մի հետք չկար նախկին տոհմիկ պետերից: Հայ ֆեոդալական ավանդները վերացել էին, վերջին բեկորները «գաղթել էին», հոսել դեպի «ազգային նոր տունը»:

Ռուբինյան դրոշակ, անշուշտ, մեծ պարծանք է հայության համար, մի լուսավոր դրվագ: Բայց նրա փայլը և բերած երջանկությունը պղտորվում է մասամբ այն ստվերով, որ նա ձգեց մայր հայրենիքի վրա...

Այս տեսակետից, այն «դասական» հայրենասերները, որոնք փարել էին Կիլիկիային [XIX դարի] 60-ական թվականներին, դժվար թե «դասական» համարվեն: Ազգասերներ են ավելի, քան հայրենասերներ: Ազգասիրությունը հատուկ է գաղթահայության և իր կերտած բառն է, որ ուրիշ լեզվում չկա և որ, թերևս, ջնջվելու է հայ քաղաքական բառարանից: Նա քայքայում է հայրենասիրության գաղափարը: Կիլիկիան լևանտացի հայության «ազգային տունն» է:

Թողնենք Կիլիկյան հարցի նորագույն փուլը, որի լուսաբանությունը, պ. Չոպանյանի մոտ, շատ հեռու է «դասական» լինելուց: Մեզ զբաղեցնողը [XIX դարի] 60-ական թվականներն են և Պեշիկթաշլյանի դիրքը Կիլիկիայի հանդեպ:

Պարոն Չոպանյանը հրում է մեր բանաստեղծին Կիլիկյան ազգասերների շարքը: Մեծ ծառայություն չի մատուցանում: Մենք ենթադրել էինք, որ Պեշիկթաշլյանի երազները հածում էին Հայաստանի շուրջը, ինչպես և Նալբանդյանցի: Վերջինս բարձր էինք դասել նրանով, որ իր հայրենասիրությունը ձգտում էր մարմնանալ գործով, մինչդեռ Պեշիկթաշլյանինը մի զգացմունք էր խոսքի և քնարի սահմաններում: Մեկը պայքարող էր, մյուսը՝ խոսող: Նալբանդյանցը ընդունակ էր Հայաստան գալ, ինչպես և փորձեց, Պեշիկթաշլյան, մյուս պոլսական մտավորականների նման, չէր կարող հեռանալ մայրաքաղաքից դեպի «գավառները»:

Եթե ընդունենք պ. Չոպանյանի կարծիքը, որ մեր բանաստեղծը կիլիկյան հայրենասեր էր, ստիպված կլինենք մի քանով ևս վար համարել Նալ-

քանդյանցից: Սակայն, մենք համամիտ չենք այս կարծիքին: Զեյթունի երգերը բավականին հին չեն: Տիկին Երիցյանից (19) գիտենք, թե ի՞նչ պայմաններում են գրված հիշյալ երգերը: Մովսես քահանայի սրտաճմլիկ պատմությունները էին, որ հուզել և ոգևորել էին բանաստեղծին: Անշուշտ, նա համակրում էր Զեյթունի հերոսներին և կուզեր, որ իրենց ազատությունը պահպանեն: Բայց որ Զեյթունի դատի հետ կապում էր Կիլիկիայի անցյալ փառքի վերահաստատումի մեծ ծրագիրը, տեսական ենթադրություն է: Նա քաղաքական գործիչ չէր և չուներ ո՛չ սերտած ծրագիր և ո՛չ գծած գործելակերպ:

Եթե երգերով դատենք, ավելի իրավունք ունինք տանելու նրան Հայաստան, քան Կիլիկիա: Ապացույց **«Ծերն Վանայ»** և **«Մինչդեռ յուսոյ»**: Բնորոշ է մանավանդ վերջինս: Հայտնի է, որ նույն երգի մի ուրիշ հայացումը պատկանում է Ռուսինյանին: Սա երգում է.

*«Երթամ տեսնեմ զիմ* Կիլիկիա»:

**Մինչդեռ** Պեշիկթաշլյանն ունի.

*«Ի քեզ ես դարձ առնեմ յայնժամ*
*Ո՜վ ցանկալիդ իմ Հայաստան»:*

Մեր հայացքով զոնե, Հայաստանը ավելի թանկ է, քան Կիլիկիան և ապա ուրեմն Պեշիկթաշլյան ավելի բարձր է, քան Ռուսինյան, քան կաթոլիկ համայնքը, որ կիլիկյան ծրագրի ջերմ կողմնակիցն է և հոգևոր ծնողը, բարձր է, քան Պոլսի այն լուսավորչական մտավորականները, որոնց մտավոր ճառագայթները հասնում են մինչև Կիլիկիա, բայց չեն զորում անցնել մայր հայրենիք:

Ինչ և լինի մեր բանաստեղծի «մտասևեռումը», դեպի Կիլիկիա, թե Հայաստան, *քաղաքական* ***մեծ*** *գործ չէ: Հայ քաղաքական գործունեությունը* այն հասակի մեջ չէր այն ժամանակ, որ հայրենասիրական խոյանքը համարվի քաղաքական մեծ գործ: Պեշիկթաշլյանի եռևը, XVIII դարու սկզբում և վերջում կանգնած էին այնպիսի պատկառելի դեմքեր, որպիսիք են Իսրայել Օրի, Հովսեփ Արղության:

Համեստությունը մեծացնել՝ նշանակում է մեծությունը նվաստացնել: Թանկ է մեզ համար բանաստեղծի, հասարակական գործիչի անունը, բայց ավելի թանկ է հայ բանաստեղծության և հայ քաղաքական գործչի վարկը (20):



# Խ ՈՍ Ք

## ԱՎԵՏԻՍ ԱՀԱՐՈՆՅԱՆԻ ՄԱՍԻՆ

**Ազնիվ հանդիսականներ, սիրելի հայրենակիցներ,**

Գիտության և գրականության այս տաճարը, որ ընդունել է իր պերճ հարկի տակ մեր հայության հանդեսը, մի պարտք է դնում մեր վրա:

Երբ չարաբախտ բերումով ստիպված եղանք ելնել մեր հայրենի հողից և թափառել օտարության անծանոթ ուղիների վրա, այս երկիրը միկն էր նրանցից, որ բացավ իր դռները մեր առաջ և կատարեց իր մարդասիրական պարտքը: Հնարավորություն տվավ մեզ աշխատելու և թոթափելու ճանապարհների փոշին և ահա ի վիճակի ենք հրապարակ գալու տոնական հանգամանքներով: Մեր շնորհակալությունը ֆրանսիական մեծ հանրապետության այս բարեհաճ հյուրընկալության համար:

* * *

Հանրային մեծարանքի բեմի վրա է Ա. Ահարոնյանը, 40 տարվա գրական ծառայությունը մեջքին (1): Ազգային ինքնակոչումի չափերից մինն է անշուշտ այն վերաբերումը, որ ցույց է տալիս հասարակությունը իր աշխատանքներին: Ինքնակոչումը ինքը մի թել է, որի վրա շարված են անհատական մեծություններ: Հարգել, տոնել վաստակավոր անհատը նշանակում է ճշտել նրա տեղը այդ թելի վրա: Քառասուն տարին հուզումնալից շրջան էր, բացվեց հույսերի և հույզերի արշալույսով, բերեց ամպամած և արևի օրեր, և ընկղմվեց գիշերային խավարի մեջ: Հոբելյարը այդ շրջանի երգիչն է: Ի՞նչ է նա բերում մեր ինքնագիտակցության, ի՞նչ ավանդ է թողնում հետևորդ սերունդներին:

Ա. Ահարոնյանը, ինչպես ամեն մի անհատ, ամեն մի ազգություն, ապրել է երկու կյանքով՝ իրական և երազական: Մեկը տեսանելի և շոշափելի կյանքն է՝ ինչպես որ կա, մյուսը՝ գաղափարների ու երազների աշխարհը, այն որ պետք է լինի: Նրա գրականությունը այս երկու ապրումների դաշնակումն է:

Հայ իրականությունը ծանոթ է նրան իր հայրենի տնից: Հայրը երկրա-

գործ էր, հետո արհեստավոր: Հայ շինականի հարազատ տիպար, առաքինի, հանդարտաբարո, զիջող, աշխատասեր, սիրում էր իր տունն ու ընտանիքը, խոփն ու արտը, եզն ու գոմը: Այգին դրախտանման էր, ծառը, ճյուղը սիրելի էր նրան զավակի նման: Երկրագործը դարձավ դարբին, պահելով նույն առաքինի հատկությունները:

Ընտանեկան կյանքի այս պատկերը խորապես դրոշմվել է մանուկ Ավետիսի հոգու մեջ: Նրան թվում էր, որ գյուղի բոլոր տները նման էին իրենց տանը, բոլոր հայրերը նման են իր հորը, բոլոր հայ գյուղերը նման էին իրենց գյուղին: Հայաստանն իրենց գյուղն է հսկայական ծավալով, իրենց դարբնոցը, իրենց այգին, տարբեր միայն մեծությամբ:

Այս անօրինակ լավատեսությունը մնում է Ահարոնյանի մեջ ցայսօր: Հայ գյուղը, գյուղականը, երկիրը այսպես իդեալականացված:

Սակայն հրաշակերտ պատկերն ուներ և ինչ-ինչ բծեր: Գյուղում դիտում էր ճակատագրական մի հլություն, խոնարհություն: Ոչ մի նշույլ բողոքի, ցասումի, ըմբոստության, ընդվզումի: Ստրկական ոգին էր տիրական: Ահա մտրակը ճոճռաց և շառաչյունով իջավ մի խեղճ գյուղացու մեջքին: Լուռ է տուժողը, մունջ ողջ գյուղը, մարդիկ դարձել են եզներ, որ քաշում են անմռունչ աշխատանքի լուծը, բախտի գծած ակոսներով: Գյուղում երկու հոգի կային, որ առնական կորով ունեին: Երկու երիտասարդ, երբ ձի հեծած, սուրը կողքից կախ, սալասմբակ երևում էին փողոցներում, բոլորիքյան հրճվում էին: Հարս ու աղջիկ դուրս էին թափվում նայելու զմայլանքով: Այդ մարդիկ ժպտում էին կարծես արգիլված մի հաճույքով և միմյանց շշնջում էին, թե ինչպես նրանցից մեկը ուխտավորների կարավանը առաջնորդել էր դեպի Ս. Կարապետ և ինչպես ճանապարհին սպանել էր մի կատաղի քուրդ այնպիսի պայմաններում, որ հերոսի հռչակ էր ստացել: Այս կտրիճների պատկերը ևս տպավորիչ էր մանուկ Ավետիսի հիշողության մեջ:

Ա. Ահարոնյանի համար մի բախտ էր, որ ընկավ Ս. Էջմիածնի ճեմարանը (2): Սովորական դպրոց չէ, որ միայն գիտելիքներ է տալիս իր սաներին: Ազգային դաստիարակության հնոց է, մի գաղափարական աշխարհ ուրույն ոգով: Ճեմարանին ինքը պարտ է Ահարոնյանը (3): Այնտեղից տարավ իր հետ հայ լեզվի հիմնովին գիտությունը, այն լեզվի, որ Ահարոնյանի գրականության կեսն է: Երբ մեռած լեզուն կենդանանում է, ինչպես գրաբարը ճեմարանում, նա կենդանացնում է մեռած, սպանված գաղափարների մի աշխարհ: Ոչ մի բան այնքան ստույգ պատկեր չէ տալիս մեր պատմական թշվառության, որքան նոր գեղջուկ բարբառի համեմատությունը հոյակապ գրաբարի հետ: Բառերի մահը գաղափարների մահ է:

Քսան տարեկան էր, երբ նա թողեց ճեմարանը և եկավ իր գյուղը գաղափարական պաշարով: Տասը տարի ուսուցչություն արավ: Ստուգեց իր



մանկական տպավորությունները և օծեց նրանց նոր գաղափարների ազնվությամբ: Հասան տառապանքի օրերը: Սահմանի այն կողմեն հորդած աղետի հորձանքը ազատեց Ահարոնյանի լեզվի կապանքները: Սարսռաց տեսնելով, որ գութանի վերա մեջքը ծռած Հայը կարոտ էր **փշուր ըմ հացի, պուտ ըմ կաթի** և որոնում էր իր գողացած եզը՝ **Բաշոն**:

Առաջին պատկերները, որ գրեց Ահարոնյանը թուրքահայ կյանքից, ցնցեցին խռոված հայությունը: Անունը հռչակվեց: Գնաց արտասահման կատարելագործելու իր տաղանդը (4): Այստեղ նա հարեց ազատագրական կուսակցության և եղավ նրա նշանավոր գաղափարախոսը:

Ազատությունը՝ կախարդական շունչ է բանաստեղծական սրտի և քնարի համար: Բանաստեղծությունը ինքը մի վեհ ազատություն է, որ ատում է ստրկությունը: Տակավին Հոմերոսը, մարդկության առաջին բանաստեղծը ասել է. ստրուկը ազատությունը կորցնելու առաջին օրից կորցնում է իր առաքինությունների կեսը: Հրապարակում եղած հասարակական հոսանքները առաջադեմ և հետադեմ անունների տակ, հետևությունն էին ռուսական կուսակցությանց և մեր կյանքի համար մեծ արժեք չէին ներկայացնում: Այդ հատվածումները քաղաքականապես ազատ ազգերի համար են: Առաջադիմությունը, երբ նշանակում է եվրոպականացում, օգուտեն ավելի վնաս է բերում մեզ, ապազգայնացումի կորստաբեր հետևանքներով: Քաղաքակրթական գործը հնարավոր է ազգային գետնի վերա՝ միմիայն քաղաքական անկախության պայմանով և նրա շրջանակում:

Նման խոհերի արդյունք էր Նալբանդյանի «Ազատն Աստվածը», որով նա որոշեց իր դիրքը երկու պայքարող հոսանքների հանդեպ, ձեռք քաշելով երկուսից էլ: Այդ գծի վերա էին կանգնած Աբովյան և Րաֆֆի: Ա. Ահարոնյանը գալիս էր երկարելու նույն գիծը: Անպայման քաղաքակրթության կողմնակից չէ. ուզում է, որ նա ազգային լինի, իսկ ազգային կարող է լինել միայն քաղաքական ազատությամբ: Այս հասկացողությամբ է, որ նա փարեց Դաշնակցության և սպասարկեց իր գրիչը նրա գործին: Ինչ և լինեին հայի առաքինությունները, Ահարոնյանի դիտողությամբ, նրանք շարժուն վիճակի մեջ չէին, թմրած կաշկանդված էին ստրկական մտածումի շղթաներով:

Այն պետք է քակել, ներշնչելով ըմբոստության ոգին, պատրաստել այնպիսի խիզախներ, որպիսիք էին գյուղի այն երկու կտրիճները, որոնց պատկերը մնացել էր Ահարոնյանի անջինջ հոգում:

Ահարոնյանի գրիչը նվիրված է այս քարոզին, անտարակույս, արվեստի և արվեստագետի կոչվածը հեռու է մարտական կուսակցությունների, հեռու է նաև քարոզի բեմերից: Արվեստագետ Ահարոնյանի կողմից մի զոհ-

ղություն էր ստանձնել այդ դերը, ուր արվեստագետը դառնալու էր հրապարակախոս և պարզ, վճիտ խոսքը ստիպողաբար հագնելու էր ճարտասանության շողշողուն զրահները: Առավելությունն այն էր, որ ազատության անձնվիրության բարձր գաղափարների կոչը պահելու էր լեզուն և՛ ոճը և՛ քնարի լարվածքը համապատասխան բարձրության վերա:

Այս պայմանները ստեղծեցին Ահարոնյանի միանգամայն ինքնատիպ և միմիայն իրեն հատուկ գրականության սեռը: Նրա բովանդակությունն է պաշտամունք հայ ժողովրդի և Հայ Հայրենիքի, փառաքանության վսեմ և ազնիվ գաղափարների, ամենեն առաջ **ազատության, արդարության, ճշմարտության, անձնվիրության**: Մի գրականություն, որ պիտի մնա մեր պատանեկության սեղանի վրա ընդմիշտ, իբրև բարձր մտքերի և մաքուր զգացմունքների շնչարան, Ահարոնյանի հատորները պիտի կրթեն և ազնվացնեն սերունդները՝ պատվաստելով ասպետական ոգի, հանուն հայրենիքի բարօրության, ներշնչելով սեր դեպի հայ ժողովուրդը, Հայ Հայրենիքը և նրա հրաշակերտ բնությունը:

Ա. Ահարոնյանի երկերը պիտի մնան անքառամ, որպես հայ լեզվի և ոճի ականակիր աղբյուր: Ազատության երգչին մի բան է մնում, ապրել արևշատությամբ և տեսանել իր լավագույն երազի իրականացումը՝ ամայացած հայրենիքի վերակենդանությունը:



# ԳՐԱԿԱՆ ՆՇՄԱՐՆԵՐ

## ԴԵԿԱԴԱՆՍ ԵՎ ՍԻՄԲՈԼԻԶՄ

*Souvent dans l'être obscur habite un Dieu caché;*
*Et comme un œil naissant couvert par ses paupières,*
*Un pur Esprit s'accroit sous l'écorce des pierres!*
***Gerard de Nerval***

***Մութ գոյի մեջ հաճախ Աստված կա քողարկված,***
***Եվ ծնվող աչքերը փակվող կոպի հանգույն***
***Քարի կեղևի տակ Մաքուր Միտքն է ծագում:***
***Ժերար դը Ներվալ (1)***

Նորանցիկ դարի վերջին քսանամյակում հայտնված գրական-գեղարվեստական հովերը երկար վիճաբանությանց նյութ են եղել, և մինչև այժմ էլ դեռ որոշ և հաստատուն գնահատություն չեն ստացել ընդհանուր հասարակական գիտակցության մեջ, շնորհիվ այլևայլ թեր և դեմ ու հեղինակավոր կարծիքների:

Նորությունները վատաբախտ են, և ինչպես միշտ, այս անգամ ևս սկզբից շատ քչերի հավանությանն արժանացան: Տիրող գրականության խոշոր ներկայացուցիչները բարձրահայաց քամահրանքով վերաբերվեցին, իսկ ի պաշտոնե փուքկոտ քննադատների լեզուն տակավին խիստ է և թշնամական: Ռուսիայում ոչ միայն Նիկ. Միխայլովսկին, այլև Վլ. Սոլովյովն ու Լ. Տոլստոյը նոր շարժման ընդդեմ խոսեցին: Նվազ աննպաստ չէին և ֆրանսիական հեղինակների կարծիքները, ինչպես ցույց տվեց Ժ. Հյուրեի հարցանքը 1891 թվին[1]: Բացի շարժման մոտիկ անձերից, մյուսները նորածին գրականությունը երևակայության ծամածուռ նազանք էին համարում, կամ պատանեկության ժամանակավոր խաղ: Հռչակավոր Ռընանի կարծիքը կարճ և հատու, լավ բնորոշում է գրական բարձր շրջանների հայացքը նորերի վրա: Հյուրեի հարցին՝ թե ի՞նչ է կարծում նորերի մասին, նշանավոր փիլիսոփան և գիտնականը պատասխանեց. **«Ce sont des enfants qui se soucent le pouce»**՝ «Երեխաներ են, որ ծծում են իրենց մատը»:

[1] **Jules Huret**, Enquêtes sur L'Évolution litteraire, Paris, 1891.

Այս և նման վճիռների առթիվ՝ ներելի է հիշել Ա. Ֆրանսի նուրբ նկատողությունը. «Նորերի վերա դառնությամբ խոսող հները մի կարգ ծերունիների տպավորություն են թողնում, որոնց թվում է, թե այն օրվանից, երբ իրենք թողել են երիտասարդությունը, կանայք այլևս առաջվա պես գեղեցիկ չեն. ուստի պաշտումի և մեծարանքի ամբողջ գանձը պահում են իրենց ժամանակվա մատաղ աղջիկների համար»:

Բարեբախտաբար, ո՛չ վաղաժամ ու շտապ եպերանքը, ո՛չ աչառու գովասանությունը չեն փոխում իրերի բնական ընթացքը: Նրանց ազդեցությունն աննշան է և անցուկ: Գոնե արվեստի աշխարհում երևույթը պահել է ինքն իր բախտը վճռելու թանկ արտոնությունը: Հակառակ քննադատների վստահ գուշակության, «դեկադենտությունը» ո՛չ միայն չի վերանում, այլ ընդհակառակը՝ զորանալով լայն ծավալ է ստանում: Գիտակ մարդիկ նույնիսկ խոստովանում են, որ ներկայումս երկու կարգ գրողներ կան՝ քանքարավոր, որ են սիմբոլիստները և անշնորհ՝ մյուսները[1]: Պետք է ենթադրել, որ միայն բախտախնդիրների քմայքը չէ ծնել այդ շարժումը, այլ անշուշտ ժամանակակից կյանքի մեջ կան պայմաններ, որոնք կարելի են դարձնում նրա բարգավաճումը: Այսպիսի պարագայում խնդիրը պահանջում է հայտնի զգուշություն և զգաստ վերաբերում:

* * *

Նոր գրական շարժման ավետավորը համարվում է Շարլ Բոդլերը: Նրա հռչակավոր «Չարի ծաղիկները»՝ **«Les Fleurs du mal»** (1857 թ.) սփռեցին գրական մթնոլորտում մի ինքնօրինակ բույր, որ հեռզհետե խտացավ: Ուսումնական թվականներին «ծաղիկները» վերընձյուղեցին և սկիզբ դրին նշանավոր և այնքա՜ն աղմկալի հոսանքի:

Գործի վարիչները մի խումբ երիտասարդներ էին, որոնք հավաքվելով [Փարիզի] Լատին թաղի սրճարաններից մեկում, խոսում ու վիճաբանում էին գրականության և գեղարվեստի մասին: Անհայտ, անտերունչ մարդիկ էին առանց որևէ դրական զբաղմունքի. և ինչպես վկայում են բանիմացները, մի առանձին գիտություն էլ չունեին, ու ընդհանրապես զուրկ էին գրական լուրջ պատրաստությունից: Բայց գեղարվեստի բարձր սիրո հետ ունենալով և նուրբ սիրտ, խորապես զգում էին, որ թագավորող գրական ճաշակները չեն համապատասխանում իրենց ոգուն, իրենց ներքին պահանջներին: Այդ երիտասարդների պարագլուխ է հանդիսանում Պոլ Վերլեն: Ընդհանուր դժգոհությունը աճելով՝ փոխվում է բողոքի: Չեն հապաղում երևալ և հանդեսներ, իբրև օրգան նոր հայացքների ու տրտունջի. անդրանիկն է «La Nouvelle Rive Gauche» («Նոր ձախ ափը»), որ քիչ հետո 1883 թվին, սկսեց անվանվել «Lutèce»: Երիտասարդ շրջանը կամաց-կամաց մեծանում էր, գալիս էին թարմ մարդիկ, մշակվում, պարզվում էին նոր հայացքներ: Այսպիսով կազմակերպվեց մի զորեղ շարժում բազմաթիվ օրգաններով[1], որոնց ղեկավարներն էին մի շարք տաղանդավոր գրողներ Պ. Վերլեն, Ս. Մալարմե, Մորիս Բարես, Էդուարդ Ռոդ, Պոլ Մարգըրիտ, Ժան Մորեաս, Շարլ Մորիս, Լորան Տայիադ և ուրիշներ:

Շարժումը խախուտ էր և դեռ պարզ չէր որոշվել նրա սկզբունքներն ու նույնիսկ էությունը, երբ մամուլի թեթևագիր քննադատները ծաղրի ու ծանակի նյութ շինեցին՝ թմբկահարելով շարժման բացասական երևույթները: Թերթերն ավելի սրախոսությամբ էին զբաղված, քան լուրջ քննությամբ, այնպես որ նույնիսկ Բրյունըտիերը, ֆրանսիական գրական ավանդների հավատարիմ պահնորդը, չվարանեց նրանց «հեգնությունը մի տեսակ անհասկացողություն» համարել:

Մամուլի աշխատավորներից մեկը՝ ոմն Շամսոր (Champsaur) հեգնորեն և առաջին անգամ անվանեց նոր գրողներին «decadent»[2]: Շարժման տաք ժամանակ, 1885 թվին, երկու պարոն Գաբրիել Վիկեր՝ (Gabriel Vicaire) բանաստեղծ ու Անրի Բոկլեր՝ (Henri Beauclair)՝ մամուլական, միասին հրատարակեցին Ադորե Ֆլուպետ (Adoré Floupette) կեղծ անվան տակ «Թալկացումներ» վերնագրով մի գրություն: Ոտանավորների փոքրիկ ժողովածու էր, մի սրամիտ և խիստ կծու պարոդիա նոր բանաստեղծների վերա: «Թալկացումները» («Les Deliquescences») կազմված են այնպիսի տաղանդով, որ գործին անտեղյակները կարող են իրոք իսկական բնագիր գրության տեղ ընդունել: Մեծ հաջողություն ունեցավ և չնայելով կրկին հրատարակության՝ այժմ սպառված և հազվագյուտ գիրք է[3]:

Այստեղ ևս նոր դպրոցին նույն «դեկադենտ» անվանարկ կոչումն էր տված: Քննադատության վերաբերմունքը խլրտում ձգեց նորերի մեջ, որի հետևանքն եղավ պառակտում: Մի մասն անջատվեց և թշնամանող քննադատների, ինչպես կասեն, Ջիգրու, ընդունեց իր վերա «դեկադենտ» կոչը և սկսեց հրատարակել «Le décadent» անուն հանդեսը: Շուտով հետևեցին և ուրիշ նման թերթեր՝ «La Revue décadente» («Դեկադենտյան հանդես»), «La Décadence», մյուսները հիմնեցին այլ հանդեսներ: Տարաձայ-

[1] **R. de Gourmont,** Le chemin de Velours, p. 207.

[1] Նշանավորներն են՝ «La Revue contemporaine» (1885), «La Revue indépendente» (1885-1899), «Revue Wagnerienne» (1885), «Le Décadent» (1886), «La Vogue» (1886), «Le Scapin» (1886) և այլն:

[2] **Anatole Baju**, L'école décadent, p. 12.

[3] «Poetes d' Aujourd'hue (1880-1890)», p. 406.

նություններ ծագեցին, ընդհանուր հոսանքը բաժանվեց մանր ուխտերի, իսկ կենտրոնական ուժերը տաղանդավոր կարապետների համերաշխությամբ, շարունակեցին գործը: 1886 թ. բանաստեղծ Ժան Մորեասը առաջարկեց նետել դեկադենտ անհարիր անունը և կոչել նոր գրականությունը սիմբոլիզմ, որ իր իմաստով ավելի էր պատշաճում նոր գրական դավանանքներին[1]:

Այսպիսով, դեկադենտ անվան գրական ծագումը պատահական է՝ մի վիրավորական բառ՝ ուղղված նորերի հասցեին: Գրականության մեջ, հարկավ, չէր հաստատվի այդ կոչումը, եթե պատմականորեն իրավացի չլինեին այս կամ այն մտքով, նոր ուղղության մեջ անշուշտ կային դեկադանսի նշաններ: Դեկադանս, որ նշանակում է անկումն, հատուկ է պատմության որոշ շրջանների և նրանց իսկական անունն է, ինչպես ուսուցանում են պատմաբանները: Այդ այն շրջաններն են, երբ վարպետներին հաջորդում են հասարակ արհեստավորներ, կամ հմուտներին՝ համբակներ, ոգեշունչ ստեղծագործությանց անկենդան ընդօրինակություններ և այլն:

Թերևս ավելի ճիշտ լիներ՝ անկման գաղափարը պատմությունից վերացնել, որովհետև յուրաքանչյուր անկում միևնույն ժամանակ սկիզբ է մի նոր մեծության... Մարդու միտքը իր մշտնջենական որոնումների մեջ երբեմն հասնում է որոշակի բարձրության. տարիների ջանքն ու ճգնումները հանգում են այնպիսի ընդհանուր աշխարհահայեցողության, որ անսպայման դավանանքի ուժ է ստանում և իշխանորեն վարում է ո՛չ միայն տեսական, այլ երբեմն և՛ գործնական կյանքը: Հետո գալիս է ժամանակ, երբ այդ հայացքները սկսում են խախտվել, անկարող այլևս գոհացնել մարդու: Ծնունդ է առնում նոր շրջան, նոր թափառումներ, որոնք որքան էլ մութ և մոլոր, գուցե երբեմն և ծաղրալի, իրենց հետ ման են ածում կենսաբեր սկզբունք, ապագա խոշոր երևույթի սաղմ: Անորոշության այնպիսի մի շրջան, իր նախընթացի հետ համեմատած, թերևս անկումն է, բայց ա՛յդ չէ ապագայի հանդեպ, որի համար նա միայն երկունք է:

Անկումն սկսվում է այնտեղ, երբ մարդիկ ընդունելով հանդերձ որևէ սկզբունքի ճշմարտություն, գործով, շեղվում են նրանից: Նորագույն հոսանքների և տեսությունների հեղինակները ո՛չ թե տկարությունից, գրական շնորհքի պակասությունից խուսափեցին տիրող գրական ուղղություններից, այլ իրենց ներքին պահանջներին գոհացում տալու համար՝ Բոդլերի, Վերլենի, կամ Մալարմեի խոշոր տաղանդը, գեղասիրական ձիրքերը ամեն տարակուսից վեր են: Նրանք անկյալներ չեն, այլ հոժարակամ անջատականներ. ավելի արդար կլիներ անվանել secedent (նահանջող) և ոչ decadent:

[1] J. Moreas, Manifeste, տե՛ս «Figaro», 1886, sept.



Պատմության մեջ այսպիսի երևույթներ հազվագյուտ չեն. միշտ եղել են մարդիկ, որոնք բարոյապես անջատվելով հասարակությունից, այլ աստվածներ են պաշտել: *Բայց այս անգամ նման շարժումը՝ դեկադենտությունը*, այնքան աղմուկ ու շշուկ հանեց և հանում է, որովհետև ժխտումը տարածվում է շատ հեռուն՝ չխնայելով այնպիսի սկզբունքներ, որոնք բարոյական կյանքի սրբություն են համարվում և հասարակական կազմի հիմք:

* * *

Գրական *շարժումները* սերտ կապ ունին փիլիսոփայական մտքի վիճակի հետ: Նախընթաց դարում գերիշխող աշխարհահայեցողությունը սկզբում գերմանական բնազանցական փիլիսոփայությունն էր, հետո ֆրանսիական պոզիտիվիզմը: Առաջինը հառաջ բերեց գրականության մեջ ռոմանտիզմ, երկրորդը՝ նատուրալիզմ: Դրական աշխարհահայացքը բնական և գործնական գիտությունների վիթխարի զարգացումից թև առած՝ խարխլեց իդեալականությունը, կտրեց այն թելերը, որոնք կապում էին մարդուն «երկնքի» հետ, համոզված, որ ո՛չ միայն մարմնի, այլև հոգու իսկական բնակավայրը աշխարհն է, և որ առողջ բանականությունը գործ չունի վերհայաց բնազանցական հարցերի հետ: Սակայն կան խնդիրներ, որոնք թեև անլուծելի են, և գուցե հավիտյան գաղտնիք մնան բանականության համար, բայց որոնք գոհացում ու պատասխանում են պահանջում, որպեսզի կյանքը իմաստավորվի, խորհուրդ ու միտք ստանա: Պոզիտիվիզմը այս հարցերին տալիք պատասխան չունի և ընդհանրապես անկարելի է համարում որևէ պատասխան, որովհետև գիտությունը սահմանափակ և հարաբերական լինելով չէ կարող վճռել բացարձակ բնավորության խնդիրներ: Այսպես՝ ապավարկելով մետաֆիզիկան և ոչինչ համարելով նրա տված լուծումները, պոզիտիվիզմը բաց է անում մարդու առաջ մի վիհ, անգոհունակության խորխորատ: Բանականությունն ինքը ծնում, մեր առաջն է դնում մի շարք բարդ խնդիրներ. ինչ է կյանքը, նորա նպատակը, մահը, ընդհանրապես աշխարհն իր օրենքներով, և ինքն էլ հրաժարվում է որևէ վճիռ տալ, զգալով իր անկարողությունը: Ինքնակոծությունը, այն էլ բանականության, ամենասոսկալին և հուսահատականն է: Եթե կյանքը բանական, տրամաբանական հիմք չունի, ապա ուրեմն ինչպես արդարացնել այն բոլոր սկզբունքները, որոնք կյանքի բովանդակությունն են կազմում. բարոյականություն, առաքինություն, սեր, հավատ, պարտք, իդեալ ու մյուս նման զարդեր: Բանականության առաջ նրանք իրենց հակադրությամբ մի կարգի երևույթներ են... եթե կյանքը անխորհուրդ բան է: Այս դեպքում, երբ մետաֆիզիկան համոզկեր չէ և պոզիտիվիզմը՝ ապիկար, ապավենը մնում է տրամադրության, այն անգիտակցական ուժին, որ

ստիպում է մեզ գերադասել երբեմն այս, երբեմն այն նույնիսկ ներհակ երևույթներն ու դրությունները:

Ահա այս անտարբերության կամ տրամադրության ոգին է դեկադենտ մարդու և գրականության բնորոշ հատկանիշը և այն ընդհանուր հողը, որի վրա սկիզբն է առել շարժումը: Այս այն քունն է, որը երգում է բանաստեղծը. «Մեծ ու սև քուն, որ պատել է նրա կյանքը, մեռցրել հույսեր և իղձեր: Ուրիշ էլ ոչինչ չէ տեսնում, կորցրել է չարի ու բարու գիտակցությունը, և իբրև մի օրորան ճոճվում է ստորերկրյա խավարում, անհայտ ձեռքով»[1]...

Չարի և բարվո գիտակցությունը կորցնելուց հետո բնական է, որ կարելի է երգել և ներբողել ոչ միայն առաքինությունն ու սերը, այլև արատն ու զեխությունը, բռնությունն ու գարշահոտություն, գեղեցկություն տեսնել և՛ ծաղիկների, և՛ նեխության մեջ, հրապուրվել և՛ եդեմի, և՛ դժոխքի հարստությամբ: Ախտավոր կյանքի բոլոր կողմերը, ապականության նողկանքը, բացասական որակության հիվանդոտ, սպանիչ հրապույրն ու սարսափը, կրքի տառապանքը, հուսահատության հեկեկանքը, աղոթքն ու նզովքը՝ ահա՛ Բոդլերի քնարի թելերը: Դեմոնական, դիվական տարրեր են «Չարի ծաղիկները», որոնց բույրից արբեցած՝ փառաբանում է դևին: Դևը «հրեշտակ է և այն ամենից գիտունն ու գեղեցիկը». նա «հմուտ քիմիկոս է, որ հալում ու շոգիացնում է մեր կամքի փարթամ մետաղը ու երկա՜ր օրորով քնեցնում մեր հոգին չարի բարձի վրա, ու քարշում դեպի դժոխքը»: «Փառք քեզ, սատանա,- աղոթում է բանաստեղծը,- որ երկնքի բարձունքից հաղթված գահավիժեցիր դժոխքի անդունդը, ուր երազում ես լռության մեջ, հուսամ, որ մի օր հոգիս կհանգչի քեզ մոտ Գիտության ծառի տակ, այն ժամանակ, երբ նրա ճյուղերը կփռվին և հովանի կլինեն ճակատիդ, որպես մի նոր Տաճարի»[2]:

---

[1] Un grand sommeil noir
Tombe sur ma vie:
Dormez, tout espoir,
Dormez, tout envie!

Je ne vois plus rien,
Je perds la mémoire
Du mal et du bien...
O la triste histoire!

Je suis un berceau
Q'une main balance
Au creux d'un caveau:
Silence, *silence!*

***P. Varlaine, «Sagesse» (2)***

[2] Gloire et louange à toi, Satan dans les hauteurs
Du ciel, où tu regnas, et dans les profondeurs
De L' Enfer, où vaincu, tu rêves en silence!
Fais que mon âme un jour, sous l'Arbre de Science
Près de toi se repose, à l'heure où sur ton front
Comme un Temple nouveau ses rameaux s'épandront!

***«Les fleurs du mal» (3)***



Այս «աղոթքը» լքված հոգու հուսահատ աղաղակ է, ուժգին բողոք ընդդեմ մարդկային ազատությունը կաշկանդող ու խեղդող «աստվածային» դարավոր կապերի՝ ներքին թե արտաքին աշխարհում: «Դողդոջուն մարմնիս մեջ ո՛չ մի նյարդ չկա,- հնչում է երգչի անհույս ձայնը, որ չաղաղակեր,- օ՜, Բեղզեբուղ, քեզ պաշտում եմ»: Կա տրտունջ, որ մնում է բանականության, մտածողության շրջանում, այսինքն՝ վարակում է միայն մարդու միտքը: Եվ կա՛ տրտունջ, որ սաստկանալով մտքից անցնում է զգացողության աշխարհը, ողողում է ողջ էությունը. այս դեպքում ապահով չէ վտանգից իրականության համակերպ մտածելու կարողությունը՝ տրամաբանությունը: Ժամանակակից դեկադենտությունը անզոհունակության այս տեսակիցն է, որով և բացատրվում են այն աննորմալ երևույթները դեկադենտների թե՛ մասնավոր և թե՛ հասարակական կյանքից, որոնց հիմամբ մարդիկ աշխատում են ամբողջ շարժման ախտաբանական բնավորություն տալ:

Ներքին աշխարհի անհողդությունը կամ դատարկությունը և ուղի է, որ տանում է շիտակ դեպի կորուստ և միևնույն ժամանակ մի զորեղ խթան՝ հոգու համար նոր բովանդակություն գտնելու: Գրականության մեջ սիմբոլիզմը դեկադանսից ելնելու փորձ է: Այս երկու տարբեր գաղափարները հաճախ շփոթում են միմյանց հետ և թյուրիմացությամբ գործ են ածում մեկը մյուսի տեղ: Դեկադենտությունը բացարձակ ժխտական շարժում է, առանց որևէ որոշ դիմագծի և ո՛չ միայն գրական, այլ ընդհանուր հասարակական-սոցիալական երևույթ է: Նիցշեն, իբրև բարոյագետ, կամ Հարտման, իբրև փիլիսոփա, նույն տիպարի մարդիկ են, որպիսի Բոդլեր և Վերլենը գրականներ: Երբ դեկադենտությունն անվանենք մի հոսանքություն, որ միայն ավերումների է ընդունակ և ձեռնամուխ, սիմբոլիզմը ավերումների վերա նոր շենք կանգնելու ձգտումն է: Երբ առաջինը մի աղջամուղջ է, կամ ինչպես հավատացնում են անկման վերջալույսի մթություն, երկրորդը՝ անտարակույս արշալուսային շառագում է:

* * *

Պոզիտիվիզմի վարկը նսեմանալուց հետո, բնականորեն պիտի հառներ և ուժ ստանար նրա ռոխ աշխարհահայեցողությունը՝ իդեալիզմը:

Այս փիլիսոփայությունն արտաքին աշխարհը համարում է մի անձև նյութ, որ ձև ու կյանք է ստանում մեր ուղեղում: Տեսանելի անհուն աշխարհը ոչ այլ ինչ է, եթե ոչ մեր մտապատկերը: Այնպես, ինչպես մեզ երևում է, և այն չափով, որ չափով մեզ իմանալի և մատչելի է մեր իմացական կարողության, մեր հոգու սոսկ ստեղծագործությունն է: Առարկան որոշ հատկության գումար է. հատկությունները՝ որպես քանակ՝ մեծություն կամ փոքրություն,

որակ՝ կարծրություն, փափկություն, ջերմություն, գույն, ձայն և այլն, ո՛չ թե անկախ գոյացություններ են կամ իրերի սեփականություն, ինչպես թվում են, այլ մեր գիտակցության ստորոգելիք են և մեր մտքից դուրս՝ գոյություն չունին բնության մեջ: Եթե գոյություն էլ ունեն, համենայն դեպս մենք գաղափար չունենք այդ ինքնափակ գոյության մասին, կամ, խոսած փիլիսոփայական լեզվով՝ «իրն ինքնին», «իրն ինքյան» մեզ համար անիմանալի է: Այսպես՝ գիտաբանական տեսակետից ամեն մի գոյացություն երկու կողմ ունի՝ իմանալի և անիմանալի և ըստ այսմ տիեզերքի մեջ որոշելու ֆենոմեններ, կամ երևույթների աշխարհ և նոումեն, կամ իրնինքնություն:

Այս փիլիսոփայական հայեցողությունն է ահա՛, որ խմորել է նորագույն սիմբոլիստական գեղարանական տեսությունները: Քանի որ աշխարհը մեզ հայտնի է իր ֆենոմեններով, որ լոկ մեր գիտակցության արտաքին արտահայտությունն է, ուրեմն նկարագրում ենք այդ աշխարհը, մենք իսկապես մեզ ենք նկարում: Մեր մեջ են, ասել է թե այն էակները, որոնց ձեռք ենք կարկառում, այն իրերը, որոնք ցրված են մեր շուրջը: Մեր մեջ է ծաղկի անուշահոտությունը, առվի կարկաչյունը, վաղորդյան հովի թարմությունը: Այն բոլոր բավիղներն ու անորոշ ուղիները, ուր թափառում է մեր բախտը, տանում է ի վերջո դեպի մեր հոգին... Այսպիսով աշխարհը, իրոք, մի խաբուսիկ երազ է, մի սքանչելի իլյուզիա, մի հայելի, որ միայն մեր պատկերն է ցույց տալիս, մեր լացն ու ժպիտը, վիշտն ու բերկրությունը[1]:

Մեր ժամանակները՝ գաղափարներն ու հայացքները այնքա՜ն շփոթել, խառնակվել են, որ շիտակն ու սուտը, բարին ու չարը միմյանցից որոշելու չափն ու ուղեցույցները՝ իրենք դեռևս քննության կարոտ են: Բնականաբար ամեն մի փորձ, որ հավակնում է նորության՝ մանավանդ արվեստի բարդ և նուրբ աշխարհում, հիմնավոր գործ լինելու համար պետք է շատ հեռվից սկսե և ելակետ ունենա իմացաբանական տեսություններ: Այս դեպքում միստիկականություն որոշ չափով անխուսափելի է, որ իր ամբողջ վսեմությամբ, դժբախտաբար իրականության հարվածների հանդեպ լոկ անզոր քող լինելու է դատապարտված: Սիմբոլիստական տեսությունը համակված է ժամանակակից փիլիսոփայական աշխարհահայեցողությամբ՝ որի հիմքը Շոպենհաուերի իմացաբանությունն է: Այս տեսության բանաստեղծական լուսաբանությունն է Անդրե Ժիդի փոքրիկ պատկերը «Նարկիսի պատմությունը»[2], որ կլասիկ համանուն միֆի մշակումն է, և սիմբոլիզմի թեորիան:

---

[1] ct. René Doumic, Les jeuns, p. 189.

[2] André Gide, Le traité du Narcisse (théorie du symbole), Paris, 1899.



* * *

Նարկիսը հույն պատանի էր, չնաշխարհիկ գեղեցկությամբ: Ողջախոհ և զգաստ՝ նա խորշում էր գեղանի հավերժահարսերից, որովհետև ինքն իր վերա էր սիրահարված: Ամբողջ ժամանակ նստած ջրի ափին, դիտում էր նրա մեջ իր չքնաղ պատկերը և հիանում:

Նարկիսը մենակ էր բնության մեջ՝ չկար ո՛չ թուփ, ո՛չ ծառ, ո՛չ խրոխտ լեռներ, ո՛չ անուշ ծաղիկներ, մենավոր պատանին սուզված էր անուրջների ծովում: Ժամերը սահում էին միօրինակ. տաղտուկը պաշարում է նրան, ուզում է իմանալ վերջապես՝ «ի՞նչ ձև ունի իր հոգին», և զգում է, որ դողդոջուն ելևէջների նայած՝ նա պիտի լինի անչափ պաշտելի: Պատանին անտարակույս է, որ իր հոգու պատկերը կա մի տեղ, վեր է կենում ու գնում որոնելու ըղձալի բոլորշիներ (contours) իր մեծ հոգին ծրարելու համար: Նա կանգ է առնում Ժամանակի գետի հովտում՝ գետ օրհասական և երևութիկ, ուր սրընթաց գլորվում էին տարիները: Ափերն անպաճույճ էին, ջուրը գորշ և շրջակայից նրանով էր զանազանվում, որ հոսում էր: Հեռվից Նարկիսը գետը ճանապարհ կարծեց և որովհետև ձանձրանում էր մենակ այս համակ գորշության մեջ, մոտեցավ անցորդներին մտիկ տալու: Հենց որ նայեց գետին, ջուրն իսկույն երազնավորվեց վտիտ, նուրբ պատկերներով: Ափերի կանաչ ծաղիկները, հաստաբուն ծառերը, կապուտակ երկինքը, մի ամբողջ շար պատկերներ կարծես նրան էին սպասում, որ կյանք ստանան. և իսկույն գունավորվեցին նրա հայացքի տակ: Բացվեցան նմանապես բլուրները, սարավանդների անտառները, և ճոճվում էին հոսանուտ ջրի մեջ:

Նարկիս հրաշացած նայում էր, բայց չէր կարողանում պարզել, արդյո՞ք իր հոգին էր, որ վանում էր ալիքները, թե ընդհակառակը. երկուսն էլ հավասարապես երերում էին:

Այնտեղ, ուր հառած էին Նարկիսի աչերը, Ներկան էր, քիչ հեռու, որտեղ թաքստի ուժեր կյանքի էին կոչում՝ Ապագան: Նարկիսը դիտում էր. նրանք մոտենում էին, հետո կորչում, կրկին մոտենում, կրկին անհետանում: Ի՞նչ էր կրկնության պատճառը, մտածում էր նա, անշուշտ անկատարելությունը, որ ստիպում է նրանց ձգտել ու միշտ ձգտել աննկուն եռանդով մի քանի... իրենց նախկին՝ կորցրած ձևին„ եդեմական և բյուրեղավոր կաղապարին:

Նարկիսը երազում էր դրախտի մասին:

Դրախտը մեծ չէր, ամեն բան այնտեղ կատարյալ էր և ծաղկում էր միայն մի անգամ, ամեն ինչ իր որոշյալ ձևն ու կերպն ուներ, որ երբեք չէր փոխվում և չէր շարժվում, որովհետև իրենց կատարելությամբ՝ առավել բարվոքելու իղձ չունեին: Եդեմը իդեաների կուսական պարտեզ էր, ուր ամեն իր այն էր՝

ինչ որ երևում էր, երգանույշ սյուքը ոլորվում էր սահմանված գալարներով, երկինքը ծավալում էր լուրթը մարգագետինների վերա հավասարորեն, հարաբերությունները ներդաշնակ էին և պարտեզի վերա հածում էր միօրինակ համերգություն:

Դրախտի կենտրոնում կանգնած էր Իգդրասիլ՝ կյանքի ծառը, կենսաբուխ արմատները թաղված էին գետնի տակ, իսկ շրջանակի դալարի վերա թանձր ստվեր էր շաղում սաղարթներից, ուր լողում էր թևատարած մենավոր գիշերը: Խավարի մեջ ծառի բնին հենված էր Խորհրդավորության Միստերի գիրքը, որ պարունակում էր իր մեջ իմանալի ճշմարտություն: Սուլիչ քամին գուրգուրում էր ծառի տերևները, բաց էր անում գրքի թերթերը և աշխատում էր մեհենագրերը մեկնել:

Ադամը դեռևս անկողակից, դրախտի միակ բնակիչն էր, որ մեծ ծառի ստվերում բազմած դիտում էր: Այն սքանչելի տեսարանները նրա համար էին, նա էր կենտրոն այն բոլոր դյութական պատկերների: Բայց և այնպես դիտողությունը նրան տաղտկալի է, քանի որ ինքն այնտեղ գործուն դեր չունի: Իրավ է, ինքը հզոր է, որովհետև ստեղծող ուժ է և ողջ աշխարհը կախված է նրանից, բայց ի՞նչ օգուտ, երբ փորձով կամ գործնականորեն համոզված չէ այդ զորության: Երկար նայելուց՝ արդեն կորցրել է իրերը միմյանցից զատելու ընդունակությունը: Կատարյալ ստրկություն է, եթե մարդը չի կարող խիզախել ամենաթեթև շարժման, առանց ընդհանուր հարմոնիան խանգարելու: Վերջապես այդ ներդաշնակությունն իսկ գրգռում է նրան, ուզում է ազատ լինել, ինքնաբուխ շարժումներ գործել, եթե դրանով մինչև անգամ տարնվազ առաջ բերեր: Մեկնում է ձեռքը համարձակ, բռնում Իգդրասիլի ճյուղը և կոտրում...

Վիրավոր ծառը սկսում է թառամել, դեղնում է և ընկնում ճարճատյունով: Տերևները՝ ուր զեփյուռն էր խաղում, ահռելի փոթորիկների գերի՝ հալածվում են հեռու, հեռու, դեպի գիշերային անծանոթ երկինք ու վտանգալից վայրեր, որտեղ վտարվում են նույնպես մեծ Սրբազան գրքի ցիրուցան թերթերը:

Չքանում է եդեմն իր բոլոր հրապույրներով:

Մարդը սարսափահար սփոփանք է գտնում սիրո մեջ... նրա սերունդը աճում և ցրվում է այս «մթնշաղի և աղոթքների երկրում» և անձուկով երազում է կորսված դրախտը, որտեղ ամենուրեք:

Նրա մխիթարության համար՝ ծնվում են մարգարեներ և բանաստեղծներ, որոնք հիշելով դրախտը, սրբությամբ ժողովում են Միստերի գրքի պատռտած թերթերը, ուր գտնվում են ըմբռնելի ճշմարտություններ: Ո՞վ է բանաստեղծը. նա՛, որի հոգևոր աչքերը խորասույզ հայեցողությամբ ընդունակ են տեսնել եդեմը: Եդեմն ամեն տեղ է և մեզ հետ, թաքնված իրերի արտաքին պատկերի, երևութիկ կերպարանքի ներքո: Ինչպես ամեն աղ



կրում է իր բյուրեղի նախատիպը, այնպես էլ յուրաքանչյուր իր ունի յուր գաղտնի, աննյութ կորիզն, որը նրա էության ներքին հարմոնիան է: Արտաքին տեսքը իր թերությամբ չի արտահայտում ներքին ճշմարտությունը՝ նա միայն քողովանք է իր մեջ ղողուն, ծածկված իսկությունների:

Սովորական աչքը կանգ է առնում իրերի կեղևի վրա, իսկ բանաստեղծականը ներս է թափանցում, իջնում է իրերի խորունկը, ըմբռնում է իդեան, էությունը և հետո մեկուսացնելով նրան արտաքին անցավոր ձևից, աշխատում է տալ հավիտենական կերպարանք, որ և իր եդեմական և բյուրեղյա ձևն է:

Այսպիսով, արվեստի երկը մի բյուրեղ է, մի մասնավոր դրախտ, ուր իդեան վերածաղկում է իր վերին անարատությամբ, ուր՝ ինչպես կորուսյալ եդեմում, թագավորում է բնական և անհրաժեշտ կարգ, որը բոլոր ձևերի մեջ փոխադարձ և ներդաշնակ կախում է հաստատում: Խոսքի պերճությունը այնտեղ չի վարագուրում միտքը, դաշնակավոր, և վեհ խոսքերն ու նախադասությունները միմիայն հստակ և թափանցիկ նշաններ են, որոնց մեջ նշմարվում են անաղարտ իդեաներ:

Առարկաների արտաքին ձևը, նրանց երևույն կերպարանքը՝ լոկ սիմբոլներ են, այսինքն՝ նշանակներ, որոնց ետևը թաքնված, հաստատված է ճշմարիտ էությունը: «Tout phénoméne est le symbole d'une vérite»՝ «Յուրաքանչյուր երևույթ մի ճշմարտության նշանակ է» (**թարգմանությունը՝ հեղինակի-** Պ. Հ.): Նրա կոչումն է թարգման լինել ճշմարտության և մեղանչում է, երբ իրեն նախամեծար համարելով, փոխարինում է ճշմարտության: Այն, որ լոկ հայտարար, մունետիկ է իդեայի, ձգտում է գերադաս լինել, քան իդեան, որն երևակում է. «**Tout représentant de l'idée tend á se préférer á l'idée qu'il manifeste. Se préférer - voila la faute**» («Գաղափարի ցանկացած ներկայացուցիչ հակում ունի իր արտահայտած գաղափարից ինքն իրեն գերադասելու: Ինքն իրեն գերադասելը՝ ահա սխալը»):

Մարդիկ շփոթմամբ թե մոլորությամբ նշանակները էության տեղ են ընդունում և կյանքի նպատակ շինում, որտեղից ծագում է հուսախաբություն և հիասթափություն: Նրանք նման են Նարկիսին, որը պիշ-պիշ նայելով ջրի մեջ հրաշանում է իր պատկերից. մենավոր և մանկամիտ պատանին սիրաբորբոք սիրտը զովացնելու համար, խոնարհում է գետակի վերա՝ փաղաքշանքով, համբույրը շրթունքին: Բայց խոնարհած ատենը՝ հանկարծ չքանում է հրապույրը. շրթունքների դեմ նա տեսնում է իր շրթունքները, աչքերի դեմ՝ իր աչքերը, հասկանում է, որ ինքն է, իր պատկերը՝ իր հանդեպ կանգնած, ինքը մենակ է, ինքը սիրահարված է ի՛ր պատկերի վերա: Վեր է կենում, ետ է կանգնում ջրից. ջրի մակարդակը նորից երանգավորվում է և

տեսիլը նորից ներկայանում: Նարկիսը զգում է, համբույրն անկարելի է, պետք չէ ցանկալ պատկերի. շարժվել՝ նրան տիրանալու համար, նշանակում է անէացնել նրան: Նարկիսը մենակ է՝ ի՞նչ անել:

- Մտահայել, խորին էությանը վերահասու լինելու համար[1]:

* * *

Անդրէ Ժիդի այս տեսությունը անշուշտ փոխ է առնուած հռչակավոր բանաստեղծ-երաժիշտ Ռ. Վագների, որն է իսկապես սիմբոլիստական տեսության և արվեստի հրաշակերտ վարպետը: Բեթհովենին նվիրած գրության մեջ նա արծարծում է սույն միտքը: Աստվածային մոգը խուլ է, եղկելի, արհամարհված և լի վշտով: Երկար խորհելով նա թափանցում է իրերը և նրանց արտաքին տեսքի տակ տեսնում է էությունը: Այս տեսիլը անհուն բերկրության աղբյուր է դառնում նրա համար՝ «իրերի էությունը մերկանում է նրան, հայտ գալով իր գեղեցկության լուսապայծառ փայլով»:

Վագների հայացքով էությունը մարդու «ես»-ն է, նրա անահատական կամքն ու հոգին, որ ստեղծում է երևութական աշխարհը: Առանց նրան իրականություն չկա, ինքն է, որ իր հավերժական ստեղծագործ զորությամբ՝ ծնում է իրեր, կերպավորելով իր էությունը դրսի ոչնչության մեջ՝ անվերջ և անհամար պատկերներով:

Առօրյա կյանքի շշուկից քաշված, երբ մարդ խորհում է սուզված մտքի անհունության մեջ, լուծում է մի մեծ առեղծված՝ քանի որ ինքն է արտաքին աշխարհի պատճառը, ուրեմն ինքը կարող է և հրաժարիլ այդ աշխարհից և իր իղձերից կերտել մի նոր՝ արվեստի և գեղեցկության անդորր աշխարհ, հրաշազարդուած ազատ ու անհողեղեն անուրջներից: Աշխարհային կյանքը՝ նույնիսկ իր լավագույն արտահայտությամբ, մեր պահանջներին գոհացում տալու տկար է: Հիասթափությունը լոկ զգացված հիացումն է՝ և ընդհակառակը՝ հափշտակությունը դեռևս չճաշակված հափրանք: Ո՞րն է այն կենսավետ զորությունը, որ հուսախաբության սև օրերին պահում է մարդուս անկումից՝ սուրբ անուրջներն են, որ զերծ երկրային ոտնձգությունից՝ իբրև անկապտելի ուժ կազդուրում է կյանքի ու ապագայի հավատով: Նրանք թարմացնում են մեր բարոյական կյանքն այնպես, ինչպես քունը՝ նյութական:

Մեր երազները հոգու տենչանք են, որ ձգտում են մարմնանալ, նյութապես կերպավորվել կյանքում և, տեղի ու ժամանակի պայմանների համաձայն, նրանք արտահայտվում են այս կամ այն եղանակով:

[1] «Il ne faut pas désirer une image; un deste pour la posséder la déchire. Il est seul. Que faire? Contempler». ibid., p. 89 (4).



Պայմանները որոշ անհրաժեշտ օրենքների են ենթարկված, և շատ անգամ մարդս անզոր է խորշել նրանց անտեղությունից: Բայց կարելի է երևակայության թևերով հաստատել առընթեր տեսանելի աշխարհին մի այլ անտես, բայց զգալի աշխարհ՝ երազական՝ ուր գաղափարը, իղձերը մարմին կստանան անկախ աշխարհի բռնաբարող պայմաններից, և միմիայն այնպես՝ որպես կթելադրե իրենց էությունն ու մարդու ցանկությունը:

Մյուս կողմից, թեև տեսանելի աշխարհն էլ մեր ստեղծագործությունն է, նա էլ մեր հոգու ինչքն է, սակայն սովորությունը սպանում է այդ գիտակցությունը. և մեր հաղթական Եսը խոնարհում է իր ծնած երևույթների առաջ, մոռանալով նոցա իսկական ծագումը: Այս հանգամանքը զրկում է մարդուն մի մեծ բերկրությունից, որ է ստեղծելու գիտակցության վսեմ և խոր վայելքը: Արդ՝ քանի որ մեր ստեղծած աշխարհը կորցրել է մեզ համար իր նախնական բնավորությունը, պետք է այս անհավատարիմ և խաբուսիկ աշխարհից դուրս և նրանից վերև մի այլ աշխարհ հաստատել՝ Արվեստի աշխարհ՝ Au-dessus de l'univers présent, batir un nouvel univers («Ներկա տիեզերքի վերևում մի նոր տիեզերք ստեղծել»)[1]:

Այս հայեցողությունն առաջին անգամից տարօրինակ է թվում, բայց մի՞թե նույն կերպ չէ վարվում իրականության հետ և գիտությունը: Գիտության մեջ աշխարհն այն պատկերն ու կազմությունը չունի, ինչ որ տալիս է իրականությունը, մեր անմիջական զգացողությունը: Գիտական մտքի հիմքը պատճառականության օրենքն է, մի սկզբունք, որ միտքը բնությունից չէ վերցնում, այլ իր սեփական ձևն է. այդ օրենքով՝ գիտությունը չի ընդունում երևույթների հաջորդականությունը, կամ փոխադարձ կարգն ու հարաբերությունները այնպես, ինչպես բնության մեջ հանդիսանում են մեր զգացողության. միտքը վեր է լուծում երևույթները, նոր դասավորություն է մուծանում նրանց մեջ, որով վերստեղծում է մի նոր աշխարհ: Այս իմաստով՝ գիտությունը արվեստին հար և նման գործ է կատարում: Զանազանությունն այն է, որ գիտությունը զննում է երևույթներն իրենց հաջորդականությամբ, հետաքրքրվում և զբաղվում է նրանց՝ միմյանց հետևող վայրկյանների կապով, այնինչ արվեստը գործ ունի գլխավորապես վայրկյանների հետ, և վայրկյաններ է ուզում արտահայտել ու հավերժացնել[2]:

Ինչպես և կատարե արվեստն իր խնդիրը, համենայն դեպս նրա ստեղծած աշխարհը պետք է ավելի բարձր կյանք ունենա, քան իրականը: Երբ նա պիտի լինի լոկ կույր ընդօրինակություն տեսանելի աշխարհի, այն

[1] Teodor de Wyzewe, Nos Maîtres, p. 5.

[2] cf. «Le savant recherche l'archétyre des choses et les lois de leur succession; il recompose un monde enfin, idealement simple, où tout s'ordanne normalement». Le traité du Narcisse, p. 86 (5).

ժամանակ աննպատակ է նրա ջանքը, որովհետև նախ՝ հենց այդ աշխարհից խուսափելու համար է, որ դիմում ենք արվեստին, երկրորդ՝ իրականությունը մեր առջև փռված է իր ամբողջ շքով, տեսնում ենք, շոշափում, զգում, ի՞նչ կարիք և իմաստ կա նրան վերարտադրել արվեստի միջոցով: «Քանի որ ծաղիկը գոյություն ունի,- ասում է Շարլ Մորիսը, - ի՞նչ օգուտ ջանալ խոսքերի միջոցով վերստեղծել նրա նման ուրիշը. այդ նշանակում է, ճանապարհի մի ափից խիճ հավաքել և մյուս ափն ածել, ունայն վաստակ»[1]: Արվեստի կոչումն ավելի վսեմ է: Նրա հիմն է ստեղծագործությունը: Ստեղծել՝ նշանակում է բերել այնպիսի բան, որ բնությունն ինքնին չի տալիս: Բնության մեջ սքողված են իրերի և երևույթների ներքին հարաբերությունները, և ոչ իրենք առարկաները: Արվեստն այն աչքն է, որով տեսնում ենք այդ աննյութ կապերը: «Գրականությունը մինչև այժմ տղայամտությամբ կարծում էր,- երգիծաբանում է Ս. Մալարմե,- որ որոշ թվով թանկագին քարեր ընտրել և նրանց անունը գրի առնել, ասել է թե թանկագին քար շինել»: «Ո՛չ թե իրերը պետք է ստեղծենք,- շարունակում է նույն հեղինակը, - այլ լոկ իրերի հարաբերությունը ըմբռնենք. այս հարաբերության թելերն են, որ հյուսում են բանաստեղծություն ու երաժշտությունը»[2]:

Դպրոցի փիլիսոփայական հայացքների համաձայն՝ հարաբերությունները ուրիշ բան չեն, եթե ոչ մեր հոգու դրությունները: Հետևաբար՝ ըմբռնել իրերի հարաբերությունները, նշանակում է դրոշմել հոգեկան կյանքի այլևայլ վիճակներ, նրա վայրկյանները: Հոգին հարուստ է ներքին կյանքով, եթե արվեստի կոչումն է ներկայացնել նրա դրությունները, ապա ուրեմն այնչափ ավելի բարձր են և կատարյալ պիտի նկատվի, որչափ ավելի բարդ հոգեկան ելևէջների թարգման լինի:

Մարդու ներքին աշխարհն իր գործունեության մեջ երեք զորեղ մոմենտ ունի ՝ զգալ, խորհել և հուզվել: Զգացողությամբ ընդունում ենք արտաքին աշխարհից տպավորություններ. մտածական կարողությունը տնտղում է այդ հոգեկան մթերքը, դասդասում, նոր խմբակցությունների է վերածում և մշակում է ընդհանուր գաղափարներ: Զգացումների և գաղափարների նուրբ, մեծ մասամբ անհասկանալի խառնուրդը առաջ է բերում այն հոգեկան վիճակը, որ կոչվում է հուզում: Արվեստը պետք է աշխատե հանել հոգուց այդ երեք հուժկու հորձանքները և հավերժացնել գույների, գծերի, բառերի և հնչյունների միջոցով: Հույզերը հոգու ամենից փափուկ ու նուրբ տարրերն են, թեև զորավոր են և ցնցող, բայց կարծես անորոշ և դժվար արտահայտելի: Բանաստեղծներն իրավամբ սրբազան դող են անվանում հուզումը, որ հոգեկան կյանքի վսեմ և երանավետ րոպեն է: Երաժշտությունը առավելապես այդ հոգեկան դրությունն է արտահայտում, ուստի նա ամենանուրբ արվեստն է:

Նոր գեղարվեստական տեսությամբ՝ բանաստեղծությունը մինչև այժմ աշխատել է նմանել նկարչության և նորա հետևությամբ՝ նկարել բառերի օգնությամբ բնությունը, վերստեղծել պատկերներ. հիմիկ նկարչության հետ միասին պետք է ձգտե մոտենալ երաժշտության, և նպատակ ունենալ նույնպես հույզեր առաջ բերել: Այսուհետև բանաստեղծությունը բառերի երաժշտությունն է, ինչպես և նկարչությունը՝ գույների և գծերի:

Բանաստեղծության էվոլյուցիայի՝ հետզհետեական զարգացման մեջ մի հետաքրքրական երևույթ է նկատվում: Տասնյոթերորդ դարում գրականությունը այսպես ասած, ճարտարապետական բնավորություն ուներ: Հեղինակներն առաջնորդվում էին այնպիսի սկզբունքներով, որ կարծես շենք են կառուցանում, այսպես ուշադիր էին նյութի հմուտ բաշխման, մասերի համաչափության ու ներդաշնակության, ամբողջ երկի հիմնագծին: Քննադատներն էլ որոնում և պահանջում էին, որ աշխատությունը կամ նախադասությունը լավ **հորինված** լինի, հաջող **ծրագիր** ունենա, հարկավոր էին համարում **նախադասը** և այլն:

Հետևյալ տասնութերորդ դարում՝ գրական աշխատությունը չէր նկատվում այլևս իբրև շենք, այլ՝ նկար: Գովում էին, որովհետև երկը **գունեղ** (coloris) է, և վատաբանում էին պատկերի **չորությունը**, ցամաքությունը և հրճվում նկարի ոճով, գեղանկար դարձվածքով և այլն[1]:

Իսկ մեր ժամանակներում այն միտքն է արծարծվում, որ գրականությունը պիտի հարե երաժշտության: Անգլիացի Կարլայլը բանաստեղծությունն անվանում է երաժշտական միտք, կամ մտքի երաժշտություն: Ամեն մի բառ, խոսք, որովհետև հնչյուն է, ուստի և որոշ մտքով երաժշտություն: Ռոմանտիկ և պառնասական գրականները արտաքին չափն ու ձևը, ոճի հղկումը, բառերի ընտրությունը հասցրել էին այնպիսի կատարելության, որ հիրավի նրանց երկերը երաժշտության էին նմանում: Սակայն սիմբոլիստների հասկացողությամբ, բանաստեղծությունը ո՛չ թե արտաքին հատկություններով պետք է երաժշտության հետ մրցե, այլ ներքին՝ երաժշտական զգացողություն՝ հույզեր հարուցանելով:

Հույզը մի զգացություն է, որ չի ենթարկվում վերլուծության և ո՛չ իսկ վերծանության, մի բարդություն է, որ չի կարելի տարկազմել, քակել ու նկարագրել: Սպինոզան կարծում էր, որ մի բան որոշել նշանակում է ժխտել[2]: Հույզերի վերաբերմամբ ճիշտ է, որ նկարագրությունը հոմանիշ է

[1] J. **Huret**, Enquêtes, p. 85.

[2] Ibid., pp. 63, 64.

[1] F. **Brunetière**, «Revue des deux Mondes», 1888, novembre.

[2] «Omnis determinatio est negatio».

ոչնչացման: «Անվանել հույզը,- ասում է Ս. Մալարմե,- նշանակում է չիք դարձնել քաղցրությունը, անուշության գոնե երեք քառորդը հապավել»: Երաժշտությունը հենց նրանով է բարձր մյուս արվեստներից, որ իրն իր անունով չէ կոչում և միմիայն հնչյունների անմեկին վետերով, անորոշ բարդվածներով է առաջ բերում սրբազան երեր, առանց ուղղակի շեշտելու նրա էությունը: Նվագը հիշեցնում է ինչ-ինչ զգացված հույզեր ու մտքեր, արթնացնում է նրանց՝ մեր սրտում թաղած հետքերը, որ ամեն մարդու մեջ կենդանանում և յուրովի պատկեր է ստանում, համաձայն անհատի սրտի փորձառության և զգացական ունակության: Ճիշտ այսպես է վարելու և բանաստեղծությունը: Նրա հիմը պիտի լինի suggestion (առաջարկ)՝ թելադրություն, շշունջ: Այս հանգամանքը շեշտում է մանավանդ Ս. Մալարմե. «Սիմբոլիստ, դեկադենտ, կամ միստիկ՝ ինչպես կուզեք անվանեցեք, դպրոցները իդեալական ելակետից ժխտում են նյութը. ուստի և նրան պարզ անվանել՝ համարում են կոպտություն. հարկավոր է միայն թելադրել, ներշնչել»[1]: Բանաստեղծը աշխատելու է ոչ այնքան ասել, որքան թելադրել և ընթերցողը՝ ավելի գուշակել, քան հասկանալ[2]:

Նկարագրական դպրոցի բանաստեղծությունը ներկայանում է ընթերցողին իբրև ավարտած, պատրաստ նկար, և նա ստիպված է ընդունել այնպես, ինչպես տրվում է: Նոր դպրոցի բանաստեղծը առաջարկում է ո՛չ այնքան իրեն ասելիքի նկարը, որքան թեթև տրուճանակը (esquisse) և ընթերցողին թողնում է որոշ ազատություն ըմբռնել իր կարողության և հակումների համաձայն՝ այսպես թե այնպես:

Այլապես ասած՝ նկարագրությունն ու պարզախոսությունը տեղի են տալիս ակնարկների:

Մանրակրկիտ պատկերներն իրենց որոշակիությամբ բռնադատում են ընթերցողի միտքը, կաշկանդում երևակայությունը: Միտքը խոնարհում է նրանց որպես մի անխուսափ անհրաժեշտության, ստիպողականության առաջ: Մինչդեռ անզայտ, անոսր մթությամբ սքողված արտահայտությունները չեն ծանրանում մեզ վերա: Ընթերցողն ազատ է, երգիչը նրան չի հրամայում, այլ միայն շշնջում է ականջին, թելադրում որոշ հույզեր, նա էլ աշխատում է ակնարկներից գուշակել թելադրության էությունը, երգի իմաստը:

[1]«Symboliste, Decadente ou Mystique les écoles se déclarant ou étiquetées en hâte par notre presse d'information, adoptent le point d'un idéalisme, qui refuse lesmatériaux naturels et, comme brutale, une pensée directe les ordonant, pour ne garder de rien que la suggestion».

[2] **H. de Regnier**, Figures et caractères, p. 332.



Այս պարագան ծնում է մի խորհրդավորություն, երևակայությունն ու սիրտը պարուրում է մի տեսակ լուսանցիկ մթությամբ՝ առանց նրանց ճկունությունը ճնշելու: Երգչի շշնջուն խոսքերը հոսանուտ և մեղմասյուք հորձերով օրորվում են սրտի անհունության մեջ, ինչպես նրբահնչյուն նվագներ, որ կամաց-կամաց չքանում, կորչում են հեռաստանում: «Երբ առաջ բանաստեղծությունը երգում էր, այժմ հմայորեն նվագում է, առաջ ձայնական էր, այժմ երաժշտական է: Ահա՛ այս փափագը՝ ավելի թելադրական, քան վճռական ու հաստ լինել, կազմում է նորագույն բանաստեղծության խոշոր գյուտը և գլխավոր շնորհիքը»[1]: Այս սկզբունքն է միևնույն ժամանակ այն դուռը, որ տանում է դեպի սիմբոլների խորհրդավոր ու մթագին աշխարհը:

* * *

Սիմբոլ բառը զանազան կիրառություն ունի. իսկական նշանակության հասու լինելու համար, պետք է հիշել մի բան:

Հոգեկան և նյութական երևույթները՝ իրենց փոխադարձ հարաբերությունների մեջ, հակառակ մտքի դարավոր ջանքերին, տակավին գաղտնիք են մնում: Որ նրանք բնությամբ բնավին տարբեր էություններ են՝ անժխտելի է. անուրանալի է նաև, որ նոցա մեջ ներքին սերտ կապ կա, մեկը պայմանավորված է մյուսով: Բայց թե ի՞նչ է այդ կապի իսկական բնավորությունը և կամ ինչպե՞ս կարող է միտքը նյութի հետ շաղկապվել, բնության խորհրդավոր և անվերծանելի գաղտնիքներից մեկն է: Ի՞նչ ներքին աղերս կա, օրինակ՝ լեզվի և մտքի, կամ բառի և գաղափարի մեջ: Գիտենք միայն, որ նրանք միմյանց հետ զուգորդված են, որ բառը զարթեցնում է գաղափար և ընդհակառակը, գաղափարը ծնում է բառ: Այս էլ սովորության հետևանք է: Եթե բառի և գաղափարի կապը անհրաժեշտ և բնական բնավորություն ունենար, բոլոր մարդիկ միմյանց կհասկանային, ինչ լեզվով էլ որ խոսեին:

Այս տեսակետից բառը սոսկ նշանակ է, մի սիմբոլ, որ ներկայացնում է մեզ և ուրիշներին որոշ գաղափար, բոլորովին այլ բան է էությամբ, քան ինքն է: Նշանակներ են նմանապես և գույները, գծերը, հնչյունները, նվագները, որոնցով թարգմանում ենք ինչ-ինչ հոգեկան կացություններ: «Մարդու ամբողջ կյանքը սիմբոլների մէջ է,- ասում է Կարլայլ,-միայն սիմբոլների միջնորդութեամբ է, որ մենք գիտակցաբար թե անգիտակցաբար ապրում

[1] **H. de Regnier**, ibid., p. 333.

ենք, գործում ու կանք աշխարհումս»[1]: Նույն միտքն է հայտնված և Բոդլերի «Լծորդություններ» ոտանավորի մեջ.

*Բնությունը մի տաճար է, ուր սյուները կենդանի*
*Արձակում են երբեմն անմեկին ու մութ խոսքեր,*
*Մարդն անցնում է այնտեղ սիմբոլների անտառից,*
*Որոնք նրան դիտում են մտերմական հայացքով:*

Հոգեկան պարզ տարրերն արտահայտում ենք բառով, ավելի բարդը համապատասխան բառերի միավորությամբ: Սակայն կան բարդություններ, ինչպես հույզերը, որոնք վերլուծության չեն ենթարկվում. բառերով արտահայտել հույզը՝ նշանակում է կազմալույծ անել նրան, ուրեմն և ոչնչացնել: Պետք է արտահայտության այլ միջոց գտնել: Հույզերն արտահայտելի է նշանակներով, սիմբոլներով, այսինքն՝ պետք է ընտրել կամ ստեղծել այնպիսի պատկերներ և դրություններ և նկարագրել այնպես, որ ընթերցողի մեջ զարթնե ցանկալի հույզը:

Սիմբոլը այլաբանության նման է: Էական տարբերությունը նրանց ծագման կամ ստեղծման եղանակի մեջ է: Այլաբանությունը ենթադրում է մի միտք, մի խրատ և նրա համար որոնում է պատշաճավոր պատկեր, որ հաճախ ինքն իրեն ոչ մի բանաստեղծական արժեք չունի: Այնինչ սիմբոլի առքած վայելքը կրկնակի է. նախ՝ բանաստեղծական պատկերը և երկրորդ՝ իդեան, որ արտահայտում է: Այլաբանության մեջ իմաստը խրատական է և ակնհայտնի, սիմբոլում լոկ ենթադրական, որ թաքնված է այնպես, ինչպես «ծառը իր հունդի մէջ կրում է ապագա պտուղները»:

«Սիմբոլն իրոք մի համեմատություն է, - ասում է Հանրի դը Ռենիե, - վերացականի և թանձրունակի՝ կոնկրետի նույնություն, համեմատություն, որի անդամներից մեկը մնում է ենթադրելի»: Այդ զուշակելի անդամը ներքին իմաստն է, որ այնպես հմտորեն հալված է արտաքին պատկերի մեջ, որ կազմում է անքակտելի միություն: Փույթ չէ, եթե սիմբոլը այլազան մեկնության տեղիք է տալիս. մինչև անգամ եթե ընթերցողը ուրիշ կերպ հասկանա, քան հեղինակը, ա՛յլ իմաստ որոնե նրա ստեղծագործության մեջ:

Հունական առասպելների անթարշամ բանաստեղծական ոգին հենց այն դյուրաթեք ճկունության մեջ է, որը ներում է ամեն տեսակ մեկնություն ու բացատրություն: Սիմբոլիստները հաճախ դիմում են հին դիցաբանության, այնտեղից քաղում նյութեր ՝ու իրենց հայացքի համեմատ մշակում: «Առասպելը ժամանակի ավազուտում այն ժժմակներից մեկն է, ուր լսվում է մարդկային ծովի աղմուկը: Միֆը իդեայի պերճինչակ խխունջն է»[1]:

Մարդուս ընկալական ունակությունները հետզհետե զարգանում ու նրբանում են: Ներելի է հուսալ, որ ականջ դնելով այդ տարօրինակ խխունջներին, միշտ կարող կլինենք նոր շշունջներ լսել և հին հնչյուններին նորանոր մեկնություններ տալ: Սիմբոլն իր լավագույն իմաստով՝ այդպիսի մի խխունջ է. նորա գաղափարական ղողանջյունը պետք է վեր լինի ժամանակի և տեղի պայմանների ազդեցությունից. որովհե՛տև միայն այդ կերպ կարող է հարատև նշանակություն ու հավերժական կյանք ունենալ: Պատմության ամեն մի շրջան բերում է նոր մթերք, նոր տարրեր քաղաքական և կուլտուրական, որ փոխվում կամ կորչում է հաջորդ շրջանում: Գեղարվեստական երկը տևական լինելու համար, պետք է ձեռնթափ լինի և զերծ մնա քաղաքակրթական պատահարներից, խույս տա անմիջական իրականության հպումից: Երգելու է մշտնջենական զգացմունքների վիշտն ու բերկրությունը՝ սեր, խանդ, սրամտություն, հիացում և այլն: Սրանք են Հոմերոսի վեհության հիմը և անմահության ճշմարիտ հավատչեն:

Ռոմանտիկ բանաստեղծներն ևս երգում էին հուզական աշխարհ. բայց նեղ անհատականության և անձնական գույն էին տալիս զգացմունքներին, կանգ էին առնում մասնավոր արկածների վերա և շեշտում էին այնպիսի կողմեր, որոնք բացառիկ և անսովոր բնավորությամբ հատուկ էին այս կամ այն մարդու զգացմունքին և ոչ զգացմունքին ընդհանրապես: Նոր բանաստեղծներն ընդհակառակը ներբողում են զգացումի բացարձակը, անկախ նրա մասնավոր արտահայտությունից, ուստի նրանց երգերը ընդհանրության սեփականություն է: Նա չի խոսում եզական դեպքից ծնունդ առած վշտի մասին, այլ գեղգեղում է այն տրտունջը, որ դարեր է տեսել, որ նույնչափ հին է, որքան աշխարհը և արգասիք է «ապրելու չարիքի»...

* * *

Երբ Մետերլինկը[2] հափշտակությամբ մեկնում էր սիմբոլիստ բանաստեղծության այս հատկանիշը, նրա զրուցընկերը, ինչպես պատմում է Հյուրեն, առարկություն արեց, թե ճշմարիտ գրականությունը պետք է ո՛չ թե խոր-

[1] «It is in and through symbols that man, cosnciously or unconsciously lives, works, und has his being». **A. Simons**, The symb. mouvement.



[1] **H. de Regnier**, ibid., p. 336.

[2] **J. Huret**, ibid., p. 173.

չէ կյանքից, այլ ընդհակառակը նրանով պիտի զբաղվի: Նա պիտի ցոլացնե առտնին կյանքը, հասարակական խոշոր երևույթները, ժամանակի ոգին և պահանջները: Նույն բանը ասաց Հյուրեին և Է. Զոլան[1]: Սա բացեիբաց ժխտում էր սիմբոլիզմի նշանակությունը, իբրև մի հոսանքի, որ ո՛չ մի հասարակական շարժման թարգման չէ, և թե՛ դեմոկրատ, և թե՛ բուրժուա դասը ընդդեմ են, այնինչ ապագան նրանն է, ով որ կըմբռնե նորակազմ հասարակության ոգին: Ներկայիս գունավոր արտահայտությունը սոցիալիզմն է, մի համաշխարհային շարժում, որ կարող է վաղը հիմն ի վեր տապալել կանգուն քաղաքակրթությունը, փոխել աշխարհի պատկերը: Մի գրականություն, ասում են, որ անտես կառնե այսպիսի կարևոր և կենսական խնդիր, չի կարող անմեղապարտ ճանաչվել և հաջողություն ունենալ:

Այս է սովորական և հաճախ կրկնվող առարկությունն ու միակ լուրջ կշտամբանքն՝ ուղղված նորերին:

Սակայն խնդիրն այն է, որ գրականությունը, մանավանդ նորերի գրականությունը, գործ ունի ո՛չ թե երևույթների, այլ նրանց ստեղծող ոգու հետ: Ճշմարիտ է, աշխատանքի առաքելականությունն է ներկայի ամենաթանկ նշանը, բայց անուրանալի է նաև, որ նորագույն գրականությունն այն տարօրինակ ոգու ցոլքն է, որ արտադրել է այդ շարժումը: Դրական գիտության տեսակետից սոցիալիզմը՝ իբրև սիստեմ, նույնպիսի դեկադենտություն է համարվում, որպիսի սիմբոլիզմը՝ գրականության մեջ: Մեկը քողքն է կյանքի կոնկրետ երևույթներին, մյուսը՝ նույն երևույթների ծանրության տակ հառաչող ոգուն: «Արդի ոգին»՝ նշանակալից ոգի է՝ վիշտն ու ուրախությունը, իրենց երանգներով, հույսն ու հուսահատությունը՝ հիացումն ու հիասթափությունն այնպիսի արագությամբ են միմյանց հետևում, որ կորչում է հոգեկան ուժերի համաչափությունը, հավասարակշռությունը: «Աջակողմյան» և «ձախակողմյան» հույզերը այժմ հոգու մեջ այնպես մոտ են, որպես իրականության մեջ երանություն ու թշվառություն, աղքատություն ու հարստություն, հեծյուն ու քրքիջ: Սոցա նեղ փեղկերի մեջ տրորվում է հոգին, երբ չգտնելով գալարվում է հուսահատ ու բեկված «pleine de larmes et sans cris» («արցունքաթաթավ և առանց տագնապի»): Աշխարհում աննեցուկ՝ հածում է աստանդական բնության անհունության մեջ, հառաչում հողմերի հետ, անձրևի հետ լալիս, թափված տերևների հետ տխրում...

Աշխարհիս անօրեն, դժնյա կացության հանդեպ՝ մարդու համար միակ անխաբ սփոփանքը մնում է իր ներքին աշխարհը, սեփական հոգին իր անուրջներով:

[1] J. Huret, ibid., p. 121.



Նա անդորր է որոնում երազական աշխարհում, որպես մի ջերմ հանգրվանում, որ նրանից ոչ ոք չի կարող կապտել, ուր զերծ ճնշումից, մարդ ազատ է ապրելու և շնչելու իր ցանկության համաձայն: Այնտեղ, անրջական եթերում թափում է իր վիշտն ու տառապանքն և նորա թարմությամբ թաթավված ոգին այնուհետև կիջնե երկիր լի խոհուն վճռականությամբ՝ իրական աշխարհում ևս տնօրինել իր բախտը այնպես, ինչպես երազների մեջ...

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՄԱՇԹՈՑ ԵՎ ՆՐԱ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ ԸՍՏ ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ

(էջ 7)

Գրված է 1925 թ. Փարիզում: Լույս է տեսել «Հանդես ամսօրյա»-ում՝ «Անծանոթ էջեր Մաշթոցի և նրա աշակերտների կյանքից ըստ օտար աղբյուրների» վերտառության ներքո (տե՛ս «Հանդես ամսօրյա», ամսագիր, Վիեննա, 1925, № 5-6, էջ 193-200, № 7-8, էջ 321-328, № 9-10, էջ 435-441, № 11-12, էջ 531-539): Նույն թվականին, նույն վայրում լույս է տեսել նաև առանձին գրքով, սակայն այլ խորագրի ներքո՝ «Մաշթոց և նրա աշակերտները ըստ օտար աղբյուրների» (Վիեննա, 1925, Ազգային մատենադարան, ՃԺԱ, 56 էջ): Երրորդ անգամ լույս է տեսել «Մեսրոպ Մաշտոց» հոդվածների ժողովածուում (Երևան, 1962, ՀԳԱ ակադեմիայի հրատ., էջ 199-241): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Փոտ պատրիարքի ամբողջական երկերը հրատարակել է Ց. Պ. Մինը (տե՛ս **J. P. Migne**, Patrologia Graeca, t. 102-104): - Էջ 7:

2. Ն. Ադոնցի «Քննական նշմարներ Եզնիկի մասին» աշխատությունը լույս է տեսել «Բազմավեպ»-ում (1925, էջ 196-200, 294-298, 366-371: 1926, էջ 12-17, 69-72, 108-113): Տե՛ս նաև աստ, էջ 131-168: - Էջ 9, ծան. 1:

3. Ն. Ադոնցի այս դիպուկ ենթադրությունը առարկությունների տեղիք է տվել Ե. Տեր-Մինասյանի մոտ (տե՛ս **Ե. Տեր-Մինասյան**, *Հայոց գրերի գյուտի թվականի և այլ հարակից խնդիրների մասին*, «Բանբեր Մատենադարանի», № 7, Երևան, 1964, էջ 38-45), սակայն այժմ այն հայագիտության մեջ քաղաքացիություն ստացած արժեք է: - Էջ 10:

4. Խոսքը Կարապետ Տեր-Մկրտչյանի հրատարակած «Կնիք հաւատոյ ընդհանուր Սուրբ եկեղեցւոյ» (Ս. Էջմիածին, 1914) գրքի մասին է: - Էջ 16:

5. Նկատի ունի Ա. Վարդանյանի հրատարակած «Թուղթ Պրոկղյա եպիսկոպոսի առ Ս. Սահակ հայրապետ Հայոց և առ Ս. Մաշտոց» բնագիրը (տե՛ս «Հանդես

ամսօրյա», 1921, էջ 1-26): - Էջ 16:

6. Ն. Ադոնցի սույն տեսակետը Հ. Մանանդյանն անվանում է «Նոր ու հետաքրքիր լուսաբանություն, արժանի հատուկ ուշադրության» և համերաշխվելով նրա հետ՝ գրերի գյուտի ժամանակը առարկայացնում է 391-392 թթ. միջև (տե՛ս **Հ. Մանանդյան**, Հայ գրերի գյուտի տարեթվի հարցի շուրջը, «Տեղեկագիր», ՀԳԱ ակադեմիայի, 1952, № 7): Խնդրին և Մեսրոպ Մաշտոցին նվիրված վերջին լավագույն աշխատություններից տե՛ս **Ա. Ա. Մարտիրոսյան**, Մաշտոց, Երևան, 1982: - Էջ 27:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ
(Էջ 35)

Գրված է 1932 թ. օգոստոսին Բրյուսելում: Լույս է տեսել «Հայ մշակույթի օր» *ժողովածուում* (*Փարիզ, 1932*, հրատարակություն «Հայ գրական ակումբի», էջ 33-40): Երկրորդ անգամ լույս է տեսել Ադոնցի՝ «Հայաստանի ոսկեհանքը». Փոքր ուսումնասիրություններ, *ժողովածուում* (կազմել և ներածությունը գրել է Պ. Հ. Հովհաննիսյանը, Երևան, 2006, էջ 62-70) : Արտատպվում է առաջին հրատարակությունից:

1. Հայագետները վաղուց են մատնանշել Կորյունի բնագրի զանազան մասերի և մասնավորապես վերջաբանի ժամանակագրական հատվածի ակնհայտ հակասությունները, թերասացությունները ու անորոշությունները: Դրանք բացահայտելու և ճշտելու գործում մեծ է Ա. Ս. Մաթևոսյանի վաստակը [տե՛ս **Ա. Ս. Մաթևոսյան**, Կորյունի Մեսրոպ Մաշտոցի պատմության ձեռագրի մի թղթի տեղափոխություն, Վենետիկ, *1990*, տե՛ս նաև «Վարք Ս. Մեսրոպ Մաշտոցի» բնագրի և դրա տարբերակների Ա. Մաթևոսյանի իրականացրած հրատարակությունը (Երևան, 1994)]: Տարակուսելի է, որ Ա. Մաթևոսյանից, թերևս, անծանոթ է մնացել Ադոնցի «Հայ մշակույթի՝ սկզբնավորությունը» աշխատությունը, որն առաջին և հաջողված փորձերից մեկն էր խնդիրը հստակեցնելու գործում: - Էջ 37:

## ՀԱՅԱՑԱԾ ԱՍՏՎԱԾԱՇՈՒՆՉԸ ԵՎ ԱՆՈՐ ՊԱՏՄԱԿԱՆ ՏԱՐՈՂՈՒԹՅՈՒՆԸ
(Էջ 43)

Գրված է 1934-1935 թթ. Բրյուսելում: Որպես զեկուցում ընթերցվել է 1936 թ. մարտի 29-ին Սորբոնի համալսարանի հանդիսությունների մեծ դահլիճում: Այս զեկուցումը, որ կարդացվել է ֆրանսերեն, նախ լույս է տեսել հայերեն



թարգմանությամբ (տե՛ս «Անահիտ», 1936, № 3, ապրիլ-մայիս, էջ 16-23), ապա՝ ֆրանսերենով (**N. Adontz**, La Bible Arménienne et sa portée historique, տե՛ս «Célébration solennelle du quinzième centenaire de la traduction Arménienne **De La Bible**», Paris, 1938, p. 47-63) և ռումիներեն թարգմանությամբ («Biblia armeană şi însemnătatea sa istorică», տե՛ս «Ani», Bucureşti, vol. 1, 1941, p. 90-100): Հայերեն թարգմանությունն երկրորդ անգամ լույս է տեսել «Հուշարձան» *ժողովածուում* (Երուսաղեմ, 1938, էջ 318-329): Երրորդ անգամ վերահրատարակել ենք մենք (տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», 2001, № 3, էջ 3-11): Այնուհետև վերահրատարակվել է 2002 (տե՛ս «Էջմիածին», ամսագիր, 2002, Բ-Գ, էջ 95-103), 2005 (տե՛ս «Աստվածաշնչական Հայաստան», Միջազգային գիտաժողովի նյութերի ժողովածու, 2005, էջ 527-533) և 2006 (տե՛ս **Ն. Ադոնց**, Հայաստանի ոսկեհանքը, էջ 71-81) թվականներին: Արտատպվում է «Անահիտ»-ի հրատարակությունից:

1. 1934 թ. լրացավ Աստվածաշնչի հայերեն թարգմանության 1500-ամյակը: Ամենայն Հայոց կաթողիկոս Խորեն Ա Մուրադբեկյանը մեծ ջանքեր է թափում պատմական այդ կարևորագույն թվականը հանդիսավորելու համահայկական հոբելյանով: Սակայն ստեղծված իրադրությունը հնարավոր չէր դարձնում նման մի կարևոր միջոցառումի Հայաստանում կազմակերպելը: Ուստի, 1934 թ. հոկտեմբերի 1-ի № 1076 հայրապետական կոնդակով Երուսաղեմի Հայոց պատրիարք Թորգոմ արքեպ. Գուշակյանը կարգվում է կաթողիկոսական ներկայացուցիչ և «ղեկավար կազմակերպութեան գործոյ» (տե՛ս «Հուշարձան», էջ 538-547): 1935 թ. ընթացքում հոբելյանական նիստեր են գումարվում հայկական գրեթե բոլոր գաղթավայրերում (մանրամասները տե՛ս «Սիոն», 1935, № 12): Ամփոփիչ նիստը տեղի ունեցավ 1936 թ. մարտի 29-ին Սորբոնի համալսարանի հանդիսությունների մեծ դահլիճում: Այս նիստին է, որ Ն. Ադոնցը կարդացել է սույն «հմտալից ու շահեկան» («Անահիտ», 1936, № 3, էջ 2) զեկուցումը: - Էջ 43:

2. Նկատի ունի Եվսեբիոս Կեսարացուն: - Էջ 47:

3. Այսինքն՝ Պրոկոպիոս Կեսարացին: - Էջ 48:

4. Ակնարկում է Ա. Վոկքին: - Էջ 50:

5. Մեջբերված հատվածի հեղինակը ֆրանսիացի պատմաբան Ալֆրեդ Ռամբոն (1842-1905) է: - Էջ 50:

6. Ընդգծվածը դուրս է մնացել «Հուշարձան» ժողովածուի հրատարակությունից: «Անահիտ» հանդեսի խմբագրական ծանոթությունը լույս է սփռում նման կրճատման հանգամանքների վրա: - Էջ 52:

## ԿՈՐՅՈՒՆԻ ՄԱՍԻՆ
**(Պարոն Գ. Ֆնտգլյանի նկատողությունների առթիվ)**
(էջ 53)

Գրված է 1927 թ. Փարիզում: Լույս է տեսել «Հանդես ամսօրյա»-ում (տե՛ս «Հանդես ամսօրյա», 1927, № 5, էջ 273-284, № 7, էջ 395-405): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Նկատի ունի Գ. Ֆնտգլյանի՝ «Նկատողություններ Մաշտոց-Մեսրովբ անվան և Կորյան բնագրի և ժամանակի մասին» ուսումնասիրությունը (տե՛ս «Հանդես ամսօրյա», 1926, № 5-6, էջ 268-276: Նույնը՝ տե՛ս Գ. Ֆնտգլյանի աշխատասիրած «Վարք Մաշտոցի» բնագրի ներածական բաժնում): - Էջ 53:

2. Տե՛ս **Գ. Փառնակ** (Գ. Ֆնտգլյան), Մաշտոց վարդապետ: Գտիչ այբուբենի, թարգմանիչ, ավետարանող և մատենագիր («Անահիտ», 1905, ապրիլ-դեկտեմբեր): - Էջ 53:

3. Վերջին տասնամյակներին Մեսրոպ Մաշտոցի անձի ու գործի վերաբերյալ ստեղծված բազմաթիվ ուսումնասիրությունների տվյալներն իմի է բերել Ա. Ա. Մարտիրոսյանը [տե՛ս «Մաշտոց». (Պատմա-քննական տեսություն), Երևան, 1982, գրքում]: Առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում Հ. Մ. Բարթիկյանի՝ «Թեոդորոս Մոպսուեստացու *Μαστούβιος* -ի և բյուզանդական Մաշտոցյան տոհմի մասին» ուսումնասիրությունը (տե՛ս «Լրաբեր», ՀԳԱ ակադեմիա, 1984, № 7, էջ 74-76):- էջ 56:

4. Նկատի ունի իր «Հին Հայոց աշխարհայացքը» ուսումնասիրությունը (տե՛ս **Ն. Ադոնց**, Երկեր, Ա, Երևան, *2006, էջ 13-78): - Էջ 56:*

5. Արդյո՞ք ակնարկում է Սեբեոսի և Անանունի առեղծվածին նվիրված Ն. Ակինյանի, Ա. Մատիկյանի և Բ. Սարգիսյանի ուսումնասիրությունները: - Էջ 63:

6. Նկատի ունի Ղազար Փարպեցու Պատմության Վենետիկի 1793 թ. հրատարակության՝ «Ս[ուր]բ Մաշտոց վարդապետ» հատվածը: - Էջ 63:

7. Ակնարկում է Ն. Մառի՝ «Крещение Армян, грузин, абхазов, аланов святым Григорием (Арабская версия), СПб., 1905, ուսումնասիրությունը, տե՛ս նաև սույնի հայերեն թարգմանությունը, Վաղարշապատ, 1911:- Էջ 64:

8. Վասակ Սյունեցու պատմական գնահատման աղոնցյան տեսակետների քննությունը տե՛ս **Պ. Հ. Հովհաննիսյան,** Մարզպան Վասակ Սյունեցու գործունեության վերագնահատման Նիկողայոս Ադոնցի տեսությունը, «Ավարայրի խորհուրդը», ժողովածու, Երևան, 2003, էջ 65-72: - Էջ 65:



## ԴԱՐՁՅԱԼ ԿՈՐՅՈՒՆԻ ՇՈՒՐՋԸ
(էջ 71)

Գրված է 1928 թ. Փարիզում: Լույս է տեսել «Հանդես ամսօրյա»-ում (տե՛ս «Հանդես ամսօրյա», 1928, № 1-2, էջ 76-94): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Տե՛ս **Գ. Ֆնտգլյան,** Պատասխանս պրոֆ. Ն. Ադոնցին, «Հանդես ամսօրյա», 1927, № 9, էջ 529-541: - Էջ 71:

2. Նկատի ունի հայր Արսեն Բագրատունու «Տարերք հայերեն քերականության, դպրատանց տղոց համար», դասագիրքը (Վենետիկ, 1848, 1850 և այլն) : - Էջ 77:

3. Տե՛ս **F. C. Conybeare,** The Date of Euthalus, «Zeitschrift für die Neutestamentliche», Yahrg, 1904, s. 39-52. - Էջ 84:

4. 1920-ական թվականներին Ա. Վարդանյանը «Հանդես ամսօրյա»-ում տպագրել է մի շարք ուսումնասիրություններ՝ «Եվթաղյան հատակտորներ», «Եվթաղականք», «Եվթաղի մատենագրությունք», խորագրերի ներքո, որոնք ամփոփվեցին «Մատենագրութիւնք Եւթաղի. Քննութիւն և բնագիր» մենագրության մեջ (Վիեննա, 1930): - Էջ 84:

## ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԸ ՈՐՊԵՍ ՊԱՏՄԻՉ
(էջ 87)

Գրված է 1901-1918 թթ. ընթացքում Մյունխենում և Ս. Պետերբուրգում (Պետրոգրադ): Լույս է տեսել «Христианский Восток» հանդեսում (т. VI, вып. 3, Петроград, 1922, стр. 235-272): Հայերեն թարգմանությունը (Վ. Ա. Դիլոյան) կատարվել է այս առաջին տպագրությունից:

1. Ն. Ադոնցի կողմից այստեղ և այլուր «Բյուզանդիա», «հույներ», «Հունաց կայսր» և նման այլ անվանումներ տուրք են հայ պատմական գրականության ավանդույթին, որը, ինչպես հայտնի է, նման անվանումներն օգտագործում էր «Հռոմեական կայսրություն», «հռոմեացիներ» տերմինների փոխարեն: - Էջ 88:

2. Ս. Տ. Երեմյանի կարծիքով Չինթա ամրոցը այժմյան Չինվի-շեյխ վայրն է, որ տեղադրվում է Ջարասպ լեռնանցքից (այժմ՝ Կելիշին) դեպի հարավ (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. II, Երևան, 1984, էջ 146): - Էջ 99:

3. Այդ և հունա-լատինական այլ սկզբնաղբյուրներից կատարված Ադոնցի թարգմանությունները տե՛ս նրա արխիվում (Համազգայինի Բեյրութի գրական

պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, զզրոց Բ, թղթածրար 3; պահարան I, զզրոց Ժ, թղթածրար Ա-8 և այլն): -Էջ 118, ծան. 1:

4. Փավստոսն ընդհանրապես Ն. Ադոնցի նախասիրած պատմիչն է, որի առեղծվածները նրան հուզել են իր գիտական գործունեության ամբողջ ընթացքում՝ 1900 թվականից մինչև 1930-ական թվականների վերջերը: Փավստոսի թեման աղերսվում էր մի այլ՝ *առեղծվածներով լեցուն բնագրի*՝ Անանունի պատմության, հետ, որոնց լուծմանն էլ նվիրել է հայագետն իր ստեղծագործական զարմանալի եռանդը: Դեռևս 1900 թ. նոյեմբերի 18-ին Ն. Մառին հղված նամակում Ադոնցը հավաստում է, որ Փավստոսի վերաբերյալ սկսել է նյութեր կուտակել (տե՛ս **Պ. Հ. Հակոբյան,** Նիկողայոս Ադոնցի նամակներից (1895-1902), «Լրաբեր» ՀԳԱ ակադեմիայի (հասարակ. գիտ.), 1975, № 11, էջ 97-98): 1902 թ. հունվարին Լոնդոնից գրված նամակներից մեկում ուսուցչապետին տեղեկացնում է, որ Փավստոսի մասին նյութերը պատրաստ են (անդ, էջ 105): Կատարված նախնական աշխատանքների վերաբերյալ 1906 թ. նա զեկուցում է ներկայացնում Ռուսական կայսերական հնագիտական ընկերության Արևելյան բաժանմունքի նիստում (տե՛ս «Записки Восточного отделения императорского русского археологического общества», 1906, т. 17, стр. XL-XLIII): **«Ծրագրված մեծ աշխատանքի»** (Ադոնցի խոսքերն են) մի մասը տպագրության է հանձնվում Ն. Մառի կողմից նոր հիմնադրված «Христианский Восток» -ին: Հետաքրքիր է, որ հանդեսի 2-րդ տարվա շապիկի վրա զետեղված է ծանուցում այն մասին, որ առաջիկա համարներից մեկում լույս է տեսնելու Ն. Ադոնցի «Փավստոս Բուզանդը որպես պատմիչ» ուսումնասիրությունը (1913, т. II, вып. 3): Իրերի բերումով Ադոնցի աշխատանքը լույս տեսավ հանդեսի վերջին՝ 1922 թ. համարում, որից հետո հանդեսի հրատարակությունն արգելվեց: Այժմ հաստատապես որևէ բան հնարավոր չէ ասել, թե Ադոնցը ավարտել է արդյոք ծրագրված աշխատանքն ամբողջությամբ, թե ոչ: Համենայն դեպս հանդեսի խմբագրության ծանուցումը, թե **«Շարունակությունը հետևում է»**, այսինքն՝ աշխատանքի երկրորդ մասը լույս է տեսնելու հանդեսի առաջիկա համարներից մեկում, հուշում է, որ այն պետք է որ պատրաստ լիներ, եթե ոչ ամբողջությամբ, ապա՝ մասամբ: Փաստորեն տեխնիկական, ծավալային նկատառումներով է, որ աշխատանքը հնարավոր չի եղել տպագրել ամբողջությամբ (տպագրված հատվածը կազմում է շուրջ 40 մեծադիր էջ), և ինչպես սովորաբար լինում է նման դեպքերում, շարունակությունը տեղափոխվել է: Բայց խմբագրության փակման և նյութերի ցաքուցրիվ լինելու պայմաններում Ադոնցի աշխատանքի հետագա ճակատագիրը դառնում է անհայտ: Կարծում ենք, որ հավանականություն կա այն գտնելու Ռուսաստանի ԳԱ Արևելագիտության ինստիտուտի Պետրոգրադի բաժանմունքի արխիվում:

*Այնուհանդերձ, Փավստոսի թեման չի լքել Ադոնցին:* Արդեն Փարիզյան տարագրության տարիներին՝ ավելի ճիշտ 1921 թ. դեկտեմբերին, Ն. Ակինյանին



ղղված նամակում Ադոնցը խնդրում է իրեն ուղարկել Փավստոս Բուզանդին նվիրված Յո. Մարկվարտի, Հ. Գելցերի և Գ. Տեր-Պողոսյանի ուսումնասիրությունները (տե՛ս Վիեննայի Մխիթարյան միաբանության դիվան, Ն. Ադոնցի նամակները Մխիթարյան հայրերին): Բացի այդ, Ադոնցի թղթունի տարբեր թղթածրարներում առկա են Փավստոսի բնագրից քաղված մեծ թվով հատվածներ, որոնք թեև մեկնաբանված չեն, սակայն վերաբերում են 370-ական թվականների իրադարձություններին, և որոնք հասկանալի պատճառներով տպագրված հատվածում բացակայում են, քանզի այնտեղ շարադրանքն ավարտվում է 363 թ. դեպքերի նկարագրությամբ: Անհետաքրքիր չէ նաև այն փաստը, որ Ադոնցի այդ նույն թղթունում առկա է «Փավստոս Բուզանդ» խորագիրը կրող հայերեն անավարտ մի ուսումնասիրություն՝ ընդամենը 5 էջ (տե՛ս Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, զզրոց Բ, թղթածրար Ա-8): Անկասկած է, որ հայագետը ծրագրել էր մի նոր աշխատանք, որը սակայն իրադարձությունների կտրուկ փոփոխության պատճառով հնարավոր չեղավ իրականություն դարձնել: - Էջ 130:

## ՔՆՆԱԿԱՆ ՆՇՄԱՐՆԵՐ ԵԶՆԻԿԻ ՄԱՍԻՆ

**(Լ. Մարիեսի աշխատության առթիվ)**

(էջ 131)

Գրված է 1925-1926 թվականներին Փարիզում: Լույս է տեսել «Բազմավեպ»-ում (1925, № 7, էջ 196-200, № 10, էջ 294-298, № 12, էջ 366-371: 1926, № 1, էջ 12-17, № 3, էջ 69-72, № 4, էջ 108-113): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Խոսքը ֆրանսիացի հայագետ Լուի Մարիեսի (1876-1958)՝ Եզնիկ Կողբացուն նվիրված աշխատության մասին է (տե՛ս **L. Maries**, Le de Deo d’Eznik de Kolb, Paris, 1924: Սույնի ամփոփումը տե՛ս **Գ. Նահապետյան**, «Բազմավեպ», 1925, էջ 161 և հտ.): Տարիներ անց (1959) Լ. Մարիեսը իրականացրեց նաև Եզնիկ Կողբացու «Եղծ աղանդոց»-ի ֆրանսերեն նոր թարգմանությունը (տե՛ս «Patrologia orientalis», t. XXVIII, p. 555-776): - Էջ 131:

2. Նկատի ունի Եզնիկին վերաբերող Նորայր Բյուզանդացու դիտողությունները (տե՛ս **Նորայր Բյուզանդացի**, Եզնըկայ Կողբացւոյ երկու հատուածք սրբագրեալ, «Քննասէր», Ստոքհոլմ, 1887, պրակ Ա, էջ 8-11): - Էջ 131:

3. Տե՛ս **Հր. Աճառյան**, Քննություն և համեմատություն Եզնկա նորագյուտ ձեռագրին, Վիեննա, 1904 (Ազգային մատենադարան, ԽԸ): - Էջ 131:

4. Տե՛ս **S. Weber**, *Abfassungszeit und Echtheit des Schrift Ezniks*, «Theologische Quartalschrift», Tübingen, 1897, t. 79. Տե՛ս նաև նույնի հայերեն թարգմանությունը՝

Ս. Վեբեր, Եզնկա «Եղծ աղանդոց» գրքի ժամանակն և վավերականությունն, «Բազմավեպ», 1897, դեկտեմբեր, հավելված, էջ 1-6: 1898, էջ 147-151, 261-266: Հմմտ. «Հանդես ամսօրյա», 1898, էջ 22-25, 110-113, 201-206: - Էջ 131:

5. «Գիրք ընդդիմութեանց արարեալ ի Սրբոյ Եզնակայ Կողբացւոյ Հայոց վարդապետէ», Զմյուռնիա, 1762-1763, հրատարակիչ՝ Աբրահամ վարդապետ Աստապատեցի: - Էջ 134:

6. «Եզնկայ Կողբացւոյ Բագրեւանդայ եպիսկոպոսի Եղծ աղանդոց», Վենետիկ, 1826, հրատարակիչ՝ Արսեն վարդապետ Բագրատունի: - Էջ 134:

7. Վալենտինիանոսը Գնոստիկյան դպրոցի առաջին ուսուցիչներից էր, որը 140-165 թթ. գործում էր Հռոմում: - Էջ 135:

8. Տե՛ս Գ. **Գալեմքեարյան**, Նորագույն աղբերք Եզնկա Կողբացվո ընդդեմ աղանդոց մատենին, Վիեննա, 1919: - Էջ 135:

9. Եզնիկի քննական բնագրի հրատարակիչ Մ. Մինասյանը մասամբ է հետևել Ադոնցի ցուցումին, երկը խորագրելով՝ «Ճառք ընդդէմ աղանդոց» (տե՛ս «Հանդես ամսօրյա», 1990, էջ 79-125: 1991, էջ 127-193: 1992, էջ 139-187, տե՛ս նաև առանձին հրատարակությամբ՝ Ժնև, 1992): - Էջ 137:

10. Բնագրում ոչ թե «կատարյալ **գիտության**», այլ՝ «**կարծիքի**»: - Էջ 138:

11. Նկատի ունի իր «Le questionnaire de S. Grégore Illuminateur et ses rapports aves Eznik» ֆրանսերեն ուսումնասիրությունը, տե՛ս նաև սույնի հայերեն տարբերակը («Հայրենիք», 1928, 6-րդ տարի, № 7, էջ 72-81, նաև աստ՝ էջ 169-183): - Էջ 143:

12. Տարիներ անց «Հարցմունք Գրիգորի» Հիշատակարանի նոր հետազոտող Լ. Ստ. Խաչիկյանը Ադոնցի հարցադրմանը պատասխանում է՝ «Այո, կարելի է, ավելին՝ այն **կարող է զետեղվել միայն և միայն հայ դպրության սկզբնավորման առաջին տասնամյակներին, և համընկնում է հայ ինքնուրույն մատենագրության ցարդ հայտնի հնագույն հուշարձանը**» [տե՛ս Լ. **Խաչիկյան**, Գրիգոր Պարթևին վերագրված «Հարցումը» որպես հայ մատենագրության երախայրիք, «Բանբեր Մատենադարանի», № 7, 1964, էջ 310-311; նոր հրատարակություն՝ Լ. **Խաչիկյան**, Աշխատություններ, հատ. Ա, Երևան, 1995, էջ 66 (ընդգծումը Լ. Խաչիկյանինն է - Պ. Հ.)]: - Էջ 151:



## ԳՐԻԳՈՐ ՊԱՐԹԵՎԻ ՀԱՐՑԱՐԱՆԸ ԵՎ ԵԶՆԻԿ
(էջ 169)

Նախապես գրված է եղել ֆրանսերեն՝ 1925 թ. Փարիզում: Լույս է տեսել «La Revue de L'Orient Chrétien» հանդեսում (տե՛ս **N. Adontz**, La questionnaire de S. Grégoire Illuminateur et ses rapports aves Eznik, t. V(XXV), № 3, 4, Paris, 1925-1926, p. 309-357): 1927 թ. սույն ուսումնասիրությունը, առանց «Հարցումն և պատասխանիք» բնագրի, հեղինակի իսկ կողմից թարգմանվել է հայերեն («Հայրենիք»-ի հրատարակությունում սխալմամբ՝ 1924 թվականին) և տպագրվել «Հայրենիք» ամսագրում (1928, 6-րդ տարի, № 7, էջ 72-81): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Ինչպես արդեն նշել ենք, «Հարցումն և պատասխանիք» բնագիրը լույս է տեսել ուսումնասիրության ֆրանսերեն տարբերակին կից: - Էջ 169:

2. Հայտնի է, որ Ն. Ադոնցը ձեռքի տակ է ունեցել Հարցարանի չորս ձեռագրերի ընդօրինակությունները, որ նրան էր տրամադրել **Գ. Տեր-Մկրտչյանը**: Այժմ հայտնի են Հարցարանի ևս երկու օրինակներ [տե՛ս Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. № 9298, էջ 302ա-306բ (շրջանառության մեջ է դրել Լ. Խաչիկյանը վերը նշված հոդվածում): Երկրորդը՝ Երուսաղեմի Ս. Հակոբյանց վանքի Մատենադարան, ձեռ. № 1912 (շրջանառության մեջ է դրել Ն. Պողարյանը, տե՛ս «Մայր ցուցակ հայերեն ձեռագրաց Սրբոց Հակոբյանց», հատ. Զ, Երուսաղեմ, 1972, էջ 346-347)]: - Էջ 177:

3. Տե՛ս **Н. Марр**, Из летной поездки в Армению, "Записки Восточного отделения императорского русского археологического общества", т. V, СПб., 1891, стр. 9: - Էջ 180:

4. Սույն բնագիրը թեականորեն վերագրվել է ոմն Վարդանի (Ն. Մառ), Վարդանանց պատմության հեղինակ Եղիշեին (Ն. Ակինյան), XIII դարի նշանավոր մտածող Վահրամ Րաբունուն (Ղ. Ալիշան) և այլն: Այժմ կարելի է ապացուցված համարել այն, որ հեղինակը Վահրամ Րաբունին է (տե՛ս **Լ. Խաչիկյան**, նշվ. աշխ., էջ 311): - Էջ 181:

5. Ն. Ադոնցից հետո սույն բնագրի ուսումնասիրությամբ 1964 թ. զբաղվել է Լ. Խաչիկյանը, որը վերահրատարակել է այն՝ ձռագրերի հիման վրա կատարելով մի քանի ճշտումներ (տե՛ս **Լ. Խաչիկյան**, նշվ. աշխ.): «Բանբեր Մատենադարանի» հրատարակության շնորհիվ է, որ Գրիգոր Պարթևին վերագրված «Հարցումը» հայտնի դարձավ հայագիտական լայն շրջաններին, քանզի, ինչպես նշում է Լ. Խաչիկյանը, «Revue de L'Orient chretien» պարբերականի այն համարից, որտեղ տպագրվել էր Ադոնցի հոդվածը, Հայաստանում գեթ մի օրինակ չկար: - Էջ 183:

6. Հավանաբար խոսքը Եղիշեի «Մեկնութիւն արարածոց» բնագրի մասին է (տե՛ս նշված բնագրի Հ. Քյոսեյանի հրատարակության հավելվածի ծանոթագրությունների բաժինը՝ «Մատենագիրք Հայոց», Ա հատոր, Ե դար, Անթիլիաս-Լիբանան, 2003, էջ 929): - Էջ 183:

## ՆՇԱՆԱԳԻՐ ԿԱՐԳԱՑ ԲԱՆԻՑ ԵԶՆԿԱՆ ԵՐԻՑՈՒ
(Էջ 184)

**Գրված է 1938 թ. Բրյուսելում: Լույս է տեսել Երուսաղեմի Ս. Հակոբյանց մայրավանքի «Սիոն» պարբերականում (1938, № 5, էջ 147-153, № 6, էջ 180-185): Արտատպվում է այս հրատարակությունից:**

1. Տե՛ս «Սամուէլ քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», առաջաբանով, համեմատությամբ, հավելվածներով և ծանոթագրություններով Ա. Տեր-Միքելյանի, Վաղարշապատ, 1893, էջ 266-268: - Էջ 186:

2. Տե՛ս «Նկարագիր կարգաց ի բանից Եզնկանն Երիցու», հրատ. Ն. Ակինյան, առաջաբան և բնագիր: - Էջ 186, ծան. 1:

3. Տե՛ս **Sukias Baronian**, Catalogue des munuscritis arméniens de la Bibliothèque Nationale, Paris, 1867 (անտիպ, գտնվում է Փարիզի Ազգային գրադարանի հայկական ձեռագրերի բաժնում, № 298): - Էջ 187:

4. Տե՛ս I.-P. **Martin**, Catalogue des manuscritis arméniens de la Bibliothèque Nationale de Paris, vol. I-II, Paris, 1878 (անտիպ, գտնվում է Փարիզի Ազգային գրադարանի հայկական ձեռագրերի բաժնում, № 300, 301): - Էջ 187:

5. V. **Langlois,** Collection des historiens anciens et modernes de L'Arménie, tome premier, Paris, 1867, p. 101, 103.- Էջ 187:

6. Այնուհանդերձ, հայագիտական գրականության մեջ շարունակում է տիրապետել այն կարծիքը, թե Վրթանես Քերթողը գործել է նաև Կոմիտաս Ա Աղցեցի կաթողիկոսի (615-628) գահակալության օրոք [տե՛ս Ն. **Պողարյան,** Հայ գրողներ (Ե-ԺԷ դար), Երուսաղեմ, 1971, էջ 55; Կ. **Զիպարյան**, Պատմություն, հայ հին գրականության, Վենետիկ, 1992, էջ 215 և այլն]: - Էջ 197:

7. «Համառօտ պատմութիւն ընտիր ոճով վասն շինութեան վկայարանի Հռիփսիմեանց ի Կոմիտասայ կաթողիկոսէ» (տե՛ս «Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի», հատ. Ա, Վենետիկ, 1836, էջ 19): Բացի այդ, ժամանակին Գ. Տեր-Մկրտչյանը հավաստիացնում էր, թե Էջմիածնի ձեռագրերի մեջ հայտնաբերել է Վրթանես Քերթողին վերագրվող «Գիւտ նշխարաց Հռիփսիմեանց» խորագիրը կրող մի երկասիրություն (տե՛ս «Շողակաթ», ժողովածու, Ս. Էջմիածին, 1913, էջ 172):



Անտարակույս, երկու դեպքում էլ խոսքը գնում է նույն երկասիրության մասին, սակայն թե՛ մեկը, և թե՛ մյուսը ցայսօր անտիպ են ու չուսումնասիրված, իսկ դրանց հեղինակային պատկանելության հարցը մնում է առկախ: - Էջ 197:

8. Գ. Հովսեփյանցը, որ նույնպես հրատարակել է Նշանագիրը, իր հրատարակությունից դուրս է թողել կաթողիկոսների ցանկը՝ գտնելով, որ այն չի պատկանում Եզնիկ Երեցի հեղինակությանը (տե՛ս Գ. **Հովսեփյան,** Հիշատակարանք ձեռագրաց, հատ. Ա, Անթիլիաս, 1951, էջ 25, ծան. 3 ): - Էջ 201:

9. Տարիներ անց, Ն. Ակինյանը անհրաժեշտ է համարել դարձյալ անդրադառնալ այն բնագրի քննությանը (տե՛ս Ն. **Ակինյան,** Նկարագիր կարգաց բանից Եզնկա Երիցու. վերահայաց մը, «Հանդես ամսօրյա», 1962, էջ 9-22): - Էջ 201:

## ՀԱՅՐ Ն. ԱԿԻՆՅԱՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԻՆ ՊԱՏԱՍԽԱՆ
(Էջ 202)

**Գրված է 1938 թվականին, Բրյուսելում: Լույս է տեսել «Սիոն»-ում (1938, № 11, էջ 330-337, № 12, էջ 381-383: 1939, № 1, էջ 10-15): Արտատպվում է այս հրատարակությունից:**

1. Տե՛ս նախորդ հոդվածը՝ աստ, էջ 184-201: - Էջ 202:

2. **Ն. Ակինյան,** Դարձյալ Նկարագիր, («Նշանագիր») կարգաց ի բանից Եզնկան երիցու, տե՛ս «Հանդես ամսօրյա», 1938, № 4-8, էջ 238-259: - Էջ 202:

3. Թերապևտների համայնքը, որը նկարագրում է Փիլոնը, գտնվում էր ոչ թե Հռոմում, այլ Եգիպտոսում՝ Ալեքսանդրիայի արվարձաններում՝ Մարեա լճի ափին: - Էջ 215:

4. **Ե. Դուրյան,** Նկատողություններ Եզնիկի Աստվածաշնչական վկայություններու մասին, տե՛ս «Ամբողջական երկեր Եղիշե պատրիարք Դուրյանի». Զ. Ուսումնասիրություններ և քննադատություններ, Երուսաղեմ, 1935: - Էջ 222, ծան. 1:

5. Հմմտ. աստ, էջ 197, տե՛ս նաև էջ 598, ծան. 6: -Էջ 230:

## ԱՄՊԵԼԻՈՍ՝ ՔԵՐՍՈՆԻ ԵՊԻՍԿՈՊՈՍ
**(Հայկական «Գիրք թղթոցի» քննադատության շուրջ)**
(Էջ 232)

**Գրված է 1913 թ. Ս. Պետերբուրգում: Լույս է տեսել «Христианский Восток» հանդեսում (т. II, СПб., 1913, стр. 175-186): Հայերեն թարգ-**

մանությունը (**Վ. Ա. Դիլոյան**) կատարվել է այս առաջին տպագրությունից:

1. Տե՛ս «Գիրք թղթոց». մատենագրութիւնք նախնեաց, Թիֆլիս, 1901, տե՛ս նաև նոր՝ երկրորդ, բարեփոխված և լրացված հրատարակությունը՝ «Գիրք թղթոց», աշխատասիրությամբ Նորայր արքեպ. Պողարյանի, Երուսաղեմ, 1994: - Էջ 232:

2. Ժամանակին «Գիրք թղթոց»-ի վերաբերյալ լույս տեսած մատենախոսականներից տե՛ս Հ. Գյուլխանդանյանի («Գիրք թղթոց»-ի պակասները և նրանից դուրս մնացած թղթերը Մայր Աթոռի «Գիրք թղթոց» ձեռագիրների մեջ, «Արարատ», 1902, էջ 560-569, 748-753) և Ն. Ակինյանի («Թղթոց գրքին» հավաքիչն ու հավաքման ժամանակը», «Հանդես ամսօրյա», 1907, էջ 371-374) գրախոսականները: - Էջ 232:

3. Թե ինչ ազդեցություն է ունեցել Տիմոթեոսը հայ դավանաբանական մտքի վրա կարելի է գաղափար կազմել Ն. Ակինյանի՝ «Տիմոթեոս Կուզ հայ մատենագրության մեջ» (Վիեննա, 1909) ուսումնասիրության միջոցով: - Էջ 236:

4. Տե՛ս Գ. Տեր-Մկրտչյան, Տիմոթեոս Կուզի Հակաճառության հայ թարգմանության ժամանակը և Սուրբ Գրքի երրորդ կամ «Նորաթեր» հայ թարգմանությունը, Վաղարշապատ, 1908, տե՛ս նաև նորագույն հրատարակությունը՝ Գ. Տեր-Մկրտչյան, Հայագիտական ուսումնասիրություններ, Գիրք Բ, Ս. Էջմիածին, 1998, էջ 290-312: Դեռևս 1908 թ. սեպտեմբերի 27-ին Գ. Տեր-Մկրտչյանին ուղղված նամակում Ն. Ադոնցը Միաբանի ուշադրությունը հրավիրում է չափազանց կարևոր տոմարական մի ուղղումի վրա, որ կարող էր օգտակար լինել Տիմոթեոս Կուզի թարգմանության ժամանակը որոշելիս՝ «Առաջին անգամից Ձեր եզրակացությունը ինձ շփոթեց, բայց շուտով ինձ համար միանգամայն պարզվեց, որ մի թեթև ձեռագրական <վրիպակի> զոհ եք եղել: Կարդալով Ձեր այն տողերը, որ քննում եք Դիոսկորոսի մահվան տարին 454 թ.- այն է՝ «452-455 քառամյակին Նավասարդի մեկը հանդիպում է օգոստոսի 5-ին, ուրեմն՝ սեպտեմբերի 2-ը ընկնում էր Նավասարդի 29-ին, մինչդեռ **Հոռի վեցը** հանդիպում էր **սեպտեմբերի 9-ին**, ուրեմն՝ անհնարին է սեպ[տեմբերի] 2 = Հոռի 6» (էջ 12) , - կարդալով այս տողերը, կրկնում եմ, ակամայից գոչեցի. «Հեր օրհնած, կնշանակե ձեռագրի սեպ[տեմբերի] 2 պետք է կարդալ 9». սեպ[տեմբերի] Բ, փոխանակ Թ: Զարմանալին այն է, որ Դուք հարց եք բարձրացնում Հոռի ընթերցման անաղարտության վերաբերյալ, բայց նույն հարցը չեք տալիս սեպ[տեմբերի] 2-ի նկատմամբ: Այլապես հարցը Ձեր համար կպարզվեր, և այնպիսի շփոթ չէիք առաջացնի բոլոր մասնագետների մտքերի մեջ» (տե՛ս Գ. Տեր-Մկրտչյան, Հայագիտական ուսումնասիրություններ, Գիրք Բ, էջ 643-644): - Էջ 240:



## «ՀԱՅՈՑ ՆԱԽՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ» ՍԵԲԵՈՍԻ ԵՐԿՈՒՄ ԵՎ ԴՐԱ ԱՂԵՐՍՆԵՐԸ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ ԵՎ ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԻ ԵՐԿԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏ
(էջ 243)

Գրված է 1899-1900 թթ. ընթացքում Ս. Պետերբուրգում և Մյունխենում: Շարադրանքն ավարտել է 1900 թ. հունվարի 23-ին Մյունխենում: Հենց նույն օրը Ն. Մառին հղված նամակում Ադոնցը շտապում է տեղեկացնել «հոդվածիկը», ինչպես ինքն է համեստորեն ո՛րակում, ավարտելու և այն Ս. Պետերբուրգ՝ Մառին ուղարկելու մասին. «Այսօր Ձեզ եմ ուղարկում Անանունի մասին հոդվածը... Խնդրում եմ Ձեզ լինել սիրալիր, ծանոթանալ դրա հետ, ոճական ու տրամաբանական անհարթությունները մաքրել, շտկել և տեղավորել «Византийский временник»-ում, կամ ուր որ հարկ կհամարեք (տե՛ս **Պ. Հ. Հակոբյան**, նշվ. աշխ., էջ 87): Հոդվածը տպագրվել է «Византийский временник» հանդեսում (т. VIII, отд. 1, СПб., 1901, стр. 64-105): Լույս է տեսել նաև առանձին հրատարակությամբ (СПб., 1901, стр. 42): Հայերեն թարգմանությունը (**Վ. Ա. Դիլոյան**) կատարվել է առաջին տպագրությունից:

1. Ն. Ադոնցից ավելի վաղ Անանունի խնդրին անդրադարձել էին բազմաթիվ ուսումնասիրողներ, որոնցից կարելի է առանձնացնել Ն. Մառի («О начальной истории Армении Анонима. К вопросу об источниках Истории Моисея Хоренского. По поводу критических статей проф. Cariére, «Византийский временник», т. I, вып. 2, СПб., 1894, стр. 263-306. Տե՛ս նաև սույնի հայերեն թարգմանությունը՝ «Անանունի Հայոց նախնական պատմության մասին»: Մովսես Խորենացու Պատմության աղբյուրներում հարցի վերաբերմամբ. պրոֆ. Ս. Կարիերի քննական հոդվածների առթիվ, «Հանդես ամսօրյա»,1895, էջ 18, 54, 108, 195, 277), Գր. Խալաթյանցի («Անանունը որպես ուշ ապոկրիֆ», տե՛ս **Гр. Халатянц**, Армянский эпос в Истории Армении М. Хоренского, стр. 58-105: Նույնի՝ «Մարաբա Մծուրնացի և կեղծ Սեբեոս», Վենետիկ, 1898), Ստ. Մալխասյանցի («Սեբեոսի պատմությունը և Մովսես Խորենացի», Թիֆլիս, 1899) հետազոտությունները: - Էջ 243:

2. Ք. Պատկանյանը Անանունի խնդրին անդրադարձել է ինչպես Սեբեոսի երկասիրության ռուսերեն թարգմանության (СПб., 1862) ու հայերեն բնագրի (Ս. Պետերբուրգ, 1879) հրատարակությունների առաջաբաններում և ծանոթագրություններում, այնպես էլ իր «Ванские надписи и значение их для истории Передней Азии» (СПб., 1881) մենագրության մեջ: - Էջ 243:

3. Տե՛ս «Պատմութիւն Սեբէոսի Եպիսկոպոսի ի Հերակլն» երկասիրության (Կոստանդնուպոլիս, 1851) հրատարակիչ Թադեոս Միհրդատյանցի ծանոթագրությունները: Տե՛ս նաև **Ա. Գարագաշյան**, Քննադատություն Մարիփասյան պատմության («Քննական պատմություն Հայոց», մասն Ա, Թիֆլիս, 1895, էջ 124-202): - Էջ 244:

4. Բնագրի այս հատվածում թերթերի պոկված-կորած լինելու հանգամանքը ընդունում են նաև այլ ուսումնասիրողներ (Ստ. Մալխասյանց, Գ. Աբգարյան և այլն): - Էջ 246:

5. Տպագրական վրիպակ է, պետք է լինի՝ 255: - Էջ 249:

6. «Հինգ թագավորներ» արտահայտությունը բուռն մեկնաբանությունների տեղիք է տվել: Դրան անդրադարձել են Ք. Պատկանյանը, Ն. Մառը, Բ. Գևորգյան-Ճուղուրյանը, Ն. Ակինյանը, Ստ. Մալխասյանցը, Պ. Անանյանը, Լ. Շահինյանը, Գ. Աբգարյանը և շատ ուրիշներ: Գ. Աբգարյանը համերաշխվելով Ք. Պատկանյանի հետ «Հինգ թագաւորացն» արտահայտությունը սրբագրում է «հին թագաւորացն» [տե՛ս **Գ. Աբգարյան**, Հինգ թագավորների առեղծվածը, «Լրաբեր», ՀԳԱ ակադեմիայի (հասարակ. գիտ.), 1981, № 3, էջ 78-92]: - Էջ 255, ծան. 2:

7. 1900 թ. փետրվարին Ն. Մառին ուղղված նամակում Ադոնցը խնդրել է այս հղումը փոխարինել մեկ այլ՝ ավելի էական հղումով. «Խնդրում եմ Գուտշմիդին հղումը փոխարինել կամ Ֆ. Յուստիի «Iranisches Namensbuch» (Marburg, 1895) ուսումնասիրությունով կամ Ա. Գարագաշյանով (տե՛ս **Պ. Հ. Հակոբյան**, նշվ. աշխ., էջ 88): Սակայն, ինչպես նշում է նաև Պ. Հ. Հակոբյանը, այս ուղղումը չի կատարվել: - Էջ 258, ծան. 1:

8. Մովսես Խորենացու ժամանակագրական աղյուսակի վերականգնման ուղղությամբ Ադոնցի կատարած այս փորձը կարևոր նշանակություն ունեցավ խնդրի հետագա ուսումնասիրության գործում: Այս բնագավառում նշանակալից երևույթ է հատկապես Գ. Խ. Սարգսյանի աշխատանքը (տե՛ս «Մովսես Խորենացու «Հայոց պատմության» ժամանակագրական համակարգը», Երևան, 1965): - Էջ 275:

9. Ն. Մառին հղված վերոբերված նամակում (տե՛ս **Պ. Հ. Հակոբյան**, նշվ. աշխ., էջ 88) Ադոնցը խնդրել է Մովսես Խորենացու «Ճեներակուր-պատրի թագաւորութեան» հատվածը լրացնել նաև նրան վերագրվող «Աշխարհացոյց»-ի համապատասխան հատվածով: Բայց, այդ լրացումը ևս չի կատարվել: - Էջ 277:

10. «Հայոց նախնական պատմությանը» նվիրված Ն. Ադոնցի այս երկասիրությունը, որն իրավամբ համարվում է «փայլուն աշխատություն» (Գ. Աբգարյան), շրջադարձային նշանակություն ճեռք բերեց հիմնախնդրի հետագա ուսումնասիրության գործում: Այս բնագավառում գրաղված հետազոտողներից կարելի է առանձնացնել Ա. Մատիկյանի, Բ. Սարգիսյանի, Գր. Տեր-Պողոսյանի, Ն. Ակինյանի, Հ. *Մանանդյանի*, Պ. *Անանյանի*, *Խ. Թորոսյանի*, *Մ. Գրիգորյանի*



համապատասխան ուսումնասիրությունները և մասնավորապես Գ. Աբգարյանի հետազոտությունների շարքը, որն ամփոփված է նրա «Սեբեոսի պատմությունը» և «Անանունի առեղծվածը» հանգամանալից մենագրության և նրա իրականացրած Սեբեոսի Պատմության քննական բնագրի (Երևան, 1979) ծանոթագրությունների մեջ: - Էջ 293:

## ԳՐ. ԽԱԼԱԹՅԱՆՑ, ՀԱՅ ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԸ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ «ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ» ՄԵՋ: ՄՈՍԿՎԱ, 1903

(էջ 294)

Գրված է 1903 թ. Ս. Պետերբուրգում: Լույս է տեսել «Записки восточного отделения императорского русского археологического общества» պարբերականում (СПб., 1904, № 16, стр. 0145-0161): Հայերեն թարգմանությունը (**Վ. Ա. Դիլոյան**) կատարվել է այս առաջին տպագրությունից:

1. Իր գիտական գործունեության ամբողջ ընթացքում Գր. Խալաթյանցը շարունակաբար անդրադարձել է Մովսես Խորենացու խնդրին՝ դրան նվիրելով շուրջ 40 անուն ուսումնասիրություններ: Այդ աշխատությունների մի զգալի մասը ձեռագիր վիճակում գտնվում է նրա անձնական թղթերում (տե՛ս Չարենցի անվ. Գրականության և արվեստի թանգարան, Գր. Խալաթյանցի ֆոնդ, 69, բաժին I և II):- Էջ 294:

2. Ա. Գուտշմիդի աշխատության հայերեն թարգմանությունը տե՛ս (**Ա. Գուտշմիդ**, Թե Մովսես Խորենացվո Պատմության որչափ հավատք պետք է ընծայել, «Բազմավեպ», 1877, էջ 43-51, 110-116, 213-222, 289-302 ): - Էջ 294:

3. Տե՛ս **Ա. Կարիեր**, Նորագույն աղբերք Մովսիսի Խորենացվո. Քննադատական ուսումնասիրությունք, հատ. Ա, Վիեննա, 1893, հատ. Բ, Վիեննա, 1894: - Էջ 294:

4. Այս խնդրին Գր. Խալաթյանցն անդրադարձել է նաև առանձին հոդվածով (տե՛ս **Gr. Chalathianz**, War Artases von Armenien der Besieger des Kröses?, «Zeitschrift für die Kunde des Morgenlandes», Wien, 1903, VIII, 1, p. 37-46, տե՛ս նաև սույնի հայերեն թարգմանությունը («Հանդես ամսօրյա», 1903, №12, էջ 353-358): - Էջ 299:

5. Հետագայում՝ 1938 թ., Ն. Ադոնցը հրատարակել է այդ բնագիրը (տե՛ս **Ն. Ադոնց**, Նշանագիր կարգաց բանից Եզնկան Երիցու, սուտ, էջ 184-201): - Էջ 309:

6. Կյանքի վերջին տարիներին Գր. Խալաթյանցը ձեռնամուխ է եղել խորենացիագիտական իր պրպտումների արդյունքների ամփոփմանը, որին էր նվիրված

«Համեմատական ուսումնասիրությունք Մովսես Խորենացվո «Պատմութիւն Հայոց»-ի» աշխատանքը, որը սակայն մնացել է անավարտ (տե՛ս Չարենցի անվ. Գրականության և արվեստի թանգարան, Գր. Խալաթյանցի ֆոնդ, 69, բաժին I, № 4, 119 ձեռագիր էջ): - Էջ 312:

7. Նույն 1904 թ. Ն. Ադոնցը մատենագիտական թռուցիկ ակնարկով անդրադարձել է նաև Մ. Աբեղյանի՝ «Հայ ժողովրդական առասպելները Մովսես Խորենացու Հայոց պատմության մեջ» (Վաղարշապատ, 1901) մենագրությունը, որն ուղղված էր Գր. Խալաթյանցի «Հայկական էպոսը Խորենացու պատմության մեջ» (Մոսկվա, 1896) մենագրության հիմնական դրույթների դեմ: Անհրաժեշտ ենք համարում հայերեն թարգմանությամբ ներկայացնել նաև Ադոնցի այդ մատենախոսականը.

«Էջմիածնի Հոգևոր ճեմարանի հայկական բանասիրության ուսուցիչ Մ. Աբեղյանի ներկա գրախոսության շարժառիթը պ[արոն] Գր. Խալաթյանցի «Հայկական էպոսը Խորենացու պատմության մեջ» մագիստրոսական աշխատանքն է:

Հեղինակը իր առջև դրել է երկու խնդիր. մի կողմից փորձում է ապացուցել Գր. Խալաթյանցի ուսումնասիրության մեթոդի ու եզրակացությունների սնանկությունը, մյուս կողմից առաջարկում է հարցի սեփական լուսաբանությունը:

Այն ամենը, որ վերաբերում է պ. Գր. Խալաթյանցի գրքին՝ ըստ էության ավելորդ է, քանի որ, եթե հեղինակը շարադրում է իր հայացքները, դրանով էլ դրսևորում է իր վերաբերմունքը Խալաթյանցի աշխատանքի նկատմամբ: Այդպիսի շարադրանքի հետևանքով Աբեղյանի աշխատանքը ծավալով նշանակալիորեն մեծացել է ի վնաս ծրագրված համեստ աշխատանքի կուռ կառուցվածքի:

Հեղինակը Խալաթյանցի հետ բանավեճը վարում է համեմատական մեթոդոլոգիայի հողի վրա: Խորենացու տերմինաբանությունը քննարկելիս, որով նշվում են ժողովրդական ստեղծագործությունների տարբեր ձևերը, և դրանց նկատմամբ պատմիչի վերաբերմունքը պարզելիս, պ. Աբեղյանը «Պատմութիւն Հայոց»-ի մեջ եղած էպիկական նյութերը բաժանում է երկու մասի՝ դիցաբանական կամ դյուցազնական և պատմական կամ պատմա-առասպելական: Առաջինին նա հատկացնում է Հայկի ու Բելի, Արայի ու Շամիրամի, Վահագնի ու Արտավազդի մասին զրույցները, ինչպես նաև այն բոլորը, ինչ վերաբերում է Վիշապազունքին: Այդ զրույցների հիմնական մոտիվները տարերային ուժերի ու երևույթների՝ որոտի ու կայծակի, ամպի ու փոթորկի կերպարների պայքարի մարմնավորումն է պատմական հիշողության շերտանստվածքների հետ:

Պատմա-առասպելական զրույցների շարքն ընդգրկում է 252 տարվա ժամանակաշրջան՝ Արտաշատի հիմնադիր (Ք. ա. 180 թ.) Արտաշեսից ընդհուպ մինչև ալաններին հաղթող Արշակունի Տրդատ I-ը (Ք. հ. 72 թ.): Դրանք խմբավորված են երկու անունների՝ Տիգրանի ու Արտաշեսի շուրջը: Տիգրան Հայկյանի մասին Խորենացու զրույցները պատմիչը քաղել է, ինչպես ենթադրում է Աբեղյանը, ինչ-որ



գրավոր աղբյուրից՝ «Հիւսումն պիտոյից», բայց այդ աղբյուրն՝ ինքը, ստեղծվել է ժողովրդական էրգերի հիման վրա: Դրանց մեջ Տիգրանի անվան ներքո ենթադրվում է ոչ թե Հայկյան Տիգրանը, այլ Տիգրան Մեծը՝ Հռոմի նշանավոր հակառակորդը: Տիգրանի աղմկալից թագավորությունը՝ լի փայլով ու հաղթանակներով, ժողովրդի հիշողության մեջ պետք է որ խորը հետք թողներին: Նրա մասին հյուսված երգերը Խորենացու օրոք համապատասխանեցվել են Տիգրան Հայկյանի ավելի հեռավոր ժամանակներին: Տիգրանին տված Խորենացու բնութագրության մեջ պ. Աբեղյանը նկատում է գծեր, որոնք, ինչպես ինքն է կարծում, համապատասխանում են պատմության արժանահավատ տվյալներին: Ինչ վերաբերում է Արտաշեսի մասին զրույցներին, ապա դրանք փաստորեն ժողովրդական հիշողություններ են Արտաշես I-ի և II -ի ու Տրդատ I -ի մասին: Խնամքով առանձնացնելով պատմական հատիկը առասպելականից՝ պ. Աբեղյանը քննության է առնում էպիկական մոտիվները, ընդ որում, լայնորեն օգտվում է ժամանակակից ժողովրդական բանահյուսությունից: Հեղինակին հիանալի ծանոթ այդ բնագավառի վերաբերյալ էքսկուրսներն աշխատանքի լավագույն էջերն են» (տե՛ս «Византийский временник», 1904, № 11, стр. 316-317): - Էջ 312:

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՎՈ «ՀԱՅՈՑ ՊԱՍՏՄՈՒԹՅԱՆ» ԹՎԱԿԱՆԻ ՄԱՍԻՆ

**(Պարոն Հանս Լեվիի մեկ հոդվածին առթիվ)**

(էջ 313)

Գրված է 1936 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion» հանդեսում (տե՛ս **N. Adontz,** Sur la date de L'Histoire de L'Arménie de Moïse de Chorène», «Byzantion», t. XI, fasc. 1, Bruxelles, 1936, p. 97-100): Արևմտահայերեն թարգմանությամբ տպագրվել է «Սիոն» պաշտոնաթերթում («Սիոն», 1936, № 10, էջ 335-336): Լույս է տեսել նաև արևելահայերեն թարգմանությամբ (տե՛ս **Ն. Ադոնց**, Հայաստանի ոսկեհանքը. Փոքր ուսումնասիրություններ, էջ 93-96): Արտատպվում է «Սիոն»-ի հրատարակությունից:

1. Հանս Լեվին (1901-1945) գերմանական հայագիտության նշանավոր ներկայացուցիչներից է, աշակերտել է Յո. Մարկվարտին: Հրատարակել է Կեղծ Փիլոնի «Յաղագս Յովնանու» երկասիրության հայերեն բնագիրը: - Էջ 313:

2. Տե՛ս **H. Lewy,** The date and purpose of Moses of Choren's History, «Byzantion», t. XI, fasc. 1, Bruxelles, 1936, p. 81-96: - Էջ 313:

3. Տե՛ս **Մովսես Խորենացի,** Պատմութիւն Հայոց (քննական), Գիրք Գ, գլ. 65, էջ 352: - Էջ 313:

4. Ակնարկում է իր «Армения в эпоху Юстиниана» մենագրության 10-րդ գլխում զետեղված նյութը: - էջ 313:

5. Տե՛ս **Ղազար Փարպեցի**, Պատմութիւն Հայոց (քննական), էջ 170: - էջ 314:

6. Անդ, էջ 175: -էջ 314:

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ ՎԵՐԱԲԵՐՄԱՄԲ ՊԱՐՈՆ ԼԵՎԻԻ ՆՈԹԻՆ ՄԱՍԻՆ
(էջ 316)

Գրված է 1936 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion» հանդեսում (տե՛ս **N. Adontz**, A propos de la note de M. Lewy sur Moïse de Chorène», «Byzantion», t. XI, fasc. 2, Bruxelles, 1936, p. 597-599): Արևմտահայ թարգմանությամբ տպագրվել է «Սիոն» ամսագրում (տե՛ս «Սիոն», 1937, № 7, հուլիս, էջ 224-225): Լույս է տեսել նաև արևելահայերեն թարգմանությամբ (տե՛ս **Ն. Ադոնց**, Հայաստանի ոսկեհանքը. Փոքր ուսումնասիրություններ, էջ 97-99): Արտատպվում է «Սիոն»-ի հրատարակությունից:

1. Տե՛ս **H. Lewy**, An additional note on the date of Moses of Chorene, «Byzantion», t. XI, fasc. 2, Bruxelles, 1936, p. 593-596: - էջ 316:

2. **Ն. Ադոնց**, Վասիլ Հայազն (Մեծագործ կայսր. 867-886), տե՛ս **Ն. Ադոնց**, Երկեր, Ա, էջ 433: - էջ 316:

3. Տե՛ս նույն տեղում, ծանոթագրությունների բաժին, էջ 584, ծան. 7: - էջ 316:

4. Ակնարկում է Աշոտ I Բագրատունուն: - էջ 316:

## ԽՈՐԵՆԱՑԻԱԿԱՆ ՀԱՐՑՆ ՈՒ ՀԱՅՐ ՎԱՐԴԱՆ ՀԱՑՈՒՆԻ
(էջ 319)

Գրված է 1938 թ. Բրյուսելում: Առաջին անգամ լույս է տեսել 1938 թ. «Անահիտ» հանդեսում (տե՛ս «Անահիտ», 1938, № 1-3, էջ 85-87): Այս վերահրատարակել ենք մենք (տե՛ս **Ն. Ադոնց**, Քննություն Մովսես Կաղանկատվացու, աշխատասիրել, ծանոթագրել և ներածությունը գրել է Պ. Հ. Հովհաննիսյանը, Ս. Էջմիածին, 2005, հավելված 2, էջ 159-163): Երրորդ անգամ լույս է տեսել Ն. Ադոնցի՝ «Հայաստանի ոսկեհանքը» ժողովածուում (էջ 100-104): Արտատպվում է «Անահիտ»-ի հրատարակությունից:

1. Սույն գրության առիթ է ծառայել հետևյալը: «Անահիտ» ամսագրի խմբագիր Ա. Չոպանյանը հատուկ նամակով դիմել է Ադոնցին կարծիք հայտնելու Մովսես Կաղանկատվացու խնդրին նվիրված Մխիթարյան միաբան Վ. Հացունու տեսակետների վերաբերյալ: Ադոնցը Չոպանյանին պատասխանել է սույն գրությամբ, որը լույս տեսավ «Անահիտ»-ում: Վ. Հացունին հանդես եկավ *«Կաղանկատվացին կապրեր Է դարուն»* (տե՛ս «Բազմավէպ», 1938, № 10-12, էջ 268-277) ընդդիմախոսականով: Այդ հոդվածի առիթով է, որ Ն. Ադոնցը գրել է իր «Քննություն Մովսես Կաղանկատվացու» ուսումնասիրությունը: - էջ 319:

## ՂԵՎՈՆԴ ԵՎ ԽՈՐԵՆԱՑԻ
**(Քննություն հայր Ն. Ակինյանի տեսության)**
(էջ 323)

Գրված է 1933 թ. Բրյուսելում: Բնագիրը պահվում է Բոստոնի «Հայրենիք» ամսագրի արխիվում: Առաջին անգամ տպագրվել է «Հայրենիք» ամսագրում (1933, 11-րդ տարի, № 8, էջ 79-90, № 9, էջ 120-126): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Ղևոնդի Պատմության խորագրի հարցը շարունակում է մնալ խնդրական: Պատմության առաջին հրատարակիչ Կ. Շահնազարյանցը այն խորագրել է «Արշավանք արաբաց ի Հայս» (Փարիզ, 1857, նույնը և ֆրանսերեն թարգմանությամբ, Paris, 1856), Ք. Պատկանյանը՝ «Խալիֆների պատմություն» (ռուսերեն թարգմանություն, Ս. Պետերբուրգ, 1862), Ստ. Մալխասյանցը՝ «Պատմութիւն Ղևոնդեայ Մեծի վարդապետի Հայոց» (Ս. Պետերբուրգ, 1887), Ա. Տեր-Ղևոնդյանը (աշխարհաբար թարգմանություն, Երևան, 1982) և Զ. Արզումանյանը (անգլերեն թարգմանություն, Philadelphia, 1982)՝ «Պատմություն»: Կարծում ենք, որ Ադոնցի առաջարկած տարբերակը՝ «Վարդապետի Ղեւոնդի ժամանակագիրք տանն Թորգոմայ», արժանի է առավել լուրջ ուշադրության: - էջ 326:

2. Այնուհանդերձ, ուսումնասիրողները շարունակում են մնալ այն կարծիքին, որ Ղևոնդի Պատմության սկիզբը վնասված է (տե՛ս **Ղևոնդ**, Պատմություն, թարգմանությունը, ներածությունը և ծանոթագրությունները՝ Ա. Տեր-Ղևոնդյանի, Երևան, 1982, էջ 11): - էջ 328:

3. Ակնարկում է Հռոմի կայսր Տրայանոսի կարգադրությամբ, Հայոց թագավոր Պարթամասիրի սպանությունը (114 թ.): - էջ 330:

4. «Ողբ»-ի վերջին լավագույն վերլուծությունը պատկանում է Գ. Խ.

Սարգսյանին (տե՛ս **Գ. Խ. Սարգսյան**, Մովսես Խորենացու Ողբը նոր մեկնա-*բանությամբ, «Պատմա-բանասիրական հանդես», 1997, №1, էջ 119-130): - Էջ 341:*

5. Այլ կապակցությամբ արդեն նշել ենք, որ Ն. Ադոնցը վերջնական չէր համարում իր այս տեսակետը և գտնում էր, որ ապագայում Խորենացու բնագրի ավելի մանրամասն քննությունը կարող է նոր մեկնաբանությունների ու եզրակացությունների տեղիք տալ: - Էջ 351:

## ՓՈՔՐ ՍՈԿՐԱՏԻ ՀԵՂԻՆԱԿԸ
(էջ 352)

Գրված է 1936 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Սիոն» պաշտոնաթերթում (տե՛ս «Սիոն», 1936, № 10, էջ 300-304): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Թերևս ակնարկում է 1931 թ. Պարսկա-Հնդկաստանի թեմի առաջնորդ Մեսրոպ արք. Տեր-Մովսիսյանի վերաբերյալ «Յառաջ» և մամուլի այլ օրգաններում տպագրված վարկաբեկիչ հոդվածները: Հոդվածներում շեշտվում էր այն հանգամանքը, թե իբր Մեսրոպ սրբազանը խորհրդային գաղտնի ծառայությունների գործակալ է: Հայտնի է, որ այս, ինչպես նաև այլ կեղծ մեղադրանքների հիման վրա, պարսկական իշխանությունները 1931 թ. հոկտեմբերի 30-ին Մեսրոպ սրբազանին վտարել են Պարսկաստանից, որով թեմը զրկվեց իր բարեխնամ առաջնորդից (տե՛ս «Վավերագրեր հայ եկեղեցու պատմության», Գիրք Թ. Խորեն Ա Մուրադբեկյան կաթողիկոս Ամենայն Հայոց, կազմեց Ս. Բեհրուդյան, Երևան, 1996, էջ 313-315): - Էջ 352:

2. Գագիկ II-ի ատենաբանության լրիվ բնագիրը («Հարկ եղև մեզ և ի խնդիր») բերել է Մատթեոս Ուռհայեցին (տե՛ս **Մատթեոս Ուռհայեցի**, Ժամանակագրութիւն, էջ 163-178): - Էջ 353:

3. Փոքր Սոկրատի բնագրի թարգմանության ժամանակի և հարակից խնդիրների մասին հետաքրքրական են Նորայր Բյուզանդացու («Տեղեկութիւնք ի Մեծ և ի Փոքր Սոկրատայ Պատմութիւնս Եկեղեցւոյ», հրատ. Մ. Մինասյան, «Հանդես ամսօրյա», 1983, էջ 369-374), Ն. Ակինյանի («Փոքր Սոկրատ և Մովսես Խորենացի», «Հանդես ամսօրյա», 1948, № 3-6, էջ 173-190), «The Armenian Adaptation of the Ecclesiastical History of Socrates Scholasticus [commonly known as «the Shorter Socrates»]. Translation of the Armenian Text and Commentary by Robert W. Thomson. Peeters: Hebrew University, Armenian Studies 3» (Leuven-Paris-Sterling, VA 2001), М. Шириняn, Краткая редакция древнеармянского перевода Церковной истории Сократа Схоластика. [«Византийский временник», 43 (1982), стр. 231-241] *ուսումնասիրությունները: - Էջ 359:*



## ՔՆՆՈՒԹՅՈՒՆ ՄՈՎՍԵՍ ԿԱՂԱՆԿԱՏՎԱՑՈՒ
(էջ 360)

Գրված է 1938-1940 թթ., Բրյուսելում: Աշխատանքի առաջին մասը (աստ, էջ 360-409) լույս է տեսել «Անահիտ» հանդեսում («Անահիտ», Փարիզ, 1939, № 3, էջ 69-77, № 4-5, էջ 22-31, № 6, էջ 4-9: 1940, № 1-3, էջ 21-29): Երկրորդ մասը (աստ, էջ 409-418) լույս չի տեսել՝ Փարիզի գերմանական ռազմակալման պայմաններում «Անահիտ» ամսագրի ընդհատման պատճառով: Լույս չտեսած հատվածը պահպանվում է «Անահիտ»-ի արխիվում, որն այժմ գտնվում է Չարենցի անվ. Գրականության և արվեստի թանգարանի Ա. Չոպանյանի ֆոնդում (տե՛ս ՉԳԱԹ, Արշակ Չոպանյանի ֆոնդ, VI, «Անահիտ»-ի, բաժին, II մաս, № 6): Երրորդ մասը (աստ, էջ 418-483) գտնվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի Ն. Ադոնցի թղթունում (տե՛ս Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, զզրոց Բ, թղթածրար 1, թ. 72-144): Աշխատությունն առաջին անգամ ամբողջությամբ հրատարակել ենք մենք (տե՛ս **Ն. Ադոնց**, Քննություն Մովսես Կաղանկատվացու, Ս. Էջմիածին, 2005): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Տե՛ս նաև սույն հատորը, էջ 319-322 : - Էջ 360, ծան. 2:

2. Տե՛ս «Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական պատմութիւն և Պատմութիւն վարուց Սրբոյն Սեղբեստրոսի եպիսկոպոսի Հռոմայ», հատ. Ա-Բ, աշխատասիրությամբ՝ Մեսրովպ վ. Տեր-Մովսիսյանի, Վաղարշապատ, 1897: - Էջ 363:

3. Հոդվածում սխալմամբ նշված է 1932: Ադոնցի այդ աշխատությունը տե՛ս նաև սույն հատորում, էջ 323-351: - Էջ 368, ծան. 1:

4. Մովսես Խորենացու ժամանակի և գործի վերաբերյալ Ն. Ադոնցի տեսակետների քննությունը տե՛ս մեր «Մովսես Խորենացի և Նիկողայոս Ադոնց» ուսումնասիրությունը, «Հայոց պատմության հարցեր», Գիտական հոդվածների ժողովածու, № 6, Երևան, 2005, էջ 307-316: - Էջ 369:

5. Խոսքը Բ. Սարգիսյանի աշխատասիրությամբ լույս տեսած «Անանուն ժամանակագրութիւն». խմբագիր յօրինեալ յԷ դարու» (Վենետիկ, 1904) բնագրի մասին է, որը հայագիտության մեջ հայտնի է նաև «Գիրք կայսերաց» վերտառությամբ: - Էջ 375, ծան.:

6. Ակնարկում է հայագետ Սուքիաս վարդապետ Պարոնյանին (1831-1903): Ս. Պարոնյանը հայտնի է Մովսես Խորենացուն նվիրված իր ուսումնասիրություններով և հատկապես «Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց. ուղ-

դագրեալ և ծանոթագրեալ» հոդվածաշարով (տե՛ս «Բանասեր», ամսագիր, Փարիզ, 1899, հատ. Ա, պրակ 1-4: 1900, հատ. Բ, պրակ 4: 1903, հատ. Ե, պրակ 6-7): - Էջ 376, ծան. 2:

7. Նկատի ունի Կարապետ վարդապետ Շահնազարյանցի (Փարիզ, 1860) և Մկրտիչ Էմինի (Մոսկվա, 1860) հրատարակությունները: - Էջ 384:

8. Այլ կապակցությամբ Ն. Ադոնցն իրավացիորեն տարակուսում է. «Ի՞նչ եղավ Զարմիհրի սերունդը, հայտնի չէ» (տե՛ս **Ն. Ադոնց**, Երկեր, Ա, էջ 509):- Էջ 388:

9. Ավելի վերև (աստ, էջ 390) ակնարկը պարսիկ զորավարի ոչ թե քրոջ, այլ դստեր մասին է: Մովսես Կաղանկատվացու մոտ խոսքը գնում է զորավարի քրոջ մասին (տե՛ս **Մովսես Կաղանկատվացի**, Պատմութիւն Աղուանից աշխարհի, Երևան, 1983, էջ 176): - Էջ 394:

10. Բնագրի այս էջի մոտ կեսը չի պահպանվել: - Էջ 409:

11. «Մնացյալը», որ նվիրված էր Կաղանկատվացու Պատմության Բ գրքի ԻԹ-ԼԵ գլուխների վերլուծությանը (Ադոնցի ձեռագրով 15 էջ) 1940 թ. «Անահիտ»-ի ընդհատման պատճառով լույս չի տեսել: Բարեբախտաբար այն պահպանվել է «Անահիտ» ամսագրի արխիվում (տե՛ս Չարենցի անվ. Գրականության և արվեստի թանգարան, Արշակ Չոպանյանի ֆոնդ, VI, «Անահիտ»-ի բաժին, II մաս, № 6): - Էջ 409:

12. Այստեղ ավարտվում է Չարենցի անվ. Գրականության և արվեստի թանգարանում պահպանվող հատվածը: - Էջ 418:

13. Այստեղից սկսվող հետագա ամբողջ շարադրանքը 1992 թ. հայտնաբերել ենք մենք Համազգայինի Բեյրութի գրական պահոցի Ն. Ադոնցի թղթոնում (տե՛ս Պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, գզրոց Բ, թղթածրար 1, թ. 72-144): Այս և հետագա գլխահամարակալումները պատկանում են մեզ՝ հետևելով Ն. Ադոնցին, որ նախորդ չորս հատվածները համարակալել էր՝ Ա, Բ, Գ, Դ: - Էջ 418:

14. Խոսքը անանուն «Narratio de rebus Armeniae» («Պատմություն Հայաստանի իրադարձությունների մասին», հայ-քաղկեդոնական փոքրածավալ երկասիրության մասին է (տե՛ս աստ, էջ 607, ծան. 3): - Էջ 422:

15. Ակնարկն ուղղված է հ. Վ. Հացունուն: - Էջ 426:

16. Հյուսիսային Կովկասի ժողովուրդների (հոներ, խազարներ) հետ հայերի որդեգրած հարաբերությունների վերաբերյալ հետագա ուսումնասիրություններից անդրադարձել է մասնավորապես Ս. Տ. Երեմյանը (տե՛ս **С. Т. Еремян**, Моисей Каланкатуйский о посольстве албанского князя Вараз-Трдата к хазарскому хакану Алп-Илитверу, «Записки института востоковедения АН СССР», Л., 1939, т. 7, стр. 129-155): - Էջ 430:



17. Տե՛ս **Լ. Մելիքսեթ-Բեկ**, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա (Ե-ԺԲ դար), Երևան, 1934, էջ 47: Հմմտ. **Migne,** PG., t. 132, col. 1253: - Էջ 435:

18. Հետաքրքիր է նշել, որ Վրթանես Քերթողի «Յաղագս պատկերամարտաց» բնագրի այդ հատվածների ընդօրինակությունները պահպանվում են Ադոնցի թեյրության թղթոնում (տե՛ս պահարան Ա, գզրոց Բ, թղթածրար Ա/Ա 8, թ. 1-10): - Էջ 440, ծան. 1:

19. Շ. Սմբատյանի կարծիքով, այս աղավաղումը հետևանք է ոչ թե կեղծիքի կամ դիտավորյալ միջամտության, այլ՝ գրչական սխալի (տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», 1973, № 1, էջ 187): - Էջ 441:

20. Գրիգոր Բակուրյանի «Տիպիկոն»-ի ռուսերեն նոր թարգմանությունը ծանոթագրություններով և ուսումնասիրությամբ տե՛ս «Типик Григория Пакуриана», введение, перевод и комментарий В. В. Арутюновой-Фиданян, Ереван, 1978: - Էջ 455, ծան. 1:

21. Խոսքը VIII դ. կեսերին ապրած Երաշխավոր վանքի վանահայր Արտավազդի (Աբրահամ) մասին է, որը հյուրընկալեց Վահան Գողթնեցուն նրա թափառումների ժամանակ: Վահանի նահատակությունից յոթ տարի անց Արտավազդը հեղինակեց նրա վկայաբանությունը: - Էջ 463, ծան. 3:

22. Այլ կապակցությամբ Ն. Ադոնցը *Սմբատ Բագրատունու մահվան թվական է համարում 727 թվականը* (տե՛ս **Ն. Ադոնց**, Երկեր, Ա, էջ 289):- Էջ 465:

23. Իրոք, այս հատվածը տեղ է գտել Վ. Առաքելյանի պատրաստած Կաղանկատվացու 1983 թ. քննական հրատարակության համապատասխան բաժնում (էջ 329-331):- Էջ 478:

24. Մեկ այլ առիթով Ն. Ադոնցը հստակորեն մատնանշում է Սահլ Սմբատյանի Բագրատունյաց ծագումը. «Կաղանկատվացու խոսքը, թե Սահլ Եռանշահիկ և կամ Զարմիհրական տոհմից էր, արժեք չունի: Սահլի հոր Սմբատ անունը, որ զուտ Բագրատունի է, հաստատում է նրա ծագումը» (տե՛ս **Ն. Ադոնց**, Երկեր, Ա, էջ 509): - Էջ 479:

25. Ձեռագիրն այստեղ ընդհատվում է. ենթադրում ենք, որ Ն. Ադոնցն հասել է Քննության ծրագրված եզրին: Պատմաբանի թղթոնի թղթածրարներից մեկում (պահարան I, գզրոց Բ, թղթածրար 1) առկա է Մովսես Կաղանկատվացու Պատմության Առաջին գրքի Ա-Գ գլուխների քննությանը նվիրված սևագիր-անավարտ մի ուսումնասիրության սկիզբ (ընդամենը վեց էջ): Այդ հատվածը տե՛ս **Ն. Ադոնց**, Քննություն Մովսես Կաղանկատվացու, էջ 149-158: - Էջ 483:

## ՓՂՈՍԿՐՅԱ ԱՎԵՏԱՐԱՆԻ ԱՐՎԵՍՏԸ
(էջ 484 )

Գրված է 1936 թ. Բրյուսելում: Լույս է տեսել Երուսաղեմի Ս. Հակոբյանց միաբանության «Սիոն» պաշտոնաթերթում (տե՛ս «Սիոն», 1936, № 9, էջ 273-274):

Գրության շարժառիթ է ծառայել արվեստաբան Սիրարփի Տեր-Ներսեսյանի հոդվածը՝ նվիրված 989 թ. Էջմիածնի Ավետարանի մանրանկարների թվականի խնդրին (տե՛ս «The date of the intial Miniatures of the Etchmiadzin gospel», «Art Bulletin», 1933, vol. XV, № 4, տե՛ս նաև սույնի հայերեն *թարգմանությունը*՝ **Ս. Տեր-Ներսեսյան,** *Հայ* արվեստը միջնադարում, ժողովածու, Երևան, 1975, էջ 31-55):

Արտատպվում է «Սիոնի» հրատարակությունից:

Սույն գրությունը «Սիոն»-ում Ադոնցի տպագրած առաջին աշխատությունն էր, ուստի խմբագրությունն այդ ուրախառիթ հանգամանքի կապակցությամբ հոդվածի սկզբում կատարել է հետևյալ ծանոթությունը. «Սիոն» ինքզինքը պատված կզգա՝ հյուրընկալելով բազմահմուտ պրոֆ. Ն. Ադոնցի հետևյալ արժեքավոր էջերը և հույս կտածե, թե այսուհետև իր հայագիտական բաժինը նոր փայլ մը պիտի ստանա մեծանուն բանասերին ուսումնասիրություններով, բուն իսկ իր կողմե հայերեն գրված կամ իր՝ ուրիշ լեզուներով գրվածներեն հայերենի վերածված»: Ինչպես կանխատեսել էր խմբագրությունը, Ն. Ադոնցը գործուն աշխատակցություն ցուցաբերեց «Սիոն»-ին՝ 1936-1939 թթ. այստեղ տպագրելով 10 ուսումնասիրություններ:

1. Յո. Ստրժիգովսկին խնդրո առարկա Ավետարանի գրության թվականին անդրադարձել է «Das Etschmiadzin-Evangeliar. Beiträge zur Geschichte der armenischen, ravennatischen und syro-ägyptischen Kunst», տե՛ս «Byzantinische Denkmäler», I, Wien, 1891, ուսումնասիրության մեջ: - Էջ 484:

2. Տե՛ս **F. Macler,** L'Evangile arménien. Edition phototypique du manuscrit № 299 de la bibliothèque d'*Etchmiadzin*, Paris, 1920. - Էջ 484:

3. Ն. Ադոնցը գրախոսել է նաև Ս. Տեր-Ներսեսյանի՝ «Manuscrits arménien iliustrés des XII$^{e}$, XIII$^{e}$ et XIV$^{e}$ siécles de la bibliothéque des pers Mekhitaristes de Venice», Paris, 1937, ուսումնասիրությունը, որը սակայն մնացել է անտիպ (տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, Պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան Թ/Ա 8, թ. 1-4): - Էջ 484:



4. Հիշատակարանները տե՛ս Գ. Հովսեփյանց, Հիշատակարանք ձեռագրաց, հատ. Ա, էջ 155-156: - Էջ 484:

5. Տե՛ս ստ, էջ 487-489:- Էջ 486:

## ՄԼՔԵԻ ԱՎԵՏԱՐԱՆԻ ԳՐՈՒԹՅԱՆ ՏԱՐԻՆ
(էջ 487)

Գրված է 1936 թ. Բրյուսելում: Լույս է տեսել Երուսաղեմի Ս. Հակոբյանց միաբանության «Սիոն» պաշտոնաթերթում («Սիոն», 1936, № 9, էջ 274-275): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Վասպուրականի թագավոր Գագիկ Արծրունու (908-943) կնոջ՝ Մլքե թագուհու Ավետարանի մասին մանրամասն տե՛ս «Զարդանկարք Աւետարանի Մլքէ թագուհւոյ», հրատարակությունը (Վենետիկ, 1902): Ձեռագրի հիշատակարանները տե՛ս **Գ. Հովսեփյանց,** Ցուցակ ձեռագրաց, հատ. Ա, էջ 109-110: - Էջ 487:

2. Լազարյան ճեմարանի Ավետարանը հստակ թվագրվում է 887 թվականով (տե՛ս **Ա. Մաթևոսյան,** Լազարյան ճեմարանի հնագույն ձեռագիրը, «Պատմա-բանասիրական հանդես», 1973, № 1, էջ 123-132): Արդի հայագիտությունը անվերապահ համերաշխվում է Ն. Ադոնցի տեսակետի հետ և ընդունում, որ Մլքե թագուհու Ավետարանը գրված է 862 թվականին: - Էջ 489:

## ՇԱՀՆԱՄԵԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՎԱՆԴԸ
(էջ 490)

Գրված է 1935 թ. Բրյուսելում: Տպագրվել է «Յուսաբեր» օրաթերթում (տե՛ս «Յուսաբեր», օրաթերթ քաղաքական, հասարակական, գրական, Կահիրե, 1935, 6 հուլիսի, № 81, էջ 3): Վերահրատարակվել ենք մենք (տե՛ս «Իրան Նամե»), Գիտամշակութային, հասարակական-քաղաքական հանդես, Երևան, 1994, № 1, էջ 4-5): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. 1935 թ. լրացավ պարսիկ ականավոր բանաստեղծ Աբուլ Ղասըմ Ֆիրդուսու ծննդյան 1000-ամյակը: Ֆիրդուսին ծնվել է մոտ 935 թ. Խորասանի Թուս քաղաքում: Ճանաչված բանաստեղծ էր, երբ 976 թ. պատվեր ստացավ հանգերգելու արձակ Շահնամեն («Գիրք թագավորաց»): Ֆիրդուսին աշխատանքն ավարտել է 1010 թ., որից քիչ անց՝ 1020 թվականին, մահացել է Թուս քաղաքում: Համաշխարհային գրական հասարակայնությունը հարգանքի տուրք մատուցելով մեծ գրողի հիշատակին՝

պատշաճ հանդիսավորությամբ նշեց նրա ծննդյան 1000-ամյակը: - Էջ 490:

2. Խոսելով իր օրերի Իրանի Փահլավիների թագավորական հարստության մասին, Ադոնցը բնավ նպատակ չի հետապնդել գովերգելու շահական վարչակարգը, այլ դրսևորել է կոնցեպտուալ պատմական մոտեցում, ընդգծելով ի դեմս այդ հարստության, որ կրում էր Փահլավի անունը, իրանականության զարթոնքը երկրում, իրանական պատմական և մշակութային արժեքների վերծանումը XX դարի սկզբին: Ականավոր պատմաբանը խորհում էր պատմական կատեգորիաներով, երբեք տուրք չտալով ժամանակի կոնյունկտուրային: - Էջ 493:

3. Հայ իրականությունը ևս լայնորեն արձագանքել է այդ իրադարձությանը: 1934 թ. Երևանում Կուլտուրայի պատմության ինստիտուտը լույս ընծայեց բանաստեղծի ծննդյան հազարամյակին նվիրված հատուկ ժողովածու, որն ամփոփում էր վեց ուսումնասիրություն: Լույս տեսան նաև Ռ. Աբրահամյանի («Ֆերդովսին և իր Շահնամեն», Թեհրան, 1934), Ա. Սարուխանի («Ֆիրդուսի և Մովսես Խորենացի», Վիեննա, 1936) և այլոց ուսումնասիրությունները, կատարվեցին նոր թարգմանություններ (Ս. Տարոնցի, Մ. Թիրաքյան), կազմակերպվեցին գրական երեկոներ և այլն: - Էջ 494:

## ՔՆՆԱԿԱՆ ՏԵՂԵԿԱԳԻՐ ՊՐՈՖ. Ն. ԱԴՈՆՑԻ

**Ի մասին Գարեգին արքեպիսկ. Հովսեփյանի «Հոգևոր կեդրոններ և Գլածորի բարձր դպրոցը» ուսումնասիրության**

(Էջ 495)

Գրված է 1936 թ. հուլիսի 18-ին Բրյուսելում: Առաջին անգամ լույս է տեսել «Սիոն» պաշտոնաթերթում (տե՛ս «Սիոն», 1936, № 12, էջ 366-372): Այնուհետև հրատարակվել է Գ. Հովսեփյանցի`«Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ» ուսումնասիրության Գ հատորում (Նյու-Յորք, 1942-1943, էջ ԺԵ-ԻԴ): Երրորդ անգամ լույս է տեսել «Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ» ուսումնասիրության երկրորդ, ամբողջական հրատարակության մեջ (Անթիլիաս-Բեյրութ, 1969, էջ 462-466): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Ն. Ադոնցի Տեղեկագիրն ուղղված է Երուսաղեմի Հայոց պատրիարք Թորգոմ արքեպ. Գուշակյանին (1874-1939)՝ ի պատասխան վերջինիս հանձնարարության: Ն. Ադոնցի և Թ. Գուշակյանի հարաբերությունների մասին որոշ պատկերացում կարող է տալ մեր հետևյալ հրապարակումը (Պ. Հ. **Հովհաննիսյան**, Թորգոմ պատրիարք Գուշակյան և պրոֆեսոր Նիկողայոս Ադոնց, տե՛ս, «Հասկ-հայագիտական տարեգիրք», հատ. Է-Ը, Բեյրութ, 1995 -1996, էջ 467-477): - Էջ 495:



2. «Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ» ուսումնասիրությունը բաղկացած է երեք մասերից, որոնցից առաջինը լույս է տեսել Վաղարշապատում (1928), երկրորդը՝ Երուսաղեմում (1944), երրորդը՝ Նյու-Յորքում (1942-1943): Այստեղ խոսքը գնում է երրորդ մասի ձեռագրի վերաբերյալ, որը ժամանակին ներկայացվել է «Թարգմանչաց-Դուրյան» մրցանակին (1935-1936 թվականների համար) և որը Թորգոմ պատրիարքը ուղարկել է Ն. Ադոնցին՝ կարծիքի: Այս «Քննական տեղեկագիրը» հենց Ն. Ադոնցի կարծիքն է Գ. Հովսեփյանցի խնդրո առարկա աշխատության վերաբերյալ: Հատկանշական է, որ Գ. Հովսեփյանցի աշխատության վերաբերյալ երկրորդ Տեղեկագիրը գրել է ինքը՝ Թորգոմ պատրիարքը: - Էջ 495:

3. Խաչատուր Կեչառեցի, Ողբ վասն աւերման Տանն Արեւելեան, տե՛ս **Մ. Թ. Ավդալբեգյան**, Խաչատուր Կեչառեցի, Երևան, 1958, էջ 131-132: - Էջ 496:

4. Տե՛ս «Ողբ եւ մաղթանք ի Խաչատուր Կեչառեցոյ ասացեալ», անդ, էջ 141: - Էջ 498:

5. Հովհաննես վարդապետ Գառնեցու (մոտ 1180-1245) Խրատները հիմնականում անտիպ են և գտնվում են Երուսաղեմի Ս. Հակոբյանց մատենադարանի տարբեր ժողովածուներում: Բերված հատվածը քաղված է «Խրատ հոգեշահ ամենայն մարդոյ, մանաւանդ ժամարարի, ի խնդրոյ Սարգիս քահանայի» բնագրից (Տե՛ս **Գ. Հովսեփյան**, նշվ. աշխ., Անթիլիաս-Բեյրութ, էջ 207): - Էջ 498:

6. Տե՛ս **Սիմեոն Երևանցի**, Ջամբռ, Վաղարշապատ, 1873, էջ 283: - Էջ 499:

7. Այս արձանագրությունների նորագույն հրատարակությունը տե՛ս «Դիվան հայ վիմագրության», հատ. III, կազմեց Ս. Գ. Բարխուդարյան, Երևան, 1967, էջ 82: - Էջ 501:

8. Ն. Ադոնցն ու Գ. Հովսեփյանցը հոգեհարազատությամբ էին կապված միմյանց դեռևս Գևորգյան ճեմարանում համատեղ սովորելու տարիներից (1882-1891): Նրանց հարաբերությունների մասին տե՛ս մեր հրապարակումը (Պ. Հ. **Հովհաննիսյան**, Երկու գազաթ. Գարեգին արքեպ. Հովսեփյանց և պրոֆ. Նիկողայոս Ադոնց, տե՛ս «Հասկ-հայագիտական տարեգիրք», Զ տարի, Բեյրութ, 1994, էջ 339-352): - Էջ 503:

## «ԴԱՎԻԹ ԲԵԿ» ՎԵՊԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԻՄԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՐԺԵՔԸ

(Էջ 504)

Գրված է 1937 թ. Բրյուսելում: Առաջին անգամ տպագրվել է «Րաֆֆի (Հակոբ Մելիք-Հակոբյան). Կյանքը, գրականությունը, հիշողություններ» ժողովածուում (Փարիզ, 1937, էջ 122-148): Երկրորդ անգամ լույս է տեսել

Ն. Ադոնցի՝ «Հայկական հարց» ժողովածուում (Երևան, 1996, էջ 180-201): Արտատպվում է առաջին հրատարակությունից:

1. Ակնարկում է Րաֆֆու ծննդյան 100-ամյակը, որը լրացել էր 1935 թ.: Ա. Չոպանյանի գլխավորությամբ Փարիզում ստեղծվել է Կենտրոնական հոբելյանական հանձնաժողով, որը 1937 թ. հոկտեմբերի 31-ին կազմակերպել է մեծաշուք հանդես, նստաշրջան և քիչ ուշ՝ հրատարակել հատուկ ժողովածու: Ադոնցի հոդվածը գրվել է այդ առթիվ: Տե՛ս նաև Ադոնցի սույն հոդվածի գրախոսականը (**Ա. Աբեղյան**, «Հայրենիք», ամսագիր,1938, մարտ, № 5, էջ 172-173 ): - Էջ 504:

2. Խոսքը ազգային-եկեղեցական գործիչ, բանասեր Ներսես արքեպ. Մելիք-Թանգյանի (1866-1948) մասին է: Եղել է Ատրպատականի հայոց թեմի առաջնորդ (1912-1948): Ն. Մելիք-Թանգյանը Ադոնցի հայրենակիցն էր. հատկանշական է, որ նրանք միաժամանակ են սովորել և՛ Գևորգյան ճեմարանում և՛ Պետերբուրգի համալսարանում: - Էջ 504, ծան. 1:

3. Երկասիրության խորագիրը տրված է փոքր-ինչ եղծված. ճիշտն է՝ «Դաւիթ Բէգ. Ընտիր պատմութիւն Դաւիթ Բէգին, եւ պատերազմացն Հայոցն Խափանու որք եղեն ընդդէմ թուրքաց ի մերում ժամանակի, այն է յամի տեառն 1722, եւ Հայոց 1171» : - Էջ 505:

4. Արդյո՞ք ակնարկում է հայ ազատագրական շարժման ականավոր գործիչ, Գանձասարի կաթողիկոս Եսայի Հասան-Ջալալյանին, որն, ինչպես հայտնի է, որևէ աղերս չունի «Ընտիր պատմութեան» հեղինակի հետ: - Էջ 505:

5. Ղուկաս Սեբաստացու և ընդհանրապես «Ընտիր պատմութիւն Դաւիթ Բէգին» երկասիրության բնագրի, հեղինակի և հարակից պարագաների մասին ընդարձակորեն տե՛ս **Ե. Փեչիկյան**, «Դավիթ Բեկ»-ի պատմության աղբյուրները և Մխիթարյանք («Բազմավեպ», 1938, № 6-9, էջ 172-187): **Ս. Արամյան**, «Դավիթ Բեկ կամ «Պատմութիւն Ղափանցւոց» («Բազմավեպ», 1972, № 2-3, էջ 232-259: 1977, № 1-2, էջ 298-324: Նույնի՝ «Դավիթ Բեկի պատմության հեղինակ h. Ղուկաս Սեբաստացի Ստեփանյան (1709-1752)», տե՛ս «Դաւիթ Բէկ կամ «Պատմութիւն Ղափանցւոց», Վենետիկ, 1978, էջ 183-193: **Ս. Ճեմճեմյան**, Հ. Ղուկաս Սեբաստացի (1709-1752) հեղինակ Դավիթ Բեկի պատմության («Բազմավեպ», 1972, № 4, էջ 491-501) և այլն: - Էջ 506:

6. Ըստ Ղ. Ալիշանի, Ստեփանոս Շահումյանը և Ռոզալդա Մարիամ-Վարվառեն ունեցել են որդի՝ Հովհաննես-Անտոն (ծն. 1748 թ.) և դուստր՝ Մարթա (ծն. 1749 թ.) (տե՛ս **Ղ. Ալիշան**, Սիսական, Վենետիկ, 1893, էջ 301): - Էջ 506:

7. Ակնհայտ վրիպակ է: Ն. Ադոնցը այս թվականը բերում է հետևելով Ղ. Ալիշանին (տե՛ս **Ղ. Ալիշան**, անդ, էջ 301): Սակայն ավելի վաղ Մ. Ավգերյանը Ս. Ղազարի Մեծ ժամանակագրության մեջ (հատ. Ա, էջ 88) ճշտել է, որ Ղուկաս



Սեբաստացին մահացել է 1752 թ. սեպտեմբերի սկզբներին՝ Տիգրանակերտից ոչ հեռու՝ Առինճ գյուղի մոտ: - Էջ 506:

8. Այս թվականը ևս վրիպակ է: Ս. Արամյանի ուսումնասիրությունից ակներև է, որ Ղուկաս Սեբաստացին Շահումյանի և մյուս ականատեսների պատմությունները վերջնականապես խմբագրել է 1736-1737 թվականներին (տե՛ս «Պատմութիւն Ղափանցւոց», էջ 186): - Էջ 506:

9. Ինչպես վաղուց նկատել են ուսումնասիրողները, «շահնավազը» ոչ թե անձնանուն է, այլ տիտղոս, որ տրվում էր պարսից շահի կողմից վրաց թագավորին և բառացի թարգմանությամբ նշանակում էր «Ընդհանուր զորահրամանատար»: - Էջ 506:

10. Ա. Գյուլամիրյանցի մոտ այլ կերպ է՝ «Եւ յետ քանի աւուրց Սափիղուլին՝ Ղազա որդին Օրդուվարեցի, եւ որդին Շահիսլամին» (տե՛ս **Ա. Գյուլամիրյանց**, էջ 26, հմմտ. նաև **Ս. Արամյան**, էջ 126): Ուրեմն Սափի Ղուլին օրդուարցի Ղազու որդին էր և ոչ թե մեկ ուրիշը, ինչպես ներկայացնում է Ն. Ադոնցը: - Էջ 509:

11. «Մի տարի անցած», այսինքն՝ 1725 թվին: Իրականում, սակայն, օսմանցիները Երևանը պաշարել են մեկ տարի առաջ՝ 1724 թվին: - Էջ 510:

12. Պատմագրության մեջ այն կարծիքն է տիրապետում, թե տվյալ կոնտեքստում խոսքն իրոք վերաբերում է Վախթանգ VI -ի (1716-1724) որդի արքայազն Բակարին: Որ Բակարը կոչվել է «շահնավազ» ակներև է Աղվանից Եսայի և Ներսես կաթողիկոսների՝ ռուսաց արքունիկին հղված 1725 թ. հուլիսի 25-ի գրությունից. «Ապա Վախդանկ խանին եւ կամ իւր որդի Շահնաւազ խանին հրաման լինի զօրօք գալ ի Շամախի» (տե՛ս **Г. Эзов**, Сношение Петра Великого с армянским народом, СПб., 1898, стр. 423): Թեև կարծիք կա նաև, որ Դավիթ Բեկին Սյունիք ուղարկողը եղել է հենց Վախթանգ VI -ը (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», ԳԱ հրատ., հատ. 4, Երևան, 1972, էջ 164 և այլն ): - Էջ 513:

13. Ակնարկում է Պետրոս Մեծի բանագնաց իշխան Տուրկեստանովի միջոցով Վախթանգ VI -ին հղված նամակը (տե՛ս «Армяно-русские отношения в первой трети XVIII века», т. II, ч. II, Ереван, 1967, վավ. 165, էջ 7-13): - Էջ 514:

14. Վրիպակ է՝ պաշարված Երևանը օսմանցիներին անձնատուր է եղել 1724 թ. սեպտեմբերի 26-ին (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. 4, էջ 157 ): - Էջ 517:

15. Տե՛ս **Ն. Ադոնց**, Դավիթ Բեկ և Տեր Ավետիքի սերունդը, «Հայրենիք», ամսագիր, 1937, № 2, էջ 66-72: Նույնը տե՛ս **Ն. Ադոնց**, Երկեր, Ա, էջ 547-555: - Էջ 517, ծան. 1:

16. Խոսքը Կախեթի թագավոր Մամադկուլիխանի (Կոստանդինեի) մասին է: - Էջ 518:

17. Ակնարկը վերաբերում է ֆիդայական-հայդուկային շարժմանը: - Էջ 528:

## ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎՅԱՆԻ ՎԱԽՃԱՆԸ
(էջ 530)

Գրված է 1933 թ. ամռանը Բրյուսելում: Առաջին անգամ տպագրվել է «Վեմ» հանդեսում (տե՛ս «Վեմ», հանդես մշակույթի և պատմության, Գիրք Ա, սեպտեմբեր-հոկտեմբեր, Փարիզ, 1933, էջ 5-13): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Ա. Բակունցի գրքի լրիվ վերնագիրն է՝ «Խաչատուր Աբովյանի «անհայտ բացակայումը»: Արխիվային նոր վավերագրերի և անհայտ նամակների հիման վրա գրեց Ակսել Բակունց: Պետական հրատարակություն, Երևան, 1932»: - Էջ 530:

2. Ակնարկում է 1848 թ. Փետրվարյան ֆրանսիական հեղափոխությունը: - Էջ 530:

3. Խոսքը Երևանի գավառապետ Ն. Վ. Բլավատսկու և ոստիկանապետ Մորոխովեցի մասին է: - Էջ 530:

4. Նկատի ունի Խ. Աբովյանի հաջորդին՝ Երևանի գավառական դպրոցի տեսչի ժամանակավոր պաշտոնատար Ի. Դ. Տուրկեստանովին: - Էջ 531:

5. *Այդ ժամանակ Կովկասի փոխարքան էր կոմս Մ. Ս. Վորոնցովը: - Էջ 532:*

6. Աբովյանագետները մեծ գրողի կյանքում բավականին բացասական դեր են հատկացնում Ստ. Դ. Վեքիլովին (1810-1859): Կան նաև փաստեր, որ վերջինս ծածկաբար յուրացրել էր Աբովյանի ունեցվածքը: - Էջ 533:

7. Իրոք, Հ. Աբիխն (1806-1886) ու Խ. Աբովյանը 1844 թ. օգոստոս-սեպտեմբեր ամիսներին երեք փորձ են կատարել բարձրանալ Մասիսի գագաթը, սակայն չեն կարողացել: Աբիխը, առանց Աբովյանի ուղեկցության, Մասիսի գագաթը հաղթահարել է 1845 թ. հուլիսի 29-ին: Իսկ Աբովյանը, անգլիացի Հ. Սեյմուրի ուղեկցությամբ, լեռան կատարն է հասել 1846 թ. սեպտեմբերի 18-ին (տե՛ս «Դիվան Խաչատուր Աբովյանի», հատ. I, Երևան, 1940, էջ 170-171): Աբովյանի ձեռնարկած Մասիսի վերելքների մասին մանրամասն տե՛ս Պ. Հ. Հակոբյանի՝ «Վերելք» ուսումնասիրությունը (Երևան, 1982): - Էջ 534:

8. Գերմանացի գրող Ֆ. Բոդենշտեդտը (1819-1892) դասավանդել է Թիֆլիսի ուսումնական հաստատություններում (1844-1845), շրջագայել Անդրկովկասում: Մտերմացել է Աբովյանի հետ և վերջինիս օգնությամբ գերմաներեն թարգմանել հայկական ժողովրդական մի քանի երգեր: Աբովյանն ու Բոդենշտեդտը ունեցել են նամակագրական կապ: Հետաքրքրությունից զուրկ չեն Ֆ. Բոդենշտեդտի հուշերը Խ. Աբովյանի մասին (տե՛ս **Ֆրիդրիխ Բոդենշտեդտ,** Խաչատուր Աբովյանի մասին,



«Հայրենիք», ամսագիր, Բոստոն,1927, № 5): - Էջ 535:

9. Աբովյանի անհետացման այս վարկածը չափազանց տարածված է եղել և *շարունակում է մնալ: Դեռևս Աղոնցի* հոդվածի տպագրության օրերին՝ «X» ծածկանունով մեկը նույն «Վեմ»-ում լույս ընծայեց «Աբովյանի մահվան շուրջ» հոդվածը, որտեղ նշում է, թե Աբովյանը սիրային կապերի մեջ է եղել մահմեդական մի կնոջ հետ, որի «ամուսին ազդեցիկ խանը զրկում է նրան կյանքից, մարմինն ամփոփում իր պարտեզի ծառի տակ» (տե՛ս «Վեմ», 1934, Գիրք Դ, մարտ-ապրիլ, էջ 123-124): Աբովյանի անհետացման վերաբերյալ փաստերի քննությունը տե՛ս Վլ. Ղազարյան, Խաչատուր Աբովյան, Երևան, 1979, էջ 178-281: - Էջ 536:

10. Ժխտելով Աղոնցի առաջարկած սույն վարկածը՝ Ա. Չոպանյանը պատմաբանի հոդվածին նվիրված իր գրախոսականում (տե՛ս «Անահիտ», 1933, № 3-4, հոկտեմբեր-դեկտեմբեր, էջ 85-86) համերաշխվում է նույն շրջանում լույս տեսած Աշոտ Հովհաննիսյանի «Աբովյան» մենագրությունում (Երևան, 1933) պաշտպանված տեսակետին, որ գրողը ինքնասպանությամբ է վերջ տվել իր կյանքին. «Այս է ճշդագույն բացատրությունը Աբովյանի անհայտացման, և այդ բացատրությունը, Աշոտ Հովհաննիսյան՝ այս հարցը (ինչպես և Աբովյանի ամբողջ կյանքը, նկարագիրն ու գործը) հոյակապորեն լուսաբանող ու նյութը գրեթե սպառող իր մեծարժեք գրքով վերջնապես ապացուցած է»: Վերջում Չոպանյանը համոզմունք է արտահայտում, որ «Եթե Աղոնց տեսած ըլլար Աշոտ Հովհաննիսյանի գիրքը, այդ հոդվածը ապահովապես պիտի չգրեր կամ գեթ այդ ձևով պիտի չգրեր» (անդ, էջ 86): Ջուր համոզմունք է, քանզի աբովյանագետները Աղոնցի առաջադրած վարկածը շարունակում են դիտել հնարավորներից ու քննարկման արժանի վարկածներից մեկը: Աբովյանի կյանքի այս և բազում այլ առեղծվածների լուսաբանմանը նվիրված վերջին ուսումնասիրություններից տե՛ս Պ. Հ. **Հակոբյան,** Խաչատուր Աբովյանի կենսագրության առեղծվածները, Մայր Աթոռ Ս. Էջմիածին, 1997: - Էջ 537:

## ՊԵՇԻԿԹԱՇԼՅԱՆ ԵՎ ԿՑՈՐԴ ԽՆԴԻՐՆԵՐ
(էջ 538)

Գրված է 1931 թ. Փարիզում: Բնագիրը պահվում է Բոստոնի «Հայրենիք» ամսագրի արխիվում: Տպագրվել է «Հայրենիք» ամսագրում (1931, 9-րդ տարի, № 6, էջ 79-94): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Փարիզի «Հայ գրական ակումբը» ստեղծվել է 1928 թ. դեկտեմբերին: Այդ կապակցությամբ «Յառաջ» օրաթերթը տպագրել է հետևյալ տեղեկատվությունը. «Պրոֆ. Ն. Ադոնց, իշխան Հ. Արղության, Ա. Վաչյան, Մ. Տեր-Պետրյան և Լ. Շանթ նախաձեռնություն ունեցած են վերջերս Հայ գրասերներու ակումբ մը հաստատելու:

1928 թ. դեկտեմբերի 1-ին փարիզահայ մտավորականներու նախնական խորհրդակցության ժամանակ ստեղծվեց «Հայ գրական ակումբ»», որի առաջին նախագահ ընտրվեց պրոֆ. Ն. Ադոնցը, ատենապետ՝ Վ. Թորգոմյանը, խորհրդական Ռ. Բերբերյանը» (տե՛ս «Յառաջ», 1928, 5 դեկտեմբերի): - Էջ 538:

2. Ն. Ադոնցը «Հայ գրական ակումբի» նիստերին պարբերաբար հանդես է եկել զեկուցումներով, ինչպես օրինակ՝ «Պռոշյան իշխանական տունը և Խորայել Օրին», «Նոր տարին և Նավասարդի տոնակատարությունները հայոց մեջ», «Հայ հեռավոր անցյալի մեծագույն դեմքը. Մովսես Խորենացի», «Հայ հայտնի ախոյաններ անցյալում» և այլն: - Էջ 538:

3. Ն. Ադոնցը Փարիզի «Հայ գրական միության» անունից հատուկ շրջաբերականով դիմել է հայ հասարակությանը՝ ոգեկոչելու ծննդյան 100-ամյակը Մ. Նալբանդյանի և Ռ. Պատկանյանի.

«Փարիզի Հայ գրական միությունը պարտք է համարում հիշեցնել հայ հասարակության, որ հոկտեմբերի 27-ին լրանում է Միքայել Նալբանդյանի և նոյեմբերի 8-ին Գամառ Քաթիպայի (Ռ. Պատկանյան) ծննդյան հարյուրամյակը:

Հայությունը պարտաճանաչ չէր լինի, եթե մոռացության տար այս նվիրական օրերը: Երկուսն էլ, Նալբանդյան և Գամառ Քաթիպա, ոգեշունչ երգիչներ են մեր երեկվան երազների՝ երազներ, որ տակավին կենդանի են, մեր նոր և վերածնյալ կյանքի հառաջավոր կարապետներն են:

Երկուսն էլ գաղութահայ զավակներ են, ծնված Նոր Նախիջևանում, անզուգական դեմքեր, որ խրախուսիչ օրինակներ են մանավանդ ներկա պայմաններում տարաշխարհիկ հայության համար, մշտական ջահեր՝ նրա գիտակցությունն ու գործունեությունը պահելու և առաջնորդելու հայրենի ուղիների վրա:

Հայ գրական միությունը նախաձեռնել է տոնել երկու մեծ հայրենասերների երևման հարյուրամյա տարեդարձը, հատուկ և հանդիսավոր երեկույթ նվիրելով նրանց կյանքին և գործերին: Եվ այսու հրավիրում ենք բոլոր նրանց, որոնց համար թանգ են Նալբանդյանի և Գամառ Քաթիպայի հայրենաշունչ ավանդները, գալ հարգելու նրանց հիշատակը:

**Հայ գրական միության վարչության կողմից՝**

**Ն. ԱԴՈՆՑ»**

(տե՛ս «Յառաջ», 1930, 26 հոկտեմբերի): - Էջ 538:

4. Տե՛ս «Յառաջ», 1930, 21 նոյեմբերի, էջ 3: - Էջ 539:

5. Տե՛ս **Ն. Ադոնց**, Մ. Պեշիկթաշլյանի մասին, «Յառաջ», 1930, 27 նոյեմբերի, էջ 2-3: - Էջ 539:

6. Տե՛ս **Ա. Չոպանյան**, Ճշմարտության թշնամիները, «Ապագա», օրաթերթ, Փարիզ, 1931, 18 փետրվարի, էջ 2: - Էջ 539:



7. Տե՛ս **Ա. Չոպանյան**, Մկրտիչ Պեշիկթաշլյան և պրոֆ. Ն. Ադոնց, «Պայքար», օրաթերթ, Բոստոն, 1931, 9, 10, 13, 14, 15, 16, 18 հունվարի: - Էջ 539:

8. Ռ. Զարդարյանի գրականությանը նվիրված «Գրական ակումբի» նիստում Ն. Ադոնցի եզրափակիչ խոսքը տե՛ս «Յառաջ», 1930, 13 նոյեմբերի, էջ 2-3: - Էջ 539:

9. Խոսքը Ռ. Զարդարյանի՝ «Ամբողջական երկեր. Ա. Արձակ էջեր և հեքիաթներ, Փարիզ, 1930, 215 էջ» հատորի մասին է: - Էջ 540:

10. Նկատի ունի այն, որ Մ. Պեշիկթաշլյանի վերաբերյալ իր տեսակետները տեղիք են տվել բուռն վիճաբանությունների և որի արդյունքում տպագրվել են բազմաթիվ գրախոսականներ՝ Ե. Փեչիկյան («Բազմավեպ», 1930, № 12, էջ 524-531), Ս. Ք. («Յառաջ», 1930, 21 նոյեմբերի), Անստորագիր (անդ, 1930, 23 նոյեմբերի), Անստորագիր (անդ, 27 նոյեմբեր), Խմբագրական («Ազդարար» 1931, 2 փետրվարի), Ա. Չոպանյան («Ապագա», 1931, 18 փետրվարի), Խմբագրական («Ազդարար», 1931, 2 մարտի) և այլն: - Էջ 540:

11. Քրիստափոր Օնազլխի մասին տե՛ս «Յայսմավուրք», մայիս Թ, մարերի Բ, Կ. Պոլիս, 1834, էջ 208-209: - էջ 544:

12. Ակներև տպագրական վրիպակ է: Մխիթար Սեբաստացու արևմտահայ աշխարհաբարի առաջին քերականությունը («Դուռն քերականութեան») լույս է տեսել 1727 թվականին: - Էջ 545:

13. Ն. Ադոնցը Ղ. Ալիշանին հանդիպել է 1898 թ. օգոստոսին, երբ գիտական պրպտումներ էր կատարում Վենետիկի Մխիթարյան միաբանության Մատենադարանում: Ի դեպ, այդ օրերին (10 օգոստոսի, 1898 թ.) Ն. Մառին գրած նամակում Ադոնցը շեշտում է. «Սուրբ հայրերը, բացառությամբ Ղ. Ալիշանի և Գ. Զարբհանալյանի, ընդհանրապես քիչ հետաքրքրական են» [տե՛ս **Պ. Հ. Հակոբյան**, Նիկողայոս Ադոնցի նամակներից, «Լրաբեր», ՀԳԱ ակադեմիայի (հասարակ. գիտ.), 1975, № 11, էջ 84]: - Էջ 546:

14. Ակնարկում է Կ. Պոլսի շրջակայքում գտնվող Ալեմդաղ լեռան այն հիասքանչ նկարագրությունը, որ տալիս է Մ. Պեշիկթաշլյանը «Առ զեփյուռն Ալեմտաղի» քերթվածում: - Էջ 549:

15. Հատվածը քաղված է «Տաղ արարածոց» քերթվածից, որը վերագրվում է Կարապետ Բաղիշեցուն (մոտ 1490-1540): Կարապետ Բաղիշեցու մասին մանրամասն տե՛ս նրան նվիրված Ն. Ակինյանի հոդվածում («Հանդես ամսօրյա», 1937, էջ 318-328) - Էջ 551:

16. Խոսքը Հովհաննես Թլկուրանցու՝ «Վասն սիրոյ» տաղի մասին է (տե՛ս **Հովհաննես Թլկուրանցի**, Տաղեր, աշխատասիրությամբ՝ Էմ. Պիվազյանի, Երևան, 1960, էջ 217): - Էջ 553:

17. «1916 թ. գաղտնի դաշինքը» - Նկատի ունի 1916 թ. մայիսին Լոնդոնում Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի միջև կնքված Սայքս-Պիկոյի գաղտնի համաձայնագիրը, որով Արևմտյան Հայաստանի տարածքների զգալի մասն անցնելու էր Ռուսաստանին: - Էջ 559:

18. Խոսքը Զեյթունի Մովսես քահանայի մասին է, որը 1863 թ. ձմռանը Կ. Պոլսում Զեյթունի հայտնի իրադարձությունների վերաբերյալ թարմ և հավաստի տեղեկություններ էր փոխանցում պոլսահայ մտավորականներին: - Էջ 560:

19. Տե՛ս **Սրբուհի Երիցյան**, Իմ ծանոթությունը Մկրտիչ Պեշիկթաշլյանի հետ, «Փորձ», ամսագիր, Թիֆլիս 1887, № 4: - Էջ 562:

20. Մ. Պեշիկթաշլյանի կյանքին և գրական ժառանգությանը վերաբերող հարցերի մանրամասն ուսումնասիրությունը տե՛ս **Վ. Սաֆարյան**, Մկրտիչ Պեշիկթաշլյան, Երևան, 1972: - Էջ 562:

## ԽՈՍՔ ԱՎԵՏԻՍ ԱՀԱՐՈՆՅԱՆԻ ՄԱՍԻՆ
(Էջ 563)

Գրված է 1930 թ. մայիսին Փարիզում: Բնագիրը պահվում է Համազգայինի Բեյրութի գրական արխիվի պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (պահարան I, գզրոց Ե/Ա-8): Առաջին անգամ հրատարակել ենք մենք (տե՛ս «Գրական թերթ», 2000, 1 սեպտեմբերի, № 11-12, էջ 1-2): Տպագրվում է ինքնագրից:

1. Ն. Ադոնցի սույն խոսքն ասվել է հայ ականավոր գրողի, հասարակական-պետական գործչի գրական 40-ամյա հոբելյանի առթիվ հրավիրված նիստին: Դեռևս 1928 թ. փետրվարին Փարիզում գործող Սանասարյան համալսարանի և երիտասարդ հայ գրողների «Հարդգող» ընկերության նախաձեռնությամբ հրավիրված խորհրդակցության ժամանակ որոշում էր կայացվել հավուր պատշաճի նշել այդ կարևոր իրադարձությունը: Ն. Ադոնցի գլխավորությամբ ստեղծվեց նախաձեռնող խումբ (տե՛ս «Յառաջ», օրաթերթ, Փարիզ, 1928, 7 փետրվարի): Ավելի ուշ՝ հոբելյանական հանձնաժողով, որի գործադիր մարմնի ատենապետ ընտրվեց Ն. Ադոնցը (տե՛ս «Հայրենիք», ամսագիր, 1929, № 6, ապրիլ, էջ 175): Նախապատրաստական աշխատանքների ավարտից հետո տարբեր երկրների հայկական գաղթավայրերում սկսվեցին հոբելյանական միջոցառումներ, հրավիրվեցին գրական երեկոներ, նստաշրջաններ, տպագրվեցին գրողի ստեղծագործությունները: Ի վերջո, 1930 թ. մայիսի 10-ին Սորբոնի համալսարանի հանդիսությունների մեծ դահլիճում տեղի ունեցավ գլխավոր միջոցառումը: Ֆրանսիայի գրական ողջ ընտրանին, քաղաքական ու պետական շատ գործիչներ, հասարակայնության



ներկայացուցիչներ (ֆրանսիացի և հայ) մասնակիցը դարձան վտարանդի, աստանդական գրողի մեծարանքի այդ հիասքանչ ցույցին: Նիստը բացեց Ն. Ադոնցը, այնուհետև ելույթներ ունեցան ֆրանսիացի և հայ բազմաթիվ բանասացներ (Ն. Ադոնցի խոսքն ու նիստի մանրամասները տե՛ս «Յառաջ», 1930, 14 մայիսի, էջ 2-3; 18 մայիսի, էջ 2: Հոբելյանական նյութերը զետեղված են «Հոբելյան Ավետիս Ահարոնյանի քառասնամյա գրական գործունեության. 1890-1930, Փարիզ, 1930» գրքում): - Էջ 563:

2. Ա. Ահարոնյանը Գևորգյան ճեմարանում սովորել է 1881-1885 թթ.: Ճիշտ այդ տարիներին, մի դասարան ցածր, ճեմարանում սովորում էր նաև Ն. Ադոնցը: - Էջ 564:

3. Տարիներ անց, «Իմ գիրքը» հուշապատումում Ա. Ահարոնյանը ևս խոստովանում է. «Գևորգյան ճեմարանում հասունացած ու զարգացած աշակերտը խորապես զգում ու գիտակցում էր, որ ինքն այլևս այսինչ գյուղի, այսինչ գյուղացու զավակը չէ, այլ ազգի զավակը, որ ծանր ու գեղեցիկ պարտք ունի հանդեպ հայ հանրության» (տե՛ս Ա. Ահարոնյան, Երկերի լիակատար *ժողովածու*, հատ. 9, Բոստոն, 1948, էջ 400-406 ): - Էջ 564:

4. Ա. Ահարոնյանը սովորել է Լոզանի համալսարանի պատմափիլիսոփայական (1898-1901) և Սորբոնի համալսարանի գրականության (1901-1902) ֆակուլտետներում: - Էջ 565:

## ԳՐԱԿԱՆ ՆՇՄԱՐՆԵՐ
### ԴԵԿԱԴԱՆՍ ԵՎ ՍԻՄԲՈԼԻԶՄ
(Էջ 567)

Գրված է 1903 թ. Ս. Պետերբուրգում: Առաջին անգամ տպագրվել է իր իսկ կողմից հրատարակված «Բանբեր գրականության և արվեստի» հանդեսում (Գիրք Ա, Ս. Պետերբուրգ, 1903, էջ 153-173)»: Երկրորդ անգամ լույս է տեսել Գր. Հակոբյանի աշխատակցությամբ [տե՛ս «Գրականագիտական հանդես» (հոդվածների ժողովածու), հատ. Ա, Երևան, 2004, էջ 215-234]: Արտատպվում է վերջին հրատարակությունից:

1. Թարգմանությունը՝ Գ. Գասպարյանի: - Էջ 567:

2. *Մի երազ է սև*
*Կյանքիս իջել*
***Քնեք, հույսեր իմ,***
***Քնեք, տենչեր***

*Չեմ հիշում արդեն*
*Թե լավ, թե վատ...*
*Ես կույր եմ հիմա,*
*Տխուր հերիաթ:*

*Ես օրորոց եմ*
*Ու ծեռք մի թույլ*
*Ինձ օրորում է*
*Տխո՜ւր, տխո՜ւր:*

**Պ. Վեռլեն,** Տխրություն

Թարգմանությունը՝ Գ. Գասպարյանի: - Էջ 572, ծան. 1:

3. *Փա՜ռք քեզ, ո՜վ մեծ սատանա, բարձրունքներում Երկնքի,*
*Որ իշխել ես երբեմն, և խորքերում Դժոխքի,*
*Ուր պարտըված, տապալված երազում ես լո՜ւռ, մենակ,*
*Այնպե՜ս արա, որ հոգիս Իմաստության ծառի տակ*
*Հանգստանա քո կողքին, երբ ինչպես նոր Տաճարում՝*
*Տարածի քո ճակատին նա ոստերն իր դալարուն:*

**Շ. Բոդլեր,** Հարատություններ սատանայիճ

Թարգմանությունը՝ Հ. Բախչինյանի: - Էջ 572, ծան. 2:

4. «Պատկերը ցանկանալ չի կարելի, այն տիրելու ամեն մի շարժում նրան ցավ է պատճառում: Նա միակն է: Ի՞նչ անել: Խորհրդածել» (**Ա. Ժիդ**, Տրակտատ Նարցիզի մասին, տե՛ս **Ա. Ժիդ**, Նեղ դուռը, Երևան, 1994, էջ 182, թարգմանությունը՝ Ա. Հակոբյանի և Վ. Նալբանդյանի): - Էջ 578, ծան. 1:

5. «Նա [գիտնականը] նույնպես որոնում է երևույթների նախատեսակը և նրանց հաջորդականության օրենքները, նա վերակազմում է մի աշխարհ, իվերջո՝ կատարելապես պարզ, ուր ամեն բան կարգավորում է բնականոն ձևով» (անդ, թարգմանությունը՝ Ա. Հակոբյանի և Վ. Նալբանդյանի): - Էջ 579, ծան. 2:



# ՑԱՆԿԵՐ*

* Կազմեց Օլգա Վարդազարյանը:

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ

# ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ԵՐԿԵՐ

Հատոր Բ

Պատմա-բանասիրական ուսումնասիրություններ

Կազմի ձևավորումը՝ Գ. Վ. Մարիկյան
Տեխնիկական խմբագիր՝ Վ. Զ. Քոչարյան
Սրբագրիչ Վ. Վ. Դերձյան
Համակարգչային
շարվածքը և ձևավորումը՝ Ս. Ա. Գասպարյանի

Չափսը՝ 60x84 1/16: Թուղթը՝ օֆսեթ: Տպագրությունը՝ օֆսեթ:
Հրատ. 36.5 մամուլ, տպագր. 42.5 մամուլ +1 ներդիր = 39.53 պայմ. մամուլ:
Տպաքանակ՝ 500: Պատվեր՝ 15:

Երևանի համալսարանի հրատարակչություն, Երևան, Ալ. Մանուկյան 1

Երևանի համալսարանի տպարան, Երևան, Աբովյան 52

**Գալուստ Կյուլպենկյան հիմնարկության աջակցությամբ**
**Երևանի համալսարանի հրատարակչությունը**
**լույս է ընծայել հետևյալ գրքերը**

1. **Թ. Հակոբյան, Ստ. Մելիք-Բախշյան, Հ. Բարսեղյան** - Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, հատոր 3, 1998:
2. **Թ. Հակոբյան, Ստ. Մելիք-Բախշյան, Հ. Բարսեղյան** - Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, հատոր 4, 1998:
3. **Թ. Հակոբյան, Ստ. Մելիք-Բախշյան, Հ. Բարսեղյան** - Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, հատոր 5, 2001: (Բառարանը 2002 թ. արժանացել է ՀՀ նախագահի մրցանակին՝ «Մարդկային զարգացման և հումանիտարական արժեքների, այդ թվում՝ հումանիտար գիտությունների զարգացման բնագավառում ձեռք բերված նվաճումների համար»):
4. **Ստեփանոս Տարոնեցի Ասողիկ** - Տիեզերական պատմություն (աշխարհաբարի վերածեց Վ. Վարդանյանը), 2000 թ.:
5. **Հրաչյա Գաբրիելյան** - Հայկական լեռնաշխարհը, 2000 թ.:
6. **Ալեքսանդր Մարգարյան** - Հայերենի հոլովները, 2000 թ.:
7. Նահապետ Քուչակի բանաստեղծական աշխարհը, աշխատասիրությամբ ակադեմիկոս Հրանտ Թամրազյանի, Եր., 2001 թ.:
8. Շարական (ժողովածու) - Աշխարհաբարի վերածեցին **Ա. Մադոյանը և Գ. Մադոյանը**, 2001 թ.:
9. **Հրաչյա Միրզոյան** - Յովհաննես Մրքուզ Ջուղայեցի, 2001 թ.:
10. **Ռուբեն Ղազարյան** - Միջին գրական հայերենի բառապաշարը, 2001 թ.:
11. **Բաբկեն Հարությունյան** - Մեծ Հայքի վարչա-քաղաքական բաժանման համակարգն ըստ «Աշխարհացոյցի», 2001 թ.:
12. **Վարդան Արևելցի** - Տիեզերական պատմություն (աշխարհաբարի վերածեց Գ. Թոսունյանը), 2001 թ.:
13. **Գևորգ Մադոյան** - Գրիգոր Անավարզեցին շարականագիր, 2001 թ.:
14. **Գևորգ Աբգարյան** - Հայ տպագրության նախապատմություն, 2001 թ.:
15. **Փայլակ Անտոնյան** - Հովհաննես սարկավագ Իմաստասեր, 2001 թ.:
16. **Յոզեֆ Կարստ** - Կիլիկյան հայերենի պատմական քերականություն, 2001 թ.:
17. **Ռաֆայել Մաթևոսյան** - Կուսան ապակու որոնումներում. իրադարձություններ և դասեր, 2001 թ.:
18. **Խաչիկ Բադիկյան** - Ուսումնական դարձվածաբանական բառարան, 2002 թ.:
19. **Հրաչյա Գաբրիելյան** - Հայոց բնաշխարհը (դասագիրք), 2002 թ.:
20. **Էդուարդ Աղայան** - Լեզվաբանական հետազոտություններ, 2003 թ.:

21. **Արտակ Մովսիսյան** - Նախամաշտոցյան Հայաստանի գրավոր մշակույթը, 2003 թ.:
22. **Հրաչյա Աճառյան** - Քննություն Կիլիկիայի բարբառի, 2003 թ.:
23. **Պիոն Հակոբյան** - Գիտական ուսումնասիրություններ, 2003 թ.:
24. **Աշոտ Սուքիասյան** - Հայոց լեզվի հոմանիշների բացատրական բառարան (2004 թ. արժանացել է ՀՀ նախագահի մրցանակին՝ «Մարդկային զարգացման և հումանիստական արժեքների, այդ թվում՝ հումանիտար գիտությունների զարգացման բնագավառում ձեռք բերված նվաճումների համար»), 2003 թ.:
25. **Երջանիկ Գևորգյան** - Հայոց շարժումային լեզվի բացատրական բառարան (Շարժութարան), 2003 թ.:
26. **Հայնրիխ Հյուբշման** - Հայերենի քերականություն, *առաջին մաս*, Հայերենի ստուգաբանություն, 2003 թ.:
27. **Հայնրիխ Հյուբշման** - Հայագիտական ուսումնասիրություններ, 2004 թ.:
28. **Ալեքսանդր Մարգարյան** - Հայոց լեզվի քերականություն (Ձևաբանություն) 2004 թ.:
29. **Ռամազ Գորգաձե** - Հայերեն-վրացերեն զրուցարան, 2004 թ.:
30. «Ժուռնալ Ազիատիկ» հանդեսի հայագիտական նյութերի ծանոթագրված մատենագիտություն, 2004 թ. (ռուսերեն):
31. **Հրաչյա Աճառյան** - Հայոց պատմություն, հյուսված ընդհանուր պատմության հետ, 2004 թ.:
32. **Յովհաննէս Սարկաւագ Իմաստասէր** - Լուծմունք «Սահմանաց գրոց», 2004 թ.:
33. **Սանդրո Սարդարյան** - Հայաստանը քաղաքակրթության օրրան, 2004 թ.:
34. **Կարէն Իւզբաշեան** - Աւարայրի ճակատամարտից դէպի Նուարսակի պայմանադրութիւնը, 2005 թ.:
35. **Հարություն Դելլալյան** - Ժողովածու, 2005 թ.:
36. **Բախտիար Հովակիմյան** - Հայոց ծածկանունների բառարան, 2005 թ.:
37. **Գառնիկ Անանյան** - Ակնարկներ հայոց հին և միջնադարյան հրապարակախոսության, 2005 թ.:
38. **Վահան Տեր–Ղևոնդյան** – Կիլիկյան Հայաստանը և Մերձավոր Արևելքի արաբական երկրները (1145-1226 թթ.), 2005 թ. (ֆրանսերեն):
39. **Գառնիկ Ստեփանյան** – Երզնկա (Հնագույն դարերից մինչև մեր օրերը), 2005 թ.:
40. **Հրաչյա Աճառյան** - Լիակատար քերականություն հայոց լեզվի համեմատությամբ 562 լեզուների. Իմաստաբանություն, Բառաքննություն, Շարահյուսություն, 2005 թ.:
41. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին. 16-րդ հատոր: Արաբ մատենագիրներ Թ-Ժ դարեր: Ներածությունը և բնագրերից թարգմանությունները **Արամ Տեր-Ղևոնդյանի**, 2005 թ.:
42. **Սահակ Բագյան** - Խաչատուր Աբովյանը առակախոս-բանաստեղծ և դրամատուրգ, 2005 թ.:
43. **Ռամազ Գորգաձե** - Վրացերեն-հայերեն բառարան, 2005 թ.:
44. **Պավել Շարաբխանյան** - Հանգաբանություն, 2005 թ.:
45. **Ռուբէն Ղազարեան** - Գրաբարի հոմանիշների բառարան, 2006 թ.:
46. Գրիգոր Զոհրապը ժամանակակիցների յուշերում եւ վկայութիւններում: Աշխատասիրութեամբ **Ալբերտ Շարուրեանի**, 2006 թ.:
47. **Նիկողայոս Ադոնց** - Երկեր, հինգ հատորով, հատոր Ա, Պատմագիտական ուսումնասիրություններ, 2006 թ:
48. **Հ. Պօղոս Գոճանեան** - Ուղեցոյց դասական ուղղագրութեան, 2006 թ.:
49. **Հայկազ Ժամկոչյան** - Հայ ժողովրդի պատմություն, 2006 թ.:
50. Հայ հմայական և ժողովրդական աղոթքներ: Աշխատությամբ **Ս. Հարությունյանի,** 2006 թ.:
51. **Սաթենիկ Գեչյան -** Անի: Մատենագիտություն, 2006 թ.:
52. **Հարություն Մ. Վենետիկյան, Ջերալդ Ա. Ուորֆիլդ** - Համաշխարհային առևտրի ֆինանսավորում, 2006 թ.:
53. **Շահէ Արքեպիսկոպոս Աճէմեան,** Հայերէն Աստուածաշունչը, 2006 թ.:
54. LA MINIATURE ARMENIENNE - Collection du Matenadaran, 2006 թ., «Նաիրի» հրատարակչության հետ համատեղ
54. Արևելագիտության հարցեր (Հոդվածների ժողովածու, հատոր VI), 2006 թ.:
55. **Հակոբ Սիմոնյան** - Վերին նավեր, գիրք Ա, (1976-1990 թթ. պեղումների *արդյունքները*), 2006 թ.:
56. **Նիկողայոս Ադոնց** - Երկեր, հինգ հատորով, հատոր Բ, Պատմա-բանասիրական ուսումնասիրություններ, 2006 թ: